# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ ԴԱՐՈՒ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆՆ

## Ի ԳԵՐՄԱՆԻԱ

ՅՕՐԻՆԵԱԼ 87

Ի ՄԷՐԼԷ Տ՛ ՕՊԻՆԻԷ

ՄԵԾԱՆՈՒՆ ՎԱՐԴԱՊԵՏԷ

---

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ

Ի ԳԱՂՂԻԱԿԱՆ ԲՆԱԳՐԷ

---

## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

---

Ի ԶՄԻՒՌՆԻԱ

Ի ՏՊԱՐԱՆԻ ԿՈՒԼԻԵԼՄՈՍ ԿՐԻՖՖԻԹԻ

1846

պատրաստելու. երկար ատեն կեցաւ Գերմանիա՝ Հոլանտա և Զուիցերի, յանախ ճամբորդութիւններ ընելով նաև Գաղղիայի մէջ : Բոլոր աս միջոցին՝ մեծամեծ պարապեցաւ պատմութիւններ, ձեռագիրներ և Բարեկարգութեան վերաբերեալ հաստատ վկայութիւններ ժողվելու, և իր պարտած երկիրներուն հասարակաց գրատուններուն մէջ մեծ զգուշութեամբ փնտռելուան ամէն բաները, որոնք իր Պատմութեանը աւելի ուղղութիւն և աւելի կատարելութիւն կրնային ընծայել : Ինքը աշխատեր է աս ամէն վկայութիւնները՝ երեսներուն ներքեւը ծանօթութեանց մէջ յառաջ բերելու. բայց մեզի աւելի աղէկ թուեցաւ որ դուրս ձգենք ան ծանօթութեանց մեծ մասը. որովհետև օտար լեզուէ ըլլալնուն համար՝ գուցէ ձանձրութիւն տան մեր ընթերցողին մտացը :

Հոս տեղ արժան կըհամարիմք ծանուցանել կարդացողին, որ բնաւ չկարծէ թէ մենք Լուտերի հետեւողներն ենք. վասն զի մեր փափագը և գիտաւորութիւնը միայն Քրիստոսի հետեւիլ է. բայց այնչափ կընդունիմք զմարգիկ և անոնց օրինակին կըհետեւիմք, որչափ որ անոնք կըհետեւին Եկեղեցւոյ ան միակ Գլխոյն : Ա Կորնթ. ժա. 2 : Մենք Լուտերական չենք, ոչ ալ աս Գրքիս հեղինակը Լուտերական է. բայց քանզի ինքը ձեռք զարկած է Աստուածային շնորհաց ան մեծ գործը ստորագրելու, որուն մէջ Լուտեր իբրև մէկ գործիք մը եղած էր, վասն որոյ հարկաւ կըպարտաւորի պատմել Լուտերի բաները և գործերը : Ի վերայ այսր ամենայնի՝ կարդացողը պէտի տեսնէ որ հեղինակը անկողմնասիրութեամբ կըգրէ. քանզի երբոր մէկ կողմանէ ինքը ուրիշ պատմագիրներուն շատերէն աւելի նպաստաւոր կըխօսի Բարեկարգութեան ան գլխաւոր հակառակորդներուն վրայով, այսինքն՝ Լեոն Ժ., Կարոլոս Ե., Ալպերտոս արքեպիսկոպոս և Էք աստուածաբանը, նոյն ատենը ուրիշ կողմանէ ալ բնաւ չծածկեր Բարեկարգողին պակասութիւնները : Աւստի աս գիրքս ան մտօքը յօրինած չէ՝ որ Լուտերը փառաւորէ և իր անունը աշխարհի քարոզէ. հապա անոր նպատակը միայն ճշմարտութիւնը քարոզել և զԱստուած փառաւորել է : Լուտեր լոկ մարդ մըն էր. և սնապաշտութեան խաւարէն նոր դուրս ելած ըլլալուն համար, զարմանք չէ որ երբեմն կծու և յանդիմանող գտնեմք զինքը :

Բայց կարելի է աս գիրքը այնպիսի անձանց ձեռք ալ անցնելու է, որ միշտ սորված են հաւատալու՝ թէ Լուտեր մարդ ալ չէր, հապա վատթարագոյն գազան մը կամ հրէշ մը : Մենք գիտեմք թէ Թշնամիները ամէն տեղ ինչ ամօթալի բարբառանքներով՝ տղէտ մարդոց նախապաշարմունքը գրգռած են Լուտերի դէմ, անանկ ու՞ ամենք կըզարհուրին Լուտերի միայն անունը լըսելէն, որչափ որ կըզարհուրին նոյն ինքն Սատանայէն : Բայց անշուշտ աս

գործս անաչառապէս քննելով շուտով պիտի փարատին այնպիսի անտեղի և ողբալական կարծիքները ։ Նոյն արդ՝ բանաւէր ընթերցողին սիրտը կատարեալ հանձնելու համար, հոս տեղ յառաջ կըբերեմք քանի մը վկայութիւններ Հռովմէադաւան պատմագիրներէ, որոնք մեծ թշնամի էին Բարեկարգութեան. բայց Լուտերի ու իր գործունեայց վրայ աղէկ տեղեկութիւն ունենալով մարդիկ ըլլալնուն՝ կարող էին անոր յարգը ճանչնալու ։

Աւասիկ երկու դար առաջ ծաղկած Հռովմէական պատմագիրներէն երկու հատ կընտրեմք, և երկուքն ալ մեզի ժամանակակից եղողներէն ։ Առջի երկուքը ասոնք են. Գաղղիացի Ճ'իզվիթ Մէյմպուրկը*, ան անհաշտ թշնամին Բարեկարգութեան, ծնած 1610ին. ու Վարիլլաս†, եկեղեցական պատմագիրը՝ ծնած 1624ին ։ Իսկ վերջին երկուքը ասոնք են. Փրիդերիկոս Ֆօն Շլէկէլ‡, Վիեննայի համալսարանին Ուսուցիչը՝ և հիմա Գերմանիայի առաջին գիտուններէն մէկը. ու Ճ. Մ. Վ. Օտան§, մէկ հմուտ ճարտար և խիստ նախանձաւոր պապական եկեղեցական մը, որ հիմա կենդանի է Գաղղիայի մէջ ։ Այս պատմագիրներուն ամէնն ալ չարաչար կըյանդիմանեն Լուտերը, Բարեկարգութեան միջոցը ըլլալուն համար. շատ գովեստներ կընեն պապական եկեղեցիին՝ երկրիս վրայ Աստուծոյ մի միայն ճշմարիտ եկեղեցին համարելով զանիկայ. մեծ ցաւ կըցուցընեն Լուտերին ըրածներուն համար, եկեղեցիին վրայ հասնող ամենադառն թշուառութիւնը սեպելով զանիկայ ։ Բայց սակայն ասոնք քիչ մը տեղեկութիւն ունենալով ան մարդուն վրայօք, հետևեալ կերպով կըխոստովանին անոր ինչպէս մէկը ըլլալը ։

Մէյմպուրկ կըսէ.

«Ընիկայ կենդանի և աշխոյժ ոգի մը ունէր, իր ուսմանցը մէջ անխոնջ էր. և շատ անգամ անանկ զբաղած կըլլար անոնցմով, որ ամբողջ օրեր առանց կերակուրի կանցընէր ։ Մեծ գիտութիւն ստացեր էր լեզուներուն և Հայրերուն վրայով ։ Զարմանալի զօրեղ ու առողջ էր, և ջերմ մաղձային բնութեան տէր ։ Իր աչքերը սուր և կրակոտ էին, իր ձայնը քաղցր և ուժով երբոր բուռական բարձրացընէր ։ Խոժոռ դէմք մը ունէր. և թէպէտ խիստ աներկիւղ և յանդուգն էր, բայց իր ուզած ատենը կրնար հեզութիւն և խոնարհութիւն ցուցընել, թէև սս բանը շատ հեղ չէր պատահէր» ։ Միշտ ու բաւականին անարատ վարք ունենալով մէկը սեպուած էր՝ մենաստանին մէջը եղած ատենը. մինչև որ իր բարի հանգամանքները գլխովին կորսընցուց իր

*Maimbourg. †Varillas. ‡Frederick Von Schlegel. §I. M. V. Audin.

"Լուտեր առաջին և փառաւոր տեղը ունի Գերմանական գրականութեանը մէջ ։ Սակայն իր գրութիւններովը ոչ սնապարծ եղաւ , ոչ ալ հպարտացաւ ։ Բարեկարգութեան մեծ քարոզիչն էր Լուտեր ։ Ատենաբանի մը պէտք եղած գրեթէ ամէն յատկութիւնները ունէր ։ Իր ձայնը յըստակ և բարձր էր , աչքերը կրակոտ , գլխուն ձևը՝ վայելուչ մարդոց գլխուն պէս վսեմ և գեղեցիկ էր ․ ձեռքերը փափուկ էին , և իր շարժուածքը նազելի և դիւրաշարժ ։ Հարկ չէր որ Լուտեր իր ճակատը շփէ , իր գաղափարները արթընցընելու , կամ իր միտքը հանդարտեցընելու համար ։ Իր գրիչը հազիւ կըհասնէր իր խորհուրդներու հոսանքին ։ Իր ձեռագիրներուն մէջ՝ տեղ մը չեմք նշմարեր ձանձրութեան կամ սրտնեղութեան նշաններ , ոչ շփոթութիւն կամ սխալանք , ոչ անյարմար ածական , կամ անճոռնի խօսք մը ․ և իր գրութեան մաքրութեանը նայելով կրնամք երևակայել թէ ինքը աւելի օրինակողն էր գործին՝ քան թէ յօրինողը"։

(Տեսանի վարք Լուտերի ․ երես 212-214 և 500—506 ։)

Վերը դրուած քաղուածներուն ընթացքէն կարծես թէ Լուտերի խօսաչափազանց գովաբանողներն են որ կըխօսին զանոնք ․ բայց կարդա՛ անոր գրքերը՝ ուրկէց որ անոր յօդուածները քաղեցինք , և պիտի տեսնես թէ անհրաժեշտ իրաւունքէ միայն առիպուելով բովանդակ աս գովութիւնը ըրած են ան անձինքը՝ որոնք ամէնն ալ (գուցէ բացի Շլէկէլէն) Լուտերի անհաշտ թշնամիներն էին ։

Հոս տեղ մէկ խօսք մըն ալ թարգմանութեանս ոճին վրայով ընենք , և այնպէս մեր յառաջաբանութիւնը վերջացընենք ։ Թարգմանութեանս ոճը քիչ մը բարձր է ․ քանզի տեսնելով որ միշտ դիւրին պիտի չըլլայ՝ հեղինակին պերճախօս և վսեմ խորհուրդները՝ պարզ աշխարհաբառով բացայայտելու , վասն որոյ պարտաւորեցանք շատ անգամ գրաբառ բառեր գործածելու ․ և միանգամայն գրաբառ չգիտցողներուն ալ աս գիրքս օգտակար ընելու ջանալով , գրքիս վերջը ան գրաբառ բառերուն մեկնութիւնը աւելցուցինք , իրենց գործածուած տեղերուն յարմար նշանակութիւններովը ։

# ՑԱՆԿ ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻՆ

## ԻՐԵՐՈՒՆ ՎԻՃԱԿԸ

## ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵՆԷՆ ԱՌԱՋ

### ՀԱՏՈՒԱԾ Ա

Քրիստոնէութեան սկիզբը, ա: — Բանը մարմին եղած, բ: — Երկու-ղաս սկզբունք, գ: — Եկեղեցւոյ սկզբնաւորութիւնը, դ: — Առաջին Եպիսկոպոսները, ե: — Պատուասէր Հռոմ, զ: — Տեսանելի և անտեսանելի եկեղեցին, է, ը: — Սուրբ Պետրոսի գլխաւորութիւնը, թ: — Պատրիարգական սահմանադրութիւն, ժ: — Հռոմայ պաշտպանները, ժա: — Հռոմ Գաղղիացւոց կայսրին, ժբ: — Իզիդորոսի սուտ կանոնագիրքը, ժգ: — Հռոմայ անկարգութիւնները, ժդ: — Կայսրը կը զօրացընէ Պապերը, ժե: — Հիլտէպրանտ, ժզ: — Պապը ինքնակալ կըլայ, ժէ:

### ՀԱՏՈՒԱԾ Բ

Ընդհ. Աշխարհի հաւատք, ժը: — Կրօնքը կործանող սկզբունք, ժթ: — Պեղագեան աղանդ, ի: — Նոր հետևանքները, իա: — Խոստովանութիւն. Ապաշխարանք, իբ: — Ներողութիւն. Սրբոց արդիւնքը, իգ: — Քաւարան. Գինահատութիւն, իդ: — Յոբելեան տարի, իե: — Պապութիւն և քրիստոնէութիւն, իզ:

### ՀԱՏՈՒԱԾ Գ

Եկեղեցիին վիճակը, իէ, իը: — Վանականներ. Զատկի ծիծաղներ, իթ: — Քահանայից անառակ վարքը, լ: — Եպիսկոպոսաց անառակ վարքը, լա: — Պապերուն անառակ վարքը, լբ: — Աղէքսանդր պապին ընտանիքը, լգ: — Եկեղեցականաց խորին տգիտութիւնը, լդ: — Սուրբ Գ. իրքը կանարգուի, լե:

## ՀԱՏՈՒԱԾ Դ



## ՀԱՏՈՒԱԾ Ե



## ՀԱՏՈՒԱԾ Զ



## ՀԱՏՈՒԱԾ Է



## ՀԱՏՈՒԱԾ Ը





# ԳԻՐՔ Ա

## ԼՈՒՏԵՐԻ ՄԱՆԿՈՒԹԻՒՆԸ ԴԱՐՁԸ ՈՒ ԱՌԱՋԻ ԳՈՐԾԵՐԸ

1483—1517

### ՀԱՏՈՒԱԾ Ա



### ՀԱՏՈՒԱԾ Բ



### ՀԱՏՈՒԱԾ Գ



### ՀԱՏՈՒԱԾ Դ

## ՀԱՏՈՒԱԾ Ե



## ՀԱՏՈՒԱԾ Զ



## ՀԱՏՈՒԱԾ Է



## ՀԱՏՈՒԱԾ Ը



## ՀԱՏՈՒԱԾ Թ



## ՀԱՏՈՒԱԾ Ժ





## ԳԻՐՔ Բ

## ՆԵՐՈՂՈՒԹԵԱՆ ԿՈՆԴԱԿՆԵՐԸ, ՈՒ ԼՈՒՏԵՐԻ ՆԱԽԱԴԱՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1517—1518

### ՀԱՏՈՒԱԾ Ա



### ՀԱՏՈՒԱԾ Բ



### ՀԱՏՈՒԱԾ Գ



### ՀԱՏՈՒԱԾ Դ



### ՀԱՏՈՒԱԾ Ե

## ՀԱՏՈՒԱԾ Զ.



## ՀԱՏՈՒԱԾ Է



## ՀԱՏՈՒԱԾ Ը



## ՀԱՏՈՒԱԾ Թ



## ՀԱՏՈՒԱԾ Ժ

## ՀԱՏՈՒԱԾ ԺԸ





## ԳԻՐՔ Գ

## ԼՈՒՏԵՐ ՊԱՊԻՆ ՆՈՒԻՐԱԿԻՆ ԿԸ ՆԵՐԿԱՅԱՆԱՅ

1518

Մայիսէն մինչև Դեկտեմբեր :

## ՀԱՏՈՒԱԾ Ա



## ՀԱՏՈՒԱԾ Բ

## ՀԱՏՈՒԱԾ Գ



## ՀԱՏՈՒԱԾ Դ



## ՀԱՏՈՒԱԾ Ե



## ՀԱՏՈՒԱԾ Զ



## ՀԱՏՈՒԱԾ Է



## ՀԱՏՈՒԱԾ Ը

## ՀԱՏՈՒԱԾ Բ



## ՀԱՏՈՒԱԾ Գ



## ՀԱՏՈՒԱԾ Դ



## ՀԱՏՈՒԱԾ Ե

## ՀԱՏՈՒԱԾ Զ



## ՀԱՏՈՒԱԾ Է



## ՀԱՏՈՒԱԾ Ը





## ԳԻՐՔ Զ

## ՀՌՈՎՄԱՅ ՊԱՊԻՆ ԿՈՆԴԱԿԸ

### 1520

## ՀԱՏՈՒԱԾ Ա



## ՀԱՏՈՒԱԾ Բ

## ՀԱՏՈՒԱԾ Ժ



## ՀԱՏՈՒԱԾ ԺԱ



## ՀԱՏՈՒԱԾ ԺԲ



## ԳԻՐՔ Է

## ՎՈՐՄՍԻ ԺՈՂՈՎԸ

1521. Յունուար և Մայիս։

## ՀԱՏՈՒԱԾ Ա

## ՀԱՏՈՒԱԾ Բ



## ՀԱՏՈՒԱԾ Գ



## ՀԱՏՈՒԱԾ Դ



## ՀԱՏՈՒԱԾ Ե



## ՀԱՏՈՒԱԾ Զ



## ՀԱՏՈՒԱԾ Է

## ՀԱՏՈՒԱԾ Ը



## ՀԱՏՈՒԱԾ Թ



## ՀԱՏՈՒԱԾ Ժ

## ՀԱՏՈՒԱԾ ԺԱ





# ԻՐԵՐՈՒՆ ՎԻՃԱԿԸ

# ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆՑ ՆՈՒԱԶ

## ՀԱՏՈՒԱԾ Ա

Երբ որ քրիստոնէութիւնը սկսաւ, տկարացած էր աշխարհս՝ և իր հիմանցը վրայ կըսասանէր: Ազգային կրօնքները՝ որ նախնիքներուն բաւական եղած էին, ալ հաճելի չէին անոնց որդւոցը. քանզի աս նորածին սերունդը՝ ոչ ևս կրնար համբերելու ան վաղեմի ծէսերուն: Բոլոր ազգաց աստուածները յափշտակուած Հռոմ տարուելով՝ հոն համրացեր և իրենց պատգամները կորսնցուցեր էին, ինչպէս որ անոնց երկրպագող ազգերն ալ՝ իրենց ազատութիւնը: Աս կուռքերը՝ դէմ յանդիման Կամպիտողիոնին մէջ դրուած մէկզմէկ կործանեցին, և իրենց աստուածութիւնը աներևոյթ եղաւ. անանկ որ գրեթէ աշխարհիս մէջ կրօնք չմնաց: Անկից ետքը տեսակ մը ապուշ և անզգայ աստուածադաւանութիւն երևաց քիչ մը ատեն ան նոյն անդունդին վրայ՝ որուն մէջը ընկղմեր և անյայտ եղեր էին նախնի մարդոց զօրաւոր սնապաշտութիւնները: Բայց աս ալ միւս անզգայ կրօնքներուն պէս չկրցաւ օգուտ մը ընելու: Ազգերուն նախապաշարմունքները՝ իրենց կուռքերուն հետ կործանեցան. վասն որոյ զանազան ժողովուրդներ մէկզմէկու խառնուեցան. Եւրոպա, Ասիա և Ափրիկէ ամէնը մէկ

տեղ մէկ տէրութիւն մը եղաւ, ու մարդկային սեռը՝ ալ սկսեց իր ընդհանրութիւնը և միութիւնը հասկընալու ։

Այն ատենը Բանը մարմին եղաւ ։

Աստուած երևցաւ մարդոց մէջը՝ մարդկային մարմնով, որ կորսուածը փրկէ ։ Յիսուս Նազովրեցիին մարմնոյն մէջը՝ բովանդակ Աստուածութեան լրութիւնը բնակեցաւ ։

Ահա՛ աւիկայ է աշխարհիս մէջ պատահած ամենէն մեծ և զարմանչելի դիպուածը ։

Այնուհետև աշխարհիս ժողովրդոցը բոլոր անապաշտութիւնները խայտառակեցան ։ քանզի անոնց տկար մնացորդները՝ որոնք այն անզգայ անհաւատութեան ահագին նաւակոծութենէն ազատեր էին, յաւիտենական ճշմարտութեան չքեղափայլ արևուն առջևը աներևոյթ եղան ։

Որդին մարդոյ երեսունուերեք տարի ապրեցաւ աշխարհիս վրայ, հիւանդները բժշկելով, մեղաւորներուն քարոզելով, և իր գլուխը դնելու տեղ մը չունենալով ։ ու սանկ նուաստ վիճակի մէջ՝ մէկ աստուածային մեծութիւն, սրբութիւն և իշխանութիւն մը ցուցընելով՝ որուն նմանը աշխարհս երբէք տեսած չէր ։ Անիկայ չարչարուեցաւ, մեռաւ, յարութիւն առաւ և երկինքը համբարձաւ ։ Իր աշակերտները Երուսաղէմէն սկսելով՝ բոլոր աշխարհիս մէջը պտըտեցան, ամէն տեղ աւետարանելով թէ իրենց Վարդապետն է “Յաւիտենական փրկութեան հեղինակը” ։ Բազմաթիւ Ասիացիք, Յոյնք և Հռովմայեցիք, որոնք մինչև ան ատենը իրենց քուրմերուն առաջնորդութեամբը՝ անշունչ կուռքերուն առջևը կերթային, հաւատացին Բանին ։ Քանզի անիկայ յանկարծ լուսաւորեց աշխարհը՝ արևուն ճառագայթներուն պէս, կըսէ Եւսեբիոս ։ Կենդանութեան շունչ մը սկսեց շարժիլ աս լայնատարած մահուան դաշտին վրայ ։ Սուրբ ժողովուրդ մը մարդոց մէջը երևան ելաւ, և աշխարհ զարմացաւ՝ տեսնելով Յիսուսի աշակերտներուն անօրինակ

մաքրութիւնը , անձնուրացութիւնը , մարդասիրութիւնը և քաղաքավարութիւնը :

Բայց ամէն բանէն աւելի՝ երկու սկզբունք այս Նորածին կրօնը կըզատէին բոլոր մարդկային ան դրութիւններէն , որոնք իր առջեւ կործանած էին . մէկը Հաւատոյ պաշտօնէից վերաբերեալ՝ և մէկալը Հաւատոյ վարդապետութեանց :

Հեթանոսաց քուրմերը գրեթէ մարդկային կրօնքներուն աստուածներն էին . բայց Յիսուս Քրիստոս կործանեց այս կենդանի կուռքերը , բնաջնջելով ըրաւ անոնց գոռոզամիտ իշխանութիւնը , առաւ մարդուն ձեռքէն ի՛նչ որ մարդը յափշտակեր էր Աստուծմէ . և վերստին ճամբայ բանալով հոգիներուն՝ որ առանց ուրիշ միջնորդի՝ Ճշմարտութեան աղբիւրին մերձենան , հրատարակեց զինքը մի միայն Տէր և մի միայն Միջնորդ :

Դամք Վարդապետութեանը : Մարդկային կրօնքները կըսորվեցընէին թէ՝ փրկութիւնը մարդէն յառաջ կուգայ . և աս ալ կըսէին մարդոց՝ թէ երկինքը պիտի տրուի իրենց իբրև մէկ վարձք մը . անոր գինը անգամ որոշեր էին , և ի՜նչ սնոտի ծառայութիւններ և արարողութիւններ կըլեցընէին աս գինը : Բայց Աստուածային կրօնը սորվեցուց որ փրկութիւնը Աստուծմէ կուգայ , որ անիկայ Աստուծոյ մէկ պարգևն է՝ իր գերագոյն իշխանութեան շնորհքովը ձրի տրուած . "Աստուած՝ կըսէ աս կրօնը , մեզի յաւիտենական կեանք տուաւ" : ա Յովհ . ե . 11 :

Աստոյգ է որ քրիստոնէական կրօնին վարդապետութիւնը՝ աս երկու մասին մէջ միայն չպարունակուիր . սակայն ինչպէս որ յայտնի է , խիստ երևելի մասերն են ասոնք : Վասն զի քանի որ ուղիղ և հաստատ բռնուին՝ մարդս քրիստոնէութեան ճշմարիտ սահմաններուն մէջ կըգտնուի , իսկ ասոնցմէ դուրս քրիստոնէութիւնը բնաջինջ կըլլայ : Աս երկու գլխաւոր մասերուն պահպա-

նութենէն կամ խանգարումէն կախեալ է քրիստոնէական կրօնին կործանումը կամ հաստատութիւնը ։ Ասոնք նաև սերտ կապակցութիւն մը ունին մէկզմէկու հետ․ վասն զի հնար չէ որ մէկը բարձրացընէ կամ Եկեղեցւոյ քահանաները և կամ հաւատացելոց բարեգործութիւնները՝ առանց խոնարհեցընելու զՅիսուս Քրիստոս՝ իր Միջնորդ և փրկիչ ըլլալու միաւորեալ հանգամանացը մէջ ։ Աս երկու սկզբունքներուն մէկը՝ կրօնական պատմութեանը վրայ ազդելու էր, և մէկալը՝ անոր վարդապետութեանը վրայ ։ Քրիստոնէական կրօնին սկզբնաւորութեանը՝ ասոնց երկուքն ալ կը թագաւորէին ․ տեսնենք հիմա թէ ինչպէս իրենց իշխանութիւնը կորսնցընելով անհետ եղան ․ և նախ առջինին վրայով խօսինք ։

Եկեղեցին իր սկզբնաւորութեանը՝ եղբայրներէ բաղկացած ժողովուրդ մըն էր, ու եղբայրներէն կըկառավարուէր ։ Ասոնք ամէնը մէկ տեղ Աստուծմէ կըսորվէին, և իւրաքանչիւր ոք իրաւունք ունէր ինքնին՝ աստուածային լուսոյ աղբիւրին մօտենալու և իրեն համար լոյս ընդունելու ։ Յովհ․ զ․ 45 ։ Անատենը հաւատոյ մեծամեծ խնդիրներուն վճիռը տալու համար գրուած թղթերուն մէջ՝ (Գործ․ ժե․ 23) բնաւ մէկ մարդու մը և մէկ գլխու մը մեծաշուք անունը յիշուած չէ, հապա ասանկ կըկարդացուին անոնց մէջ․ "Առաքեալներ, երէցներ ու եղբայրներ, մեր եղբայրներուն", ևայլն ։

Բայց նոյն առաքեալներուն գրուածքները՝ աս ալ կը ծանուցանեն մեզի, թէ աս եղբայրներուն մէջէն մէկ իշխանութիւն մը պիտի ելլէ՝ ամէնուն վրայ հպարտանայ, ու աս պարզ և նախնական կարգը խափանէ ։ Բ Թես․ Բ ։

Նայիմք ուրեմն ուշադրութեամբ, թէ ինչպէս հաստատուեր և առաջ գացեր է աս իշխանութիւնը, որ եկեղեցիին վաղեմի սովորութենէն դուրս և օտար բան մըն է ։

Պօղոս Տարսոնացին՝ նորահաստատ կրօնին գլխաւոր

տուաքելոց մէկը, աշխարհիս մայրաքաղաքը Հռովմ հասեր էր, ու կը քարոզէր ան փրկութիւնը՝ որ Աստուծմէ կուգայ։ Աս առաքեալին հաստատած եկեղեցին* շատ ժամանակ փայլեցաւ՝ իբրև պայծառ անշուշտ ճրագ լեռան մը վրայ. բայց ետքը խոտորեցաւ ու իր առջի զօրութենէն ակարացաւ։

Հռովմայ առաջին հովիւները կամ եպիսկոպոսները կանուխ սկսան աս քաղաքիս մօտ Կամբանեայ ըսուած դաշտին գեղերուն և քաղաքներուն բնակիչները դարձի բերել։ Ուստի ետքը՝ ան Կամբանիայի մէջ հաստատուած եկեղեցիներուն եպիսկոպոսները կամ հովիւները՝ նեղութեան և հալածանաց ժամանակները կարօտութիւն ունենալով գիտուն և փորձ առաջնորդի մը, նմանապէս երախտագէտ ըլլալով Հռովմայ եկեղեցիին՝ որ իրենց լուսաւորութեանը սկզբնապատճառ եղած էր, ուզեցին որ մտերիմ կապակցութիւն մը ունենան անոր հետ։ Բայց ափսո՜ս՝ որ աս միաբանութիւնը շատ չգնաց հպատակութեան փոխուեցաւ։

Այսու ամենայնիւ Հռովմէական եպիսկոպոսին գլխաւորութիւնը ուրիշ բան չէր ան ատենը, բայց միայն վերակացութիւն ընել ան եկեղեցիներուն՝ որ Հռովմայ Ոստիկանին տիրած վիճակներուն մէջ կը գտնուէին։ Բայց աս կայսերաբնակ քաղաքին ունեցած մեծ համարումը աշխարհիս մէջ՝ իր առջի եպիսկոպոսներուն պատուասիրութեանը յոյս կուտար, թէ օր մը պիտի գայ՝ որ աւելի մեծ պատիւներ ունենալու են։ Քանզի երկրորդ դարուն մէջ քանի մը Հռովմէական Եպիսկոպոսներուն պատիւը՝ համեմատ էր ան քաղաքներուն անուանը՝ ուր որ իրենք կը բնակէին։ Արդ՝ Հռովմ աշխարհիս մէջը ամենէն մեծ,

* Հեղինակին միտքը անշուշտ աս պէտք ըլլայ՝ որ Պօղոս Հռովմ երթալով՝ ան տեղի հաւատացեալներուն քաջալերութիւն տուաւ, և իր քարոզութեամբը քրիստոնէութիւնը աւելի ծաղկեցուց։ Տե՛ս Գործ. իը. 15. և Փիլիպ. ա. 12, 14: (Ծանօթ. Թարգմանչին)

*ամենէն հարուստ և ամենէն հզօր քաղաքն էր ։ Այս թէ որ Հռովմ՝ բովանդակ երկրի վրայ եղած քաղաքներուն թագուհին է, ինչու համար իր հովիւը եպիսկոպոսներուն թագաւորը պիտի չըլլար ։ Ինչու համար Հռովմէական եկեղեցին՝ բոլոր քրիստոնէից մայր պիտի չըլլար ։ Դիւրին էր որ մարդկային պատուասէր սիրտը այսպէս խորհի, ինչպէս որ ըրաւ պատուասէրն Հռովմ ։*

*Աստի հեթանոսական Հռովմը իր կործանման ատենը՝ իր աւերակներուն մէջ նստող Քրիստոսի խոնարհ պաշտօնատարին ժառանգութիւն թողուց ան փառաւոր տիտղոսները՝ որոնք երկրիս ժողովուրդներէն առած էր իր անյաղթելի սրովը ։*

*Տէրութեան զանազան կողմերու եպիսկոպոսներն ալ հրապուրուած ան դիւթական զօրութենէն՝ որն որ Հռովմ քանի մը դարէ 'ի վեր բոլոր աշխարհի վրայ կըներգործէր, իրենք ալ հետևեցան Քամբանիայի օրինակին, և ձեռնտու եղան աս բռնաւորական գործոյն ։ Հաճելի երևցաւ իրենց՝ Հռովմայ Եպիսկոպոսին պատիւ ընծայել համեմատ ան փառքին՝ որ աշխարհի քաղաքաց թագուհիին կըվերաբերէր ։ Առջի բերանը՝ աս պատուոյն մէջ բնաւ հպատակութեան երևոյթ մը չկար . անոնք կը վարուէին Հռովմայ հովիւին հետ, իբրև հաւասար ընդ հաւասարի* ։ բայց անիրաւութեամբ առնուած իշխանութիւնը միշտ կաճի և կուռենայ ։ Առջի անգամներուն տրուած եղբայրական պարզ խրատները՝ շատ չանցած պարտաւորիչ հրամաններու փոխուեցան քահանայապետին բերանը . և հաւասար ընկերներու մէջ իր ունեցած առաջին տեղը՝ շուտով իր աչքին առջևը գահոյք մը երևցաւ ։*

*Դարձեալ՝ Եկեղեցւոյ որպիսութեանը և արտաքին*

* Եւսեբիոսի, Պատ. Եկեղեց. գիրք. Ե. գլ. 24 ։ Սոկրատ. Պատ. Եկեղեց. գլ. 21 ։ Կիպրիանոսի Նամակ. 59, 72, 75 ։

միութեանը վերաբերեալ ան գաղափարները՝ որ երրորդ-դարուն մէջ արդէն սկսեր էին հաստատուիլ, օգնեցին Հռովմայ պահանջմունքներուն։ Եկեղեցին է իսկապէս "սուրբեր ըլլալու կանչուածներուն" ժողովը. (ա Կորնթ. ա. 2.) "Երկինքը գրուած անդրանիկներուն" ժողովը։ Եբր. ժբ. 23։ Այսու ամենայնիւ՝ Տէրոջը Եկեղեցին ոչ միայն ներքին և անտեսանելի է, այլ և հարկաւոր է որ դրսուանց ալ յայտնուի. և աս յայտնուելուն համար է որ Տէրն մեր Մկրտութեան և Հաղորդութեան խորհուրդները հաստատեց։ Ասոր արտաքին կամ տեսանելի եկեղեցիին նշանները ուրիշ են, և ներքին կամ անտեսանելի եկեղեցիին նշանները ուրիշ են։ Ներքին եկեղեցին՝ որ Քրիստոսի մարմինն է, հարկաւ և միշտ ընդհանուրապէս մէկ է։ Տեսանելի եկեղեցին ալ անշուշտ միութիւն մը ունի. բայց թէ որ ուշադրութիւն ընելու ըլլամք՝ կը տեսնեմք որ բազմաւորութիւն ալ ունի. վասն զի Նոր Կտակարանը կը յիշէ "Գաղատացւոց եկեղեցիները, Մակեդոնացւոց եկեղեցիները, Հրէաստանի եկեղեցիները և սուրբերուն բոլոր եկեղեցիները։ ա Կորնթ. ժզ. 1։ բ Կորնթ. ը. 1։ Գաղ. ա. 22։ ա Կորնթ. ժդ. 33։ Աս զանազան եկեղեցիները անտարակոյս ըստ չափու միութիւն մը ունենալու կրնան հետամուտ ըլլալ. բայց թէ որ չունենան ալ՝ չեմք կրնար ըսել թէ Քրիստոսի Եկեղեցիին էական հանգամանքներէն զուրկ են։ Ան մեծ կապը՝ որ առաջ եկեղեցւոյ անդամները կը միաւորէր՝ սրտին կենդանի հաւատքն էր, որով ամէնքը միացած էին Քրիստոսի՝ իբրև իրենց հասարակաց գլխոյն։ Բայց պէսպէս պարագաներ պատճառ եղան երևան հանելու և յառաջ տանելու ան գաղափարը՝ թէ արտաքին միութիւնն ալ հարկաւոր է։ Քանզի մարդիկ սորված ըլլալով՝ երկրաւոր հայրենեաց քաղաքական կապակցութիւններուն և կանոններուն, ուզեցին որ Յիսուս Քրիստոսի հոգևոր և յաւիտենական թագաւորութիւնն

ալ՝ արտաքին միաւորութիւն մը ունենայ ։ Դարձեալ՝ հալածումը չկրցաւ բնաջինջ ընել և ոչ իսկ երկիւղ մը պատճառել աս Նորածին ընկերութեանը ․ մանաւանդ ձեռընտու եղաւ անոր յառաջադիմութեանը , անանկ որ՝ ալ աւելի շատցան և զօրացան ։ Աս յաջողութիւնը անշուշտ աղէկ բան մըն էր՝ քանի որ անտեսանելի և հոգևորական եկեղեցին մէկ էր՝ բաժնուած չէր տեսանելի և արտաքին եկեղեցիէն ․ բայց շատ չանցած մեծ երկպառակութիւն մը ծագեցաւ ․ հոգին ու կեանքը բաժնուեցան ծէսերէն և արարողութիւններէն ․ արտաքին անզգայ միաձեւութիւնը առ սակաւ սակաւ յաջորդեց ներքին և հոգևորական միութեանը , որ աստուածահիմն կրօնին էական միսն էր ։ Մարդիկ մէկ դի թողուցին հաւատոյ անուշահոտ բուրմունքը , և երկրպագութիւն ըրին ան դատարկ ամանին՝ որ զանիկայ կըպարունակէր ։ Արտանց հաւատքը ոչ ևս միացընելով Եկեղեցւոյ անդամները՝ ուրիշ կապ մը փնտըռեցին և ջանացին Եպիսկոպոսներու, Արքեպիսկոպոսներու , Պապերու , պապական Թագերու, արարողութիւններու և կանոններու միջոցով՝ միաւորել զանոնք ։ Կենդանի եկեղեցին առ սակաւ սակաւ քաշուելով քիչուոր մարդոց սրտին մէջը , անոր տեղը հաստատեցին արտաքին եկեղեցին , և հրատարակեցին զանիկայ իր ամէն կանոններովը՝ իբրև աստուածային սահմանադրութիւն ։ Փրկութիւնը ոչ ևս բղխելով Աստուածային Խօսքէն , որ ալ ծածկուած էր , սկսան սորվեցընել թէ իրենց հնարած ծէսերովը ձեռք կըբերուի ան , և թէ ոչ ոք ուրիշ կերպով կարող է ստանալ զանիկայ՝ բայց աս միջոցով միայն ։ Ո՛չ ոք կրնայ , ըսին , բուն իր հաւատքովը յաւիտենական կեանքը ստանալ ։ Քրիստոս առաքեալներուն տուաւ Հոգւոյն Սրբոյ շնորհքը , առաքեալներն ալ եպիսկոպոսներուն տուին , և մինակ աս կարգովը կընդունուի Հոգին ։ Առաջուց՝ ով որ Յիսուս Քրիստոսի Հոգին ունենար՝ Եկեղեցիին անդամ էր ․

հիմա կարգը խանգարեցին, և ըսին թէ՝ ով որ եկեղեցի-յին անդամ է, անիկայ միայն կընդունի Յիսուս Քրիս-տոսի Հոգին :

Ան նոյն ատենները որ աս գաղափարները կըհաստա-տուէին, եկեղեցականները օր ըստ օրէ իրենց իշխանու-թիւնք աւելցընելով՝ կըզատուէին հասարակ ժողովուր-դէն : Հոգւոյ փրկութիւնը ոչ ևս միայն Քրիստոսի հաւատալէն յառաջ կուգար, բայց յատկապէս Եկեղե-ցիին հետ միութիւն ունենալէն : Եկեղեցւոյ երեսփո-խանները և գլուխները կընդունէին ան վստահութեան մէկ մասը, որ միայն Յիսուս Քրիստոսի կըվայլէր. և իրենք կըլլային իրենց հօտին միջնորդները : Ան ատենը սկսաւ քրիստոնէից ընդհանուր քահանայութեան (Ա Պետ. բ. 9) գաղափարը հետզհետէ բնաջինջ ըլլալ. Քը-րիստոսի եկեղեցիին պաշտօնեաները՝ հին օրէնքի քահա-նաներուն նմանցուցին. և անոնք որ եպիսկոպոսէն կը բաժնուէին, Կորխի՝ Դաթանի և Աբիրամի կարգը սե-պուեցան : Այսպէս՝ մասնաւոր քահանայութենէ մը՝ ինչպէս որ ան ատենը եկեղեցւոյ մէջ հաստատուեցաւ, պապին պահանջած ինքնիշխան քահանայութեան մը անց-նիլը՝ դիւրին բան մըն էր :

Ապաքէն ան նոյն ատենը որ աս մոլորութիւնը հաս-տատուեցաւ, թէ եկեղեցիին արտաքին միաձևութիւնը հարկաւոր է, անմիջապէս ուրիշ մոլորութիւն մըն ալ ելաւ, թէ հարկաւոր է նաև որ աս միաձևութիւնը ներ-կայացընող մը ըլլայ : Եւ թէպէտ Աւետարանին մէջ ամենևին յիշուած չէ մէկ տեղ մը՝ որ սուրբն Պետրոս ուրիշ առաքեալներէն նախապատիւ եղած ըլլայ. թէ-պէտև նախապատիւ գաղափարը անգամ՝ գլխովին դէմ է աշակերտներուն ունեցած եղբայրական կապակցութեա-նը, նաև՝ Նոր Կտակարանին բոլոր իմաստին. քանզի ա-նիկայ երկնաւոր Հօրը բոլոր որդիները կըհրաւիրէ որ մէկզմէկու ծառայեն, և միայն մէկ Վարդապետ և մէկ

Գլուխ մը ճանչնան իրենց. Թէպէտև Յիսուս սաստիկ կշտամբեց իր աշակերտները ամէն անգամ՝ երբոր նախապատուութեան փառասէր խորհուրդը իրենց մարմնաւոր սրտէն կելլէր, այսու ամենայնիւ Մարդիկ՝ սուրբ Պետրոսի գլխաւորութիւնը հնարելով, քանի մը ծուռ հասկըցուած վկայութիւններով հաստատեցին զանիկայ. և ան առաքեալը ու անոր կարծուած յաջորդը Հռոմայ մէջ ընդունեցին, իբրև տեսանելի փոխանորդ և Գլուխ ան արտաքին միաձևութեանը:

Պատրիարգական սահմանադրութիւնը ևս ձեռնտու եղաւ Հռոմէական պապականութեանը հաստատուելուն: Առջէն առջի երեք դարերուն մէջը՝ մայրաքաղաքաց եկեղեցիները մասնաւոր պատիւ մը ունէին: Նիկիոյ ժողովը իր վեցերորդ կանոնին մէջ երեք քաղաք նշանակեց, որոնց եկեղեցիները՝ իր ըսածին նայելով, վաղեմի իշխանութիւն մը ունէին շրջակայ գաւառաց եկեղեցիներուն վրայ. և ասոնք էին ան քաղաքները *. Աղեքսանդրիա, Հռոմ և Անտիոք: Իսկ երկրորդ ընդհանուր ժողովը մէկ նոր պատրիարգութիւն մը հաստատեց Կոստանդնուպօլսոյ մէջ՝ որ նոր Հռոմ կոչուեցաւ, ու Տէրութեան երկրորդ մայրաքաղաքն էր: Յետոյ Քաղկեդոնի ժողովը՝ Հռոմայ եկեղեցիին կարգը դրաւ աս Բիւզանդիոյ եկեղեցին: Աստի Հռոմայ պատրիարգական գլխաւորութեանը՝ աս իրեք եկեղեցին ալ մասնակից էին: Բայց երբոր Աղեքսանդրիոյ և Անտիոքայ աթոռները՝ թշնամեաց արշաւանքէն անյայտ եղան, ու երբոր Կոստանդնուպօլսոյ աթոռը տկարացաւ և ատենէ մը ետև Արևմուտքէն բաժնուեցաւ, ան ատենը Հռոմ մինակ մնաց, առանց նախանձորդի:

* Աս պատուոյն նախ և առաջ քաղաքական բան մը ըլլալը՝ ան քաղաքներու եպիսկոպոսներուն տրուած առաջին անունը անգամ բացայայտ կիմացընէ. քանզի Էքզարքոս՝ այսինքն քաղաքական կառավարիչ անուանեցին զանոնք: (Տես Քաղկեդոնի ժողովին 8 և 18 կանոնները): Ժամանակէ մը ետև Պատրիարգ կոչեցին, որ եկեղեցականին աւելի յարմար է:

Ուրիշ զօրաւոր օգնութիւն մըն ալ երևան ելաւ․ ազնուութիւնը և սնապաշտութիւնը տիրեցին եկեղեցիին՝ և Հռովմայ ձեռքը մատնեցին զանիկայ, աչուըները կապած և ձեռքերը երկաթը դրած ։

Յիրաւի շատ անգամ ձայն արձակեցին եկեղեցիները, իրենց ազատութիւնը և անկախութիւնը հրատարակելով․ բայց Հռովմ՝ եկեղեցիներուն ձայնը խափանելու համար նոր դաշնակիցներ գտաւ ։ Քանի մը իշխաններ՝ որոնք ժամանակին փոթորիկներէն կերերային իրենց աթոռին վրայ, խօսք տուին օգնել անոր՝ թէ որ կամենայ ան բանիս փոխարէն պաշտպանել զիրենք ։ Անոնք հոգևորական իշխանութիւն կուտային անոր, ան պայմանաւ որ ինքը փոխարէնը աշխարհական իշխանութիւն տայ իրենց ։ Թէոդոս Բ, և Վաղենտինիանոս Գ, հրովարտակ հանեցին թէ՝ Հռովմայ եպիսկոպոսը բովանդակ եկեղեցւոյ կառավարը կամ առաջնորդն է ։ Յուստինիանոս ալ ասանկ հրաման մը հրատարակեց ։

Բայց արդէն Հիւսիսային երկրի անտառներէն դուրս ելեր էին զօրաւոր պաշտպաններ՝ որոնք պապական իշխանութիւնը առաջ տանելու պիտի աշխատէին ։ Բարբարոս ժողովուրդները՝ Վանդաղեցիք Գոթացիք ևայլն, որ Արևմուտք արշաւելով՝ հոն իրենց բնակութիւնը հաստատեր էին, արիւնով և յաղթութեամբ կշտանալէն ետև, ստիպուեցան իրենց ամեհի սուրը խոնարհեցընելու ան մտաւորական իշխանութեանը առջին՝ որուն որ հանդիպեցան ։ Անոնք նոր ընդունած ըլլալով քրիստոնէութիւնը, ամենևին չէին գիտեր թէ ինչ է հոգևորական եկեղեցիին բնութիւնը․ մանաւանդ թէ իրենց միտքը կը յափշտակուէր կրօնքի արտաքին զարդերով․ վասն որոյ կէս մը վայրենի և կէս մը հեթանոս՝ ծառեցան երկրպագութիւն ըրին Հռովմայ քահանայապետին առջևը, իրեն յանձնելով բովանդակ Արևմուտքի զօրութիւնը․ անանկ որ՝ Հիւսիսային կռապաշտ ազգաց ու-

ժեղ ուսերն էին, որ վերջապէս քրիստոնէութեան բարձրագոյն գահը նստուցին Տիբերիս գետոյն եզերքը բնակող հովուներուն մէկը ։

Աս բաները կատարուեցան Արեւմուտքի մէջ եօթներորդ դարուն սկզբնաւորութեանը ։ Ան ատենէն 'ի վեր պապին զօրութիւնը միշտ աճելու վրայ էր ։ Ութերորդ դարուն մէջ կը տեսնենք, որ Հռովմայ եպիսկոպոսները մէկ ձեռքով կը հրեն իրենց օրինաւոր իշխանները, Յունաց կայսրերը, և կը ջանան Իտալիայէն վռնտելու զանոնք. միւսով ալ Գաղղիոյ Թագաւորին հազարապետները կը գգուեն և օգնութիւն կը խնդրեն աս նոր տէրութենէն՝ որ մեծնալու վրայ էր Արեւմուտքը ։ Ապա Արաբացիներուն ձայնը լսելով կը սոսկայ Հռովմ. քանզի անոնք Սպանիոյ տիրելէն ետև՝ կը սպառնային շուտով Իտալիա գալու Պիրինեան և Ալպեան լեռներէն ։ Նոյն ատենը ահուդողի մէջ ինկաւ Աստոլփոսի յանդգնութիւնը տեսնելուն, որ իր բարբարոս Լոմպարտացիներուն գլուխը կանգնելով՝ առիւծաբար կը մռնչէր, և "Յաւէժական Թագաւորին" դրանը առջևը իր թուրը քաշած կը սպառնար բոլոր Հռովմայեցիները սպաննելու ։ Աստի երբ որ Հռովմ կործանելու վրայ էր, և գլխովին զարհուրած չորս դին կը նայէր որ օգնութիւն մը գտնէ իրեն, որոշեց որ Գաղղիացիներուն ապաւինի ։ Պեպինոս բռնաւորը՝ որ յիշեալ հազարապետներուն մէկն էր, և անիրաւութեամբ յափշտակեր էր իր իշխանութիւնը, խնդրեց որ պապը հաստատէ զանիկայ. ան ալ յօժարակամ անոր խնդիրքը կատարեց, որուն փոխարէն՝ Պեպինոս հրատարակեց իր անձը իբրև "Պաշտպան հասարակապետութեանն Աստուծոյ". ու առնելով Լոմպարտացիներէն ան քաղաքները՝ որ անոնք կայսեր ձեռքէն առեր էին, սուրբ Պետրոսի սեղանին վրայ դրաւ անոնց բանալիները՝ փոխանակ տիրոջը դարձընելու. և ձեռքը վեր վերցընելով երդում ըրաւ և ըսաւ թէ՝

մարդու մը համար զէնք առած չէ, այլ միայն իր մեղ-քերուն թողութիւնը ընդունելու Աստուծմէ, և իր ա-ռած քաղաքները սուրբ Պետրոսին նուիրելու համար։ Ահա աս կերպով՝ Գաղղիա հաստատեց պապերուն ժամանակաւոր իշխանութիւնը։

Մեծն Կարոլոս Պեպինոսի որդին թագաւորելով՝ Արեւմտեան բոլոր ժողովրդոցը նաև Հռովմայ տիրեց։ Լեոն Գ արժան համարեցաւ անոր տալ տիտղոսը՝ որ արդէն իշխանութիւնը առեր էր. և յամին 800, Ծննդեան տօնին՝ Պեպինոսի որդւոյն գլուխը դրաւ Հռովմայ կայսերաց թագը։ Այն ժամանակէն 'ի վեր՝ Ֆրանկաց տէրութեանը կը վերաբերէր պապը, վասն որոյ դադարեցաւ իր կապակցութիւնը Արևելքի հետ. բաժ-նուելով փտտած ծառէ մը որ կործանելու վրայ էր, վայրի և ուժեղ ծառատունկի մը հետ պատուաստեցաւ։

Մեծն Կարոլոս՝ իր տկար յաջորդներուն ժառանգու-թիւն թողուց իր իշխանութեան մնացորդները միայն. ու Հռովմ մտածեց թէ՝ ալ իր գլուխ վերցընելու ատե-նը հասեր է։

Աս միջոցին էր որ Իզիդորոսի* սուտ կանոնագիրքը հրատարակուեցաւ։ Աս գրքին մէջ՝ ուր որ չինծու պա-պական կոնդակներ ժողվուած էին, հեղինակը պապեր կը հանէ Հերոնիմոսի ժամանակէն մէկ՝ երկու կամ երեք դար առաջ. և իրենց գրութիւններուն մէջ վկայու-թիւններ բերել կուտայ անոնց, սրբոյն Հերոնիմոսի Լա-տիներէն թարգմանած Աստուածաշունչէն՝ որ այնքան շատ ժամանակ ետքը եղաւ։ Նաև կը ցուցընէ թէ՝ Վիկ-տոր Հռովմայ եպիսկոպոսը՝ 192 թուականին, նամակ կը գրէր Թէոփիլոսի՝ որ 385ին Աղէքսանդրիոյ արքեպիս-կոպոսը եղաւ։ Աստախօս հեղինակը՝ աս չինծու պապա-կան օրինադրութիւններովը կը ջանար հաստատել թէ՝

* Իզիդորոս՝ Սպանիայի Սեվիլիա քաղաքին եպիսկոպոսն էր, վեցե-րորդ դարուն մէջ։ (Ծանօթ. Թարգմանչին)

բոլոր եպիսկոպոսները իրենց իշխանութիւնը առեր են Հռովմայ եպիսկոպոսէն, որ ան ալ՝ անմիջապէս Յիսուս Քրիստոսէ առեր է իրենը։ Զամչցան պապերը այսպիսի անարգ և մոռացածին բանի մը ապաւինելու, ու աս անամօթ առասպելը՝ շատ դարեր Հռովմայ զինարանը եղաւ։

Այսու ամենայնիւ՝ քահանայապետներուն մոլութիւնները և ոճիրները առեն մը 'ի կախ թողուցին յիշեալ կանոնագիրքին գործադրութիւնը։ Ան առենը քանի մը անպարկեշտ կնիկներ կըթագաւորէին Հռովմայ մէջ։ Թէոդորա և Մարոզիա՝ իրենց ուզածին պէս կըհաստատէին կամ իշխանութենէ կըզրկէին, Քրիստոսի եկեղեցին ան կարծուած գլուխները. և իրենց տարփածուները՝ իրենց որդիքը և իրենց թոռները կընստեցընէին սուրբ Պետրոսի աթոռը։ Հռովմ՝ անկարգութեան ընդարձակ թատրոն մը դարձաւ, որուն տիրապետելու համար՝ Իտալիոյ խիստ երևելի տները մէկզմէկու հետ կըկռուէին. բայց սովորաբար Թուսքանայի կոմսերը յաղթող կըլլային։ Աս գերդաստանը՝ 1033ին յանդըգնեցաւ քահանայապետական աթոռը նստեցընել տասներկու տարեկան նորահասակ տղայ մը անառակութեան մէջ մեծցած, Բենեդիկտոս Թ. անունով, որ պապական իշխանութիւնը առնելէն ետքն ալ իր սոսկալի խայտառակութիւնները շարունակեց *։ Իրեն հակառակ կողմն ելաւ Սեղբեստրոս Գը ընտրեց իր տեղը։ Իսկ Բենեդիկտոս պապը՝ իր խղճմտանքը չնութիւններով բեռնաւորած, և ձեռքը իր մարդասպանութեանցը արիւնովը շաղախած (), վերջապէս քահանայապետութիւնը վաճառեց Հռովմայեցի եկեղեցականի մը՝ Յովհաննէս կո-

* Ցեսիտէրիոս՝ աբբայ Քասինոյի, ետքը պապ Վիկտոր Գ. անունով, իր գրքին մէջ՝ «Սուրբ Բենեդիկտոսի հրաշքներուն վրայով գրուած», գիրք Գ։

() Պօնիզօ՝ եպիսկոպոս Սութրիի, «Գիրք առ բարեկամն» ըսուած գործոյն մէջ։

չուած, որ պապ եղաւ Գրիգոր Զ անունով :

Գերմանիոյ կայսրերը խիստ բարկացած, սրով մաքրեցին Հռովմայ մեծամեծ անկարգութիւնները : Տէրութիւնը՝ իր կայսերական իշխանութեան իրաւունքը բանեցընելով, վերցուց եռապսակ Թագը ցեխին մէջէն՝ ուր որ ինկեր էր, և անարգուած պապականութիւնը ազատեց, արժանաւոր մարդոց ձեռքը յանձնելով աս իշխանութիւնը : Հենրիկոս Գ՝ 1046ին երեք պապ փոխեց, և յետոյ իր ընտրութեամբը չորս Գերմանացի պապեր մէկզմէկու յաջորդեցին : Երբոր Հռովմայ քահանայապետը կըմեռնէր, աս եկեղեցւոյ երեսփոխանները կայսեր քովը կերթային, ինչպէս և ուրիշ վիճակներու փոխանորդները, իրմէն նոր եպիսկոպոս մը խնդրելու համար : Ան առենը կայսրը տեսաւ հաճութեամբ սրտի, որ պապերը գէշ սովորութիւնները կըբարեկարգէին, եկեղեցին կամրացընէին, ժողովներ կընէին, առաջնորդներ կըդնէին կըփոխէին, առանց օտարազգի Թագաւորներէն հրաման սպասելու. քանզի պապականութիւնը ասանկով՝ ալ աւելի կըփառաւորէր զկայսրը՝ իբրև տէր ու իշխան իր վրայ : Բայց այսպիսի բաներու Թոյլտուութիւն ընելը շատ վտանգաւոր էր կայսեր : Քանզի առ սակաւ սակաւ ուժովնալով պապերը՝ կրնային նաև կայսեր անգամ յանկարծ դէմ կենալու : Երբ որ գազանը մեծնալու ըլլար, զինքը ջերմացընող ծոցն ալ պիտի բզքտէր. ինչպէս որ յիրաւի ասանկ եղաւ :

Աս տեղս՝ պապականութեան համար նոր Թուական մը սկսաւ : Անիկայ իր նուաստ վիճակէն յանկարծ բարձրանալով, շատ չգնաց՝ Թագաւորները անգամ ոտքին տակը առաւ :

Լևոն Թ՝ Գլունիի հռչակաւոր մենաստանէն անցնելու առենը, իր հետը առաւ անոր մեծաւորը՝ որ Հիլտէպրանտ կըսուէր, ու Հռովմ տարաւ : Ան նոյն ժամանակէն Հիլտէպրանտ պապականութեան հոգին ըլ-

լալով՝ վերջապէս ինքը եղաւ բուն պապականութիւնը ։ Անիկայ եկեղեցին կառավարեց շատ քահանայապետներու անունովը, ու ետքը ինքն ալ պապ ընտրուեցաւ՝ Գրիգոր Է կոչուելով ։ Աս խորագէտ մարդը միտքը դրաւ որ Եկեղեցիին տեսանելի գլուխ մը հաստատէ, իբրև փոխանորդ Յիսուս Քրիստոսի ։ Իր երևակայութիւնը՝ Նախնի հեթանոսական Հռովմայ տիեզերական իշխանութեան յիշատակովը լցուած, իր եռանդը արծարծեցաւ ։ Կամեցաւ որ պապական Հռովմը վերստին ձեռք բերէ, ինչ որ կայսերական Հռովմը կորսնցուցած էր ։ Որչափ որ աներկիւղ, փառասէր և իր միտքը դրած բաներուն վրայ անդրդուելի էր, այնչափ ալ յաջողակ և քաղցրահամբոյր էր՝ ղանոնք գլուխ տանելու միջոցները բանեցընելու մէջ ։ Իր առաջին գործը եղաւ եկեղեցական պետութիւնը կարգադրելու. վասն զի պէտք էր որ առաջ զօրացընէ զինքը՝ որ ետքը կայսեր դէմ դնելու կարող ըլլայ ։ Հռովմայ մէջ ժողով մը ընելով՝ հոգևոր հովիւները իրենց ընտանիքներէն բաժնեց, և պարտաւորեց ղանոնք որ բոլորովին եկեղեցական դասակարգութեանը իրենց անձերը նուիրեն ։ Ամուսնութեան աս օրէնքը՝ բովանդակ եկեղեցւոյ ուխտը՝ գրեթէ վանական կարգի մը փոխելու էր ։ Ուստի Հիլտէպրանտի նուիրակները քաղաքէ քաղաք պտըտելով՝ հոգևոր հովիւները իրենց օրինաւոր կնոջմէն կըբաժնէին. ու երբոր հարկը կըպահանջէր՝ ինքը պապն ալ խառնիճաղանճ ժողովուրդը ոտք կըհանէր ամուսնացած պաշտօնեաներուն դէմ ։

Բայց Գրիգոր Է՝ ամէն բանէն աւելի միտքը դրեր էր կայսերական իշխանութենէն բաժնել զՀռովմ, ու ինքնագլուխ տէրութիւն մը ընել ։ Ուստի իր փառքը միացընելով ուրիշ մեծամեծ հպատակներուն իրաւանցը հետ, ազնուապետութեան կուսակիցներ գտաւ. ապա բոլոր եկեղեցականներուն բանադրանքով արգիլեց որ

իրենց պաշտօնը բնաւ կայսրէն չընդունին ։ Ջնջեց ան վաղեմի կարգը որ եկեղեցիները և իրենց հովիւները՝ կայսեր իշխանութեանը հետ կըմիաւորէին, որպէս զի անոնց [illegible] ալ քահանայապետական աթոռին յարէ ։ Ուզեց որ բոլոր քահանաները, թագաւորները և ժողովուրդները՝ հզօր ձեռքով մը նոյն աթոռին հետ կապակցէ, որ պապը տիեզերական ինքնակալ մը ըլլայ ։ Իւրաքանչիւր քահանայ՝ միայն Հռոմէն վախնալու էր, միայն անկէց ակնկալութիւն պիտի ունենար ։ Երկրի տէրութիւնները և իշխանութիւնները իր հրամանին տակն ըլլալու էին. բոլոր թագաւորները պիտի դողային Հռոմայ մէջի նոր Արամազդին կայծակներէն ։ Վա՜յ ան իշխանին որ դէմ կըկենայ. քանզի պապը՝ անոր հպատակները իրենց հաւատարմութեան երդումէն իսկոյն կարձըկէ, ու անոր բոլոր երկիրը արգելքի տակ կը դնէ ։ Ան ատենը Աստուածային պաշտօնը կըդադրի հոն. եկեղեցւոյ դռները կըգոցուին. զանգակները ձայն չեն հաներ. խորհուրդները չմատակարարուիր. անէծքը մինչև մեռելներուն կըհասնի. անանկ որ երկիրը աս գոռոզամիտ քահանայապետին ձայնը լսելով, կըդղրդէ զանոնք գերեզմանական հանգստութենէ ։

Պապը՝ որ իր հաստատութեան առջի օրէն սկսեալ, նախ Հռոմայեցի կայսրերուն՝ ապա Ֆռանկ կայսրերուն, և վերջապէս Գերմանիոյ կայսրերուն հպատակ էր, ահա հիմա ինքնագլուխ եղաւ, հաւասարելով անոնց, կամ գուցէ գերազանցելով ալ ։

Այսպէս ամէն բան փոխուեցաւ եկեղեցւոյ մէջ ։ Ի սկզբան՝ հաւասար եղբայրներու ժողով մըն էր, և ահա հիմա՝ ինքնագլուխ տէրութիւն մը իր ծոցը հաստատուեցաւ ։ Բոլոր քրիստոնեաները կենդանի Աստուծոյ քահանաներն էին, և խոնարհ հովիւները կառաջնորդէին անոնց, բայց հիմա աս հովիւներուն մէջէն հըպարտ գլուխ մը բարձրացաւ. խորհրդաւոր բերան մը

գործողութեանց լեցուն խօսքեր բառ. երկրէն ձեռք մը բոլոր մարդիկը՝ մեծ և փոքր, աղքատ և հարուստ, ազատ և գերի, բռնադատեց որ իր իշխանութեան կնիքը վրանին կրեն։ Զանազան քրիստոնեայ ազգեր հպատակեցան սա հոգևորական թագաւորին, որ յաղթելու իշխանութիւնը տար։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԲԱՅՑ քրիստոնէական կրօնի պատմութեանը մէջ թագաւորող սկզբունքին հետ՝ ուրիշ մըն ալ անոր վարդապետութեանը մէջ կըթագաւորէր։ Այն ասիկայ էր քրիստոնէութեան ան մեծ սկզբունքը, այսինքն՝ շնորհօք փրկութեան սկզբունքը՝ ձրի թողութեան սկզբունքը. ուսկից որ կըհետևէր թէ մարդս ազատուած է Աստուծմէ, և թէ իրեն անհնարին է բուն իր զօրութիւնովը նորէն հաղորդութիւն ստանալու սա Ամենասուրբ Էակին հետ։ Իսկ սոր հակառակ սկզբունքը, այսինքն՝ մարդուս փրկութիւնը իրմէն գալու սկզբունքը, ան և աղբիւր է ամէն տեսակ մոլորութեանց և ապականութեանց։ Անշուշտ ան առաջինը հարկաւոր էր աստուածային կրօնը բոլոր մարդկային կրօններէն զատելու համար։ Այսու ամենայնիւ շատ չանցաւ մեծ սխալմունք մը ըրին, չճանչցան փրկարար հաւատոյ զօրութիւնը։ Հաւատքը՝ Պօղոս առաքելոյ բառերին նայելով, ան միջոցն է՝ որով միայն կրնայ հաւատացեալը ժառանգել ան փրկութիւնը, որ Աստուծոյ Որդին մարդեղութեամբը և մահուամբը. պատրաստեր է իրեն համար։ Հաւատքը ան ձեռքն է՝ որ կըբռնէ զՅիսուս Քրիստոս. և ան նոյն ատենէն՝ Քրիստոս է ամէն բանէ մարդուն համար և մարդուն

մէջ ։ Անիկայ աստուածային կեանք մը կը հաղորդէ մարդկային բնութեանը . և մարդս այսպէս նորոգուած , անձնասիրութեան և մեղաց բռնութենէն ազատուած , նոր փափաքներ կունենայ և նոր բարեգործութիւններ կընէ ։ Իսկ որ հաւատքը՝ փրկութիւնը իրեն չսեփհականէր , ոչինչ բան մըն է ան . բովանդակ քրիստոնէութիւնը կը վերջանի , նոր կեանքին աղբիւրը կը ցամքի . և կրօնը հիմնայատակ կը կործանի ։

Ահա ասանկ եղաւ ան ժամանակները ։ Հաւատոյ ալ գործնական գաղափարը հետզհետէ մոռցուեցաւ . և շատ չանցաւ՝ հաւատքը անանկ իմացուեցաւ՝ ինչպէս որ հիմա ալ շատերը այնպէս կը հասկընան . այսինքն՝ մտքի անգործ հաւանութիւն մը , կամ հպատակութիւն մը իշխանութեան ։

Իսկ առաջին մոլորութենէն՝ հարկաւ երկրորդ մոլորութիւն մըն ալ ծագեցաւ ։ Որովհետև հաւատքը իր գործնական ներգործութենէն զրկուելով՝ ալ այնուհետև անհնար եղաւ ըսել թէ՝ անիկայ միայն կարող է փրկել ։ Բարեգործութիւնները ալ ևս անոր ետևէն չերթալով՝ մարդիկ բռնադատուեցան զանոնք հաւատքին քովը դնելու և անոր հետ հաւասարելու ։ Ասանկ մտաւ եկեղեցւոյ մէջ ալ վարդապետութիւնը՝ թէ մարդս կարդարանայ հաւատքով և բարի գործքերով ։ Ան աւետարանական միաձայն սկզբունքին՝ որ մէկ տեղ կը կապէ արդարանալը և բարի գործելը , շնորհքը և օրէնքը , հաւատոյ վարդապետութիւնը և գործնական պարտաւորութիւնը , յաջորդեց մէկ ցաւալի մոլորութիւն մը որ կրօնը և բարոյականը՝ երկու մէկզմէկէ գլխովին տարբեր բաներու կըբաժնէ ։ Ահա մէկ ալ տարբեր մոլորութիւն մը՝ որ երկուքը բաժնելով ան բանը՝ որն որ կեանք ունենալու համար հարկաւոր էր միացած ըլլալու , և հոգին մէկ կողմ ու մարմինը մէկալ կողմ ձգելով . մահ պատճառեց ։ Ասանկ որ՝ իրաւացի եղաւ ա-

ռաքելական ան խօսքը թէ՝ "Հոգիով սկսեցիք , ու հիմա մարմնով կը վերջացնէք":

Ուրիշ մեծ մոլորութիւն մըն ալ եղաւ աղմկեց շնորհաց վարդապետութիւնը . և ասիկայ էր Պեղագեանց աղանդը : Պեղագոս կըսէր՝ թէ մարդկային բնութիւնը վատթարացած չէ , թէ անոր մէջը բնաւ ժառանգութեամբ եղած ապականութիւն մը չկայ , և թէ անիկայ բարի ընելու կարողութիւնը առած է , բաւական է որ կամենայ ընել : Թէ որ աս բարի ընելը քանի մը արտաքին գործքերու վրայ կըկայանայ նէ , Պեղագոս իրաւունք ունի . բայց թէ որ նայինք ան սկզբունքներուն , ունկից որ աս արտաքին գործքերը յառաջ կուգան , ան ատենը միշտ կը տեսնենք մարդուս մէջը կատարեալ անձնասիրութիւն , աստուածուրացութիւն , պղծութիւն և ակարութիւն : Պեղագեան վարդապետութիւնը՝ որն որ սուրբն Օգոստինոս արտաքսեց եկեղեցիէն , երբոր առաջ՝ դէմ յանդիման երևցաւ , նորէն կողմնակի միայն տեսնուիլ սկսաւ իբրև Կիսապեղագեան , Օգոստինեան աձերու երևոյթովը ծածկուած . ու զարմանալի արագութեամբ տարածուեցաւ քրիստոնէից մէջ : Աս մոլորութեան վտանգը աս տեղս յայտնի եղաւ , որ առաքինութիւնը արտաքին բաներու վրայ կայացընելով և ոչ ներքին , մեծ յարգ մը տալ տուաւ լոկ արտաքին գործքերուն , ծիսական պաշտամունքներուն և մարմնաւոր ապաշխարանքներուն . որչափ որ աս կրթութիւնները կընէին , այնչափ աւելի սուրբ կըսեպուէին , ասանցմով երկինքը կըգնէին . և շատ չանցած անանկ մարդիկ ելան երևցան՝ (զարմանալի գաղափար) որ հարկաւոր եղածէն աւելի սրբութիւն ունեցան :

Պեղագեան աղանդը՝ հաւատոյ վարդապետութիւնը խանգարելով , եկեղեցականներուն զօրութիւնը աւելցուց . ան նոյն ձեռքովը՝ որ շնորհքը նուաստացուց , անով եկեղեցին բարձրացուց . քանզի շնորհքը՝ Աստուած

է, և եկեղեցին մարդն է ։ փրկութիւնը Աստուծոյ ձեռքէն վերցուած՝ քահանաներուն ձեռքը ինկաւ, որոնք Աստուծոյ տեղ դրին իրենքզինքնին . անանկ որ՝ Թողութեան կարօտ հոգիները ալ երկինքը չէին նայեր, հապա միայն եկեղեցիին, և մանաւանդ անոր կարծեցեալ գլխուն։ Կուրացեալ մաքերը՝ Աստուծոյ փոխանորդը սեպեցին Հռովմայ քահանայապետը ։ Ասկից յառաջ եկան պապերուն մեծութիւնը, փառքը և ուրիշ անպատմելի գէշ հետեւանքները ։ Ասկէց զատ՝ Պեղագեան մոլորութիւնը սորվեցնելով՝ թէ մարդս կրնայ կատարեալ սրբութեան հասնիլ, հաստատեց նաև թէ սուրբերուն և մարտիրոսներուն արժանաւորութիւնները կրնան եկեղեցիին օգնել . վասն որոյ մասնաւոր զօրութիւն մըն ալ անոնց բարեխօսութեանը ընծայեցին, անոնց աղօթք և աղաչանք մատուցին, զանոնք օգնութեան կանչեցին իրենց կենացը թշուառութիւններուն մէջ ։ Ահա այսպէս ճշմարիտ կռապաշտութիւն մը՝ կենդանի և ճշմարիտ Աստուծոյ երկրպագութեանը յաջորդեց ։

Աս աղանդը շատցուց նաև ծէսերը և արարողութիւնները . քանզի մարդս՝ կարծելով թէ կրնայ և թէ պարտի բարի գործքերով շնորհաց արժանաւոր կացուցանել զինքը, ալ աւելի յարմար բան մը չգտաւ զանիկայ ձեռք բերելու, բայց միայն կրօնական արարողութիւնները ։ Ուստի արարողութեանց օրէնքը հետզհետէ չափէ դուրս մեծնալով ու բազմապատկուելով, շատ չանցաւ գրեթէ բարոյական օրէնքին հաւասարեցաւ ։ Եւ այսպէս քրիստոնէից խղճմտանքը նորէն բռնաւորեցաւ անանկ լուծով մը՝ որ անտանելի կոչուած էր առաքելոց ժամանակը ։ Գործ . ժե . 10 ։

Բայց ան որ ամենէն աւելի քրիստոնէութիւնը այլափոխեց՝ աս աղանդին հնարած ապաշխարանքի սահմանադրութիւնն էր ։

Համառօտով՝ միայն Քրիստոսէն Թողութիւն յուսա-

լու տեղը, գլխաւորապէս կը յուսային որ եկեղեցիէն թողութիւն առնեն՝ ապաշխարանք քաշելով։

Մեծ բանի մը տեղ դրին ըղձման արտաքին նշանները, արտասուքը, ծոմապահութիւնը և մարմնոյ ճնշումը. մոռցան սրտի ներքին նորոգութիւնը, որ անով միայն ճշմարիտ դարձի գալը կը հաստատուի։

Այս որովհետև խոստովանութեան և ապաշխարանքի վերաբերեալ գործքերը աւելի դիւրին են, քան թէ բոլորովին մեղքէն դադարիլը և մոլութենէն հրաժարիլը, վասն որոյ շատերը մարմնոյ ցանկութիւններուն դէմ մաքառումը զանց ընելով՝ ընտրեցին առաջ կշտացունել զանոնք ու ետքը անոնց փոխարէնը վճարել, քիչ մը անձերնին նեղելով։

Ապաշխարանքի գործքերը՝ Աստուծով եղած փրկութեան տեղը անցնելով, շատցան եկեղեցւոյ մէջ, Տերտուղիանոսի ժամանակէն սկսեալ մինչև երեքտասաներորդ դարը։ Պէտք էր ծոմ բռնել, բոպիկ պտըտիլ, շապիկ չհագնիլ, և այլն. կամ թողուլ իր տունը և իր հայրենիքը՝ հեռաւոր երկիրներ երթալ. կամ հրաժարիլ աշխարհէ և վանական ըլլալ։

Մետասաներորդ դարուն սկսաւ խարազանով ինքզինքը ծեծելու սովորութիւնը. և ասիկայ ժամանակէ մը ետև խելագարութեան պէս բան մը եղաւ Իտալիոյ մէջ՝ որ ան ատենները սաստիկ աղմկած էր։ Ազնուականները և գեղջիները, երիտասարդները և ծերերը, և մինչև անգամ փոքրիկ տղայքը, հարիւրաւոր՝ հազարաւոր և բիւրաւոր մէկ տեղ հաւաքուած, գեղերուն և քաղաքներուն մէջէն կանցնէին երկու երկու, ուրիշ հանդերձ մը չունենալով վրանին, բայց ղենջակ մը միայն մէջքերնին կապած. և այսպէս թափօրով եկեղեցիներուն այցելութեան կերթային՝ նաև սաստիկ ձմեռուան մէջ։ Ձեռքերնին մէյմէկ խարազան ունէին ասոնք, և անով անխնայ ինքզինքնին կը ծեծէին. անանկ որ՝ աղաղակներու և հեծեծանաց

ձայները՝ փողոցները կը հնչեցընէին, և լսողներուն աչքերը արցունքով կը լեցընէին։

Բայց մեծութիւնը դեռ աս աստիճանը չհասած, շատ մարդիկ՝ քահանաներուն տուած ներբողութիւններէն ձանձրանալով, կը հառաչէին ու ազատութեան կը փափաքէին։ Ըն ատենը քահանաները աս բանիս առաջքը առնելու համար՝ ան փոխանակութեան կանոնը և սովորութիւնը հնարեցին, որ հռչակաւոր է Ներողութիւն անունով. և սկսան ասանկ ըսել. "Ով ապաշխարողք, դուք չէք կրնար ձեր ապաշխարանքները անթերի կատարել. բայց հոգ չէ, մենք որ Աստուծոյ քահանաներն ենք և ձեր հոգիները, ահա վրանիս կառնենք աս ծանր բեռը. և դուք մեզի դրամ հատուցէք աս բանիս համար"։

Շատ չանցած հասկըցաւ պապը՝ թէ աս ներողութիւններէն կրնայ մեծ օգուտ քաղել։ Աղէքսանդր Տէհալէս որ "Անհաղթ" վարդապետ կը կոչուէր, երեքտասաներորդ դարուն հնարեց մեկ վարդապետութիւն մը՝ որ շատ յարմար էր պապականութեան աս մեծ նպատակը հաստատուն պահելու. և աս վարդապետութիւնը՝ Կղեմէս Է կոնդակով մը հաստատեց թէ հաւատոյ մասն է. "Յիսուս Քրիստոս, կըսէր, շատ աւելի բան ըրաւ, քան որչափ հարկաւոր էր զմարդիկ Աստուծոյ հետ հաշտեցընելու համար. իր արիւնէն միայն մեկ կաթիլը բաւական էր աս բանիս. բայց անիկայ շատ արիւն թափեց, որպէս զի իր Եկեղեցիին անանց գանձ մը թողու, որ յաւիտենականութիւնը անգամ կարող չէ հատցընել զանիկայ։ Նախնապէս սուրբերուն արդիւնքը՝ պէտք եղածէն աւելի, և իրենց պարտաւորութիւններէն աւելի ըրած գործերնուն արժէքը ևս՝ աս գանձը շատցուցին. ու աս պահպանութիւնը և մատակարարութիւնը յանձնուած է, երկրիս վրայ՝ Յիսուս Քրիստոսի փոխանորդին"։

Աս մեծ գանձին հնարքը շատ մը սկսաւ տարածուիլ

ու յառաջ երթալ : Աղեքսանդրիայի հին փիլիսոփաները կրակի մը վրայով խօսեր էին , որուն մէջ մարդիկ պիտի մաքրուէին . և շատ վաղեմի վարդապետներն ալ այս գաղափարը ընդուներ էին : Ուստի այս փիլիսոփայական կարծիքը՝ Հռոմ իբրև վարդապետութիւն եկեղեցւոյ հրատարակեց : Պապը կոնդակ մը հանեց , և անով քաւարանն ալ իր ժառանգութեանը հետ միացուց : Վճռեց թէ՝ մարդս քաւարանին մէջ պիտի մաքրուի և քաւէ այն մեղքը՝ որն որ չէ կրցեր այս աշխարհիս մէջը քաւելու , և թէ ներողութիւնները կրնան հոգիները ազատել այն միջանկեալ վիճակէն , ուր տեղ մեղքերնին պիտի արգիլէ զիրենք : Թովմաս Ագուինացին "Բովանդակութիւն աստուածաբանութեան" կոչուած իր հռչակաւոր գրքին մէջը այս նիւթիս վրայով խօսեցաւ : Մարդոց մտքերը երկիւղով լեցընելու մէկ միջոց մըն ալ զանց չընելով , զարհուրելի կերպերով պատկերներու մէջ նկարեցին այն տանջանքները՝ որ մաքրողական հուրը հոն գացողներուն քաշել կուտայ : Մեր օրերը անգամ՝ դեռ կը տեսնուին Հռոմէականաց երկիրներուն մէջ այսպիսի պատկերներ՝ եկեղեցիները կամ ճամբու գլուխները դրուած , որոնց վրայ կը տեսնենք որ խղճալի հոգիները՝ բոցավառ կրակին մէջէն մեծ տագնապով օգնութիւն կը խնդրեն : Ո՞ր ապառաժ սիրտ կրնայ արդեօք դիմանալ և չտալ այն ազատիչ դրամը՝ որ Հռոմայ գանձանակը իյնալով պիտի փրկէ զհոգին այնքան սոսկալի տանջանքներէն :

Քիչ մը առնենք ետքը՝ այս առուտուրը կարգի դնելու համար , ներողութեանց հռչակաւոր և միանգամայն գարշելի գնահատութիւնը հնարուեցաւ , (հաւանականաբար Յովհաննէս ԻԲ պապին ձեռքովը) որն որ քառասուն անգամէն աւելի տպեցին : Եւ թէ որ այն գրքին մէջը եղած բոլոր սոսկալի խօսքերը դնէինք հոս , անշուշտ մեծ զզուանք կուտային ընթերցողաց : Ազգա-

ըլլալու համար, բոլոր քրիստոնէից երկիրներէն հրապարակները տանիլ սկսան Յոբելեանը, իր ներողութիւններովը մէկ տեղ ։ Եւ հարկաւոր չէր որ մէկը իր տունէն հեռանայ ճամբորդութիւն ընէ․ քանզի ինչ որ ուրիշները կը փնտռէին Ալպեան լեռներուն անդիի կողմը, իւրաքանչիւր ոք իր տանը դուռը կրնար գտնել ։

Այսպէս մոլորութիւնը տարածուելով՝ վերջին աստիճանը հասեր էր, և ահա ան ատենը բարեկարգողը ոտք ելաւ ։

Ահա տեսանք թէ ինչպէս փոխուեցաւ ան սկզբունքը՝ որ քրիստոնէական կրօնին պատմութեանը պէտք տիրեր․ տեսանք նաև թէ ինչպէս փոխուեցաւ ան մէկալ սկզբունքը՝ որ քրիստոնէական կրօնին վարդապետութեանը պէտք տիրեր ։ Երկուքն ալ անյայտ եղեր են ։

Մարդուն և Աստուծոյ մէջ տեղը միջնորդներու կարգ մը հաստատելը, և Աստուծոյ տուած փրկութիւնը՝ բարի գործքերով, ապաշխարանքներով և ստակով ծախու տանել տալը․ ահա աս է պապականութեան գործը ։

Իսկ ամենուն աչքին ճամբայ բանալը՝ որ մարդիկ առանց ան իշխանութեանը՝ որ եկեղեցի կը կոչուի, առանց ուրիշ միջնորդի մը՝ բայց միայն Յիսուս Քրիստոսի, Աստուծոյ ձրի տուած յաւիտենական կենաց մեծ պարգևը ընդունին․ ահա ասիկայ է քրիստոնէութեան և բարեկարգութեան գործը ։

Պապականութիւնը ահագին պարիսպ մըն է, որ շատ դարերու աշխատանքովը շինուած է՝ մարդուն և Աստուծոյ մէջ տեղը ։ Ով որ մէկը կամենայ միւս կողմը անցնիլ, կամ ստակ վճարելու է և կամ տանջուելու է․ բայց տակաւին պէտք չկրնայ ան պատէն անցնիլ ։

Իսկ բարեկարգութիւնը ան զօրութիւնն է՝ որ աս պարիսպը կործանեց, զՔրիստոս մարդոց տուաւ, և այսպէս դիւրին ճամբայ մը բացաւ անոնց՝ իրենց Արարչին երթալու ։

Գաղափարութիւնը՝ Աստուծոյ և մարդուն մէջ տեղը եղածն ըմբռնելը :
Իսկ քրիստոնէական կրօնը և բարեկարգութիւնը՝ մարդս դէմ առ դէմ Աստուծոյ կըբերեն :

## ՀԱՏՈՒԱԾ Գ

ՏԵՍՆԵՆՔ հիմա թէ ինչ վիճակի մէջ էր եկեղեցին՝ բարեկարգութենէն առաջ :

Քրիստոնեայ ժողովուրդները ալ չէին տեսներ, որ կենդանի և սուրբ Աստուծմէ ընդունեցին յաւիտենական կենաց նոր պարգևը . այլ աս պարգևը ձեռք բերելու համար՝ կ'երթային տնապաշտ, երկչոտ և չափոթած երևակայութենէ մը ծնած ամէն տեսակ միջոցներուն : Աշխարհը լեցուեցաւ սուրբերով և միջնորդներով, որ անոնք աս պարգևը առնել տան մարդոց . երկիրը լեցուեցաւ բարեպաշտութեան գործքերով, զոհերով, կրթութիւններով և արարողութիւններով, որ նոյն շնորհքը ընդունելու արժանաւոր կացուցանեն զմարդիկ : Բարեկարգութենէն առաջ՝ քրիստոնէական կրօնը ինչ վիճակի մէջ ըլլալը՝ աղէկ կընկարագրէ Միկոնիոս, որ շատ ժամանակ կրօնաւորութիւն ըրաւ, ու ետքը գործակից ընկեր եղաւ Լութերի :

« Քրիստոսի չարչարանքները և արդիւնքը՝ կըսէ ան, սնոտի պատմութիւն մը կըհամարուէին, կամ հոմերոսի առասպելներուն կարգը դրուած էին : Բնաւ չէր խօսուեր ան հաւատքին վրայ՝ որով կարող է մարդ Քրիստոսին արդարութեանը վստահանալով՝ յաւիտենական կենաց ժառանգորդ ըլլալու : Անոնց նկարագրութեանը նայելով՝ Քրիստոս խիստ դատաւոր մըն էր, և պատրաստ դատապարտելու ամէն անոնք՝ որ սրբոց բարեխօ-

սութեանը և պապերուն ներողութեանցը չէին ապաւի-ներ ։ Քրիստոսի տեղը՝ ուրիշ բարեխօսներ կընձեռացը-նէին , նախ՝ Կոյսն Մարիամ , և ապա սուրբերը՝ որոնց թիւը անդադար աւելցընելու վրայ էին պապերը ։ Աս միջնորդները՝ միայն անոնց համար բարեխօսութիւն պի-տի ընէին , որ իրենց վանքերուն կամ կրօնական կար-գերուն քովը բարի անուն մը ստացեր էին ։ Այս ասոր համար ընել պէտք էր՝ չէ թէ ինչ որ Աստուած իր խօսքին մէջ կը հրամայէ , հապա ուրիշ բազմաթիւ գործքեր՝ որ կրօնաւորները և քահանաները հնարած էին , և որոնցմով շատ ստակ կը շահէին ։ Պէտք էր եր-գել՝ աղաղակել գիշեր ցորեկ ։ Ասչափ ուխտատեղիներ կային , որչափ որ լեռներ , անտառներ կամ ձորեր կան ։ Բայց բոլոր աս ներողութիւններէն ստակ տալով կրնար մէկը խալըսիլ ։ Սուտի վանքերուն և քահանաներուն կը տանէին ստակ և ամէն տեսակ պարգևներ , հաւեր , սագեր , բադեր , հաւկիթներ , մոմ , իւղ , պանիր , ևայլն ։ Ան ատենը երգերուն ձայնը կը հնչուէր , զանգակները կը զարնուէր , անուշահոտ ծխանելիքներով տաճարը կը լեցուէր , զոհեր կընուիրուէր , խաչանոցները բա-րիքներով կը հարստանային , գինիի բաժակները մէկ-զմէկու կը զարնուէին , և վերջապէս պատարագներով՝ կը լմընցունէին իրենց գործը ։ Եպիսկոպոսները՝ քարոզ չէին տար , այլ զբաղած էին քահանաներ ձեռնադրելու , զանգակներ , կրօնաւորներ , եկեղեցիներ , մատուռներ , պատկերներ , գրքեր և գերեզմաններ օրհնելու . և աս ամէնը մեծ եկամուտ կը բերէր իրենց ։ Մեռելի ոսկոր-ներ , բազուկներ և ոտքեր , արծըթէ կամ ոսկիէ տու-փերու մէջ կը պահուէին , և զանոնք համբուրել կուտա-յին պատարագի ժամանակ , ըստ որում աս ալ շատ ստակ կը բերէր իրենց ։

“Բոլոր աս մարդիկը կը հաստատէին թէ պապը՝ Աս-

տուծոյ փոխանորդը * ըլլալով , չկրնար սխալիլ , և բնաւ ընդդիմաբանութեան չէին համբերեր" :

Վիթդէմպէրկի ամենայն Սրբոց եկեղեցւոյն մէջ՝ կը ցուցընէին "Նոյի տապանին մէկ կտորը · քիչ մը ձանձախարիթ՝ երեք մանկանց հնոցէն առնուած · տախտակի մը կտոր՝ Յիսուս Քրիստոսի մսուրէն · Սրբոյն Քրիստափորի մօրուքին մազերը · և տասնուինը հազար ուրիշ շատ կամ քիչ յարգ ունեցող մասունքներ · Շաֆհաուսէնի մէջ կը ցուցընէին սուրբ Յովսէփայ շունչը՝ որ Նիկոդեմոս իր ձեռքնոցին մէջը ընդուներ էր : Վիթդէմպէրկի մէջ կը պտըտէր Ներողութեանց վաճառական մը , որ իր ապրանքը կը ծախէր գլուխը զարդարած մեծ փետուրով մը՝ որ Միքայէլ հրեշտակապետին թեւէն հանուած էր : Բայց հարկաւոր չէր հեռաւոր տեղուանք երթալ՝ աս անգին գանձերը փնտռելու համար · քանզի մասունքի վաճառականները՝ երկրի ամէն կողմը կը պտըտէին : Երկնից թագաւորութիւնը անյայտ եղեր էր , և մարդիկ անոր տեղը երկրի վրայ հաստատեր էին այսպիսի ամօթալից վաճառանոց մը :

Ահա ասանկ ամբարիշտ ոգի մը տիրած էր կրօնին , և եկեղեցւոյ խիստ սրբազան յիշատակութիւնները ու ան երջանիկ ժամանակները՝ որ զհաւատացեալները կը հրաւիրէին մտքերնին ամփոփելու և եղբայրական սէր ունենալու , խեղկատակութիւններով և գլխովին հեթանոսական սրբապղծութիւններով անարգուած էին : "Զատկական ծաղրաբանութիւնը և ծիծաղները" եկեղեցական արարողութիւններուն կարգը գլխաւոր բան մը կը սեպուէին : Յիսուս Քրիստոսի յարութեան տօնը ուրախութեամբ կատարելու համար , կը ջանային որ ժողովուրդը ծիծաղելու գրգռեն : Այս ինչ քարոզիչը՝ կկու թռչունին պէս կերգէր , ուրիշ մը սագի նման կը սուլէր ·

* Բ Թես · բ · դ :

մէկը՝ դէպի սեղանը քաշկըռտելով կը տանէր աշխարհական մը, անոր գլուխը վերցար մը անցուցած. մէկը խիստ անհամեստ խօսքեր կը ղրուցէր. ուրիշ մէկն ալ Պետրոս առաքեալին վարպետութիւնը կը պատմէր, թէ ինչպէս պանդոկը գտնուելով ան՝ պանդոկապետը խաբեց ու իր բաժինը չվճարեց: Սուրբին կարգի եկեղեցականները՝ աս ատիթով իրենց մեծաւորները ծաղր կընէին: Եկեղեցինները հասարակ թատրոններու դարձեր էին, և քահանաները ձեռնածուներու:

Արդ՝ թէ որ կրօնը այսպէս էր նէ, բարոյականը ինչ վիճակի հասած էր արդեօք: Անշուշտ բարքերնին ալ հաւատքնուն հետ կործանեալ էր. քանզի յաւիտենական կենաց ծրի պարգևին լոյսը Աստուծոյ զօրութիւնն է մարդիկ նորոգելու և սրբելու համար. ու թէ որ վերցունես ան փրկութիւնը որ Աստուած կը պարգևէ, ահա այսպէս վերցուցած պիտի ըլլաս սուրբ վարքը և բարի գործքերը:

Աւա՜ղ, ի՛նչ անկարգութիւններ և ոճիրներ չգործուեցան աս խաւարամած դարերուն մէջը. որ անատենը կընար մէկը սատակ վճարելով անպատիժ մնալ: Ո՞վ պիտի վախնար մեղք գործելէն, երբ որ գիտէր թէ քիչ մը բան տալով եկեղեցիի մը շինութեանը համար, կազատէր գալու աշխարհին վրէժխնդրութենէն: Ան ժամանակին տարեգրութիւնները՝ դայթակղեցուցիչ պատմութիւններով լցուած են: Շատ տեղերու բնակիչներուն հաճելի էր տեսնելը՝ որ քահանայք կնիկ պահեն, որպէս զի ամուսնացած կնիկները՝ անոնց խաբեբայութիւններէն ազատ մնան: Վանքերը՝ բազմաթիւ անկարգութեանց թատրոններ էին. եկեղեցականաց բնակարաններ՝ շատ անգամ անառակութիւն գործելու տեղուանք էին: Կոռնելիոս Սէվրիանոս Պրուկէսի մէջ, և Պուրինկըլէր աբբան Ռափէլի մէջ, արևելեան սովորութեանը հետևելով՝ իրենք ալ կանանոցներ ունէին:

Քահանաներէն ոմանք չարագործ մարդոց հետ ընկերա-ցած՝ գինետուններ կերթային, նարտ կը խաղային, և իրենց շուայտութիւնը կռիւներով և հայհոյութիւններով կըմերկացնէին։

Շահատակնի տանուտէրը պարտաւորեցաւ արգիլել քա-հանաներուն՝ որ բացի հարսանեաց հանդէսէն, հրապա-րակաւ չպարեն, և զէնք չկրեն. հրամայեց նաև որ քա-հանայական հանդերձէն մերկացընեն զանոնք՝ թէ որ ան-հանդէսի տան մը մէջ գտնեն։ Մայնցի արքեպիսկոպո-սարանին մէջ՝ քահանաները գիշեր ժամանակ պատին վրայէն կանցնէին, աղմուկ կը հանէին և ամէն կերպ ան-կարգութիւնները կընէին պանդոկներուն և գինետուննե-րուն մէջ. դռները և կղպանքները կոտրելով։ Շատ անգամներ՝ քահանան տուրք մը կըվճարէր եպիսկոպո-սին, ան կնկանը համար՝ որուն հետ կապրէր, և անկից ունեցած ամէն մէկ զաւկին համար ալ։ Գերմանացի եպիսկոպոս մը, Մեծահանդէս խնջոյքի մը մէջ գտնուե-լով օր մը, հրապարակաւ գոռացեր թէ՝ մէկ տարուան մէջ՝ տասներկու հազար քահանաներ ներկայացեր էին իրեն սա պատճառաւը։ Այս բանը Էրասմոս կըպատմէ։

Բարձրագոյն կարգի եկեղեցականներուն մէջ ալ նը-մանապէս մեծ անկարգութիւններ կային. աւելի կըսիրե-ին պատերազմական աղմուկը, քան թէ աստուածային պաշտօնը. քանզի նիզակը ձեռքերնին, իրենց բոլորտի-քը եղողները հնազանդութեան սորվելը՝ եպիսկոպոսաց առաջին գործքերուն մէկն էր։ Պատուինոս Ֆրեմէգի արքեպիսկոպոսը անդադար պատերազմ ընելով՝ իր դը-րացիներուն և իր հպատակներուն հետ, անոնց գղեակ-ները հիմնայատակ կըկործանէր, ամրոցներ կըկառուցա-նէր, և իր վիճակը մեծցընելէն ուրիշ բան չէր խորհէր։ Ալմագանդի եպիսկոպոս մը՝ երբոր դատաստան կընէր, իր վերարկուին տակէն զրահաւորեալ էր երկըթէ շինուած շապիկով մը՝ ձեռքն ալ մեծ սուր մը կըբռնէր։ Ասիկայ

սովոր էր ըսել՝ թէ ինքը մինակ կրնայ հինգ Պաւարիա-ցիի դէմ դնել, բաւական է որ տասանց դաւաճանութիւն մը ընելու՝ իր վրայ յարձակին:

Քահանայապետական աթոռը ևս՝ ի՛նչ գարշելի տե-սարան մը կըներկայացըներ, բարեկարգութենէն յա-ռաջ:

Հռոտերիկոս Բորգիա՝ Հռովմայեցի այրիկինի մը հետ կենակցելէն ետև, նոյն ապօրինաւոր կենակցութիւնը շարունակած էր ան կնոջը մէկ աղջկանը հետն ալ՝ Ռոզա Վանոցցա անունով, և հինգ զաւակ ունեցեր էր ան-կից: Ասիկայ կարդինալ և արքեպիսկոպոս էր Հռովմայ մէջ. ու որ ատեն իր ժամանակը կանցըներ Վանոցցա-յին և ուրիշներուն ընկերութեամբը, և միանգամայն ե-կեղեցիներուն ու հիւանդանոցներուն այցելութեան եր-թալով, Իննովկենտիոս Ը մեռաւ և քահանայապետին աթոռը պարապ մնաց: Բորգիա՝ կարդինալները զատ զատ գինով ծախու առաւ. և այնպէս ալ իշխանութիւ-նը ձեռք բերաւ: Չորս ջորի ստակով բեռնաւորած, հրապարակաւ ղրկեց կարդինալ Սփորձային պալատը, ան որ՝ բոլոր ուրիշներէն աւելի մեծ համարում ունէր Հռովմայ մէջ: Բորգիա պապ ընտրուեցաւ՝ Աղեքսանդր Զ. կոչուելով, և շատ կուրախանար որ այսպէս իր հա-ճոյիցը ծայրը հասաւ:

Իր թագադրութեան օրը՝ Վալէնսիայի արքեպիսկո-պոս և Բամբըլոնի եպիսկոպոս ըրաւ իր որդին Կեսա-րը, որ վայրենամիտ և անառակ երիտասարդ մըն էր:

Ապա Վատիկանեան պալատին մէջը՝ իր Լուկրետիա աղջկանը հարսնիքը կատարեց մեծ հանդէսներով, ուր տեղ ներկայ էր նաև իր սարփածուն Ջուլիա Պէլլա ա-նունով. և կերպ կերպ անհամեստ խաղերով և երգե-րով զուարճացաւ: “Բոլոր եկեղեցականները՝ կըսէ Ինֆէսուրա պատմիչը, սարփածուներ ունէին, և մայ-րաքաղաքիս բոլոր վանքերը պոռնկանոց դարձեր էին”:

[illegible] 1497, Աղեքսանդր պապը իր անդրանիկ որդ-ւոյն Գանտիայի դքսութիւնը տուաւ. բայց դուքսը ան-[illegible] եղաւ. քանզի իր եղբայրը Կեսար սպաններ [illegible]կայն աս բաւական չեղաւ. քեռայր մը ու-նէր, որ իր փառքը նսեմացընելուն համար ատելի էր իրեն: Ուստի մէկ օր մը Կեսար զարնել տուաւ զա-նիկայ՝ քահանայապետական պալատին սանդուխին վրայ. ուսկից [illegible]ուցին և արիւնաթաթաւ իր դստիկոնը տա-րին: Բայց երբոր անիկայ նոր սկսեր էր առողջանալ, Կեսար անոր քովը գնաց, դուրս վռընտեց անոր կնիկը և իր քոյրը, կանչեց իր դահիճը Միքելօդդօ անունով, որ [illegible] անոր վրայ քիչ մը վստահութիւն ունէր, և իր աչքին առջևը խեղդել տուաւ իր քեռայրը *: Աղեք-սանդր սիրելի մը ունէր Փերոտօ կոչուած. երիտասարդ դուքսը նախանձելով անոր վրայ, մէկ օր մը անոր ե-տևէն վազեց. ան ալ գնաց պապին վերարկուին տակը մտաւ, ու երկու ձեռօքը փաթտուեցաւ անոր: Կեսար զարկաւ վիրաւորեց զՓերոտօն, որուն արիւնը՝ քահա-նայապետին երեսը ցաթկեց: "Իսկ պապը՝ (կըսէ ան ժամանակակից մկան որ կըպատմէ յիշեալ սոսկալի դի-պուածները,) իր որդին դուքսը կըսիրէ, և շատ կըվախ-նայ անկից": Կեսար իր ժամանակին խիստ գեղեցիկ և խիստ ուժով մարդն էր: Վեց վայրենի ցուլերու դէմ կրնար մարտնչիլ դիւրութեամբ և սպաննել զանոնք: Շատ հանդէսները, որ պապը՝ իր տղան և իր աղ-ջիկը Լուկրետիա մէկմէկու կընէին քահանայապետական պալատին մէջ՝ հնար չէ ստորագրել, և մարդ չկրնար յիշել զանոնք առանց սոսկալու: Կան պատմիչներ որոնք աղտապղծութեան յանցանքն ալ կըդնեն Աղեքսանդրի և Լուկրետիայի վրայ. բայց աս բանիս համար բաւական ապացոյցներ չունիմք: Վերջապէս պապը թոյն պատ-րաստած ըլլալով հարուստ կարդինալի մը համար, շաքա-

* Զեռադէր Քարէլլայի որ Հռովմայ դեսպան էր. յամին 1500:

բեղէնի փոքր տուփի մը մէջ՝ որ մեծահոց սեղանէ մը ետև պիտի դրուէր, կարդինալը աս նենգութիւնը իմանալով՝ պապին տաճարապետը որսաց, և թունաւոր տուփը Աղէքսանդրին առջևը դրուելով՝ կերաւ անկից և մեռաւ։ "Բովանդակ քաղաքը վազեց եկաւ, և չէին կշտանար աս մեռած իժը զննելէն"։

Ահա այսպիսի մարդ մըն էր քահանայապետական աթոռը նստողը ան նոյն դարուն սկիզբը՝ որուն մէջ Բարեկարգութիւնը ծագեցաւ։

Ասանկով՝ եկեղեցականները կորսնցուցին թէ՛ կրօնին՝ և թէ իրենց համարումը։ Անկարգութիւնը տարածուած էր ամէն աստիճանի մարդոց մէջ. բարուց ապականութիւնը՝ հաւատոյ ապականութեանը կըհամաձայնէր. "անօրէնութեան խորհուրդը" * զօրացեր էր Յիսուս Քրիստոսի եկեղեցիին վրայ։

Ուրիշ հետևութիւն մըն ալ հարկաւ յառաջ կուգար ան մոռացութենէն՝ որուն մէջ թաղուած էր Աւետարանին հիմնական վարդապետութիւնը։ Մտաց տգիտութիւնը՝ սրտին ապականութեանը ընկերն էր։ Քահանաները՝ իրենց ձեռքը առնելով փրկութեան մատակարարութիւնը, որ միայն Աստուծոյ կըվերաբերի, բաւական պատճառ մը ունէին ժողովուրդներէն պատիւ և ակնածութիւն ընդունելու. ի՞նչ պէտք էր անոնց Սուրբ Գրոց ուսմանը պարապիլ, որովհետև Սուրբ Գրոց բացատրութեանը վրայով ալ խօսք չէր ըլլար, բայց միայն ներողութեան կոնդակներ տալու վրայով. և աս գործը կատարելու համար, հարկաւոր չէր դժուարութիւն կրել և շատ բան սորվիլ։

"Գեղերուն մէջը՝ կըսէ Միմֆէլէնկ պատմիչը, քարոզիչներ կընտրէին անանկ խեղճ մարդիկներէն՝ որ մուրացկանութենէ յառաջ եկեր էին. և անոնք որ երբեմն խոհարար, երաժիշտ, որսորդ և ձիադարման եղեր է-

* Թես. Բ 7

ձն, կամ աւելի անարգ պաշտօններ վարեր էին" :

Եկեղեցւոյ բարձր աստիճանաւորները եւ՝ շատ անգամ յետին ագիտութեան մէջ ընկղմած էին : Տընփելտի եպիսկոպոս մը կըպարծենար թէ ինքը բնաւ սորված չէր Եբրայեցերէն և Յունարէն լեզուները : Կրօնաւորները կըպնդէին թէ ամէն հերետիկոսութիւնները ան լեզուներէն յառաջ կուգան, և մանաւանդ Յունականէն : "«Նոր Կտակարանը՝ կըսէր անոնցմէ մէկը, օձերով և փուշերով լեցուն գիրք մըն է : Յունարէնը՝ կըշարունակէր ան, նոր լեզու մըն է մօտ ժամանակներս հնարուած, ուսկից պարտիմք շատ զգուշանալ : Իսկ Եբրայականը՝ իմ սիրելի՛ եղբայրներս, գիտնաք որ զանիկայ սորվողներուն ամէնն ալ իսկոյն Հրեայ կըլլան" : Այսպէս կըգրէ Հերեզպախ, Երասմոսի բարեկամը, և պատկառելի մատենագիրը : Թովմաս Լինակեր՝ գիտուն և հռչակաւոր եկեղեցականը, Նոր Կտակարան ամենևին կարդացած չէր : Իր վերջի օրերը (1524ին) անկեց մէկ օրինակ մը բերել տալու իրեն, բայց իսկոյն մէկ դի նետեց զանիկայ՝ երդում ընելով · քանզի գիրքը բանալուն՝ աս խօսքերը կարդաց · "Բայց ես ձեզի կըսեմ, Ամենևին երդում մի ընէք" * : Այս որովհետև ինքը շատ երդում ընող մըն էր, այսպէս ըսաւ · "Կամ ասիկայ Աւետարան չէ, կամ մենք քրիստոնեայ չենք" :

Ահա մէկ քանի հետևութիւններ ան մոլար դրութեանը՝ որ նոյն ատենները քրիստոնէից մէջ տարածուած էր :

Աս համառօտ նկարագրութիւնը անշուշտ յայտնի կը ցուցընէ, թէ եկեղեցւոյ ապականութիւնը, և թէ Բարեկարգութեան հարկաւորութիւնը : Այս աս բանիս համար է որ մենք ալ ձեռք զարկինք աս պատմութիւնը ընելու :

* Մատթ. Ե. ԼԴ :

## ՀԱՏՈՒԱԾ Դ

ԲԱՅՑ այն վնասակար չարիքը որ այն ատենը կընեղէին զքրիստոնեայ ժողովուրդները, այսինքն՝ սնապաշտութիւնը, անհաւատութիւնը, տգիտութիւնը, սնոտի վիճաբանութիւնք և ապականութիւն բարուց, որոնց ամէնն ալ մարդկային սրտի բնական պտուղներն են, նոր բաներ չէին աշխարհիս վրայ: Շատ անգամ նշանակուեր էին անոնք՝ զանազան ազգաց պատմութիւններուն մէջ. որովհետև մեծ շփոթութիւն տուեր էին (մանաւանդ Արևելեան կողմը) պէսպէս կրօնքներու՝ որոնք երբեմն խիստ տարածուած էին, բայց ետքը տկարանալով՝ բոլորովին անյայտ եղան այսպիսի վատթարութեանց զօրութիւնովը. և անոնց մէկն ալ՝ իր կործանուելէն ետքը, վերստին չկանգնեցաւ:

Քրիստոնէական կրօնն ալ միթէ ասոնց պէս պիտի ըլլայ հիմա: Ո՛չ. քանզի քրիստոնէութեան մէջ այնպիսի բան մը կայ, որ այն ժողովրդոց կրօնքներուն և ոչ մէկուն մէջը կըգտնուէր: Քրիստոնէութիւնը՝ մարդու գործ չէ, որ անցաւոր ըլլայ, բայց Աստուծոյ գործն է, որ հաստատ կըմնայ:

Անհնար է որ մարդկային բնութիւնը կարենայ երբէք քրիստոնէական կրօնը գերազանցելու. և թէ որ առ ժամանակ մը այնպէս կարծելով թէ պէտք չէ իրեն՝ մերժեց զանիկայ, և ոտքի տակ առաւ. բայց այն իսկոյն նոր առոյգութեամբ և կենդանութեամբ մը երևան ելաւ, իբրև միակ միջոց հոգիները բժշկելու: Անատենը՝ ապականեալ ժողովուրդները նորածին եռանդով մը ետ դարձան այն վաղեմի, պարզ և հզօր ճշմարտու-

թիւններուն, որմէ որ իրենց յիմարութեան և կուրութեան ժամանակը՝ արհամարհեր էին:

Յիրաւի քրիստոնէական կրօնը ցուցուց վեշտասաներորդ դարուն մէջ ալ նոյն նորոգիչ իշխանութիւնը՝ որ առաջին դարուն բանեցուցած էր: Տասնըհինգ դար անցնելէն ետքը՝ նոյն ճշմարտութիւնները նոյն արդիւնքը յառաջ բերին: Բարեկարգութեան օրերը՝ Պօղոս և Պետրոս առաքեալներուն ատենին պէս, Աւետարանը անթիւ արգելքներ կործանեց անյաղթելի զօրութեամբ:

Հիմա քննենք նայինք՝ թէ ինչպէս կատարուեցաւ արդեօք աս եկեղեցւոյ և մարդկային ազգին նորոգութիւնը:

Աստուածային նախախնամութիւնը առ սակաւ սակաւ բարեկարգութիւնը պատրաստեր էր՝ երեք տարբեր աշխարհի մէջ. այսինքն՝ քաղաքական, եկեղեցական և գիտնական մարդոց մէջը: Թագաւորները և ժողովուրդները, քրիստոնեաները և աստուածաբանները, գիտունները և իմաստունները, ամէնն ալ վեշտասաներորդ դարուն փոփոխութեանը ձեռնտու եղան: Տեսնենք հիմա աս իրեք աստիճանի մարդոց ընդդիմութիւնները, և խօսքերնիս վերջացընենք գիտուններուն ըրած ընդդիմութեամբը, որ խիստ զօրաւոր եղաւ ճիշդ ան ատենները՝ որոնց անմիջապէս Բարեկարգութիւնը յաջորդեց:

Նախ՝ ժողովուրդներուն և թագաւորներուն վրայով գիտնալ պէտք է, որ Հռովմ իր վաղեմի համարմունքը շատ կորսնցուցած էր անոնց առջևը: Իտալիա՝ որ Եւրոպայի գժտութեան խնձորն էր, ամէնէն աւելի գործակից եղաւ թագաւորներուն միտքը լուսաւորելու, որովհետև անոնք երբեմն երբեմն պապերուն հետ քաղաքական դաշնադրութիւններ ընելու ստիպուելով՝ զարմանքով մը տեսան որ պապերը պատրաստ են իրենց քահանայապետական իրաւունքը զոհելու, որպէս զի իրենց թագաւորական իշխանութիւնը ձեռքերնին մնայ:

սութեանը և պապերուն ներողութեանցը չէին ապաւի-ներ ։ Քրիստոսի տեղը՝ ուրիշ բարեխօսներ կըձևացը-նէին , նախ՝ Կոյսն Մարիամ , և ապա սուրբերը՝ որոնց թիւը անդադար աւելցընելու վրայ էին պապերը ։ Այս միջնորդները՝ միայն անոնց համար բարեխօսութիւն պի-տի ընէին , որ իրենց վանքերուն կամ կրօնական կար-գերուն քովը բարի անուն մը ստացեր էին ։ Այս ասոր համար ընել պէտք էր՝ չէ թէ ինչ որ Աստուած իր խօսքին մէջը կըհրամայէ , հապա ուրիշ բազմաթիւ գործքեր՝ որ կրօնաւորները և քահանաները հնարած էին , և որոնցմով շատ ստակ կըշահէին ։ Պէտք էր եր-գել՝ աղաղակել գիշեր ցորեկ ։ Այնչափ ուխտատեղիներ կային , որչափ որ լեռներ , անտառներ կամ ձորեր կան ։ Բայց բոլոր աս նեղութիւններէն ստակ տալով կընայ մէկը խալըսիլ ։ Ուստի վանքերուն և քահանաներուն կըտանէին ստակ և ամէն տեսակ պարգևներ , հաւեր , սագեր , բադեր , հաւկիթներ , մոմ , իւղ , պանիր , ևայլն ։ Ան ատենը երգերուն ձայնը կըհնչուէր , զանգակները կըզարնուէր , անուշահոտ ծխանելիքներով տաճարը կըլեցուէր , զոհեր կընուիրուէր , խաչանոցները բա-րիքներով կըհարստանային , գինիի բաժակները մէկ-զմէկու կըզարնուէին , և վերջապէս պատարագներով՝ կըլմընցունէին իրենց գործը ։ Եպիսկոպոսները՝ քարոզ չէին տար , այլ զբաղած էին քահանաներ ձեռնադրելու , զանգակներ , կրօնաւորներ , եկեղեցիներ , մատուռներ , պատկերներ , գրքեր և գերեզմաններ օրհնելու . և աս ամէնը մեծ եկամուտ կըբերէր իրենց ։ Մեռելի ոսկոր-ներ , բազուկներ և ոտքեր , արծըթէ կամ ոսկիէ տու-փերու մէջ կըպահուէին , և զանոնք համբուրել կուտա-յին պատարագի ժամանակ , ըստ որում աս ալ շատ ստակ կըբերէր իրենց ։

“Բոլոր աս մարդիկը կըհաստատէին թէ պապը՝ Աս-

տուածոց փոխանորդը* ըլլալով, չկրնար սխալիլ, և բնաւ ընդդիմախօսութեան չէին համբերեր":

Վիւրցպուրկի ամենայն Սրբոց եկեղեցւոյն մէջ՝ կը-ցուցընէին Նոյի տապանին մէկ կտորը · քիչ մը ձանձախապէտ՝ երեք մանկանց հնոցէն առնուած · տախտակի մը կտոր՝ Յիսուս Քրիստոսի մսուրէն · Սրբոյն Քրիստափորի մօրուքին մազերը · և տասնուինը հազար աղջկը շատ կամ քիչ յարգ ունեցող մասունքներ · Լաֆհաուզենի մէջ կը ցուցընէին սուրբ Յովսէփայ շունչը՝ որ Նիկոդեմոս իր ձեռքերոցին մէջը ընդունէր էր : Վիտենպէրկի մէջ կը պտըտէր ներողութեանց վաճառական մը, որ իր ապրանքը կը ծախէր գլուխը զարդարած մէկ փետուրով մը՝ որ Միքայէլ հրեշտակապետին թևէն հանուած էր : Նոյն հարկաւոր չէր հեռաւոր անցուածք երթալ՝ սոս անգին գանձերը փնտըռելու համար · քանզի մասունքի վաճառականները՝ երկրի ամէն կողմը կը պտըտէին : Երկնից թագաւորութիւնը անյայտ եղեր էր, և մարդիկ անոր տեղը երկրի վրայ հաստատեր էին այլազգիշ ամօթալից վաճառանոց մը :

Ահա ասանկ ամբարիշտ ոգի մը տիրած էր կրօնին, և եկեղեցւոյ խիստ սրբազան յիշատակութիւնները ու ան երջանիկ ժամանակները՝ որ զհաւատացեալները կը հրաւիրէին մտքերնին ամփոփելու և եղբայրական սէր ունենալու, խեղկատակութիւններով և գլխովին հեթանոսական սրբապղծութիւններով անարգուած էին : "Զատկական ծաղրաբանութիւնը և ծիծաղները" եկեղեցական արարողութիւններուն կարգը գլխաւոր բան մը կըսեպուէին : Յիսուս Քրիստոսի յարութեան տօնը ուրախութեամբ կատարելու համար, կը ջանային որ ժողովուրդը ծիծաղելու գրգռեն : Այս ինչ քարոզիչը՝ կկու թռչունին պէս կերգէր, ուրիշ մը սագի նման կը սուլէր ·

* Բ Թես . բ . 4 :

մէկը՝ դէպի սեղանը քաշկռտելով կը տանէր աշխարհական մը, անոր գլուխը վեղար մը անցուցած. մէկը խիստ անհամեստ խօսքեր կը զրուցէր. ուրիշ մէկն ալ Պետրոս առաքելոյն վարդապետութիւնը կը պատմէր, թէ ինչպէս պանդոկը գտնուելով ան՝ պանդոկապետը խաբեց ու իր բաժինը չվճարեց: Այսորին կարգի եկեղեցականները՝ աս առիթով իրենց մեծաւորները ծաղր կ՚ընէին: Եկեղեցիները հասարակ թատրոններու դարձեր էին, և քահանաները ձեռնածուներու:

Արդ՝ թէ որ կրօնը այսպէս էր նէ, բարոյականը ինչ վիճակի հասած էր արդեօք: Անշուշտ բարքերնին ալ հաւատքնուն հետ կործանեալ էր. քանզի յաւիտենական կենաց ձրի պարգևին լուրը Աստուծոյ զօրութիւնն է մարդիկ նորոգելու և սրբելու համար. ու թէ որ վերցունես ան փրկութիւնը որ Աստուած կը պարգևէ, ահա այսպէս վերցուցած պիտի ըլլաս սուրբ վարքը և բարի գործքերը:

Աւա՜ղ, ի՛նչ անկարգութիւններ և ոճիրներ չգործուեցան այս խաւարամած դարերուն մէջը. որ ամէնէնը կրնար մէկը ստակ վճարելով անպատիժ մնալ: Ո՞վ պիտի վախնար մեղք գործելէն, երբ որ գիտէր թէ քիչ մը բան տալով եկեղեցիի մը շինութեանը համար, կազատէր գալու աշխարհին վրէժխնդրութենէն: Ան ժամանակին տարեգրութիւնները՝ գայթակղեցուցիչ պատմութիւններով լցուած են: Շատ տեղերու բնակիչներուն հաճելի էր տեսնելը՝ որ քահանայք կնիկ պահեն, որպէս զի ամուսնացած կնիկները՝ անոնց խաբեբայութիւններէն ազատ մնան: Կեղերը՝ բազմաթիւ անկարգութեանց թատրոններ էին. եկեղեցականաց բնակարանները՝ շատ անգամ անառակութիւն գործելու տեղուանք էին: Կոռնելիոս Ադրիանոս Պրուկէսի մէջ, և Պրինքլէր աբբան Պրաֆէլի մէջ, արևելեան սովորութեանը հետևելով՝ իրենք ալ կանանոցներ ունէին.

սովոր էր ըսել՝ թէ ինքը միայն կրնայ հինգ Պաւլարիա-ցիի դէմ դնել, բաւական է որ առանց դաւաճանութիւն մը ընելու՝ իր վրայ յարձակին ։

Քահանայապետական աթոռը եւս՝ ի՛նչ գարշելի տե-սարան մը կըներկայացընէր, բարեկարգութենէն յա-ռաջ ։

Ռոտերիկոս Բորջիա՝ Հռովմայեցի տիկինի մը հետ կենակցելէն ետեւ, նոյն ապօրինաւոր կենակցութիւնը շարունակած էր անոր աղջկանը հետ ալ՝ Ռոզա Վանոցցա անունով, եւ հինգ զաւակ ունեցեր էր ան-կից ։ Ասիկայ կարդինալ եւ արքեպիսկոպոս էր Ռովմայ մէջ. ու որ ատեն իր ժամանակը կանցընէր Վանոցցա-յին եւ ուրիշներուն ընկերութեամբը, եւ միանգամայն ե-կեղեցիներուն ու հիւանդանոցներուն այցելութեան եր-թալով, Իննովկենտիոս Ը մեռաւ եւ քահանայապետին աթոռը պարապ մնաց ։ Բորջիա՝ կարդինալները զատ զատ գինով ծախու առաւ. եւ այնպէս աս իշխանութիւ-նը ձեռք բերաւ ։ Չորս ջորի ստակով բեռնաւորած, հրապարակաւ խրկեց կարդինալ Սփորձային պալատը, ան որ՝ բոլոր ուրիշներէն աւելի մեծ համարում ունէր Ռովմայ մէջ ։ Բորջիա պապ ընտրուեցաւ՝ Աղեքսանդր Զ կոչուելով, եւ շատ կուրախանար որ այսպէս իր հա-ճոյիցը ծայրը հասաւ ։

Իր թագադրութեան օրը՝ Վալէնսիայի արքեպիսկո-պոս եւ Բամբըլոնի եպիսկոպոս ըրաւ իր որդին Կեսա-րը, որ վայրենամիտ եւ անառակ երիտասարդ մըն էր ։

Ապա Վատիկանեան պալատին մէջը՝ իր Լուկրեցիա աղջկանը հարսնիքը կատարեց մեծ հանդէսներով, ուր տեղ ներկայ էր նաեւ իր տարփածուն Ջուլիա Պէլլա ա-նունով. եւ կերպ կերպ անհամեստ խաղերով եւ երգե-րով զուարճացաւ ։ " Բոլոր եկեղեցականները՝ կըսէ Ինֆէսսուրա պատմիչը, տարփածուներ ունէին, եւ մայ-րաքաղաքիս բոլոր վանքերը պոռնկանոց դարձեր էին" ։

Յունիս 1497, Աղեքսանդր պապը իր անդրանիկ որդւոյն Պէնէվէնթօյի դքսութիւնը տուաւ. բայց դուքսը անհետացեալ եղաւ. քանզի իր եղբայրը Կեսար սպաննեց զանիկայ: Սակայն աս բաւական չեղաւ. քեռայր մը ունէր ալ որ իր փառքը նսեմացընելուն համար աւելի էր իրեն: Ուստի մէկ օր մը Կեսար զարնել տուաւ զանիկայ՝ քահանայապետական պալատին սանդուխին վրայ. ուսկից վերցուցին և արիւնաթաթաւ իր դստիկոնը տարին: Բայց երբոր անիկայ նոր սկսեր էր առողջանալ, Կեսար անոր քովը գնաց, դուրս վռընտեց անոր կնիկը և իր քոյրը, կանչեց իր դահիճը Միքիլօդդօ անունով, որ միայն անոր վրայ քիչ մը վստահութիւն ունէր, և իր աչքին առջևը խղդել տուաւ իր քեռայրը *: Աղեքսանդր սիրելի մը ունէր Փէրոդօ կոչուած. երիտասարդ դուքսը նախանձելով անոր վրայ, մէկ օր մը անոր ետևէն վազեց. ան ալ գնաց պապին վերարկուին տակը մտաւ, ու երկու ձեռօքը փաթթուեցաւ անոր: Կեսար զարկաւ վիրաւորեց զՓէրոդօն, որուն արիւնը՝ քահանայապետին երեսը ցաթկեց: "Իսկ պապը՝ (կըսէ ան ժամանակուընէն մէկն որ կըպատմէ յիշեալ սոսկալի դիպուածները) իր որդին դուքսը կըսիրէ, և շատ կըվախնայ անկից": Կեսար իր ժամանակին խիստ գեղեցիկ և խիստ ուժով մարդն էր: Վեց վայրենի ցուլերու դէմ կրնար մարտնչիլ դիւրութեամբ և սպաննել զանոնք: Ընտանի հանդէսները, որ պապը՝ իր տղան և իր աղջիկը Լուկրեծիա մէկմէկու կընէին քահանայապետական պալատին մէջ՝ հնար չէ ստորագրել, և մարդ չկրնար յիշել զանոնք առանց սոսկալու: Կան պատմիչներ որոնք ազգապղծութեան յանցանքն ալ կըդնեն Աղեքսանդրի և Լուկրեծիայի վրայ. բայց աս բանիս համար բաւական ապացոյցներ չունիմք: Վերջապէս պապը թոյն պատրաստած ըլլալով հարուստ կարդինալի մը համար, շաքա-

* Ջիւաշէր Բարէլլայի որ Հռովմայ դեսպան էր. յամին 1500:

բեղէնի փոքր տունի մը մէջ՝ որ մեծահաց սեղանէ մը ետեւ պիտի տրուէր , կարդինալը աս նենգութիւնը իմանալով՝ պապին տաճարապետը ղրկեց , և Թունաւոր տուփը Աղեքսանդրին առջևը դրուելով՝ կերաւ անկից և մեռաւ : "Բոլանդակ քաղաքը վազեց եկաւ , և չէին կշտանար աս մեռած իժը զննելէն" :

Ահա այսպիսի մարդ մըն էր քահանայապետական աթոռը նստողը ան նոյն դարուն սկիզբը՝ որուն մէջ Բարեկարգութիւնը ծագեցաւ :

Ասանկով՝ եկեղեցականները կորսնցուցին թէ՛ կրօնքին՝ և թէ իրենց համարումը : Անկարգութիւնը տարածուած էր ամէն աստիճանի մարդոց մէջ . բարուց ապականութիւնը՝ հաւատոյ ապականութեանը կըհամաձայնէր . "անօրէնութեան խորհուրդը" * զօրացեր էր Յիսուս Քրիստոսի եկեղեցիին վրայ :

Ուրիշ հետևութիւն մըն ալ հարկաւ յառաջ կուգար ան մոռացութենէն՝ որուն մէջ թաղուած էր Աւետարանին հիմնական վարդապետութիւնը : Մտաց տգիտութիւնը՝ սրտին ապականութեանը ընկերն էր : Քահանաները՝ իրենց ձեռքը առնելով փրկութեան մատակարարութիւնը , որ միայն Աստուծոյ կըվերաբերի , բաւական պատճառ մը ունէին ժողովուրդներէն պատիւ և ակնածութիւն ընդունելու . ի՞նչ պէտք էր անոնց Սուրբ Գրոց ուսմանը պարապիլ , որովհետև Սուրբ Գրոց բացատրութեանը վրայով ալ խօսք չէր ըլլար , բայց միայն ներողութեան կոնդակներ տալու վրայով . և աս գործը կատարելու համար , հարկաւոր չէր դժուարութիւն կրել և շատ բան սորվիլ :

"Գիւղերուն մէջը՝ կըսէ Ուիմֆելինկ պատմիչը , քարոզիչներ կընտրէին անանկ խեղճ մարդիկներէն՝ որ մուրացկանութենէ յառաջ եկեր էին . և անոնք որ երբեմն խոհարար , երաժիշտ , որսորդ և ձիադարման եղեր է-

քին, կամ աւելի անարգ պաշտօններ վարեր էին" :

Եկեղեցւոյ բարձր աստիճանաւորները եւ՝ շատ անգամ յետին տգիտութեան մէջ ընկղմած էին : Տընֆէլտի եպիսկոպոս մը կը պարծենար թէ ինքը բնաւ սորված չէր Եբրայեցերէն և Յունարէն լեզուները : Կրօնաւորները կը պնդէին թէ ամէն հերետիկոսութիւնները այն լեզուներէն յառաջ կուգան, և մանաւանդ Յունականէն : "Նոր Կտակարանը՝ կըսէր անոնցմէ մէկը, օձերով և փուշերով լեցուն գիրք մըն է : Յունարէնը՝ կըշարունակէր ան, նոր լեզու մըն է մօտ ժամանակներս հնարուած, ուսկից պարտիմք շատ զգուշանալ : Իսկ Եբրայականը՝ իմ սիրելի եղբայրներս, գիտնաք որ զանիկայ սորվողներուն ամէնն ալ իսկոյն Հրեայ կըլլան" : Այսպէս կը գրէ Հերեզպախ, Երասմոսի բարեկամը, և պատկառելի մատենագիրը : Թովմաս Լինակեր՝ գիտուն և հռչակաւոր եկեղեցականը, Նոր Կտակարան ամենևին կարդացած չէր : Իր վերջին օրերը (1524ին) անկէց մէկ օրինակ մը բերել տուաւ իրեն, բայց իսկոյն մէկ դի նետեց զանիկայ՝ երդում ընելով. քանզի գիրքը բանալուն՝ աս խօսքերը կարդաց. "Բայց ես ձեզի կըսեմ, Ամենևին երդում մի ընէք" * : Այս որովհետև ինքը շատ երդում ընող մըն էր, այսպէս ըսաւ. "Կամ ասիկայ Աւետարան չէ, կամ մենք քրիստոնեայ չեմք" :

Ահա մէկ քանի հետևութիւններ այն մոլար դրութեանը՝ որ նոյն ատենները քրիստոնէից մէջ տարածուած էր :

Աս համառօտ նկարագրութիւնը անշուշտ յայտնի կը ցուցընէ, թէ եկեղեցւոյ ապականութիւնը, և թէ Բարեկարգութեան հարկաւորութիւնը : Այս աս բանիս համար է որ մենք ալ ձեռք զարկինք աս պատմութիւնը ընելու :

* Մատթ. Ե. 34 :

## ՀԱՏՈՒԱԾ Դ

Բայց ան վնասակար չարիքը, որ ան ատենը կընեղէին զքրիստոնեայ ժողովուրդները, այսինքն՝ սնապաշտութիւնը, անհաւատութիւնը, տգիտութիւնը, սնոտի վիճաբանութիւնք և ապականութիւն բարուց, որոնց ամէնն ալ մարդկային սրտի բնական պտուղներն են, նոր բաներ չէին աշխարհիս վրայ: Շատ անգամ նշանակուեր էին անոնք՝ զանազան ազգաց պատմութիւններուն մէջ. որովհետև մեծ շփոթութիւն տուեր էին (մանաւանդ Արևելեան կողմը) պէսպէս կրօնքներու՝ որոնք երբեմն խիստ տարածուած էին, բայց ետքը տկարանալով՝ բոլորովին անյայտ եղան այսպիսի վատթարութեանց զօրութենովը. և անոնց մէկն ալ՝ իր կործանուելէն ետքը, վերստին չկանգնեցաւ:

Քրիստոնէական կրօնն ալ միթէ անոնց պէս պիտի ըլլայ հիմա: Ո՛չ. քանզի քրիստոնէութեան մէջ այնպիսի բան մը կայ, որ ան ժողովրդոց կրօնքներուն և ոչ մէկուն մէջը կըգտնուէր: Քրիստոնէութիւնը՝ մարդու գործ չէ, որ անցաւոր ըլլայ, բայց Աստուծոյ գործն է, որ հաստատ կըմնայ:

Անհնար է որ մարդկային բնութիւնը կարենայ երբէք քրիստոնէական կրօնը դերազանցելու. և թէ որ առ ժամանակ մը այնպէս կարծելով թէ պէտք չէ իրեն՝ մերժեց զանիկայ, և ոտքի տակ առաւ. բայց ան իսկոյն նոր առոյգութեամբ և կենդանութեամբ մը երևան ելաւ, իբրև միակ միջոց հոգիները բժշկելու: Անատենը՝ ապականեալ ժողովուրդները նորածին եռանդով մը ետ դարձան ան վսեմի, պարզ և հզօր ճշմարտու-

թիւններուն, որն որ իրենց յիմարութեան և կուրութեան ժամանակը՝ արհամարհեր էին :

Յիրաւի քրիստոնէական կրօնը ցուցուց վեշտասաներորդ դարուն մէջ այն նոյն նորոգիչ իշխանութիւնը՝ որ առաջին դարուն բանեցուցած էր : Տասնըհինգ դար անցնելէն ետքը՝ նոյն ճշմարտութիւնները նոյն արդիւնքը յառաջ բերին : Բարեկարգութեան օրերը՝ Պօղոս և Պետրոս առաքեալներուն ատենին պէս, Աւետարանը անթիւ արգելքներ կործանեց անյաղթելի զօրութեամբ :

Հիմա քննենք նայինք՝ թէ ինչպէս կատարուեցաւ արդեօք այս եկեղեցւոյ և մարդկային ազգին նորոգութիւնը :

Աստուածային Նախախնամութիւնը առ սակաւ սակաւ բարեկարգութիւնը պատրաստեր էր՝ երեք տարբեր աշխարհի մէջ․ այսինքն՝ քաղաքական, եկեղեցական և գիտնական մարդոց մէջը : Թագաւորները և ժողովուրդները, քրիստոնեաները և աստուածաբանները, գիտունները և իմաստունները, ամէնն ալ վեշտասաներորդ դարուն փոփոխութեանը ձեռնտու եղան : Տեսնենք հիմա այս իրեք աստիճանի մարդոց ընդդիմութիւնները, և խօսքերնիս վերջացընենք գիտուններուն ըրած ընդդիմութեամբը, որ խիստ զօրաւոր եղաւ ճիշդ այն ատենները՝ որոնց անմիջապէս Բարեկարգութիւնը յաջորդեց :

Այս նախ՝ ժողովուրդներուն և թագաւորներուն վրայով գիտնալ պէտք է, որ Հռովմ իր վաղեմի համարմունքը շատ կորսնցուցած էր անոնց առջևը : Իտալիա՝ որ Եւրոպայի գժտութեան խնձորն էր, ամէնէն աւելի գործակից եղաւ թագաւորներուն միտքը լուսաւորելու, որովհետև անոնք երբեմն երբեմն պապերուն հետ քաղաքական դաշնագրութիւններ ընելու ստիպուելով՝ զարմանքով մը տեսան որ պապերը պատրաստ են իրենց քահանայապետական իրաւունքը զոհելու, որպէս զի իրենց թագաւորական իշխանութիւնը ձեռքերնին մնայ :

Դարձեալ աղէկ հասկըցան թէ՝ պապերը քաղաքակա-նութեան ամէն կերպ խորամանկութիւնը , խաբէութիւ-նը և սուտ երդումը կըբանեցընեն միշտ : Ան ատենը արձըկուեցաւ աչքերնուն կապը , որն որ իրենց տղայու-թեանը կապուած էր : Ան ատենը Ճարտարամիտն Փեր-դինանդոս Արագոնացին՝ խորամանկութեան դէմ՝ խո-րամանկութիւն բանեցուց : Ան ատենը դիւրագրգիռ Լուդովիկոս ԺԲ , Հռովմայ դէմ իր ունեցած ան-նահանջելի ատելութիւնը ցուցընելու համար՝ մետաղ* մը շինել տուաւ՝ ու խօսքը վրան դրոշմած · "Պէտք կոր-սընցընեմ Բաբելոնի անունը" : Իսկ համեստաբարոյն Մաք-սիմիլիանոս Աւստրիացին՝ լսելով Լեոն Տասներորդին ի-րեն դէմ ըրած խարդախութիւնը և խիստ շատ ցաւե-լով՝ յայտնաբարբառ կըզըրուցէր · "Աս պապն ալ եղեռ-նագործ կըհամարիմ ես · ու հիմա կրնամ ըսել թէ՝ իմ բոլոր կենացս մէջը չտեսայ՝ ամենևին մէկ պապ մը՝ որ ինծի ցուցըրցած հաւատարմութեանը և տուած խօսքին վրայ հաստատ կենայ . . . . . թէ որ Աստուած կամե-նայ , յուսամ որ ասիկայ վերջին պապը պիտի ըլլայ" ·

Անատենը թագաւորները և ժողովուրդները սկսեր էին զգալ ան ծանր բեռը՝ որն որ պապերը իրենց վրայ կըդնէին , և որուն իրենք ալ չէին կրնար համբերել · Ուստի կըխնդրէին որ Հռովմ ազատէ զիրենք ան տա-սանորդներէն , հարկերէն և տարեկան տուրքերէն՝ որոնք իրենց ոյժը կըսպառէին : Արդէն Գաղղիա ինք իր գըլ-խուն սահմաներ էր եկեղեցական իրերուն օրինադրու-թիւնը : Կայսրն ալ ատեն մը միտքը դրաւ որ պապական իշխանութիւնը իրեն յատկացընէ : Բայց ժողովրդոց գլխաւորներուն մէջէն ոչ ոք այնպէս օգտակար եղաւ Բարեկարգութեանը՝ որչափ որ ան իշխանը՝ որուն վի-ճակներուն մէջ Բարեկարգութիւնը սկսաւ :

* Պատկեր դրամաձև :

Ասիկայ Սաքսոնիայի կայսրընտիրը Փրիդերիկոսն էր, որ Խոհեմ մականուանեցաւ. և ունեցած իշխանութեամբը, հարստութեամբը և առատաձեռնութեամբը՝ իր հաւասարներէն գերազանց եղաւ: Աստուած ընտրեց զանիկայ իբրև մէկ ծառ մը, որ ճշմարտութեան սերմը իր առաջին շառաւիղը՝ անոր հովանաւորութեան տակը արձակէ, ու մրրիկները չկարենան զանիկայ արմատաքի խլելու:

Չկար ուրիշ մէկը՝ որ ասանկ երևելի պաշտօնի մը աւելի յարմարութիւն ունենար: Փրիդերիկոս՝ խիստ մեծ համարմունք ունէր ամէնուն քովը, և մասնաւորապէս կայսեր մտերիմ բարեկամն էր: Երբոր Մաքսիմիլիանոս իր տէրութենէն կը հեռանար, Փրիդերիկոս կը վարէր անոր փոխանորդութեան պաշտօնը: Աս իշխանը կը զգար նաև իր սրտին մէջը՝ Աստուծոյ խօսքին զօրութիւնը: Մէկ օր մը՝ Ստաուպից Օգոստինեանց ընդհանուր մեծաւորը իր քովն ըլլալով՝ խօսք բացուեցաւ այնպիսի քարոզիչներուն վրայով, որոնք անօգուտ ատենաբանութիւններ կընեն. «Ան ամէն քարոզութիւնները՝ ըսաւ կայսրընտիրը, որ նրբին խօսքերով և մարդկային աւանդութիւններով լեցուն են, շատ ցուրտ են, ոչ զօրութիւն ունին՝ և ոչ ազդուութիւն: Սուրբ Գիրքը միայն անանկ զօրութիւն և վսեմութիւն մը ունի, որ մեր ամէն մոլորական ճարտարութիւնները բնաջինջ ընելէն ետքը, մեզ կը ստիպէ և կը պարտաւորէ ըսելու. «Երբէք մարդ մը ասանկ խօսած չէ»: Երբոր Ստաուպից յայտնեց անոր, թէ ինքն ալ ճիշդ այսպէս կընդունի, կայսրընտիրը մտերմաբար ձեռքը երկնցուց անոր և ըսաւ, «Խօսք տուր ինծի որ դուն միշտ հաստատ պիտի կենաս աս մտացդ վրայ»:

Փրիդերիկոս այնպիսի իշխան մըն էր՝ որուն կարօտ էր բարեկարգութիւնը իր սկզբնաւորութեանը: Քանզի աս գործոյն բարեկամները՝ թէ որ շատ տկարամտութիւն ցուցընէին, արգելք կըլլային անոր յառաջա-

դիմութեանը · իսկ թէ որ մեծ եռանդով մը շատ արտաքին , շուտով կըծագէր ան մրրիկը՝ որ բարեկարգութիւնը սկսուած օրէն ծածուկ կըպատրաստուէր անոր դէմ ։ Փրիդերիկոս զգուշաւոր էր՝ բայց քաջասիրտ ։ Ընիկայ Աստուծոյ կըսպասէր , և կըհետևէր Գամալիէլին իմաստուն խրատին , "Եթէ ատ խորհուրդը կամ գործը մարդոցմէ է նէ՝ կըքակուի · հապա թէ որ Աստուծմէ է՝ չէ՛ք կրնար ատոնք քակել" ։ Գործ · Ե · 38 , 39 ։

Թագաւորներուն ըրած փորձառութիւնը՝ առ սակաւ սակաւ ժողովուրդներն ալ ըրին , որոնց խիստ մտացիները սկսան վարժուիլ ան գաղափարին մէջ՝ թէ Հռովմայ եպիսկոպոսը սոսկ մարդ մըն է , և երբեմն ալ խիստ չարագործ մարդ մը ։ Պապերուն անառակութիւնը՝ քրիստոնեաները ՚ի բարկութիւն գրգռեց և Հռովմէական ատեանին ատելութիւնը՝ զանազան ազգաց սրտին մէջը արմատացաւ ։

Գերմանիոյ Տէրութիւնը զանազան վիճակներէ կըբաղկանար՝ որոնք դաշնակից էին իրարու հետ , և Կայսրը անոնց գլուխն էր · բայց ան վիճակներուն ամէն մէկ Տէրը իր յատուկ երկրին կիշխէր ։ Կայսերական Ժողովը՝ որ բոլոր իշխաններէն կըբաղկանար , օրինադրական իշխանութիւնը կըբանեցընէր բովանդակ Գերմանացի ազգին վրայ ։ Կայսրը հաստատութիւն կուտար ժողովին օրէնքներուն ու վճիռներուն · և իր ձեռքն էր անոնց գործադրութիւնը ։ Իսկ եօթը քաջազօր իշխանները՝ կայսրընտիր կըկոչուէին · քանզի երբոր կայսրը մեռնէր , անոնց արտօնութիւնն էր իրեն յաջորդը ընտրելու ։

Տէրութեան աս մասնաւոր սահմանադրութիւնը՝ ինչպէս որ Աստուածային Նախախնամութիւնը տնօրիներ էր , նոր գաղափարներ տարածելու ձեռնտու էր ։ Թէ որ Գերմանիոյ կառավարութիւնը միապետական եղած

ըլլար․ Գաղղիայի և Անգղիայի պէս, Ինքնակալին անձնիշխան կամքը գուցէ բաւական կըլլար երկար ժամանակ արգելք դնելու Աւետարանին յառաջադիմութեանը․ բայց զանազան վիճակներէն բաղկացած ըլլալով, թէ որ մէկ վիճակի մը մէջ ճշմարտութեան դէմ զինէին, ուրիշի մը մէջ գուցէ սիրով պիտի ընդունէին զանիկայ։

Դարձեալ՝ Գերմանացիք մասնաւոր յօժարութիւն մը ունէին կրօնական Նորոգութեան համար․ քանզի անոնք կեղծուպատիր բարեկրթութեամբ երբէք տկարացած չէին։ Անոնց վաղեմի բարքը՝ դեռ բնաջինջ եղած չէր։ Գերմանիայի մէջ կըգտնուէր այն ուղղութիւնը, հաւատարմութիւնը, աշխատութեան սէրը, յարատեւութիւնը և այն կրօնական յամառութիւնը՝ որ տակաւին կըտեսնուի հոն, և որոնցմէ աւելի յաջողութիւն կըգուշակուէր Աւետարանին ընդունուելուն, քան որչափ Եւրոպայի քանի մը ուրիշ ազգերուն՝ թեթեւ, ծաղրասէր կամ բիրտ բնաւորութիւնէն։

Իսկ Եւրոպայի ուրիշ տէրութիւնները . . . . .
. . . . . . . . . .

Ահա աս վիճակիս մէջն էր Եւրոպա, որ ատեն սկսաւ վեշտասաներորդ դարը, որ այնքան մեծ փոփոխութիւն մը պիտի ընէր քրիստոնէից մէջը․

## ՀԱՏՈՒԱԾ Ե

Արդ՝ ժողովրդոց և իշխանաւոր անձանց ինչ վիճակի մէջ ըլլալնին համառօտիւ նշանակելէն ետև, պէտք է որ սկսինք պատմել Նորոգութեան այն պատրաստութիւնները՝ որ աստուածաբանութեան և եկեղեցւոյ մէջ կըգտնուէին։

Ան տարօրինակ աստուածաբանութիւնը՝ որ անատենէն եկեղեցւոյ մէջ հաստատուեր էր , խաւարամած դարու մը համար հնարուած ըլլալով , անշուշտ պիտի խափանուէր ու ամէն կողմէն մեծ վնաս կրէր՝ երբոր մարդիկ լուսաւորէին . և արդարև այսպէս եղաւ ։ Պապերը ատեն ատեն բան աւելցուցեր էին քրիստոնէական վարդապետութեանը մէջ , բայց բան մը չէին հաներ , բացի այն բաներէն որ հակառակ կերևնային իրենց իշխանութեանը . և ի՛նչ որ հակառակ չէր թուեր , թող կուտային որ մնայ այն ։ Աս ընթացքով իրենց աստուածաբանութեանը մէջ՝ քանի մը ճշմարիտ վարդապետութիւններ կային . զոր օրինակ՝ փրկագործութեան և Աստուծոյ Հոգիին զօրութեանը վարդապետութիւնները , որոնցմով թէ որ յաջողակ աստուածաբան մը գտնուէր նէ անատենը , կարող էր զանոնք ձեռք առնելով՝ օտար վարդապետութիւնները կործանել ։

Եկեղեցին կործանած էր՝ Յիսուսի հաւատալով արդարանալու ան մեծ վարդապետութենէն զրկուելուն համար ։ Պէտք էր ուրեմն որ աս վարդապետութիւնը վերստին տրուէր իրեն , որպէս զի կարող ըլլար դարձեալ կանգնելու ։ Եւ ան նոյն ատենը որ աս հիմնական վարդապետութիւնը հաստատուելու ըլլար քրիստոնէից մէջ , ամէն մոլորութիւնները և աւելորդապաշտութիւնները՝ որ անոր տեղը բռներ էին , այսինքն՝ սուրբերուն բարեխօսութիւնները , արժանաւորութիւն ստանալու գործքերը , ապաշխարանքները , պատարագները , ներողութիւնները և այլն , իսկոյն անհետ պիտի ըլլային ։ Երբոր ճանչնային հաւատացեալները մի միայն Միջնորդը ու անոր մի միայն պատարագը , բոլոր ուրիշ միջնորդները և ուրիշ պատարագները բնաջինջ պիտի ըլլային ։ "Աս հաւատքով արդարանալու վարդապետութիւնը՝ (կըսէ մէկը* , որ աս նիւթիս վրայով կրնայ լուսաւորել հա-

* Լուտէր առ Պրէնտիոս ։

մարուելու), զեկեղեցին կըհաստատէ, կըսնուցանէ, կըշինէ, կըպահպանէ և կըպաշտպանէ։ Ո՛չ ոք կարող է քաջ վարդապետել եկեղեցւոյ մէջ, կամ յաջողութեամբ դէմ կենալ հակառակորդի մը, առանց աս ճշմարտութեանը վրայ հաստատ ըլլալու։ Ահա ասիկայ է ան գարշապարը՝ որ օձին գլուխը կըջախջախէ"։

Աստուած՝ իր գործին պատրաստութիւն ընելով, յաջորդաբար ամէն դարու մէջ աս ճշմարտութեան բազմաթիւ վկաներ հանեց։ Բայց ան ազնուամիտ մարդիկը՝ իրենք ալ պէտք եղածին չափ աղէկ ծանօթութիւն չունեցան ան ճշմարտութեանը վրայով, և չկրցան բացայայտ կերպով մը քարոզել զանիկայ։ Նաև գործը կատարելու անբաւական ըլլալով՝ միայն զանիկայ պատրաստելու գործիք մը եղան։

Հռովմ հազիւ թէ յափշտակած էր ան մեծ իշխանութիւնը՝ որ ատեն հզօր հակառակութիւն մը ծագեցաւ իրեն դէմ, որ միջին դարէն ետքն ալ տևեց։

Կլօդիոս Դուրինի արքեպիսկոպոսը՝ իններորդ դարուն, նմանապէս Պետրոս Պրիւյսի, անոր աշակերտը Հենրիկոս, և Առնոլդոս Պրէշեայի, ժԲերորդ դարուն՝ Գաղղիայի և Իտալիայի մէջ ջանք ըրին որ հոգիով և ճշմարտութեամբ Աստուծոյ երկրպագութիւն ընելը հաստատեն. սակայն իրենց անկատար գիտութիւնովը՝ ըստ մեծի մասին ուրիշ բան չէին իմանար այսանկ երկրպագութիւնը՝ բայց միայն պատկերներէն և արտաքին արարողութիւններէն ազատուիլը։

Դարձեալ՝ Վալտենցիք շարունակ վկայ եղան ճշմարտութեան։ Ինչպէս կըթուի որ ուրիշներէն աւելի արթուն քրիստոնեայ անձինք, Բիէմոնթի կողմը եղած Ալպեան լեռներուն գագաթները հին ժամանակէն բնակեր են. բայց յետոյ անոնց թիւը շատցաւ, և իրենց հաւատոյ վարդապետութիւնն ալ մաքրուեցաւ Պետրոս Վալտոսի աշակերտներէն։ Ասիկայ հարուստ վաճառա-

կան մըն էր Լիոնի մէջ, և 1170ին ծախեց իր ամէն ստացուածքը՝ և դրամը աղքատներուն բաժնեց ։ Կ'ըսուի թէ անիկայ՝ ինչպէս և իր բարեկամներն ալ, կըջանար՝ որ նախնական քրիստոնէութեան կատարելութիւնը հաստատէ կենցաղավարութեան մէջ ։ Ս.րբեն ճիւղերէն ընկլուեց ան իր գործը՝ չէ թէ արմատներէն ։ Սակայն իր խօսքը՝ որ Սուրբ Գիրքին վկայութեամբը կըհաստատէր, մեծ զօրութիւն մը ունէր, և Հռովմէական եկեղեցականաց դասակարգութիւնը 'ի հիմանց կըսասանէր ։ Այսպէս անոր աշակերտները իրենց բարձրաբերձ լեռներէն ուր որ կը բնակէին, շարունակ բողոքեցին շատ դարեր՝ Հռովմայ սնապաշտութեանցը դէմ ։ Անոնք կըմարտընչէին կենդանի յուսոյն համար, որ ունէին առ Աստուած՝ Յիսուս Քրիստոսով, հաւատով՝ յուսով և սիրով վերըստին ծննդեան և ներքին նորոգութեան համար, Յիսուս Քրիստոսի արդեանցը և իր շնորհացը և արդարութեանը կատարեալ բաւականութեանը համար ։

Այսու ամենայնիւ ան գլխաւոր ճշմարտութիւնը՝ ձեղաւորին հաւատքով արդարանալու ճշմարտութիւնը, իրենց բոլոր գրութեանը վրայ բաւական ազդեցութիւն չունէր ։

Ուիքլիֆ ծաղկեցաւ Անգղիայի մէջ՝ 1360ին, և Աստուածաշունչ Գիրքէն պապին դէմ վկայութիւններ կը բերէր. բայց ան ալ կատարեալ չիմացաւ թէ եկեղեցին մահաբեր հիւանդութիւնը՝ հաւատքով արդարանալու վարդապետութենէն զուրկ ըլլալն է ։

Յովհաննէս Հուս որ Լութերէն դար մը առաջ սկսաւ խօսիլ Պոհեմիայի մէջ, իր նախորդներէն աւելի աղէկ իմացաւ քրիստոնէական ճշմարտութեան բուն էութիւնը ։ Սակայն Քրիստոսէն շնորհք կըխնդրէր՝ միայն իր խաչիւը և իր չարչարանքներուն նախատինքներովը պարծենալու ։ Բայց աւելի եկեղեցականաց գայթակղեցուցիչ վարքին դէմ զինեցաւ, քան թէ Հռովմէական եկեղեցի-

իւ մոլոր վարդապետութեանցը դէմ։ Այսու ամենայնիւ Բարեկարգութեան կարապետը եղաւ ան. իր խարուկին բոցերը այնպիսի հուր մը վառեցին եկեղեցւոյ մէջ՝ որ մեծ լոյս մը տուաւ անոր խաւարին։

Յովհաննէս Հուս բանտին մէջ լռած ատենը՝ մարգարէական խօսքեր ալ ըսաւ. գուշակեց որ եկեղեցին ճշմարիտ բարեկարգութեան ժամանակը մօտեցած է. Ու երբ որ Պրակայ քաղաքէն փախստական ստիպուեր էր Պոհեմիայի դաշտերը թափառելու, ուր անթիւ բազմութիւն եւէն կերթային անոր քարոզութիւնը լսելու՝ աս խօսքերը ըսաւ անոնց. "Չար մարդիկը իրենց չարութիւնը ՚ի գործ դնել ուզան, անագորոյն որոգայթ մը լարելով սագին *։ Բայց սագը՝ որ ընտանի թռչուն մըն է, հանդարտ կենդանի մը, ու շատ բարձր չթռչող, թէ որ կրցաւ անոնց որոգայթները պատռել, ուրիշ թռչունները՝ որոնք աներկիւղ բարձրաթռիչ են օդոյն մէջ, ալ աւելի ուժով պիտի խորտակեն զանոնք"։

"Ճշմարտութիւնը՝ կորովաւորիք արծիւներ և բազէներ պիտի խրկէ անզօր սագի մը"։ Աս կանխաձայնութիւնները՝ բարեկարգողներուն ձեռքով կատարուեցաւ։

Դար մը անցաւ, ու Ս. Աւետարանին ջահը՝ որ բարեկարգողները վառեցին, լուսաւորեց արդարեւ շատ ժողովուրդներ, որոնք բերկրեցան անոր լուսովը։

Բայց ան ատենները՝ կենաց խօսքը ոչ միայն լռուեցաւ անոնց մէջ, զորոնք Հռովմայ եկեղեցին իր հակառակորդներուն տեղը դրեր էր. Ճշմարտութիւնը բուն Հռովմէականութեանը ծոցն ալ բազմաթիւ վկաներ ունէր։

Մետասաներորդ դարուն՝ Անսելմոս + Քանթէրպէրիի Արքեպիսկոպոսը, Քրիստոսի մարդեղութեան

* Հուս՝ սագ կը նշանակէ Պոհեմացւոց լեզուաւ ։ Տես երես 128 և 160 ։

+ Շտեմ. Պիտանի Գիտելեաց, 1844 տարւոյն. երես 25.

և միայն Անով մեղաց քաւութիւն ըլլալու վարդապետութիւնները հաստատեց իբրև գլխաւոր մասն քրիստոնէական հաւատոյ . և մէկ գրուածի մը մէջ՝ ուր որ աղէկ մեռնելու կերպը կըսորվեցընէ , սանկ կըսէ մեռնողին . "Միայն Յիսուս Քրիստոսի արդեանցը ապաւինէ" : Երկոտասաներորդ դարուն ալ՝ Սուրբն Բեռնարդոս յայտնաբարբառ կըքարոզէ փրկագործութեան խորհուրդը : "Թէև որ իմ մեղքս մէկ ուրիշէ մը կուգայ ինծի , կըսէ ան , ինչու համար իմ արդարութիւնս ալ նմանապէս ուրիշէ մը պիտի չշնորհուի ինծի . անշուշտ աւելի աղէկ է որ անիկայ տրուի ինծի՝ քան թէ բնածին եղած ըլլայ" : Նմանապէս շատ դպրոցականներ՝ ու ետքն ալ Գերսոն ատենադպիրը , եկեղեցւոյ մոլորութիւններուն և գեշ սովորութիւններուն դէմ սաստիկ մաքառեցան :

Բայց ասոնք զանց ընելով՝ գտնանք հիմա ան բիւրաւոր աննշան անձանց , որոնք թէպէտ անծանօթ էին աշխարհիս , սակայն ամենայնիւ Քրիստոսով ճշմարիտ կեանք ստացեր էին :

Կրօնաւոր մը Առնոլտի անունով՝ իր հանդարտ խուցին մէջ ամէն օր աս եռանդագին աղօթքը կընէր . "Տէր իմ Յիսուս Քրիստոս , ես կըհաւատամ որ միայն դուն ես իմ փրկութիւնս և իմ արդարութիւնս" :

Բարեպաշտ եպիսկոպոս մը Պալ քաղաքին՝ Քրիստափոր Տը Ուտէնհայմ կոչուած , ապակիի վրայ նըկարուած պատկերի մը վրայ՝ որ դեռ կըկենայ Պալ քաղքին մէջ , իր անունը գրել տուաւ , և անոր բոլորտիքն ալ աս խօսքը . "Իմ յոյսս Քրիստոսի խաչն է . ես շնորհք կըփընտռեմ՝ և չէ թէ գործք" : Ինքը կուզէր որ անիկայ միշտ իր աչքին առջևը ունենայ :

Կարթուսեան կարգէն խեղճ կրօնաւոր մը՝ Մարտինոս եղբայր անունով , սրտաշարժ դաւանութիւն մը գրեց , որուն մէջ այսպէս կըսէ . "Ամենողորմ Աստուած ,

գիտեմ որ ես չեմ կրնար փրկուիլ, կամ քու արդարութիւնդ ուրիշ կերպով մը հաճեցունել, բայց միայն արդեամբք և անպարտ չարչարանօք և մահուամբ քու ամենասիրելի Որդւոյդ . . . Գթածդ Յիսուս, իմ փըրկութիւնս քու ձեռքդ է : Դուն չես կրնար վերցունել ինծմէ քու սիրոյդ ձեռքը, ինչու որ ան զիս ստեղծեց, կազմեց և փրկեց : Դուն՝ մեծ ողորմութեամբ և անջնջելի կերպով իմ անունս գրեցիր երկաթի գրիչով մը, քու կողիդ՝ ձեռքերուդ և ոտքերուդ վրայ . . .» : Նարեմիտ Կարթուսեանը աս իր դաւանութիւնը գրելէն ետքը՝ տուփի մը մէջ դրաւ զանիկայ և պահեց ծերպի մը մէջ իր խուցին պատին վրայ : Եղբայր Մարտինոսին բարեպաշտութիւնը երբէք պիտի չիմացուէր, թէ որ չգըտնային յիշեալ տուփը՝ 21 Դեկտ. 1776. Կարթուսեանց վանքին մէկ տունը փլցընելու ժամանակին, որ ատենօք նոյն վանքին մէկ մասն էր : Ո՛րչափ վանքեր կան արդեօք, որ այսպիսի գանձեր պահած ունին :

Հազիւ թէ Կոստանդիա և Պալ քաղաքաց ժողովները եղեր էին, ուր տեղ Հուս և իր աշակերտները դատապարտեցան, որ Թովմաս Կոնեկտոս Կարմեղեան կըրօնաւորը Ֆրանսայի մէջ ծաղկեցաւ ու յայտնաբարբառ քարոզեց թէ Հռովմայ մէջ շատ անկարգութիւններ կըլլան, թէ եկեղեցին բարեկարգութեան կարօտ է, և թէ Աստուծոյ ծառայելով՝ պէտք չէ պապին բանադրանքէն վախնալ : Ֆրանսացիք մեծ եռանդով անոր խօսքը լսեցին. Հռովմ այրեց զանիկայ 1432 ին ; և Կոնեկտոսի ժամանակիցները բարձրաձայն վկայեցին թէ Աստուած փառաւորեց զանիկայ երկնից մէջ :

Անդրէաս Կռայնի Արքեպիսկոպոսը և կարդինալը Հռովմ գտնուելով, կայսեր կողմանէ դեսպանութեան պաշտօնով եկած, երբոր տեսաւ թէ պապին Սրբազնութիւնը՝ որուն միամտութեամբ հաւատացեր էր, սատապէլ բան մըն է և ոչ ուրիշ բան, զարմացաւ մնաց. և

իր պարզմտութեամբ Աւետարանական խրատներ գրեց Սիքստոս Չորրորդին, որուն պատասխան տուին ծաղր ընելով զինքը և հալածելով ։ Անտոնը Անդրէաս (1482ին) նոր ժողով մը ընել ուզեց Պալ քաղաքին մէջը ։ "Բովանդակ ընդհանուր եկեղեցին. կըսէր, երկպառակութիւններով, հերետիկոսութիւններով, մեղքերով, մոլութիւններով, անիրաւութիւններով և անթիւ չարիքներով սասաներ է. անանկ որ՝ մօտ է անոր խորտասոյզ ըլլալը դատապարտութեան սոսկալի անդունդին մէջ ։ Այսն որոյ կըծանուցանեմք թէ պէտք է Ընդհանուր ժողով մը ընել Կաթուղիկէ հաւատոյ բարեկարգութեանը և բարուց ուղղութեանը համար" ։ Սակայն Կրայնի արքեպիսկոպոսը բանտը դրուեցաւ Պալ քաղաքին մէջ, ուր տեղ իր կեանքը վճարեց ։ Հենրիկոս Ինստիտորիս անունով սրբազննիչը՝ որ անոր դէմ դատախազութիւն ընողներուն առաջինը եղաւ, աս նշանաւոր խօսքը ըրուցեց. "Բոլոր աշխարհս կաղաղակէ և ժողով կը խնդրէ. բայց չկայ ամենևին մարդկային զօրութիւն մը որ կարող ըլլայ ժողով ընելով բարեկարգել եկեղեցին ։ Ամենաբարձրեալը ուրիշ միջոց մը պիտի բանեցունէ, որ հիմա անծանօթ է մեզի, թէև շատ մօտ ըլլայ ան. և աս միջոցով՝ եկեղեցին իր նախնական վիճակը պիտի ընդունի" ։ Սրբազննիչի մը ըրած աս նշանաւոր մարգարէութիւնը՝ ան նոյն տարեները որ Լուտեր ծնաւ, Բարեկարգութեան ամենէն ընտիր ջատագովութիւնն է ։

Հերոնիմոս Սավոնարոլա. Բոլոնիայի մէջ 1475ին, Դոմինիկեան կարգը մտնելէն քիչ մը ետքը՝ ինքզինքը շարունակ աղօթք ընելու, ծոմ պահելու և ուրիշ ճգնութիւններու տալով՝ կաղաղակէր. "Ո՛վ դու՝ որ բարին ես, քու բարութեամբդ սորվեցուր ինծի քու արդարութիւններդ" ։ Ֆիօրէնցա տարուելով 1489ին՝ ազդու քարոզներ կուտար. իր ձայնը սրտերուն կըթա-

փանցէր, իր երեսը կրակ կըկարմրէր, և իր շարժմունքը հրապուրիչ գեղեցկութիւն մը ունէր: «Պէտք է Նորոգել զԵկեղեցին», կըսէր բարձրաձայն: Նոյն ատենն ալ կըհաստատէր այն մեծ սկզբունքը՝ որ միայն կարող էր կենդանութիւն պարգևել Եկեղեցիին: «Աստուած՝ կըսէր, մարդուն մեղացը ձրի թողութիւն կուտայ, և կարդարացընէ զանիկայ միայն իր ողորմութեամբը: Որչափ արդարներ որ կան երկրի վրայ, այնչափ ալ գթութիւն և կարեկցութիւն կայ երկինքը. քանզի ոչ ոք իր գործքովը կըփրկուի կամ կրնայ ինքիրմէն պարծենալ. և թէ Աստուծոյ առջևը հարցուէր բոլոր արդարներուն թէ՝ «Ձեր կարողութիւնովը փրկուեցաք», ամէնն ալ միտ աղաղակէին միաբերան, Ոչ՛ թէ մեզի, ով Տէր, չէ թէ մեզի, հապա քու անունիդ տրուի փառքը: Ասոր համար՝ ով Տէր, ես քու ողորմութիւնդ կըփնտըռեմ, ու իմ արդարութիւնս չեմ մատուցաներ քեզի. բայց երբոր դուն ինծի արդարացընես քու շնորհքովդ, անատենը քու արդարութիւնդ իմս է. ինչու որ շնորհքն է Աստուծոյ արդարութիւնը: Աստի՛ ով մարդ, որչափ երկար ժամանակ որ դուն չես հաւատար, դուն զրկուած ես շնորհքէն՝ մեղաւոր ըլլալուդ համար: Տէր Աստուած փրկէ զիս քու արդարութեամբդ, այսինքն՝ քու Որդւովդ, որ անիկայ միայն արդար գտնուեցաւ մարդոց մէջը»: Այսպէս հաւատքով արդարանալու այն մեծ և սքանչան վարդապետութիւնը խնդութեամբ լցուց Ավէնարոլային սիրտը: Աստի եկեղեցական մեծերը փուճ տեղը կըհակառակէին անոր. գիտէր որ Աստուծոյ պատգամները՝ տեսանելի եկեղեցիէն աւելի պատուական են, և որ պէտք է քարոզել զանոնք, թէ եկեղեցիին կամքովը ըլլայ, թէ առանց անոր կամացը, և թէ անոր կամքին դէմ ալ: Աստի կաղաղակէր միշտ. «փախէ՛ք, հեռու փախէ՛ք Բաբիլոնէն». ասանկ անունով Հռովմը իմացընելով: Բայց չգնաց Հռովմ իր սովորական կեր-

դովը պատասխան տալու անոր ։ 1497ին՝ Աղեքսանդր Զ. չարաչէր պապը կոնդակ մը հրատարակեց անոր դէմ, և 1498ին՝ դեսպէս տանջանքներ տալէն ետև աս բարեկարգողին՝ ողջ ողջ այրեցին զանիկայ ։

Յովհաննէս Միքայէլ Ֆրանչիսկեանը Պուրնեցի, որ թէպէտ չերենար թէ ջերմեռանդ վանական մը եղած ըլլայ, այսու ամենայնիւ սաստկութեամբ կըխօսէր եկեղեցիին խանգարուելուն դէմ ։ «Աւելի աղէկ է կըսէ, որ մէկ մարդ մը իր տղուն վիզը կտրէ, քան թէ մեծցունէ զանիկայ այնպիսի կրօնքի մը մէջ որ բարեկարգեալ չէ ։ Իսկ որ ժողովրդապետը կամ քահանայ մը կնիկ պահէ իր տանը մէջ, պարտիք երթալ ան տունը, և բռնութեամբ կամ խայտառակութեամբ կնիկը անկից դուրս հանել ։ Կան ոմանք որ Կոյս Մարիամին աղօթք կընեն, որպէս զի կարենան տեսնել զՍուրբ Կոյսը իրենց մահուան ժամուն ։ Դուռն սատանան պիտի տեսնես, չէ թէ զԿոյսն Մարիամ»։ Աս կրօնաւորը ստիպեցին որ իր ըսածները հերքէ, ու ան ալ չկրնալով դէմ կենալ՝ հերքեց զանոնք 1498ին ։

Յովհաննէս Լայլիեր Սորպոնեան վարդապետը՝ 1484ին, եկեղեցական մեծերուն բռնաւորական իշխանութեանը դէմ գրեց . «Բոլոր եկեղեցականները՝ ըսաւ, հաւասար իշխանութիւն մը առեր են Քրիստոսէ ։ Հռովմէական եկեղեցին՝ բնաւ միւս եկեղեցիներուն գլուխը չէ ։—Պէտք պարտիք, կըսէր, Աստուծոյ և Առաքելոց պատուէրները պահել, ու բոլոր եպիսկոպոսներուն և եկեղեցականաց մեծերուն պատուէրները . . . ոչինչ բան մը սեպել . Ինչու որ անոնք իրենց սնոտի հրամաններովը կործանեցին զեկեղեցին ։—Արևելեան եկեղեցւոյ քահանաները՝ իրենց ամուսնանալովը բնաւ չեն մեղանչեր . ուստի թէ որ մենք ալ ամուսնանայինք Արևմտեան եկեղեցւոյ մէջ՝ չէինք մեղանչեր ։—Սուրբ Սեղբեստրոսէն'ի վեր՝ Հռովմայ եկեղեցին այլ ևս Քր-

ատեանը ներկայացաւ, և բանտի մէջ մեռաւ 1482ին :

Սակայն՝ Բարեկարգութեան յառաջընթացներուն մէջ խիստ երևելի եղաւ Յովհաննէս Մէսսէլը, մականուանեալ «լոյս աշխարհի», որ ճշմարտութեան համար մեծ քաջութիւն և սէր ունէր, որ յաջորդաբար Կոլոնիա, Լուվէն, Փարիզ, Հայտէլպէրկ և Կրօնինկ քաղաքներուն մէջ աստուածաբանութեան վարդապետ կարգեցաւ, և որուն համար կըսէ Լուտեր, «Թէ որ ես յառաջագոյն կարդացած ըլլայի անոր գրուածքները, գուցէ իմ թշնամիներս հաւատային թէ Լուտեր ամէն բան Մէսսէլէն սորված է, այնքան իր միտքը և իմս համաձայն են իրարու հետ» : «Պօղոս և Յակոբոս Առաքեալները՝ կըսէ Մէսսէլ, տարբեր բաներ կըզրուցեն, բայց ոչ իրարու հակառակ : Թէ մէկը և թէ մէկալը կըսեն որ արդարը հաւատքով կապրի, բայց ան հաւատքով՝ որ սիրով կըյաջողի : Ան՝ որ Աւետարանը լսելով կըհաւատայ, կըփափաքի, կըյուսայ, կըվստահի աւետաբեր խօսքերուն, և կըսիրէ զԱնիկայ որ զինքը կարդարացընէ և երանելի կընէ, անատենը բոլորովին անձնանուէր կըլլայ անոր՝ որ կըսիրէ, և բան մը իրեն չյատկացըներ, որովհետև գիտէ որ ինքիրմէ բան մը չունի :— Աշխարը պէտի զանազանէ ան խօսերը՝ որով զինքը կըսնուցանեն. և վնասակարներէն զգոյշ պէտի կենայ, թէ և հովիւը ինք իր ձեռօքը տայ անոր : Ժողովուրդը պարտի հովիւներուն ետևէն երթալ արծելու տեղը. բայց երբոր ան հովիւները արծելու տեղը չեն տանիր զիրենք, ալ հովիւ չեն անոնք. և ան ժամանակը՝ որովհետև իրենց պաշտօնը չեն կատարեր, հօտն ալ պարտական չէ անոնց հնազանդելու : Առաջնորդներուն և վարդապետներուն պատուէրները ան կերպովը միայն կատարել պէտք է, ինչպէս որ Պօղոս Առաքեալը կըպատուիրէ (Ա Թես. Ե. 21). կամ՝ քանի որ Մովսէսի աթոռը նստած, Մովսէսի պէս կըխօսին : Մենք

Աստուծոյ ծառաներն ենք՝ չէ թէ պապին, ինչպէս որ գրուած է. «Դուն երկրպագութիւն պիտի ընես քու Տէր Աստուծոյդ, և անոր միայն պիտի ծառայես»:

Այսպէս՝ որչափ որ Բարեկարգութիւնը կը մօտիկնար, Ճշմարտութիւնը քարոզող ձայներն ալ կը շատնային:

Բայց աւելի աւելին կար. Բարեկարգութիւնը ոչ միայն վարդապետաց մէջն էր, այլ նաև ժողովրդոց մէջը: Ուիքլիֆի վարդապետութիւնները Օքսֆորթէն ելնելով բովանդակ քրիստոնէից մէջը տարածուեր էր, ու հետևողներ պահած էր Պավարիայի, Սուէվիայի, Ֆրանկոնիայի և Բրուսիայի մէջ: Բոհեմիայի մէջ՝ անմիաբանութեանց և պատերազմաց ծոցէն վերջապէս հանդարտաբարոյ և քրիստոսասէր ժողովուրդ մը ծաղկեր էր, նախնական եկեղեցիին նման՝ որ շատ աղու վկայութիւն կուտար աւետարանական ան մեծ սկզբունքին, թէ «Ինքը Քրիստոս է վէմը, որուն վրայ եկեղեցին շինուած է, և ոչ Պետրոս առաքեալը և իր յաջորդը»:

Ան ատենը եկեղեցին կը զգար որ պատերազմին ժամը մերձենալու վրայ է. վասն զի շատ վարդապետներ՝ հընգետասաններորդ դարուն վերջերը գուշակեր էին, թէ մօտ է Բարեկարգութիւնը:

Օգոստինեանց մեծաւորը Անդրէաս փրոլէս, որ գրեթէ կէս դարու մը չափ աս միաբանութիւնը կառավարեց, և որ անդրդուելի քաջութեամբ հաստատուն պահեց իր կարգին մէջ սուրբն Օգոստինոսի վարդապետութիւնները, իր կրօնակից եղբարցը հետ Վերնիկէրօտի մօտ՝ Հիմելփօրթի վանքը բնակելով, շատ անգամ Աստուծոյ խօսքը կարդացուած ատենը, կը դառնար ասանկ կըսէր մտադիր կրօնաւորներուն. «Եղբարք ահա կը լսէք Աստուածաշունչի վկայութիւնը. անիկայ կըսէ թէ մենք ինչ որ ենք նէ՝ շնորհքով ենք, և անով միայն ունինք՝ ինչ որ ունինք նէ: Ուսկի՞ց է ուրեմն այնքան խա–

ւորը, և այնքան սոսկալի անապաշխարութիւնները . . . ։ Ո՛վ եղբարք, քրիստոնէութիւնը՝ մեծ և աներկիւղ Բարեկարգութեան մը կարօտ է. և արդէն կըտեսնեմ որ անիկայ մօտենալու վրայ է"։ Անատենը կրօնաւորները կաղաղակէին ըսելով. "Ինչու համար դու ինքնդ չես սկսիր աս Բարեկարգութիւնը ընել, և այնքան մոլորութիւններու դէմ կենալ"։ Իսկ ծերունի մեծաւորը պատասխան կուտար. "Կըտեսնէք, եղբարք, որ ես ծերացած եմ և մարմնով տկար. նաև չունիմ ան գիտութիւնը, հանճարը և պերճախօսութիւնը որ այսպիսի մեծ գործը կը պահանջէ։ Բայց Աստուած պիտի յարուցանէ ախոյեան մը, որ իր երիտասարդական հասակովը, ուժովը, խելքովը, գիտութեամբը և պերճախօսութեամբը՝ առաջին տեղը պիտի գրաւէ։ Անիկայ Բարեկարգութիւնը պիտի սկսի, անիկայ մոլորութեան դէմ պիտի կենայ, և Աստուած այնպիսի քաջութիւն մը պիտի տայ անոր՝ որ համարձակի մեծամեծ մարդոց դէմ կենալու"։

Ֆրանչիսկեան կարգէն կրօնաւոր մը Յովհաննէս Հիլդէն անունով՝ Այզենախ քաղաքին վանքը կը բնակէր, Թուրինկիայի մէջ։ Անիկայ մտադրութեամբ կարգաց Դանիէլի մարգարէութիւնները և Սրբոյն Յովհաննու Յայտնութիւնը. ու աս գրքերուն վրայով մեկնութիւն մըն ալ գրելով՝ պախարակեց վանական կարգին խիստ գէշ սովորութիւնները։ Ասոր կրօնաւորները բարկացան և բանտը դրին զանիկայ. ուր տեղ իր ծերութիւնը և բանտին աղտեղութիւնը պատճառ եղան որ ծանր հիւանդութիւն մը եկաւ վրան։ Ողորմելի կրօնաւորը՝ իրենց առաջնորդ եղբայրը կանչել տուաւ։ Անիկայ եկածին պէս՝ առանց հարցընելու թէ ինչ ըսելիք ունի բանտարկեալը, բորբոքեցաւ բարկութեամբ և սկսեց սաստիկ յանդիմանել զանիկայ իր վարդապետութեանը համար, որ հակառակ էր՝ (կըսէ ժամանակագրութիւնը) կրօնաւորաց խոհանոցին։ Ան ատենը

Ֆրանչիսկեան կրօնաւորը իր հիւանդութիւնը մոռնալով և 'ի խորոց սրտէ հառաչելով մը՝ ըսաւ . "Այս հանդարտութեանս կըհամբերեմ քու նախատինքներուդ , Քրիստոսի սիրոյն համար . վասն զի ես չըսի անանկ խօսք մը՝ որ վանական կեանքին վնաս մը տայ . միայն թէ յանդիմանեցի խիստ երևելի եղած գէշ սովորութիւնները ։ "Սակայն (շարունակեց անիկայ իր խօսքը ,) ուրիշ մէկը գալու է , յամի Տեառն 1516 ին . անիկայ ձեզ պիտի ըսէ , ու դուք պիտի չկրնաք անոր դէմ կենալու"։ Յովհաննէս Հիլդէն որ գուշակած էր թէ աշխարհիս վախճանը պիտի ըլլայ 1651 ին , այս անգամ շատ չխաբուեցաւ գալու բարեկարգողին ժամանակը գուշակելով . քանզի քիչ մը ատենէն ետքը իր բանտին մօտ տեղ մը Լութեր ծնաւ . ու նոյն Այզենախ քաղքին մէջ՝ ուր որ աս կրօնաւորը բանտը դրուեր էր , անիկայ ուսում սորվելու սկսաւ , և հրապարակաւ ձեռք զարկաւ եկեղեցին բարեկարգելու . միայն թէ Ֆրանչիսկեան կրօնաւորին ըսած ժամանակէն տարի մը ետքը եղաւ աս բանը ։

## ՀԱՏՈՒԱԾ Զ

ԱՅՍՊԷՍ իշխանները և ժողովուրդները , եկեղեցւոյ կենդանի անդամները և աստուածաբանները , իւրաքանչիւր ալ իր վիճակին մէջ կաշխատէր պատրաստելու ան գործը՝ որ վեշտասաներորդ դարը պիտի յայտնէր ։ Սակայն Բարեկարգութիւնը ուրիշ օգնական մըն ալ պիտի ունենար , և անիկայ էր գիտուններուն դասը ։

Մարդկային հանճարը՝ Իտալիայի մէջ իր ազատութեան առաջին թափը արձակեց ։

Արդէն չորեքտասաներորդ դարուն Տանդէ և Փեթ-

րարգա՝ Հռովմայ նախնի բանաստեղծները կը պատուէին, բայց նոյն ատենը՝ առաջինը դժոխքին մէջ կը դնէր Հըռովմայ հօր պապերը, և երկրորդը համարձակամայն բողոքելով՝ նախնական եկեղեցւոյ սահմանադրութիւնը կը պահանջէր: Հնգետասաներորդ դարուն սկզբնաւորութեանը՝ Յովհաննէս Ռաւեննացին մեծանուն հանդիսացաւ Պատուայի և Ֆլորէնցայի մէջ՝ լատինական գրագիտութիւնը սորվեցընելովը. նմանապէս Գրիգոլորաս՝ Ֆլորէնցայի և Պաւիայի մէջ, Յունաց ընտիր մատենագրութիւնները թարգմանելովը:

Այսպէս Արեւելքէն նոր նշոյլներ ծագեցաւ Արեւմտեան կողմը: Գէորգ Տրապիզոնցին, Արգիրոպուլոս, Բեսարիոն, Լասկարիդ, Քաղկոնտիղաս և ուրիշ շատ գիտնական անձինք՝ բովանդակ Արեւմուտք տարածեցին Յունաստանի և անոր երեւելի մատենագիրներուն վրայ իրենց ունեցած սէրը. անանկ որ Իտալացւոց հայրենասիրութեան իղձը շարժելով՝ ծաղկեցաւ Իտալիա գիտուն մարդիկներով: Ասոնց մէջ անուանի եղան Գուարինոս, Աւրիսպաս, Արեթինոս, Փոկիոս և Վոլլաս, որոնք Լատինացւոց հնութեան վաղեմի պատիւը տեղը բերելու ջանացին: Անատենը լուսոյ մեծ նշոյլ մը ծագեցաւ, ուսկից Հռովմ անշուշտ պիտի վնասուէր:

Ստոյգ է որ աս գիտնականները բարձրաձայն կը վըկայէին, թէ իրենց գիտութիւնը ամենեւին վնաս մը չունի եկեղեցւոյ հաւատքին. սակայն բարեկարգողներէն շատ առաջ՝ դպրոցական վարդապետներուն դէմ կեցան ու զանոնք ծաղր ըրին: Մէկ քանիները ևս Աւետարանին վարդապետութիւնները քարոզեցին, և Հռովմայ խիստ յարգելի եղած բաներուն անգամ դպան: Արդէն Տանդէ բանաստեղծը՝ որ թէպէտ Հռովմէական վարդապետութիւններուն մեծ մասին յարեալ էր, այսու ամենայնիւ յայտնի կը քարոզէր հաւատոյ զօրութիւնը, ինչպէս որ բարեկարգողները ըրին. քանզի ըսած էր ան՝

թէ "Ճշմարիտ հաւատքն է որ մեզ երկնաքաղաքացի կընէ : Հաւատքը՝ Աւետարանական վարդապետութեանը նայելով՝ կենաց սկիզբն է . ան կայծն է որ միշտ աւելի տարածուելով՝ պայծառափայլ բոց մը կըդառնայ և մեզ կը լուսաւորէ, ինչպէս որ աստղերը երկինքը կը լուսաւորեն : Առանց հաւատոյ՝ ոչ բարեգործութիւն կայ և ոչ համեստ կենցաղավարութիւն մը՝ որ կարենան օգնել մեզի : Մեղքը որչափ որ մեծ ըլլայ՝ աստուածային շնորհաց բաշխումները ալ աւելի մեծ են : Մարդուս հոգին՝ պապերուն բանադրանքովը չկորսուիր : Աստուծմէ միայն մեր արդարութիւնը կուգայ հաւատքով" :

Ժամանակէ մը ետքն ալ Լաւրենտիոս Վալլա՝ եկեղեցւոյ կարծիքները հնութեան ուսումով քննեց : Ուստի Քրիստոսի և Աբգար Թագաւորին մէջ եղած Թղթակցութեան վաւերական ըլլալը ուրացաւ . հերքեց Առաքելական Հանգանակին երբ շինուելուն աւանդութիւնը , և քանդեց ան հիմունքը՝ որոնց վրայ հաստատուեր էր ան կարծեցեալ ժառանգութիւնը , որուն համար կըսուի թէ պապերը Կոստանդիանոսէն առած են :

Բայց ան մեծ լոյսը որ նախնեաց մատենագրութիւնները կարգալէն ծագեցաւ հնգետասաներորդ դարուն , աւելի յարմարութիւն ունէր հաւատքը կործանելու՝ քան թէ շինելու : Ո՛չ Հոմերոսի և ոչ Վիրգիլիոսի գործն էր զեկեղեցին բարեկարգելը : Ընտիր ուսմանց , գիտութեանց և արհեստից ծաղկիլը՝ երբէք կրօնին բարեկարգութեան պատճառը չեղաւ : Բանաստեղծներուն հեթանոսութիւնը վերստին երևնալով Իտալիայի մէջ՝ աւելի ձեռնտու եղաւ մարդոց սրտին բնական հեթանոսութիւնը հաստատելու : Այս վերջապէս գիտնականներուն մէջ անանկ անհաւատութիւն մը ծնաւ , որ թէպէտ երեսանց եկեղեցւոյ հնազանդութիւն կըցուցընէր , բայց քրիստոնէական կրօնին խիստ մեծ ճշմարտութեանցը դէմ կըմաքառէր : Ահա այսպէս՝ փիլիսոփայական կրօնը

երբէք պիտի չկրնայ զեկեղեցին և զաշխարհը նորէն ծը-նանելու ։

Ի՞նչ պիտի պատահէր ուրեմն, թէ որ Ճշմարիտ քրիստոնէութիւնը աշխարհիս մէջ երևցած չըլլար, և թէ որ հաւատքը՝ իր զօրութեամբը և սրբութեամբը՝ մարդոց սրտերը վերստին չընցուներ ։ Բարեկարգութիւնը կրօնը ազատեց, և անոր հետ մարդկային ընկերութիւնն ալ ։ Եթէ որ Հռովմայ եկեղեցին՝ Աստուծոյ փառքին և ժողովրդոց երջանկութեանը սրտանց փափաքէր, ուրախութեամբ պիտի ընդունէր զԲարեկարգութիւնը ։ Բայց աս բաները Լևոն Ժ պապին ի՞նչ հոգն էր ։

Այսու ամենայնիւ անհնար էր որ մէկ ջահ մը վառուած ըլլար Իտալիայի մէջ, և իր լոյսը՝ Ալպեան լեռներուն անդիի կողմը չտեսնուէր. ուստի անցնինք հիմա Գերմանիա ։

Նախնեաց գրականութեան ուսումը՝ Գերմանիայի մէջ նման արդիւնք մը ունեցաւ՝ որ Իտալիայի և Գաղղիայի մէջ ունեցածէն գլխովին տարբեր էր. վասն զի աս ուսումը այն երկրին մէջ՝ հաւատոյ հետ միացաւ ։ Ասոնց առաջին նորոգիչները Իտալիայի և Գաղղիայի մէջ, թեթևամիտ և շատ անգամ անհաւատ վարք մը ունեցան ։ Իսկ անոնց յաջորդները Գերմանիոյ մէջ՝ ծանրաբարոյ էին, ու բարի նախանձով լցուած՝ ճշմարտութիւնը կը փնտռէին ։ Իտալիա՝ գրականութիւնը և արտաքին գիտութիւնները գովելով, անհաւատ հակառակորդներ ծը-նաւ. իսկ Գերմանիա՝ խորին աստուածաբանութեան պարապելով և մտադրութեամբ սորվելով, ծնաւ Հռովմայ դէմ անանկ հակառակորդներ, որոնք կատարեալ հաւատով լցուած էին ։

Ճշմարտութիւնը յաղթական հանդիսանալու համար, պէտք էր նախ որ այն զէնքերը՝ որոնցմով պիտի յաղթէր, Հին և Նոր Կտակարանին սուրբ Գիրքերը բացուին ։ Հարկաւոր էր որ քրիստոնէից մէջ մեռած ար-

Նախնեաց Եբրայական և Յունական սուրբ Գրոց սէրը և ուսումը ։ Այս էր մարդը՝ որն որ Աստուածային Նախախնամութիւնը ընտրեց այս գործոյն համար, Յովհաննէս Ռուեկլինոս կըկոչուէր ։

Ֆօրցհէյմի եկեղեցիին դասէն պատանիի՝ մը խիստ գեղեցիկ ձայնը կը լսուէր․ անանկ որ՝ անիկայ Պատ քաղաքի իշխանին ուշադրութիւնը իրեն դարձուց ։ Յովհաննէս Ռուեկլինոսին ձայնն էր, ան բարեբարոյ և զուարթամիտ պատանիին, որ նոյն քաղաքը բնակող համեստ մարդու մը զաւակ էր ։ Իշխանը շատ սէր ձգեց անոր վրայ, և 1743ին՝ որոշեց որ անիկայ իր փոքրիկ որդւոյն հետ Փարիզու համալսարանը երթէ ։ Ռուեկլինոս գտաւ հոն՝ Սպարտացի Հերոնիմոսը և Յովհաննէս Վէսսէլը՝ "Լոյս աշխարհի" կոչուած․ և առիթ ունեցաւ այսպիսի հմուտ վարժապետներէն Յունական և Եբրայական լեզուները սորվելու ։ Աս Գերմանացի աղքատ պատանին՝ հարուստ աշակերտաց համար կօրինակէր Հոմերոսի երգերը և Իսոկրատէսին խօսքերը, ու անանկ վաստակով մը կըշարունակէր իր ուսումները ու գիրքեր ծախու կառնէր ։

Ապա հետագայ խօսքերը լսեց Վէսսէլի բերնէն, որոնք սաստիկ տպաւորեցան իր մտքին մէջը․ "Պապերը կրնան սխալիլ ։ Մարդոց որ և իցէ ըրած գործքերը մեղաց քաւութեան համար՝ հայհոյութիւն են Քրիստոսի դէմ, որ հաշտեցուց և արդարացուց մարդկային ազգը ։ Աստուած միայն ունի կատարեալ արձակում տալու իշխանութիւնը․ հարկաւոր չէ որ մէկը իր մեղքերը քահանային խոստովանի ։ Նաև քաւարան չկայ" ․․․ ։

Քիչ մը ատենէն ետքը Եբերհարդ Վիրդեմպէրկցին՝ Դիւպինկէն քաղաքը կանչեց զՌուեկլինոս, որ այս քաղաքի նորահաստատ համալսարանը զարդարէ և ծաղկեցընէ ։

Կայսրընտիրը՝ 1495ին Հռոմ խրկեց զանիկայ, ուր

տեղ իր ունեցած բոլոր ժամանակը՝ Եբրայական լեզուին մէջ յառաջադիմութիւն ընելու գործածեց, Աբդիաս Սփորն գիտուն Իսրայելացիին քովը :

Երբոր Հռեւկղինոս Գերմանիա դարձաւ, թարգմանեց և բացատրեց ապաշխարութեան սաղմոսները, սրբագրեց Վուլկաթա ըսուած Լատիներէն Աստուածաշունչը, և մանաւանդ քերականութիւն և բառարան մը հրատարակելով առաջին անգամ Գերմանիայի մէջ, մեծ յարգ և համբաւ ունեցաւ :

Բայց Հռեւկղինոս՝ ոչ միայն իր գրուածքներովը, այլ իր վարքովն ալ կը ջանար ճշմարտութեան թագաւորութիւնը յառաջացընելու : Ո՛չ ստակի կը խնայեր և ոչ աշխատութեան, Գերմանիա բերել տալու Յունարէն և Լատիներէն ընտիր մատենագրութիւնները՝ որ Իտալիայի մէջ կը տպուէին . և աս կերպով՝ աննշան մէկու մը տըղան կաշխատէր իր ազգը լուսաւորելու՝ հարուստ առեւտրականներէն և զօրեղ իշխաններէն աւելի : Իր խօսքերը մեծ ազդեցութիւն մը ունէին պատանիներուն վրայ . և աս բանիս համար՝ Բարեկարգութիւնը խիստ շնորհապարտ է անոր : Աս ըսածնուս միայն մէկ օրինակը կը դնենք հոս : Զինագործի մը զաւակ՝ պատանի մը՝ Շուարցէրդ (Սեւ հող) կոչուած, որ Հռեւկղինոսի ազգականն էր, ուսմունք սորվելու համար եկաւ անոր Եղիսաբեթ քրոջը տունը բնակեցաւ : Հռեւկղինոս ուրախութեամբ լցուեցաւ, տեսնելով ծաղկահասակ աշակերտին ուշիմութիւնը և ջանասիրութիւնը . սիրով ընդունեց զանիկայ, ազդու խօսքերով խրատեց, գրքեր ընծայ տուաւ անոր, ու բան մը չխնայեց անկից, որպէս զի իր ազգականը՝ եկեղեցիին և հայրենեաց օգտակար մարդ մը ըլլայ : Իսկ ցնծութիւն մը կը զգար իր սրտին մէջը՝ երբոր կը տեսնէր որ իր գործը արդիւնաւոր ըլլալու վրայ է : Ուստի անոր Գերմաններէն Շուարցէրդ անունը բարբարոսական համարելով, Յունարէնի թարգմանեց ըստ

սովորութեան՝ ան ժամանակին, և անուանեց զանիկայ Մելանկթոն, որ ետքը Լուտերի հռչակաւոր բարեկամը եղաւ :

Երբ որ Ռէօկլինոս հանդարտութեամբ իր ուսմանցը կըպարապէր, դպրոցականներուն թշնամութիւնը առիթ տուաւ որ յանկարծ՝ իր կամացը դէմ, մեծ վէճի մը մէջ մտնէ. և աս բանը Բարեկարգութեան նախապատրաստութիւն մը եղաւ :

Կողոնիայի մէջ մկրտեալ Ռաբբի մը կար Փֆէֆֆէրքորն անունով, որ մտերիմ բարեկամութիւն ունէր Հոխստրատէն սրբաքննիչին հետ : Աս մարդուն հետ՝ Դոմինիկեանները Մաքսիմիլիանոս կայսրէն հրաման մը առին յատուկ իրենց խնդրանօքը, որ Հրէաները՝ Աստուածաշունչէն զատ, իրենց ամէն գրքերը նոյն քաղաքին դատարանը բերեն : Աս գրքերը պիտի այրէին հոն, պատճառելով թէ անոնց մէջ շատ հայհոյութիւններ գըրուած են Յիսուս Քրիստոսի դէմ: Պէտք է խոստովանիլ թէ ան գրքերուն մէջ հայհոյութիւն չկար ալ նէ՝ գոնէ շատ անտեղի խօսքեր կային, և թէ Հրէաները մեծ կորուստ մը չէին ըներ յիշեալ հրամանը 'ի գործ դրուելուն :

Կայսրը հրաւիրեց զՌէօկլինոս, որ աս գրքերուն վըրայով իր կարծիքը զրուցէ : Ան ալ զատեց անոնց մէջէն քրիստոնէութեան դէմ գրուած գրքերը, և տուաւ որ այրեն. բայց ջանաց մնացածները ազատելու : "Հրեաները դարձի բերելու լաւագոյն միջոցը ան է, ըսաւ, որ ամէն մէկ համալսարանին մէջ Եբրայական լեզուի համար երկու վարժապետ դրուի, որոնք աստուածաբաններուն սորվեցունեն Եբրայեցերէն Աստուածաշունչը կարդալ, և այսպէս ջրել աս ժողովուրդին Ռաբբիներուն խօսքը" : Ասոր վրայ Հրէաները հրաման ընդունեցին որ իրենց գրքերը ետ առնեն :

Ան ատենը նորահաւատ Ռաբբին և սրբաքննիչը կա-

տաղի ձայներ հանեցին, ինչպէս կընեն անօթի ագռաւ-ները՝ երբ որ իրենց որսը կըփախցընեն: Ռեւխլինոսի գրուածքներուն մէջէն քանի մը խօսք ընտրեցին, ու ա-նոնց ծուռ մեկնութիւններ տալով՝ հերետիկոս համբա-ւեցին աս հեղինակը. նաեւ ամբաստանութիւն ընելով ա-նոր վրայ, թէ ծածուկ յօժարութիւն մը ունի Հրէու-թեան, սպառնացան սրբաքննութեան բանտը դնել զանիկայ: Առջի բերանը Ռեւխլինոս վախցաւ. բայց երբոր աս մարդիկը աւելի գոռոզացան եւ անարգական պայմաններ առաջարկեցին անոր՝ արիացաւ, ու 1513ին գրուած մը հրատարակեց, "Պաշտպանութիւն զիս բամ-բասողներուն դէմ" ըսուած, որուն մէջ ազդու կերպով մը՝ դպրոցական աստուածաբանները կընկարագրէ:

Դոմինիկեանները երդում ըրին վրէժ առնել անկից, եւ կըյուսային որ իրենց սատանեայ զօրութիւնը պիտի հաստատեն բարձրագոյն հրամանով մը: Սխստրատէն ատեան մը ընել տուաւ Մայնցի մէջ՝ Ռեւխլինոսին դէմ, ուր տեղ աս գիտնական մարդուն գրուածքները այրուե-լու դատապարտուեցան: Ան ատենը գիտնականները տեսնելով որ Ռեւխլինոսի դէմ եղածները իրենց ալ կըվերաբերի, ամէնը մէկէն ոտք ելան: Քահանաները փոխուած էին. Գերմանիա Սպանիայի պէս չէր: Գրա-կանութեան մեծ յառաջադիմութիւնը արթընցուցեր էր հասարակութեան միտքը, եւ զանիկայ մէկ ատեան մը կազմեր էր, որուն առջեւը բարձրագոյն աստիճանի եկե-ղեցականները ալ գլուխ կըծռէին: Ռեւխլինոս՝ Ժ Լեւո-նին բողոքեց: Աս պապը որ չէր սիրեր տգէտ եւ կոյր նախանձաւորութիւն ունեցող կրօնաւորները, Սփայր քաղաքի եպիսկոպոսին յանձնեց գործը. ան ալ Ռեւխ-լինոսի անմեղութիւնը երեւան հանելով՝ վճռեց որ դա-տաստանի ծախքերը կրօնաւորները վճարեն:

Լուտեր երբոր լսեց ինչ որ Ռեւխլինոս ըրեր էր, ա-սանկ գրեց իրեն, Դոմինիկեանց դէմ իր ըրած յաղ-

Թուղթնէն քիչ մը ետքը . «Տէրը՝ քեզմով աս գործքերը կատարեց , որպէս զի Սուրբ Գրոց լոյսը սկսի փայլիլ Գերմանիայի մէջ , ուր որ այսքան դարերէն 'ի վեր՝ աւա՜ղ , ոչ միայն ծածկուած կըկենար , հապա բոլորովին մարած էր» ։

## ՀԱՏՈՒԱԾ Է

Բայց արդէն այնպիսի մարդ մը ելեւած էր , որ իր կենացը առաջին գործը համարեցաւ համալսարաններուն և վանքերուն մէջ դաս տրուած դպրոցական աստուածաբանութեանը դէմ մաքառելու . և ասիկայ էր քաջանուն մատենագիրն Էրասմոս , որ վեշտասաներորդ դարուն սկիզբները ծաղկեցաւ ։

Էրասմոս դեռ տասնուիրեք տարեկան հասակին մէջ էր , որ իր ծնողքը մեռան ։ Իր խնամակալները շատ կըստիպէին որ կրօնական կեանքը ընտրէ իրեն , բայց ասիկայ միշտ սաստիկ ընդդիմութիւն կընէր աս բանիս ։ Վերջապէս համոզեցին որ մէկ վանք մը մտնէ . բայց հազիւ թէ մտեր էր՝ այնպէս եկաւ իրեն , որ իր ուխտերուն ծանրութեանը տակը կըճնշուի ։ Ուստի վերստին ազատութիւն գտնելով՝ ելաւ Քամպրայի արքեպիսկոպոսին պալատը գնաց , ու ետքն ալ Փարիզու համալսարանը մտաւ . ուր տեղ իր ուսմունքը կըշարունակէր յետին աղքատութեամբ՝ բայց անխոնջ պարապելով ։ Երբոր քիչ մը ստակ ձեռքը կանցնէր , անով նախ և առաջ Յոյն մատենագրաց գրքերը ծախու կառնէր , ու ետքը իրեն պէտք եղած հանդերձը կըհոգար ։ Շատ անգամ խեղճ Հոլանտացին՝ զուր տեղը իր պաշտպաններուն առատաձեռնութեանը կըդիմէր . ասոր համար՝ ետքը իր բոլոր կենացը մէջ մեծ ուրախութիւն կըհա-

մարէր իրեն՝ աղքատ ուսումնասէր տղոց ձեռնտու ըլլալը ։ Էրասմոս անձանձիր պարապելով ճշմարտութիւնը և գիտութիւնը փնտռելու, աստուածաբանական ուսմունքէ կը հրաժարէր, վախնալով թէ գուցէ մոլորութիւններ կը գտնէ անոնց մէջը, և իբրև հերետիկոս կամբաստանուի ։

Երիտասարդն Էրասմոս շատ աշխատասէր էր. իր ճամբորդութիւններուն մէջ ևս՝ որ սովորաբար ձիով կընէր, երբէք պարապ չէր կենար, այլ ճամբայ գացած ատենը՝ միտքին մէջ նորանոր նիւթեր կը պատրաստէր, և իջևանը հասնելուն՝ իր խորհրդածութիւնները կը գրէր կարգի կը դնէր ։ Ահա աս կերպով շինեց իր հռչակաւոր երգիծաբանութիւնը կրօնաւորներուն դէմ, "Գովեստ յիմարութեան" * կոչուած, որ ատեն Իտալիայէն դէպի Անգղիա ճամբորդութիւն կընէր ։

Էրասմոս իսկոյն մեծ համբաւ ունեցաւ գիտուններուն մէջը. բայց կրօնաւորները բարկանալով սաստիկ թշնամացան անոր դէմ ։ Երբոր իշխանաւոր մարդիկ կը հրաւիրէին զԷրասմոս որ իրենց քովը երթայ, անիկայ կերպ կերպ պատճառներ մէջ բերելով՝ հեռու կը կենար անոնցմէ ։ Աւելի աղէկ կը համարէր Փրոպենիոս տպագրիչին հետ աշխատիլ, անոր տպած գրքերը սրբագրելով՝ և այնպէս իր ապրուստը ճարելով, քան թէ Կարոլոս Ե, Հենրիկոս Ը, և Ֆրանչիսկոս Ա թագաւորներուն հոյակապ պալատները բնակելով՝ անոնց մտերմութիւնը և շքեղութիւնը վայելել, կամ կարդինալական խոյրը ընդունիլ, որն որ իրեն կընուիրէին ։

Աս պատուական անձը 1509ին՝ Անգղիայի մէջ Օքսֆօրթի համալսարանին դասատու կարգեցաւ. 1516ին Զուիցերիի Պալ քաղաքը դարձաւ, և 1521ին՝ հոն իր բնակութիւնը հաստատեց ։

* Աս գիրքը՝ քանի մը ամսուան մէջ եօթը անգամ տպուեցաւ. և քսանուեօթը անգամ՝ Էրասմոսի բոլոր կենացը մէջ ։

Էրազմոս երբեք բարեկարգող չեղաւ և չկրցաւ ըլլալու. սակայն ուրիշներուն համար ճամբայ բացաւ։ Ան միայն գիտութեան սէրը՝ քննութեան ու հարցափորձ ընելու ոգին տարածեց, բայց նաև բարձրաստիճան եկեղեցականներէ և հզօր իշխաններէ պաշտպանութիւն գտնելով, եկեղեցւոյ մոլորութիւնները խայտառակեց, և անոնց դէմ զինեցաւ խիստ կծու խօսքերով։

Բայց Էրազմոս ոչ միայն աս կերպով մաքառեցաւ անոնց հետ, այլ գիտութեան և հմտութեան միջոցաւ ալ։ Անոր կոչեց որ Թովմաս Ագուինացիին և ուրիշ դպրոցականներուն աստուածաբանութիւնը չսորվին, հապա եկեղեցւոյ Հայրերուն գրքերը կարդան աստուածաբան ըլլալու համար, և մանաւանդ Նոր Կտակարանը։ Աս ալ ըսաւ, թէ պէտք չէ որ Վուլկաթայի Աստուածաշունչին կապուին միայն, որուն մէջ շատ սխալներ կան. և մեծ ծառայութիւն մը ըրաւ ճշմարտութեանը՝ հրատարակելով Նոր Կտակարանին Յունարէն բնագիրը, որ Արևմտեան երկիրներուն մէջ շատ քիչ մարդու ծանօթ ըլլալով՝ կարծես թէ հոն բոլորովին կորսուած էր։ Աս գիրքը 1516ին հրատարակուեցաւ Պա՛լ քաղաքը, Բարեկարգութեանն առիթ մը տուաւ։ Ասանկ՝ Էրազմոս՝ Նոր Կտակարանին բնագիր ընծայելով կարգացուելուն համար աշխատեցաւ, ինչպէս որ Հռեխլինոս ալ աս ջանքը ըրած էր Հին Կտակարանին համար։ Ան ժամանակէն 'ի վեր՝ աստուածաբանները սկսան կարդալ Աստուծոյ խօսքը ան նոյն լեզուներովը որ գրուած էր. և այսպէս վերահաստատ եղաւ հողը՝ Բարեկարգողներուն մաքուր վարդապետութեանը։

Էրազմոսի՝ Նոր Կտակարանէն պայծառափայլ լոյս մը ծագեցաւ. իր շինած մեկնութիւնները՝ Առաքելական Թղթոց և Մատթէոսի ու Յովհաննու աւետարաններուն վրայ, իր տպել տուած Կիպրիանոսի և Հերոնիմոսի գործքերը, իր թարգմանութիւնները՝ Որոգինէսի, Ա-

զանիկայ բնազդէն ընել կրցանար ; միայն Աստուծոյ խօսքին և Ճշմարտութեան անյաղթելի զէնքովը :

Բայց Հութթընցին՝ իր պատերազմական սաստիկ եռանդին մէջն ալ դիւրազգաց սիրտ ունենալը ցըցուց . Երբ որ իր ծնողքը մեռան , անոնց ամէն ինչքը և ստացուածքը իր եղբայրցը տուաւ , թէպէտև ինքն էր անդրանիկը . նաև աղաչեց որ բնաւ նամակ չգրեն և սակ չխրկեն իրեն , որ չըլլայ թէ իր թշնամիներէն նեղութիւն մը կրեն անոնք , և իր հետը փոսը կիյնան :

Թէև որ Ճշմարտութիւնը իր հարազատ որդւոց կարգը չկրնար դնել զՀութթընցին , քանզի Ճշմարտութիւնը կըպահանջէ կատարեալ սրբութիւն վարուց և մարդասիրութիւն , այսու ամենայնիւ գոնէ պատուաւոր յիշատակութեան մը կարժանաւորի ինքը պատմութեանց մէջ , իբրև մոլորութեան դէմ գնող աշխարհաթշնամեաց մէկը :

Սանկ էր նաև Ֆրանչիսկոս Սիքինգէնցին՝ Ուլրիկին անուանի բարեկամը և պաշտպանը : Սա ազնուական ասպետը՝ որն որ իր ժամանակակիցներուն շատը կայսերական թագի արժանաւոր կըհամարէին , քաջանուն հանդիսացաւ Հռովմայ դէմ պատերազմ ընող ասպետներուն մէջը : Սակայ որչափ որ պատերազմասէր էր , այնչափ ալ գիտութեանց համար մեծ եռանդ մը ունէր և կըպատուէր գիտնականները : Երբ որ իր բանակովը Վիւրդէմպերկ քաղաքը պաշարեց , հրամայեց զօրքերուն որ եթէ Սթութկարտ քաղաքը յարձակմամբ առնելու ըլլան նէ , Յովհաննէս Ռէկլինոս անուանի գիտնականին ինչքը և տանը վնաս մը չհասցընեն : Ետքը իր բանակը կանչել տուաւ զանիկայ , սիրով ընդունեց և խոստացաւ օգնել անոր՝ Դոմինիկեաններուն հետ իր ունեցած վէճին :

Հութթընցին Պրուսելլէն դառնալուն՝ Սիքինգէնի բերդը իրեն ապաստանարան ընելով , հրաւիրեց իր քաջասիրտ

ստիպեց որ ետ քաշուի ։ Հետեւեալ գարնան մէջ՝ դաշ-նակից իշխանները անոր վրայ գացին, երբ որ իր Լան-տըշդէնի բերդին մէջը կը կենար. և որոտնահեղ պատե-րազմով բերդին վրայ յարձակուելէն ետքը, անձնա-տուր եղաւ Սիխինգէնցին որ մահուչափ վիրաւորեալ էր ։ Իրեք իշխանները բերդը մտան ; ամէն տեղ աչքէ անցուցին, և վերջապէս գտան աննուաճելի ասպետը ստորերկրեայ սենեակի մը մէջ իր մահուան անկողնին վրայ պառկած ։ Անիկայ ձեռքը երկընցուց Փալատինեան Կայսրընտրին, առանց նայելու միւս իշխաններուն որ անոր հետ էին, ու կերպ կերպ հարցուփորձ և յանդի-մանութիւններ կընէին անոր, և ըսաւ անոնց. “Ո՛հ, հանգի՛ստ թողուցէք զիս, քանզի հիմա պէտք է որ ես պատրաստուիմ պատասխան տալու այնպիսի մէկ Տէրոջ մը՝ որ ձեզմէ մեծ է” . . . Լուտեր ասոր մահը լսելուն՝ ըսաւ. “Տէրը արդար է և սքանչելի. Անիկայ իր Ա-ւետարանը սրով տարածել չուզեր” ։

Ահա այսպէս ողբալի վախճան մը ունեցաւ աս քա-ջամարտիկ ասպետը. որ եթէ կայսր կամ կայսրընտիր եղած ըլլար, գուցէ մեծագոյն փառաց աստիճանը կը հասցունէր զԳերմանիա. բայց ստորին վիճակի մէջ գտնուելով՝ զուր տեղը վատնեց իր ունեցած քաջու-թիւնը ։ Աստուածային ճշմարտութիւնը չէ թէ այսպիսի խռովայոյզ պատերազմողներուն մտացը մէջ իր բնակու-թիւնը հաստատելու համար երկինքէն իջած էր ։ Ա-նոնց զէնքերովը պիտի չյաղթէր ան. և Աստուած Սիխինգէնցիին յիմարական գաղափարները ոչնչացընե-լով, վերստին հաստատեց Պօղոս առաքեալին աս խօս-քը. “Ինչու որ մեր զինուորութեան զէնքը մարմնաւոր չէ, հապա Աստուծմէ զօրութիւն առած՝ բերդերը քա-կելու ։ Բ Կորնթ. Ժ. 4 ։

Ուրիշ ասպետ մըն ալ Հարմութ Գրօնպէրկցի, բա-րեկամ Հութթընցիին և Սիխինգէնցիին, աս երկու-

քէն տակը խոհեմ և ճշմարտութեան անտեղեակ կերևար ։ Աօնկայ նամակ մը գրեց Թ Լեռնին՝ շատ խոնարհութեամբ, հրաւիրելով զանիկայ որ իր ժամանակաւոր իշխանութիւնը յանձնէ ան իշխանութեան օրինաւոր տիրոջը, այսինքն Կայսեր ։ Զիջեալ տալու իր հպատակներուն հետ հօր պէս վարուելով, ջանաց սորվեցընել անոնց՝ Աւետարանին վարդապետութիւնը, և յորդորեց զանոնք որ հաւատան, հնազանդին և խոնարհութիւն ունենան Յիսուս Քրիստոսի վրայ, «Որ մեր ամենուս իշխանին Տէրն է», կըսէր ։ Իր երկու հարիւր տարուայ ատենէն հրաժարեցաւ, կայսեր ձեռքը յանձնելով զանիկայ ։ «Իշխանել չեմ ուզեր, ըսաւ, ծառայել անանկ մարդու մը՝ որ ճշմարտութեան թշնամիներուն ականջ կըդնէ» ։ Հետագայ խօսքն ալ ըսած է ան, որով՝ Հութթընցիէն և Սիքինգէնցիէն շատ գերազանց կըհամարուի ։ «Մեր երկնաւոր վարդապետը Սուրբ Հոգին թէ որ ուզէ՝ կարող է մէկ ժամու մէջ անանկ աղէկ սորվեցընել մէկու մը՝ Քրիստոսական հաւատքը, որ տասը տարի Փարիզի համալսարանը աշխատելով հնար չէ սորվիլ» ։

Ահա այսպէս ամէն աստիճանի մարդոց մէջ մէկ շարժմունք մը կար, որ զԲարեկարգութիւնը կըգուշակէր ։ Ամէն կողմէն նշաններ կերևային և մէկզմէկու վրայ կը պատահէին անանկ դիպուածներ, որոնք յայտնի կըցուցանէին թէ խաւարամած դարերուն գործը պիտի կործանէր, և «Նոր Ժամանակ մը» երևան պիտի հանէր մարդկային ազգին համար ։ Բայց ուսկի՞ց գալու է ան հարուածը՝ որ վաղեմի շէնքը հիմնայատակ կործանէ, և անոր աւերակներէն նոր շէնք մը հանէ ։ Մարդ չէր գիտեր աս բանը ։ Ո՞վ արդեօք Փրիդերիկոսէն աւելի իմաստուն էր ․ ո՞վ Ռեւկլինոսէն աւելի գիտուն էր ․ ո՞վ Էրասմոսէն աւելի տաղանդ ունէր ․ ո՞վ Հութթընցիէն աւելի խելք և վառվռուն երևակայութիւն ունէր ․

ո՛վ Սիքինկէնցիէն աւելի քաջ էր . ո՛վ Գրօնպերկ-ցիէն աւելի առաքինի էր ։ Բայց սակայն ո՛չ Փրիդերի-կոս , ո՛չ Ռէւկլինոս , ո՛չ Էրասմոս , ո՛չ Սիքինկէնցին , ոչ Հութթընցին և ո՛չ Գրօնպերկցին ան հարուածը կրցան տալ ։ Գիտունները , իշխանները , պատերազմող-ները , և նոյն ինքն եկեղեցին՝ ամէնն ալ վաղեմի շէն-քին քանի մը հիմերուն տակը փորեր էին , բայց ուրիշ բան մը ըրած չէին . և դեռ երևցած չէր ան հզօր ձեռ-քը՝ որ Աստուծոյ ձեռքը պիտի ըլլար եկեղեցին բարե-կարգելու ։

Սակայն շատոնց ամէնն ալ կըխորհէին որ ան հզօր ձեռքը անշուշտ պիտի երևնայ շատոնց ուշանալու ։ Մէկ քանիները կըսէին թէ անոր նշանները տեսած են աստ-ղերուն մէջը . ոմանք քրիստոնէական կրօնին խեղճ վի-ճակը տեսնելով՝ կըսէին թէ Նեռին գալու ժամանակը մօտեցեր է . ուրիշները ընդհակառակն կըգուշակէին՝ թէ խիստ մօտ է մեծ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԻՒՆ մը ։ Եւ երբոր բոլոր աշխարհ զանազան կարծիքներ ընելով կըս-պասէր , ահա Լուտեր երևցաւ ։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ
# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԵԱՆ
# Ի ԳԵՐՄԱՆԻԱ

## ԳԻՐՔ Ա

### ԼՈՒՏԵՐԻ ՄԱՆԿՈՒԹԻՒՆԸ ԴԱՐՁԸ ՈՒ ԱՌՋԻ ԳՈՐԾԵՐԸ.

### 1483——1517

### ՀԱՏՈՒԱԾ Ա

ԱՍՏՈՒԱԾ՝ *որ բազմաթիւ դարերէ առաջ իր գործը կը պատրաստէ, ժամանակը լրանալուն՝ տկարագոյն գործիքներով զանիկայ կըկատարէ։ Աստուածային Նախախնամութեան կանոնն է որ մեծամեծ իրողութիւնները ամենանուաստ միջոցներով կատարէ։ Ինքը Եկեղեցւոյ Բարեկարգողները ընտրեց ան նոյն վիճակէն ու աշխարհային հանգամանքներէն՝ ուրկէց առաջ ընտրեր էր Առաքեալները. և ասանկով յայտ յանդիման ցուցուց աշխարհի՝ թէ գործը մարդկային գործ չէ, այլ Աստուածային։ Հիմա նայինք թէ ինչպէս սկսեց աս գործը, և ինչ վախճան ունեցաւ։*

*Յովհաննէս Լուտեր՝ որդի գիւղականի և հայր ան մեծ Բարեկարգողին՝ որուն պատմութիւնը հիմա կըսկսինք, արդարակօրով մարդ էր. իր գործին մէջը ժիր, անխարդախ, ու յամառութեան մօտեցած հաստատուն դիտաւորութեան տէր։ Իր աստիճանը ունեցող ժողովրդոց ընդ-*

համրութենէն աւելի մշակեալ միտք մը ունենալուն՝ շատ կըպարապէր ընթերցման ։ Այս թէպէտ գիրքերը հազուագիւտ էին անատենը, բայց Յովհաննէս ձեռքը ինկած պատեհութիւնը միշտ 'ի գործ կըդնէր և կըստանար զանոնք ։ Գիրքերն էին իր զուարճութիւնը իր հանգստութեան միջոցներուն՝ որ իր դժուար և հանապազօրեայ աշխատութիւններէն իրեն կըմնային ։ Իսկ Մարգարիտ իր ընծակիցը ունէր այն առաքինութիւնները՝ որ բարի ու բարեպաշտ կանանց զարդարանք են ։ Համեստութիւնը՝ Աստուծոյ երկիւղը՝ ու ջերմեռանդութիւնը յատկապէս կըփայլէին իր վարքին վրայ ։ Իր բնակած տեղին տուներուն մայրերը զինքը իրենց արժանաւոր գաղափար կըսեպէին անոր նմանելու ։

Այս նորապսակ ամուսինները Սաքսոնիայի Այզլէպէն քաղաքը հաստատուելնէն ետքը՝ յամի Տեառն 1483ին՝ Նոյեմբերի 10՝ իրիկուան ժամը 11ին Մարգարիտ որդի մը ծնաւ ։ Հետևեալ օրը սրբոյն Մարտինոսի տօնն էր ։ Նորածին մանկան բարեպաշտօն ծնողացը առաջին խորհուրդն էր՝ իրենց շնորհուած զաւակը աւազանին միջոցաւ թեամբը Աստուծոյ նուիրել ։ Առաւօտուն՝ որ էր Երկուշաբթի, հայրը ուրախութեամբ և երախտագիտութեամբ սրբոյն Պետրոսի եկեղեցին տարաւ իր որդին ։ Հոն մանուկը ընդունեց իր Աստուծոյ նուիրուելուն կնիքը. ու անոր անունը կոչուեցաւ Մարտինոս, 'ի յիշատակ նոյն աւուր ։

Մարտինոս դեռ վեց ամսու չեղած իր ծնողքը Այզլէպէնէն ելան Մանսֆէլտ երթալու, որ միայն հինգ փարսախ հեռի է ։ Մանսֆէլտի հանքերը շատ հռչակաւոր էին անատենը ։ Յովհաննէս Լուտեր՝ որ բանիբուն մարդ էր, զգալով որ գուցէ պիտի պարտաւորի մեծ ընտանիք մը նայելու, կըյուսար որ հոն լաւագոյն ապրուստ կըգտնէ իրեն ու իր զաւակացը ։ Բայց իրենց հոս բնակութիւն հաստատելու առջի տարիներուն մէջ ազնուամիտ Յովհաննէսը ու իր ամուսինը բազմապատիկ նեղութիւններով պաշարուած էին ։ Առջի բերանը յետին չքաւորութեան մէջ կապրէին ։

"Իմ ծնողքս՝ կըսէ Բարեկարգողը, շատ աղքատ էին։ Հայրս փայտահատ էր, ու մայրս շատ անգամ փայտին բեռը կըշալկէր ծախելու կըտանէր, որ մեր՝ իր զաւկըներուն ապրուստը ճարէ։ Մեր պատճառովը խիստ դժուարին աշխատութեան կըհամբերէին անոնք"։ Լութեր իր պատուած ծնողացը օրինակովը՝ ու անոնց իրեն սորվըցուցած առաքինութիւններովը կանուխ վարժուեցաւ աշխատելու ու չափաւոր կերուխումի։ Փոքրիկ Մարտինոսը անտարակոյս շատ անգամ իր մօրը հետ անտառը կերթար, ու իր պզտի խուրձը կըկապէր և անոր կըբերէր։

Աստուած արդարին աշխատութիւնը օրհնութիւններով պսակել խոստացաւ, ու Յովհաննէս Լութեր անոնց ճըշմարտութեանը փորձը առաւ։ Կամաց կամաց սկսեց յառաջանալ, ու Մանսֆելտի մէջ երկու երկաթի բովքեր հաստատեց։ Մարտինոս աս բովքերուն քով կըմեծնար, ու իր հայրը անոնցմէ եղած շահերովն էր որ ետքը կարողացաւ՝ զինքը դպրոցը դնել։ "Հանքագործի մը հալոցին քովէն մէկը պիտի ելլէր՝ կըսէ Մաթեսիոս՝ որ սահմանուած էր կենդանի Քրիստոնէութիւնը վերստին ձուլել. յայտնի նշան Աստուծոյ դիտաւորութեանը՝ անոր միջնորդութիւնովը Ղևիի որդիքը մաքրելու, ու զանոնք իր հալոցին մէջ ոսկիի պէս զտելու"*։ Յովհաննէս իր առաքինութեանը՝ իր անմեղադրելի վարքին ու ճարտար մըտացը համար բոլոր ժողովուրդէն պատիւ ստանալով, Մանսֆելտի ատենակալներուն մէկը եղաւ, որ համանուն գաւառին գլխաւոր քաղաքն էր։ Չափազանց չքաւորութեան վիճակը կարելի է որ անոնց որդւոյն աշխոյժը շիջուցանէր. բայց իրենց սակաւ ինչ հանգստութիւնը անոր սիրտը ընդարձակեց, ու անոր աշխոյժը կենդանացուց։

Յովհաննէս իր նոր պաշտօնին մատուցած պատեհութիւնը ձեռք առնելով ան ընկերութեանը հետամուտ էր

* Մաղ. գ. 3։

որ նախապատիւ կը համարէր։ Իր ուշադրութիւնը գիտնականներուն վրայ էր, ու շատ անգամ իր եղած տեղին եկեղեցականները ու վարժապետները իր սեղանը կը հրաւիրէր։ Տղան ալ ասկէց օգուտ կը քաղէր։ Նա մարդոց երթեւեկութիւնը՝ որոնց այնչափ պատիւ կը ցուցուէր իր հօրը տունը, մանկահասակ Մարտինոսի սրտին մէջ անտարակոյս փառասէր փափաք մը ձգեց՝ թէ կարելի է որ ինքն ալ օր մը ուսուցիչ կամ ուսումնական ըլլայ։

Վարժութեան ընդունակ ըլլալու չափ մեծնալուն պէս իր ծնողքը կաշխատէին Աստուծոյ ծանօթութիւնը իրեն հաղորդելու, անոր երկիւղին մէջ զինքը մեծցունելու, ու Քրիստոնէական առաքինութիւններուն գործադրութեանը զինքը յարմարելու։ Նմնայն խնամով կը ջանային տպաւորել անոր մտացը մէջ աս տնտեսական նախկին վարժութիւնը։

Իր ծնողացը բարեպաշտութիւնը՝ անոնց գործունեայ ճարտարամտութիւնը ու ամբիծ առաքինութիւնը բարեվիճակ ներգործութիւն մը ըրին տղին, ու ծանրաբարոյութեան և ուշադրութեան ունակութիւն մը տուին անոր։ Նա օրերը ծեծին ու վախին գործածութիւնը վարժութեան գլխաւոր դրդիչները կը սեպուէին։ Մարգարիտ՝ որ թէպէտ երբեմն իր էրկանը չափազանց խստութիւնը կը գովէր, սակայն շատ անգամ իր մայրական բազուկները կը բանար Մարտինոսին՝ ու կը մխիթարէր զանիկա իր արցունքներուն մէջ։ Բայց և այսպէս ինքը ևս անդի ծայրը կանցնէր ան իմաստութեան պատուիրանին՝ որ կըսէ մեզի, թէ ան որ իր զաւակը կը սիրէ, խնամով կը խրատէ զանիկա։ Տղին հաստատուն բնաւորութիւնը շատ անգամ պատճառ կըլլար պատժի ու յանդիմանութեան։ “Իմ ծնողքս, կըսէր Լուտեր իր մեծնալուն, անգթութեամբ կը վարէին իմ հետս, անանկ որ՝ շատ վախկոտ եղայ. օր մը չնչին բանի մը համար մայրս անանկ ծեծեց զիս որ արիւնս կը վազէր։ Անշուշտ իրենք կը կարծէին որ ըրածնին շիտակ էր. բայց

"Ընտրութիւն Հոգւոց" ըսուած պարգևը * չունէին, որ բացարձակապէս հարկաւոր բան մըն է, ո՛րպէս զի գիտնանք թէ երբ և որու և ի՛նչպէս պէտք է պատժել":

Ողորմելի տղան դպրոցին մէջ ևս նոյն խստութիւնը կը կրէր։ Իր վարժապետը մէկ օր մը տասնըհինգ անգամ ծեծեց զինքը։ "Իրաւունք է՝ կըսէ Լուտեր աս դիպուածը պատմելուն՝ իրաւունք է որ տղաքը պատժուին. բայց միանգամայն պարտինք սիրել զանոնք"։ Այս կերպ վարժութիւնով Լուտեր կանուխ սորվեցաւ փափկասէր կեանքի մը հրապոյրները արհամարհել։ Իր վարուցը պատմութիւնը գրողներուն մէկը ճշմարտապէս կընշանակէ, թէ "Ով որ մեծ պիտի ըլլայ, փոքր բաներով պարտի սկիզբ ընել. և թէ որ տղայք իրենց մանկութենէն չափաղանց փափկութիւնով ու խնամքով մեծնան, իրենց մնացած կեանքին մէջ կըվնասին"։

Մարտինոս քիչ մը բան սորվեցաւ դպրոցին մէջ։ Քրիստոնէական վարդապետութեան մասունքները, Տանաբանեայ Պատուիրանքը, Առաքելական Հանգանակը, Տէրունական Աղօթքը, քանի մը մեղեդիներ՝ քանի մը աղօթքներ, Լատիներէն Քերականութիւնը. մէկ խօսքով Մանսֆելտի Լատինական դպրոցին մէջ աւանդուած ուսմունքներուն բոլորը սորվեցաւ։

Բայց կերևայ որ տղան տակաւին առ Աստուած ուղղեալ չէր։ Մի միայն Քրիստոնէական զգացումը՝ որ ինքը ան ատենը կըցուցընէր, երկիւղ էր։ Քանի անգամ որ Քրիստոսի վրայով խօսք մը լսէր, զարհուրելով կայլագունէր. ինչու որ Քրիստոս միայն իբրև զայրացեալ դատաւոր մը իրեն ցուցուցած էին։ Ճշմարիտ կրօնքէն բոլորովին հեռի եղած աս ծառայական երկիւղը դուցէ անոր միտքը պատրաստեց աւետարանի բերկրապատար աւետիսին, և ան ուրախութեանը՝ որ ինքը ետքը կըզգար, եր-

* Ա. Կոր. ժբ. 10։

բոր սորվեցաւ ճանչնալ զանիկայ՝ որ Հեզ է ու սրտով խոնարհ ։

Յովհաննէս Լուտեր իր ըղձանացը համեմատ միտքը դըրաւ որ իր տղան գրոց աշակերտէ ։ Ան նոր առաւօտը որ սկըսեց ամէն տեղ ճառագայթել, մինչև անգամ Մանսֆելտի հանքագործին խրճիթն ալ հասաւ, ու հոն փառասէր խորհուրդներ յարոյց ։ Տղին նշանաւոր բնաւորութիւնը ու յարատև ուշադրութիւնը մեծամեծ յոյսեր մատուցին Յովհաննէսին անոր յառաջադիմութեանը վրայ ։ Վասն որոյ Մարտինոս տասնըչորս տարու ըլլալուն՝ 1497 ին՝ իր հայրը որոշեց որ իր տղէն զատուի, ու զանիկայ Մակտէպուրկի Ֆրանչիսկեան կրօնաւորներուն դպրոցը խրկէ ։ Մարգարիտ պարտաւորեցաւ անոր կամացը հաւանութիւն տալ, ու Մարտինոս պատրաստուեցաւ իր ծնողացը բնակարանը ձգել ։

Մակտէպուրկ նոր աշխարհ մը կըթուէր Մարտինոսին ։ Բազմապատիկ պակսութիւններով պաշարուած՝ (քանզի հազիւ թէ քիչ մը ապրուստ ունէր,) իր դիտողութիւնը և ունկնդրութիւնը յառաջ կըտանէր ։ Անդրէաս Պրովղէս Օգոստինեան կարգի գաւառապետը մեծ նախանձաւորութեամբ կըքարոզէր անատենը կրօնքին ու Եկեղեցիին բարեկարգութեան մտնելու հարկաւորութիւնը ։ Բայց չէ թէ աս անձն էր որ մանկահասակ Մարտինոսի հոգւոյն մէջ տնկեց վաղաբոյս բողբոջը ան խորհուրդներուն որոնք ժամանակով երևան ելան ։

Ասիկա դժուարատար աշակերտութիւն մըն էր Լուտերին ։ Տասնըչորս տարեկան հասակին մէջ աշխարհի վրայ ձգուած առանց բարեկամի կամ պաշտպանի՝ իր վարժապետներուն առջևը կըդողար, ու իր պարապ ժամերուն ինքը ու իրեն պէս քանի մը աղքատ տղայք դժուարութեամբ կըմուրային իրենց օրական հացը ։ "Սովորութիւն ունէի, կըսէ, իմ ընկերներուս հետ քիչ մը կերակուր մուրալ մեր կարօտութիւնը լցունելու համար ։ Մէկ օր մը՝ Ծննդեան մօտե-

րը, ամէնս մէկ տեղ շրջակայ գիւղերը տնէ 'ի տուն կանչնէինք, ու Բեթղեհէմի մէջ մարմնացեալ Յիսուսի վրայ շինուած սովորական երգերը միաբանութեամբ կերգէինք։ Կայնեցանք գիւղականի մը տանը առջևը՝ որ մնացեալ տըներէն զատ էր գիւղին մէկ ծայրը։ Գեղացին մեր ծննդեան երգերը լսելով դուրս ելաւ քիչ մը կերակուրով, որ միտք ունէր մեզի տալու, ու բիրտ և բարձր ձայնով մը հարցուց, Ո՞ւր էք, տղաք։ Զարհուրելով աս խօսքէն շուտ մը սկըսանք փախչիլ։ Բայց վախերնիս առանց պատճառի էր, վասն զի գեղացին մարդասիրութեամբ աս օգնութիւնը մեզի կըմատուցանէր. սակայն մեր սրտերը երկիւղով պաշարուած էին ան սպառնալիքներէն ու բռնութեններէն որ անատենները վարժապետները կընէին իրենց աշակերտներուն, անանկ որ յանկարծական վախով մը բռնուեցանք։ Վերջապէս տեսնելով որ գեղացին անդադար մեր ետևէն կըկանչէ, կանգ առինք, վախերնիս մոռցանք, դէպի իրեն վազեցինք, ու իր մեզի մատուցած ուտելիքը առինք։ Այսպէս է, կըսէ Լուտեր, որ կըդողանք ու կըփախչինք, երբոր մեր խիղճերը յանցաւոր ու շփոթեալ են։ Այնատենը կըվախնանք մինչև անգամ մեզի շնորհուած օգնութենէն, ու անոնցմէ՝ որ մեր բարեկամներն են՝ ու ամէն կերպ բարութիւնները մեզի ընել կուզեն''։

Հազիւ անցաւ տարի մը՝ երբոր Յովհաննէս ու Մարգարիտ իրենց որդւոյն Մակտէպուրկի մէջ ապրուստ գտնելու համար քաշած դժուարութիւնը լսելով Այզէնախ ղրկեցին զինքը, ուր որ հռչակաւոր դպրոց մը կար, ու հոն իրենք շատ ազգականներ ունէին։ Բայց ան աւելի բարեբախտ չէր հոն, քան որչափ Մակտէպուրկի մէջն էր։ Իր ազգականները՝ որ քաղաքը կըբնակէին, հոգ չտարին իր վրայ, կամ գուցէ իրենք ալ աղքատ էին ու չէին կրնար օգնութիւն մը ընել անոր։

Մարտինոս երբոր անօթութենէն կըստիպուէր՝ Մակտէպուրկի մէջ ըրածին պէս՝ իր աշակերտակիցներուն հետ

կերթար տներուն առջևը կերգէր, պատառ մը հաց ճարելու համար ։ Լուտերի ժամանակին աս սովորութիւնը տակաւին կը պահուի Գերմանիայի շատ քաղքըներուն մէջ ։ Աս նորահաս պատանիներուն ձայները երբեմն խիստ քաղցրանուագ ներդաշնակութիւն մը կըյօրինեն. բայց և այնպէս՝ աս կարօտեալ և ամօթխած տղուն՝ հացին տեղը շատ անգամ միայն կծու խօսքեր կընդունէր ։ Անատենը տըրտմութեան մէջ թաղուած գաղտուկ տեղեր արցունք կը թափէր, ու ապառնիին վրայ առանց դողալու չէր կրնար նայել ։

Աս մանաւանդ մէկ օր մը երեք տունէ վռընտուելէն ետև, ծոմ բերնով իր դպրոցը դառնալու վրայ էր՝ երբոր Սուրբ Գէորգ կոչուած տեղը հասնելով պատուաւոր քաղաքացիի մը տանը առջևը անշարժ կանգնեցաւ, ցաւալի մտածութիւններու մէջ թաղուած ։ Կը մտածէր թէ արդեօք իր կարօտութեան պատճառովը իր ուսմունքները պարտի՞ ձըրգել, ու Մանսֆելտի հանքերուն մէջ իր հօրը հետ գործելու երթալ ։ Ան միջոցին յանկարծ դուռը կըբացուի, ու դըրանը սեմին վրայ կին մը կըտեսնուի. ասիկայ Կոնրադ Կոտայի կինն էր, Այլֆելտի իշխաններէն մէկուն դուստրը, Ուրսուլա անունով ։ Այզենախի ժամանակագիրները կըկոչեն զանիկայ "Բարեպաշտօն Սոմնացի", ՚ի յիշատակ ան կնոջը՝ որ մեծ թախանձանքով աղաչեց Լուտերին իր տունը հաց ուտելու ։ Աս Քրիստոնեայ Սոմնացիս եկեղեցիին մէջ քանի մը անգամ տեսած էր Մարտինոսը, ու անոր ձայնին քաղցրութիւնովը և յայտնի ջերմեռանդութիւնովը յափշտակուեր էր. լսեր էր նաև ան կծու խօսքերը որոնցմով խղճալին վռընտուեցաւ ։ Հիմա իր դրանը առջին տրտմութեան մէջ թաղուած տեսնելով զանիկայ, փութացաւ անոր օգնելու, աչք ըրաւ որ ներս մտնէ, ու անոր կերակուր տուաւ ուտելու ։

Կոնրադ իր կնոջը բարեսրտութիւնը գովեց. նաև մանկահասակ Լուտերի ընկերութիւնը այնչափ հաճելի եղաւ

ի[illegible], որ քանի մը օրէն ետև իր տունը ընդունեց զանիկայ որ հոն բնակի։ Ան նոյն րոպէէն ետև Լուտեր այլ ևս չվախցաւ որ պիտի պարտաւորի իր ուսմունքները ձգել։ Ալ ինքը Մանսֆելտի հանքերը պիտի չդառնար, ու Աստուծոյ իրեն յանձնած տաղանդը թաղելու չէր։ Ան նոյն րոպէին երբոր ինքը չէր գիտեր թէ ինչ պիտի ըլլայ իրեն, Աստուած Քրիստոնեայ ընտանիքի մը սիրտը ու դռները բացաւ անոր։ Աս դիպուածը անոր հոգին պատրաստեց Աստուծոյ վրայ այն ապաւինութիւնը ունենալու, որ ետքի տարիները ամենասաստիկ փորձութիւնները չկրցին շարժել զանիկայ։

Լուտեր Կոտայի տանը մէջ շատ տարբեր կեանք մը կը վարէր մինչև հիմա իր վարած կեանքէն։ Հանգիստ կացութիւն մը ունէր հոն՝ առանց հոգի ու կարօտութեան։ Վասն որոյ իր միտքը աւելի խաղաղ էր, իր բնաւորութիւնը աւելի զուարթ, ու իր սիրտը աւելի ընդարձակեալ։ Իր բարերարներուն մարդասիրութեանը քաղցրիկ ճառագայթներովը իր բոլոր բնութիւնը զուարթացաւ, ու կենդանութեամբ՝ խնդամտութեամբ և երջանկութեամբ բացուեցաւ։ Իր աղօթքները առաւել ջերմեռանդ էին, իր գիտութեան փափաքը առաւել սաստկացաւ, ու իր ուսմունքներուն մէջ արագ յառաջադիմութիւն ցոյց տուաւ։

Գրականութեան ու գիտութեան հետ միացուց նաև արհեստներու ուսումը, որովհետև Գերմանիայի մէջ ան ատենը արհեստներն ալ կը յառաջանային։ Լուտեր սորվեցաւ սրինգ փչել ու վին զարնել։ Իր քաղցրալուր ձայնը շատ անգամ վերջի յիշուած նուագարանին հետ կը խառնէր, ու ատանկով իր տրտմութեան ժամերուն մէջ իր սիրտը կը մխիթարէր։ Մեծ բերկրութիւն կը զգար նաև իր քաղց[illegible]լուր երգերովը իր երախտագիտութիւնը յայտնել իր մայրագրին, որ շատ սէր ունէր երաժշտութեան։ Լուտեր ինքն ալ մինչև իր ծերութեան հասակին աս արհեստը կը սիրէր, ու Գերմաներէն խիստ գեղեցիկ մեղեդիներուն

մէկ քանիները ինքը շարագրած ու անոնց եղանակը [illegible]ըը գրած է ։

Երջանիկ ժամանակներ էին ասոնք աս պատանիին ։ Լուտեր այն ժամանակները յիշելուն միշտ իր սիրտը կայլայլէր ։ Կոնրադի որդին շատ տարիներէն ետև երբոր Վիդդէմպէրկ գնաց ուսման պարապելու , որ ատեն Լուտեր՝ Այզէնախի աղքատ աշակերտը՝ իր դարուն իմաստուն ուսուցիչը եղած էր , ուրախութեամբ ընդունեց զանիկայ իր յարկին տակը ու իր սեղանը ։ Ուզեց որ անոր հօրմէն ու մօրմէն ընդունածը ըստ մասին անոնց որդւոյն հատուցանէ ։ Սա Քրիստոնեայ կինը յիշելուն՝ որ հացով կերակրեր էր զինքը՝ երբոր բոլոր ուրիշները երես դարձուցեր էին իրմէն , աս յիշատակաց արժանի խօսքը ըսաւ . "Բան մը չկայ երկրի վրայ այնչափ քաղցրագոյն՝ որչափ բարեպաշտօն կնոջ մը սիրտը" ։

Սակայն Լուտեր ամենևին ամօթ մը չէր զգար այն ժամանակին վիճակով երբոր անօթութենէ ստիպուած աղքատութեամբ կըմուրար այն հացը՝ որ իր կենացը պահպանութեանը ու իր ուսմանցը շարունակութեանը համար հարկաւոր էր ։ Ընդհակառակը՝ շնորհակալութեամբ կըմտածէր իր մանկութեան յետին աղքատութեանը վրայ ։ Ասանկ կըմտածէր որ Աստուծոյ 'ի գործ դրած միջոցներուն մէկն էր այն՝ որով իր ետքի եղածին հասցուց զինքը , ու շնորհակալ կըլլար Տէրոջը անոր համար ։ Իրեն նման կեանք վարելու պարտաւորած աղքատ տղայոց վիճակը իր սրտին կըդպչէր ։ "Մ՛ի անարգէք՝ կըսէր՝ այն տղաքը , որոնք ձեր դռներուն առջևը կերգեն՝ Panem propter Deum , հաց 'ի սէր Աստուծոյ , ու անանկով կըջանան իրենց հացը շահելու ։ Ես ալ նոյն բանը ըրած եմ ։ Իրաւ ետքերը Էրֆուրթի համալսարանը եղած ատենս հայրս իր ճակտի քրտինքովը շատ ջիրով ու քաղցրութեամբ զիս կապրեցունէր , բայց ատենով միայն ողորմելի մուրացկան մըն էի ։ Աս հիմա իմ գրիչիս միջնորդութիւնովը անանկ աղէկ յառա-

ջադիմութիւն ստացայ, որ իմ վիճակս թագաւորին հետ չեմ փոխեր: Ասկէց աւելին կրնամ ըսել. թէ որ բոլոր աշխարհի հարստութիւնը մէկ տեղ դիզուած ինծի առաջարկուէր, իմ ունեցածիս հետ պիտի չփոխէի ան: Այլ սակայն թէ որ դպրոց գացած ու գիր սորված չըլլայի, բնաւ երբէք իմ հասածիս պիտի չհասնէի": Ասանկով կը խոստովանէր աս երևելի անձը թէ աս նուաստ սկզբնաւորութիւններն էին իր փառաւորութեանը նախկին արմատը: Չէր ամչնար իր ընթերցողներուն յիշել տալ՝ թէ ան ձայնը՝ որ անատենը կը շարժէր թագաւորութիւնը ու աշխարհը, քիչ մը ատեն առաջ աննշան քաղաքի մը փողոցներուն մէջ պատառ մը հաց կը մուրար: Նարեպաշտ Քրիստոնեայն ասանկ յիշատակութիւններով կուրախանայ, ինչու որ անանք իր միտքը կը ձգեն թէ միայն Աստուծով է իր փառաւորութիւնը:

Իր մտացը ուշիմութիւնը՝ իր երևակայութեանը աշխոյժը՝ ու իր գերագոյն յիշողութիւնը կարողացուցին զինքը քիչ ժամանակին մէջ իր բոլոր աշակերտակիցներէն անցնելու: Այլ մանաւանդ Լատինական լեզուին մէջ, ճարտասանութեան ու բանաստեղծութեան մէջ արագութեամբ յառաջացաւ: Ճառեր կը գրէր, ու ոտանաւորներ կը շինէր: Իր զուարթամտութիւնովը՝ քաղաքավարութիւնովը ու բարեսրտութիւնովը իր ուսուցիչներուն ու ընկերներուն սիրելին էր:

Իր ուսուցիչներուն մէջ յատկապէս սիրելի էր իրեն Յովհաննէս Տրէբոնիոս գիտուն անձը՝ վայելուչ ասութեան տէր, և որ անանկ վարմունք մը ունէր իր աշակերտներուն հետ որ մեծապէս քաջալերութիւն կընծայէր անոնց: Սարտինոս կը նկատէր՝ որ երբ Տրէբոնիոս դպրոցը կը մըտնէր, իր գլխարկը վար կառնէր ու աշակերտները կը բարևէր: Աս բանս չափազանց խոնարհութիւն մը կը համարուէր ան իմաստակութեան ատենները: Ասիկայ շատ հաճելի եկաւ պատանիին: Սկսեց իմանալ թէ ինքն ալ բան մըն է ե-

ղէր ։ Վարժապետին իրեն մատուցած յարգութիւնը աշակերտը բարձրացոյց ինք իր յարգութիւնը ճանչնալու ։ Օր մը՝ Տրեբոնիոսի ընկերները՝ որոնք տարբեր սովորութիւն ունէին, անոր տարապայման խոնարհամտութեանը վրայ իրենց զարմանքը յայտնելնուն պատասխան տուաւ անոնց, (և աս պատասխանն ալ տպաւորեցաւ Լուտերի մտացը մէջ.) "Աս պատանիներուն մէջ՝ ըսաւ՝ կան ոմանք, որոնք Աստուած մէկ օր մը պիտի բարձրացունէ քաղաքապետութեան՝ ատենակալութեան՝ դատաւորութեան և վարժապետութեան աստիճանի ։ Եւ թէպէտ անոնց ամէն մէկուն մեծութեան արտաքին նշանները հիմա չէք տեսներ, բայց արժան է յարգութեամբ վարիլ հետերնին"։ Պատանին անտարակոյս զուարճութեամբ լսեց աս խօսքերը, և գուցէ անատենը ինքզինքը տեսաւ իբրև պատկերի մը մէջ՝ վարժապետութեան պատուով պսակուած ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԼՈՒՏԵՐ տասնըութը տարեկան եղաւ. ուսման քաղցր ճաշակները առաւ. գիտութեան փափաքը բորբոքեցաւ, ու կըփափաքէր համալսարանի մը վարժութեան տակը մտնել ։ Կըբաղձար երթալ բոլոր գիտութեանց մէկ աղբիւրը, որ կարող ըլլայ իր ծարաւը զովացընել ։ Հայրը կուզէր որ իրաւագիտութեան պարապի. իր որդւոյն տաղանդներուն վրայ վստահութիւն ունենալով, կըփափաքէր որ քաջ մշակէ զանոնք ու երևան հանէ աշխարհի ։ Արդէն յուսով կըտեսնէր զանիկայ իր քաղաքացիներուն մէջ պատուաւոր պաշտօններու հասած, իշխանաւորուն անձանց սէրը իր վրան ձգած, ու աշխարհի ընդարձակ թատրոնին մէջ պայծառ ճառագայթած ։ Վասն որոյ որոշուեցաւ որ պատանին Էրֆուրթի համալսարանը խրկուի ։

Լուտեր յամի Տեառն 1501ին ան համալսարանը հասաւ : Յովդոկոս՝ մականուանեալ Ուսուցիչ Այզէնախի , անատենը դպրոցական փիլիսոփայութիւն կըսորվըցունէր նոյն տեղը մեծ յաջողակութեամբ : Պատանին աս տեղս շուտով իր բոլոր աշակերտակիցներէն յառաջադէմ եղաւ : Դիւրընկալ յիշողութեան ու աշխոյժ երեւակայութեան ձիրքերով զարդարուած ըլլալուն , բոլոր կարդացածը ու լսածը իր մտքին մէջ անանկ կըհաստատուէր՝ ինչպէս որ անձամբ զանոնք տեսած ըլլար : Այսպէս կըճառագայթէր Լուտեր իր մանկութեան ատենն ալ : "Բոլոր համալսարանը կը զմայլէր անոր տաղանդներուն վրայ" կըսէ Մէլանկտոն :

Բայց աս տասնըութը տարեկան պատանիս իր կենացը աս կանխագոյն մասին եւ միայն իր միտքը մշակելու համար չէր պարապէր ուսման : Իր ներսը ունէր ան խոհական մըտածութիւնը՝ ու առ Աստուած նայող ան սիրտը , որին որ Տէրը կըշնորհէ անոնց՝ որոնք որ կըկամի իր խիստ նախանձաւոր ծառաները ընել : Լուտեր կըզգար որ ինքը բոլորովին Աստուծմէ կախում ունի . աս պարզ և զօրաւոր ճանաչումը՝ միանգամայն խորին խոնարհութեան սկզբունք մը՝ ու մեծամեծ ձեռնարկութիւններու գրգիռ մըն է : Ջերմեռանդ սրտով կըխնդրէր որ երկնից օրհնութիւնը իր աշխատութիւններուն վրայ հանգչի : Ամէն առաւօտ աղօթքով կըսկսէր իր օրը . այնուհետեւ եկեղեցի կերթար , ետքը իր ուսմանցը կըսկսէր պարապիլ , ու բոլոր օրը ամենեւին մէկ վայրկեան մը պարապ տեղը չէր կորսընցունէր : Սովորութիւն ունէր ըսելու , "Ուսման կէսը՝ ու լաւագոյն մասը՝ աղէկ աղօթելն է" :

Ուսումնասէր պատանին իր ակադեմական աշխատութիւններէն գողցած ժամանակը համալսարանին գրքատանը մէջ կանցունէր : Ան ատենները գիրքերը հազուագիւտ ըլլալով մեծ առանձնաշնորհութիւն կըհամարէր իրեն որ աս ընդարձակ մատենադարանիս գանձերէն կրնար օգուտ քաղել : Մէկ օր մը՝ (որ ատեն երկու տարուան Էրֆուրթ

գացած էր՝ ու քսան տարեկան հասակին մէջն էր ,) մատենադարանին գիրքերը կարգաւ կը բանար անոնց հեղինակներուն անունները կարդալու ։ Գիրքին մէկը՝ որ բառ կարգի բացաւ, իր ուշադրութիւնը արթընցուց ։ Մինչև ան ժամը անոր պէս բան մը տեսած չէր ինքը ։ Կը կարդայ անոր վերնագիրը . . . Աստուածաշունչ է գիրքը . հազուագիւտ գիրք մը , անծանօթ ան ատենները ։ Իր սիրտը մեծապէս կը շարժի . զարմանքով կը լեցուի որ աս մատեանին մէջ աւելի բան կը գտնէ՝ քան որչափ եկեղեցին ընտրած է ժողովրդեան ականջին կարդալու, աւետարանի ու առաքելական թղթոց հատուածներ ։ Մինչև անատենը ինքը կը կարծէր որ Աստուծոյ Բանը այնչափ միայն է ։ Իսկ ահա ասոր մէջ այնչափ երեսներ՝ այնչափ գլուխներ՝ այնչափ գրքեր կան , որոնք անծանօթ էին իրեն ։ Իր սիրտը կը բաբախէ երբոր Աստուածային ներշնչութեամբ գրուած բովանդակ Սուրբ Գիրքը իր ձեռքը բռնած է ։ Ուժգին փափաքով և անճառելի զգացումներով Աստուծոյ բանին աս ամբողջ թղթերը կը դարձընէ ։ Առաջին բանը որ իր ուշադրութիւնը կը գրաւէ, Աննայի ու Սամուէլ մանկան պատմութիւնն է ։ Կը կարդայ զանիկայ, ո[illegible]ազիւ կրնայ զսպել իր բերկրապատար այլայլութիւնը ։ Մանուկը՝ որ իր ծնողքը Տէրոջը մատուցին որչափ որ ապրեցաւ . Աննայի աղօթքը՝ որուն մէջ կըսէ թէ Տէրը տնանկը գետնէն ու աղքատը աղբիւսէն կը վերցընէ ժողովրդոց զօրաւորներուն հետը նստեցունելու . Սամուէլ մանուկը՝ որ կը մեծնայ տաճարին մէջ Տէրոջը առջևը . բոլոր աս պատմութիւնը՝ բոլոր աս յայտնութիւնը որ իմացաւ, իրեն դեռ անծանօթ եղած զգացումներ կը յարուցանէ իր ներսը ։ Լեցուն սրտով իր բնակարանը կը դառնայ ։ "Ահ , ո՛ւր էր որ Աստուած ասանկ գիրք մը տար ինծի՝ իմս ըլլալու" իր մտացը մէջ կը խորհի ։ Լուտեր տակաւին ոչ Յունական լեզուն գիտեր և ոչ Եբրայականը ։ Ինքը ասանկ ուրախութեամբ լցունող Աստուածաշունչը Լատիններէն էր ։ Շուտով վերստին

դարձաւ մատենադարանը, վերստին իր գանձը գտնելու ։ Սրկէն և կրկին կըկարդար, ու իր զարմանքովը և ուրախութիւնովը նորէն կերթար կրկին կարդալու ։ Մնատեն նոր ճշմարտութեան մը առաջին նշոյլները ճառագայթեցին իր մտացը մէջ ։

Ու կերպով աՀա Աստուած գտնել տուաւ անոր իր սրբազան բանը ։ Լուտեր Հիմա գտաւ ան գիրքը՝ որ մէկ օր մը պիտի տար իր Հայրենակից ազգին Գերմանացիներուն անոր ան սքանչելի թարգմանութիւնը, որով անոնք երեք դարէն 'ի վեր Աստուծոյ պատգամները կըկարդան ։ Գուցէ աս առաջին անգամն էր որ աս պատուական մատեանը Էրֆուրթի փրքանոանը մէջ իր տեղէն շարժեցաւ ։ Մթին սենեակի մը մէկ աննշան անկիւնը պահուած գիրքը, շատ չանցած բոլոր ազգի մը լուութեան կենաց գիրքը պիտի ըլլար ։ Եկեղեցիին բարեկարգութիւնը աս գրքին մէջ ծածկեալ կըկենար ։

Ու նոյն տարուոյս մէջն էր որ Լուտեր իր ակադեմական առաջին աստիճանը առաւ ։ Իր քննութեանը Համար պատրաստուելու տարապայման աշխատութիւնը վտանգաւոր Հիւանդութիւն մը պատճառեց իրեն, ու մաՀը դուռը Հասած կըթուէր ։ Ծանր խորՀուրդներ լցուցին իր միտքը ։ Կարծեց որ իր երկրաւոր ընթացքը 'ի վախճան Հասած է ։

Երբոր առողջութեան վերադարձաւ՝ փոփոխութիւն մը կերևար իր վրայ ։ Աստուածաշունչ գիրքը ու իր Հիւանդութիւնը կըթուի թէ նոր կոչումի մը կոչեցին զինքը ։ Բայց և այնպէս տակաւին Հաստատ դիտաւորութիւն մը չկար իր մտքին մէջ ։ Դարձեալ սկսեց իր ուսմանցը պարապելու. ու 1505ին իր ակադեմական երկրորդ աստիճանը առաւ, որ կըսուի՝ վարժապետ արՀեստից, կամ վարժապետ փիլիսոփայութեան ։ Էրֆուրթի Համալսարանը անատենը բոլոր Գերմանիայի մէջ ամենէն Հռչակաւորն էր. մէկալները Համեմատաբար ստորնագոյն դպրոցներ էին ։ Ան ժամանակին սովորութեանը Համեմատ՝ Լուտերին իր աստիճանը ըն-

դունելու հանդէսը շատ շքեղութեամբ կատարեցաւ : Ջա-հերով և մոմեղէններով Թափօր ելան 'ի պատիւ Լուտերի : Մ՚եծաշուք հանդէս էր ասիկայ ընդհանուր ուրախութեան : Լուտեր՝ գուցէ աս պատիւներովս քաջալերելով , իր հօրը բաղձանքին համեմատ պատրաստուեցաւ ինքզինքը բոլորո-վին իրաւագիտութիւն սորվելու պարապեցունել :

Բայց Աստուծոյ կամեցողութիւնը այլ էր : Երբոր Լու-տեր զանազան ուսմանց անձնատուր եղած՝ սկսեր էր բը-նական փիլիսոփայութիւն և Արիստոտելի բարոյականու-թիւնը դաս տալ՝ փիլիսոփայութեան ուրիշ մասերովը , իր խիղճը անդադար կիմացունէր իրեն թէ միայն մէկ հար-կաւոր բանը բարեպաշտութիւնն է , և թէ՝ իր առաջին հո-գողութիւնը իր հոգւոյն փրկութիւնը պիտի ըլլայ : Սոր-վեր էր որ Աստուած մեղքը կատէ . կըյիշէր ան պատիժնե-րը որ անոր Բանը մեղաւորին դէմ կըյայտնէ . ու դողա-լով ինքը իրեն կըհարցընէր թէ արդեօք աներկբայ Աստու-ծոյ հետ հաշտուա՞ծ է : Իր խիղճը պատասխան կուտար ի-րեն , Ոչ : Եւ որովհետև դիւրապատրաստ և վճռահատ բնաւորութիւն ունէր , առաջադրեց որ իր ձեռքէն եկածին բոլորը ընէ , որպէս զի անմահութեան հաստատուն յոյս մը ունենայ : Ու իրարու վրայ պատահած երկու դիպուած-ներ իր հոգին արթընցուցին , ու իր առաջադրութիւնը հաստատեցին :

Առաջին դիպուածը աս էր : Համալսարանին մէջ իր բա-րեկամներէն մէկը կար՝ Աղէքսիոս անունով , որուն հետ սերտ մտերմութիւն ունէր : Մ՚էկ առտու մը Էրֆուրթի մէջ գուժալի լուր մը տարածեցաւ թէ Աղէքսիոսը սպաններ են : Լուտեր արտորալով մարդասպանութեան կատարուած տեղը գնաց , ու իմացաւ որ ան լուրը ստոյգ է : Իր բարե-կամին աս յանկարծ կորուստը մեծապէս ազդեց իրեն , և ուժգին երկիւղով լցուց իր միտքը ան հարցումը՝ որ ինքը իր անձին ըրաւ , թէ "Ի՞նչ պիտի ըլլար ինծի , թէ որ իմ վի-ճակիս իյնար ասանկ յանկարծ ելլել աշխարհէս" :

Աս միջոցիս 1505ին ամառն էր։ Համալսարանը՝ ժամանակ պարապոյ ըրած էր աս ատենս, ու Լուտեր աս պատեհութիւնովս յօժարեցաւ դէպի Մանսֆելտ ճամբորդութիւն մը ընել՝ իր մանկութեան սիրելի բնակարանին այցելութեան ելլելու, ու իր խանդակաթ ծնողքը տեսնելու։ Գուցէ նաև միտք ունէր իր սիրտը բանալ իր հօրը՝ իր մտքին մէջը ձևացուցած գաղափարին վրայ զանիկայ քննելու, և ուրիշ կոչման մը մտնելու համար անոր թոյլտուութիւնը ընդունելու։ Յառաջմանէ կը տեսնէր ամէն ան դժուարութիւնները որ իրեն կը սպասէին։ Վասն զի՝ կարգաւորներէն շատերուն վարած դատարկասուն կեանքը յաւէտ իմն ատելի էին Մանսֆելտի աշխատասէր հանքագործին։ Նաև եկեղեցականները ընկերութեան մէջ քիչ յարգութիւն ունէին. ու շատերը միայն աղքատօրէն ապրելու եկամուտ մը ունէին. վասն որոյ Լուտերի հայրը՝ որ իր որդին համալսարանը պահելու համար շատ բաներ զոհած էր՝ ու անոր քսանամեայ հասակին մէջ բազմահռչակ համալսարանի մը մէջ հրապարակաւ դասատուութիւն ընելը տեսեր էր, հակամիտեալ չէր իր պանծալի յոյսերը դիւրութեամբ ձգել։

Տեղեկութիւն չունիմք թէ Լուտերի Մանսֆելտ կեցած ատենը ինչ անցք անցան։ Կարելի է որ իր հօրը յայտնի յօժարութիւնը վախցուց զինքը իր միտքը անոր բանալու։ Վասն որոյ դարձեալ իր ծնողացը տունը ձգեց որ երթայ համալսարանը բնակի, բայց Էրֆուրթի մօտերը հասնելուն սաստիկ փոթորիկի մը պատահեցաւ։ Ասիկայ էր երկրորդ դիպուածը։ Ամպերը ահեղաձայն կորոտային. կայծակը իր քովիկը գետինը իջաւ։ Լուտեր ինքզինքը ծունկի վրայ ձգեց, թէ գուցէ իր վախճանը եկած հասած է։ Մահը՝ դատաստանը՝ յաւիտենականութիւնը բոլոր իրենց սարսափներովը իր առջևն են, ու կը խօսին անանկ ձայնով մը որուն ալ չկրնար դէմ կենալ։ Մահուան դողովը ու տագնապովը պաշարուած ուխտ կընէ՝ որ եթէ Աստուած աս

վտանգէն զինքը ազատէ, աշխարհս ուրանայ, ու իր անձը անոր ծառայութեանը նուիրէ ։ Գետնէն կելլէ՝ բայց դեռ իր աչքերուն առջին ունի ան մահը որն որ օր մը իր վրայ պիտի հասնի . ուստի երկիւղածութեամբ ինքզինքը կըքննէ, ու հարցուփորձ կընէ թէ ի՛նչ պարտի ընել ։ Յառաջմանէ զինքը անհանգիստ ընող խորհուրդները կըրկնակի զօրութեամբ իր վրայ կըդառնան ։ Ստոյգ է որ աշխատեր է իր բոլոր պարտաւորութիւնները կատարել . բայց ի՞նչ է իր հոգւոյն վիճակը . կրնա՞յ արդեօք աղտեղի հոգւով այսպէս ահաւոր Աստուծոյ ատեանին առջեւը երեւան ելլել ։ Պէտք է որ սուրբ ըլլայ . հիմա ինքը կըծարաւի սըրբութեան, ինչպէս որ առաջ կըծարաւէր գիտութեան ։ Բայց ո՞ւր պիտի գտնէ զան . ի՞նչպէս պիտի ձեռք ձգէ ։ Համալսարանը իր առջի բաղձանքը յագեցունելու միջոցներովը լցուց զինքը . բայց ո՞վ պիտի մեղմէ աս նոր անձկութիւնը՝ աս եռանդուն բաղձանքը՝ որ հիմա կըմաշէ զինքը ։ Ո՞ր սրբութեան դպրոցը կրնայ ուղղել իր քայլերը . . . Մենաստան մը պիտի երթայ . վանական կեանքը իր փրկութիւնը ապահով պիտի ընէ ։ Քանի՞ցս անգամ լսած է անոր զօրութիւնը՝ սիրտը փոխելու, մեղաւորը սրբացունելու, ու մարդը կատարեալ ընելու ։ Վանական կարգի մը պիտի մտնէ . հո՛ն ինքը սուրբ պիտի ըլլայ . իր յաւիտենական փրկութիւնը ասանկով ապահով պիտի ընէ ։

Այսպէս էր ան դիպուածը որ Լուտերի կոչումը ու անոր բոլոր ապառնի վիճակը փոխեց ։ Աստուծոյ մատը կար անոր մէջը . անոր ամենակարող բազուկն էր որ յերկիր կործանեց փիլիսոփայութեան նոր ծաղկած վարժապետը՝ դատաւորութեան պաշտօնի փափաքողը՝ իրաւագէտ ըլլալու ձկտողը, որպէս զի բոլորովին նոր կարգի մը ուղղէ անոր ապառնի կեանքը ։ Հռուբիանոս՝ Էրփուրթի համալսարանին մէջ Լուտերի բարեկամներուն մէկը, յետ ժամանակաց այսպէս գրեց անոր . "Երկին Նախախնամութիւնը յառաջագոյն տեսաւ ինչ որ դուն մէկ օր մը պիտի ըլլայիր . անոր

համար քու ծնողացդ բնակարանէն դառնալուդ՝ երկնառաք հուրը Էրֆուրթ քաղքին մօտ իբրև երկրորդ Պօղոս յերկիր կործանեց զքեզ, ու բաժնելով զքեզ մեզմէ՝ Օգոստինեան կարգը մտնելու յառաջ վարեց":

Լուտեր կրկին Էրֆուրթ կը մտնէ. իր առաջադրութիւնը անփոփոխ է: Բայց և այնպէս դժկամակութեամբ է որ կը պատրաստուի իրեն այնչափ սիրելի եղած կապերը խզելու: Իր դիտաւորութիւնը իր ընկերներէն մէկու մը չյայտներ: Սակայն մէկ իրիկուն մը ուսումնարանին մէջի իր ընկերները ուրախալից բայց պարզ խնջոյքի մը կը հրաւիրէ. երաժըշտութիւնը անգամ մը ևս անոնց ընկերական ժողովը կը զուարճացունէ: Աս խնջոյքը Լուտերի բարեաւ մնա ըսելն է աշխարհի. այսուհետև իր զուարճութեանցը և իր ուսմանցը ընկերները պիտի փոխուին կրօնաւորաց ընկերութեանը հետ. բերկրապատար և իմաստալից խօսակցութիւնները՝ մենաստանին լռութեանը հետ. խնդալից ձայները՝ առանձնացեալ մատուռին հանդիսաւոր երգերուն հետ: Աստուած անանկ կը պահանջէ, ու ինքն ալ կը պարտաւորի որ ամէն բան զոհ ընէ: Բայց սակայն՝ ա՜ս վերջին նուագիս իր պատանեկութեան ուրախութիւններուն տեղի կուտայ. խնջոյքը կը զուարթացունէ իր բարեկամները, ու ինքը անձամբ կը զօրացունէ անոնց ուրախութիւնը: Բայց ան րոպէին որ անոնց ուրախութիւնը իր բարձրագոյն աստիճանին հասած է, ինքը չկրնար այլ ևս զսպել ան կարևոր խորհուրդները որոնք իր միտքը գրաւած են: Խօսիլ կըսկսի, ու կը յայտնէ իր դիտաւորութիւնը իր զարմացած բարեկամներուն: Անոնք կը ջանան հակառակիլ իր խորհուրդին, բայց զուր տեղը: Ու ան նոյն գիշերը Լուտեր՝ գուցէ անոնց թախանձանքէն վախնալով՝ իր բնակարանէն կելլէ, ու առանձին գիշերային մթութեան մէջ Օգոստինեան միանձանց վանքը կերթայ: Կը խնդրէ որ ընդունին զինքը: Դուռը կը բացուի, ու ինքը ներս կընդունուի: Տես զինքը հիմա մշտնջենաւորապէս բաժանուած իր ծնողքներէն՝ իր ուսման ընկերներէն

ու աշխարհէն ։ Ճամբայ ելաւ Օգոստոսի 17ին՝ 1505 ։ Լուտեր անատենը քանըմէկ տարու և ինն ամսու էր ։

## ՀԱՏՈՒԱԾ Գ

Ի վերջոյ ինքը Աստուծոյ հետ է, ու իր հոգին ապահով է․ հիմա պիտի ստանայ այն սրբութիւնը՝ որուն այնչափ եռանդով կըբաղձար ։ Վանքին միաբանները որ իր բոլորտիքը ժողովուելով սքանչելեօք լցան, գովեցին անոր որոշումը ու աշխարհէ հրաժարիլը ։ Բայց Լուտեր իր բարեկամները չմոռցաւ․ գրեց անոնց՝ բարեաւ մնա ըսելով անոնց և աշխարհի, ու հետևեալ օրը սա նամակները խրրկեց անոնց՝ իր մինչև հիմա հագած հանդերձներովը․ ու մատանին՝ որ վարժապետ փիլիսոփայութեան կոչուած ատենը ընդուներ էր՝ վերստին համալսարանը դարձուց, որ մէկ բան մը իր միտքը չբերէ այն աշխարհը որմէն ինքը հրաժարեցաւ ։

Իր Էրֆուրթի բարեկամները մեծ զարմանքի մէջ մնացին ։ Կըմտածէին թէ պէ՞տք է որ ասանկ գերագոյն տաղանդները կորնչին այն միանձնական կեանքին մէջ, որն որ կենդանւոյն մեռնելու պէս բան մըն է ։ Դառնակսկիծ տրտմութեամբ լցուած իսկ և իսկ վանքը գացին, յուսալով որ ըլլայ թէ համոզեն զԼուտեր ասանկ վտանգաւոր առաջադրութենէն փոշիմանիլ․ բայց 'ի զուր աշխատեցան ։ Վանքին դռները անոնց դէմ գոցուեցան, և լման ամիս մը անցաւ մինչև որ մէկը թոյլտուութիւն կրցաւ ընդունիլ նորեկ միաբանը տեսնելու, կամ անոր հետ խօսելու ։

Լուտեր գրեթէ անմիջապէս իր ծնողացը յայտնեց այն մեծ փոփոխութիւնը որ հիմա իրեն պատահեցաւ ։ Իր հայրը չփոթեցաւ․ ահով պաշարեցաւ իր որդւոյն համար՝ ինչպէս ինքը Լուտեր կըսէ վանական ուխտերու վրայ իր գրած ու հօրը ընծայած գրքին ուղերձին մէջ ։ Իր անձնական տկա-

յութիւնը՝ իր թարմ հասակը՝ և իր կիրքերուն սաստկութիւնը կըվախցունէին իր հայրը՝ որ բորբոքեալ եռանդին առաջին վայրկեանները անցնելուն վանական դատարկութիւնը կարելի է որ կամ յուսահատութեան գրգռէ նորահաս երիտասարդը , կամ մեծեղեռն մեղքերու մէջ ձգէ զանիկայ ։ Գիտէր ինքը՝ թէ վանական կեանքը արդէն շատերուն կործանմանը պատճառ եղած է ։ Մանաւանդ որ՝ Մանսֆելտի իշխանաւոր հանքագործը իր որդւոյն համար բոլորովին ուրիշ գաղափարներ ձևացուցած էր իր մտքին մէջ ։ Կըյուսար հարուստ և պատուաւոր տնէ մը հարս մը բերել իր որդւոյն . բայց հիմա իր բոլոր փառասէր գաղափարները մէկ գիշերի մէջ ոչնչացան անոր անխոհեմ քայլափոխ մը ընելովը ։

Յովհաննէս զայրագին նամակ մը գրեց իր որդւոյն , որուն մէջ գործածեց ան իշխանական եղանակը՝ որն որ ինքը իր որդւոյն վարժապետ արհեստից կոչուելէն հետէ մէկ դի դրած էր . ու նաև հայրական սիրոյ զրկեալ ըլլալը անոր յայտնեց ։ Յովհաննէս Լութերի բարեկամները՝ և անտարակոյս իր կենակիցը զուր տեղը աշխատեցան անոր տհաճութիւնը մեղմել՝ ըսելով , "Թէ որ դուն Աստուծոյ զոհ մը ընել կըկամէիր , անիկայ քու ստացուածքիդ ամենալաւը ու ամենասիրելին՝ քու որդիդ քու Իսահակդ թող ըլլայ" ։ Իսկ Մանսֆելտի անողոքելի ատենակալը չէր կամէր ականջ դնել բանի մը ։

Բայց ատենէ մը ետև ժանտախտը ան կողմերը տարածեցաւ , ու Յովհաննէս Լութերի երկու որդիքը իր ձեռքէն առաւ ։ Նոյն ատենը մէկը եկաւ՝ ու աս տառապեալ հօրը պատմեց թէ Էրֆուրթի նոր միաբանն ալ մեռաւ ։ Իր բարեկամները աս պատեհութիւնը ձեռք առնելով ջանացին հաշտեցունել հայրը իր որդւոյն հետ ։ "Թէ որ աս համբաւը սուտ ըլլայ , ըսին , ալ քու որդւոյդ կրօնաւոր ըլլալուն հաճութիւն ցոյց տալով աս ներկայ տրտմութիւնդ թող քեզի օգուտ մը ըրած ըլլայ" ։ "Աղէկ , այդպէս թող

ըլլայ, և Աստուած տայ որ յաջողութիւն գտնէ" ըսաւ Յովհաննէս Լուտեր՝ բեկեալ, բայց տակաւին վարանեալ սրտով: Քանզի յետ ժամանակաց երբոր Լուտեր իր հօրը հետ հաշտուած ըլլալով պատմեց անոր ան կայծակին դիպուածը՝ որ ստիպեր էր զինքը վանական կեանքը ընտրելու, պատասխան տուաւ մեծարու հանքագործը և ըսաւ. "Աստուած տայ որ սատանայի խաբէութիւն չըլլայ ան քու երկնառաքնշանի տեղ ընդունածդ": .

Աս սոյն ժամանակիս Լուտեր չունէր ան ոգին որն որ զինքը ետքը Եկեղեցիին Բարեկարգողը ըրաւ: Աստոր ապացոյցը իր վանքը մտնելն է: Վասն զի ասիկայ մէկ գործ մըն էր՝ համեմատ ան դարուն սկզբունքներուն, որմէն Եկեղեցին յառաջ անցունելու ձեռք պիտի զարնէր ինքը: Ան որ աշխարհի ուսուցիչը պիտի ըլլար, տակաւին միայն անոր ծառայաբար հետևողն էր: Սնապաշտութեան շինուածքին վրայ նոր քար մը դրուեցաւ ան նոյն անձին ձեռքովը, որ շատ չանցած պիտի կործանէր ան շէնքը: Լուտեր անատենը փրկութեան ակնկալութիւնը հաստատած էր իր անձին վրայ, գործերու ու կանոնապահութիւններու վրայ. չէր գիտեր թէ փրկութիւնը միայն Աստուծմէ կուգայ: Ան խնդրէր իր սեպհական արդարութիւնը ու իր սեպհական փառքը հաստատել, չգիտնալով Աստուծոյ արդարութիւնը ու անոր փառքը*: Բայց ինչ որ անատենը չէր գիտեր, շուտով սորվեցաւ: Էրֆուրթի վանքին մէջ յաջողեցաւ ան մեծ փոփոխութիւնը՝ որ փոխանակ աշխարհի ու անոր աւանդութիւններուն զԱստուած ու Աստուծոյ իմաստութիւնը դրաւ անոր սրտին մէջ, ու պատրաստեց ան երևելի բարեկարգութիւնը՝ որուն խիստ նշանաւոր գործիքը եղաւ ան:

Վանքին միաբանները ուրախութեամբ ընդունեցին զինքը: Իրենց անձնասիրութեանը մեծ փառք էր որ տեսան

* Հռովմ. Ժ. 3:

թէ համալսարանի երեւելի անձերուն մէկը կը ձգէ զանիկայ, ու իրենց կարգին տունը կու գայ կընտրէ : 'Ի վերայ այսր ամենայնի խստութեամբ կը վարէին անոր հետ, ու ամենանուաստ պաշտօններ կը դնէին անոր վրայ : Կուցէ կուզէին խոնարհեցունել փիլիսոփայութեան վարժապետը, կամ սորվեցունել անոր՝ թէ իր գիտութիւնը չէր բարձրացուներ զինքը իր եղբայրներուն վրայ . ու կը խորհէին ևս որ աս ճամբով արգիլեն զինքը իր ուսմանցը պարապելէն, ուրկէց վանքը օգուտ մը չէր կրնար քաղել : Նախկին վարժապետն արհեստից պարտաւորած էր դռնապանի պաշտօններ կատարել . դռները բանալ և գոցել, ժամացոյցը լարել՝, եկեղեցին աւլել, սենեակները մաքրել : Այնուհետեւ՝ նուաստ աբեղան՝ որ միանգամայն էր դռնապան՝ եկեղեցպան՝ ու վանքին ծառան, երբոր իր գործը աւարտէր, "Cum sacco per civitatem—Տոպրակով քաղաքը" կը կանչէին եղբայրները . ու հացին տոպրակը շալկած կը պարտաւորէր Նոր-ֆուրթի փողոցները շրջիլ՝ մուրալով տնէ 'ի տուն՝ և գուցէ ան նոյն անձանց դռները, որոնք կամ իր հաւասարապատիւ բարեկամներն էին, և կամ իրմէն ստորինագոյն : Այլ երբոր ետ դառնար՝ կամ գետնափոր խուցի մը մէջ պիտի մտնէր ուրկէց քանի մը ոտնաչափ փոքրիկ պարտէզ մը միայն կերեւէր . կամ վերստին իր նուաստ պաշտօններուն պիտի պարապէր : Բայց աս ամէնը կը տանէր ինքը . իր բնական տրամադրութեամբը ձեռնամուխ եղած բանին 'ի բոլոր սրտէ անձնատուր ըլլալու հակամիտութիւն ունենալով, իր բոլոր հոգիովն էր որ վանական եղաւ : Ասկէց զատ՝ ի՞նչպէս կրնար իր մտքէն անցունել իր մարմնոյն խնայելու՝ կամ մարմնոյն հաճութիւնը խնամելու խորհուրդը . քանզի ասանկով ո՞ւր կը մնար ան սրբութիւն ստանալը՝ որ եկած էր վանքին շրջապատին մէջ փնտռելու :

Աղօթելը միաբանը աշխատութեամբ ճնշուած՝ իր անարգ պաշտօններէն ձեռք ձգած ամէն մէկ վայրկեանը ուժգին եռանդով գիտութեան մէջ յառաջանալու իր օգտին կը

ղեր։ Վարժապետն իրեն մատուցած յարգութիւնը աշակերտը բարձրացուց ինք իր յարգութիւնը ճանչնալու։ Օր մը՝ Տրեբոնիուսի ընկերները՝ որոնք տարբեր սովորութիւն ունէին, անոր տարապայման խոնարհամտութեանը վրայ իրենց զարմանքը յայտնեցին ու պատասխան տուաւ անոնց, (և աս պատասխանն ալ տպաւորեցաւ Լութերի մտացը մէջ.) “Աս պատանիներուն մէջ՝ ըսաւ՝ կան ոմանք, որոնք Աստուած մէկ օր մը պիտի բարձրացունէ քաղաքապետութեան՝ ատենակալութեան՝ դատաւորութեան և վարժապետութեան աստիճանի։ Եւ թէպէտ անոնց ամէն մէկուն մեծութեան արտաքին նշանները հիմա չէք տեսներ, բայց արժան է յարգութեամբ վարիլ հետերնին”։ Պատանին անտարակոյս զուարճութեամբ լսեց աս խօսքերը, և գուցէ անատենը ինքզինքը տեսաւ իբրև պատկերի մը մէջ՝ վարժապետութեան պատուով պսակուած։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԼՈՒՏԵՐ տասնըութը տարեկան եղաւ. ուսման քաղցր ճաշակները առաւ. գիտութեան փափաքը բորբոքեցաւ, ու կըփափաքէր համալսարանի մը վարժութեան տակը մտնել։ Կըբաղձար երթալ բոլոր գիտութեանց մէկ աղբիւրը, որ կարող ըլլայ իր ծարաւը զովացընել։ Հայրը կուզէր որ իրաւագիտութեան պարապի. իր որդւոյն տաղանդներուն վրայ վստահութիւն ունենալով, կըփափաքէր որ քաջ մշակէ զանոնք ու երևան հանէ աշխարհի։ Արդէն յուսով կըտեսնէր զանիկայ իր քաղաքացիներուն մէջ պատուաւոր պաշտօններու հասած, իշխանաւորուն անձանց սէրը իր վրան ձգած, ու աշխարհի ընդարձակ թատրոնին մէջ պայծառ ճառագայթած։ Վասն որոյ որոշուեցաւ որ պատանին Էրֆուրթի համալսարանը խրկուի։

Լուտեր յամի Տեառն 1501ին ան համալսարանը հասաւ։ Յոդոկոս՝ մականուանեալ Ուսուցիչ Այզէնախի, անատենը դպրոցական փիլիսոփայութիւն կըսորվըցունէր նոյն տեղը մեծ յաջողակութեամբ։ Պատանին աս տեղս շուտով իր բոլոր աշակերտակիցներէն յառաջադէմ եղաւ։ Դիւրընկալ յիշողութեան ու աշխոյժ երեւակայութեան ձիրքերով զարդարուած ըլլալուն, բոլոր կարդացածը ու լսածը իր մտքին մէջ անանկ կըհաստատուէր՝ ինչպէս որ անձամբ զանոնք տեսած ըլլար։ Այսպէս կըճառագայթէր Լուտեր իր մանկութեան ատենն ալ։ "Բոլոր համալսարանը կը զմայլէր անոր տաղանդներուն վրայ" կըսէ Մելանկտոն։

Բայց աս տասնըութը տարեկան պատանիս իր կենացը աս կանխագոյն մասին եւս միայն իր միտքը մշակելու համար չէր պարապէր ուսման։ Իր ներսը ունէր ան խոհական մըտածութիւնը՝ ու առ Աստուած նայող ան սիրտը, որն որ Տէրը կըշնորհէ անոնց՝ որոնք որ կըկամի իր խիստ նախանձաւոր ծառաները ընել։ Լուտեր կըզգար որ ինքը բոլորովին Աստուծմէ կախում ունի. աս պարզ եւ զօրաւոր ճանաչումը՝ միանգամայն խորին խոնարհութեան սկզբունք մը՝ ու մեծամեծ ձեռնարկութիւններու գրգիռ մըն է։ Ջերմեռանդ սրտով կըխնդրէր որ երկնից օրհնութիւնը իր աշխատութիւններուն վրայ հանգչի։ Ամէն առաւօտ աղօթքով կըսկսէր իր օրը. այնուհետեւ եկեղեցի կերթար, ետքը իր ուսմանցը կըսկսէր պարապիլ, ու բոլոր օրը ամենեւին մէկ վայրկեան մը պարապ տեղը չէր կորսընցունէր։ Սովորութիւն ունէր ըսելու, "Ուսման կէսը՝ ու լաւագոյն մասը՝ աղէկ աղօթելն է"։

Ուսումնասէր պատանին իր ակադեմական աշխատութիւններէն գողցած ժամանակը համալսարանին գրքատանը մէջ կանցունէր։ Այն ատենները գիրքերը հազուագիւտ ըլլալով մեծ առանձնաշնորհութիւն կըհամարէր իրեն որ աս ընդարձակ մատենադարանիս գանձերէն կրնար օգուտ քաղել։ Մէկ օր մը՝ (որ ատեն երկու տարուան Էրֆուրթ

գացած էր՝ ու քսան տարեկան հասակին մէջն էր,) մատենադարանին գիրքերը կարգաւ կըբանար անոնց հեղինակներուն անունները կարդալու ։ Գիրքին մէկը՝ որ ըստ կարգի բացաւ, իր ուշադրութիւնը արթընցուց ։ Մինչև ան ժամը անոր պէս բան մը տեսած չէր ինքը ։ Կըկարդայ անոր վերնագիրը... Աստուածաշունչ է գիրքը. հազուագիւտ գիրք մը, անծանօթ ան ատենները ։ Իր սիրտը մեծապէս կըշարժի. զարմանքով կըլեցուի որ աս մատեանիս մէջ աւելի բան կըգտնէ՝ քան որչափ եկեղեցին ընտրած է ժողովրդեան ականջին կարդալու, աւետարանի ու առաքելական թղթոց հատուածներ ։ Մինչև անատենը ինքը կը կարծէր որ Աստուծոյ Բանը այնչափ միայն է ։ Իսկ ահա ասոր մէջ այնչափ երեսներ՝ այնչափ գլուխներ՝ այնչափ գրքեր կան, որոնք անծանօթ էին իրեն ։ Իր սիրտը կը բաբախէ երբոր Աստուածային ներշնչութեամբ գրուած բովանդակ Սուրբ Գիրքը իր ձեռքը բռնած է ։ Ուժգին փափաքով և անճառելի զգացումներով Աստուծոյ բանին աս ամբողջ թղթերը կըդարձընէ ։ Առաջին բանը որ իր ուշադրութիւնը կըգրաւէ, Աննայի ու Սամուէլ մանկան պատմութիւնն է ։ Կըկարդայ զանիկայ, ու հազիւ կրնայ զսպել իր բերկրապատար այլայլութիւնը ։ Մանուկը՝ որ իր ծնողքը Տէրոջը մատուցին որչափ որ ապրեցաւ. Աննայի աղօթքը՝ որուն մէջ կըսէ թէ Տէրը տնանկը գետնէն ու աղքատը աղբիւսէն կըվերցընէ ժողովրդոց զօրաւորներուն հետը նստեցունելու. Սամուէլ մանուկը՝ որ կըմեծնայ տաճարին մէջ Տէրոջը առջևը. բոլոր աս պատմութիւնը՝ բոլոր աս յայտնութիւնը որ իմացաւ, իրեն դեռ անծանօթ եղած զգացումներ կըյարուցանէ իր ներսը ։ Լեցուն սրտով իր բնակարանը կըդառնայ ։ "Ահ, ո՛ւր էր որ Աստուած ասանկ գիրք մը տար ինծի՝ իմս ըլլալու" իր մտացը մէջ կըխորհի ։ Լուտեր տակաւին ոչ Յունական լեզուն գիտեր և ոչ Եբրայականը ։ Զինքը ասանկ ուրախութեամբ լցունող Աստուածաշունչը Լատիներէն էր ։ Շուտով վերստին

դարձաւ մատենադարանը, վերստին իր գանձը գտնելու։ Այկէն և կրկին կըկարդար, ու իր զմայլմանքովը և ուրախութիւնովը նորէն կերթար կրկին կարդալու։ Այնատեն նոր ճշմարտութեան մը առաջին նշոյլները ճառագայթեցին իր մտացը մէջ։

Ու կերպով ահա Աստուած գտնել տուաւ անոր իր սրբազան բանը։ Լուտեր հիմա գտաւ այն գիրքը՝ որ մէկ օր մը պիտի տար իր հայրենակից ազգին Գերմանացիներուն անոր այն սքանչելի թարգմանութիւնը, որով անոնք երեք դարէն 'ի վեր Աստուծոյ պատգամները կըկարդան։ Կուցէ աս առաջին անգամն էր որ աս պատուական մատեանը Էրֆուրթի գրքատանը մէջ իր տեղէն շարժեցաւ։ Մթին սենեակի մը մէկ աննշան անկիւնը պահուած գիրքը, շատ չանցած բոլոր ազգի մը լուութեան կենաց գիրքը պիտի ըլլար։ Եկեղեցիին բարեկարգութիւնը աս գրքին մէջ ծածկեալ կըկենար։

Ու սոյն տարւոյս մէջն էր որ Լուտեր իր ակադեմական առաջին աստիճանը առաւ։ Իր քննութեանը համար պատրաստուելու տարապայման աշխատութիւնը վտանգաւոր հիւանդութիւն մը պատճառեց իրեն, ու մահը դուռը հասած կըթուէր։ Ծանր խորհուրդներ լցուցին իր միտքը։ Կարծեց որ իր երկրաւոր ընթացքը 'ի վախճան հասած է։

Երբոր առողջութեան վերադարձաւ՝ փոփոխութիւն մը կերեւար իր վրայ։ Աստուածաշունչ գիրքը ու իր հիւանդութիւնը կըթուի թէ նոր կոչում մը կոչեցին զինքը։ Բայց և այնպէս տակաւին հաստատ դիտաւորութիւն մը չկար իր մտքին մէջ։ Դարձեալ սկսեց իր ուսմանցը պարապելու. ու 1505ին իր ակադեմական երկրորդ աստիճանը առաւ, որ կըսուի՝ վարժապետ արհեստից, կամ վարժապետ փիլիսոփայութեան։ Էրֆուրթի համալսարանը անատենը բոլոր Գերմանիայի մէջ ամենէն հռչակաւորն էր. մէկալները համեմատաբար ստորնագոյն դպրոցներ էին։ Ան ժամանակին սովորութեանը համեմատ՝ Լուտերին իր աստիճանը ըն-

գունելու հանդէսը շատ շքեղութեամբ կատարեցաւ: Գո-հերով և մոմեղէններով Թափօր ելան 'ի պատիւ Լուտերի: Մեծաշուք հանդէս էր ասիկայ ընդհանուր ուրախութեան: Լուտեր՝ գուցէ աս պատիւներովս քաջալերելով, իր հօրը բաղձանքին համեմատ պատրաստուեցաւ ինքզինքը բոլորո-վին իրաւագիտութիւն սորվելու պարապեցունել:

Բայց Աստուծոյ կամեցողութիւնը այլ էր: Երբոր Լու-տեր զանազան ուսմանց անձնատուր եղած՝ սկսեր էր ըն-նական փիլիսոփայութիւն և Արիստոտելի բարոյականու-Թիւնը դաս տալ՝ փիլիսոփայութեան ուրիշ մասերովը, իր խիղճը անդադար կիմացունէր իրեն Թէ միայն մէկ հար-կաւոր բանը բարեպաշտութիւնն է, և Թէ՝ իր առաջին հո-գողութիւնը իր հոգւոյն փրկութիւնը պիտի ըլլայ: Որ-վեր կ[illegible] որ Աստուած մեղքը կատէ. կը յիշէր ան պատիժնե-րը որ անոր Բանը մեղաւորին դէմ կը յայտնէ. ու դողա-լով ինքը իրեն կը հարցընէր Թէ արդեօք աներկբայ Աստու-ծոյ հետ հաշտուա՞ծ է: Իր խիղճը պատասխան կուտար ի-րեն, Ոչ: Եւ որովհետև դիւրապատրաստ և վճռահատ բնաւորութիւն ունէր, առաջադրեց որ իր ձեռքէն եկածին բոլորը ընէ, որպէս զի անմահութեան հաստատուն յոյս մը ունենայ: Ու իրարու վրայ պատահած երկու դիպուած-ներ իր հոգին արթնցուցին, ու իր առաջադրութիւնը հաստատեցին:

Առաջին դիպուածը աս էր: Համալսարանին մէջ իր բա-րեկամներէն մէկը կար՝ Ալեքսիոս անունով, որուն հետ սերտ մտերմութիւն ունէր: Մէկ առտու մը Էրֆուրթի մէջ գուժալի լուր մը տարածեցաւ Թէ Ալեքսիոսը սպաններ են: Լուտեր արտորալով մարդասպանութեան կատարուած տեղը գնաց, ու իմացաւ որ ան լուրը ստոյգ է: Իր բարե-կամին աս յանկարծ կորուստը մեծապէս ազդեց իրեն, և ուժգին երկիւղով լցուց իր միտքը ան հարցումը՝ որ ինքը իր անձին ըրաւ, Թէ "Ի՞նչ պիտի ըլլար ինծի, Թէ որ իմ վի-ճակիս իյնար ասանկ յանկարծ ելլել աշխարհէս":

Աս միջոցին 1505ին ամառն էր: Համալսարանը՝ ժամանակ պարապոյ ըրած էր աս տարենս, ու Լուտեր աս պատեհութիւնով յօժարեցաւ դէպի Մանսֆէլտ ճամբորդութիւն մը ընել՝ իր մանկութեան սիրելի բնակարանին այցելութեան ելլելու, ու իր խանդակաթ ծնողքը տեսնելու: Գուցէ նաև միտք ունէր իր սիրտը բանալ իր հօրը՝ իր մտքին մէջը ձևացուցած գաղափարին վրայ զանիկայ քըննելու, և ուրիշ կոչման մը մտնելու համար անոր թոյլտուութիւնը ընդունելու: Յառաջմանէ կըտեսնէր ամէն ան դժուարութիւնները որ իրեն կըսպասէին: Վասն զի՝ կարգաւորներէն շատերուն վարած դատարկասուն կեանքը յաւէտ իմն ատելի էին Մանսֆէլտի աշխատասէր հանքագործին: Նաև եկեղեցականները ընկերութեան մէջ քիչ յարգութիւն ունէին. ու շատերը միայն աղքատօրէն ապրելու եկամուտ մը ունէին. վասն որոյ Լուտերի հայրը՝ որ իր որդին համալսարանը պահելու համար շատ բաներ զոհած էր՝ ու անոր քսանամեայ հասակին մէջ բազմահռչակ համալսարանի մը մէջ հրապարակաւ դասատուութիւն ընելը տեսեր էր, հակամիտեալ չէր իր պանծալի յոյսերը դիւրութեամբ ձգել:

Տեղեկութիւն չունինք թէ Լուտերի Մանսֆէլտ կեցած ատենը ինչ անցք անցան: Կարելի է որ իր հօրը յայտնի յօժարութիւնը վախցուց զինքը իր միտքը անոր բանալու: Վասն որոյ դարձեալ իր ծնողացը տունը ձգեց որ երթայ համալսարանը բնակի, բայց Էրֆուրթի մօտերը հանելուն սաստիկ փոթորիկի մը պատահեցաւ: Ասիկայ էր երկրորդ դիպուածը: Ամպերը ահեղաձայն կորոտային. կայծակը իր քովիկը գետինը իջաւ: Լուտեր ինքզինքը ծունկի վրայ ձգեց, թէ գուցէ իր վախճանը եկած հասած է: Մահը՝ դատաստանը՝ յաւիտենականութիւնը բոլոր իրենց սարսափներովը իր առջևն են, ու կըխօսին անանկ ձայնով մը որուն ալ չկրնար դէմ կենալ: Մահուան դողովը ու տագնապովը պաշարուած ուխտ կընէ՝ որ եթէ Աստուած աս

վտանգէն զինքը ազատէ , աշխարհս ուրանայ, ու իր անձը անոր ծառայութեանը նուիրէ ։ Գետանէն կելլէ՝ բայց դեռ իր աչքերուն առջին ունի ան մահը որն որ օր մը իր վրայ պիտի հասնի . ուստի երկիւղածութեամբ ինքզինքը կը քննէ , ու հարցուփորձ կընէ թէ ի՞նչ պարտի ընել ։ Յառաջմանէ զինքը անհանգիստ ընող խորհուրդները կըրկնակի զօրութեամբ իր վրայ կըդառնան ։ Ստոյգ է որ աշխատեր է իր բոլոր պարտաւորութիւնները կատարել . բայց ի՞նչ է իր հոգւոյն վիճակը . կրնա՞յ արդեօք աղտեղի հոգւով այսպէս ահաւոր Աստուծոյ առեանին առջևը երևան ելլել ։ Պէտք է որ սուրբ ըլլայ . հիմա ինքը կըծարաւի սըրբութեան , ինտոր որ առաջ կըծարաւէր գիտութեան ։ Բայց ո՞ւր պիտի գտնէ զան . ի՞նչպէս պիտի ձեռք ձգէ ։ Համալսարանը իր առջի բաղձանքը յագեցունելու միջոցներովը լցուց զինքը . բայց ո՞վ պիտի մեղմէ աս նոր անձկութիւնը՝ աս եռանդուն բաղձանքը՝ որ հիմա կըմաշէ զինքը ։ Ո՞ր սրբութեան դպրոցը կրնայ ուղղել իր քայլերը . . . Մենաստան մը պիտի երթայ . վանական կեանքը իր փրկութիւնը ապահով պիտի ընէ ։ Քանի՞ցս անգամ լսած է անոր զօրութիւնը՝ սիրտը փոխելու , մեղաւորը սրբացունելու , ու մարդը կատարեալ ընելու ։ Վանական կարգի մը պիտի մտնէ . հո՛ն ինքը սուրբ պիտի ըլլայ . իր յաւիտենական փրկութիւնը ասանկով ապահով պիտի ընէ ։

Այսպէս էր ան դիպուածը որ Լուտերի կոչումը ու անոր բոլոր ապառնի վիճակը փոխեց ։ Աստուծոյ մատը կար անոր մէջը . անոր ամենակարող բազուկն էր որ յերկիր կործանեց փիլիսոփայութեան նոր ծաղկած վարժապետը՝ դատաւորութեան պաշտօնի փափաքողը՝ իրաւագէտ ըլլալու ձկտողը , որպէս զի բոլորովին նոր կարգի մը ուղղէ անոր ապառնի կեանքը ։ Հռուբիանոս՝ Էրֆուրթի համալսարանին մէջ Լուտերի բարեկամներուն մէկը , յետ ժամանակաց այսպէս գրեց անոր . "Վերին Նախախնամութիւնը յառաջագոյն տեսաւ ինչ որ դուն մէկ օր մը պիտի ըլլայիր . անոր

համար քու ծնողացդ բնակարանէն դառնալով՝ երկնաւոր Հայրը Էրֆուրթ քաղքին մօտ իբրև երկրորդ Պօղոս յերկիր կործանեց զքեզ, ու բաժնելով զքեզ մեզմէ՝ Օգոստինեան կարգը մտնելու յառաջ վարեց"։

Լութեր կրկին Էրֆուրթ կըմտնէ. իր առաջադրութիւնը անփոփոխ է։ Բայց և այնպէս դժկամակութեամբ է որ կը պատրաստուի իրեն այնչափ սիրելի եղած կապերը խզելու։ Իր դիտաւորութիւնը իր ընկերներէն մէկու մը չյայտներ։ Սակայն մէկ իրիկուն մը ուսումնարանին մէջի իր ընկերները ուրախալից բայց պարզ խնճոյքի մը կըհրաւիրէ. երաժըշտութիւնը անգամ մը ևս անոնց ընկերական ժողովը կը զուարճացունէ։ Աս խնճոյքը Լութերի բարեաւ մնա ըսելն է աշխարհի. այսուհետև իր զուարճութեանցը և իր ուսմանցը ընկերները պիտի փոխուին կրօնաւորաց ընկերութեանը հետ. բերկրապատար և իմաստալից խօսակցութիւնները՝ մենաստանին լռութեանը հետ. խնդալից ձայները՝ առանձնացեալ մատուռին հանդիսաւոր երգերուն հետ։ Աստուած անանկ կըպահանջէ, ու ինքն ալ կըպարտաւորի որ ամէն բան զոհ ընէ։ Բայց սակայն․ աս վերջին նուագիս իր պատանեկութեան ուրախութիւններուն տեղի կուտայ. խնճոյքը կըզուարթացունէ իր բարեկամները, ու ինքը անձամբ կըզօրացունէ անոնց ուրախութիւնը։ Բայց ան րոպէին որ անոնց ուրախութիւնը իր բարձրագոյն աստիճանին հասած է, ինքը չկրնար այլ ևս զսպել ան կարևոր խորհուրդները որոնք իր միտքը գրաւած են։ Խօսիլ կըսկսի, ու կըյայտնէ իր դիտաւորութիւնը իր զարմացած բարեկամներուն։ Անոնք կըջանան հակառակիլ իր խորհուրդին, բայց զուր տեղը։ Ու ան նոյն գիշերը Լութեր՝ գուցէ անոնց թախանձանքէն վախնալով՝ իր բնակարանէն կելլէ, ու առանձին գիշերային մթութեան մէջ Օգոստինեան միանձանց վանքը կերթայ։ Կըխնդրէ որ ընդունին զինքը։ Դուռը կըբացուի, ու ինքը ներս կընդունուի։ Տես զինքը հիմա մշտնջենաւորապէս բաժանուած իր ծնողքներէն՝ իր ուսման ընկերներէն

ու աշխարհէն ։ Անիկայ եղաւ Օգոստոսի 17ին՝ 1505 ։
Լուտեր անատենը քսանըմէկ տարու և ինն ամսու էր ։

## ՀԱՏՈՒԱԾ Գ

Ի վերջոյ ինքը Աստուծոյ հետ է, ու իր հոգին ապահով է. հիմա պիտի ստանայ այն սրբութիւնը՝ որուն այնչափ եռանդով կըբաղձար ։ Վանքին միաբանները որ իր բոլորտիքը ժողովուելով սքանչելեօք լցան, գովեցին անոր որոշումը ու աշխարհէ հրաժարիլը ։ Բայց Լուտեր իր բարեկամները չմոռցաւ. գրեց անոնց՝ բարեաւ մնա ըսելով անոնց և աշխարհի, ու հետևեալ օրը աս նամակները խըրկեց անոնց՝ իր մինչև հիմա հագած հանդերձներովը. ու մատանին՝ որ վարժապետ փիլիսոփայութեան կոչուած ատենը ընդուներ էր՝ վերստին համալսարանը դարձուց, որ մէկ բան մը իր միտքը չբերէ այն աշխարհը որմէն ինքը հրաժարեցաւ ։

Իր Էրֆուրթի բարեկամները մեծ զարմանքի մէջ մնացին ։ Կըմտածէին թէ պէ՞տք է որ ասանկ գերագոյն տաղանդները կորնչին այն միանձնական կեանքին մէջ, որն որ կենդանւոյն մեռնելու պէս բան մըն է ։ Դառնակսկիծ տըրտմութեամբ լցուած իսկ և իսկ վանքը գացին, յուսալով որ ըլլայ թէ համոզեն զԼուտեր ասանկ վտանգաւոր առաջդրութենէն փոշիմանիլ. բայց 'ի զուր աշխատեցան ։ Վանքին դռները անոնց դէմ գոցուեցան, և ըմոն ամիս մը անցաւ մինչև որ մէկը թոյլտուութիւն կրցաւ ընդունիլ նորեկ միաբանը տեսնելու, կամ անոր հետ խօսելու ։

Լուտեր գրեթէ անմիջապէս իր ծնողացը յայտնեց այն մեծ փոփոխութիւնը որ հիմա իրեն պատահեցաւ ։ Իր հայրը շփոթեցաւ. ահով պաշարեցաւ իր որդւոյն համար՝ ինչպէս ինքը Լուտեր կըսէ վանական ուխտերու վրայ իր գրած ու հօրը ընծայած գրքին ուղերձին մէջ ։ Իր անձնական տկա-

րութիւնը՝ իր թարմ հասակը՝ և իր կիրքերուն սաստկութիւնը կըվախցունէին իր հայրը՝ որ բորբոքեալ եռանդին առաջին վայրկեանները անցնելուն վանական դատարկութիւնը կարելի է որ կամ յուսահատութեան գրգռէ նորահաս երիտասարդը, կամ մեծեղեռն մեղքերու մէջ ձգէ զանիկայ: Գիտէր ինքը՝ թէ վանական կեանքը արդէն շատերուն կործանմանը պատճառ եղած է: Մանաւանդ որ՝ Մանսֆելտի իշխանաւոր հանքագործը իր որդւոյն համար բոլորովին ուրիշ գաղափարներ ձևացուցած էր իր մտքին մէջ: Աշխատաւոր հարուստ և պատուաւոր տնէ մը հարս մը բերել իր որդւոյն. բայց հիմա իր բոլոր փառասէր գաղափարները մէկ գիշերի մէջ ոչնչացան անոր անխոհեմ քայլափոխ մը ընելովը:

Յովհաննէս զայրագին նամակ մը գրեց իր որդւոյն, որուն մէջ գործածեց ան իշխանական եղանակը՝ որն որ ինքը իր որդւոյն վարժապետ արհեստից կոչուելէն հետէ մէկ դի դրած էր. ու նաև հայրական սիրոյ զրկեալ ըլլալը անոր յայտնեց: Յովհաննէս Լուտերի բարեկամները՝ և անտարակոյս իր ըծակիցը զուր տեղը աշխատեցան անոր տհաճութիւնը մեղմել՝ ըսելով, "Թէ որ դուն Աստուծոյ զոհ մը ընել կըկամէիր, անիկայ քու ստացուածքիդ ամենալաւը ու ամենասիրելին՝ քու որդիդ քու Իսահակդ թող ըլլայ" : Իսկ Մանսֆելտի անողոքելի ատենակալը չէր կամէր ականջ դնել բանի մը:

Բայց ատենէ մը ետև ժանտախտը ան կողմերը տարածեցաւ, ու Յովհաննէս Լուտերի երկու որդիքը իր ձեռքէն առաւ: 'Նոյն ատենը մէկը եկաւ՝ ու աս տառապեալ հօրը պատմեց թէ Էրֆուրթի նոր միաբանն ալ մեռաւ: Իր բարեկամները աս պատեհութիւնը ձեռք առնելով ջանացին հաշտեցունել հայրը իր որդւոյն հետ: "Թէ որ աս համբաւը սուտ ըլլայ, ըսին, ալ քու որդւոյդ կրօնաւոր ըլլալուն հաճութիւն ցոյց տալով աս ներկայ տրտմութիւնդ թող քեզի օգուտ մը ըրած ըլլայ" : "Աղէկ, այդպէս թող

ըլլայ, և Աստուած տայ որ յաջողութիւն գտնէ" ըսաւ Յովհաննէս Լուտեր՝ բեկեալ բայց տակաւին վարանեալ սրտով: Քանզի յետ ժամանակաց երբոր Լուտեր իր հօրը հետ հաշտուած ըլլալով պատմեց անոր ան կայծակին դէպուածը՝ որ ստիպեր էր զինքը վանական կեանքը ընտրելու, պատասխան տուաւ մեծարու հանքագործը և ըսաւ. "Աստուած տայ որ սատանայի խաբէութիւն չըլլայ ան քու երկնառաքնշանի տեղ ընդունածդ": .

Աս սոյն ժամանակիս Լուտեր չունէր ան ոգին որն որ զինքը ետքը Եկեղեցիին Բարեկարգողը բրաւ: Ասոր ապացոյցը իր վանքը մտնելն է: Վասն զի ասիկայ մէկ գործ մըն էր՝ համեմատ ան դարուն սկզբունքներուն, որմէն Եկեղեցին յառաջ անցունելու ձեռք պիտի զարնէր ինքը: Ան որ աշխարհի ուսուցիչը պիտի ըլլար, տակաւին միայն անոր ծառայաբար հետևողն էր: Սնապաշտութեան շինուածքին վրայ նոր քար մը դրուեցաւ ան նոյն անձին ձեռքովը, որ շատ չանցած պիտի կործանէր ան շէնքը: Լուտեր անտենը փրկութեան ակնկալութիւնը հաստատած էր իր անձին վրայ, գործերու ու կանոնապահութիւններու վրայ. չէր գիտէր թէ փրկութիւնը միայն Աստուծմէ կուգայ: Կը խնդրէր իր սեպհական արդարութիւնը ու իր սեպհական փառքը հաստատել, չգիտնալով Աստուծոյ արդարութիւնը ու անոր փառքը*: Բայց ինչ որ անատենը չէր գիտէր, շուտով սորվեցաւ: Էրֆուրթի վանքին մէջ յաջողեցաւ ան մեծ փոփոխութիւնը՝ որ փոխանակ աշխարհի ու անոր աւանդութիւններուն զԱստուած ու Աստուծոյ իմաստութինը դրաւ անոր սրտին մէջ, ու պատրաստեց ան երևելի բարեկարգութիւնը՝ որուն խիստ նշանաւոր գործիքը եղաւ ան:

Վանքին միաբանները ուրախութեամբ ընդունեցին զինքը: Իրենց անձնասիրութեանը մեծ փառք էր որ տեսան

* Հռովմ. Ժ. 3:

թէ համալսարանի երեւելի անձերուն մէկը կըձգէ զանիկայ, ու իրենց կարգին տունը կուգայ կընտրէ ։ 'Ի վերայ այսր ամենայնի խստութեամբ կըվարէին անոր հետ, ու ամենանուաստ պաշտօններ կըդնէին անոր վրայ ։ Կուցէ կուզէին խոնարհեցունել փիլիսոփայութեան վարժապետը, կամ սորվեցունել անոր՝ թէ իր գիտութիւնը չէր բարձրացուներ զինքը իր եղբայրներուն վրայ. ու կըխորհէին եւս որ աս ճամբով արգիլեն զինքը իր ուսմանցը պարապելէն, ուրկէց վանքը օգուտ մը չէր կրնար քաղել ։ Նախկին վարժապետն արհեստից պարտաւորած էր դռնապանի պաշտօններ կատարել. դռները բանալ եւ գոցել, ժամացոյցը լարել, եկեղեցին աւլել, սենեակները մաքրել ։ Այնուհետեւ՝ նուաստ աբեղան՝ որ միանգամայն էր դռնապան՝ եկեղեցպան՝ ու վանքին ծառան, երբոր իր գործը աւարտէր, “ Cum sacco per civitatem—Տոպրակով քաղաքը” կըկանչէին եղբայրները. ու հացին տոպրակը շալկած կըպարտաւորէր Էրֆուրթի փողոցները շրջիլ՝ մուրալով տնէ 'ի տուն՝ եւ գուցէ ան նոյն անձանց դռները, որոնք կամ իր հաւասարապատիւ բարեկամներն էին, եւ կամ իրմէն ստորինագոյն ։ Եւ երբոր ետ դառնար՝ կամ գետնափոր խուցի մը մէջ պիտի մտնէր ուրկէց քանի մը ոտնաչափ փոքրիկ պարտէզ մը միայն կերեւէր, կամ վերստին իր նուաստ պաշտօններուն պիտի պարապէր ։ Բայց աս ամէնը կըտանէր ինքը. իր բնական տըրամադրութեամբը ձեռնամուխ եղած բանին՝ի բոլոր սրտէ անձնատուր ըլլալու հակամիտութիւն ունենալով, իր բոլոր հոգւովը էր որ վանական եղաւ ։ Ասկէց զատ՝ ի՞նչպէս կրնար իր մտքէն անցունել իր մարմնոյն խնայելու՝ կամ մարմնոյն հաճութիւնը խնամելու խորհուրդը. քանզի ասանկով ու՞ր կըմնար այն սրբութիւն ստանալը՝ որ եկած էր վանքին շրջապատին մէջ փնտռելու ։

Ողորմելի միաբանը աշխատութեամբ ճնշուած՝ իր անարգ պաշտօններէն ձեռք ձգած ամէն մէկ վայրկեանը ուժգին եռանդով գիտութեան մէջ յառաջանալու իր օգտին կը

դարձունէր ։ Իր ընկերներէն զատ՝ առանձին իր խուցը կը քաշուէր, ու ինքզինքը իր սիրելի ուսմանցը կու տար ։ Բայց եղբայրները շուտով իմացան անոր աս վարմունքը, գանգատելով իր վրայ եկան, ու պարտաւորեցին զինքը իր գրքերը ձգել ։ “Եկո՛ր, եկո՛ր, կըսէին. չէ թէ ուսման պարապելով, այլ հաց՝ ցորեն՝ հաւկիթ՝ ձուկ՝ միս և դրամ մուրալով կրնաս դուն վանքին օգտակար ըլլալ”։ Լուտեր հնազանդեցաւ, իր գիրքերը մէկ դի դրաւ, ու վերստին իր տոպրակը առաւ. իր վրան առած լուծէն փոշիման չըլլալով՝ առաջադրեց կրել զանիկայ ։ Անատենն էր որ երևիլ սկսեց ան անդրդուելի յարատեւութիւնը՝ որով ինքը իր անգամ մը ձևացուցած առաջադրութիւնները միշտ յառաջ կը տանէր ։ Աս դժուարին ընթացքիս իր համբերատար երկայնմտութիւնը զօրաւոր ազդուութիւն մը տուաւ իր կամացը ։ Աստուած նախ զինքը կը վարժէր փոքր փորձութիւններով, որ մեծամեծ փորձութիւններու մէջ սորվի հաստատ կենալ ։ Բաց աստի՝ իր ապրած դարը աղետալի աւելորդապաշտութիւններէ ազատելու համար՝ որոնց տակը կը հեծէր, հարկաւոր էր որ անոնց ծանրութիւնը ինքը անձամբ զգայ ։ Բաժակը պարպելու համար պարտ էր իրեն մինչև յատակին մրուրը զանիկայ խմել ։

Բայց աս խստակրօն աշակերտութիւնը այնչափ երկար չտևեց որչափ որ Լուտեր կրնար վախնալ թէ պիտի տևէ ։ Վանքին մեծաւորը համալսարանին խնդիրքովը՝ որուն անդամն էր Լուտեր, ազատեց զանիկայ ան նուաստ պաշտօններէն որ միաբանները դրած էին անոր վրայ ։ Նորահաս միաբանը անատենը վերստին սկսեց նոր նախանձաւորութեամբ պարապիլ իր ուսմանցը ։ Եկեղեցւոյ հարց գործքերը, և յատկապէս սրբոյն Օգոստինոսինը, իրենց ձգեցին անոր ուշադրութիւնը ։ Աս անուանի վարդապետիս գրած Սաղմոսաց մեկնութիւնը՝ ու անոր շարագրած գիրքը Գրոյն և Հոգւոյն վրայ, իր սիրելի ընթերցմունքներն էին ։ Ոչինչ այնչափ հիացուց զինքը՝ որչափ աս վարդապետիս գաղա-

փաստերը՝ մարդկային կամաց վատթարութեանը ու Աստուածոյ շնորհաց վրայ : Իր անձին փորձովը զգաց ան վատթարութեան ճշմարտութիւնը, ու ան շնորհքին հարկաւորութիւնը : Օգոստինոսի խօսքերը արձագանք հանեցին իր սրտին մէջը :

Ուշադրութեամբ կը կարդար նաև Անսելմի ու Պէրնարի գործերը, որոնք այնչափ համարձակաբար խօսեցան Պապերուն իշխանութեանը վրայով : Նա կարդալու ընթերցմանը հետ ուրիշ վարժութիւններ ալ խառնեց : Նախամանկին առաջարկութիւնները հրապարակաւ կը լուծէր, և ուրիշներուն ելք չգտած լաբիւրինթոսներէն ինքզինքը կազատէր : Իր ունկնդիրները կըզարմանային իր վրայ :

Բայց չէ թէ քաջակիրթ աստուածաբանի մը համբաւ ըստանալու մտօք էր որ ինքը վանքը մտաւ, այլ բարեպաշտութեան կեանքի սնունդները գտնելու համար. որովհետև ուրիշ բաներու հետամուտ ըլլալը միայն զբօսանք կը համարէր :

Դի վեր քան զամենայն ինչ՝ կը սիրէր Աստուծոյ Բանին յստակ աղբիւրէն իմաստութիւն քաղել : Վանքին մէջը Աստուածաշունչ մը գտաւ շղթայով կապած ու տանէն ամբողջութեանը պէտ, ու ամէն օր աս շղթայակապ Աստուածաշունչին քովը կերթար : Թէպէտև Աստուծոյ Բանը սակաւ ինչ միայն կը հասկընար, բայց տակաւին իր ամենասիրելի ուսումն էր ան : Երբեմն միայն մէկ տեղի մը վրայ ըլլան օր մը կը մտածէր, ուրիշ անգամ մը մարգարէութեանց քանի մը մասերը ՚ի բերան կը սորվէր : Բայց ամենէն աւելի կը փափագէր՝ Պաւղոսի և Մարգարէից գրուածքներէն Աստուծոյ կամքին գիտութիւնը առնել, անոր անունը պատուելու զօրանալ, ու կենսատու բանին հաստատ վըկայութիւնովը իր հաւատքը սնուցանել :

. Կըսեն թէ աս միջոցին ինքը սկսաւ Սուրբ Գիրքերը իրենց բնագիր լեզուներովը կարդալ, ու իր ամենակատար և խիստ օգտակար գործերուն՝ Աստուածաշունչ գրոց թարգմանութեանը հիմը դնել : Իր սկզբնաւորութեանը հաւա-

նականաբար իրեն կոչնէր։ Յովհաննէս Լանգ՝ վանքին եղբայրներուն մէկը՝ որ Յունական և Եբրայական բարբառներուն քաջ հմտութիւն ունէր, և որուն հետ Լուտեր սերտ բարեկամութեամբ միշտ կապուած էր։

Նորահաս միաբանը այնչափ նախանձաւորութեամբ իր ուսմանցը անձնատուր եղած էր, որ շատ անգամ երկու կամ երեք շաբաթ սահմանեալ աղօթքները զանց կընէր։ Բայց շուտով շփոթութեան մէջ կիյնար իր կարգին կանոններուն դէմ յանցաւոր գտնուելու խորհուրդովը։ Անատենը կառանձնանար իր զանցառութիւններուն տեղը լցունելու. բոլոր իր ձգած աղօթքները երկիւղածութեամբ կըկրկնէր, չխորհելով իր հարկաւոր կերակուրը։ Անգամ մը եօթը շաբաթ գրեթէ առանց ննջելու անցուց։

Վանքին մէջը փնտռած սրբութեան փափաքովը վառուելով, Լուտեր սկսեց ճգնաւորական խստակրօնութեամբ ապրիլ։ Կըջանար 'ի խաչ հանել մարմինը, ծոմերով ճընշումներով ու հսկումներով։ Իր խուցին մէջը իբրև բանտի մէջ գոցուած, հանապազօր կըմաքառէր իր սրտին յոժարութիւններուն ու չար խորհուրդներուն դէմ։ Շատ անգամ իր կերակուրն էր սակաւիկ հաց, ու աղած ձուկ մը։ Արդարը խօսելով բնականաբար ժուժկալ էր ինքը։ Անանկ սակաւապէտ էր որ շատ անգամ իր բարեկամները զինքը կը տեսնէին՝ (և ան ալ երկինքը կերակուրէ հրաժարելով ծախու չառնուիլը իր հասկընալէն ետքը՝) որ ամենապարզ ուտելիքով մը կըշատանար, ու չորս օր առանց ուտելու և ըմպելու կանցունէր։ Ասիկայ արժանահաւատ վկայի Մէլանքթոնի խօսքովը հաստատուած է. ու ասկէց կըտեսնենք թէ որչափ քիչ հաւատք ընծայել պէտք է ան առասպելներուն որ տգէտ ու նախապաշարեալ անձինք տարածեր են Լուտերի համար թէ անժուժկալ մէկն էր։ Աս պատմուած միջոցիս Լուտեր ինչ որ ըլլար կըզգոհէր որ երկինքը ստանալու համար սրբութեան հասնի։ Հռովմէական եկեղեցին բնաւ երբէք չունեցաւ առաւել բարեպաշտ վանական մը.

ոչ ալ մէկ վանք մը բնաւ երբէք տեսաւ աւատել անկեղծ և անխոնջ աշխատութիւններ յաւիտենական երջանկութիւնը ստանալու։ Երբոր Լուտեր Բարեկարգող ըլլալուն սկսեց յայտնել թէ երկինքը ասանկով չկրնար ստացուիլ, աղէկ գիտէր իր ըսածը։ "Արդարև ջերմեռանդ միաբան մըն էի ես՝ կըգրէ Սաքսոնիայի Գէորգ դուքսին, ու անանկ ճշդութեամբ կըհետևէի իմ կարգիս կանոններուն, որ չեմ կրնար բոլորը պատմել ձեզի։ Թէ որ երբէք միաբան մը իր կրօնաւորական արդիւնքներովը երկինքը մտաւ, անշուշտ ես ալ մուտք գտած պիտի ըլլայի հոն։ Բոլոր զիս ճանչցող միաբանները կըհաստատեն ասիկայ. և թէ որ աւելի երկայն տևէր, հսկումներով աղօթքով՝ ընթերցմունքով և ուրիշ ճգնութիւններով ճշմարտապէս ես զիս նահատակ ըրած պիտի ըլլայի։

Հիմա կըմօտենանք այն ժամանակին որ նոր մարդ մը ըրաւ Լուտերը, ու Աստուծոյ անչափելի սէրը անոր յայտնելով զօրութիւն շնորհեց իրեն անիկայ աշխարհի քարոզելու։

Մենաստանի խաղաղաւէտ կեանքին ու կրօնաւորական կատարելութեան մէջ Լուտեր չգտաւ այն խաղաղութիւնը որ ինքը կըփնտռէր։ Կուզէր հաւաստութիւն մը ունենալ թէ ինքը փրկուած է. ասիկայ էր իր հոգւոյն մեծ կարօտութիւնը. առանց ասոր չէր կրնար հանգչիլ։ Այն երկիւղները որ աշխարհի մէջ զինքը հալածեցին, մինչև իր խուցը իր ետևէն եկան։ Մանաւանդ թէ հոն աճեցան ալ. ու իր խղճմտանքին սակաւիկ աղաղակը կըթուէր թէ վանքին կամարակաց յարկերը կըհնչեցունէ։ Աստուած առաջնորդեց իրեն հոն՝ որ սորվի իր անձը ճանչնալ, ու իր սեպհական կարողութեանը և առաքինութիւններուն յուսալէն դադարիլ։ Իր խղճմտանքը Աստուածային Բանէն լուսաւորուած՝ սորվեցուց իրեն թէ ինչ է սուրբ ըլլալը. բայց ահով պաշարեցաւ՝ երբոր ոչ իր սրտին և ոչ իր վարքին մէջ կըգտնէր այն սրբութեան օրինակը՝ որն որ զմայլելով կըտեսնէր Աս-

տուծոյ Բանին մէջը։ Զրամագի՞ն ծանօթութիւն. որ ամէն ճշմարիտ Քրիստոնէին ալ կը պատահի։ Երբոր արդարութիւն չկայ, արտաքին գործերուն մէջ արդարութիւն չկայ. ամէն տեղ պարտաւորութեան զանցառութիւն, մեղք, ապականութիւն։

Միաբանները և աստուածաբանները յորդորեցին զինքը որ բարի գործեր գործէ, ու ան ճամբովը բաւականացունէ Աստուածային արդարութիւնը։ "Բայց ի՞նչ բարի գործեր կրնան յառաջ գալ իմ սրտիս պէս սրտէ մը՝ կը խորհէր ինքը։ Ի՞նչպէս կրնամ կանգնիլ ամենասուրբ Դատաւորին առջևը անանկ գործերով՝ որոնց բուն խեկ արմատը ու շարժառիթը ապականեալ է"։—"Աստուծոյ առջևը մեծ մեղաւոր մը ըլլալս իմացայ կըսէ, ու չէի կրնար մտածել թէ կարելի ըլլայ ինծի իմ արդիւնքներովս հաշտեցունել զինքը"։

Իր դիւրազգած խիղճը պատճառեց իրեն որ ամենափոքր մեղքը մեծ չարիք համարի։ Իր վրայ մեղք մը գտածին պէս իսկոյն կը ջանար ամենախստտիկ անձնուրացութեամբ քաւել զանիկայ. ու տակիկայ միայն զգացուց իրեն թէ բոլոր մարդկային հնարքները անօգուտ բաներ են։ "Մահու չափ զիս կը չարչարէի, կըսէ, իմ խռովեալ ու ամբոխեալ խղճիս խաղաղութիւն գտնել Աստուծոյ առջևը, բայց թանձրամած խաւարով շրջապատուած՝ տեղ մը չէի գտներ խաղաղութիւն"։

Կրօնաւորական սրբութեան բոլոր սովորութիւնները՝ որոնք իր այնչափ ընկերներուն թմրեալ խիղճերը կը հանդարտեցունէին, և որոնց ինքը կը դիմէր իր մտքին տագնապովը, իսկոյն ինքզինքնին յայտնեցին թէ անօգուտ սահմանադրութիւններ են։ "Իմ վանականութեանս ատենը երբոր կիմանայի թէ փորձութիւններ կը յարձակէին իմ վրաս, կըսէի թէ կորուսեալ մարդ մըն եմ ես։ Ու իսկոյն հազար տեսակ ճամբաներու կը դիմէի իմ սրտիս յանդիմանութիւնները հանդարտեցունելու։ Ամէն օր կը խոստովա-

նէի. բայց աս ալ անօգուտ էր։ Այնուհետև տրտմութեամբ ճնշուած իմ խորհուրդներուս բազմութիւնովը զիս անհանգիստ կընէի։ Տէ՛ս, կըսէի իմ անձիս, նախանձոտ ես՝ անհամբեր ես՝ բարկացող ես. անոր համար թշուառ մէկն ես. անօգուտ է քեզի աս սուրբ կարգը մտնելդ"։

Այս սակայն Լուտեր ան նոյն դարին նախապաշարմունքներովը զանգուած ըլլալով, մանկութենէն 'ի վեր համարած էր որ հիւանդ հոգին ճշմարտապէս բժշկելու կարող են ան հնարքները՝ որոնց անբաւականութիւնը հիմա փորձով կըզգար։ Ի՞նչ մտածել պէտք էր աս օտարոտի յայտնութեանս վրայ որ իր վանքին առանձնութեանը մէջ ինքը նոր գտաւ։ Ուրեմն կրնա՞յ եղեր մէկը սրբութեան տաճարին մէջ ապրիլ, և սակայն իր ներսը մեղսալից հոգի մը կրել։ Ուրիշ հանգերձ մը ձեռք ձգեց, բայց ոչ ուրիշ սիրտ մը. իր յոյսերը ոչնչացան. ո՞ւր պիտի դառնայ ինքը։ Ամէն աս կանոնները ու կարգադրութիւնները կըսա՞ն արդեօք մարդկային հնարքներ ըլլալ։ Սանկ կարծիքը որ ան բոպէին սատանայի փորձութիւն կերևար իրեն, իսկոյն միւս բոպէին անհակառակելի ճշմարտութիւն կըթուէր։ Երբեմն իր սրտին մէջ խօսող սուրբ ձայնին դէմ՝ և երբեմն բազմաթիւ դարերէն հետէ հաստատուած պատուական սահմանադրութիւններուն դէմ կռուելով, Լուտերի կեանքը շարունակեալ պատերազմ մըն էր։ Նորահաս միաբանը վանքին խուցերուն առջևի երկայն ճեմելիքներուն մէջ ուրուական ոգիի նման հառաչանքով և հեծութիւնով կըշարժէր։ Իր մարմնոյն կարողութիւնները տկարացան, իր զօրութիւնը գնաց իրմէն. երբեմն իբրև մեռեալ անշարժ կըմնար։

Օր մը՝ տրտմութեամբ ծանրաբեռնեալ իր խուցը մտաւ, ու քանի մը օր մէկուն թող չտուաւ որ իր քովը գայ։ Իր բարեկամներուն մէկը՝ Լուկաս Էտեմպերգէր, ապերջանիկ աբեղային համար անհանգիստ՝ ու անոր վիճակին վրայ կասկածոտ ըլլալով, քանի մը քաղցրաձայն տղաք առաւ իր հետը՝ ու գնաց անոր խուցին դուռը զարկաւ։ Ոչ դուռը

բացուեցաւ, ու ոչ ներսէն պատասխան տրուեցաւ։ Էդեմպերգէր առաւել ևս շփոթելով զարկաւ կոտրեց դուռը, ու տեսաւ որ Լուտեր անզգայ գետինը տարածուած էր, ու վրան կենդանութեան նշան չկար։ Զուր տեղը անոր բարեկամները աշխատեցան խելքը գլուխը բերելու. անիկայ անշարժ կըկենար։ Անատենը մանկահասակ երաժիշտները սկսեցին քաղցր մեղեդի մը երգել։ Անոնց յըստակ ձայները զարմանալի կերպիւ ազդեցին ողորմելի աբեղային՝ որուն միշտ աղբիւր հաճութեան էր երաժշտութիւնը, ու քիչ քիչ իր զօրութիւնը և իր զգացումը վերստին դարձան։ Բայց երաժշտութիւնը թէ որ քիչ մը ատեն կրնայր անոր չափով մը զուարթութիւն բերել, ուրիշ և առաւել ազդու դեղ մը կըպակսէր անոր ախտը բժշկելու. կըպակսէր Աւետարանի ան քաղցր և խորամուխ ձայնը՝ որ Աստուծոյ ձայնն է։ Ինքը կըզգար որ իր կարօտութիւնը ասիկայ է՝ վասն որոյ իր նեղութիւնները ու երկիւղները ստիպեցին իրեն անձանձիր նախանձաւորութեամբ պարապիլ Առաքելոց և Մարգարէից գրուածքներուն։

## ՀԱՏՈՒԱԾ Դ

ԼՈՒՏԵՐ առաջին վանականը չէր որ ասոնց նման նեղութիւններու մէջէ անցաւ։ Մենաստանները իրենց տըխրագին որմերուն մէջ շատ անգամ կըծածկէին գարշելի մոլութիւններ, որոնք թէ որ յայտնուելու ըլլային՝ ողջախոհ մտքերը պիտի դողացընէին. բայց շատ անգամ ալ կըպարունակէին Քրիստոնէական առաքինութիւններ՝ որ առանձնութեան մէջ կըզարգանային, և որոնք թէ որ 'ի տեսութիւն բերուէին՝ զաշխարհ ամենայն պիտի զմայլեցունէին։ Անոնք որ աս առաքինութիւնները ստացած էին, միայն մէկզմէկու և Աստուծոյ հետ ապրելով դուրսիննե-

րուն ուշադրութեանը ենթակայ չէին, ու իրենց առանձնացած փոքրիկ վանքին ևս շատ անգամ անծանօթ էին: Միայն Աստուած գիտէր անոնց վարքը:

Բայց երբոր աս մարդոցը մէկը երևելի պաշտօնատարութեան մը կոչուէր, կըցուցընէր անանկ առաքինութիւններ՝ որոնց ոգեշահ ներգործութիւնները երկարագոյն ժամանակ և ընդարձակ կըզգացուէին: Ճրագը աշտանակին վրայ դրուած ըլլալով, բոլոր տունը կըլուսաւորէր. ու աս լուսովը շատերը կարթըննային: Անանկ էր որ աս աստուածասէր հոգիները յաղթէ յաղթ կըսերէին, և իբրև հեռաւոր ջահեր կըճառագայթէին ան միջոցներուն՝ երբոր վանքերը բազմիցս միայն աղտեղի բնակարաններ էին մթութեան:

Երիտասարդին մէկը այսպէս զինքը անուանի ըրաւ Գերմանիայի վանքերուն մէկին մէջ: Անոր անունն էր՝ Յովհաննէս Ստաուպից. ինքը Միսնիայի ազնուական ազգատոհմէ մը սերեալ էր, ու իր մանկութեան հասակէն նշանաւոր էր իր գիտութեան փափաքը ու առաքինութեան սէրը: Իմացաւ որ հարկաւոր է իրեն առանձնանալ, որպէս զի բոլորովին գիտութեան անձնատուր ըլլայ. բայց շուտով գտաւ թէ փիլիսոփայութիւնը ու բնագիտութիւնը բան մը չեն կրնար ընել մեր յաւիտենական փրկութեանը:

Վասն որոյ սկսեց աստուածաբանական ուսման հետևելու: Բայց յատկապէս կըջանար ան գիտութեանը հետ հընազանդութիւնը ընկերել: "Վասն զի անօգուտ է, կըսէ իր վարքը գրողներուն մէկը, որ մենք զմեզ աստուածաբան կոչեմք, թէ որ ան ազնիւ մականունը մեր վարքովը չեմք ցուցըներ": Աստուածաշունչ Գրոց և սրբոյն Օգոստինոսի ընթերցմունքը, իր անձին ծանօթութիւնը, Լուտերի նման իր սրտին խաբեբայութեանը ու ցանկութիւններուն հետ վարելու պատերազմը, փրկիչին ձգեցին զինքը: Քրիստոսի հաւատքովը խաղաղութիւն գտաւ իր հոգւոյն. և յատկապէս Շնորհքով Ընտրութեան վարդապետութիւնը գրաւեց անոր խորհուրդները: Իր վարքին անարա-

տութիւնը՝ իր գիտութեանը խորութիւնը՝ իր լեզուին ճարտասանութիւնը՝ ու նաև իր նշանաւոր կերպարանքը և պանծալի կենցաղավարութիւնը, գովելի ընծայեցին զինքը իր ժամանակակիցներուն։ Սաքսոնիայի կայսրընտիր Փրիդերիկոս Իմաստունը իր բարեկամութեամբը պատուեց զինքը, զանազան դեսպանութեան գործածեց զանի, ու անոր առաջնորդութեամբը հիմնեց Վիդդեմպերկի համալսարանը։ Սրբոյն Պօղոսի և սրբոյն Օգոստինոսի առ աշակերտը աստուածաբանութեան առաջին ուսուցիչն էր ան դասատունին մէջ, ուրկէց օր մը լոյսը պիտի ծագէր այնչափ ազգերու եկեղեցիները ու դպրոցները լուսաւորելու։ Լատերանու ժողովին ներկայ էր ինքը՝ Սալցպուրկի արքեպիսկոպոսին տեղը. իր կարգին գաւառապետը եղաւ Թուրինկիայի ու Սաքսոնիայի մէջ, ու ետքը բոլոր Գերմանիայի Օգոստինեան կրօնաւորներուն ընդհանուր մեծաւոր կարգեցաւ։

Արդէն տեսանք ան նեղութիւնները ու ներքին պատերազմները՝ որոնք Լուտեր կրկրեր Էրֆուրթի վանքին մէջ։ Ան միջոցիս ընդհանուր մեծաւորին այցելութեան եկեր հրատարակուեցաւ. ու Ստաուպից վերատեսչութիւն ընելու իր սովորական այցելութիւնովը հոն հասաւ։ Փրիդերիկոսի բարեկամը՝ Վիդդեմպերկի համալսարանին հիմնադիրը՝ Օգոստինեանց նախագահը քաղցր հայեցուած մը ձգեց ան միաբաններուն վրայ որոնք իր իշխանութեանը հպատակեալ էին. իսկոյն եղբայրներուն մէկն ալ անոր գիտողութիւնը իր վրայ ձգեց։ Ան եղբայրը միջակ հասակով երիտասարդ մըն էր, ուսման պարապելով ծոմով և հսկումով այնպէս նիհարացած, որ իր ոսկորները կրնային համրուիլ։ Իր աչքերը՝ որոնք ետքը բաղէի աչքերու կը համեմատէին, խորին թաղուած էին. իր շարժուածքն էր վշտագին. իր դէմքը կցուցընէր հոգի մը՝ սաստիկ պատերազմներով աղմկած, բայց տոկալուն զօրաւոր և ընդունակ տոկալու։ Իր բոլոր երևոյթին վրայ փռեր՝ վշտագին՝ և

շքեղ բան մը կար ։ Ստաւրից՝ որ երկար փորձառութեամբ ուղիղ դատումն ստացեր էր, դիւրութեամբ իմացաւ ան միտքին մէջէն ի՛նչ անցնիլը, ու իսկ և իսկ ընտրեց ան աբեղան իր բոլոր ընկերներէն ։ Իր սիրտը անոր վրայ շարժեցաւ, անոր տարօրինակ ապառնի վիճակին վրայ գրեթէ նախագիտութիւն մը ստացաւ, և իսկոյն իր հպատակին վրայ հայրական շահախնդրութիւն մը զգաց ։ Ինքը՝ Լուտերի նման՝ ներքին պատերազմներու վիճակեր էր, վասն որոյ կրնար իմանալ անոր զգացումները. կրնար մանաւանդ ցուցընել անոր ան խաղաղութեան շաւիղը, որն որ ինքը անձամբ գտեր էր ։ Ու երբոր իմացաւ թէ ի՛նչ պարագաներ երիտասարդ Օգոստինեանը ստիպեր էին վանքը մտնելու, իր կարեկցութիւնը աւելցաւ ։ Յորդորեց վանքին մեծաւորը որ առնել քաղցրութեամբ վարքին անոր հետ. և իր պաշտօնին մատուցած պատեհութիւնները 'ի գործ դրաւ որ նորեկ վանականին վստահութիւնը շահի ։ Կարովանօք անոր քովը գնաց, ու ամէն կերպով ջանաց յաղթել անոր երկչոտութիւնը՝ որ առնել եւս կաճէր անոր զգացած ակնածութիւնովը ու երկիւղովը Ստաւրիցի նման այնպէս գերագոյն աստիճանի տէր անձի մը վրայ ։

Լուտերի սիրտը որ սաստիկ վարմունքի մը տակ գոցուած մնացեր էր, վերջապէս սիրոյ քաղցր ճառագայթներուն բացուեցաւ և ընդարձակեցաւ ։ "Ինչպէս որ ջուրին մէջը երես երեսի կընմանի, այսպէս մարդուն սիրտը՝ մարդուն" ։ Ստաւրիցի սիրտը Լուտերի սրտին համեմատեցաւ ։ Ընդհանուր մեծաւորը անոր ներքինը իմացաւ, անոր համար միաբանին ալ անոր վրայ վստահութիւն մը ունեցաւ՝ որ մինչև ան ատենը ուրիշ մէկու մը վրայ չէր ունեցեր ։ Իր սրտմութեան պատճառը անոր բացաւ, զինքը շփոթող զարհուրելի խորհուրդները նկարագրեց, ու անատենը Էրֆուրթի վանքին մէջը խօսակցութիւններ սկըսեցին՝ իմաստութիւնով ու վարժութիւնով լեցուն ։

"Ո՛ւր տեղը, ըսաւ Լուտեր Ստաւպիցին, խոստմունքներ կընեմ Աստուծոյ. մեղքը միշտ անյաղթելի է ինծի":

"Ո՛վ բարեկամ, պատասխան տուաւ մեծաւորը՝ իր փորձառութիւնները միտք բերելով, հազար անգամէն աւելի ուխտեցի ես ամենասուրբ Աստուծոյ՝ որ սուրբ կեանք մը վարեմ, ու բնաւ չկատարեցի իմ ուխտս: Հիմայ ալ ուխտ չեմ ըներ, վասն զի աղէկ գիտեմ թէ չպիտի պահեմ զանոնք: Թէ որ Աստուած Քրիստոսի պատճառովը ինծի չողորմի, ու աշխարհէս ելլելուս երջանիկ մահ մը ինծի չշնորհէ, իմ բոլոր ուխտերովս և բարի գործերովս չեմ կրնար կանգնիլ անոր առջևը: Պարտիմ կորնչիլ":

Երիտասարդ միաբանը Աստուածային արդարութեան խորհուրդովը կըզարհուրի. իր բոլոր երկիւղները մեծաւորին կըխոստովանի: Աստուծոյ անպատմելի սրբութիւնը, անոր ինքնիշխան վեհափառութիւնը դողով զինքը կը լեցընէ: Ո՛վ կրնայ համբերել անոր գալու օրը, ո՛վ կրնայ կենալ անոր երևալուն *:

Ստաւպից վերստին կըսկըսի խօսիլ: Գիտէր ինքը թէ ո՛ւր գտաւ խաղաղութիւն, ու պիտի սորվըցունէր անիկայ անոր: "Ինչո՞ւ համար, ըսաւ, դուն զքեզ կընեղես աս տեսութիւններովը ու խռովայոյզ խորհուրդներովը: Նայէ՛ Յիսուս Քրիստոսի վէրքերուն, քեզի համար անոր թափած արիւնին. հոն պիտի երևայ քեզի Աստուծոյ ողորմութիւնը: Քու պակսութիւններուդ համար դուն զքեզ չարչարելուդ տեղը, Փրկիչին բազուկներուն մէջ ձգէ զքեզ. իրեն ապաւինէ՝ իր կեանքին արդարութիւնովը, իր մահուանը քաւչական պատարագովը: Ետ մի՛ քաշուիր իրմէն. Աստուած քեզի հակառակ չէ՝ դուն ես որ օտարացեալ ես Աստուծմէ ու թշնամի անոր: Ականջ դիր Աստուծոյ Որդւոյն: Ինքը մարդ եղաւ, որ Աստուծոյ սիրոյն վրայ քեզ ապահով ընէ: Ինքը քեզի կըսէ, Դուն իմ ոչ-

* Մաղ. Գ. 2:

խարս ես, իմ ձայնս լսէ. մէկը չպիտի յափշտակէ զքեզ իմ ձեռքէս" ։

Բայց Լուտեր իր վրայ չէր գտներ՝ այն զղջումը՝ որ իր փրկութեանը հարկաւոր կը համարէր ։ Պատասխան տուաւ՝ ինչոր որ ամէն խռովեալ ու երկչոտ մտքերուն սովորական պատասխանն է. "Ի՞նչպէս կրնամ համարձակիլ Աստուծոյ սիրոյն հաւատալու, քանի որ ճշմարիտ դարձի նշան չկայ իմ վրաս. պարտիմ փոխուիլ որ ինքը զիս ընդունի" ։

Իր մեծարու առաջնորդը կը ցուցընէ իրեն թէ մէկ մարդ մը չկրնար ճշմարտապէս դարձի գալ, քանի որ կը վախնայ Աստուծմէ իբրև անաչառ դատաւորէ ։ "Ուրեմն ի՞նչ պիտի ըսես, կը գոչէ Լուտեր, այնչափ բազմաթիւ հոգիներուն՝ որոնց վրայ հազարաւոր անտանելի ապաշխարանքներ դրուած են երկինքը շահելու" ։

Ան ատեն աս պատասխանը կը լսէ մեծաւորէն, որն որ չհաւատար Լուտեր թէ մարդէ մը կու գայ. կը թուի թէ երկնային ձայն մը կը հնչէ իր ականջին * ։ "Չկայ՝ կըսէ Ստաւպից՝ ճշմարիտ ապաշխարութիւն, եթէ ոչ այն՝ որ Աստուծոյ ու արդարութեան սիրովը կըսկսի ։ Ան որ ոմանք կը կարծեն ապաշխարութեան վախճանը ըլլալ, միայն անոր սկզբնաւորութիւնն է ։ Բարիին սիրովը լցուելու համար, պարտիս առաջ Աստուծոյ սիրովը լցուիլ ։ Եթէ որ ճշմարտապէս դարձի գալու կը փափաքիս, մի հետևիր աս ճգնութիւններուն ու ապաշխարանքներուն ։ Սիրէ զանիկայ՝ որ նախ ինքը սիրեց զքեզ" ։

Լուտեր կրկին և կրկին ականջ կը դնէ ։ Աս մխիթարական խօսքերը կը լցունեն զինքը անանկ ուրախութեամբ՝ որն որ առաջ չէր գիտեր, ու նոր լուսաւորութիւն կը պարգևեն իրեն ։ "Յիսուս Քրիստոս է, կը մտածէ իր սրտին մէջը, այո, Յիսուս Քրիստոս ինքն է որ այսպէս սքանչելի կեր-

* Թուղթք Լութերի, հատ. ա, էր. 115, առ Ստաւպից, Մայ. 30, 1518 ։

պէս կը մխիթարէ զիս աս քաղցրալուր և ոգեշահ խօսքերովը" * :

Ապաքէն աս խօսքերը Նորահաս միաբանին սրտին թափանցեցին իբրև սուր նետ զօրաւոր մարդու մը աղեղէն ձգուած † : Ապաշխարութեան համար պարտիմք սիրել զԱստուած : Աս նոր լուսովս առաջնորդուելով սկսեց Սուրբ Գիրքերը քննել . Նայեցաւ ամէն ան տեղերը որ կը խօսին ապաշխարութեան ու դարձման վրայ : Աս խօսքերը՝ որ մինչև հիմայ այնչափ զարհուրելի էին իրեն , իր ըսածին պէս՝ զուարճալի զբօսանք՝ ու ամենաքաղցր սփոփանք եղան իրեն : Աստուածաշունչ Գրոց ամէն ան մասերը որոնք երբեմն զինքը կը խռովէին , հիմա կը թուէին թէ ամէն կողմանէ իրեն կը դիմեն իր երեսին ծիծաղելու , իր բոլորտիքը խաղալու և խայտալու ‡ :

"Առաջ՝ կըսէ ինքը՝ թէև ամենայն խնամով կը կեղծաւորէի Աստուծոյ առջևը իմ սրտիս վիճակին վրայով , թէ և կը ջանայի ցուցընել թէ կը սիրեմ զինքը՝ որն որ միայն բռնադատութիւն մը և լոկ կեղծիք մըն էր , վասն զի Սուրբ Գրոց մէջ աւելի կծու բառ մը չկար ինծի , քան եթէ Ապաշխարութիւնը . բայց հիմա չկայ բառ մը որ աւելի քաղցր ու հաճելի ըլլայ ինծի : Ո՜հ՝ որչափ քաղցր են Աստուծոյ բոլոր պատուէրները , երբոր կը կարդամք զանոնք ոչ միայն գրքերու մէջ՝ այլ Փրկչին պատուական վէրքերուն մէջը"|| :

Բայց և այսպէս՝ Լուտեր՝ որ թէպէտ Ստաուպիցի խօսքերովը մխիթարեցաւ , երբեմն վերստին կիյնար սրտաբեկութեան մէջ : Իր երկչոտ խղճին մէջ մեղաց զգացումը նորէն կարթըննար , և անոր տեղը փրկութեան ուրախու-

* Թուղթք Լուտերի , հատ . ա , եր . 115 . առ Ստաուպից , Մայ . 30 , 1518 :

† Անդ :

‡ Անդ :

|| Անդ :

թիւնքն իր առջև յուսահատութիւնը կը յաղթորդէր : "Ո՜հ, իմ մեղքս, իմ մեղքս, իմ մեղքս". գոչեց օր մը երիտասարդ միաբանը՝ Ծերունիին առջևը, դառնակսկիծ տրտմութեան եղանակով մը : "Ի՞նչ, կուզէիր որ միայն կեղծեալ մեղաւոր մը ըլլայի՞ր՝ պատասխանեց Ստաուպից, ու միայն կեղծ փրկիչ մը ունենայի՞ր" : Եւ ասոր վրայ իշխանաբար աւելցուց, "Գիտցիր որ Յիսուս Քրիստոս փրկիչ է անոնց ևս որ ճշմարիտ և մեծ մեղաւորներ են, ու անթերի դատապարտութեան արժանաւոր" :

Բայց ան որ կընեղէր Լուտերը՝ չէ՛ թէ միայն իր սրտին մէջ գտած մեղքն էր. իր խղճմտանքին նեղութիւններուն վրայ իր մտքին երկբայութիւններն ալ բարդուեցան : Աստուածաշունչ Գրոց սրբազան հրամանները թէ որ զինքը կը զարհուրեցունէին, անոր վարդապետութիւններուն մէկ քանիները իր տագնապը կը բազմապատկէին : Ճշմարտութիւնը՝ որ է ան մեծ գործիքը՝ որով Աստուած խաղաղութիւն կուտայ մարդուս, հարկաւորապէս պիտի սկսի վերցընել անոր վրայէն ան սուտ վստահութիւնը որ իր կործանումն է : Ընտրութեան վարդապետութիւնը յաւէտ իմն կընեղէր երիտասարդը, ու կը ձգէր զանիկայ ասպարէզի մը մէջ որ արդարև դժուարին էր քննելը : Արդեօք պէտք էր իրեն հաւատալ թէ մա՞րդն է որ առաջ զԱստուած կընտրէ իր բաժինը ըլլալու, եթէ Աստուած է որ առաջ կընտրէ զմարդը : Սրբազան մատեանը՝ պատմութիւնը՝ հանապազօրեայ փորձառութիւնը՝ Օգոստինոսի գրուածքները, բոլորը մէկէն կը ցուցընէին անոր թէ պարտիմք ամէն բան Աստուածային ծայրագոյն կամքին ընծայել միշտ, որով ամէն բան կըկենայ, և որմէն ամէն բան կախեալ է : Բայց իր մեծափափաք սիրտը կը բաղձար հեռագոյն երթալ : Կըփափաքէր Աստուծոյ ծածուկ խորհուրդներուն թափանցել, անոր գաղտնիքները բանալ, անտեսանելին տեսնել, ու անիմանալին իմանալ : Ստաուպից սանձահարեց զինքը. ու խրատեց որ չջանայ քննել զԱստուած

որ զինքը կըթագուցանէ *․ Հապա բաւական սեպէ ինչ որ Աստուած Քրիստոսի ձեռօքը իր վրայովը յայտներ է ։ "Նայէ Քրիստոսի վէրքերուն, ըսաւ, ու հոն պիտի տեսնես Աստուծոյ մարդոց վրայ ունեցած կամքը պայծառ ճառագայթած ։ Առանց Քրիստոսի չեմք կրնար իմանալ զԱստուած ։ Քրիստոսի վրայ պիտի տեսնես թէ ես ինչ եմ ու ինչ կըպահանջեմ կըսէ Տէրը․ ուրիշ տեղ չես կրնար տեսնել զանիկայ, ոչ երկինքը ու ոչ երկրի վրայ" ։

Սկսեց աւելին ըրաւ մեծաւորը ։ Խոստովանել տուաւ Լուտերին թէ Աստուածային Նախախնամութեան հայրական դիտաւորութիւնն էր որ թոյլ տուեր էր աս փորձութիւններուն ու զանազան պատերազմներուն՝ որոնցմով իր հոգին պատերազմելու էր ։ Ցուցուց անոր զանոնք անանկ պարզութեամբ մը, որ աղէկ կըյարմարէր անոր հոգին կենդանացունելու ։ "Զուր տեղը չէ, ըսաւ, որ Աստուած այսչափ փորձութիւններով քեզ կըքննէ․ պիտի տեսնես որ մեծամեծ բաներ կան որոնց մէջ ինքը պիտի գործածէ զքեզ իբրև իր պաշտօնեայն" ։

Աս խօսքերը՝ որոնք կըլսէր Լուտեր զարմացմամբ ու խոնարհութեամբ, քաջալերութեամբ լցուցին զինքը, ու յայտնեցին իրեն թէ ինքը անանկ զօրութիւններու տէր էր՝ որոնք մտքէն ևս չէին անցներ ։ Անանկ լուսաւորեալ բարեկամի մը իմաստութիւնը ու խոհեմութիւնը հետզհետէ ան զօրաւոր մարդը ինքզինքին ծանօթացուցին ։ Ստաուպից կանուխ չառաւ ան տեղը․ այլ պատուական ճամբաներ ցուցուց անոր իր ուսմանցը պարապելու ։ Խրատեց որ այնուհետև իր բոլոր աստուածաբանութիւնը Աստուածաշունչ գրքէն քաղէ, դպրոցական կարգերը մէկ դի ձգելով ։ "Սուրբ Գրոց վարժութիւնը, ըսաւ, քու սիրելի և հանապազօրեայ գործառնութիւնդ թող ըլլայ" ։ Բնաւ քան զայս լաւագոյն խրատ տրուած չէր, ու բնաւ քան զայս

* Եսայ․ խե․ 15 ։

լուագոյն կատարուած չէր ։ Բայց ան որ յատկապէս ուրախացուց Լուտերը, Ստաւպիցին Աստուածաշունչ Գիրք մը անոր ընծայ պարգևելն էր ։ Գուցէ վանքին ան Լատիներէն Աստուածաշունչն էր կարմիր կաշիով կազմուած՝ որ բոլոր սրտովը կըբաղձար զանիկայ ձեռք ձգել ու իր հետը պտըտցունել. վասն զի աղէկ գիտէր անոր ամէն թերթերը, ու մնտուած խօսքը դիւրութեամբ կըգտնէր անոր մէջը ։ Վերջապէս սա գանձը իր ձեռքը անցաւ . ու ան նոյն ժամանակէն անձեցուն նախանձաւորութեամբ մը սկսեց պարապիլ սրբազան Մատեանին, և յատկապէս սրբոյն Պօղոսի թղթերուն ուսմանը ։ Իր մի միայն ուրիշ ընթերցմունքը սրբոյն Օգոստինոսի գործքերն էին ։ Բոլոր իր կարդացածը զարմանալի ազդուութեամբ կըտպաւորէր իր մտացը մէջ ։ Իր մտքի խռովութիւնները պատրաստեցին զինքը Աստուծոյ Բանը հասկընալու ։ Երկիրը խորագոյն արօրադրըեցաւ, անապական սերմը խորագոյն արմատացաւ ։ Երբոր Ստաւպից Էրփուրթէն ելաւ, Լուտերի վրայ նոր լոյս մը ճառագայթած էր ։

Բայց տակաւին գործը լման չէր. մեծաւորը միայն պատրաստած էր զանիկայ ։ Աստուած անոր կատարումը նուաստագոյն գործիքի մը պահեր էր. վասն զի երիտասարդ Օգոստինեանին խիղճը տակաւին խաղաղութիւն գտած չէր ։ Վերջապէս իր առողջութիւնը իր մտքին նեղութիւններուն ու պատերազմներուն տակը տկարացաւ, ու հիւանդութիւն մը եկաւ վրան՝ որ մահուան դուռը հասցուց զանիկայ ։ Ան տենը իր վանքը բնակելուն երկրորդ տարին էր ։ Մահուան տեսութիւնովը իր բոլոր նեղութիւնները ու երկիւղները վերստին դարձան իր վրայ ։ Իր անձին անմաքրութիւնը ու Աստուծոյ սրբութիւնը կրկին խռովեցուցին իր միտքը ։ Օր մը երբոր յուսահատութեամբ պաշարուած էր, ծերունի միաբան մը մտաւ իր խուցը, ու քանի մը մխիթարական խօսքեր խօսեցաւ անոր ։ Լուտեր իր սիրտը անոր բացաւ, ու զինքը անհանգիստ ընող երկիւղները անոր յայտնեց ։

Պատուական ծերունին անկարող էր անոր ամէն տարա-
կուսութիւններուն խելք հասցընել ինչպէս որ Մտուպից
ըրեր էր. բայց Հաւատոյ Հանգանակը գիտէր, ու անոր
մէջ իր սրտին մխիթարութիւն մը գտեր էր։ Մտածեց որ
նոյն դեղը մատուցանէ երիտասարդ եղբօրը ։ Վասն որոյ
իր ուշադրութիւնը Առաքելական Հանգանակին վրայ դար-
ձընելով՝ որն որ Լուտեր իր մանկութեանը Մանսֆէլտի
դպրոցին մէջ սորվեր էր, ծերարու միաբանը անկեղծ պար-
զութեամբ մը կարդաց անոր աս խօսքը. “ՀԱՒԱՏԱՄ 'Ի
ԹՈՂՈՒԹԻՒՆ ՄԵՂԱՑ” ։ Աս պարզ խօսքը որ աս-
տուածասէր եղբայրը միամտութեամբ սրտի խօսեցաւ վը-
տանգաւոր ժամու մը, անուշակ մխիթարութիւն մը ծա-
ւալեց Լուտերի մտքին մէջը ։ “Հաւատամ, կրկնեց Լուտեր
խսկ և խսկ իր հիւանդութեան անկողինին վրայ, հաւատամ
'ի թողութիւն մեղաց” ։ “Այո, ըսաւ միաբանը, ոչ միայն
հաւատալ պարտիս Դաւիթի կամ Պետրոսի մեղքերուն
թողութեանը. դևերն ալ կըհաւատան ատոր ։ Աստուծոյ
պատուէրը ան է որ մենք հաւատամք մեր մեղքերուն թո-
ղութեանը” ։ Ողորմելի Լուտերին ինչպէս քաղցր երևցաւ
աս պատուէրը ։ “Լսէ ինչ կըսէ սուրբն Բեռնարդոս Ա-
ւետման վրայ իր ճառին մէջը”, ըսաւ ծերունին եղբայրը ։
“Հոգւոյն սրբոյ քու սրտիդ տուած վկայութիւնը այս է.
'Ներուին քեզի քու մեղքերդ” ։

Այն նոյն րոպէէն լոյսը ճառագայթեց Էրֆուրթի նոր-
հաս միաբանին սրտին ։ Շնորհաց բանը քարոզուեցաւ, ու
ան անոր հաւատաց ։ Իր արժանաւորութիւնովը փրկութիւն
ստանալու խորհուրդը մերժեց, ու վստահութեամբ ապա-
ւինեցաւ Քրիստոս Յիսուսով Աստուծոյ շնորհքին. բայց
իր ընդունած սկզբունքին հետևմունքը չիմացաւ. քանզի
ինքը տակաւին անկեղծութեամբ յարեալ էր եկեղեցիին.
և սակայն այնուհետև անկախ էր անկէց, իր փրկութիւնը
բուն իսկ անոր աղբիւրէն անմիջապէս Աստուծմէ ընդու-
նելով ։ Այն վայրկեանէն Հռովմէական դաւանութիւնը

*գտնուելէն ։ Սկսեց զատ իր սիրոյն ու առատաձեռնութեանը աներկբայելի ապացոյցը ցուցուց, քանի ոսկի ֆիօրին պարգևելով անոր ։*

*Հանդէսը սկսուեցաւ ։ Հերոնիմոս Պրանտէպուրկի եպիսկոպոսը կատարեց արարողութիւնը ։ Ան րոպէին երբոր Լուտերին իշխանութիւն տուաւ պատարագ մատուցանելու, սկիհը անոր ձեռքը տալով, աս վսեմ խօսքը ուղղեց անոր .*

Accipe potestatem sacrificandi pro vivis et mortuis

*Ա՛ռ իշխանութիւն պատարագելոյ վասն կենդանեաց և ննջեցելոց ։*

*Լուտեր ան րոպէին հանդարտութեամբ մտիկ ըրաւ աս խօսքը, որ իշխանութիւն կը շնորհէր իրեն՝ Աստուծոյ Որդւոյն գործը կատարելու . բայց յետ ժամանակաց անիկայ զինքը կը սարսափեցունէր ։ "Աստուծոյ սքանչելի համբերութիւնը ու երկայնմտութիւնն էր, կըսէ, որ երկիրը մեզ երկուքս մէկէն չկլլեց անատենը" ։*

*Հանդէսը լմննալուն՝ հայրը վանքին մէջ ճաշեց իր նորընծայ որդւոյն հետ, ու անոր բարեկամներուն և վանքին միաբաններուն հետ ։ Խօսակցութիւնը Մարտինոսի վանքը մտնելուն վրայ դարձաւ, ու եղբայրները մեծապէս գովաբանեցին ան՝ իբրև մեծամեծ վարձուց արժանաւոր գործ մը ։ Աս խօսքին վրայ Յովհաննէս իր անպարտելի բնաւորութեամբը իր որդւոյն դառնալով ըսաւ . "Չե՞ս կարդացեր Սուրբ Գրքին մէջ թէ մէկ պատուէր մը պարտաւորութիւնն է հնազանդ ըլլալ իր հօրը և մօրը" ։ Աս խօսքը սաստիկ դպաւ Լուտերին ։ Սակայն նոր գաղափար մը տուաւ իրեն իր վանքը մտնելուն վրայ, ու շատ ժամանակ ետքը ձայն կուտար անիկայ իր սրտին մէջ ։*

*Լուտեր իր ձեռնադրուելէն ետև Ստաուպիցի խրատովը շատ անգամ քալելով կերթայ մօտ թեմերը ու շրջակայ վանքերը, թէ իր միտքը բանեցնելու՝ թէ մարմնին հարկաւոր առողջութեանը համար պտըտելու, և թէ զինքը քարոզութեան վարժելու ։*

*Սահմանուած էր որ Սուրբ Հաղորդութեան խորհուր-*

դին տօնը երեւելի հանդէսով կատարուի Այզլէպէնի մէջ . ու ընդհանուր մեծաւորը ներկայ գտնուելու էր հոն : Լուտեր հոն գնաց . ինքը տակաւին կըզգար որ կարօտ է Ստաուպիցին , և ամէն պատեհութիւնները 'ի գործ դրաւ ան լուսաւորեալ առաջնորդին ընկերութեանը հետ գըտնուիլ , որ իր հոգին կենաց ճամբուն մէջ յառաջացուցեր էր : Բազմամբոխ էր աս տօնին հանդէսը և մեծաշուք : Ստաուպից ինքը կըտանէր հաղորդութեան նշխարը . անոր ետեւէն կուգար Լուտեր իր քահանայական զգեստովը : Մէկ մըն ալ յանկարծ իր երեւակայութեանը մէջ ծագեցաւ թէ Յիսուս Քրիստոս ինքն է որ իր առջեւէն կերթայ ընդհանուր մեծաւորին ձեռօքը , թէ Տէրը անձամբ հոն ներկայ է . և աս խորհուրդը այնպէս շփոթեցուց ու ահով պաշարեց զինքը , որ ալ դժուարութեամբ յառաջ կերթար : Քրտինքը ոլոռ ոլոռ կըվազէր իրմէն . դողդըղալով ոտք կառնէր , ու կըխորհէր թէ իր երկիւղովը ու տագնապովը պիտի մեռնի : Վերջապէս թափօրը աւարտեցաւ . Հաղորդութեան նշխարը՝ որ նորընծայ միաբանին երկիւղը արթընցուցեր էր , ակնածութեամբ աւանդատունը դրուեցաւ . ու Լուտեր մինակ մնալով Ստաուպիցին հետ՝ ինքզինքը անոր գիրկը ձգեց , ու իր երկիւղը անոր խոստովանեցաւ : Անատէն պատուական մեծաւորը որ շատոնց ճանչցեր էր ջախջախած եղէգը չփշրող բարեշնորհ փրկիչը , հեզիկ ձայնով մը անոր ըսաւ . "Սիրելի եղբայր , Յիսուս Քրիստոս չէր ան քեզ վախցընողը . վասն զի Քրիստոս չվախցըներ , այլ միշտ կըմխիթարէ" :

Լուտեր աննշան վանքի մը մէջ մնալու սահմանուած չէր : Ժամանակը հասաւ որ պիտի փոխադրէր զանիկայ ընդարձակագոյն թատրոնի մը : Ստաուպից՝ որուն հետ Լուտեր իր ներքին բարեկամութիւնը կըշարունակէր՝ աղէկ ճանչցեր էր որ երիտասարդ միաբանին հոգին նեղ միջոցի մը մէջ ամփոփուելու հոգի չէր : Խօսեցաւ անոր վրայով Ֆրիդերիկոսի՝ Սաքսոնիայի կայսրընտրին , ու ան լուսա-

ւորեալ իշխանը 1308ին՝ հաւանականաբար տարւոյն վախճանին՝ հրաւիրեց Լուտերը Վիդդեմպերկի համալսարանին դասատու ըլլալու ։ Վիդդեմպերկ ան ասպարէզն էր՝ որուն վրայ Լուտեր շատ սաստիկ պատերազմներ պատերազմելու սահմանուած էր ։ Իր ներսը կոչում մը զգաց հոն երթալու ։ Բռնադատուած էր շուտով երթալ իր նոր պաշտօնին . վասն որոյ անմիջապէս ան հրաւէրքը կատարելու փութաց ։ Լուտերին Էրֆուրթի վանքը բնակիլը երեք տարի եղեր էր հիմա ։

## ՀԱՏՈՒԱԾ Ե

ՓՐԻԴԵՐԻԿՈՍ Կայսրընտիրը 1502ին էր որ Վիդդեմպերկի մէջ նոր համալսարան մը շինեց ։ Երկու անձինք՝ աստուածաբանութեան դպրոցական կարգին դէմ ելլողներուն կողմէն, Պօլիկոս Մէլլէրստադցին՝ դեղաբանութեան իրաւագիտութեան և փիլիսոփայութեան վարժապետը՝ ու Ստաուպից, շատ մեծ օգնութիւն ըրին աս դպրոցին հաստատութեանը ։ Ասկէց զատ՝ համալսարանն ալ հրատարակեց թէ Սուրբ Օգոստինոսը իրեն պաշտպան ընդունած է, և աս ընտրութիւնը բարութեան մը նշան էր ։ Այսպէս՝ աս նոր հաստատութիւնը մեծ ազատութիւն ստացած ու դժուարին խնդիրներուն գերագոյն ընտրութեանը ատեան համարուած ըլլալով, բոլորովին պարտ և պատշաճ էր որ բարեկարգութեան օրօրոցը ըլլայ ան ։

Լուտեր Վիդդեմպերկ հասնելով Օգոստինեանց վանքը գնաց, ուր իրեն խուց մը տրուեցաւ . քանզի թէպէտ և դասատու վարժապետ եղաւ, բայց չդադարեցաւ վանական միանձնութենէն ։ Որոշուեցաւ որ սորվեցունէ բնաբանութիւն և տրամաբանութիւն ։ Հաւանականաբար աս որոշումը եղաւ իր վրայ՝ մտածելով անոր փիլիսոփայական

վարժութիւնները Էրֆուրթի մէջ, ու վարժապետ արհեստից կոչուելու անոր աստիճանը։ Այսպէս Լուտեր որ ան նոյն ատենը քաղցեալ և ծարաւի էր Աստուծոյ Բանին, պարտաւորեցաւ գրեթէ բոլորովին անձնատուր ըլլալ Արիստոտէլի դպրոցական փիլիսոփայութեանը։ Կըկարօտէր ան կենաց հացին՝ որն որ Աստուած կուտայ աշխարհի, ու պարտաւորեալ էր միայն մարդկային իմաստակութեան մէջ թաղել զինքը։ Դժուարատա՜ր հարկաւորութիւն. ինչպէս կըհեծէր անոր տակը։ "Աստուծոյ շնորհքովը շատ աղէկ եմ, կըգրէ բարեկամի մը, միայն թէ պարտաւորած եմ ես զիս բոլորովին փիլիսոփայութեան տալու։ Միդդէմպէրկ հասած վաղկեանէս 'ի վեր կըփափաքիմ աստուածաբանութեան հետ փոխել աս ուսումը"։ Բայց չըլլայ թէ իմացուի որ ան դարուն աստուածաբանութիւնը կընշանակէ, վրայ կըբերէ ըսելով. "Կըկամիմ նշանակել ան աստուածաբանութիւնը՝ որ կըփնտռէ կաղինին միջուկը, ցորենին մարմինը, ու ոսկորին ծուծը։ Բայց իրերը ինչպէս որ երթան՝ Աստուած Աստուած է, կըշարունակէ Լուտեր. մարդս իր դատմանը մէջ գրեթէ միշտ կըսխալի. բայց աս մեր Աստուածն է յաւիտեանս յաւիտենից, ու մեր առաջնորդը պիտի ըլլայ մինչև 'ի մահ"։ Լուտերին վրայ անատենը գրուած աշխատութիւնները յետ ժամանակաց շատ օգտակար եղան իրեն, կարողացընելով զինքը դպրոցներուն սխալմանցը դէմ պատերազմելու։

Բայց չկրցաւ հանգիստ առնել ան տեղը. պէտք էր որ իր սրտին բաղձանքը լցուի։ Ան նոյն զօրութիւնը որ քանի մը տարի առաջ իրաւաբանութեան արհեստէն կրօնաւորական կեանքի քաշեց Լուտերը, հիմա փիլիսոփայութենէն Աստուածաշունչ մատեանին ձգեց զանիկայ։ Սրտի մտօք սկսեց պարապիլ հին լեզուներուն ուսմանցը, և յաւէտ Յունականին և Եբրայականին, որ գիտութիւնը ու վարդապետութիւնը սկզբնական աղբիւրէն հանէ։ Բոլոր կեանքին մէջ անձանձրոյթ իր ուսմանցը հետեւելու մը

րայ էր ։ Ամէն օր կէս օրէն ժամ մը ետքը Աստուածաշունչի վրայ Լուտեր դասասացութիւն կընէր . ասիկայ պատուական ժամ մըն էր թէ վարժապետին և թէ աշակերտներուն, ու միշտ կընծայէր անոնց խորագոյն հմտանալ Սուրբ Գրոց ճշմարիտ իմաստին, որ շատ ժամանակէ 'ի վեր կորսուած էր թէ ժողովրդոց մէջէն և թէ դպրոցներուն ։

Աս դասասացութիւնները սկսեց՝ բացատրելով նախ Սաղմոսաց գիրքը, ու շուտով անցաւ Հռովմայեցւոց թղթին ։ Յատկապէս աս թղթիս վրայ մտածելէն էր որ ճշմարտութեան լոյսը իր սրտին թափանցեց ։ Իր խաղաղաւէտ խուցին առանձնութեանը մէջ լման ժամեր կանցունէր Աստուծոյ Բանին պարապելու, բաց ունենալով սրբոյն Պօղոսի թղթերը իր առջևը ։ Օր մը Հռովմայեցւոց թղթին առաջին գլխոյն մինչև տասնըեօթը համարը յառաջանալով, Ամբակումի խօսքը կարդաց հոն, թէ՝ "ԱՐԴԱՐԸ ՀԱՒԱՏՔԷՆ ԳԻՏԻ ԱՊՐԻ"։ Աս խօսքը դպաւ իրեն ։ Ուրեմն արդարին համար մնացած մարդոց ունեցածէն ուրիշ կեանք մը կայ, ու հաւատքն է որ աս կեանքը կուտայ ։ Աս խօսքը՝ որ ինքը իր սրտին մէջ կընդունի՝ ոպէս թէ Աստուծոյ ձեռքը հոն տնկուած ըլլար ան, Քրիստոնէական կեանքին խորհուրդը իրեն կըյայտնէ, ու ան կեանքը իր հոգւոյն մէջը կառատացընէ ։ Իր ապառնի կեանքին մէջ բազմապատիկ նեղութիւններով պաշարուելուն ատեն կուգար իր միտքը աս խօսքը, "ԱՐԴԱՐԸ ՀԱՒԱՏՔԷՆ ԳԻՏԻ ԱՊՐԻ"։

Լուտերի դասասացութիւնները աս կերպովս պատրաստուած ըլլալով, ասկէց առաջ լսուածներուն բոլորէն ալ շատ տարբեր էին ։ Հիմա չէ թէ ճարտարաբան հռետոր մը կամ դպրոցական իմաստակ մըն էր որ կըխօսէր, այլ Քրիստոնեայ մը՝ որ Աստուծոյ յայտնած ճշմարտութիւններուն փորձը առեր էր, որ Աստուծոյ Բանէն զանոնք կըքաղէր, որ բուն իր սրտին գանձէն զանոնք կըհանէր, ու լեցուն ե-

եռանդով իր զմայլած ունկնդիրներուն զանոնք կըմատու-ցանէր ։ [illegible] մարդկային ուսումն չէր ան, այլ Աս-տուածային ։

Աս ճշմարտութիւնը բացայայտելը, որ բոլորովին նոր ե-ղանակաւ էր՝ հռչակուեցաւ. անոր համբաւը հեռի տեղ-ուանք տարածուեցաւ, ու նորահիմն համալսարանը օտար աշա-կերտներով լցուց ։ Ուսուցիչներուն ալ շատերը Լուտերի դասաւանդութիւնը մտիկ ընելու կուգային, որոնց մէջն էր և Պօղիկոս Մէլլերստադցին համալսարանին առաջին կա-ռավարիչը՝ որ բազմիցս կըկոչուէր "Լոյս աշխարհի" ։ "Աս մեծ բանը, ըսաւ Պօղիկոս, բոլոր վարդապետները պիտի յաղթէ. նոր վարդապետութիւն մը պիտի սորվեցունէ, ու բովանդակ եկեղեցին պիտի բարեկարգէ ։ Քանզի Քրիստոսի բանին վրայ կըշինէ, ու աշխարհի մէջ ո՛չ եր-բեք մէկը կրնայ դէմ կենալ կամ յաղթել աս բանին" ։

Ստաուպից՝ որ Լուտերի ներսը ծածկուած ձիրքերը ու գանձերը բանալու Նախախնամութեան գործիքն էր՝ հը-րաւիրեց զանիկայ Օգոստինեանց եկեղեցին քարոզելու ։ Նորահաս վարժապետը աս առաջարկութենէն սարսա-փեցաւ ։ Կըբաղձար որ միայն իր ակադեմական պարտա-ւորութիւններուն անձնատուր ըլլար. անոնց վրայ հրա-պարակաւ քարոզութիւն ընելն ալ աւելցընել որ կըմտածը-տար, կըդողդար ։ Զո՛ւր տեղը Ստաուպից աղաչեց իրեն ։ "Ո՛չ, ո՛չ, պատասխան տուաւ. թեթև բան չէ Աստուծոյ կողմանէ մարդոց խօսիլը" ։ Եկեղեցւոյ աս մեծ Բարեկար-գողին վրայ խոնարհութեան սքանչելի օրինակ մըն է ա-սիկայ ։ Ստաուպից սկսեց թախանձել. "Բայց կորովամիտ Լուտեր, կըսէ իր պատմութիւնը ընողներուն մէկը, տասնը-հինգ փաստեր պատճառանքներ ու հնարքներ գտաւ հրա-ժարելու աս հրաւէրքէս" ։ Վերջապէս Օգոստինեանց նա-խագահը մէջտեղ իր թախանձանքը շարունակելով, Լուտեր ըրեց անոր և ըսաւ. "Աս, արժանապատի՛ւ վարդապետ, աս բանը ինծի մահուանս պատճառ պիտի ըլլայ. երեք ամիս

չեմ կրնար տոկալ ատոր": "Ո՜հ աղէկ, պատասխանեց ընդհանուր մեծաւորը, 'ի փառս Աստուծոյ անանկ թող ըլլայ. վասն զի Տէրը զերմեռանդ ու յաջողակ ծառաներ կուզէ երկինքն ալ": Լուանը պարտաւորեցաւ հնազանդութիւն տալ:

Միդդէլպէրկի Հրապարակին մէջ տեղը փայտաշէն հին մատուռ մը կար՝ երեսուն ոտնաչափ երկայնութեամբ ու քսան լայնութեամբ, որուն պատերը ամէն կողմանէ նեցուկներով բռնուած փլուելու վրայ էին: Պատէնէն երեք ոտնաչափ բարձրութեամբ տախտակաշէն ամբիոն մը՝ ընդունարան եղաւ նոր քարոզիչին: Աս մատուռին մէջն էր որ Բարեկարգութիւնը նախ և առաջ քարոզուեցաւ: Աստուծոյ կամքն ան էր որ իր փառքին նորոգութեանը համար եղած աս գործը՝ ամենախոնարհ սկզբնաւորութիւններ ունենայ: Օգոստինեանց եկեղեցիին հետը նոր ձգուեր էր, ու մինչև անոր կատարուելը աս անշուք մատուռը գործածեցին Աստուածային պաշտամունքներու կատարելու:

Լուանը սկսեց քարոզել. ու աս նոր քարոզիչին վրայ տեսնուած ամէն մէկ բանը հիանալի էր: Իր արտայայտիչ դէմքը՝ փառացի շարժուածքը, և յստակ ու քաղցրահնչիւն ձայնը կըզմայլեցընէին ունկնդիրները: Սովորաբար քարոզիչներուն մեծ մասը կըջանային իրենց ունկնդիրները զբօսցընել, քան թէ դարձի բերել զանոնք: Լուանի քարոզութեանը մէջ եղած խորին անկատակութիւնը՝ ու աստուածաբանական գիտութեան իր սրտին պարգեւած առատ ուրախութիւնը՝ անանկ զօրութիւն մը, ազդուութիւն մը և քաղցրութիւն մը տուին իր ճարտասանութեանը, որ իր նախորդներէն մէկը տուած չէր: "Ողջ և առողջ միտք մը տուած ըլլալով, կըսէ իր թշնամիներուն մէկը, սուր յիշողութիւն մը ունենալով, ու իր մայր լեզուն նշանաւոր յաջողակութեամբ խօսելով, իր ժամանակակիցներուն մէկը իրմէն գերազանց չէր պերճախօսութեամբ: Ամբիոնէն իր կայնած տեղէն որպէս թէ զօրաւոր կըրքով մը շար-

ժած իր ունկնդիրներուն խօսելով ու շարժուածքը իր խօսքին յարմարելով՝ սքանչելի եղանակաւ մը անոնց մտքերը կը շարժէր, և իբրև յորդահոս հեղեղ կը տանէր զանոնք իր ուզած տեղը" :

Շատ չանցած փոքրիկ մատուռը բաւական չէր տանիլ ան բազմութիւնը որ գունդագունդ կը հաւաքէին հոն : Անատեն Վիդդէմպէրկի խորհրդարանը ընտրեց որ Լուտեր իրենց քարոզիչը ըլլայ, ու հրաւիրեց զանիկայ նոյն քաղաքի եկեղեցիին մէջը քարոզելու : Ան տեղը ըրած ներգործութիւնը մեծագոյն եղաւ. իր սքանչելի տաղանդը՝ իր պերճախօս ատութիւնը՝ և իր քարոզած վարդապետութիւններուն պատուականութիւնը հաւասարապէս կը զարմացընէին իր ունկնդիրները : Իր համբաւը առ հասարակ տարածեցաւ, ու անգամ մը Փրիդրիկոս Իմաստունը անձամբ եկաւ Վիդդէմպէրկ զինքը մտիկ ընելու :

Լուտեր որպէս թէ նոր գոյութիւն մը ստացաւ : Վանքին տաղտկութեանը գործունեայ աշխատասիրութեան կեանք մը յաջորդեց : Ազատութիւնը՝ զբաղումը՝ կենդանի և կանոնաւոր գործառնութիւնը՝ որուն կարողացաւ պարապիլ Վիդդէմպէրկի մէջ, կատարելագործեցին իր հոգւոյն մէջ միաբանութեան և խաղաղութեան հաստատութիւնը : Հիմա ինքը իր տեղը գտաւ, ու Աստուածային գործը իր օգոստափառ ընթացքը յայտնելու վրայ էր :

## ՀԱՏՈՒԱԾ Զ

ԵՐԲՈՐ Լուտեր իր ուսուցչութեան պաշտօնը կը շարունակէր միանգամայն ակադեմական սրահին ու եկեղեցւոյն մէջ. արգելք մը ծագեցաւ՝ որուն պատճառովը չկրցաւ իր աշխատութիւնները յառաջ տանիլ : Յամի Տեառն 1510ին՝ կամ ըստ ոմանց 1511ին կամ 1512ին Հռովմ խրկուե-

ցաւ ։ Օգոստինեանց կարգէն եօթը վանքերու ու ընդհանուր մեծաւորին մէջ քանի մը նիւթերու վրայ վէճ մը ծագեցաւ ։ Լուտեր իր ճարտարութեանը՝ պերճախօսութեանը՝ ու հետազօտական տաղանդներուն պատճառովը աս եօթը վանքերէն դեսպանութեամբ պապին խրկուեցաւ ։ Այսիկայ Աստուածային նախախնամութեան մէկ հարկաւոր տնօրէնութիւնն էր․ կը հարկաւորէր որ Լուտեր գիտնայ թէ Հռոմ ինչ է․ վասն զի մենաստանին նախապաշարմունքներովը ու պատրանքներովը լեցուն՝ իր երեւակայութեանը միշտ պատկերացուցած էր զանիկայ իբրեւ աթոռ սրբութեան ։

Ճամբայ ելաւ՝ Ալպեան լեռները անցաւ ։ Բայց բազմահարուստ և հեշտասէր Իտալիայի դաշտերը իջնելուն պէս, ամէն մէկ քայլափոխին զարմանալու և գայթակղելու նիւթեր կը գտնէր ։ Գերմանացի աղքատ միաբանը հիւրընկալութիւն գտաւ Բենեդիկտեանց մեծագանձ վանքի մը մէջ, Լոմպարտիայի մէջ Փօ գետին վրայ շինուած ։ Աս վանքը երսունըվեց հազար տուգաթի տարեկան եկամուտ մը ունէր․ տասներկու հազարը սեղանի ծախքին կերթար, տասներկու հազարը շինուածքներու, ու տասներկու հազարը միաբաններուն ուրիշ կարօտութիւնները լցունելու ։ Սենեակներուն հոյակապութիւնը՝ հանդերձներուն պայծառութիւնը՝ ու համադամ խորտիկներուն փափկութիւնը զարմացուցին զԼուտեր ։ Սրբատաշ մարմարիոն քարերը, մետաքսեղէն պատմուճանները և ամէն տեսակ հեշտութիւնները ինչ նոր տեսարան ընծայեցին Վիդդեմպէրկի վանքին խոնարհ եղբօրը ։ Կը զարմանար ու կը լռէր․ բայց Ուրբաթ օրը եկաւ, ու իր զարմանքը աւելի եղաւ, երբոր տեսաւ որ Բենեդիկտեանց սեղանը մսեղէն ուտելիքներով զարդարուեցաւ ։ Անատենը քաջալերութիւն առաւ և ըսաւ անոնց, "Եկեղեցին ու պապը կարգիլեն ասանկ բաները" ։ Բենեդիկտեան կրօնաւորները անքաղաքավար Գերմանացիին յանդիմանութեանը նեղացան ։ Բայց Լուտեր իր

խօսքը կրկնած՝ և գոչեց անոնց անկարգութիւնը հրատարակելու սպառնացած ըլլալով, խորհեցան ոմանք որ աղէկը աս ձանձրացուցիչ հիւրէս ազատիլն է: Ամենքին դռնապանը ազդեց իրեն՝ թէ հոն մնալովը վտանգի տակ պիտի իյնայ. վասն որոյ աս եպիկիւրեան մենաստանէն ելաւ, ու իր ճամբորդութիւնը յառաջացուց մինչև Պօլոնիա, ուր և սաստիկ հիւանդացաւ: Աս հիւանդութեանը մէջ ոմանք իր վրայ թոյնի ներգործութիւն տեսան. բայց հաւանական է որ բազմատեսակ կերակուրներէն պատճառած ըլլայ Միդդէլպէրկի սակաւապէտ միաբաններին հիւանդութիւնը, որ ըստ մեծի մասին չոր հացով ու սակաւիկ աղի ձուկով ապրելու սորված էր: Ասկայ մեռնելու հիւանդութիւն չէր, հապա Աստուծոյ փառքին համար: Իր բնական տրտմութիւնը ու նուաճութիւնը դարձեալ իր վրայ եկան: Ի՜նչ վատաբախտութիւն էր աս, Գերմանիայէն հեռու՝ արեգակին տոչորիչ զօրութեանը տակ՝ օտար երկրի մէջ այսպէս մեռնիլ: Իր մտքին նեղութիւնը որ Էրֆուրթ եղած ատենը կըկրէր, կրկին սկսեց նեղել զինքը: Իր մեղքերուն զգացումը զինքը կըշփոթէր, ու Աստուծոյ դատաստանին ահեղութիւնը ահով զինքը կը լեցընէր: Բայց ան րոպէին որ իր երկիւղը յետին աստիճանին հասեր էր, ազդու զօրութենով մը վերստին իր միտքը եկաւ Պօղոսի ան խօսքը՝ որ արդէն Միդդէլպէրկի մէջ գտեր էր իրեն, թէ՝ "ԱՐԴԱՐԸ ՀԱՒԱՏՔԷՆ ԳԻՏԻ ԱՊՐԻ", ու իբրև երկնային լոյս ճառագայթեց իր հոգւոյն վրայ: Անկողնէն ելած ու մխիթարուած ըլլալով շուտով վերստին առողջութիւն ստացաւ, ու դարձեալ ճամբայ ելաւ Հռովմ երթալու: Կըյուսար թէ ան տեղի կացութեան եղանակը շատ տարբեր պիտի գտնէր Լոմպարտիայի վանքերուն մէջի կացութենէն. ու Հռովմէական սրբակեցութեան մտածութիւնովը կըփափաքէր ջնջել ան ցաւագին տպաւորութիւնը որ Պօ գետին եզերքը պանդխտանալովը իր մտացը վրայ մնաց:

Վերջապէս՝ Իտալիայի կիզանող արեգակին տակը բազմաշխատ ճամբորդութիւն մը ընելէն ետքը, ամառուան սկիզբը եօթնաբլուր քաղաքին մօտեցաւ։ Իր սիրտը շարժեցաւ, ու իր աչքերը կըբաղձային տեսնել երկրի ու Եկեղեցիին թագուհին։ Սրբազնասուրբ քաղաքը՝ սրբոյն Պետրոսի ու Պօղոսի քաղաքը՝ ուղղափառաց աշխարհի մայրաքաղաքը հեռուէն տեսածին պէս, ինքզինքը գետինը խոնարհեցուց ու կանչեց, “Ողջոյն քեզ, ով սուրբ Հռովմ”։

Լուտեր հիմա Հռովմ հասաւ. Վիտդեմպերկի ուսուցիչը ինքզինքը գտաւ հոյակապ աւերակներու մէջ՝ ան Հռովմ քաղքին՝ որ այնչափ անուանի էր իր հիւպատոսներովը ու կայսրերովը։ Հոն ապրած էին ամէն ան երեւելի մարդիկը, որոնց պատմութիւնը այնչափ յաճախ շարժեր էր իր սիրտը։ Տեսաւ անոնց արձանները ու կործանած կոթողները, որոնք տակաւին վկայ էին անոնց փառաւորութեանը։ Բայց ամէն աս փառաւորութիւնը ու զօրութիւնը անցեր գացեր էին. անոնց՝ փոշին էր որ հիմա ինքը իր ոտքին տակը կըկոխէր։

Բայց աս անսուրբ աւերակներուն հետ սրբազան աճիւններ խառնուած էին. ասիկայ իր միտքը ինկաւ։ Մարտիրոսաց գերեզմանները հռովմայեցի զօրապետներուն ու յաղթականներուն գերեզմաններուն քովն էին։ Քրիստոնէական վիճակի Հռովմը ու անոր փորձութիւնները առաւել զօրութիւն ունէին Սաքսոնիայի միաբանին սրտին վրայ, քան թէ հեթանոսութեան վիճակի Հռովմը իր բոլոր փառաւորութիւնովը։ Կըմտածէր թէ աս տեղը եկաւ ան թուղթը որուն մէջ Պօղոս գրեց, “ԱՐԴԱՐԸ ՀԱՒԱՏՔԷՆ ՊԻՏԻ ԱՊՐԻ”. Թէ հեռի չէ Ապփիոսի վաճառանոցէն ու Երեք Խանութներէն*։ Հոն էր Նարկիսոսի տունը, հոս էր կայսեր պալատը՝ ուր որ Տէրը ա-

* Գործ. իը. 15։

ուխտին բերնէն աղաղակեց Պօղոսը: Ո՛հ, աս յիշատակութիւնները ինչպէս կը զօրացընէին Միդդլէմպէրկի միաբանին սիրտը:

Սուրբ Յովհաննու տօնախմբութեան օրը մօտենալուն՝ կը լսէր որ Հռովմայ ժողովրդոց մէջ հասարակ առակ մը կար. “Երանելի է, կըսէին, ան մայրը, որուն որդին կը պատարագէ սուրբ Յովհաննու տօնախմբութեանը”: Լուտեր իր մտացը մէջ կըսէր, “Ո՛հ, ինչպէս ուրախ սրտով կըկամիմ երանելի ընել իմ մայրս”: Մարգարիտի բարեպաշտ որդին ջանաց պատարագել նոյն օրը՝ բայց չկրցաւ, վասն զի պատարագողներուն բազմութիւնը չափէն աւելի էր:

Ջերմեռանդ սրտով ու հաստատ յօժարութեամբ բոլոր եկեղեցիներուն ու մատուռներուն ուխտի գնաց, իրեն ըսուած բոլոր առասպել պատմութիւններուն հաւատք ընծայեց, պահանջուած կանոնապահութիւնները սիրով կատարեց, և գոհ էր որ արժանացաւ այնչափ բարեպաշտական գործեր կատարելու որոնցմէ իր երկրին բարեկամները արգիլուած էին: “Ինչպէս կը ցաւիմ որ իմ հայրս ու մայրս դեռ կենդանի են, կըմտածէր բարեպաշտօն միաբանը. ինչպէս երջանիկ պիտի ըլլայի քաւարանին հուրէն ազատելու զանոնք իմ պատարագներովս, իմ աղօթքներովս և ուրիշ սքանչելի գործերովս”: Լուտեր լոյսը գտած էր, բայց մթութիւնը բոլորովին վերցած չէր իր մտքէն: Աւետարանի հաւատքը ու սէրը ունէր, բայց ո՛չ անոր գիտութիւնը. որովհետև դիւրին բան չէր ելլել ան մթութենէն որ այսչափ դարերէ 'ի վեր պատեր էր երկիրը:

Լուտեր շատ անգամ պատարագեց Հռովմայ մէջ: Ամենայն եռանդով ու յարգութեամբ կըկատարէր զանիկայ ինչպէս որ կը համարէր թէ կը պահանջէ աս գործը: Բայց ինչպէս կըվշտանար սաքսոնացի միաբանին սիրտը, երբոր կը տեսնէր թէ Հռովմայ եկեղեցականները ամբարիշտ և թուլասիրտ կեղծաւորութեամբ կըկատարէին աս խոր-

հուրդը ։ Քահանաներն ալ իրենց կողմանէ անոր պարզմտութեանը վրայ կը խնդային ։ Օր մը՝ երբոր պատարագ կընէր, տեսաւ որ մինչև ինքը մէկ Թիւ պատարագ մը ըսաւ, ուրիշները քովի սեղանին վրայ յաջորդաբար եօթը Թիւ պատարագ ըսին ։ Քահանաներուն մէկը քովը գալով ըսաւ իրեն . "Շուտով, շուտով, մեր Թագուհիին խրկէ իր որդին շուտով" . այսպիսի ամբարշտութեամբ նշանակելով հացին գոյափոխութիւնը Քրիստոսի մարմնոյն և արեանը ։ Ուրիշ անգամ մը Լուտեր միայն մինչև աւետարանը հասնելուն՝ իր քովի սեղանին վրայ պատարագող քահանան արդէն լմնցուցեր էր իր գործը ։ "Շուտ ըրէ, շուտ ըրէ, ըսաւ աս քահանան Լուտերի ականջին, ինչու չես վերջացըներ բանը" ։

Իր զարմացումը աւելի ևս մեծցաւ երբոր ստորին եկեղեցականաց մէջ նկատած անկարգութեան նոյնը գտաւ Եկեղեցիին նախապատիւ անձերուն վրայ ալ . վասն զի ինքը լաւագոյն բաներու ակնկալութիւն ունէր անոնցմէ ։

Լուտեր Գերմանիայի Օգոստինեան կրօնաւորներէն պատգամաւորութեան պաշտօնով Հռոմ խրկուած ըլլալովը, երևելի եկեղեցականաց զանազան ժողովներուն կը հրաւիրուէր ։ Օր մը՝ որ քանի մը եպիսկոպոսներու սեղանակից եղեր էր, ասոնք սկսեցին ինքզինքնին յայտնել անոր՝ իրենց միմոսական եղանակներովը և ամբարիշտ խօսքերովը, ու չէին ամչեր հազարաւոր անվայել ծաղրաբանութիւններ ընել անոր առջևը, անտարակոյս կարծելով որ ան ալ իրենց նման մէկն է ։ Պատմեցին ևս՝ խնդալով ու պարծենալով Թէ սեղանին առջևը պատարագ մատուցանելնուն խորհուրդին նիւթերը Փրկչին մարմնոյն և արեանը փոխադրող բառերուն տեղը ինչպէս հացին ու գինիին վրայ աս երգիծական խօսքը կըսէին . "Հաց ես՝ ու հաց պիտի մնաս, գինի ես՝ ու գինի պիտի մնաս—Panis es et panis manebis ; vinum es et vinum manebis."—"Ընկէ ետև, ըսին, սկիհը կը բարձրացընեմք, ու բոլոր ժողո-

վուրդը երկրպագութիւն կընէ" ։ Լուտեր հազիւ թէ կը հաւատար իր ականջներուն ։ Իր միտքը որ իր բարեկամներուն ընկերութեանը մէջ շատ պայծառ և ուրախ էր , անկատակ բաներուն վրայ նշանաւոր հանդարտութիւն մը ունէր ։ Աս հռովմէական խեղկատակութիւնները վշտացուցին զինքը ։ "Ծանրաբարոյ և բարեպաշտ միաբան մըն էի , կըսէ , ու ասանկ խօսքը մեծապէս կըվշտացընէր զիս ։ Թէ որ Հռովմայ մէջ սեղանի վրայ ասանկ յայտնի կըխօսին , կըմտածէի ես ինծի , ու թէ որ իրենց գործերը համեմատ են իրենց խօսքերուն , ու պապը՝ կարդինալները և եպիսկոպոսները ասանկ պատարագ կըմատուցանեն , աս ի՞նչ բան է ։ Ու ես որ այնչափ անգամ այնչափ ջերմեռանդութեամբ պատարագելնին լսեցի , ի՞նչպէս ուրեմն զիս խաբած են" ։

Լուտեր շատ անգամ կըխառնուէր Հռովմայ եկեղեցականներուն ու քաղաքացիներուն մէջ ։ Թէ որ անոնցմէ ոմանք աղէկ խօսէին պապին ու իրեններուն վրայ , շատերը համարձակ կըգանգատէին , ու կըծաղրաբանէին զանոնք ։ Ի՞նչ պատմութիւններ չըրին անոր՝ աթոռը նստող պապին , Զ. Աղէքսանդրին , և շատ ուրիշներուն վրայ ։ Օր մը՝ իր հռովմայեցի բարեկամները պատմեցին իրեն թէ Կեսար Բորգիա Զ. Աղէքսանդր պապի բնական որդին ինչպէս փախեր էր Հռովմէն ու Սպանիայի մէջ բռնուեր էր ։ Իր դատաստանը տեսնուած ատենը բանտին մէջէն կանչեր է որ ողորմութիւն ընեն , ու խնդրեր է որ քահանայ մը խըրկեն իրեն խոստովանելու ։ Սանական կրօնաւոր մը խրկեր են իրեն . բայց Կեսար սպաննելով զանիկայ՝ անոր կնգուղը ու կերպարանքովը ծպտեր ու բանտէն փախեր է ։ "Ասիկայ ես Հռովմ լսեցի , որ ամէն մարդ աղէկ գիտէ" . կըսէ Լուտեր ։ Ուրիշ օր մը Լուտեր կանցնէր գլխաւոր փողոցէ մը՝ որ կըհանէր սրբոյն Պետրոսի եկեղեցին , ու հիանալով կանգ առաւ արձանի մը առջևը՝ որ պապի մը արձան էր կին մարդու կերպարանքով քանդակուած , ձեռքը իշխանական գաւազան բռնած , պապի հանդերձով

հագուած, ու տղայ մը դրկած։ «Ասիկայ աղջիկ մըն է՝ ըսաւ իրեն ժողովուրդը, որ կարդինալները պապ ընտրեցին, ու հանդիսաւոր օր մը Թափօրի ատեն իր որդեծնութեան ցաւը բռնելով աս տեղս ծնաւ. անոր համար ոչ մէկ պապ մը բնաւ երբէք աս փողոցէն կանցնի։ «Կըզարմանամ, ըսաւ Լուտեր, որ պապերը աս արձանը հոս կըթողուն»։

Լուտեր կը յուսար որ սրբոյն Պետրոսի եկեղեցւոյն շէնքը փառաւոր և հոյակապ պիտի գտնէր. բայց անոր դռները խորտակուած էին, ու պատերը կրակէն մաշած։ Սրբութեան տաճարին ապականութիւնը տեսաւ, ու սոսկալով ետ քաշուեցաւ։ Սրբութիւն երազեր էր, բայց պղծութենէ զատ բան չգտաւ։

Ոչ պակաս զարհուրեցաւ նաև քաղաքին մէջ գործուած անկարգութիւններէն։ «Հռովմայ քաղաքական կառավարութիւնը, կըսէ, խիստ և անաչառ է։ Զօրապետը ամէն գիշեր երեք հարիւր ծառայով քաղաքին մէջ հեծեալ կը պըտըտի։ Դ'ամբան գտածին բոլորը կըբռնէ. թէ որ զէնքով մէկը գտնէ, կըկախէ՝ կամ Տիբերիս գետը կընետէ։ ՚Ի վերայ ՚այսր ամենայնի, անկարգութեամբ և սպանութեամբ լեցուն է քաղաքը։ Բայց Աստուծոյ Բանը ճշմարտութեամբ և հաւատարմութեամբ քարոզուած տեղուանքը կըտեսնեմք որ խաղաղութիւնը ու բարեկարգութիւնը կըտիրեն, հարկաւոր չըլլալով հոն ոչ օրէնք և ոչ խըստութիւն»։ Դարձեալ կըսէ, «Հաւատալու բան չեն Հռովմայ մէջ գործուած մեղքերը ու դաժանութիւնները. պէտք է տեսնել ու լսել զանոնք որ հաւատացուին։ Անանկ որ՝ սովորութիւն եղած է ըսել՝ թէ որ դժոխք կայ, Հռովմ անոր վրայ շինուած է. տարտարոս մըն է, ուրկէց կըբղխեն ամէն մեղքերը»։

Լուտերի միտքը մէջ մեծապէս տպաւորեցաւ անատենը աս տեսարանը, ու ան տպաւորութիւնը ետքը աւելի խորունկցաւ։ «Որչափ որ Հռովմայ մօտենամք, այնչափ աւելի կըգտնեմք գէշ քրիստոնեաներ». ըսաւ խել մը տա-

ընկերէն ետքը ։ «Հաւանականաբար կըկարծուի թէ ան որ առաջին անգամ Հռովմ կերթայ , օրինակ մը գտնելու կերթայ . երկրորդ անգամին զանիկայ կըգտնէ , ու երրորդին իր վերարկուին տակը իր հետը կըբերէ ։ Բայց հիմա մարդիկ անանկ ճարպիկ են , որ երեք ճամբորդութիւնը մէկէն կըկատարեն» ։ Լուտեր ետքէն իմացաւ աս ճամբորդութեան բոլոր օգտակարութիւնը ։ «Ինէ որ մէկը ինծի հարիւր հազար ոսկի փիորին տար , կըսէր , պիտի չկամենայի Հռովմ քաղքին տեսութենէն զուրկ մնալ» ։

Աս ճամբորդութիւնը օգտակար եղաւ իրեն նաև 'ի մտաւոին գիտութեան ։ Հռեւկլինոսի նման Լուտեր իր Իտալիա կենալովը Սրբազան Գրոց վրայ խորագոյն տեղեկութիւն առաւ ։ Հոն ինքը Եբրայական լեզուով դաս առաւ Եղիաս Լեւիտաս անուն հռչակաւոր րաբունիէ մը ։ Հռովմայ մէջ ստացաւ ըստ մասին ան Աստուածային Բանին գիտութիւնը , որուն յարձակման տակը Հռովմ նախասահմանուած էր որ նուաճի ։

Բայց աս ճամբորդութիւնը ամէն բանէ աւելի մեծապէս օգտակար եղաւ Լուտերին ուրիշ պատճառով մը ։ Ոչ միայն վարագոյրը բացուեցաւ ու Հռովմէական սնապաշտութեան ետեւի կողմը ծածկուած կեղծաւորութիւնը և անհաւատութիւնը ապառնի Բարեկարգողին յայտնուեցաւ . հապա նաև ան կենդանի հաւատքը՝ որ Աստուած անոր ներսը տնկեր էր , անատենը խորապէս հաստատեցաւ ։

Արդէն տեսանք թէ ինքը առաջ ինչպէս յանձնառու եղած էր կատարելու ան ամէն անօգուտ սովորութիւնները , որ հրամայուած են պահուիլ մեղաց թողութիւն ստանալու համար ։ Օր մը՝ ուզելով որ ատանկ ա՛ն ներողութիւնը՝ որն որ պապը խոստացեր էր տալ անոնց որ Պիղատոսի սանդուխէն ծնկան վրայ վեր կելլեն , աս ողորմելի Սաքսոնացի միաբանը կամաց կամաց վեր կելլէր ան սանդուխէն՝ որուն համար ըսեր էին իրեն թէ Երուսաղեմէն հրաշքով Հռովմ փոխադրուած է ։ Բայց երբոր աս շատ-

ապրելուն գործը կըկատարէր, իրեն անունն թուեցաւ թէ որոտումի նման ձայն մը կըլսէ՝ որ իր սրտին խորութենէն կելլէ, թէ՝ "ԱՐԴԱՐԸ ՀԱՒԱՏՔԷՆ ՊԻՏԻ ԱՊՐԻ": Այս խօսքը՝ որ արդէն երկու անգամ ալ իր ականջին հնչեր էր իբրև աստուածային հրեշտակի ձայն մը, յանկարծօրէն և ազդու կերպով մը կրկին հնչեց իր ներսիդին : Ահով ու դողով ոտք ելաւ սանդուխին վրան՝ ուրկէց որ սողալով վեր կելլէր, դարձուցեցաւ իր վրայ, ու ամըչնալով որ սնապաշտութիւնն ու սնոտիքները վատթարութեան մէջ զինքը ընկղմեր է, փախաւ գնաց իր կատարած յիմարութեան տեսարանէն :

Աստուածային Խօսքին աս ազդու խօսքը զարմանալի ներգործութիւն մը ըրեր էր Լուտերի վրայ։ Ասիկայ Բարեկարգողին ու Բարեկարգութեան առաջնական բանն էր. ասով հիմա նորէն բառս Աստուած "Եղիցի լոյս", և եղև լոյս:

Շատ անգամ կըհարկաւորի որ ճշմարտութիւն մը իր պատշաճաւոր ներգործութիւնը կատարելու համար աւելի աւելի ներկայանայ մեր միտքը : Լուտեր Հռովմայեցւոց գրուած թուղթը շատ անգամ կարդացեր էր, և սակայն հաւատքով արդարութիւնը՝ որ հոն կըքարոզուի, բնաւ այնպէս յստակ չէր երևցեր իրեն : Հիմա ինքը իմացաւ ան արդարութիւնը որ Աստուծոյ առջին միայն կրնայ կենալ. հիմա ինքը բաժանորդ եղաւ Քրիստոսի կատարեալ հնազանդութեանը՝ զոր որ Աստուած մեղաւորին կըհամարէ, մեղաւորը խոնարհութեամբ իր խաչեալ փրկիչին նայելուն պէս : Ասիկայ էր Լուտերի ներքին կենաց հաստատութեան կէտը : Ան հաւատքը՝ որ մահուան երկիւղէն զինքը ազատեց, ալ այնուհետև իր աստուածաբանութեանը հոգին եղաւ : Ամեն վտանգներու մէջ ամուր աշտարակ մը եղաւ անի՝ իր քարոզութեանը ոյժ և իր մարդասիրութեանը ստուգութիւն տուող, իր մտքին մէջ խաղաղութիւնը հաստատող, բարեգործութեան գրգռող, ու կենաց և մահուան մէջ մխիթարող :

Բայց այս մեծ վարդապետութիւնը՝ թէ փրկութիւնը ոչ մարդէ այլ Աստուծմէ յառաջ կուգայ, ոչ միայն զօրութիւն Աստուծոյ էր Լուտերը փրկելու՝ հապա նաև զօրութիւն Աստուծոյ եղաւ ան Եկեղեցին բարեկարգելու : Ասիկայ ան նոյն սուրն էր որ ատենով առաքեալները շարժուցեր էին, և հիմա երկար ատեն անգործածելի մնալէն ետև իր նախկին պայծառութեամբը քաշուեցաւ ամենակարող Աստուծոյ զինարանէն : Այն նոյն րոպէին երբոր Լուտեր Հռովմայ մէջ իր ծունկերուն վրայէն ելաւ կանգնեցաւ՝ բոլորովին այլայլած ան խօսքէն որն որ Պօղոս 1500 տարի առաջ նոյն մայրաքաղաքի բնակիչներուն գրեր էր . ան նոյն րոպէին այս մեծ վարդապետութիւնն ալ որ մինչև անատենը Եկեղեցիին մէջը գերի վարուած ու կապուած էր, կանգնեցաւ՝ մէջ մէջ ու զինուած :

Այս անոր պարտաւորեց վճռողութիւն բերել իր խօսքը : “Թէ և իբրև վանական կրօնաւոր՝ օրինակելոց էի և անպարսաւելի, կըսէ, բայց իմ խիղճս դեռ լեցուն էր նեղութիւնով ու տառապանքով : Ըսանը կուգար ինծի ըսել թէ Աստուած արդար դատաւոր է . չէի սիրեր ան սուրբ և արդար Աստուածը՝ որ կըդատապարտէ մեղաւորները : Կըմռմռայի որ գաղտնի զայրացում մը ունիմ իրեն դէմ . կատէի զինքը՝ որ արդէն սկզբնական մեղքով կործանած ողորմելի էակները իր օրէնքովը ու այս կեանքին թշուառութիւններովը զարհուրեցունելէն չշատանալով , Աւետարանով ծանրացուցեր էր մեր տանջանքները : Բայց երբոր Աստուծոյ Հոգւովը այս խօսքը հասկըցայ , երբոր սորվեցայ թէ մեղաւորին արդարանալը հաւատքով Աստուծոյ ձրի շնորհքէն յառաջ կուգայ, անատենը ես զիս վերստին ծնած իմացայ իբրև նոր մարդ, ու բաց դուռէ մը նոյն իսկ Աստուծոյ դրախտը մտայ : Այն նոյն ժամէն Աստուծոյ սուրբ և պատուական Գիրքերը նոր աչքով տեսայ . բոլոր Աստուածաշունչը քաղեցի . ու անբաւ խօսքեր հաւաքեցի՝ որոնք սորվեցուցին ինծի թէ ինչ է Աստուծոյ գործը : Եւ ինչ-

պէս որ առաջ 'ի բոլոր սրտէ կատէի Աստուծոյ արդարութիւնը լսելը, սկսեցի ան նոյն ժամէն յարգել ու սիրել զանիկայ իբրև ամենաքաղցր և ամենամխիթար ճշմարտութիւն: Ճշմարիտ՝ սրբոյն Պօղոսի աս խօսքը իբր թէ նոյն իսկ երկնից դուռն էր ինծի":

Անկէց էր որ քանի մը երևելի դիպուածներու մէջ երբոր կըպահանջուէր իրմէն աս վարդապետութիւնը դաւանիլ, միշտ իր եռանդը ու անաչառ պերճախօսութիւնը կը շարժէր: "Կըտեսնեմ" ըսաւ վտանգաւոր ժամու մը՝ որ սատանան իր ուսուցիչներուն ու վարդապետներուն միջնորդութիւնովը անդադար աս վարդապետութեանս վրայ կըյարձակի, ու դուլ և դադար չունի: Ուրեմն ես Մարտինոս Լուտեր վարդապետ՝ Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ անարժան աւետարանիչս՝ կըդաւանիմ աս վարդապետութիւնը, թէ մինակ հաւատքը՝ առանց գործի՝ Աստուծոյ առջին կարդարացընէ. ու կըհրատարակեմ թէ Հռովմայեցւոց ինքնակալը՝ Թաթարաց ինքնակալը՝ Պարսից ինքնակալը՝ պապը՝ բոլոր կարդինալները՝ եպիսկոպոսները՝ քահանաները՝ վարդապետները՝ մայրապետները՝ թագաւորները՝ իշխանները՝ ազնուականները՝ բոլոր աշխարհ ու բոլոր դևերը աս վարդապետութիւնը յաւիտեան անշարժելի պիտի թողուն. և թէ որ աս ճշմարտութեանը հակառակ կենալու ըլլան, դժոխքին բոցերը իրենց գլուխներուն պիտի ձգեն: Ասիկայ է ճշմարիտ և սուրբ Աւետարանը, ու Լուտեր վարդապետիս ազդարարութիւնը, Հոգւով սրբով ինծի տրուած լուսին չափովը: . . . Չկայ մէկը՝ կըշարունակէ իր խօսքը՝ որ մեր մեղքերուն համար մեռաւ, բայց միայն Յիսուս Քրիստոս Որդին Աստուծոյ: Դարձեալ կըկրկնեմ ասիկայ. աշխարհ ու բոլոր դևերը թող փրփրին ու զայրանան ինտոր որ կուզեն, բայց և այնպէս ասիկայ ճշմարիտ է: Ու թէ որ միայն Քրիստոս է որ մեր մեղքերը կըվերցընէ, ուրեմն անհնար է որ մենք բոլոր մեր գործերովը կարող ըլլանք աս բանս ընել: Բայց բա-

րի գործերը փրկութեան ետևէն կուգան, ճիշդ ինչոր որ պտուղը կերևայ ողջ ծառին վրայ: Ասիկայ է մեր վարդապետութիւնը, ասիկայ կըսորվեցընէ սուրբ Հոգին՝ ու բոլոր Քրիստոնէից սուրբ ժողովուրդը: Ասիկայ կը բըռնեմք մենք Աստուծոյ անունովը. Ամէն":

Այսպէս՝ Լուտեր գտաւ այն վարդապետութիւնը՝ որն որ մինչև նոյն ատենը խիստ երևելի ուսուցիչները և քիչ շատ զանցառութեան ձգած էին: Քրիստոնէութեան հիմնական վարդապետութեան ու յստակ տեսութիւնը՝ Հըռովմայ մէջ Աստուած շնորհեց իրեն: Քահանայապետաց քաղաքը եկեր էր վանական կարգի մը տարակուսական վէճերուն լուծումը խնդրելու. եւ դառնալուն իր սրտին մէջը կըտանէր այն ճշմարտութիւնը՝ որ սահմանուած էր Եկեղեցին ծառայական վիճակէ ազատել:

## ՀԱՏՈՒԱԾ Է

ԼՈՒՏԵՐ Հռովմէն ելաւ ու դարձաւ Վիդդէմպէրկ, իր միտքը տրտմութեամբ ու սրտմտութեամբ լցուած: Պապարնակ քաղաքէն զզուանքով մը իր աչքերը դարձընելով վստահութեամբ ուղղեց զանոնք Սրբազան Մատեաններուն, ու այն նոր կեանքին՝ որ թուեցաւ անատենը թէ Աստուծոյ Բանը կըմատուցանէ աշխարհի: Բանը այնչափ հաստատութիւն գտաւ իր սրտին մէջ՝ որչափ որ Եկեղեցին իր զօրութիւնը կորսընցուց անոր վրայէն: Լուտեր ինքզինքը մէկէն ազատեց միւսին դառնալու: Բոլոր բարեկարգութիւնը աս փոփոխութեանս մէջ բովանդակուած էր. վասն զի ասիկայ բարձրացոյց զԱստուած իր սեպհական տեղը, որն որ պապը իրեն գրաւեր էր:

Ստաուպից ու Կայսրընտիրը անտես չըրին այն միաբանը որ կանչեր էին Վիդդէմպէրկի համալսարանը: Երիտա-

սարգ վարժապետին քարոզութիւնը գեղեցիկ տպաւորութիւն մը գործեր էր իշխանին վրայ. անիկայ զմայլեր էր անոր զօրաւոր մտացը վրայ, ազդու պերճախօսութեանը ու ձեռնարկած նիւթին պատուականութեանը վրայ: Կայսրընտիրը ու իր բարեկամը ուզելով որ տասնվեց երևելի տաղանդներու տէր մարդը յառաջացունեն, որոշեցին բարձրացունել զանիկայ աստուածաբանութեան վարժապետ կոչուելու պատուաւոր աստիճանին: Ստաուպից վանքը գնաց, տարաւ զանիկայ մենաստանին պարտէզը, ու հոն ծառի մը տակ առանձին անոր հետ խօսելով ըսաւ մեծարու հայրը. "Եղբայր, դուն հիմա Սուրբ Գրոց Վարժապետ պիտի ըլլաս": Լուտեր աս գերագոյն պատուոյս գաղափարէն յաղթուելով ետ քաշուեցաւ: "Իտիր մէկը՝ որ աւելի արժանաւոր է անոր՝ ըսաւ. ես իմ վրայէս չեմ կրնար հաւանութիւն տալ": Ընդհանուր մեծաւորը կրկնեց իր խնդիրը՝ ըսելով. "Տէրը շատ բան ունի ընելու Եկեղեցիին մէջ. անիկայ հիմա երիտասարդ ու առոյգ վարժապետներ կըպահանջէ": "Բայց ես տկար ու վատառողջ եմ՝ ըսաւ Լուտեր. իմ կեանքս կարճ է. առոյգ մէկը փնտռէ": "Տէրը ինտոր որ երկրի վրայ, անանկ երկինքն ալ գործ ունի. Աստուած իր խորհուրդովը քեզ կըպահանջէ, թէ մեռեալ և թէ կենդանի":

"Միայն Հոգւոյն Սրբոյ գործն է մէկը աստուածաբանութեան վարժապետ ընելը" ըսաւ միաբանը, առաւել քան զառաւել երկիւղով նուաճած: "Ըրու վանքիդ ուզածը, ու իմ՝ քու մեծաւորիդ պահանջածը ըրէ դուն՝ պատասխանեց Ստաուպից. վասն զի դուն մեզի հնազանդիլ խոստացար": "Բայց մտածէ իմ աղքատութիւնս, կրկնեց աբեղան. բան մը չունիմ որով աս աստիճանին դիպուածական ծախքերը ընեմ": "Ատոր վրայով դուն զքեզ անհանգիստ մի՛ ըներ՝ ըսաւ իր բարեկամը. Կայսրընտիրը կը բարեհաճի բոլոր ծախքերը իր վրան առնել": Լուտեր ամէն կողմանէ ստիպուելով պարտաւորեցաւ հնազանդիլ:

Անդրէաս Բոդէնստէյն Կարլստադցին ան նոյն ատենը աստուածաբանութեան վարժապետաց ժողովքին գահերէցն էր : Աս վարժապետը Կերմանացւոց սովորութեանը համեմատ իր քաղքին անունովը Կարլստադ կըկոչուի : Անի- կայ իր բնիկ երկրին մէջ ձեռք ձգեր էր վարժութեան ա- ռաջին լըռունքները : Ծանրաբարոյ էր և զգաստ՝ գուցէ նախանձոտութեան հակեալ, անհանգիստ բնաւորութեան տէր՝ բայց ուսման համար մեծ փափաք ունեցող, ու գե- րագոյն ընդունակութեան հիքքով զարդարուած : Շատ համալսարաններ մտեր ու ելեր էր իր գիտութիւնը ընդար- ձակելու, ու նոյն իսկ Հռովմայ մէջ սորվեր էր աստուա- ծաբանութիւնը : Իտալիայէն Կերմանիա դառնալուն՝ Վիդդեմպերկ քաղաքը հաստատած էր իր բնակութիւնը, և հոն եղեր էր վարժապետ աստուածաբանութեան : Աս ատենս իսկը Սուրբ Գրքերը կարդացած չէ եղեր, ինչոր որ երբը կըպատմէր, որն որ շատ ճիշդ գաղափար մը կու- տայ ան ատենի աստուածաբանութեան ինչ ըլլալուն : Կարլստադ իր ուսուցչութեան պաշտօններէն զատ կանո- նիկոս և աւագ սարկաւագ էր : Անիկայ ան մարդն էր՝ որ մէկ օր մը բարեկարգութիւնը երկուք պիտի բաժնէր : Ին- քը անատենը միայն իրմէն ստորնագոյն մէկը կըհամարէր զԼութեր, բայց Օգոստինեան միաբանը շուտով եղաւ իր նախանձուն առարկան : Երիտասարդ վարժապետին ա- պառնի մեծութեանը վրայ ամենեւին ակնկալութիւն չու- նենալով, իրեն վիճակեցաւ որ համալսարաննին կողմանէ առաջին աստիճանի վարժապետ կարգէ ան անձը, որն որ երբը իր նախանձուն ենթակայ պիտի ըլլար :

Հոկտեմբերի 18ին՝ 1512ին Լութեր հրապարակաւ աստուածաբանութեան դասատուութիւն ընելու հրամանը ընդունեց (որ բարձրագոյն աստիճանէն առաջ կըտրուի ըստ սովորութեան,) ու աս հետեւեալ երդումը ըրաւ .

"Երդում կընեմ Աւետարանի ճշմարտութիւնը պաշտ- պանելու՝ իմ բոլոր զօրութեամբս": Հետեւեալ օրը Կարլ-

ստադ բազմաթիւ ժողովի մը ներկայութեանը մեծաշուք հանդէսով շնորհեց անոր աստուածաբանական վարդապետութեան հրամանագիրները:

Լուտեր եղաւ Վարժապետ Սուրբ Գրոց, և ոչ Վարժապետ Վճռոց. անոր համար ինքզինքը փոխանակ մարդկային աւանդութեան տալու՝ պարտաւորած էր բոլորովին Աստուածաշունչ տառից անձնատուր ըլլալ: Անատենն էր որ ինքը փեսայացաւ Ս. Գրքին որ իր ամենասիրելին էր, ինչպէս որ ինքը կըսէ: Խոստացաւ հաւատարմութեամբ քարոզել՝ ողջմտութեամբ սորվեցունել զանոնք, իր բոլոր կեանքին մէջ անոնց պարապիլ, ու որչափ որ Աստուած կարողութիւն կը շնորհէ իրեն՝ զանոնք պաշտպանել սուտ վարդապետներուն դէմ, թէ բանիւ և թէ գրութեամբ:

Աս վսեմ ուխտը աստուածային կոչումն եղաւ Լուտերին՝ Եկեղեցիին Բարեկարգողը ըլլալու: Աս երդումը աւետարանական ճշմարտութիւնը ազատաբար հետազօտելու և յայտնապէս քարոզելու սրբազան պարտաւորութեամբ իր խիղճը կապելով, յառաջ անցուց նոր վարժապետը ան համառօտ սահմանէն՝ ուր որ իր վանական ուխտը կրնար զինքը ամփոփած պահել: Կայսերական մեծափառութեան ու Հռովմէական աթոռոյն անուամբը համալսարանէն ու իր պայծառափայլ թագաւորէն հրաւիրուելով, ու սրբազնասուրբ ուխտով Աստուծոյ առջին պարտաւորելով, ան նոյն ատենէն եղաւ կենաց Բանին քաջակորով պատգամաւորը: Նոյն բարեյիշատակ օրը Լուտեր կարգեցաւ Ախոյեան Սուրբ Գրոց:

Վասն որոյ սրբազան Գրոց վրայ դրուած աս երդումը՝ կրնայ համարուիլ Եկեղեցւոյն կենդանութեանը անմիջական պատճառներուն մէկը: Բարեկարգութեան առաջին և հիմնական սկզբունքը Աստուծոյ Բանին անսխալելի հեղինակութիւնն էր: Ասկէ կատարուած բոլոր մանրամասն բարեկարգութիւնները՝ թէ վարդապետութեան մասին, թէ բարոյականութեան, թէ Եկեղեցւոյ կառավարութեան

և հրապարակաւ ժամերգութեան, աս առաջին սկզբունքիս հետևանքներն էին ։ Բոլոր Բարեկարգողներուն արիական ձայները իսկ և իսկ հրատարակեցին աս զօրաւոր սկզբունքը, որուն համբաւը Հռովմայ ազդեցութիւնը հողին հետ հաւասարեց ։ "Քրիստոնեայք, ըսին, մի՛ ընդունիք ուրիշ վարդապետութիւններ, բայց եթէ Քրիստոսի՝ ու առաքելոց և մարգարէից քաջայայտ բանին վրայ հաստատուածները ։ Ոչ մարդ մը՝ և ոչ մարդոց ժողով մը իշխանութիւն ունի նոր վարդապետութիւններ սահմանելու" ։

Լուտերին վիճակը փոխուեցաւ ։ Բարեկարգողին ընդունած կոչումը եղաւ իրեն ան չնաշխարհիկ պաշտօններուն մէկին պէս՝ որոնք Տէրը հին անտեսութեան ատենը մարգարէից, ու նորին ատենը առաքելոց յանձնեց ։ Իր պայմանադրած վսեմ խոստումը այնպէս խորարմատ տպաւորութիւն մը գործեց իր հոգւոյն վրայ, որ աս ուխտիս յիշատակութիւնը բաւական էր ետքը մխիթարել զինքը մեծամեծ վտանգներուն և դժնդակ կռիւներուն մէջ ։ Ու երբոր տեսաւ թէ իր քարոզած վարդապետութիւնովը բոլոր Եւրոպա վրդովեցաւ ու շփոթեցաւ, երբոր Հռովմայ դատախազութիւնները՝ բազմաթիւ բարեպաշտներուն նախատինքը՝ ու իր սրտին տարակուսութիւնները և երկիւղը կրնային զինքը գայթակղեցընել՝ վախցընել և յուսահատութեան մէջ ձգել, իր ըրած երդումը կըյիշէր, ու կը մնար հաստատուն՝ անխռով և ուրախ ։

Աս սոյն միջոցիս Կայսրընտրին պալատականներուն մէջ մէկը կար՝ որ երևելի էր իր իմաստութեամբը ու հեզութեամբը ։ Աս անձը կըկոչուէր Գէորգ Սպալատին՝ բնիկ Սպալատոսի կամ Սպալտի՝ Ալիստադի եպիսկոպոսութեան տակը ։ Ասիկայ առաջ Թուրինկիայի անտառներուն մօտը Օհէնքիրխ գիւղին ժողովրդապետն էր ։ Ետքը Փրիդերիկոս Իմաստուն իրեն ատենադպիր և մատրանապետ, ու իր եղբօրորդւոյն՝ կայսրընտրական թագին ժառանգ Յովհաննէս Փրիդերիկոսի վարժապետ ընտրեց ։

Սպալատին՝ արքայական պալատի մը մէջ պարզ կենցաղավարութիւն ունեցող մարդ մըն էր. բայց արիասիրտ Լուտերին հետ բաղդատելով որուն հետը ամէն օր կըկենցաղավարէր, վտանգի մէջ երկչոտ էր, ու իր տէրոջը նման զգուշաւոր և խոհեմ : Ստաուպիցի նման առաւել խաղաղ ատեններու յարմար էր, քան թէ վրդովեալ ժամանակներու : Այսպիսիները պիտանի մարդիկ են. կընմանին փափուկ նիւթերու՝ որոնց մէջ կըփաթթուեմք գոհարներ և բիւրեղներ, որպէս զի տեղէ 'ի տեղ փոխադրուելնուն չփշրին. կըթուին թէ բանի մը պիտանի չեն, բայց առանց անոնց պատուական գոհարները կըկոտրտին կամ կըկորնչին : Սպալատին մեծամեծ գործեր կատարելու յարմար չէր, բայց իրեն վերաբերեալ պարտաւորութիւնը հաւատարմութեամբ և լռիկ կըկատարէր : Առջի բերանը կայսրընտրին գլխաւոր օգնականներուն մէկն էր սրբոց նշխարները հաւաքելու, որոնց վրայ Ֆրիդերիկոս հարուստ ժամանակաց հետէ մեծ սէր ունէր : Բայց կամաց կամաց իր տէրոջը նման ճշմարտութեան կողմը դարձաւ. վասն զի Եկեղեցիին մէջ վերստին երևան ելած հաւատքը յանկարծ չբռնեց զինքը ինչպէս որ բռնեց Լուտերը : Պալատին մէջ եղաւ Լուտերին բարեկամը, բարեկարգողին ու մեծամեծներուն մէջ կատարուած երևելի գործերուն գործակալը, ու Եկեղեցիին և կառավարութեան միջնորդը : Կայսրընտիրը սերտ բարեկամութեամբ կըպատուէր Սպալատինը, ու ճամբորդութիւն ընելուն իր կառքը կառնէր զանիկայ : Ուրիշ կողմանէ՝ պալատին մէջի ընթացքը շատ անգամ նեղութիւն կըպատճառէր մեծարու Սպալատինին, ու խորին տրտմութեամբ կըներգործէր անոր : Կըբաղձար որ աս բոլոր պատիւները ձգէ, ու կրկին հասարակ ժողովրդապետ մը ըլլայ Թուրինկիայի անտառներուն մէջ. բայց Լուտեր կըմխիթարէր զինքը, ու կըհամոզէր որ իր պաշտօնին մէջ մնայ : Սպալատին հասարակաց յարգութեանը առարկայ եղաւ. ու իր դարուն իշխանները և իմաստունները անկեղակարծ յարգութեամբ կըպատուէին զինքը :

## ՀԱՏՈՒԱԾ Ը

Ա՛Ս միջոցիս էր որ Լուտեր կըքարոզէր Տասնաբանեայ Պատուիրանաց վրայ ճառերու շարունակութիւն մը, որ մինչև՛ ցայսօր կըկենայ Ճա՛ռ վասն Հասարակ Ժողովրդոց անունով: Ասոնք անտարակոյս ազատ չեն սխալմունքներէ: Լուտեր առ սակաւ սակաւ լոյս կըստանար: «Արդարին շաւիղը լուսոյ պէս կըծագի, որ առաւել քան զառաւել կըլուսաւորի մինչև հասարակ օրը»: Բայց և այնպէս ի՜նչ ճշմարտութիւն կըփայլի աս ճառերուն մէջ. ինչ պարզութիւն, ինչ պերճախօսութիւն. ինչպէս յարմարեալ էին անոնք իր ունկնդիրներուն և իր դարուն վրայ ազդելու: Աստեղս մէկայութիւն մը յառաջ բերենք իր ճառերուն սկզբնաւորութենէն:

Լուտեր Ս. Յիզդէմիզէրկի եկեղեցւոյն ամպիոնը ելաւ, ու աս խօսքը կարդաց. «Մ՛ի եղիցին քեզ այլ աստուածք բաց յինէն»: Այնուհետև ժողովուրդին դառնալով որոնք գունդագունդ հաւաքեր էին սրբութեան տաճարին մէջ, ըսաւ. «Ադամայ բոլոր որդիքը կռապաշտ են, ու աս առաջին պատուիրանին պատժապարտ յանցաւորներ»: Աս անսովոր դրութիւնը անշուշտ իր ունկնդիրները շարժեց. ուստի զանիկայ արդարացունելու համար, քարոզիչը շարունակեց իր խօսքը ըսելով, «Երկու տեսակ կռապաշտութիւն կայ. մէկը արտաքին՝ որ գործով կըլլայ, միւսը ներքին՝ որ մեր սրտերուն մէջ կըբնակի:

«Արտաքինը ան է՝ որով մարդ կըպաշտէ փայտը՝ քարը՝ սողունները կամ աստղերը:

«Ներքինը ան է՝ որով մարդ պատիժէ վախնալով կամ իր անձին հաճութիւնը փնտռելով արտաքին պաշտօն չմատուցաներ արարածին, և սակայն իր սրտին մէջ զանիկայ կըսիրէ ու անոր կըյուսայ:

«Բայց ինչպէս կրօնք է աս. ստացուածքի ու պատուոյ երկրպագութիւն չէք ըներ, սակայն անոնց կուտաք ձեր

սրտերը՝ ձեր բնութեան ամենապատուական մասը։ Աւա՜ղ, ձեր մարմիններովը Արարիչը կը պաշտէք, ու ձեր հոգիներովը արարածը։

"Աս կռապաշտութիւնը կը տարածի ամէն մարդու վրայ, մինչև որ Յիսուս Քրիստոսի հաւատքովը ձրիապէս բժշկուի ան։

"Իսկ աս բժշկութիւնը ի՞նչպէս պիտի ըլլայ։

"Աս կերպով. Քրիստոսի վրայ հաւատքը ձեր իմաստութիւնը՝ և արդարութիւնը և զօրութիւնը յուսալէն բոլորովին ձեզ կը մերկացունէ. ձեզի կը սորվեցունէ որ եթէ Քրիստոս ձեզի համար չմեռնէր՝ ու իր մահուամբը ձեզ չփրկէր, ոչ դուք և ոչ ստեղծական զօրութիւն մը կրնար աս բանը ընել։ Առատենը կը սորվիք անարգել ամէն աս բաները, որոնք անօգուտ եղան ձեզի։ Բան մը չմնար՝ բայց Յիսուս, միայն Յիսուս, Յիսուս՝ որ լիապէս բաւական է ձեր հոգւոյն։ Ստեղծական բաներէն բանի մը չյուսալով բաց 'ի Քրիստոսէ ապաւինութիւն մը չունիք. ամէն բան անկէց կը յուսաք, ու ամէն բանէ աւելի զինքը կը սիրէք։

"Բայց Յիսուս է միակ և ճշմարիտ Աստուած։ Երբոր զինքը ձեր Աստուածը ընէք, ալ ուրիշ աստուածներ չէք ունենար"։

Այսպէս էր որ Լուտեր ցուցուց թէ հոգին ինչպէս կը ձգուի առ Աստուած իր ծայրագոյն բարին՝ աւետարանին միջնորդութիւնովը, Քրիստոսի ան բացայայտութեանը համեմատ, թէ "Ես եմ ճանապարհ, մէկը հօրը քով չի գար, թէ չէ ինծմով"։

Բայց յատկապէս ակադեմեան ժողովին՝ ան լուսաւորեալ և վարժութեան փափաքող պատանիներուն առջին էր որ Լուտեր Աստուծոյ Բանին գանձերը կը բանար կը տարածէր։ "Այնպէս կը բացայայտէր սրբազան Մատեանները, կըսէ իր անուանի բարեկամը Մելանկտոն, որ բոլոր աստուածապաշտ և լուսաւորեալ անձանց դատողու-

թեամբը որպէս թէ երկայն և մութ գիշերէ մը ետքը նոր լոյս մը ծագեց Քրիստոնէական վարդապետութեան վրայ: Օրէնքին ու Աւետարանին իրարմէ տարբերութիւնը քաջայայտ ցուցուց: Մերժեց ան սխալմունքը՝ որ Եկեղեցին ու դպրոցներուն մէջ կը տիրէր անատենը, թէ մարդիկ իրենց գործերովը մեղաց թողութիւն կընդունին, ու արտաքին օրինապահութիւնով Աստուծոյ առջևը կարդարանան: Այսպէս ինքը մարդոց սիրտերը վերստին Աստուծոյ Որդւոյն դարձուց: Յովհաննէս Մկրտչի նման աշխարհի մեղքը վերցունող Աստուծոյ Գառին մատնցոյց եղաւ: Բացայայտեց թէ Աստուծոյ Որդւոյն համար ձրիապէս թողութիւն կըլլայ մեղաց, ու մարդ հաւատքով կընդունի աս օրհնութիւնը: Ամենևին մէկ կերպով մը դէմ չկեցաւ սովորական արարողութիւններուն: Հաստատուած կանոնադրութիւնը Օգոստինեան բոլոր կարգին մէջ՝ Լուտերէն առաւել հաւատարիմ պահող և պաշտպանող չունէր: Բայց ոգւով չափ աշխատեցաւ հասկըցունել ամենուն թէ ինչ է Դարձման՝ Մեղաց թողութեան՝ Հաւատոյ՝ ու խաչին ճշմարիտ մխիթարութիւններուն ամենահարկաւոր վարդապետութիւնը: Բարեպաշտ հոգիները անոր վարդապետութեանը քաղցրութիւնովը իրեն կըձգուէին ու խելամուտ կըլլային. գիտնականները ուրախութեամբ նոյնը կընդունէին: Անոր ըսել մարդ՝ թէ Քրիստոս և իր առաքեալները ու մարգարէները մթութեան տեղէ մը կամ գարշելի բանտէ մը դուրս ելեր էին":

Լուտերի անդրդուելի հաստատութիւնը որով Աւետարանը յառաջ կըբերէր ու անոր վրայ անշարժ կեցած էր, մեծ զօրութիւն տուաւ իր դասատուութեանը: Բայց ուրիշ հանգամանքներ ալ աւելի աճեցուցին անոր զօրութիւնը: Իր գործերը համաձայն էին իր խօսքերուն. ու ամէն մարդ գիտէր որ աս ատենաբանութիւնները սոսկապէս իր շըրթունքներուն պտուղը չէին, այլ սրտէն կըբղխէին անոնք, ու անոր ամէն օրուան կենցաղավարութեանը մէջ կըգոր-

ծածուկէին։ Այլ երբոր յետ ժամանակաց Բարեկարգութիւնը սկսեց՝ շատ երեւելի մարդիկ որոնք տրտմութեամբ կըտեսնէին Եկեղեցիին բաժանումը, Բարեկարգողին սրբակեաց վարքովը ու անոր նշանաւոր բնաւորութիւններովը յառաջ-մանէ յաղթահարուած ըլլալով, ոչ միայն հակառակ չկեցան անոր, այլ նաև ընդունեցին անոր վարդապետութիւնը, որուն վկայ էր իր վարքը։ Մարդիկ որչափ որ սիրեցին Քրիստոնէական առաքինութիւնները, այնչափ յարեցան Բարեկարգողին կողմը. բոլոր ողջամիտ աստուածաբանները անոր կուսակից էին։ Ասիկայ զինքը ճանչցողները ըսին իր վրայովը, և մանաւանդ ան դարուն գտնուած մեծիմաստն Մելանկտոն, ու Լութերին համբաւաւոր հակառակորդը Էրասմոս։ Միդդէմպէրկ անոր հաւատոյ քարոզութիւնովը փոխուեցաւ։ Այս քաղաքը վառարան եղաւ լոյսի մը՝ որ շուտով պիտի լուսաւորէր Գերմանիան, ու տարածէր բոլոր Եկեղեցիին վրայ։

Լութեր դիւրազգած և գորովալից սիրտ մը ունենալով կը փափաքէր որ իր սիրելիները տեսնան ան լոյսը՝ որ խաղաղութեան շաւիղներուն առաջնորդեց իրեն։ Բոլոր ան պատեհութիւնները որ ստացեր էր դասատու՝ վարժապետ և կրօնաւոր ըլլալովը, իր ընդարձակ թղթակցութիւններուն հետը գործի դրաւ իր գանձը ուրիշներուն հաղորդելու։ Քանի մը պզտի բաներու վրայ իր վաղեմի ընկերներուն մէկին Գէորգ Սպէյնլէնի գիր մը երկել հարկաւորելով, շուտով կը լմնցունէ իր ըսելիքը, ու կանցնի աւելի կարեւոր նիւթի մը։

«Կուզէի գիտնալ՝ կըսէ եղբայր Գէորգին, թէ ինչպէս է քու հոգիդ։ Ձանձրացա՞ծ է արդեօք իր արդարութիւնէն, ու իր ապաւինութիւնը Քրիստոսի արդարութեանը վրայ կըդնէ՞։ Այս օրերս հպարտութեան ոգին շատերը մոլորցուց, և մանաւանդ անոնք որ իրենց բոլոր կարողութիւնովը կաշխատին արդարանալ։ Տգէտ ըլլալով Աստուծոյ արդարութեանը որ ձրի կըտրուի մեզ Քրիստոս Յիսուսով,

իրենց անձին արդիւնքներովը կուզեն կանգնիլ անոր առջեւը։ Բայց ատիկայ ոչ երբեք կրնայ ըլլալ։ Երբոր դուն և ես մէկ տեղ կապրէինք, դուն՝ աս պատրանքիս տակն էիր, ու անանկ էի ես ալ։ Հիմա անդադար մարտ կըդնեմ անոր դէմ, և տակաւին բովանդակապէս չյաղթեցի անոր։

"Ո՛վ սիրելի եղբայր, սորվէ՛ ճանչնալ զՔրիստոս, ու նոյնը խաչը ելած։ Սորվէ՛ նոր երգ երգել անոր. յուսահատիլ քու սեպհական գործէդ, ու աղաղակել իրեն՝ Տէր Յիսուս, դուն իմ արդարութիւնս ես, ու ես քու մեղքդ. դուն քու վրադ առիր իմ ունեցածս, ու ինծի տուիր քու ունեցածդ. դուն ինչ որ չէիր՝ եղար, որ ես ինչ որ չեմ՝ ըլլամ։ Սիրելի՛դ իմ Գէորգ, զգուշացիր այնպիսի արդարութիւն մը վրադ առնելէն, որ քեզ կրնայ դադարեցընել մեղաւոր ըլլալէ խոստովանելէն. վասն զի Քրիստոս միայն մեղաւորներուն հետ կը բնակի։ Անիկայ իջաւ երկինքէն՝ ուր որ արդարներուն հետ կը բնակէր, որ մեղաւորներուն հետ ալ բնակի։ Յաճախ մտածէ Քրիստոսի աս սիրոյն վրայ, և պիտի ճաշակես անոր անպատում մխիթարութիւնը։ Թէ որ մեր աշխատութիւնները ու նեղութիւնները խղճմտանքին խաղաղութիւն կրնային տալ, ինչո՞ւ համար Քրիստոս խաչին վրայ պիտի մեռնէր։ Իրմով միայն պիտի գտնես խաղաղութիւն, քու անձէդ և քու գործերէդ յուսահատելով, ու նայելով թէ ինչ սիրով իր բազուկները քեզի կը տարածէ. քու բոլոր մեղքերդ իր վրան առնելով, ու իր բոլոր արդարութիւնը քեզի պարգեւելով"։

Այսպէս՝ ան զօրաւոր վարդապետութիւնը որ արդէն առաքելոց օրերը աշխարհի փրկութիւնը եղաւ, և որ հիմա երկրորդ անգամ Բարեկարգողներուն օրերը պիտի փրկէր զանիկայ, Լուտերի ձեռօքը արիաբար ու յայտնապէս հրատարակուեցաւ։ Տգիտութեան ու աւելորդապաշտութեան բազմաթիւ դարերէն անդին հանելով, Լուտեր ատով սրբոյն Պօղոսի գործակից եղաւ։

Մինակ Սպէնլէյնը չէր որ ինքը ուզեց աս Հիմնական վարդապետութիւնովս վարժել : Երասմոսի գրութեանցը մէջ աս նիւթիս վրայով գտած ճշմարտութեան սակաւութիւնը նեղութեան մէջ ձգեց զինքը : Կըբաղձար որ այսպիսի մեծ իշխանութեան ու այսպիսի զմայլելի բնաւորութեան տէր մարդը լուսաւորէ աս նիւթիս վրայով . բայց ինչպէս ընէր աս բանը : Իր պալատական բարեկամը՝ Կայսրընտրին մատրանապետը մեծ յարգութիւն ունէր Երասմոսի քովը . վասն որոյ Լուտեր անոր ուղղեց իր խօսքը այսպէս .

“Ան չնաշխարհիկ վարժութեան տէր մարդուն Երասմոսի վրայով իմ տհաճութիւնս աս է՝ որ երբ առաքեալը գործերու և օրէնքի արդարութեան վրայ կըխօսի , ինքը կիմանայ ծիսական օրէնքին կատարելութիւնը : Բայց օրէնքին արդարութիւնը ոչ միայն ծէսերուն վրայ կըկայանայ , այլ նաև Տասնաբանեայ Պատուիրանաց բոլոր գործերուն վրայ : Երբոր աս գործերը կատարուին առանց Քրիստոսի վրայ հաւատք ունենալու , ճշմարիտ է որ կրնան անոնք երևելի անձեր ծաղկեցունել , կամ այնպէս ընել որ մարդս կատարելապէս անմեղ երևնայ մարդոց առջևը , բայց ան մասին անոնք այնչափ անարժան են արդարութեան անունին՝ որչափ որ զղեարը անարժան է թուզ կոչուելու : Վասն զի՝ չէ թէ Արիստոտէլի հաստատածին պէս՝ արդարութեան գործեր գործելով կարդարանամք , այլ արդարանալով արդարութեան գործեր կըգործեմք : Հարկաւոր է որ գործողը փոխուի , և անատենը գործերը հարկաւ կըփոխուին : Առաջ Աբէլ ընդունելի եղաւ Աստուծոյ , և ապա իր պատարագը ընդունուեցաւ” : Լուտեր իր խօսքը շարունակելով կըսէ , “Կաղաչեմ քեզի , բարեկամական և Քրիստոնէական պարտաւորութիւնը կատարէ՛ , աս բաները Երասմոսի միտքը խօթելով” : Աս նամակին թուականը այսպէս է . “Մեծաւ ստիպմամբ՝ մեր վանքին անկիւնէն , 19 Հոկտեմբերի , 1516” :

Անատենը լսեց աշխարհ բարեգործութեան բնութեանը վրայով գաղափարներ, որ միանգամայն յատակ էին և նուրբ ։ Վերջապէս յայտնաբարբառ քարոզուեցաւ ան սկզբունքը՝ թէ մէկ գործի մը ճշմարիտ լաւութիւնը անոր արտաքին հանգամանքը չէ, այլ ան ոգին՝ որով ան գործը կըկատարուի ։ Ասիկայ մահաբեր հարուած մըն էր բոլոր ծնապաշտական կանոնապահութիւններուն, որ դարերէ 'ի վեր Եկեղեցին իր տակը նուաճեր էր, ու քրիստոնէական առաքինութիւնները արգիլեր էր աճելէն և յաջողուելէն ։

“Երասմոսը կըկարդամ, կըգրէ Լուտեր ուրիշ տեղ մը, բայց ան ամէն օր իր յարգութիւնը կըկորսընցունէ իմ քովս ։ Հաճելի է ինծի տեսնել որ այնչափ իմաստութինով ու քաջութիւնով կըկշտամբէ քահանաներուն և վարդապետներուն անարգ տգիտութիւնը . բայց կըվախնամ որ մեծ ծառայութիւն մը չընէր Քրիստոսի վարդապետութեանը ։ Առաւել մօտ են իր սրտին մարդկային բաները, քան թէ Աստուածայինները ։ Վտանգաւոր ատեններու մէջ կապրիմք . Յունական և Եբրայական լեզուները հասկընալը բաւական չէ բարի և խոնարհ Քրիստոնեայ ընելու մարդս ։ Սուրբն Հերոնիմոս որ հինգ լեզու գիտէր, ստորին է քան զսուրբն Օգոստինոս որ միայն մէկ լեզու մը կըհասկընար . Թէպէտ և Երասմոս ասոր հակառակը կը կարծէ ։ Երասմոսին վրայով իմ կարծիքս ամենայն խնամով կըծածկեմ, որ չըլլայ թէ անոր թշնամիներուն առիթ մը տամ ։ Կարելի է որ Տէրը իր հաճած ատենը իմաստութիւն շնորհէ անոր” ։

Լուտերին փնտռածն էր վերստին հաստատել ան երկու ճշմարտութիւնները . այսինքն՝ մարդուն անկարողութիւնը, ու Աստուծոյ ամենակարող զօրութիւնը ։ Տրտմեցուցիչ կրօնք է ու անպիտան փիլիսոփայութիւն է ան՝ որ մարդը իր բնական զօրութեանը կուղղէ ։ Անցեալ դարերը աս մեծապանծ զօրութեան փորձը ըրին . և երբոր մարդ երկրաւոր բաներու մէջ սքանչելի գերազանցութիւն ստացաւ, ո՛չ

երբէք կրցաւ փարատել այն մթութիւնը որ կը ծածկէր զԱստուած անոր հոգիէն, կամ փոխել իր սրտին առ չարն ունեցած մէկ հակամիտութիւնը ։ Կարի իմն մեծափափաք մտքերուն՝ կամ կատարելութեան անձկացող խիստ եռանդուն հոգիներուն իմաստութեան մէջ ծայրագոյն աստիճանի ժամանումը այն եղաւ որ յուսահատեցան իրենց անձին զօրութեանը վրայ ։ Այն որոյ ազնուական՝ քաջալերական և ամենաճշմարիտ վարդապետութիւն մըն է այն՝ որ մեր տկարութիւնը մեզի կը յայտնէ, որպէս զի յայտ յանդիման ցուցընէ Աստուծոյ զօրութիւնը՝ որով ամէն բան կրնամք ընել ։

Բայց Լուտերէն աղէկ գիտցող չկար այն սերտ կապակցութիւնը որ Աստուծմէ եկած ազատ փրկութիւնը մարդուն ազատ գործերուն հետ կը միաբանէ ։ Մէկը չկրցաւ իրմէն աղէկ ցուցընել թէ միայն ամէն բան Քրիստոսէ ընդունելովն է որ մարդ ձրիապէս իր եղբայրներուն կու տայ ։ Ինքը Աստուծոյ և մարդուն աս երկու գործերը միշտ մէկ տեղ կապելով յառաջ կը բերէր ։ Օրօրինակ մեզ փրկող արդարութիւնը Սպէնլէյնի բացատրելէն ետև՝ այսպէս վրայ կը բերէ. "Թէ որ դուն հաստատութեամբ կը հաւատաս աս բաներուն՝ ինտոր որ՛ կը պարտաւորիս, (որովհետև անիծեալ է այն որ չհաւատար անոնց,) ընդունէ քու սխալական և ռամիկ եղբայրներդ, ինչպէս որ Յիսուս Քրիստոս ընդունեց զքեզ ։ Համբերութեամբ տար անոնց. քուկդ ըրէ անոնց մեղքերը. և թէ որ աղէկ բան մը ունիս անոնց հաղորդելու, հաղորդէ ։ Մէկզմէկ ընդունեցէք, կըսէ առաքեալը, ինչպէս որ Քրիստոս ալ ձեզ ընդունեց Աստուծոյ փառքին ։ Թշուառական արդարութիւն է այն որ ուրիշներուն չհամբերեր անոնց չարութեանը համար. ու երկայնմտութեամբ՝ աղօթքով և օրինակով անոնց բարիք ընելուն տեղը անապատային առանձնութիւն կը փնտռէ ։ Թէ որ դուն Քրիստոսի շուշանը ու վարդն ես, գիտցիր որ քու բնակութիւնդ փուշերու մէջն է ։ Միայն զգուշ կեցիր, որ

չըլլայ թէ անհամբերութիւնով անիմաստ դատաւճիռներով ու հպարտութիւնով դուն ալ փուշ մը ըլլաս ։ Քրիստոս իր թշնամիներուն մէջը կըթագաւորէ. թէ որ ուզեր միայն լաւերուն մէջը բնակիլ, ու միայն զինքը սիրողներուն համար մեռնիլ, կըհարցընեմ քեզի՝ որո՞ւն համար. պիտի մեռնէր]. և արդեօք որո՞նց մէջը պիտի բնակէր" ։

## ՀԱՏՈՒԱԾ Թ.

ԺԱՄԱՆԱԿԸ մօտեցաւ որ ատեն Նարեկարգութիւնը պիտի սկսեր երեւան ելլել ։ Աստուած փութացոյց ան գործիքին պատրաստութիւնը որ միտքը դրեր էր գործածելու ։ Այսընտիրը՝ Վիդդէմպէրկի մէջ նոր եկեղեցի մը շինած ու զանիկայ Ամենայն Սրբոց անուանը նուիրած ըլլալով, Ստաւպիցը Ստորին Գաւառները խրկեց սրբոց նշխարներ ժողվելու, որ իր նորաշէն տաճարը զարդարէ ։ Ստաւպից իր տեղը փոխանորդ կարգեց Լուտերը՝ իր հոն չեղած ատենը, ու յատկապէս յանձնեց անոր որ Միսնիայի և Թուրինկիայի քառասուն վանքերուն այցելութիւն մը ընէ ։

Լուտեր առաջ Կրիմմա գնաց, ու անկէց Տրեզտա ։ Ամէն տեղ կըջանար իր գտած ճշմարտութիւնները հաստատել, ու իր կարգին անդամները լուսաւորել ։ "Մի՛ յարէք Արիստոտէլի՝, կըսէր միաբաններուն, կամ մոլար փիլիսոփայութեան մը՝ ո՛ և իցէ վարժապետներուն. այլ ինքզինքնիդ Աստուծոյ Բանին ընթերցմանը տուէք ։ Փրկութիւնը ձեր զօրութիւնովը ու բարի գործերովը մի՛ փնտռէք, այլ Քրիստոսի արդիւնքներովը ու Աստուծոյ շնորհքովը" ։

Տրեզտայէն Էրֆուրթ անցաւ Լուտեր՝ վերատեսչութեան պաշտօն վարելու ան նոյն վանքին մէջ, ուր որ տասնըմէկ տարի առաջ ժամացոյցը կըլարէր, դռները կը բանար, ու եկեղեցին կաւելէր ։ Նոյն վանքին վանահայր

երբէք կրցաւ փարատել այն մթութիւնը որ կըծածկէր զԱստուած անոր հոգիէն, կամ փոխել իր սրտին առ չարն ունեցած մէկ հակամիտութիւնը ։ Կարի իմն մեծափափաք մտքերուն՝ կամ կատարելութեան անձկացող խիստ եռանդուն հոգիներուն իմաստութեան մէջ ծայրագոյն աստիճանի ժամանումը այն եղաւ որ յուսահատեցան իրենց անձին զօրութեանը վրայ ։ Ան որոյ ազնուական՝ քաջալերական և ամենաճշմարիտ վարդապետութիւն մըն է այն՝ որ մեր տկարութիւնը մեզի կը յայտնէ, որպէս զի յայտ յանդիման ցուցընէ Աստուծոյ զօրութիւնը՝ որով ամէն բան կրնամք ընել ։

Բայց Լուտերէն աղէկ գիտցող չկար այն սերտ կապակցութիւնը որ Աստուծմէ եկած ազատ փրկութիւնը մարդուն ազատ գործերուն հետ կըմիաբանէ ։ Մէկը չկրցաւ իրմէն աղէկ ցուցընել թէ միայն ամէն բան Քրիստոսէ ընդունելովն է որ մարդ ձրիապէս իր եղբայրներուն կու տայ ։ Ինքը Աստուծոյ և մարդուն աս երկու գործերը միշտ մէկ տեղ կապելով յառաջ կըբերէր ։ Օրօրինակ մեզ փրկող արդարութիւնը Սպէնլէյնի բացատրելէն ետև՝ այսպէս վրայ կըբերէ. "Թէ որ դուն հաստատութեամբ կըհաւատաս աս բաներուն՝ ինտոր որ կըպարտաւորիս, (որովհետև անիծեալ է այն որ չհաւատար անոնց,) ընդունէ քու սխալական և ռամիկ եղբայրներդ, ինչպէս որ Յիսուս Քրիստոս ընդունեց զքեզ ։ Համբերութեամբ տար անոնց. քուկդ ըրէ անոնց մեղքերը. և թէ որ աղէկ բան մը ունիս անոնց հաղորդելու, հաղորդէ ։ Մէկզմէկ ընդունեցէք, կըսէ առաքեալը, ինչպէս որ Քրիստոս ալ ձեզ ընդունեց Աստուծոյ փառքին ։ Թշուառական արդարութիւն է այն որ ուրիշներուն չհամբերեր անոնց չարութեանը համար. ու երկայնմտութեամբ՝ աղօթքով և օրինակով անոնց բարիք ընելուն տեղը անապատային առանձնութիւն կըփնտռէ ։ Թէ որ դուն Քրիստոսի շուշանը ու վարդն ես, գիտցիր որ քու բնակութիւնդ փուշերու մէջն է ։ Միայն զգուշ կեցիր, որ

չըլլայ թէ անհամբերութիւնով անիմաստ դատաստաններով ու հպարտութիւնով դուն ալ փուշ մը ըլլաս ։ Քրիստոս իր թշնամիներուն մէջը կը թագաւորէ․ թէ որ ուզէր միայն լաւերուն մէջը բնակիլ, ու միայն զինքը սիրողներուն համար մեռնիլ, կը հարցընեմ քեզի՝ որո՞ւն համար․ պիտի մեռնէր]․ և արդեօք որո՞նց մէջը պիտի բնակէր” ։

## ՀԱՏՈՒԱԾ Թ

ԺԱՄԱՆԱԿԸ մօտեցաւ որ ատեն Բարեկարգութիւնը պիտի սկսեր երևան ելլել ։ Աստուած փութացուց ան գործիքին պատրաստութիւնը որ միտքը դրեր էր գործածելու ։ Կայսրընտիրը՝ Վիդդէմպէրկի մէջ նոր եկեղեցի մը շինած՝ ու զանիկայ Ամենայն Սրբոց անուանը նուիրած ըլլալով, Ստաուպիցը Ստորին Գաւառները խրկեց սրբոց նշխարներ ժողվելու, որ իր նորաշէն տաճարը զարդարէ ։ Ստաուպից իր տեղը փոխանորդ կարգեց Լութերը՝ իր հոն չեղած ատենը, ու յատկապէս յանձնեց անոր որ Միսնիայի և Թուրինկիայի քառասուն վանքերուն այցելութիւն մը ընէ ։

Լութեր առաջ Կրիմմա գնաց, ու անկէց Տրեզտա ։ Ամէն տեղ կը ջանար իր գտած ճշմարտութիւնները հաստատել, ու իր կարգին անդամները լուսաւորել ։ “Մի՛ յարիք Արիստոտէլի”, կըսէր միաբաններուն, կամ մոլար փիլիսոփայութեան մը ո՛ և իցէ վարդապետներուն․ այլ ինքզինքնիդ Աստուծոյ Բանին ընթերցմանը տուէք ։ Փրկութիւնը ձեր զօրութիւնովը ու բարի գործերովը մի՛ փնտռէք, այլ Քըրիստոսի արդիւնքներովը ու Աստուծոյ շնորհքովը” ։

Տրեզտայէն Էրփուրթ անցաւ Լութեր՝ վերատեսչութեան պաշտօն վարելու ան նոյն վանքին մէջ, ուր որ տասնըմէկ տարի առաջ ժամացոյցը կը լարէր, դռները կը բանար, ու եկեղեցին կաւելէր ։ Նոյն վանքին վանահայր

կարգեց իր բարեկամը Յովհաննէս Լանժ՝ վարժապետ արհեստից, իմաստուն և բարեպաշտօն մարդ մը, բայց խիստ բնաւորութեան տէր ։ Անոր համար էր որ քիչ ժամանակէն ետև անոր գրելով հեզաբարոյ և համբերող ըլլալ յորդորեց զանիկայ ։ "Հեզութեան հոգիով վարուէ, կըսէ, Նիւռնպէրկի մեծաւորին հետ. քեզի այսպէս կըվայլէ ընել, որովհետև մեծաւորը խիստ և սաստիկ եղանակ մը բռներ է ։ Խստութիւնը խստութենով չվերցուիր, ինչպէս որ դևը դև չհաներ. բայց հեզութիւնը կը յաղթէ և կըհալածէ խստութիւնը, կամ ուրիշ խօսքով Աստուծոյ մատը կըհանէ դևերը" ։ Այսու ամենայնիւ ինքը Լութեր ալ երբեմն մոռցաւ աս պատուական խրատը բռնել ։

Լութեր վեց շաբաթ պտըտելէն ետև վերստին դարձաւ Վիդդէմպէրկ ։ Տեսած բաները զինքը վշտացուցին. բայց իր ճամբորդութիւնը լաւագոյն ծանօթացոյց իրեն Եկեղեցին ու աշխարհը, ու առաւել համարձակեցոյց զինքը մարդոց հետ իր հաղորդակցութեանը ։ Ասկէց զատ՝ շատ պատեհութիւններ տուաւ իրեն ստիպելու ան հիմնական ճշմարտութիւնը, թէ՝ "Միայն Սուրբ Գիրքը կըցուցընէ մեզի երկնից ճամբան", և միանգամայն եղբայրները յորդորելու որ սրբութեամբ և իրարու հետ խաղաղութեամբ ապրին ։ Բարեկարգողին աս ճամբորդութեանը անտարակոյս բազմառատ սերմ մը սերմանուեցաւ Օգոստինեան զանազան վանքերուն մէջ ։ Վանական կարգերը՝ որ երկար ժամանակէ՝ի վեր օգնութիւն էին Հռովմայ, գուցէ աւելի քան տեսան Բարեկարգութեան համար քան որչափ անոր հակառակ ։ Ասիկայ յատկապէս ճշմարիտ էր Օգոստինեանց վրայով ։ Մենաստաններուն մէջ բնակող ազնուական և լուսափայլ բարեպաշտութեան տէր մարդոց գրեթէ բոլորը Աւետարանի կողմը դարձան ։ Կըթուէր թէ նոր և զօրաւոր արիւն մը շրջան կընէ աս կարգերուն մէջ, որոնք Գերմանիայի եկեղեցական մարմնոյն շնչերակներն էին ։ Երբոր հասարակութեան մէջ Վիդդէմպէրկի Օգոս-

*տինեան միաբանին նոր գաղափարները դեռ լսուած չէին, մենաստաններուն ու վանքերուն մէջ արդէն եղած էին անոնք խօսակցութեան գլխաւոր նիւթերը ։ Շատ վանքեր աս կերպով եղան սննդարան Բարեկարգողներու ։ Երբոր ան մեծ վէճը ծագեցաւ, բարեպաշտ և արի մարդիկ իրենց առանձնութենէն ելան, ու միանձնական կենաց մենաւորութիւնը Աստուածային Բանին մատակարարները ըլլալու գործունեայ պաշտօնին հետ փոխեցին ։ Ահա այսչափ կանուխ՝ 1516 թուոյն, վերատեսչութեան այցելութեամբը Լութեր շատ թմրեալ հոգիներ արթընցուց ։ Անոր համար աս տարին կոչուեցաւ Արուսեակ Բարեկարգութեան ։*

*Լութեր հիմա վերստին սկսեց իր սովորական գործառնութիւնը, թէպէտև աս միջոցիս աշխատութեամբ ծանրաբեռնեալ էր ։ Իր ուսուցչութեան՝ քարոզչութեան և խոստովանահայրութեան պարտաւորութիւններէն զատ բեռնաւորուած էր նաև իր կարգին և վանքին աշխարհային բազմապատիկ գործառնութիւններովը ։ "Գրեթէ ամէն օր երկու գրագրի կըկարօտիմ, կըսէ. վասն զի բոլոր օրը նամակագրութենէն ուրիշ բան չեմ ըներ ։ Վանքին քարոզիչն եմ, սեղանի վրայ աղօթք ըսող, հովիւ և ժողովրդապետ, համալսարանի դասերուն կարգադրող, մեծաւորին փոխանորդ՝ այսինքն տասն անգամ մեծաւորի գործ ունեցող, Լիցքաւի ձուկի լիճերուն վերատեսուչ, Տորկաւի մէջ Հերցպէրկի իջաւաններուն իշխան, Սրբոյն Պօղոսի թղթոյն դասատու, և Սաղմոսաց մեկնիչ ։ Հազիւ երբեմն ժամանակ կունենամ իմ աղօթքս ըսելու, կամ մեղեդի մը երգելու. թող մարմնի ու արիւնի հետ՝ Սատանայի ու աշխարհի հետ ունեցած նեղութիւնս ։ Տես թէ ինչպէս ծոյլ մարդ եմ ես" ։*

*Լութեր 1517 տարւոյն մէջ Սաքսոնիայի Գէորգ դուքսին ծանօթացաւ ։ Ասիկայ Փրիդերիկոսի հօրեղբօրորդին էր՝ ու կըբնակէր Տրեզտա ։ Իր մայրը Սիդոնիա Պոհեմիայի Գէորգ Փոտիպրատոս թագաւորին դուստրն էր. շատ*

ժամանակէ 'ի վեր Պոհեմիայի Հռովմայ հետ ունեցած երկար վէճը Սաքսոնիայի դուքսին քիչ մը ազդեր էր . ու եկեղեցիին Բարեկարգութեանը շատ անգամ փափաք մը ունենալ ցուցըցեր էր : "Ընիկայ, կըսէին, իր մօրը կաթին հետ ծծեց ան . անիկայ իր բնութեամբը եկեղեցականներուն թշնամի է" : Բազմապատիկ կերպերով կընեղէր եպիսկոպոսները՝ աբբաները՝ կանոնիկոսները ու միաբանները . ու իր հօրեղբօրորդին Փրիդերիկոս կայսրընտիրը շատ անգամ անոնց կողմանէ միջնորդութիւն կընէր իրեն : Աստի հաւանականաբար պիտի երեւէր թէ Գէորգ դուքսը Բարեկարգութեան խիստ նախանձաւոր պաշտպանը պիտի ըլլայ : Ընդ հակառակն՝ ջերմեռանդն Փրիդերիկոս, որ սուրբ գերեզմանին ուխտի երթալուն իր ծաղկահասակ կենացը Կօտֆրէյի մորակներովը՝ ու Երուսաղէմը յաղթողին երկարատեւ և դժնդակ սրովը զինուորեցաւ, ան քաջամարտիկ զօրականին նման Եկեղեցիին համար պատերազմելու ուխտ ընելով, կըթուէր որ Հռովմայ խիստ եռանդուն ախոյեանը պիտի հանդիսանայ : Բայց Աւետարանի վերաբերեալ բաներուն մէջ մարդկային իմաստութեան բոլոր համարումները շատ անգամ կըխաբուին, ինչպէս որ աս երեւոյթին բոլորովին հակառակը հետեւեցաւ : Ապաքէն դուքսին հաճութիւնը եղած պիտի ըլլայ Եկեղեցին ու եկեղեցականները նուաճել՝ եպիսկոպոսները խոնարհեցունել, որոնց ծառաներուն արքայավայել բազմութիւնը շատ գերազանց էր քան զիրենը . բայց Աւետարանի վարդապետութիւնները իր սրտին մէջ ընդունելը՝ որ զինքը պիտի խոնարհեցունէր, ու միայն շնորհքով փըրկուելու պատժապարտ մեղաւոր մը ըլլալը խոստովանել պիտի տար իրեն, բոլորովին իր հաճութեանը դէմ էր : Յօժարութեամբ կամեցած պիտի ըլլայ ուրիշները բարեկարգելու, բայց ինքզինքը բարեկարգելու գաղափար մը չունէր : Կուցէ իր ըսածին պէս Մօկունտիայի կամ Մայնցի եպիսկոպոսը պիտի պարտաւորէր որ մէկ եպիս-

կոպոսական թեմով մը բաւականանայ, ու իր ախոռին մէջ տասներչորս ձիէն աւելի չունենայ․ բայց երբոր տեսաւ որ բոլորովին իրեն աննման մէկը երևան ելաւ իբրև Բարեկարգող, երբոր նկատեց թէ հասարակ միաբան մը աս գործին ձեռնամուխ կըլլայ՝ ու Բարեկարգութիւնը ժողովրդոց մէջ հաստատութիւն կըստանայ, անատեն բարձրամիտ դուքսը ամենասաստիկ թշնամի եղաւ Բարեկարգութեան որուն զինքը բարեկամ ցուցըցած էր։

1517 թուոյն Յուլիս ամսուն մէջ Գէորգ դուքսը Ստաւպիցէն խնդրեց որ իմաստուն և ճարտասան քարոզիչ մը խրկէ իրեն։ Ստաւպից Լուտերը խրկեց, գովելով զանիկայ թէ մեծ գիտութեան ու անմեղադրելի վարուց տէր մարդ մըն է։ Դուքսը հրաւիրեց զանիկայ որ Տրեզտայի մէջ պալատին մատուռը քարոզէ, Զեբեթեան սրբոյն Յակովբայ տօնախմբութեանը։

Սահմանուած օրը եկաւ, ու Դուքսը և իր պալատականները գնացին մատուռը, Վիդդէմպէրկէն եկած քարոզիչը մտիկ ընելու։ Լուտեր ասանկ ժողովի մը առջև ճշմարտութեան վրայ իր վկայութիւնը տալու պատեհութիւնը ուրախութեամբ ձեռք առաւ։ Իր քարոզին բնաբանը ընտրեց նոյն աւուր աւետարանը, “Անատենը Զեբեդոսի որդւոցը մայրը իր տղոցը հետ եկաւ անոր”, եւ․ (Մտթ․ ի․ 20։) Քարոզեց մարդոց բաղձանքներուն և անվայել աղօթքներուն վրայ, ու անկէ ետև յառաջացաւ ազդու կերպով խօսիլ թէ մարդ ինչպէս իր փրկութիւնը ապահով պիտի ընէ։ Աս հիմանս վրայ հաստատեց անիկայ՝ թէ անոնք որ Աստուծոյ Բանը կըլսեն ու կըհաւատան անոր, Քրիստոսի ճշմարիտ աշակերտներն են, յաւիտենական կենաց համար ընտրուած։ Այնուհետև խօսեցաւ ձրի ընտրութեան վրայ․ ցուցուց թէ աս վարդապետութիւնը Քրիստոսի կատարած գործոյն հետ մէկ տեղ առնելով խղճմտանքին երկիւղները փարատելու զօրութիւն ունի․ անանկ որ մարդիկ իրենց անարժանութիւնը տեսնելնուն Աստուծոյ սըր-

թուլթեննէն հեռի փախչելնուն տեղը, անոր շնորհքովը զինքը իրենց ապաստանարան ընելու կըդիմեն ։ Ի վերջոյ երեք կուսանաց վրայ առակ մը պատմեց, ուրկէց անոնց հոգևոր շինութեանը համար օգտակար խրատներ յառաջ բերաւ ։

Ճշմարտութեան բանը խորին տպաւորութիւն մը գործեց լսողներուն վրայ ։ Մանաւանդ անոնցմէ երկու հոգ կըթուէր թէ մասնաւոր ուշադրութիւն մը կընէին Վիդդէմպէրկի միաբանին քարոզութեանը ։ Առաջինը յարգական երևոյթով տիկին մըն էր՝ պալատին բազմոցներուն մէկին վրայ նստած, որուն դէմքին վրայ խորին այլայլութեան նշաններ կերևային ։ Ասիկայ կըկոչուէր Մատամ տըլա Սալ՝ դքսուհիին սենեկապետը ։ Միւսն էր Հերոնիմոս Էյմսէր եկեղեցական կանոնաց վարժապետը, ու դուքսին ատենադպիրը և խորհրդականը ։ Էյմսէր մեծամեծ տաղանդներով և ընդարձակագոյն ձիրքերով զարդարուած էր ։ Պալատական ըլլալով ու քաղաքականութեան մէջ քաջակիրթ, երկու հակառակ կողմերուն մէկէն հաճելի ըլլալ կուզէր . այսինքն է՝ Հռովմայ կողմը անցնիլ իբրև պաշտպան պապականութեան, և միանգամայն Գերմանիայի իմաստուն մարդոցը մէջ պայծառափայլ ծագել ։ Բայց աս յաջողակ քաղաքականութեան տակը ծածկուած էր խիստ բռնական բարք մը ։ Տրեզտայի պալատին մատուռն էր ուր որ Լուտեր և Էյմսէր առաջին անգամ զիրար տեսան, որոնք սահմանուած էին մէկզմէկու շատ հարուածներ տալ ետքը ։

Ճաշաժամուն զանգակը պալատին մէջ հնչեց, ու դուքսին գերդաստանը և պալատին զանազան անձերը իսկ և իսկ հաւաքեցան սեղանին բոլորտիքը ։ Խօսակցութիւնը բնականաբար դարձաւ նոյն առաւօտուն քարոզիչին վրայ ։ "Հաւնեցա՞ր քարոզին", հարցուց դուքսը Մատամ տըլա Սալին ։ "Թէ որ կարենայի ասանկ քարող մըն ալ մտիկ ընել, խաղաղութեամբ պիտի մեռնէի", պատասխանեց

տիկինը ։ "Այս ալ՝ ըսաւ դուքսը սրտմտելով, բան մը կու-
տայի զանիկայ լսած չըլլալու համար. վասն զի ասանկ քա-
րոզները բանի մը պիտանի չեն, ու միայն կը ծառայեն մար-
դիկ մեղաց մէջ քաջալերելու" ։

Իշխանը իր կարծիքը այսպէս ցուցընելով՝ պաղատական-
ները սկսեցին իրենց տհաճութիւնը ցուցընել ։ Ուրաքան-
չիւրը պատրաստ էր իր կարծիքը յայտնելու . ոմանք հաս-
տատեցին թէ Լուտեր երեք կուսանաց առակովը, պա-
լատին երեք տիկիններուն վրայ էր իր միտքը ։ Ասոր վրայ
շատ խօսք և շշուկ ծագեցաւ, ու սկսեցին կատակ ընել և
խնդալ աս երեք տիկիններուն հետ ։ "Տգէտին մէկն է",
ըսին ոմանք ։ "Կոռող միաբան մըն է", ըսին ուրիշները ։
Ամէն մէկը իր ուզած կերպովը դատեց քարոզը, ու իր ու-
զածին պէս դարձուց քարոզիչին խօսքը ։ Ճշմարտութիւնը
ինկեր էր աս պալատականներուն մէջ որոնք պատրաստուած
չէին զանիկայ ընդունելու . ամէն մէկը ըստ հաճոյից
քաշկռտեց զանիկայ ։ Բայց մինչդեռ Աստուծոյ Բանը աս
կերպով՝ քար գայթակղութեան եղաւ ոմանց, սենեկա-
պետին պատուական անկիւնի գլուխ եղաւ շինութեան * ։
Ամիսէ մը ետև աս տիկինը հիւանդացաւ, փրկիչին շնորհքը
վստահութեամբ ընդունեց, ու հոգևոր ուրախութեամբ
մեռաւ ։

Իսկ դուքսին վրայովը գուցէ պարապ չէր որ ճշմարտու-
թեան վրայով աս վկայութիւնը ինքը լսեց . վասն զի իր
կենացը մէջ ինչ հակառակութիւն որ ըրաւ Բարեկարգու-
թեան, ասիկայ ստոյգ է որ մահուան անկողինին վրայ
խոստովանեցաւ, թէ ինքը ուրիշ յոյս չունի բայց եթէ
Քրիստոսի արդիւնքներուն վրայ ։

* Ա Պետ. գլ. Բ. 6—8.

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ԼՈՒԹԵՐ դարձաւ Վիդդէմպէրկ , ու վերստին իր գործին պարապեցաւ աշխատասիրութեամբ ։ Աս միջոցին հրատարակեց քանի մը նախադասութիւններ որոնք արժանի են մեր ուշադրութեանը ։

Իր գլխաւոր նիւթը Ազատ Կամքն էր ։ Քրիստոնէութեան առաջին քարոզութենէն հետէ շատ կամ քիչ սաստկութեամբ անդադար վէճ կըլլար աս երկու վարդապետութիւններուն վրայ . այսինքն՝ մարդկային կամաց ազատութեանը կամ ծառայութեանը վրայ ։ Քանի մը դըպրոցական հեղինակներ՝ ինչպէս Պեղագիոս և ուրիշները , սորվեցուցեր էին թէ մարդս ՚ի բնէ ունի ազատ կամք մը , կամ զԱստուած սիրելու և արդարութիւն գործելու կարողութիւն մը ։ Լուտեր ուրացաւ աս վարդապետութիւնը՝ ոչ եթէ մարդս ազատութենէ զրկացընելու մտքով , այլ անոր առաջնորդելու համար որ ճշմարիտ ազատութիւնը ստանայ ։ Լուտերի վիճաբանութեան նպատակը՝ չէ թէ սովորաբար քսուածին պէս ազատութեան ու ծառայութեան վրայ է , այլ մարդկային բնութենէն յառաջ եկած ազատութեան՝ ու Աստուծմէ եկած ազատութեան վրայ ։ Մէկ կողմինները՝ որոնք իրենքզիրենքնին կըկոչեն Ջատագով Ազատութեան , կըսեն մարդուն . “Դուն կարողութիւն ունիս ուղիղը գործելու , կարօտ չես աւելի ազատութեան” ։ Մէկալները՝ որոնք (ստութեամբ) կոչուեցան Ծառայութեան Կողմնապահներ , բոլորովին անոր հակառակը կըսեն անոր . “Ճշմարիտ ազատութեան կարօտ ես դուն , ու Աստուած կըպարգևէ զանիկայ քեզի Աւետարանով” ։ Մէկ կողմինները ազատութեան վրայ կըխօսին՝ որ ծառայութիւնը մշտնջենաւորեն , միւս կողմինները մեր ծառայութիւնը մեզի կիմացընեն որ ազատութիւն ստանանք ։ Այսպէս էր սրբոյն Պօղոսի ատենին վէճը , Օգոստինոսի օրերունը , և դարձեալ Լուտերի ժամանակինը ։ Մէկ կողմին-

ները մարդը իր ազատութեանը վրայ ողջունելով իրօք ծառայութեան կըհամոզեն զանիկայ, միւս կողմիններն՝ որ կըցուցընեն թէ ինչպէս կրնայ անոր ոտնակապները քակուիլ, ճշմարիտ ջատագովներն են ազատութեան ։

Հետեւեալ քանի մը նախադասութիւնները Լուտերի իննսուն եւ ինը նախադասութիւններէն են որ ժողովրդոց մէջ Հրատարակեց Պեղագեան վարդապետութեան դէմ։

“Ճշմարիտ է թէ մարդ որ չար ծառ մը եղած է, չկրնար ուրիշ բան կամենալ կամ ընել բայց միայն չարը։

“Սուտ է թէ կամքը ինքզինքին ձգուած կրնայ բարի գործել ինտոր որ չար կըգործէ. վասն զի ազատ չէ, այլ ծառայ վաճառած ։

“Մարդս ինքիրմէ պատրաստութիւն չունի Աստուծոյ շնորհքը ընդունելու. այլ պատուական՝ աներկբայ եւ մի միայն պատրաստութիւնը Աստուծոյ մշտնջենաւոր նախասահմանութիւնը եւ ընտրութիւնն է ։

“Մարդս շնորհք ստանալէն առաջ բան մը չունի, բայց միայն անկարողութիւն եւ ապստամբութիւն ։

“Մարդուս ունեցած առաքինութիւններուն բոլորն ալ կամ սնափառութեամբ եւ կամ դժկամակութեամբ կըգործուին, որոնց երկուքն ալ մեղք են ։

“Չէ՛ թէ արդարութիւն գործելով կարդարանամք, այլ արդարացած ըլլալով՝ արդարութիւն կըգործեմք ։

“Մարդս առաւել դէմ կըկենայ Աստուծոյ շնորհքին քան թէ նոյն իսկ օրէնքին ։

“Ան որ Աստուծոյ շնորհքէն զուրկ է՝ անդադար կըմեղանչէ, թէ եւ ոչ սպանութիւն՝ ոչ գողութիւն եւ ոչ շնութիւն գործէ ։

“Անիկայ կըմեղանչէ, վասն զի օրէնքը հոգեւորապէս չկատարէր ։

“Միայն արտաքին գործով սպանութիւն եւ շնութիւն չընելը, կեղծաւորներուն արդարութիւնն է ։

“Աստուծոյ օրէնքը ու մարդուն կամքը երկու հակառակ

բաներ են՝ որոնք առանց Աստուծոյ շնորհացը հնար չէ մէկ տեղ բերել ։

“Օրէնքին ուզածը կամքը ամենևին չուզեր , բայց եթէ վախուն կամ օգտին համար կըձևանայ ուզել ։

“Օրէնքը մեր կամքին գործավարն է . բայց կամքը հընազանդութեան չգար , եթէ ոչ մեզի ծնած Մանուկովը . Եսայ . Թ . 6 ։

“Օրէնքը կաճեցընէ մեղքը , վասն զի կըգրգռէ կամքը ու կըդիմամարտի անոր ։

“Բայց Աստուծոյ շնորհքը կաճեցընէ արդարութիւնը Յիսուս Քրիստոսի ձեռքովը , որ մեզի կառաջնորդէ օրէնքը սիրելու ։

“Օրէնքին բոլոր մեր հնազանդութիւնը դրսուանց գեղեցիկ կերևայ , բայց ներսուանց մեղք է ։

“Երբոր կամքը առանց Աստուծոյ շնորհացը օրէնքին դառնայ , միայն իր ինքնահաճութեանը համար անանկ կընէ ։

“Օրէնքին գործերը ընողները տակաւին անէծքի տակ են ։

“Երանելի են ամէն անոնք որ Աստուծոյ շնորհացը գործը կընեն ։

“Բարի օրէնքը՝ ու ան որով մենք կապրիմք , Աստուծոյ սէրն է՝ մեր սրտերուն մէջ սփռած Հոգւոյն Սրբոյ ձեռքը ։

“Շնորհքը գործերուն ստէպ և դիւրագոյն կատարմանը համար չտրուիր , հապա անոր համար որ առանց շնորհքի սիրոյ մէկ գործ մըն ալ չկրնար կատարուիլ ։

“Օ Աստուած սիրելը մեր անձերը ատել՝ և Աստուծմէ զատ բան մը չունենալն է” ։

Այսպէս Լուտեր Աստուծոյ կընծայէ բոլոր բարի գործերը որ մարդ կրնայ ընել ։ Բնական չէ մարդուն կամքը կարկատել . բոլորովին նոր կամք մը պէտք է տրուիլ անոր . բայց ասիկայ միայն Աստուած կրնայ ընել , վասն զի միայն Աստուած կրնայ կատարել ան ։ Ասիկայ մարդուն մնացը

ընդունելու կրցած ամենամեծ և ամենահարկաւոր ճշմարտութիւններուն մէկն է։

Բայց Լուտեր մարդկային կարողութեան վրայ խօսած ատենը իր չընդունածին հակադրեալ ծայրը չինկաւ։ Իր ութերորդ նախադասութեանը մէջ կըսէ, "Ան դրութենէն չհետևիր թէ կամքը 'ի բնէ չար է. այսինքն՝ թէ իր բնութեամբը նոյն ինքն չարութիւն է, ինչպէս որ Մանիքեցիք հաստատեցին"։ Մարդկային բնութիւնը առաջ իսկապէս բարի էր. բայց դարձաւ բարիէն՝ այսինքն Աստուծմէ, ու չարին հակամիտեց։ Սակայն և այսպէս իր սուրբ և պանծալի սկզբնատիպը կըպահէ, ու Աստուծոյ զօրութիւնովը կրնայ դառնալ և նորոգուիլ։ Անիկայ այսպէս դարձընելը Քրիստոնէութեան պաշտօնն է։ Ճշմարիտ է թէ Աւետարանը խոնարհութեան և անկարութեան վիճակի մը մէջ կըցուցընէ զմարդը, բայց փառաց և մեծութեան երկու վիճակներու մէջ տեղը. անցեալ փառքի մը՝ ուրկէց ինկաւ, ու ապառնի փառքի մը՝ որուն հրաւիրուած է։ Ասիկայ է իսկական ճշմարտութիւնը ինչպէս որ մարդս ալ գիտէ, ու սակաւ ինչ մտածելով կիմանայ թէ իր ներկայ մաքրութեանը կարողութեանը ու փառքին համար ինչ որ կըսուի, ուրիշ բան չէ՝ բայց եթէ կեղծիք մը անոր ամբարտաւանութիւնը մեղմելու և շողոքորդելու։

Լուտերին այսչափ ազդուութեամբ նոր յայտնած ճշմարտութիւնները բոլորովին նոր էին իր ունկնդիրներուն։ Բայց աս նախադասութիւնները Վիդդէմպէրկի մէջ հաստատելը դիւրին բան պիտի ըլլար, վասն զի իր զօրութիւնը տիրած էր հոն. ու պիտի ըսէին թէ մէկ ասպարէզ մը կընտրէր որ գիտէր թէ հոն հակառակորդ մը պիտի չելլէ իր դէմը։ Նաև ուրիշ համալսարանի մը մէջ պատերազմ բանալով ընդարձակագոյն պիտի հրատարակէր իր նախադասութիւնները, ու գիտէր թէ զանոնք հրատարակելով էր որ Բարեկարգութիւնը պիտի յաջողուէր։ Ուստի ընտրեց Էրֆուրթը, որուն աստուածաբանները իր վրայ այնչափ գայթակղած ցուցըցեր էին ինքզինքնին։

Մասն որոյ աս նախադասութիւնները խրկեց Յովհաննէս Լանժին՝ Էրֆուրթի վանքին մեծաւորին, ու այսպէս գրեց անոր. "Աս նորափառ նախադասութիւններուն վրայ ձեր միտքը իմանալու իմ սրտիս անձկութիւնը մեծ է, և գուցէ չափազանց։ Մեծապէս կըկասկածիմ որ ձեր աստուածաբանները նորափառ և յաւէտ չարափառ պիտի կարծեն, ինչ որ ես միշտ ուղղափառ կըկարծեմ։ Ուստի որչափ որ կրնաք, ձեր կարծիքը շուտով ըսէք ինծի։ Կը խնդրեմ՝ տեղեկացուր աստուածաբաններուն ժողովին և բոլոր ուրիշներուն, թէ ես պատրաստ եմ ձեզի գալ՝ ու հրապարակաւ հաստատել աս նախադասութիւնները, թէ համալսարանին մէջ և թէ վանքին"։ Բայց չերևար թէ Լուտերին ինքզինքը առաջարկելը ընդունելի եղաւ։ Էրֆուրթի կրօնաւորները բաւական սեպեցին իմացընել անոր թէ աս նախադասութիւնները մեծապէս տհաճեցուցին զիրենք։

Բայց անիկայ իր միտքը որոշեց Գերմանիայի ուրիշ մէկ կողմը խրկել զանոնք։ Աս վախճանիս համար իր աչքը դարձուց մէկու մը վրայ՝ որ Բարեկարգութեան պատմութիւնին մէջ երևելի հանդիսացաւ, և որուն ինչ ըլլալը հարկաւոր է որ իմանամք։

Յովհաննէս Մէյեր անուն անուանի վարժապետ մը աս տեններս Բավարիայի մէջ Ինկոլստադի համալսարանին ուսուցիչն էր։ Անիկայ ծնած էր Սուաբիայի Էք ըսուած գիւղը, ու սովորաբար կըկոչուէր Էք վարժապետ։ Անիկայ բարեկամ էր Լուտերի, որ մեծապէս կըյարգէր անոր տաղանդները ու տեղեկութիւնը։ Հանճարաւոր միտք մը ունէր, ընթերցման մէջ քաջակիրթ էր, ու չնաշխարհիկ յիշողութեան ձիրքով զարդարուած էր։ Իր գիտութեանը հետ ունէր և պերճախօսութիւն. իր շարժուածքը ու ձայնը կըյայտնէին իր բնութեանը աշխուժութիւնը։ Տաղանդի կողմանէ հիւսիսային Գերմանիայի մէջ ինչ որ էր Լուտեր, հարաւայինին մէջ նոյնն էր Էք։ Անոնք ան դարուն երկու երևելի աստուածաբաններն էին, թէպէտ և իրենց ըն-

թացքը մեծապէս տարբեր էր։ Ինկօլստադ գրեթէ կը հաւասարէր Վիդդէմպէրկի։ Աս երկու վարժապետներուն գերահռչակ համբաւը ամէն կողմերէ բազմութիւ աշակերտներ կը բերէր իւրաքանչիւրին համալսարանը՝ անոնց դասասացութիւնը լսելու փափաքով։ Իրենց անձնական որպիսութիւնները իրենց իմաստութեանը հաւասար՝ սիրելի կընէին զիրենք իրենց աշակերտներուն։

Վասն որոյ Լուտեր հարաւային գաւառներուն մէջ իր նախադասութիւնները հրատարակելու համար Էք վարժապետը ընտրեց։ Բայց ուղղակի անոր չխրկեց զանոնք, այլ իրենց հասարակաց բարեկամին՝ Նիւրնպէրկի դատաւորին մեծարու Քրիստափոր Շէօրլին, խնդրելով որ Էքին խրկէ զանոնք՝ Ինկօլստադ, որ հեռի չէր Նիւրընպէրկէ։ «Կը խրկեմ ձեզի, կըսէ, իմ նախադասութիւններս, սոսկապէս նորափառ, կամ ինչպէս որ շատերուն կերևայ յաւէտ՝ չարափառ։ Կ'ուզէ զանոնք մեր սիրելի Էքին՝ ան գիտնական և կորովամիտ մարդուն, որ իմանամ թէ ինչ կը խորհի անոնց վրայ։ Լուտեր այսպէս կը խօսէր անատենը Էք վարժապետին վրայ. այսպիսի էր ան բարեկամութիւնը որ մէկ տեղ կապեր էր զանոնք։ Աս պատուական բարեկամութեանս գադարիլը առաջ Լուտերէն չեղաւ։

Բայց պատերազմը ան ասպարէզին վրայ պիտի չվարուէր։ Աս նախադասութիւնները կրնան մտածուիլ թէ աւելի բարձր կարևորութիւն ունէին քան թէ անոր միւս նախադասութիւնները, որ երկու ամիսէն ետև բոլոր Եկեղեցին բորբոքեցին։ Եւ սակայն Լուտերին գրգիռ տալովը առանց դիտողութեան մնացին ասոնք։ Պինտ շատը՝ դպրոցին շըրջապատին մէջ կարդացուեցան, ու անոր սահմաններէն դուրս ազդուութիւն մը չգործեցին։ Ասոր պատճառը ան էր որ ասոնք միայն ակադեմական նախադասութիւններ և աստուածաբանական վարդապետութիւններ կը պարունակէին. բայց իր ետքէն հրատարակած նախադասութիւնները անմիջապէս կը վերաբերէին մեծամեծ չարիքի մը որ ժողո-

վուրդին մէջ տեղը երևցաւ, ու Գերմանիայի երկիրը ամէն կողմանէ ծածկեց : Քանի որ Լուտեր ինքզինքը չափաւորած էր միայն երկար ժամանակէ՚ի վեր մոռցուած ճշմարտութիւն մը երևան հանել, պատասխան մը չլսուեցաւ. բայց երբոր բոլոր մտքերը գայթակղեցընող խաբէութիւնները ցուցուց, ամէն մարդ ականջ տուաւ :

՚Ի վերայ այսր ամենայնի, թէ աս Նախադասութիւններուն և թէ ետքիններուն մէջ Լուտերի դիտաւորութիւնն էր միայն աստուածաբանական վիճաբանութիւններ յարուցանել՝ որ ան ատենը համալսարաններուն մէջ հասարակ բան մըն՚էր : Իր գաղափարները ան կոպարէն անդին չէին անցներ. Եկեղեցին բարեկարգելու ամենևին խորհուրդ մը չունէր : Իր կարողութիւններուն վրայ նուաստ կարծիք մը ունէր, ու իր խոնարհութիւնը ան աստիճան խորին էր՝ որ կըսէր, "Այնպիսի է իմ տգիտութիւնս՝ որ ուրիշ բանի արժանի չեմ, բայց եթէ անկիւնի մը մէջ ծածկեալ մնալու, ամէն մարդու անծանօթ" : Բայց զօրաւոր ձեռք մը դուրս քաշեց զինքը աս անկիւնէն, ուր որ կուզէր մնալ աշխարհի անծանօթ : Մէկ դիպուած մը՝ որ Լուտերի կամքէն կախեալ չէր, պատերազմի ասպարէզը ձգեց զինքը, ու կռիւը սկսեց : Այլ ահա անցքերուն ընթացքը կը կոչէ զմեզ աս նախախնամական դիպուածը պատմելու անցնիլ :

# ԳԻՐՔ Բ

## ՆԵՐՈՂՈՒԹԵԱՆ ԿՈՆԴԱԿՆԵՐԸ · ՈՒ ԼՈՒՏԵՐԻ ՆԱԽԱԴԱՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ ։

1517——1518

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա

ԳԵՐՄԱՆԻԱՅԻ *ժողովրդոցը մէջ մեծ շփոթութիւն մը կը թագաւորէր աս միջոցիս, վասն զի Եկեղեցին ընդարձակ վաճառանոց մը բացեր էր երկրի վրայ ։ Գնոյ առնողներուն բազմութենէն ու վաճառողներուն աղաղակէն և խեղկատակութիւններէն դատելով տօնավաճառ կրնամք կոչել զանիկայ. բայց տօնավաճառ մը՝ որ կրօնաւորները բացած էին ։ Իրենց հռչակած վաճառքը՝ որ սահմանեալ գնով մը կառաջարկէին, իրենց ըսածին նայելով հոգիներուն փրկութիւնն էր ։*

*Վաճառականները երեք ձիաւոր զինուորներու առաջնորդութեամբ գեղեցկազարդ կառքով մը կանցնէին երկրին մէջէն՝ մեծաշուք հանդէսով, ու առատ ծախք ընելով ։ Մարդ կըկարծէր թէ մեծ իշխանաւոր մըն է որ իր ծառաներովը ու պաշտօնատարներովը հանդիսաւոր ճամբորդութիւն կընէ, և ոչ թէ հասարակ վաճառական մը՝ կամ մուրացիկ կրօնաւոր մը ։ Երբոր հանդէսը քաղաքի մը մօտենար, պատգամաւոր մը կըխրկուէր քաղաքապետին. "Աստուծոյ՝ և սրբազան Հօրը շնորհքը ձեր դռներն է", կըսէր աս պատգամաւորը ։ Մէկ մըն ալ մեծ իրաց անցում*

կըլլար ան տեղը։ Եկեղեցւոյ ուխտը՝ վարդապետները՝ մայրապետները՝ վարժապետները, ատենակալները, արհեստաւորները իրենց դրօշակներովը, այր և կին, ծեր և տղայ, Նորեկ վանականները դիմաւորելու կելլէին ձեռքերնին վառած կերոններով, նուագարաններու և քաղաքին բոլոր զանգակներուն ձայնովը. "անանկ որ՝ կըսէ պատմագիր մը, թէ որ Աստուած ինքը գար, ասկէց աղէկ չէին կրնար բարեւել անոր գալուստը"։ Ողջունատութիւնները փոխանակուելէն ետև բոլոր հանդէսը յառաջ կըխաղար դէպի եկեղեցին։ Քահանայապետին շնորհաց կոնդակը առջևէն կերթար թաւիշէ փոքրիկ բարձի կամ ոսկեթել կերպասի վրայ։ Անոր ետևէն կուգար ներողութեանց գլխաւոր վաճառականը՝ կարմիր փայտեղէն մեծ խաչ մը բռնած. ու բոլոր հանդէսը աս կերպով յառաջ կերթար երգերով աղօթքներով և խնկարկութիւններով։ Երգեհոններուն ձայնը ու նուագարաններուն ներդաշնակութիւնը եկեղեցւոյ մէջ կընդունէր կրօնաւոր վաճառականը ու անոր գործակալները։ Իր կրած խաչը սեղանին առջևը կըտնկուէր, ու պապին նշանը անոր վրայ կըկախուէր։ Եւ որչափ որ հոն մնար ան, տեղւոյն եկեղեցականները՝ խոստովանահայրերը՝ ու գլխաւոր վաճառականին ստորին պաշտօնեաները, ամէն օր իրիկուան ժամերգութենէն ետև ձեռքերնին ճերմակ գաւազաններ բռնած կերթային խոնարհութիւն մատուցանել ան խաչին։ Աս մեծ աղմուկը Գերմանիայի լուիկ քաղաքներուն մէջ ազգու զգացում մը պատճառեց։

Մէկը կար՝ որ աս հրապարակական վաճառմունքներուս 'ի զննին կեցողներուն ուշադրութիւնը յատկապէս իրեն կըձգէր։ Ասիկայ էր՝ ան կարմիր մեծ խաչը կրողը, որ գործին երևելի մասը իր վրան առած էր. ու Դոմինիկեան կրօնաւորներու զգեստով հագուած՝ փառացի շարժմունք մը կըցուցընէր։ Քաջահնչիւն ձայն մը ունէր, ու կըթուէր թէ տակաւին կըպահէ իր զօրութեանը առողջութիւնը.

ծառայութեանը և իր կոյր և կատաղի նախանձաւորու-թեանը հետ խառներ էր ամենամեծ յաջողութիւն մը : Այս իր պաշտօնին մէջ մեծապէս իրեն օգնութիւն ըրած բանն էր հրաշալի պատմութիւններ հնարելու յանդգնութիւնը. որով հասարակութեան միտքը կըբռնէր : Ինչ միջոց որ զանէր՝ թէ աղէկ և թէ գէշ, իր գանձանակները լեցունելու կըգործածէր : Իր մեծաղոչ ձայնը մեծցընելով ու անհեթեթ ճառախօսութիւն մը ձգելով՝ բոլոր եկեղեցիներուն կատարէր իր ներողութիւնները, ու տօնավաճառի մը մէջ իր վաճառքները գովաբանող ու և իբրև վարպետ վաճառականի մը կը կերպարանա-ցեր :

Կարմիր խաչը պապին նշանակը սեղանին առջևը բարձ-րանալուն պէս, Տէցել ամպիոնը կելլէր ու իշխանական ե-ղանակով մը կըսկսէր մեծցընել ներողութեան զօրութիւնը ան բազմամբոխ ժողովքին ներկայութեանը՝ որ մեծաշուք հանդէսին արարողութիւնը տեսնելու եկեր էին ան սրբա-զան տեղը. ու բերանները բաց մնացած մտիկ կընէին անոր՝ որ կըքարոզէր իր ներողութիւններուն սքանչելի զօրու-թիւնը : Յիսուսեան կարգէն պատմագիր մը՝ խօսելով ան Գերմանիկեաններուն վրայ՝ որոնք Տէցել իր հետը ընկերա-ցուցած էր, կըսէ. "Անոնք ալ քարոզիչներէն պակաս չէին մնար իրենց ամէն ատենուան սովորութեանը պէս իրենց նիւթը շըլելու, ու ներողութեանց զօրութիւնը այնպէս մեծցընելու, որ ժողովուրդին կըհաւատացընէին թէ իրենց ստակը տուփերուն պէս ապահով պիտի ըլլայ իրենց փըր-կութիւնը, ու հոգիներուն քաւարանէն ազատութիւնը" * :

Թէև որ աշակերտները այսպէս էին՝ կրնանք մտածել թէ ուր հասած պիտի ըլլայ անոնց վարժապետը : Մտիկ ըրէք ան առեւտրականութիւններուն մէկը, որ ինքը ըրաւ խաչը կանգնեցընելէն ետև :

*Hist. du Luthéranisme pa r le Père Maimbourg de la compagnie de Jesus. 1681, p. 21.--Պատմութիւն Լութերականութեան ՚ի Հայր Մէյմպուրկէ, յընկերութենէն Յիսուսի. 1681, եր. 21 :

"Ո՛վ անզգայ ժողովուրդ՝ և գրեթէ անասունի նման, որ այսչափ առատապէս ձեզի մատուցուած շնորհքը չէք իմանար: Այսօր երկինքը ամէն կողմերէն բաց է. կը մերժէ՞ք հիմա հոն մտնելը: Ուրեմն ե՞րբ միտք ունիք ներս մտնելու: Այսօր շատ հոգիներ կրնաք փրկել: Ո՛վ անմիտ ու անհոգ մարդ, տասներկու դահեկանով կրնաս քու հայրդ քաւարանէն ազատել, ու այնչափ ապերախտ ես որ չես ուզեր օգնել անոր: Ահաւոր դատաստանին օրը իմ խիղճս մաքուր պիտի ըլլայ, բայց դուն առաւել սաստկութեամբ պիտի պատժուիս ասանկ մեծ փրկութիւնը զանց ընելուդ համար: Կը վկայեմ որ եթէ միայն մէկ վերարկու մը ունենայիր, կը պարտաւորէիր վրայէդ հանել ու ծախել անիկայ աս շնորհքը ստանալու համար: Մեր Տէր Աստուածը ալ Աստուած չէ. բոլոր իշխանութիւնը պապին տուաւ ինքը":

Ասոնց հետև ուրիշ յորդորանքներու դառնալով ըսաւ. "Գիտէ՞ք արդեօք թէ մեր սրբազնասուրբ Տէրը ինչու համար ասանկ պատուական շնորհք մը կը բաշխէ: Սրբոյն Պետրոսի և Պօղոսի խարխլած եկեղեցին պիտի նորոգուի, անանկ որ բոլոր աշխարհի վրայ անզուգական ըլլայ: Աս եկեղեցին սրբազան առաքելոցն Պետրոսի և Պօղոսի՝ և բազմաթիւ մարտիրոսներու մարմինները կը պարունակէ: Շէնքին ներկայ վիճակին նայելով աս սրբազան մարմինները հիմա, ափսոս, ամէն օր ոտքի տակ կը կոխուին, ջուրերու մէջ կը մնան, կը պղծուին, կանարգուին, ու անձրևին և կարկուտին տակը կը փտին: Ահ, արժա՞ն է որ աս սուրբ աճիւնները այլ ևս տղմին մէջ անարգուած մնալու ձգուին"*:

Աս նկարագրական հանդէսը միշտ ազդու տպաւորութիւն մը կը գործէր շատ ունկնդիրներու վրայ: Անծափափաք իղձ մը կը ծնանէր օգնութիւն ընելու աղքատ Ժ Լե-

*Instruction de l'Archevêque de Mayence aux sous-commissaires de l'indulgence, etc— Պատուէր արքեպիսկոպոսին Մայնցի ստորին գործակալաց ներողութեան, ևն:

ւանքին, որ սրբոյն Պետրոսի և Պօղոսի մարմինները անձրևէն պահպանելու միջոցներ չունէր :

Ատենախօսը այնուհետև յառաջ անցաւ իր նուիրակութեանը հակառակորդները և ուրացողները կշտամբել ու ըսել, "Անոնց ամէնն ալ բանադրուած են" :

Յետքը իր ունկնդիրներուն մէջի դիւրանսաց հոգիներուն գաղնալով՝ ու ամբարշտութեամբ շրջելով Աստուծոյ Բանը, "Երանի՜, ըսաւ, Երանի՜ այն աչքերուն որ ձեր տեսածը կը տեսնեն. վասն զի ձեզի կըսեմ որ շատ մարգարէներ ու թագաւորներ ուզեցին ձեր տեսածը տեսնել՝ ու չտեսան, ու ձեր լսածը լսել՝ ու չլսեցին" : Ու իբրև վախճան իր խօսքին՝ գանձանակը ցուցընելով ընդհանրապէս իր ազդու ատենաբանութիւնը կը վերջացընէր երեք անգամ ժողովուրդը հրաւիրելով, թէ՝ "Դրամ բերէք, դրամ բերէք. դրամ բերէք" : "Այնպիսի զարհուրելի բառաչմամբ կաղաղակէր՝ կըսէ Լուտեր, որ մարդ կրնար կարծել թէ վայրենի ցուլ մը ժողովրդոց մէջ կը վազէ՝ ու իր եղջիւրներովը անոնց կը զարնէ" : Քարոզը վերջացընելուն պէս ամպիոնին աստիճաններէն վար կիջնար, դէպի գանձանակը կը վազէր, ու բոլոր ժողովուրդին առջևը արծաթ դահեկան մը կը ձգէր հոն՝ անոր ձայնը հանելով * :

Այսպիսի էին այն ատենախօսութիւնները որ Գերմանիա զարմանալեօք կը լսէր այն օրերը, երբոր Աստուած կը պատրաստէր Լուտերը :

Քարոզը կը լրանար, ներողութիւնը պատշաճաւոր արարողութեամբ իր աթոռը այն նոյն տեղը հաստատած կը համարուէր : Խոստովանարաններ կը պատրաստուէին պապին նշանովը դրոշմուած, ու իւրաքանչիւր խոստովանարանի վրայ անոր յատկացեալ խոստովանահօր անունը և մականունը նշանակուած † :

* Պատմութիւն արքեպիսկոպոսին Մայնցի, [illegible] :
† Սնգ. 5,69 :

Անատեն ժողովուրդը գունդագունդ կըդիմէր խոստովանահայրերուն , ամէն մէկը իր ստակը ձեռքը բռնած . երիկ մարդիկ կնիկ մարդիկ՝ նորահասները՝ չքաւորները ու ողորմութիւնով ապրողները , ամէնն ալ ստակ կըգտնէին անատենը ։ Արձակում տուող քահանան ներողութեան կոնդակը վերստին գովաբանելէն ետև այսպէս կըխօսէր ապաշխարողներուն . "Ձեր խղճմտանքովը որչափ ստակ կրնաք տալ ասանկ կատարեալ ներողութիւն մը ստանալու համար" ։ "Աս խնդիրը պէտք է ան նոյն րոպէին առաջադրուիլ՝ կըսէ Մայնցի արքեպիսկոպոսը՝ գործակալներուն աւանդած իր Պատուէրին մէջը , որպէս զի ապաշխարողները աղէկ պատրաստուին առատ տուրք տալու" ։

Խոստովանութիւնը լմնալուն՝ որ շուտով կըկատարուէր , կրօնասէր ժողովուրդը վաճառականին կըվազէր ։ Միայն մէկ հոգիի մը յանձնուած էր կոնդակները ծախելը ։ Ասիկայ իր ստակի սեղանը խաչին քովը դրած էր , ու հետազօտական նայուածք մը կըձգէր եկողներուն վրայ ։ Ասոնց շարժուածքը՝ քալուածքը ու հանդերձը կընկատէր , ու ան երեւոյթին յարմար գումար մը կըպահանջէր եկողներէն ։ Թագաւորները՝ թագուհիները՝ իշխանները՝ արքեպիսկոպոսները՝ եպիսկոպոսները ևն. , հասարակ ներողութեան մը համար քսանըհինգ տուգան պիտի վճարէին . վանահայրերը՝ կոմսերը՝ պարոնները ևն. , տասը տուգան ։ Ուրիշ ազնուականները՝ ժողովրդապետները՝ և ամէն անոնք որ տարին 500 ֆիորինի եկամուտ ունէին , պիտի տային վեց տուգան . 200 ֆիորինի եկամուտ ունեցողը պիտի տար մէկ տուգան . Մնացեալները կէս ֆիորին ։ Իսկ ուրիշներուն համար՝ որոնց վրայ աս կարգադրութիւնը կարելի չըլլար պահուիլ , առաքելական գործակալին կատարեալ իշխանութիւն տրուած էր , և բոլոր բանը ինքը պիտի կարգի դնէր "իմաստուն դատողութեան թելադրածին" ու տուողին առատասրտութեանը համեմատ ։ Մանաւոր մեղքերու համար Տէցել զատ կարգադրութիւն

ունէր ։ Նաշմակնութեան մեղքին գինը վեց տուգաթ էր ․ որբապղծութեան ու սուտ երդումին ինը տուգաթ ․ սպաննութեան՝ ութը ․ կախարդութեան՝ երկու ։ Սամսոն՝ որ Զուիցերիի մէջ նոյն վաճառականութիւնը կընէր ինչ որ Գերմանիայի մէջ Տեցել կընէր, քիչ մը տարբեր կարգադրութիւն ունէր ։ Անիկայ որդեսպանութեան համար կըպահանջէր չորս լիրա, հայրասպանութեան կամ եղբայրասպանութեան համար մէկ տուգաթ *։

Առաքելական գործակալները երբեմն իրենց առուտուրին մէջ դժուարութիւններու կըպատահէին ։ Շատ անգամ կըլլար որ քաղաքներուն ու գեղերուն մէջ էրիկ մարդիկ հակառակութիւն կընէին, ու իրենց կնիկները կարգիլէին որ բան մը չտանին աս վաճառականներուն ։ Ասանկ բան մը որ ըլլար՝ անոնց կրօնասէր լծակիցները ի՞նչ ընելու էին ։ Վաճառականները կըհարցընէին անոնց թէ "Ձեռքերնիդ ձեր ամուսնութեան բաժինը կամ ուրիշ ստացուածք մը չունի՞ք ։ Թէ որ ունիք, ասանկ սրբազան գործի մը համար կրնաք զանոնք գործածել առանց ձեր էրկանը հաճութիւն ունենալուն" † ։

"Ներողութիւնը տուող ձեռքը կարող չէր ստակ ընդունելու ․ ասիկայ սաստիկ պատժով արգիլուած էր ։ Արդարացի պատճառով կըվախցուէր որ ան ձեռքը ամէն ատեն հաւատարիմ չմնար ։ Ապաշխարողը իր ընդունած ներողութեան գինը իր ձեռքովը գանձանակը պիտի ձգէր ‡ ։

Զայրագին նայուածք մը կըձգուէր անոնց վրայ՝ որոնք կըհամարձակէին գոցել իրենց քսակներուն բերանը ։

Խոստովանութեան եկողներուն մէջ ։ Թէ որ մէկը ըլլար որուն յանցանքները հրապարակաւ իմացուած՝ բայց տակաւին քաղաքական օրէնքով դատուած չըլլային, այսպիսի անձը կըպարտաւորէր նախ և առաջ հրապարակական ա-

* Muller's Reliq. Հատ. Գ. Եր. 264 ։
† Պատուէր արքեպիսկոպոսին Մայնցի, Թ. 27 ։
‡ Անդ. 87, 90, 91 ։

պաշխարանք կրել ։ Ամիկայ մատուռ մը կամ աւանդատուն մը կը տարուէր․ Հոն իր լաթերը վրայէն կը հանէին, կօշիկները ոտքերէն կը քաշէին, ու կը մնար իր շապիկովը ։ Թեւերը իր կուրծքին վրայ ծալլել տալով մէկ ձեռքը ճրագ մը ու միւս ձեռքը կերոն մը կու տային ։ Այնուհետեւ Թափօր կը կազմուէր, ու ապաշխարողը անոր առջեւը անցած դէպի կարմիր խաչը կերթային ։ Անկէն վրայ կու գար մինչեւ երգին ու աւուր պատշաճի աղօթքին կատարումը, անկէ ետեւ ներողութեանց գործակալը կըսկսէր "Ողորմեա ինձ Աստուած" սաղմոսը ։ Ամիկայ սկսուածին պէս խոստովանահայրերը ապաշխարողին՝ քովը կու գային՝ ու կը տանէին զանիկայ ան գործակալին առջեւը, որ գաւազանը առնելով ու երեք անգամ կամաց մը անոր կռնակին զարնելով * կըսէր․ "Աստուած ողորմի քեզի, ու ներէ քու մեղքդ" ։ Անկէ ետեւ կըսկըսէր Կիւրիէ Էլէյսօն ։ Վերջը ապաշխարողը ետ տանելով ու խաչին առջեւը կանգնեցընելով՝ խոստովանահայրը անոր արձակում կու տար, ու հաւատացելոց ընկերութեանը մէջ վերստին հաստատուած ըլլալը անոր կիմացընէր ։

Աս տեղս կը դնեմք արձակման Թղթերուն մէկին օրինակը․ արժան է գիտնալ Թէ ինչ կը պարունակէին աս պապական հրամանագիրները, որոնք առիթ եղան Բարեկարգութեան ։

"Տէրն մեր Յիսուս Քրիստոս ողորմի քեզի՝ Ն․ Ն․ ու
"իր ամենասուրբ չարչարանքներուն արդիւնքներովը ար-
"ձակէ զքեզ ։ Ես ալ՝ ինծի տրուած առաքելական իշխա-
"նութիւնովը կարձակեմ զքեզ բոլոր եկեղեցական դատա-
"պարտութիւններէն՝ պատիժներէն ու պատուհասներէն՝
"որոնց դուն արժանի էիր․ եւ դարձեալ ամէն յանցանքնե-
"րէն՝ մեղքերէն ու չարիքներէն՝ որ գործեր էիր, որչափ
"մեծ եւ եղեռնաւոր եւ ինչ տեսակ ըլլան անոնք, Թէ եւ

* Պատուէր արքեպիսկոպոսին Մայնցի, ԽԶ ։

"մինչև սրբազան հօրն մերոյ պապին՝ և Առաքելական Ա-
"թոռին վերաբերին : Այսանկ գործքերով քու վրադ բե-
"րած խայտառակութեան բոլոր նշմարանքներդ ու տկա-
"րութեան բոլոր բիծերդ կը ջնջեմ · Քաւարանին մէջ քա-
"շելու բոլոր ցաւերդ կը վերցընեմ : Դարձեալ կընդունիմ
"զքեզ Եկեղեցւոյ խորհուրդներուն : Այսով վերստին կը
"միաւորեմ զքեզ սուրբերուն հաղորդութեանը , ու կը
"դարձընեմ զքեզ քու մկրտութեանդ անմեղութեանը և
"մաքրութեանը · անանկ որ մահուան րոպէին տանջանաց
"տեղին դուռը քու դէմդ գոցուի , և ուրախութեան դրախ-
"տին դուռը քեզի բացուի : Իսկ թէ որ երկար ապրիս , աս
"շնորհքը անփոփոխ մնայ մինչև քու վախճանդ :

"Յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ · Ամէն :

"Եղբայր Յովհաննէս Տեցել գործակալ ստորագրեց "ասիկայ իր ձեռօքը" :

Բոլոր կրօնասէրները պիտի գային ու խոստովանէին ան նոյն եկեղեցւոյն մէջ ուր որ կարմիր խաչը տնկուած էր : Միայն հիւանդները՝ ծերերը՝ ու յղի կանայք կրնային ազատ մնալ անձամբ հոն գալէն : Բայց և այսպէս՝ թէ որ մօտ տեղուանք ազնուական մը ըլլար իր բերդին մէջ կամ հարուստ մարդ մը իր պալատին մէջ , անոր անձամբ ներկայանալուն ազատութիւն շնորհուած էր : Քանզի կարելի է որ փոյթ չէր ըներ աս խուժանին հետ խառնուելու , ու իր ստակը բաւական արժողութիւն ունէր իր բնակարանէն գալու աշխատանքին * :

Թէ որ վանք մը ըլլար՝ որուն մեծաւորները Տեցելին վաճառականութիւնը քամահրելով իրենց միաբանները արգիլէին ներողութիւն տրուած տեղուանքը երթալու , ասոր ալ ճարը գտնելու միջոցներ հնարուած էին : Խոստովանահայրեր կը խրկուէին անոնց , որոնք արտօնութիւն ունէին անոնց կարգին կանոններուն ու անոնց մեծաւորնե-

* Պատմութիւն բարենորոգութեան Մերլ Տօպինեէ, Ա. 9 :

րուն կամացը դէմ արձակում տալ անոնց*: Հանքին մէջը չփնտռուած երակ մը չէր ձգուեր:

Անատեն կարգը կուգար անոր՝ որ բոլոր գործին նպատակը ու վախճանն էր, այսինքն՝ ստակը համբելու: Բոլոր վտանգներուն դէմ զգուշութիւն բանեցընելու համար գանձանակը երեք բանալի ունէր: Մէկը Տէցէլի քովն էր, միւսը Աւկսպուրկի Ֆուգէր ըսուած գերդաստանէն խըրկուած գանձապետին քովը՝ որ ատենով աս ընդարձակ գործին մենավաճառն էր ան գերդաստանը, ու երրորդը քաղաքական իշխանի մը քով պահուած էր: Երբոր սահմանուած օրը հասնէր, հրապարակական ատենադպրի մը առջևը սնտուկը կըբացուէր, ու բոլոր մէջինը զգուշութեամբ կըհամրուէր ու տումարներու մէջ կըգրուէր: Այսելուչ չէ՞ր ըլլար որ Քրիստոս ելլեր, ու տաճարէն դուրս ընէր աս գնողները և վաճառողները:

Նուիրակութիւնը լրանալուն՝ վաճառականները իրենց աշխատութենէն ետև ինքզինքնին զբօսանքի կուտային: Իրաւ ընդհանուր գործակալին պատուէրները հրաման չէին տար անոնց գինետուններն ու վատանուն տեղուանք մտնել ելլելու†, բայց անոնք բանի տեղ չէին դներ աս արգելքը: Մեղքը քիչ երկիւղ տուած պիտի ըլլար ան մարդոցը, որոնք այսպէս դիւրին վաճառականութիւն մը կընէին անոր մէջը: "Մուրացկան վարդապետները խառնագնաց կեանք մը կըվարէին, կըսէ հռովմէադաւան պատմագիր մը‡. ինչ որ ժողովուրդը իրենց չքաւորութենէն աւելցուցեր էր, անոնք գինետուններուն՝ խաղի տուներուն՝ ու վատահամբաւ բնակարաններու մէջ կըվատնէին": Կը հաստատուի ևս թէ գինետուններուն մէջ երբեմն նարտ կը խաղային անոնք հոգիներուն փրկութեանը:

* Պատուէր արքեպիսկոպոսէն Մայնցի, ՃԱ. 69:
† Անդ, 4:
‡ Sarpi, Conc. de trente, p. 5.— Սարփի, Պատմ. Տրիդենտեան ժողովոյն, եր. 5:

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԲԱՅՑ նայիմք թէ աս մեղաց թողութիւն վաճառելը ինչ տեսարաններ յարոյց Գերմանիայի մէջ ։

Սանկտէպուրկի մէջ Տէցէլ չուզեց արձակում տալ հարուստ տիկինի մը թէ որ հարիւր ֆիօրին չհատուցանէ կանխիկ ։ Աս բանիս համար տիկինը հարցուց իր յատուկ խոստովանահօրը որ Ֆրանչիսկեան կրօնաւոր մըն էր ։ "Աստուած ձրի կուտայ մեղաց թողութիւն, անիկայ չծախեր ան" ․ պատասխան տուաւ խոստովանահայրը ։ Եւ սակայն աղաչեց տիկինին որ իր ըսածը Տէցէլին չխօսի ։ Բայց Տէցէլի շահերուն այսչափ հակառակ կարծիքի մը լուրը իր ականջը հասնելուն՝ ըսաւ, "Այսպիսի խրատ տուողը աքսորուելու կամ ողջ ողջ այրուելու արժանի է" ։

Տէցէլ քիչերը կըգտնէր բաւականապէս լուսաւորուած, և առաւել քիչերը որ կըհամարձակէին իրեն հակառակելու ․ ու ինքը դիւրութեամբ կրնար կառավարել աւելորդապաշտ ժողովուրդը ։ Ներողութեանց կարմիր խաչը Յուփկաւի մէջ տնկեց, ու ան տեղի կրօնասէր ժողովուրդը փութացին բերել ան սնտուկը որ ազատութիւն պիտի շնորհէր հոգիներուն ։ Լեցուն քսակով անկէց ելլելու որ եղաւ, եկեղեցիին քահանաները ու դպիրները առջի իրիկունէ եկան և ուզեցին որ բարեաւ մնայի խնջոյք մը ընէ իրենց ։ Ըրած խնդիրնին օրինաւոր էր ․ բայց ինչպէս պէտք էր կատարել զանիկայ ․ սնտուկը արդէն համրուած ու կնքուած էր ։ Հետեւեալ առաւօտուն Տէցէլ մեծ զանգակը զարնել տուաւ ․ ժողովուրդը սրտորալով եկեղեցին թափեցաւ, ու ամէն մէկը կըմտածէր որ կարգէ դուրս բան մը պատահած պիտի ըլլայ, որովհետև Տէցէլին հոն բնակելու ժամանակը լրացեր էր ։ "Այս առտու պիտի ելլէի ասկէց՝ ըսաւ Տէցէլ ժողովուրդին, բայց գիշերս ողորմելի հեծութիւններու ձայնով արթընցայ, ու ականջ դրի որ գերեզմանատունէն կուգար ան ձայնը ։ Բարէ, ողորմելի հոգի մըն էր որ կան-

չեց ինծի, ու աղաչեց ազատիլ ան տանջանքէն որ կըմաշեցըներ զինքը։ Անոր համար այսօր ալ մնացի, որ Քրիստոնէից սրտերը շարժեմ՝ աս խղճալի հոգիին ողորմելու։ Ամենէն առաջ ես կուտամ. բայց ան որ իմ օրինակիս չհետեւիր, արժանի է ամէն դատապարտութիւններու"։ Ո՞ր սիրտ պիտի չհամաձայնէր ասանկ հրաւէրքի մը. մանաւանդ որ ո՞վ գիտէր թէ ո՛ր հոգին էր որ այսպէս կըդոչէր գերեզմանէն։ Տուրքերը առատ եղան. ու Տէցէլ քահանաներուն եւ դպիրներուն հետ խնդալից խնջոյքի մը նստաւ, որուն ծախքը Յուիկաւի ողորմելի հոգիին ազատութեանը համար տրուած տուրքերն էին։

Ներողութեանց վաճառականները 1517ին Հագենօ քաղաքը հաստատեցին իրենց բնակութիւնը։ Կօշկակարի մը կինը ընդհանուր գործակալին կարգադրութեամբը տրուած թղլտուութենէն շահուելով՝ իր երկանը կամքին դէմ ներողութեան կոնդակ մը առաւ, ու ոսկի փիօրին մը վճարեց անոր համար։ Շատ չանցած կինը մեռաւ. ու երեկը անոր հոգւոյն հանգստեանը համար պատարագուց տուած չըլլալով՝ ժողովրդապետը ամբաստանեց անոր վըրայով թէ կրօնքը կարհամարհէ, ու Հագենոյի դատաւորը ատեանի կոչեց զանիկայ։ Կօշկակարը իր կնոջը առած ներողութեան թուղթը ծոցը դրաւ, ու ատեանը ելաւ։ "Քու կինդ մեռա՞ւ", հարցուց դատաւորը։ "Այո", պատասխան տուաւ կօշկակարը։ "Ի՞նչ ըրիր զանիկայ". կրկնեց դատաւորը։ "Իր մարմինը թաղեցի, ու իր հոգին Աստուծոյ յանձնեցի". ըսաւ միւսը։ "Բայց անոր հոգւոյն փրկութեանը համար պատարագ ըներ տուի՞ր"։ "Ոչ, հարկաւոր չէր. մեռած րոպէին երկինքը գնաց ան"։ "Ինչպէս գիտես ատիկայ"։ "Ահա անոր վկայութիւնը" ըսաւ այրի մարդը, ու իր ծոցէն հանեց թուղթը։ Դատաւորը ժողովրդապետին առջեւը կարդաց զանիկայ՝ թէ աս թուղթը առնող կինը իր մահուանը րոպէին պիտի երթայ ո՛չ քաւարանը, այլ շիտակ երկինքը։ "Մէ՛ որ ժողովրդապետը կըպնդէ թէ

ասոր վրայ պատարագ ընել տալ պէտք է, ըսաւ կօշկակարը, սրբազան հայրն մեր պապ իմ կինս խաբած է. բայց՝ թէ որ կինս խաբուած չէ, ուրեմն ժողովրդապետը զիս խաբելու եկեր է”: Աս խօսքին պատասխան տուող չեղաւ, ու ամբաստանեալը թող տրուեցաւ: Ահա ասանկ ճարտարմտութիւնով հասարակութիւնը աս խաբէութիւններէն զիրենք կազատէին:

Օր մը՝ երբոր Տեցել Լիփսիայի մէջ կըքարոզէր՝ ու իր քարոզութեանը մէջ քանի մը պատմութիւններ խառնեց որոնց մէկ օրինակը վերը դրինք, համալսարանին աշակերտներէն երկու հոգի սրտմտելով եկեղեցիէն դուրս ելան ըսելով. “Հնար չէ որ այլ եւս մտիկ ընեմք աս վարդապետին ծաղրական ու տղայական առասպելները”: Կըհաստատուի թէ աս աշակերտներուն մէկն էր՝ Կամերարիոս, որ՝ ետքը Մելանկտոնի բարեկամը եղաւ, ու անոր վարքը գրեց:

Բայց ան ատենին բոլոր երիտասարդներուն մէջէն զօրաւոր տպաւորութիւն մը գործեց Տեցել Փրիդերիկոս Միկոնիոսի վրայ, որ յետ ժամանակաց եղաւ հռչակաւոր Բարեկարգող և պատմագիր Բարեկարգութեան: Միկոնիոս կրօնքին վարժութիւնը ընդունած էր: Իր հայրը՝ որ Ֆրըռանկոնեացի բարեպաշտ մարդ մըն էր, շատ անգամ կըսէր. “Որդեակ, ստէպ աղօթէ. վասն զի ամէն բան ձրի կըտրուի մեզի միայն Աստուծմէ: Բոլոր աշխարհի մեղքերուն մի միայն գինը Քրիստոսի արիւնն է: Ով որդեակ, թէ որ Քրիստոսի արիւնովը՝ միայն երեք մարդ ըլլային փրկուելու, միայն հաւատա, ու ապահով եղիր որ ան երեքին մէկը դուն պիտի ըլլաս: Փրկիչին պատուական արեանը նախատինք է անոր փրկագործ զօրութեանը վրայ տարակուսիլը”: Այնուհետև Գերմանիայի մէջ սկսուած առուտուրին վրայ իր որդին զգուշացընելու յառաջանալով՝ կըսէր, “Հռովմէական ներողութիւնները ուռկան են ստակ որսալու, ու պարզամիտները խաբելու: Մեղաց թողութիւնը ու յաւիտենական կեանքը ստակով ծախու չեն առնուիր”:

Փրիդերիկոս տասնեւերեք տարեկան ըլլալուն Աննապէրկի դպրոցը ղրկուեցաւ իր ուսմունքները լրացընելու։ Շատ չանցած Տէցէլ այս քաղաքը հասաւ, ու երեք ամիս մնաց հոն։ Ժողովուրդը խուռն բազմութեամբ կերթար իր քարոզութիւնը լսելու։ "Յաւիտենական կեանքը ստանալու ուրիշ միջոցներ չկան, կը գոչէր Տէցէլ որոտաձայն եղանակով մը, բայց եթէ քաւութիւն բարեգործութեամբ. սակայն ասանկ քաւութիւնք մարդուս կարողութենէն դուրս է։ Իր մի միայն ճարը հռովմէական քահանայապետէն զանիկայ ծախու առնելն է"։

Երբոր Տէցէլ Աննապերկէն ելլելու վրայ էր՝ իր բողքը առաւել ազդու եղաւ. "Շուտով՝ կըսէր սպառնական ձայնով մը, վար պիտի առնեմ այս խաչը, ու գոցեմ երկնից դռները, ու շիջուցանեմ այն շնորհաց արեգակը որ կը ճառագայթէ ձեր աչքերուն առջեւ"։ Անկէ եւս մեղմագոյն եղանակով մը ժողովուրդը յորդորել ուզելով, կըսէր. "Ասիկայ է փրկութեան օրը, ասիկայ է ընդունելի ժամանակը"։ Անատենը իր ձայնը բարձրացուցած առատ հանքեր ունեցող այն երկրին բնակիչներուն պոռալով կըսէր, "Աննապերկի բնակիչներ, դրամ բերէք. առատաձեռն տուրքով օգնութիւն ըրէք ներողութիւններուն, ու ձեր բոլոր հանքերը ու լեռները զուտ արծաթով պիտի լցուին"։ Վերջապէս Զատկի տօնախմբութեանը հրատարակեց որ իր ներողութեան կոնդակները աղքատներուն պիտի տայ ձրի, և Աստուծոյ սիրոյն համար։

Նորահաս Միկոնիոսը ունկնդիրներուն մէջ գտնուելով, այս ձրի շնորհքիս պատեհութիւնը չկորսնցունելու փափաք մը ունեցաւ։ "Աղքատ մեղաւոր մըն եմ ես, ըսաւ Լատինական լեզուով ներողութեանց գործակալներուն, ու կը կարօտիմ ձրի ներողութիւն մը առնելու"։ Վաճառականները պատասխան տուին, "Միայն անոնք կրնան Քրիստոսի արդիւնքներուն բաժանորդ ըլլալ, որոնք Եկեղեցիին օգնելու կերկընցունեն ձեռքերնին, այսինքն՝ ո-

թանք իրենց ստակը կուտան" : "Ուրեմն ի՞նչ կընշանակեն ձրի բաժնելու ան խոստմունքները որ եկեղեցիներուն դըռներուն ու պատերուն վրայ կախուած են" , ըսաւ Միկոնիոս : "Գոնէ դաշնեկան մը տուր" , ըսին Տէցէլի մարդիկը, պարապ տեղը պատանիին համար իրենց մեծաւորին աղաչելէն ետքը : "Չեմ կրնար" , ըսաւ Միկոնիոս : "Միայն վեց դենար" , ըսին մէկալները : "Այդչափն ալ չունիմ" , ըսաւ պատանին : Դոմինիկեանները անատենը սկսեցին վախնալ որ պատանին որսալ կուզէր զիրենք : "Մտիկ ըրէ , ըսին , մենք տամք քեզի վեց դենար" : Ասոր վրայ պատանին իր ձայնը վերցուց , ու սրտմտութեամբ ըսաւ անոնց . "Չեմ ուզեր ես ան ներողութիւնները որ գնոյ կառնուին ու կը ծախուին : Թէ որ ուզէի գնել զանոնք , միայն իմ գրքերուս մէկը կըծախէի ու կըգնէի . իմ ուզածս է՝ ձրի , և միայն Աստուծոյ սիրոյն համար ներողութիւն : Աստուծոյ առջևը համար պիտի տաք դուք , որ վեց դենարի համար հոգիի մը փրկութիւնը զանց կընէք" : "Ա՜հ , ա՜հ , ըսին , ո՞վ քեզ խրկեց մեզ որսալու" : "Ոչ մէկը , պատասխանեց պատանին . միայն Աստուծոյ շնորհքը ընդունելու փափաքը զիս յորդորեց այսպիսի մեծ տէրերու առջև երևալու" : Աս ըսելով թողուց զանոնք ու գնաց :

"Մեծապէս վշտացայ , կըսէ , որ ասանկ առանց ողորմութեան դատարկ ետ խրկուեցայ : Բայց զգացի որ իմ ներսս Մխիթարիչ մը կար , որ լռութեամբ կազդէր ինծի թէ երկինքը Աստուած մը կայ որ զղջացած հոգիներուն առանց ստակի ու առանց գնոյ ներողութիւն կուտայ , իր Որդւոյն Յիսուս Քրիստոսի համար : Աս մարդիկը որ ձգեցի , Հոգին Սուրբ իմ սրտիս դպաւ : Աչքերս արցունք մը փլաւ , ու հեծութիւններով և հառաչանքներով այսպէս աղօթեցի առ Տէր . Աստուած իմ , աս մարդիկը չուզեցին թողութիւն տալ իմ մեղքերուս , վասն զի ստակ չունէի հատուցանելու . դուն Տէր , ողորմէ ինծի , ու միայն քու ողորմութեամբդ ներէ զանոնք : Իմ սենեակս մտայ , գրա-

սեղանէս իմ խաչելութիւնս հանեցի , աթոռիս վրայ դրի զանիկայ , ու անոր առջևը ծունկի վրայ եկայ ։ Չեմ կրնար աս տեղս նշանակել իմ զգացածս ։ Խնդրեցի Աստուծմէ որ ինքը իմ հայրս ըլլայ , ու ինչ որ կուզէ ան ընէ զիս ։ Զգացի որ իմ՝ բնութիւնս փոխուեցաւ , նորոգեցաւ ու շրջեցաւ . ու ինչ որ առաջ զիս կըզմայլեցընէր , հիմա ինծի անախորժ եկաւ ։ Աստուծոյ հետ ապրիլը ու անոր կամքը կատարելը , իմ խիստ ջերմեռանդ՝ իմ մէկ հատիկ փափաքս եղաւ" ։

Այսպէս՝ Տէցէլ ինքը կըպատրաստէր Բարեկարգութիւնը ։ Գայթակղեցուցիչ գործերով ճամբայ բացաւ աւելի մաքուր ուսման . ու նորահաս մտքերուն մէջ իր յարուցած ան ազնիւ պատմութիւնը ազդու զօրութեամբ երևան պիտի ելլէր օր մը ։ Ասիկայ կրնամք իմանալ հետևեալ դիպուածովը ։

Սաքսոնացի ազնուական մը Լիփսիայի մէջ Տէցէլին քարոզութիւնը լսեր էր , ու անոր խաբէութիւններովը մեծապէս խռովեր էր ։ Ասիկայ գնաց վարդապետին , ու հարցուց անոր թէ արդեօք իշխանութիւն ունի՞ թողութիւն տալ ան մեղքերուն՝ որ ինքը միտքը դրած է գործելու . "Անշուշտ , պատասխան տուաւ Տէցէլ . սրբազան պապէն կատարեալ իշխանութիւն ունիմ այսպէս ընելու" ։ "Ուրեմն՝ ըսաւ ազնուականը , իմ թշնամիներուս մէկէն թեթև վրէժխնդրութիւն մը պիտի ընեմ , առանց վնասելու անոր կեանքին ։ Թէ որ ինծի ներողութեան գիր մը տաս որ զիս բոլորովին արդարացընէ , տասը ոսկի կու տամ քեզի" ։ Տէցէլ քիչ մը դիմացաւ , ու երեսուն ոսկիի կտրեցին իրենց սակարկութիւնը ։ Քանի մը օրէն ետև վարդապետը Լիփսիայէն ճամբայ ելաւ ։ Ազնուականը իր ծառաներովը ճամբուն վրայ անտառի մը մէջ պահուելով , Տէցէլին վրայ յարձակեցաւ , աղէկ ծեծ մը քաշեց անոր , ու ներողութեանց ստակին լեցուն սնտուկը՝ որ իր հետը կըտանէր , ձեռքէն առաւ ։ Տէցէլ աս բռնական յարձակմանս դէմ

դատաւորներուն բողոքեց . բայց ազնուականը Տէցէլին ձեռօքը ստորագրուած գիրը ցուցուց , որ առաջուց ազատութիւն շնորհած էր անոր ամէն կերպ պատասխանատուութիւններէ ։ Կէորգ դուքսը որ առաջ շատ գրգռուած էր աս գործին վրայ , աս գիրը տեսնելուն հրաման ըրաւ որ ամբաստանեալը թող տրուի ։

Աս առուտուրը ամէն տեղ ժողովրդոց միտքերը կը շարժէր , ու ամէն տեղ քննութեան տակ ինկած էր ։ Պալատներուն՝ դպրոցներուն ու մասնաւոր տուներուն մէջ , ինչպէս և իջևաններուն՝ գինետուններուն և բոլոր ժողովատեղիներուն մէջ խօսակցութեան նիւթ եղած էր ։ Կարծիքները բաժնուած էին . ոմանք կը հաւատային , ոմանք կը բարկանային ։ Բայց ազգին խելացի մասը զզուելով երես կը դարձընէր ներողութեանց բոլոր ընթացքէն ։ Աս վարդապետութիւնը այնպէս հակառակ էր թէ Սուրբ Գրքերուն և թէ բարոյականութեան , որ ամէն անոնք՝ որոնք կամ Աստուածաշունչի վրայ տեղեկութիւն և կամ գոնէ բնական լոյս ունէին , արդէն իրենց սրտերուն մէջ դատապարտած էին զանիկայ , ու միայն նշանի մը կը սպասէին յայտնի հակառակելու անոր ։ Ուրիշ կողմանէ՝ ծաղրածուները ընդարձակ պատճառ մը գտան ծաղրաբանութեան ։ Ժողովուրդը՝ որ եկեղեցականներուն անկարգ վարքին վրայ այսչափ տարիներէն հետէ զայրացած էր , և որ միայն պատիժին երկիւղովը արտաքին ակնածութեան մէջ մնացած էր , իր բոլոր թշնամութիւնը սկսեց երևցընել , ու ամէն կողմանէ կը լսուէին եկեղեցականները խանգարող արծաթսիրութեան վրայ գանգատներ և երգիծաբանութիւններ ։

Եւ ոչ այսչափ միայն , այլ և սկսեցին բանալիներուն զօրութեանը ու ծայրագոյն քահանայապետին իշխանութեանը վրայով հակառակիլ ։

“Ինչ որ պապը , կըսէին , ապաշխարանաց շահի ու սրբոյն Պետրոսի եկեղեցւոյն համար այսչափ հոգիներ կրնայ ա-

զատել քաւարանէն, ինչո՞ւ համար անոնց ամէնը մէկէն չազատեր անկէց՝ սրբազան կարեկցութիւնով մը, ու ան հոգիներուն անհնարին թշուառութեանը համար։ Ինչո՞ւ համար տօներ ու տարեդարձներ կըկատարեմք ննջեցելոց համար։ Ինչո՞ւ համար պապը ետ չդարձըներ, կամ չթողուր ժողովուրդին որ ետ առնեն ննջեցելոց հոգւոց համար հաստատուած տուրքերը և թոշակները, որովհետև ալ հիմա անօգուտ և մեղք ալ է աղօթք ընել անոնց համար՝ որոնց որ ներողութիւնները յաւիտենական ազատութիւն շնորհեցին։ Ի՞նչ պիտի ըլլայ Աստուծոյ ու պապին աս նոր տեսակ սրբութիւնը, որ ստակի պատճառով անօրէն մարդու մը ու Աստուծոյ թշնամիին իշխանութիւն կուտան քաւարանէն բարեպաշտօն հոգի մը՝ Տէրոջը մէկ սիրելին ազատել. ու իրենք ձրիապէս չեն ազատեր զանիկայ շարժեալ 'ի սիրոյ, ու անոր անհնարին թշուառութեանը համար"։

Ներողութեանց վաճառականներուն անտեղի և անվայել ընթացքը ամէն տեղ լուեր էր։ Կըպատմուէր թէ կառավարներուն՝ որ զիրենք ու իրենց բեռները կըտանէին, իջևանի տէրերուն՝ որոնց բնակարանը կիջնային, կամ ո և իցէ մէկու մը՝ որ իրենց կըծառայէր, ներողութեան գիր մը կուտային չորս՝ հինգ՝ կամ անոնց ուզածին չափ հոգիներու փրկութեան համար։ Այսպէս՝ փրկութեան կոնդակները փոխանակագիրներու կամ թղթէ ստակներու պէս իջևաններուն ու վաճառատուններուն մէջ կըպտըտէին։ "Իրենց քարոզներուն սկիզբը՝ մէջը ու վերջը՝ Դրամ Բէրէ-է". կըսէր հասարակ ժողովուրդը։

Շնէկպէրկի հանքագործ մը ներողութեանց վաճառողի մը պատահելով հարցուց անոր. "Պարտի՞մք հաւատալ ներողութեանց զօրութեանը ու պապին իշխանութեանը վըրայով քու յաճախ զրուցածիդ, ու մտածել որ գանձանակը դահեկան մը ձգելով քաւարանէն հոգի մը կըրնամք ազատել"։ Ներողութեանց վաճառականը ասոր ասանկ ըլլալը հաստատեց։ "Ա՜հ, ըսաւ հանքագործը, ի՜նչ

անողորմ մարդ պիտի ըլլայ պապը որ չնչին դահեկանի մը համար ողորմելի հոգի մը այսպէս կըթողու բոցերուն մէջ այսչափ երկար չարչարուելու ։ Խնէ որ պատրաստ ստակ չունի, քանի մը հարիւր հազար ոսկի թող փոխ առնէ, ու բոլոր հոգիները մէկէն ազատէ ։ Մինչև անգամ մենք աղքատ ժողովուրդներս յօժար կամքով կըվճարէինք իրեն թէ գլուխը և թէ շահը"։

Գերմանիայի ժողովուրդը ձանձրացեր էր աս ամօթալից առուտուրէն որ իրենց մէջը յառաջ կերթար ։ Աս հռովմէական առաքելաքաններուն խաբէութիւնները ալ չէին կրնար տանիլ անոնք ։ Եւ սակայն ոչ եպիսկոպոս մը կամ Աստուածաբան մը կըհամարձակէր մատ խառնել անոնց ստութեանը կամ խաբէութեանը մէջ ։ Մարդոց հոգիները տարակուսութեան մէջ էին մնացեր․ մէկ մէկու կըհարցընէին թէ արդեօք Աստուած զօրաւոր գործիք մը պիտի չհանէ՞ ան գործին համար որ հարկ էր կատարուելու․ բայց ասանկ մէկը մէկ տեղ մը չէր երևէր ։

## ՀԱՏՈՒԱԾ Գ

ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱԿԱՆ աթոռը նստող պապը ան միջոցին՝ ոչ թէ Բորգիայի պէս մէկն էր՝ այլ Ժ Լևոն, Մէդիչեանց հռչակաւոր գերդաստանէն ։ Տաղանդի տէր մարդ էր, անկեղծ, մարդասէր և ներողամիտ ։ Իր կենցաղավարութիւնն էր քաղցրաբարոյ, առատաձեռնութիւնը անսահման, ու վարքը՝ լաւագոյն քան թէ իր պալատականներունը․ բայց կարդինալ Պալլավիչինի կըխոստովանի թէ բոլորովին անմեղադրելի չէր ան ։ Աս պատուական որպիսութիւններուս վրայ աւելցուցեր էր և մեծ իշխանի մը շատ կատարելութիւնները․ արհեստներուն և գիտութիւններուն յատկապէս մեծ պաշտպանն էր ։ Իտալերէն կատա-

կերգութիւններուն առաջինները իր առջեւը կատարուեցան, ու իր ատենի եղածներուն գրեթէ ամենն ալ իր ներկայութեանը արժանի եղան։ Զարդապայման սէր ունէր երաժըշտութեան. իր պալատը նուագարաններու ձայնով ամէն օր կը հնչէր, ու շատ անգամ կը լսուէր որ իր առջեւը երգուած եղանակները իր առանձնութեանը մեղմ ձայնով կըկրկնէր։ Մեծագործութեան սիրով անխնայ ծախք կընէր խնջոյքներու՝ հրապարակական հանդէսներու՝ թատրոնական խաղարկութիւններու՝ ու պարգեւ և վարձք բաշխելու։ Փառաւորութեան և հեշտութեան կողմանէ պալատ մը չկար որ ծայրագոյն քահանայապետին պալատէն գերազանց ըլլայ. բայց կրօնական զգացումը անանկ բան մըն էր, որուն Լեւոն ամենեւին տեղեկութիւն չունէր։ "Այնպիսի զմայլելի կենցաղավարութիւն մը ունէր, կըսէ Սարփի, որ կատարեալ մարդ եղած պիտի ըլլար, թէ որ կրօնական բաներու մէջ քիչ մը գիտութիւն՝ ու բարեպաշտութեան քիչ մը աւելի հակամիտութիւն ունենար. բայց աս բաներուն վրայ ամենեւին զինքը չէր նեղացըներ" *։

Լեւոն մեծ կարօտութիւն ունէր ստակի, վասն զի անչափ ծախք ունէր։ Իր առատաձեռնութենէն պահանջուածներուն բոլորը պիտի կատարէր, ամէն օր ժողովրդոց ցրուած քսակը ոսկիով պիտի լեցընէր, Վատիկան պալատին անառակ խաղերուն համար պէտք եղածը տալու էր, իր ազգականներուն ու պալատականներուն ամէն օրուան պահանջմունքները գոհ պիտի ընէր՝ որոնք հեշտասիրութեան անձնատուր եղած էին, իր քրոջը օժիտը պիտի տար՝ որ Ը. Իննովկենտիոս պապին բնական որդւոյն Կիբօ իշխանին հետ ամուսնացեր էր, ու գրականութեան, արհեստներու և զբօսանքներու վրայ իր ունեցած ախորժակին բոլոր ծախքերը պիտի քաշէր։ Իր հօրեղբօրորդին Պուչչի կարդինալը՝ որ նոյնչափ վարպետ էր ստակ դիզելու որչափ որ Լեւոն շռայլ

* Sarpi, Conc. de Trente, p. 4.--Սարփի, Պատ. Տրէտ. Ժող. Եր. 4։

էր մսխելու , խրատեց զինքը որ Ներողութեան միջոցովը ստակ ժողվէ ։ Վասն որոյ պապը ընդհանուր Ներողութեան կոնդակ մը հրատարակեց , որուն արդիւնքը [illegible]սաւ պիտի յատկանայ եկեղեցական մեծագործութեան հրաշագեղ արձանին՝ սրբոյն Պետրոսի եկեղեցւոյն շինութեանը ։ 1517ին Նոյեմբեր ամսուն մէջ Հռովմ գրուած Նամակով մը որ կնքուած էր ձկնորսի նշանով՝ որն որ Լեոն կըգործածէր իբրև յաջորդ Պետրոսի, Ներողութեանց իր Գործակալէն խնդրեց 147 ոսկի տուգանք , զոր Լիվիոս հին Հռովմայեցի պատմիչին երեսուն և երրորդ գրքին ձեռագրին հատուցանէ ։ Գերմանացւոց ազգէն անիրաւութեամբ իր ժողված ստակին գործածութիւններուն ամենէն աղէկը անտարակոյս ասիկայ էր ։ Բայց ի՞նչ օտարոտի բան է քաւարանէն հոգիներ ազատել , որ անոնց գնովը Հռովմայեցւոց պատերազմներուն ձեռագիր պատմութիւնը ծախու առնէ ։

Նոյն ատենս Գերմանիայի մէջ երիտասարդ իշխան մը կար , որ շատ կերպերով կըհամեմատէր Ժ. Լեոնի . ասիկայ էր Ալպէրտ՝ Պրանտէպուրկի Յովակիմ կայսրընտրին փոքր եղբայրը ։ Այս երիտասարդը քսանըչորս տարու ըլլալուն՝ Մայնցի և Մակտէպուրկի արքեպիսկոպոս և կայսրընտիր եղեր էր , ու երկու տարիէն ետև կարդինալութիւն առեր էր ։ Ալպէրտ ոչ ան առաքինութիւնները և ոչ ան մոլութիւնները ունէր որ շատ անգամ եկեղեցւոյ Նախապատիւ անձերուն վրայ կըտեսնուին ։ Երիտասարդ՝ փոփոխամիտ և աշխարհասէր ըլլալով , բայց ոչ զուրկ ազնիւ գաղափարներէ , Հռովմէական կրօնքին խաբէութիւններուն շատերը յայտնապէս կըտեսնէր , ու իր բոլորտիքը շրջապատած կոյր Նախանձաւոր վարդապետները փոյթ չէր ըներ ։ Իր անաչառութիւնը զինքը հակամիտեց գոնէ ըստ մասին խոստովանիլ Աւետարանի բարեկամներուն պահանջածին արդարութիւնը ։ Իր սրտին գաղտնիքներուն մէջ մեծ հակառակութիւն չունէր Լուտերին ։ Կա-

պերտն՝ երևելի Նորեկարգողներուն մէկը՝ երկար ժամանակ, իր մատրանապետը, իր խորհրդականը և իր սերտ մտերիմն էր, ու անպակաս անոր քարոզութիւնը մտիկ ըներու կերթար: «Մեւտապանը չէր անարգեր, կըսէ Ալպերտն, ընդհակառակին ծածապէս կը յարգէր զանիկայ. ու երկար ժամանակ արգիլեց վարդապետները Լուտերի վրայ յարձակելէն»: Բայց կըկարծէր որ Լուտեր վէճին ընթարութիւնը իրեն չձգէ, ու առորին եկեղեցականաց մոլութիւնները ու անոնց սխալ վարդապետութիւնները յայտներուն՝ զգուշ կենայ որ եպիսկոպոսներուն և իշխաններուն պակասութիւնները երևան չհանէ: Մէկն բանէ աւելի կը վախնար որ վէճին մէջ իր անունը առաջ չձգուի: «Այսէ՛, կըսէր Ալպերտն Լուտերին, նայէ Քրիստոսի և առաքեալներուն օրինակին, որոնք յանդիմանեցին փարիսեցիները՝ ու Կորնթոսի եկեղեցւոյն ազգապիղծ անձերը, բայց անունները չյիշեցին: Չես գիտեր դուն եպիսկոպոսներուն սրտէն անցածը. կարելի է որ քու մտածածէդ աւելի բարի ըլլան անոնք»: Այսպէս Ալպերտի անձնասիրութիւնը ու երկիւղները՝ ետ ձգեցին զինքը Նորեկարգութեան մէջ խառնուելէն. բայց առաւել ևս արգելք եղաւ իրեն իր ծուլին և անփոյթ ոգին: Քաղցրաբարոյ, նրբամիտ՝ բարեկամ, առատաձեռն և շռայլ բնութեան տէր ըլլալով, և իր հաճութիւնը փափկալից սեղաններու՝ մեծածախս կազմութիւններու՝ հոյակապ տուներու՝ անառակ հետամտութիւններու և ուսումնական ընկերութիւններու մատուցանելով, աս երիտասարդ արքեպիսկոպոսը և կայսրընտիրը Գերմանիայի մէջ նոյնն էր ինչ որ Լևոն Հռովմայ մէջ էր: Իր պալատը ան տէրութեան մէջ ամէնէն փառաւոր պալատներէն մէկն էր: Ճշմարտութեան ինչ ճառագայթներ որ իր հոգւոյն ծագելու ըլլային, պատրաստ էր ինքը բոլորը մէկէն զոհ ընել հեշտութեան և փառաւորութեան: Ու սակայն մինչև վերջը իր վրայ կը տեսնուէր երբեմն չարին ընդդիմութիւն մը ու բարիին հակամիտու-

թիւն. և՛ երբեմն կը ցուցընէր բարեխառնութեան և անաչառութեան նշաններ։

Ալպերտ Լեոնի պէս ստակի կարօտ էր։ Աւգսպուրկի քանի մը հարուստ վաճառականներ՝ որ Ֆուգէր կըսուէին, փոխ ստակ տուած էին իրեն, և հիմա ինքը պարտաւորեալ էր իր պարտքը վճարելու. ասկէց զատ՝ թէպէտ և երկու արքեպիսկոպոսութիւն և մէկ եպիսկոպոսութիւն ձեռք անցուցեր էր, բայց իր (Pallium) փոլլիումին գինը Հռոմայ հատուցանելու բաւականութիւն չունէր։ Աս զարդը ճերմակ բեհեզէ շինուած վրան սև խաչերով ու պապէն օրհնուած, որ սովորութիւն ունէր արքեպիսկոպոսներուն խրկել զանիկայ իբրև նշան իրենց իրաւասութեանը, 26,000, կամ ինչպէս ոմանք կըսեն՝ 30,000 ֆիօրինի կ՚ըլլար անոնց։ Բոլորովին բնական էր որ Ալպերտ ստակ ձեռք ձգելու համար նոյն միջոցներուն դիմելու հոգ տանէր ինչպէս իր գլխաւորը։ Վասն որոյ խնդրեց պապէն որ բոլոր ներողութեանց մենավաճառութիւնը, կամ ինչպէս որ Հռոմայ մէջ կըսեն՝ "Գերմանացւոց մեղքերուն մենավաճառութիւնը" իր ձեռքը տայ։

Իսկ Պապերը աս գործը թէպէտ երբեմն ուրիշներուն կը ծախէին, բայց երբեմն ալ իրենց ձեռքը կը պահէին զանիկայ։ Ուստի Ալպերտ յետոյ առաջարկեց Լեոնին որ կէսը իրեն տայ. ու Լեոն աս սակարկութիւնը ընդունելուն պահանջեց որ իր փոլլիումին գինը անմիջապէս հատուցանէ։ Անատենը Ալպերտ որ աս պարտքը հատուցանելու միջոցներուն համար իր յոյսը միշտ ներողութեանց վրայ դրած էր, վերստին Ֆուգէրներուն դիմեց. անոնք ալ խորհելով որ ասիկայ ապահով առևտուր մըն է, քանի մը պայմաններով անոր ուզած փոխը տուին, ու աս մեծ գործին մէջ արկղապետ դրուեցան։ Ասոնք աս ատենս շատ իշխաններու սեղանաւորներն էին, ու ետքը իրենց ըրած ծառայութիւններուն համար կոմսեր եղան։

Պապը ու արքեպիսկոպոսը՝ Գերմանիայի դիւրահաւան

Հոգիներուն ուսարը Հիմա իրենց մէջը բաժնած ըլլալով , Հարկաւոր էր գործը յառաջ տանիլ ու գտնել մէկը որ անիկայ արդիւնաւոր ընելու յանձնառու ըլլայ ։ Առաջ Ֆրանչիսկեաններուն առաջարկուեցաւ ան , ու անոնց վերատեսուչը աս գործին մէջ ընկերացաւ Ալպերտին ։ Բայց Ֆրանչիսկեանները չէին ուզեր մտնել աս գործին մէջ , որ արդէն բարեմիտ ժողովրդոց մէջը գէշ Համբաւ ունեցեր էր ։ Օգոստինեան միաբանները որ ուրիշ կրօնական կարգերէն աւելի լուսաւորեալ էին , առաւել ևս անփոյթ էին ձեռնամուխ ըլլալ անոր ։ Սակայն Ֆրանչիսկեանները կըմախնայէին բարկացընելու զպապը , որ շատ ատեն չէր իրենց Գօրլի մեծաւորին կարդինալութեան գլխարկ մը խրկեր էր՝ որ 30000 ֆիօրինի եղեր էր աս չքաւոր մուրացկան կարգին ։ Սատն որոյ վերատեսուչը խոհեմութիւն Համարեցաւ ուղղակի չմերժել ան առաջարկութիւնը․ այլ բազմատեսակ դժուարութիւններ Հանեց Ալպերտի առջին ։ Ասանկով անոնք ամենևին չկրցան միաբանիլ , ու Ալպերտ մեծ ուրախութեամբ ընդունեց վերատեսուչին կողմանէ եղած առաջարկութիւնը թէ գործին առանձին Հոգը իր վրան առնէ ։ Դանք որ Դոմինիկեանները իրենց կողմանէ կըբաղձային որ ան նոր բացուելու մեծաշահ առեւտուրին մէջ բաժին մը ունենան իրենք ։ Տեցել արդէն երևելի ըլլալով ասանկ բաներու մէջ՝ անձապարեց Մայնց երթալ , ու իր ծառայութիւնները առաջարկեց կայսրընտրին ։ Իր առաջարկութիւնը ընդունուեցաւ , և այսպէս աս բոլոր առուտուրը իր կարգին ձեռքը անցաւ ։

## ՀԱՏՈՒԱԾ Դ

ԱՌԱՋԻՆ անգամը որ Լուտեր Տեցելին վրայով լսեց խօսուիլ , որչափ որ տեղեկացած եմք , 1516 ամին էր , որ

տունն ինքը Լուտեր Կրիմմա էր՝ ու վանքերուն իր այցե-լութիւնը ընելու կըսկսէր: Մ՚էկը եկաւ ու պատմեց Սպա-պիցլին՝ որ տակաւին Լուտերի հետն էր, թէ Տեցել անուն ներողութեանց վաճառական մը Վըլցէնի մէջ մեծ աղա-ղակ կը յարուցանէ. անոր անտեղի խօսքերուն մէկ քանի-ները զրուցելուն՝ Լուտերի կիրքը շարժեցաւ, ու ըսաւ. «Աստուծոյ կամքը պիտի ծակեմ ես անոր թմբուկը»:

Տեցել երբոր դարձաւ Պեռլինէն՝ ուր որ խիստ բարե-կամաբար ընդունուեր էր Յովակիմ կայսրընտրէն՝ ներո-ղութեանց ընդհանուր մենավաճառին եղբօրմէն, իր բնա-կութիւնը Յուտերբոգ հաստատեց: Սպաւլից փոխընտրի-կոս կայսրընտրին իր վրայ հաստատած վստահութենէն շա-հելով, շատ անգամ իմացուցեր էր անոր ներողութեանց շարաչար կիրառութիւնը, ու հաւաքողներուն ամօթալից ընթացքը: Սաքսոնիայի իշխանները սրտմտելով աս անարգ առուտուրիս վրայ, արգիլեցին Տեցելին իրենց երկիրները մտնելու: Վասն որոյ պարտաւորեցաւ մնալ իր պաշտպա-նին Մակտէպուրկի արքեպիսկոպոսին վիճակին մէջ. բայց որչափ որ կրնար մօտեցաւ Սաքսոնիայի. զօրօրինակ Յու-տերբոգ եղած տեղը միայն չորս մղոն հեռի էր Վիդդէմ-պէրկէն: «Աս քաջ որսորդը՝ ըսաւ Լուտեր, որուն գործն է դրամ որսալ, այնքան վարպետութիւն բանեցուց իր գոր-ծին մէջ որ ստակը ամէն մարդու քսակէն սկսեց ցաթկել, ու իր սնտուկը իյնալ»: Ժողովուրդը խուռն բազմու-թեամբ Վիդդէմպէրկէն կերթար Յուտերբոգ ներողու-թեանց վաճառանոցը:

Լուտեր աս ատենս Եկեղեցիին ու պապին վրայ տակաւին կատարեալ ակնածութիւն ունէր: «Ան ատենը ես, կըսէ, ա-մենայիմար վարդապետ մը ու պապադաւան մըն էի. հռով-մէական վարդապետութիւններուն մէջ այնպէս մոլորած ու ընկղմած էի, որ յօժարութեամբ կըկամէի օգնել ո՛ և իցէ մէկու մը սպանմանը որ կը յանդգնէր պապին հնազանդելու ամենափոքր գործէ մը հրաժարիլ: Ճշմարիտ Սաւուղ

մըն էի, ինչպէս որ տակաւին շատերը կան անանկ"։ Բայց նոյն ատենը իր սիրտը պատրաստ էր բողբոքելու ճշմարտութեան վրայ՝ որչափ որ ինքը կիմանար ան, ու ան բանին դէմ՝ ինչ որ իր դատողութեամբը կըգտնէր թէ մոլորութիւն է։ "Երիտասարդ վարդապետ մըն էի, կըսէ, դարբնոցէն նոր ելած, Տէրոջը Բանովը հրավառ և ուրախ"։

Լուտեր օր մը Վիթթէմպէրկի մէջ խոստովանարանն էր. աս քաղքին բնակիչներէն շատերը կուգան իրեն ներկայացան, ու կըխոստովանէին թէ յանցաւոր են մեծամեծ անկարգութիւններով։ Շնութիւն, անառակութիւն, վաշխառութիւն, անիրաւ շահեր. ահա ասանկ բաներու վրայ մարդիկ կուգային խօսիլ Աստուծոյ Բանին պաշտօնեային, որ մէկ օր մը համար պիտի տար անոնց հոգիներուն համար։ Յանդիմանեց, սաստեց, ու խրատեց. բայց ի՞նչպէս զարմացաւ, երբոր ասոնք պատասխան տուին թէ միտք չունին իրենց մեղքերէն ետ կենալու։ Բարեպաշտօն վարդապետը զարհուրելով ասոր վրայ՝ յայտնեց, թէ որովհետև չեն խոստանար իրենց վարքը փոխել, չկամիր անոնց արձակում տալ։ Անատենը աս ողորմելի արարածները իրենց ներողութեան թղթերը յառաջ բերելով սկըսեցին բողոքել. ցուցուցին զանոնք, ու անոնց զօրութիւնը հաստատեցին։ Բայց Լուտեր պատասխան տուաւ թէ իրեն փոյթ չէ անոնց թղթերը, ու ըսաւ. "Թէ որ ձեր չար ճամբաներէն չէք դառնար, ամէնքնիդ ալ կըկորնչիք"։ Աղաղակեցին ասոր դէմ, ու նորէն աղաչեցին արձակում տալ իրենց, բայց վարդապետը անշարժ կեցաւ. "Պէտք է որ, ըսաւ, դադարին չարագործութենէ, ու սորվին բարի ընել. ապա թէ ոչ՝ արձակում չկայ։ Զգուշացէք ականջ դնելու ներողութեանց վաճառականներուն. լաւագոյն բաներ ունիք դուք ընել՝ քան թէ գնել աս անառակութիւնները, որ չնչին դահեկանի մը համար ձեզի կառաջարկեն"։

Վիթթէմպէրկի աս բնակիչները մեծապէս շփոթուած իսկ և իսկ դարձան Տէցէլին, ու պատմեցին անոր թէ Օգոս-

տինեան միաբան մը իր թղթերը արհամարհեց : Տէցէլ աս բուրին վրայ բարկութեամբ սկսեց մռնչել : Ամպիոնը ե- լաւ, Նախատինք և անէծք թափեց, ու ժողովուրդը աւելի վախցընելու համար մեծ հրապարակին մէջ քանի մը ան- գամ կրակ վառել տուաւ ու հրատարակեց թէ ինքը հրա- ման ունի պապէն այրելու ան հերետիկոսները, որ կը յան- դգնին հակառակիլ իր սրբազնագոյն Ներողութիւններուն :

Ահա ան դիպուածը որ Բարեկարգութեան ոչ եթէ պատ- ճառն էր այլ առաջին առիթը : Հովիւ մը երբ որ կը տեսնէ թէ իր ոչխարները ճամբայ մը կերթան որ իրենց կորստեա- նը պիտի տանի զիրենք, կը ջանայ անկէց դուրս հանել զա- նոնք : Տակաւին ինքը միտք չունի Եկեղեցին ու աշխարհը բարեկարգելու : Տեսաւ Հռովմը ու անոր վատթարու- թիւնը, բայց չվերցըներ զինքը Հռովմայ դէմ : Կրնայ ընտրել ան չար կիրառութիւններուն մէկ քանիները՝ որոնց տակը կը հեծէ Քրիստոնէութիւնը, բայց խորհուրդ մը չունի շտկելու զանոնք : Չբաղձար բարեկարգողի տեղ դնել ինքզինքը : Չունի աւելի գաղափար մը Եկեղեցին բա- րեկարգելու, քան որչափ իր դարձի գալուն վրայ ունէր : Աստուած էր որ կամեցաւ Բարեկարգութիւնը, ու Լութերը անոր կատարմանը գործիք ընելը. ու Աստուած էր որ կը կամէր Լութերի ձեռօք նոյն դեղը մատուցանել Քրիստո- նէութեան թշուառութեանը, որուն զօրութիւնը փոր- ձուած էր Լութերի անձին թշուառութիւնը վերցընելովը : Իրեն որոշուած շրջանին մէջ ինքը հանդարտ կը մնայ, իր Տէրոջը սահմանած տեղը միայն պտտելով : Քանզի Վիդէմպէրկի մէջ իբրև վարժապետ՝ քարոզիչ և հովիւ իր պարտաւորութիւնները կը կատարէ. և տաճարին մէջը նստած է, ուր որ կուգան իր եկեղեցիին անդամները իրենց սրտերը անոր բանալու : Այս ահա հոն ան ասպարէզին վրայ չարը իր վրան կը յարձակի, ու մոլորութիւնը զինքը կը փնտռէ : Կուզէին արգիլել զինքը իր պարտաւորութիւնը կա- տարելէն. և իր խիղճը Աստուծոյ Բանին կապուած, կար-

Թըլլայ : Աստուած չէ՞ որ կըկոչէ՝ զինքը դէմ կենալու՝ ուրեմն ընդդիմութիւնը պարտաւորութիւն մըն է, վասն որոյ՝ և իրաւունք է. պարտի խօսիլ : Աստանկ կարգադրեցան աս դիպուածները միայն Աստուծմով՝ որ վճռեր էր հանքագործի մը որդւոյն ձեռքովը Քրիստոնէութիւնը նորոգել, ու եկեղեցիին Թիւրեալ վարդապետութիւնը իր հալոցին մէջ զտել :

Լութեր Աստուծոյ ճշմարտութեանը հնազանդութիւնովը ու մարդուն սիրովը միօրինակ շարժելով՝ անվախինը եղաւ : Քաղցրութեամբ զգուշացոյց իր ունկնդիրները : Բայց իր իշխանը քանի մը յատուկ ներողութիւններ ընդուներ էր պապէն՝ Վիդդէմպէրկի բերդին մէջը շինած եկեղեցւոյն համար. ուստի Տէցելին ներողութեանցը զարնելու հարուածներուն մէկ քանիները դիւրութեամբ կըրնային իյնալ կայսրընտրին առած ներողութիւններուն վրայ : Սակայն ասիկայ բան մը չէ. Լութեր իր վրայ գալու նախատինքը ոչինչ կըհամարի. թէ որ մարդու հաճելի ըլլալ ուզէր, Քրիստոսի ծառայ պիտի չըլլար* :

«Մէկը չկրնար ցուցընել Սուրբ Գրքերէն թէ Աստուծոյ արդարութիւնը տոյժ մը կամ հատուցում մը կը խնդրէ մեղաւորէն. ըստ Աստուծոյ Բանին հաւատարիմ պաշտօնեայն՝ Վիդդէմպէրկի ժողովուրդին : Մի միայն պարտաւորութիւնը որ անոր վրայ կըդնէ՝ ճշմարիտ զըղջում մը, սրտի անկեղծ փոփոխութիւն մը, Քրիստոսի խաչը առնելու ու բարեգործութեան ջանալու առաջադրութիւն մըն է : Մեծապէս կըսխալինք թէ որ մենք մեզմէ փնտռեմք մեր մեղքերուն համար Աստուծոյ արդարութիւնը բաւականացընել, վասն զի Աստուած միայն ձրիապէս կըներէ զանոնք անգին շնորհքով մը :

«Քրիստոնէական Եկեղեցին իրաւ մեղաւորէն բան մը կըպահանջէ, և հարկաւ իր պահանջածը կրնայ թողուլ.

* Գաղ. ա. 10 :

բայց առ է բոլորը ։ Եւ դարձեալ՝ Եկեղեցին աս ներողութիւնները միայն թոյլ տրուած են ծոյլ և անկատար քրիստոնեաներուն համար, որոնք ինքզինքնին բարի գործերու մէջ նախանձաւորութեամբ չեն գործածեր. վասն զի անոնք սրբութեան չեն շարժեր զմարդ, այլ ամէն մէկը իր նուաստութեանը ու անկատարութեանը մէջ կըթողուն"։

Այնուհետև անցնելով ան պատճառանքներուն որոնցմով ներողութիւնները կըհրատարակուէին, շարունակեց ըսել. "Շատ աղէկ է Աստուծոյ սիրովը ողորմութիւն տալ սրբոյն Պետրոսի եկեղեցւոյն շինութեանը համար, քան թէ ասանկ դիտաւորութիւններով ներողութիւններ գնել ։ Բայց պիտի ըսէք՝ Աւրեմն չգնե՞նք զանոնք ։ Ես արդէն ըսի, ու վերստին կըսեմ. իմ խրատս է՝ որ մէկը չգնէ ։ Զգեցէք զանոնք թմրած քրիստոնեաներուն, բայց դուք զձեզ հեռի պահեցէք անանկներէն ։ Հաւատարիմները պէտք է դարձունել ներողութիւններէն, ու յորդորել իրենց զանցառութեան ձգած գործերը կատարելու"։

Վերջը իր թշնամիներուն վրայ դարձընելով խօսքը, Լուտեր այսպէս վերջացուց քարոզը ։ "Եւ թէ որ ոմանք աղաղակեն թէ ես հերետիկոս եմ, (որովհետև իմ քարոզած ճշմարտութիւնս վնասակար է անոնց սնտուկին,) ինծի փոյթ չէ անոնց աղաղակը ։ Անոնք մութ և հիւանդոտ միտքով մարդիկ են՝ որոնք բնաւ չզգացին Աստուծոյ Բանին ճշմարտութիւնները, բնաւ չկարդացին քրիստոնէական վարդապետութիւնները, բնաւ չհասկըցան ևս բուն իրենց վարժապետները, ու կըփտին իրենց ընդունայն կարծեացը հնոտի հանդերձներուն մէջ թաղըուած ։ Բայց Աստուած անոնց ու մեզի ուղիղ միտք շնորհէ. Ամէն"։ Ասիկայ ըսելով վարդապետը իջաւ ամպիոնէն, աս աներկիւղ ատենախօսութեամբս բոլորովին զգածեալ ձգելով իր ունկնդիրները ։

Աս քարոզը տպագրեցաւ, ու բոլոր ընթերցողներուն վրայ խորին տպաւորութիւն մը գործեց ։ Տեցել պատասխանեց անոր, ու Լուտեր կրկին պատասխան տուաւ. բայց աս վիճաբանութիւնը եղաւ յետ ժամանակաց, 1518ին ։

Ամենայն Սրբոց տօնախմբութիւնը կը մօտենար. ու ես առենիս քանի մը ժամանակագիրները դիպուած մը կը պատմեն՝ որ թէ և կարևորութիւն մը չունի ալ նէ ես թուականիս պատմութեանը, կրնայ տակաւին ծառայել զանիկայ բացայայտելու։ Աս դիպուածն է կայսրընտրին մէկ երազը, որն որ արժան կը սեպեմք աս տեղս պատմել. քանզի թէպէտև կարելի է թէ անիկայ պատմողները քանի մը պարագաներ աւելցուցած ըլլան. բայց իր գլխաւոր մասերը անտարակոյս ճշմարիտ են։

Սաքսոնիայի Փրիդերիկոս կայսրընտիրը անատենը իր Շվէյնիցի բերդն էր՝ կըսեն ժամանակագիրները, Վիդդէմպէրկէն վեց մղոն հեռի։ Հոկտեմբերի 31ին առաւօտուն իր եղբօրը Յովհաննէս դքսին հետ՝ (որ անատենը իր հետը իշխանութիւն կը վարէր, ու իր մահուանէն ետև առանձին թագաւորեց,) ու իր ատենադպրին հետ ըլլալով, կայսրընտիրը ըսաւ դուքսին.

"Եղբայր, քեզի երազ մը պիտի պատմեմ որ աս գիշեր տեսայ, որուն նշանակութիւնը գիտնալու շատ կըցանկամ։ Այնպէս խորին տպաւորուած է տնիս մտքիս մէջ, որ եթէ հազար տարի ապրելու ըլլամ պիտի չմոռնամ զանիկայ, վասն զի երեք անգամ տեսայ, ու ամէն մէկ անգամին մէկ մէկ նոր պարագաներով"։

Յովհաննէս Դուքս. "Աղէ՞կ երազ է եթէ գէշ"։

Կայսրընտիր. "Չեմ գիտեր. Աստուած գիտէ"։

Յովհաննէս Դուքս. "Դուն զքեզ անհանգիստ մի ըներ անոր վրայ. պատմէ անիկայ ինծի"։

Կայսրընտիր. "Երեկ իրիկուն պառկելու երթալով յոգնած ու սրտաբեկած, իմ աղօթքս ընելուս պէս քունս տարաւ, ու երկուք ու կէս ժամ հանգիստ քնացայ։ Յետքը արթընցայ, ու մինչև կէս գիշեր բազմակերպ խորհուրդներով անհանգիստ եղայ։ Կըմտածէի թէ Ամենայն Սրբոց տօնախմբութիւնը ինչպէս կատարեմ. քաւարանի խղճալի հոգիներուն համար աղօթեցի, ու խնդրեցի Աստուծմէ

որ զիս՝ իմ խորհրդականներս ու նաև իմ ժողովուրդս ճըշմարտութեան առաջնորդէ ։ Վերստին քնացայ, ու անատենը երազիս մէջ տեսայ որ Ամենակարողն Աստուած վարդապետ մը խրկեց ինծի, որ Պօղոս առաքեալին ճշմարիտ որդին էր ։ Բոլոր սուրբերը անոր հետն էին՝ Աստուծոյ հըրամանովը, որ վարդապետին վրայով վկայութիւն տան ինծի, ու իմացընեն թէ խաբէական դիտաւորութիւնով եկած չէր ան, հապա անոր բոլոր ըրածը Աստուծոյ կամացը համեմատ էր ։ Նոյն ատենը խնդրեցին ինծմէ որ բարեհաճիմ թոյլ տալ անոր Սիդդէմպէրկի բերդին եկեղեցւոյն դրանը վրայ բան մը գրել. աս խնդիրը ատենադպրին բերնովը շնորհեցի ։ Անոր վրայ վարդապետը գնաց ու սկսեց գրել, բայց անանկ մեծ գրերով որ Շվէյնիցէն կրնայի կարդալ իր գրածը ։ Իր գործածած գրիչը այնչափ երկայն էր՝ որ անոր ծայրը մինչև Հռովմ հասաւ, հոն բազմած առիւծի * մը ականջները վիրաւորեց, ու պապին գլխու երեքպատկեալ թագը շարժեց ։ Բոլոր կարդինալները ու իշխանները արտորնօք վազելով ջանացին բռնել թագը ։ Մնացեալներուն հետը դուն ու ես ալ՝ եղբայր, ջանացինք օգնել անոր ։ Իմ թևս երկընցուցի, բայց ան նոյն րոպէին արթընցայ թևս երկընցուցած, մեծ շփոթութեան մէջ ինկած, ու խիստ սրտմտած ան վարդապետին՝ որ անանկ տմարդութեամբ բռներ էր իր գրիչը ։ Քիչ մը ինքզինքիս եկայ. —միայն երազ է եղեր տեսածս ։

Բայց տակաւին կէս քունն էի, ու կրկին իմ աչքերս գոցեցի, և ահա երազս շարունակեցաւ ։ Առիւծը տակաւին անհանգստութիւն կրելով ան գրիչէն՝ իր բոլոր զօրութիւնովը սկսեց մռնչել, անանկ որ բոլոր Հռովմ քաղաքը ու կայսերութեան բովանդակ վիճակները վազեցին իմանալ թէ ինչ է բանը ։ Պապը հրաման ըրաւ մեզի որ ան

* Ան ժամանակի պապին անունն էր Leon, որ կը նշանակէ առիւծ ։

վարդապետը զապենք, և յատկապէս ինծի ուղղեց իր խօսքը, վասն զի իմ երկրիս մէջ կը բնակէր ան: Նորէն արթընցայ. "Հայր մեր" մը ըսի: Աղաչեցի Աստուծոյ որ սրբազան հայրը պահպանէ, ու ետքը նորէն քնացայ:

"Անատենը տեսայ որ Տէրութեան բոլոր իշխանները, ու անոնց հետ դուն և ես, բազմութեամբ Հռոմ կերթայինք, ու իրարու ետևէ կըջանայինք աս գրիչը կոտրել. բայց մենք որչափ որ կաշխատէինք՝ ան այնչափ կը պնդանար, ու անանկ կըդիմանար որ կարծես թէ երկըթէ շինուած էր. վերջապէս յոգնեցանք մնացինք: Անատենը վարդապետին հարցուցի՝ (վասն զի ինծի կըթուէր որ երբեմն Հռոմ և երբեմն Վիթէմպէրկ էի,) թէ ո՞ւր գտաւ ինքը ան գրիչը, և ինչո՞ւ համար այնպէս զօրաւոր է ան: "Աս գրիչը, պատասխան տուաւ, ատենով Պոհեմիայի սագի* մը թևինն էր, հարիւր տարեկան: Ես իմ հին վարժապետներուս մէկէն ընդունեցի զանիկայ. անոր զօրութիւնը աս է որ մարդ չկրնար հանել անոր միջուկը, ու ես ինքնս ալ զարմացած եմ ասոր վրայ":—Մէյմալ յանկարծ ձայն մը լսեցի. վարդապետին երկայն գրիչէն ուրիշ շատ գրիչներ ելան: Երրորդ անգամ արթընցայ, և ահա առաւօտ էր":

**Յովհաննէս Դուքս.** "Պարոն ատենադպիր, ի՞նչ կըսես հրամանքդ: Երանի թէ Յովսէփ մը կամ Դանիէլ մը ըլլար հոս, Աստուծմէ լուսաւորուած":

**Ատենադպիր.** Մեծափառ տէարք, գիտէք հասարակաց ան առածը, թէ օրիորդներուն՝ ուսման հետևողներուն ու մեծ իշխաններուն երազները ընդհանրապէս գաղտնի նշանակութիւն մը ունին: Բայց մենք ասոր նշանակութիւնը ատեն մը պիտի չիմանանք, մինչև որ անով նշանա-

* Լութերէն հարիւր տարիէ շատ առաջ Պոհեմիայի մէջ ծաղկեցաւ Յովհաննէս Հուսս, որ ճշմարտութեան համար նահատակուեցաւ: Իր անունը Հուսս՝ կընշանակէ սագ:

կուած բաները պատահին ։ Վասն որոյ անոր կատարումը Աստուծոյ յանձնեցէք, ու անիկայ անոր ձեռքը ձգեցէք" ։

Յովհաննէս Դուքս. "Կըմիաբանիմ քեզի՝ պարո՛ն տէ-նադպիր. չվայլեր որ մեր մտքերը ամբոխեմք ասոր նշանա-կութեանը վրայ ։ Աստուած բոլորը իր փառքին պիտի դարձընէ" ։

Կայսրընտիրը. "Աստուած իր ողորմութիւնովը այնպէս ընէ ։ Բայց ես բնաւ չպիտի մոռնամ աս երազը ։ Մէ՛կ մեկ-նութիւն մը մտածեցի, . . . բայց անիկայ ինծի համար կը պահեմ ։ Ժամանակը գուցէ պիտի ցուցընէ թէ արդեօք շիտակ իմացած եմ անիկայ" ։

Այսպէս էր ան խօսակցութիւնը՝ ինտոր որ պատմագիր-ները կըվկայեն, որ պատահեցաւ Հոկտեմբերի 31ին՝ Շվէյ-նիցի մէջ ։ Նայիմք որ նոյն աւուր իրիկունը Վիդդէմպէրկի մէջ ինչ պատահեցաւ ։ Հիմա կըդառնամք պատմութեան ստուգագոյն մասին ։

## ՀԱՏՈՒԱԾ Ե

ԼՈՒՏԵՐԻ խօսքերը շատ քիչ օգուտ գործեր էին, ու Տէ-ցէլ առանց շփոթուելու յառաջ կըտանէր իր առուտուրը և իր ամբարիշտ քարոզութիւնները ։ Լուտեր աս անտա-նելի խաբէութիւններուն պիտի համբերէ՞ր, լո՞ւռ պիտի կենար ։ Իբրև հովիւ՝ ազդու զօրութեամբ յորդորեց զա-նոնք որոնք իր քարոզութեանը կուգային, և իբրև քարո-զիչ՝ զգուշարար ձայնը հանեց ամպիոնէն ։ Հիմա կըմնայ իրեն խօսիլ իբրև աստուածաբան. ոչ միայն խոստովանա-րանին մէջ քանի մը անձերու, ոչ միայն Վիդդէմպէրկի եկեղեցւոյն ժողովին, այլ ամէն անոնց որոնք՝ իրեն պէս Աստուծոյ Բանին վարդապետներն են ։

Չէ թէ Եկեղեցին է որուն վրայ յարձակիլ կըխորհի,

չէ թէ պապը համար տալու պիտի հրաւիրէ . ընդ հակառակը՝ պապին վրայ ունեցած իր նկատումը չպիտի թոյլ տայ իրեն այլ ևս լռել ան ենթադրութիւններուն վրայ՝ որոնցմով՝ անոր պատուոյն անարգանք կուգար ։ Պէտք է որ կողմնապահ ըլլայ Սրբազան Հօրը ան լրբենի մարդոց դէմը՝ որոնք յանդգնեցան անոր պատկառելի անունը իրենց ամօթալիր տուրևառին մէջ խառնել ։ Հռովմայ գլխաւորութիւնը կործանելու ապստամբութեան խորհուրդ մը բնաւ չունենալով, Լուտեր այնպէս կըկարծէր որ պապը և ուղղափառութիւնը իրեն կողմնակից էին վարդապետներուն անամօթութեանը դէմ ։

Ամենայն Սրբոց տօնախմբութիւնը շատ երևելի օր էր Վիդդէմպէրկի մէջ, և մանաւանդ ան եկեղեցւոյն՝ որ կայսրընտիրը շիներ ու սրբոց նշխարներով լցուցեր էր ։ Նոյն տօնին օրը՝ նշխարները ոսկիի ու արծաթի մէջ պատած ու ազնիւ քարերով զարդարուած դուրս կըհանէին, ու ժողովուրդը անոնց մեծագործութեանը վրայ կը զարմանային և իրենց աչքերը կըխտտղէին ։ Ով որ ան օրը ան եկեղեցին երթար՝ ու հոն խոստովանէր, լիակատար ներողութիւն կընդունէր . անոր համար ան մեծ օրը ուխտաւորները խուռն բազմութեամբ Վիդդէմպէրկ կը վազէին ։

Լուտեր՝ որ արդէն ձևացուցեր էր իր գաղափարը, 1517ին Հոկտեմբերի 31ին իրիկունը՝ համարձակապէս գնաց եկեղեցին՝ ուր որ ուխտաւորներուն աւելորդապաշտ բազմութիւնը կըդիմէր, ու իննսուն և հինգ նախադասութիւններ կախեց դրանը վրայ՝ ներողութեանց վարդապետութեանը դէմ ։ Ոչ կայսրընտիրը՝ ոչ Ստաուպից ոչ Սպալատին՝ և ոչ իր բարեկամներէն մէկը՝ իրեն խիստ մօտերիմ եղողները անգամ՝ իր դիտաւորութիւնը առաջուց իմացած էին ։

Լուտեր յառաջաբանութեան պէս խօսքով մը յայտնեց անոր մէջ՝ թէ ինքը աս նախադասութիւնները գրած է

անկեղծ սրտոյ հոգիով, ու ճշմարտութիւնը 'ի լոյս բերելու յատուկ փափաքովը ։ Իմացուց նաև՝ թէ բոլոր հակառակորդներուն դէմ պատրաստ է զանոնք պաշտպանելու հետևեալ օրը՝ համալսարանին մէջ ։

Այս նախադասութիւններուն յարուցած մտադրութիւնը խիստ մեծ էր. ամէն կողմ անոնք կըկարդացուէին, և անոնց վրայ կըխօսուէին. ուխտաւորները՝ համալսարանը ու բոլոր քաղաքը շփոթութեան մէջ ինկաւ ։ Ահա վարդապետին դրիչովը գրուած ու Վիդէմպէրկի եկեղեցւոյն դուռը կախուած նախադասութիւններուն մէկ քանին.

Ա. "Յիսուս Քրիստոս մեր Տէրը ու Վարդապետը երբոր կըսէ՝ Ապաշխարեցէք, կընշանակէ թէ երկրի վրայ իր հաւատարիմ ծառաներուն բոլոր կեանքը մշտատև ու անընդհատ ապաշխարութիւն պիտի ըլլայ ։

Բ. "Ասիկայ չկրնար իմացուիլ ապաշխարութեան խորհուրդը, (այսինքն՝ խոստովանութիւնը ու ապաշխարանքը,) որ քահանային ձեռօքը կըմատակարարուի ։

Գ. "Բայց և այսպէս՝ աս տեղս Տէրն մեր չխօսիր միայն ներքին ապաշխարութեան վրայ. ներքին ապաշխարութիւնը անվաւեր է՝ թէ որ անիկայ դրսուանց մարմինին ամէն կերպ ժուժկալութիւնները յառաջ չբերէր ։

Դ. 'Ապաշխարութիւնը՝ այսինքն է՝ ճշմարիտ ապաշխարութիւնը այնչափ կըտևէ, որչափ որ մարդ իր վրայ կըտհաճի. աս ըսել է թէ՝ մինչև որ աս կեանքէն յաւիտենական կեանքը անցնի ։

Ե. "Պապը իշխանութիւն կամ կամք չունի ներելու ուրիշ պատիժ մը՝ քան թէ ան որ ինքը դրած է իր կամօքը, կամ կանոններուն՝ այսինքն պապական պատուէրներուն համաձայն ։

Զ. "Պապը չկրնար ներել դատապարտութիւն մը. բայց միայն կրնայ յայտնել ու հաստատել Աստուծոյ տուած ներողութիւնը, բաց 'ի ան դիպուածներէն որ իրեն կըվերաբերին ։ Թէ որ աս կերպով չընէ, դատապարտութիւնը նոյն կըմնայ ։

Ը. “Եկեղեցական ապաշխարանքին կանոնները միայն ողջերուն վրայ կրնան դրուիլ, և ոչ բնաւ մեռելներուն կը նային։

ԻԱ. ““Ներողութեանց գործակալները մոլորութեան մէջ են, որ կըսեն՝ թէ պապին ներողութիւնովը ամէն պատիժներէ կազատի մարդ ու կը փրկուի։

ԻԵ. “Այն իշխանութիւնը որ պապը ունի քաւարանի վրայ՝ ընդհանուր Եկեղեցւոյ մէջ, նոյնը ունի և իւրաքանչիւր եպիսկոպոս իր թեմին ու իւրաքանչիւր ժողովրդապետ իր ժողովուրդին մէջ։

ԻԷ. “Մարդկային գիւտեր կը քարոզեն անոնք՝ որոնք կըկեղծաւորին թէ ստակը սնտուկին մէջ ձայն հանած վայրկեանին հոգին քաւարանէն կելլէ։

ԻԸ. “Ասիկայ ստոյգ է՝ որ ստակը ձայն հանածին պէս ագահութիւնը ու շահասիրութիւնը կաճի ու կը բազմանայ։ Բայց Եկեղեցիին օգնութիւնը և աղօթքները միայն Աստուծոյ կամքէն ու բարեհաճութենէն կախեալ են։

ԼԲ. “Անոնք որ կը կարծեն թէ ներողութիւններով անշուշտ պիտի փրկուին, աս վարդապետութիւնը իրենց սորվեցնողներուն հետ մէկ տեղ դժոխքը կերթան։

ԼԵ. “Քրիստոնէութեան հակառակ վարդապետութիւններ կը սորվեցունեն անոնք՝ որոնք կըկեղծաւորին թէ քաւարանէն հոգի մը ազատելու կամ ներողութիւն մը գնելու համար, հարկաւոր չէ զղջում կամ ապաշխարութիւն։

ԼԶ. “Իւրաքանչիւր քրիստոնեայ որ իր մեղքերուն վրայ ճշմարտապէս կը զղջայ, կատարեալ ազատութիւն ունի պատիժէ ու մեղքէ՝ կարօտ չըլլալով ներողութեանց։

ԼԷ. “Իւրաքանչիւր ճշմարիտ քրիստոնեայ մեռեալ կամ կենդանի, Քրիստոսի կամ Եկեղեցիին բոլոր բարութիւններուն հաղորդ է՝ Աստուծոյ շնորհքովը, և առանց ներողութեան կոնդակի մը։

ԼԸ. “Իսկ սակայն ոչ պարտիմք անարգել պապին մա-

տակարարութիւնը ու ներողութիւնը . վասն զի իր ներողութիւնը Աստուծոյ ներելուն յայտարարութիւնն է ։

խԳ . “Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ թէ ան որ աղքատին կողորմի կամ կարօտեալին փոխ կուտայ, լաւագոյն կընէ քան թէ ան որ ներողութիւն կըգնէ ։

խԴ . “Վասն զի սիրոյ գործը սէրը կառատացունէ, ու մարդը աւելի բարեպաշտ կընէ . բայց ներողութիւնը լաւագոյն չընէր զանիկայ, այլ միայն առաւել յանձնապաստան՝ ու պատժուելէ առաւել աներկիւղ կընէ ։

խԵ . “Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ թէ ան որ իր ընկերը կարօտութեան մէջ կըտեսնէ՝ և 'ի վերայ այսր ամենայնի ներողութիւն կըգնէ , պապին ներողութիւնը իրապէս չըստանար , այլ Աստուծոյ բարկութիւնը իր վրան կըձգէ ։

խԶ . “Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ թէ անոնք որ աւելորդ ստակ չունին, կըպարտաւորին իրենց ունեցածը պահել իրենց ընտանեացը համար, որ անով հարկաւոր եղածները ձեռք ձգեն, ու իրենց ստակը ներողութեանց չվատնեն ։

խԸ. “Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ թէ պապը առաւել կարօտ ըլլալով հաւատացելոց աղօթքին քան թէ ստըկին , ներողութեան կոնդակները բաժնելուն յաւէտ աղօթք կըխնդրէ քան թէ ստակ ։

խԹ . “Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ թէ պապին ներողութիւնը աղէկ բան է՝ թէ որ մեր ապաւինութիւնը անոր վրայ չդնեմք . բայց բան մը չկընար անկէց աւելի վնասակար ըլլալ՝ թէ որ անիկայ մեզի կառաջնորդէ բարեպաշտութիւնը զանց ընել ։

Ծ . “Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ որ եթէ պապը ներողութեանց քարոզիչներուն ըրած հարստահարութիւնները գիտնար, աւելի պիտի կամէր որ Սրբոյն Պետրոսի եկեղեցին այրեր մոխիր դառնար , քան թէ անիկայ շինուած տեսնել իր հօտին մորթովը՝ մարմինովը ու ոսկորներովը ։

ԾԱ. «Պարտիմք սորվեցունել քրիստոնէից՝ թէ Պապը՝ ինչպէս որ իր պարտաւորութիւնն է՝ յօժարութեամբ պիտի տայ իր սեփհական ստակը աղքատ ժողովրդոց, որոնց վերջին դահեկանը կը յափշտակեն ներողութեանց քարոզիչները. թէ և աս դիտաւորութեանս համար հարկաւորի սրբոյն Պետրոսի մայր եկեղեցին ծախել:

ԾԲ. «Ներողութիւններով փրկութեան յուսալը սուտերու և ունայնութեան յուսալ է. թէ և ներողութեանց գործակալը, և մինչև անգամ պապը ևս իր հոգին երաշխաւոր ընէ անոնց զօրութիւնը հաստատելու համար:

ԾԳ. «Անոնք որ ներողութեանց քարոզութիւնը յառաջ տանելու համար Աստուծոյ Բանին քարոզութիւնը կը խափանեն, պապին ու Քրիստոսի թշնամիներն են:

ԾԵ. «Պապը ուրիշ կերպ չկրնար խորհիլ՝ բայց եթէ ասիկայ. թէ որ ներողութիւնը (որ փոքրագոյն բան է) զանգակի ձայնով ու հանդէսով և փառաւորութիւնով կը հռչակուի, Աւետարանին քարոզութիւնը (որ մեծագոյն բան է) առաւել ևս կըվայլէ հռչակել հարիւրաւոր զանգակներով ու հարիւրապատիկ աւելի հանդէսով ու փառաւորութիւնով:

ԿԲ. «Եկեղեցիին ճշմարիտ և պատուական գանձը Աստուծոյ փառքին ու շնորհացը սուրբ Աւետարանն է:

ԿԷ. «Եպիսկոպոսներուն ու հովիւներուն պարտաւորութիւնն է ամենայն յարգութեամբ ընդունիլ առաքելական՝ ներողութիւններուն գործակալները:

ԿԸ. «Բայց առաւել ևս իրենց պարտաւորութիւնն է որ տեսնելով ու լսելով կատարելապէս քննեն և զգուշանան, որ յիշեալ գործակալները պապին հրամաններուն տեղը իրենց երևակայութեան երազները չքարոզին:

ՀԱ. Ով որ պապին ներողութեանը դէմ կը խօսի, անիծեալ ըլլայ:

ՀԲ. «Բայց ով որ ներողութեանց քարոզիչներուն ան-

տեղի և անխոհեմ խօսքերուն դէմ կըկենայ, օրհնեալ ըլ-լայ:

ՀԶ. «Պապին ներողութիւնը մեր ամէն աւուր գործած մեղքերուն պինտ պզտիկը չկրնար վերցընել, անոր պատ-ժապարտութեանը կամ վնասին նայելով:

ՀԹ. «Հայհոյութիւն է ըսել՝ թէ պապին նշանը վրան կախուած խաչը Քրիստոսի խաչափայտին չափ զօրաւոր է:

Ձ. «Եպիսկոպոսները՝ հովիւները ու վարդապետները որոնք թոյլ կուտան որ աս բաները ժողովուրդը սորվի, ա-նոր պատասխանը պիտի տան:

ՁԱ. «Աս անամօթ քարոզութիւնը, աս անխորհուրդ գովութիւնները ներողութեանց վրայ, ուսումնականներուն դժուարութիւն կուտայ՝ որ քարոզիչներուն չարախօսու-թեանցը ու հասարակ ժողովուրդին նուրբ և ճարտար հար-ցումներուն դէմ, պապին մեծութիւնը ու պատիւը պաշտ-պանեն:

ՁԲ. «Ինչո՞ւ համար, կըսեն, պապը սրբոյն Պետրոսի մայր եկեղեցին յաւէտ իր ստակովը չշիներ քան թէ աղքատ քրիստոնէից ստակովը. որովհետև ինքը ամենահարուստէն ալ հարուստ է:

ՂԲ. «Ըլլա՛ր թէ ուրեմն ազատէինք աս քարոզիչնե-րէն՝ որոնք կըսեն Քրիստոսի Եկեղեցւոյն՝ Խաղաղութի՜ւն, խաղաղութի՜ւն, որ ատեն չկայ խաղաղութիւն:

ՂԴ. «Պարտիմք յորդորել քրիստոնեաները՝ որ ջա-նան հետևիլ Քրիստոսի՝ իրենց գլխոյն, խաչին մէկը՝ մահուան ու դժոխքի դէմ:

ՂԵ. «Վասն զի լաւագոյն է շատ նեղութիւններով մտնել երկնից թագաւորութիւնը, քան թէ սուտ խաղա-ղութեան մխիթարութիւններով մարմնաւոր ապահովու-թիւն մը ձեռք ձգել»:

Ահա հոս էր գործին սկզբնաւորութիւնը: Բարեկարգու-թեան ընձիւղները Լուտերին աս նախադասութիւններուն մէջ ծածկուած էին: Ջրի և շնորհքով տրուած մեղաց թո-

ղութեան ամենատարանական վարդապետութիւնը տանց-մով հրապարակաւ դաւանուեցաւ ։ Եւ հիմա պէտք է որ գործը յառաջ երթայ ։ Արդէն յայտնի էր թէ ով որ մեղաց թողութեան վրայ ան հաւատքը ընդունէր որ Վիդ-դեմպերկի վարդապետը քարոզեց, ով որ ան զղջումը՝ ան դարձը և ան սրբութիւնը ստանար որոնց հարկաւորութիւնը ինքը ցուցուց, մարդկային սահմանադրութիւններուն այլ ևս միտք պիտի չդնէր, Հռովմայ կապերը ու սանձահարութիւնները մէկ կողմ պիտի ձգէր, ու Աստուծոյ որդւոցը ազատութիւնը պիտի ստանար ։ Բոլոր մոլորութիւնները աս ճշմարտութեանս առջին գետինը պիտի իյնային ։ Ասով էր որ լոյսը արդէն իսկ մտեր էր Լուտերի մտքին մէջ, ու նմանապէս ասով էր որ՛ ան լոյսը սահմանուած էր ծաւալիլ Եկեղեցիին մէջ ։ Լուտերէն առաջ եկող Բարեկարգողները աս ճշմարտութեանս վրայ յստակ ճանաչում չունէին, ու ասկէց էր որ իրենց ջանքերը անօգուտ կըլլային ։ Լուտեր յետ ժամանակաց յայտնապէս տեսաւ՝ թէ հաւատքով արդարութիւն քարոզելովը տապարը ծառին արմատին վարկեր էր ։

Բայց թէ որ Լուտերին աս նախադասութիւնները իրենց քարոզած ճշմարտութեանը զօրութիւնովը զօրաւոր էին, ոչինչ պակաս զօրութիւն ունէին և անոր հաւատքովը որ զինքը անոնց ախոյեանը ըլլալ հրատարակեց ։ Արիութեամբ քաշեր էր Աստուծոյ Բանին սուսերը. և ասիկայ ըրեր էր ճշմարտութեան զօրութեանը ապաւինելով ։ Զգացեր էր որ Աստուծոյ խոստմունքներուն ապաւինելով կարող է մարդ յօժարակամ իր բաները վտանգի տակ ձգել ։ "Ան որ միտքը կըդնէ աղէկ գործ մը սկսել, կըսէ Լուտեր աս իր ըրածին վրայ խօսելով, թող սկսէ, գործին աղէկութեանը ապաւինելով, և ո՛չ երբէք մարդկային օգնութեան կամ նպաստի. մանաւանդ թէ թող չերկընչի մարդոցմէ, ոչ ալ բոլոր աշխարհէ ։ Վան զի ամենևին սուտ պիտի չելլէ ան խօսքը, Աղէկ է Տէրոջը յուսալ, և

ան՝ մի՛ անոր կը յուսայ ամենեւին պիտի չամչնայ ։ Բայց ան որ չկամիր ու չկրնար վտանգի տակ ձգել իր անձը Աստուծոյ ապաւինելով, անիկայ թող զգուշանայ բանի մը ձեռք չզարնելու”։ Տարակոյս չունիմք թէ Լուտեր իր նախադասութիւնները Ամենայն Սրբոց եկեղեցիին դուռը կախելէն ետեւ իր խաղաղասէր խուցը քաշուած պիտի ըլլայ՝ ան խաղաղութիւնովը և ուրախութիւնովը լեցուն, որ կը բղխէ Տէրոջը անունին ու յաւիտենական ճշմարտութեան համար կատարուած գործէ մը։

Աս նախադասութիւններուն մէջ ինչ արիութիւն որ կերեւայ, տակաւին անոնցմով կը տեսնենք զվարդապետը որ Հռովմէական Աթոռոյն իշխանութեանը վրայ բնաւ կասկած մը չունէր ։ Բայց ներողութեանց վարդապետութեանը վրայ յարձակելով՝ Լուտեր անծանօթաբար դպաւ նաեւ շատ սխալներու, որոնց յայտնուիլը չէր կրնար հաճելի ըլլալ պապին. վասն զի աս կերպով հարկաւորապէս կանուխ կամ ուշ վէճի տակ կը ձգուի Սրբազանին իշխանութիւնը ։ Լուտերի գաղափարները աս միջոցիս չէին հասներ աս վախճանին. բայց իր ըրածին համարձակութիւնը զգալով կը մտածէր որ իր խղճին թոյլտուութեանը չափ բարեխառնէ զանիկայ ։ Վասն որոյ աս նախադասութիւնները հրատարակեց միայն իբրեւ երկբայական, ու անոնց վրայով տեղեկութիւն խնդրեց գիտնականներէն. և անատենի սովորութեանը համեմատ՝ իր նախադասութիւններուն տակը վսեմութեամբ վկայեց թէ ինքը չկամիր ըսել կամ հաստատել բան մը՝ որ Սուրբ Գրոց՝ Եկեղեցւոյ հայրերուն ու Հռովմէական ատեանին օրէնքներուն և վճիռներուն վրայ հիմնուած չէ։

Լուտեր ետքերը երբոր աս համարձակ քայլափոխին մեծամեծ և անակնկալ հետեւանքներուն վրայ կը մտածէր՝ շատ անգամ կը զարմանար իր վրայ, ու չէր կրնար իմանալ թէ ինչպէս համարձակեր էր նոյն ճամբան բռնել ։ Ճշմարիտը ան էր որ անտեսանելի և ամենակարող ձեռք մը

քանեց երասանակը՝ ուղեցոյց ըլլալու , ու յառաջ վարեց ճշմարտութեան քարոզողը մէկ ճամբու մը մէջ որ ան չէր գիտէր, ու անցուց ան դժուարութիւններէն՝ որոնցմէ գուցէ վախնալով ետ պիտի կենար թէ որ գիտցած ըլլար, կամ թէ որ յառաջացած ըլլար մինակ՝ և միայն իր կամօքը ։ "Աս վէճին մէջ մտայ ես , կըսէ , առանց հաստատուն դիտաւորութեան կամ յօժարութեան , և բոլորովին անպատրաստ . զԱստուած կըկոչեմ ասոր վկայ , որ կըտեսնէ բոլոր սրտերը" ։

Լուտեր իմացաւ թէ աս ներողութիւնները ուրկէց կելլէին ։ փոքրիկ գիրք մը բերին իրեն՝ Մայնցի ու Մակտեպուրկի արքեպիսկոպոսին կնիքովը , որ կըպարունակէր ներողութեանց վաճառման մէջ գործածելու կանոնները ։ Այսպէս՝ աս երիտասարդ եպիսկոպոսը՝ աս ազնիւ իշխանն էր որ աս ամէն շաղփաղփութիւններուն հրաման կամ գոնէ թոյլտուութիւն տուած էր ։ Լուտեր անոր իրմէն մեծ ըլլալը տեսնելով՝ իր պարտաւորութիւնն էր յարգել ու մեծարել զանիկայ ։ Ուստի միտքը դրաւ որ այլ ևս օդը չծեծէ , հապա առաւել ինքըզինքը անոնց ուղղէ որոնց յանձնուած էր եկեղեցւոյ կառավարութիւնը ։ Նամակ մը գրեց անոր անկեղծութեամբ ու խոնարհութեամբ լեցուն . ան նոյն օրը որ իր նախադասութիւնները հրատարակեց , Լուտեր աս թուղթը գրեց Ալպերտին ։

"Ներէ ինծի՝ ամենապատիւ Հայր 'ի Քրիստոս՝ և գերապայծառ Իշխան , որ ես՝ բոլոր մարդոց յետինն ըլլալով , կըհամարձակիմ գրել ձեր գերամբարձեալ Մեծութեանը ։ Վկայ է ինծի Տէր Յիսուս , որ իմ ինչպէս նուաստ ու արհամարհ ըլլալս ճանչնալով երկար ժամանակէ 'ի վեր կըյապաղէի աս բանը ընել . . . . ։ Իսկ սակայն Ձեր բարձրութիւնը թող բարեհաճի նայիլ շամանդաղի մը վրայ , ու ձեր եպիսկոպոսական կարեկցութեամբը մարդասիրաբար ընդունի իմ խնդիրս ։

"Մարդիկ պապական ներողութիւնը երկրին մէջ կըպը-

տրտցունեն Ձեր Շնորհափայլութեան անունովը : Եւ այնչափ ամբաստանութիւն կընեմ քարոզիչներուն աղաղակին դէմ՝ (վասն զի ես չլսեցի զանիկայ,) որչափ որ տգէտ ու պարզամիտ ժողովրդոց սուտ կարծիքներուն դէմ, որոնք երբոր կըգտնեն աս ներողութիւնները, ապահով կըլլան իրենց փրկութեանը վրայ . . . . :

“Ամենամեծդ Աստուած Ձեր հոգողութեանը յանձնուած հոգիները՝ ամենապատուական Հայր իմ, ոչ կենաց այլ մահուան համար կըվարժուին : Ան անաչառ համարը որ պիտի պահանջուի ձեզմէ օր մը, ամէն օր աւելնալու վրայ է : Չեմ կրնար այլ ևս լուռ կենալ : Եւ . մարդս իր եպիսկոպոսին գործովը կամ պաշտօնովը չփրկուիր : Արդարը անդամ հազիւ կըփրկուի, ու կենաց տանող ճամբան նեղ է : Ուրեմն ինչո՞ւ համար ներողութեանց քարոզիչները սնոտի առասպելներով մարմնաւոր ապահովութեան մէջ ժողովուրդը կըքնացընեն :

“Թէ որ անոնց ականջ դնեմք, միայն ներողութիւնը քարոզուելու ու հռչակուելու է : Ի՜նչ, եպիսկոպոսին գլխաւոր և մի միայն պարտաւորութիւնը Աւետարանը ու Յիսուս Քրիստոսի սէրը ժողովուրդին սորվեցընել չէ՞ : Քրիստոս ինքը տեղ մը չըսաւ մեզի ներողութիւնները քարոզել, բայց պատուիրեց մեզի որ Աւետարանը քարոզեմք : Ուրեմն ինչպէս ահաւոր և վտանգաւոր բան է եպիսկոպոսի մը թողլ տալ որ Աւետարանը մէկ դի դրուի, ու միայն ներողութիւնները ժողովրդոց ականջներուն անդադար հնչուին . . . . :

“Գերընտիր Հայր հոգևոր, Գործակալաց Պատուէրին մէջ՝ որ Ձեր Շնորհափայլութեան անունովը հրատարակուած է, (անտարակոյս առանց ձեր գիտութեանը,) կըսուի թէ ներողութիւնը ամենապատուական գանձ է . թէ, անով մարդ կըհաշտուի Աստուծոյ հետ . և թէ՝ անիկայ գնողները ապաշխարութեան կարօտ չեն :

“Ի՞նչ կրնամ և ի՞նչ պէտք է ինծի ընել, ով ամենա-

պատիւ Եպիսկոպոս և պայծառափայլ Իշխան․ Տէր Յիսուս Քրիստոսի անունովը կաղաչեմ Ձեր Բարձրութեանը հայրական խնամով նայիլ աս բանիս վրայ, բոլորովին վերցընել աս գիրքը, ու հրաման ընել քարոզիչներուն որ տարբեր վարժութիւններ տան ժողովուրդին։ Թէ որ անփոյթ կըլլաք ասիկայ ընելու, դուք զձեզ պատրաստեցէք լսելու մէկ օր մը ձայն մը ելած որ պիտի նուաճէ աս քարոզիչները, մեծ անարգութիւն ըլլալու Ձեր ամենապայծառ Բարձրութեանը"։

Լուտեր նոյն ատենը իր նախադասութիւնները խրկեց արքեպիսկոպոսին, ու յաւելուած յօդուածով մը խնդրեց որ կարդայ զանոնք, որպէս զի իմանայ թէ որչափ անստոյգ էր աս ներողութեանց վարդապետութիւնը։

Այսպէս՝ Լուտերի մի միայն փափաքը ան էր որ Եկեղեցիին դէտերը ոտք ելլեն, ու ջանան խափանել ան չարիքները որ կաւերէին ու կապականէին զանիկայ։ Բան մը չէր կրնար այնչափ ազնիւ ու պատկառելի ըլլալ՝ որչափ աս նամակը՝ հասարակ միաբանէ մը գրուած այնպիսի երեւելի անձի մը, որ Եկեղեցիին ու Տէրութեան մեծամեծ իշխաններուն մէկն էր։ Նաեւ մէկը չգործեց աւելի Քրիստոսի պատուիրանին հոգիովը, "Ան որ կայսերն է՝ կայսեր տուէք, և ան որ Աստուծոյ է՝ Աստուծոյ տուէք"։ Աս գործը չնմանիր անխոհեմ ապստամբութիւն հանողի մը գործին, որ տէրութիւնները կըքամահրեն ու մեծամեծներուն դէշ կը խօսին․ այլ երկիւղածութեամբ եղած բողոք մըն է՝ քրիստոնէի մը ու քահանայի մը՝ որ զամէնը կըյարգէ, բայց ՚ի վեր քան զամենայն ինչ Աստուծոյ երկիւղը իր սրտին մէջ կը կրէ։ Սակայն իր բոլոր աղաչանքները ու խնդիրները անօգուտ էին։ Նորահաս Ալբերտը որ փառասիրութեան հեշտութիւնովը և հետամտութիւններովը աճեր ու պարարտացեր էր, պատասխան չտուաւ աս վսեմ բողոքիս։ Պըրանտէպուրկի Եպիսկոպոսը Լուտերի ձեռնադրողը՝ որ գիտնական և բարեպաշտ մարդ մըն էր՝ որուն ևս խրկեց Լու-

տեր իր նախադասութիւնները, պատասխան տուաւ թէ Եկեղեցին իշխանութեանը վրայ կըյարձակի, թէ շատ տրտմութիւն ու նեղութիւն պիտի բերէ իր վրայ, թէ իր կարողութենէն վեր գործ է ան, և թէ աղէկ է որ բոլորովին մէկ դի ձգէ ան գործը։ Այսպէս՝ Եկեղեցիին ու իշխանները իրենց ականջները գոցեցին Աստուծոյ ձայնին, որ այսպէս ազդու և զօրաւոր կերպով լսելի կընէր զինքը Լուտերի միջնորդութեամբը։ Չէին կամեր իմանալ ժամանակներուն նըշանները. բռնուած էին ան կուրութեամբը՝ որ արդէն այնչափ տէրութիւններու ու պետութիւններու աւերումը փութացուց։ "Երկուքն ալ կը մտածէին ան ատենը, ըսաւ Լուտեր վերջերը, թէ պապը չափազանց զօրաւոր պիտի գայ ինծի պէս ողորմելի աղքատ միաբանի մը"։

Բայց Լուտեր ան եպիսկոպոսներէն լաւագոյն կրնար դատել ներողութեանց վնասակար ներգործութիւնը ժողովրդոց վարքին ու բարոյականութեանը վրայ. վասն զի ինքը սերտ կապակցութիւն ունէր անոնց հետ։ Ինքը միշտ և առձեռն պատրաստ կըտեսնէր ինչ որ եպիսկոպոսները գիտէին միայն 'ի լրոյ, որուն մարդ չկրնար ապաւինիլ։ Եւ թէ որ եպիսկոպոսներէն օգնութիւն չգտնէր, Աստուած պակաս չէր իրեն։ Եկեղեցիին գլուխը որ երկինքը կընստի, և որուն տրուած է երկրի բոլոր իշխանութիւնը, ինքը պատրաստեր էր երկիրը, ու իր ծառային ձեռքը յանձներ էր սերմը, ինքը ճշմարտութեան աս սերմերուն թևեր տուաւ, ու ինքը րոպէի մը մէջ Եկեղեցւոյ բովանդակ դաշտին վրայ զանոնք սփռեց։

Հետևեալ օրը մէկը չերևաց համալսարանը Լուտերի նախադասութիւններուն հակառակելու։ Տէցէլի տուրևառը այնպէս ամօթալից և վատանուն գործ մըն էր՝ որ բաց իրմէն և իրեն հետևողներէն մէկը չէր համարձակեր զանիկայ պաշտպանելու։ Բայց աս նախադասութիւնները սահմանուած էին համալսարանին կամարակապ յարկէն անդին արձագանք հանել։ Հազիւ թէ Վիդդէմպէրկի բերդին եկեղեցիին դուռը անոնք գամուեր էին՝ որ ատեն մուրճին տկար

ձայնին հետևեցաւ որոտման ձայն մը՝ որ գերապանծ Հըռովմայ հիմերը շարժեց, պապականութեան պատերը՝ գահերը ու օրէնները իսկ և իսկ կործանել սպառնացաւ, անոր ախոյեանները ափշեցուց ու զարհուրեցուց, և միանգամայն մոլորութեան քունէն հազարաւոր մարդիկ արթնցուց:

Աս նախադասութիւնները կայծակի արագութեամբ տարածեցան: Ամիս մը չանցած մինչև Հռովմ հասան: «Տասնըհինգ տարւոյ մէջ, կըսէ ժամանակակից պատմագիր մը, բոլոր Գերմանիա տարածեցան, ու ամիսի մը մէջ բովանդակ քրիստոնէութեան մէջ վազեցին, որպէս թէ հրեշտակներ էին՝ որ զանոնք ամէն մարդոց կը տանէին: Դժուարին է իմանալ անոնց պատճառած յուզմունքը»: Երբոր անոնք թարգմանուեցան Հոլանտացւոց և Սպանիացւոց լեզուներուն. ու ճանապարհորդին մէկը մինչև Երուսաղէմ տարաւ զանոնք ծախելու: «Ամէն մարդ, կըսէ Լութեր, կը գանգատէր նորոգութիւններէն. և որովհետև բոլոր եպիսկոպոսները ու վարժապետները լուռ կեցան՝ ու մէկը չէր կամէր ցուլը եղջիւրներէն բռնել, ուրեմն Լութերը անուանի վարժապետ մը եղաւ: Վասն զի՝ վերջապէս, կըսէին, վարժապետ մը գտնուեցաւ որ համարձակեցաւ կռուիլ անոր հետ: Բայց ես չէի ուզեր աս փառաւորութիւնը, ու կը մտածէի՝ թէ ան երգին եղանակը շատ բարձր է իմ ձայնիս»:

Ուխտաւորներուն շատերը որոնք խուռն բազմութեամբ ամէն կողմերէն Վիդգէմպէրկ եկեր էին Ամենայն Սրբոց տօնախմբութեանը, հետերնին տարին՝ ոչ նորոգութիւնները, այլ Օգոստինեան միաբանին հռչակաւոր նախադասութիւնները: Այսպէս անոնք օգնութիւն ըրին զանոնք տարածելու: Ամէն մարդ կըկարդար, կըխորհէր անոնց վրայ, և կըմեկնէր զանոնք: Ամէն տեղ անոնց վրայ կըխօսէին բոլոր վանքերուն ու բոլոր դպրոցներուն մէջ: Ամէն ջերմեռանդ միաբանները՝ որոնք վանքերը մտած էին իրենց հոգիները փրկելու, և բոլոր արդարակորով ու բարեմիտ մարդիկ կուրախանային ճշմարտութեան այսպիսի պարզ և սքանչելի

դաւանութեանը վրայ, և 'ի բոլոր սրտէ կը բաղձային որ Լուտեր իր սկսած գործը շարունակէ: "Ընկատեմ, կըսէ Էրասմոս որ Բարեկարգողին մեծ նախանձոտը եղաւ, կարդինալի մը հետ խօսելուն, թէ մարդոց բարոյականները որչափ անմեղադրելի ըլլան՝ ու իրենց բարեպաշտութիւնը որչափ աւետարանական, այնչափ քիչ կըհակառակին Լուտերի: Իր վարքը կըգովեն անոնք ևս որ չեն կրնար տանել իր կարծիքները: Աշխարհ ձանձրացեր էր ան ուսման եղանակէն որուն մէջ խառնուած էին այնչափ տղայական կեղծիքներ ու մարդկային հնարքներ, ու կըծարաւէր ան կենդանի յստակ և ծածկեալ աղբիւրին որ կըվազէ առաքելոց և աւետարանչաց երակներէն: Լուտեր այնպիսի տաղանդներ ունէր՝ որոնք զինքը աս բաներուն յարմարեցին, ու իր նախանձաւորութիւնը բնականաբար պիտի բորբոքէր ասանկ ազնիւ ձեռնարկութեան վրայ":

## ՀԱՏՈՒԱԾ Ջ

ԳԵՐՄԱՆԻԱՅԻ մէջ աս նախադասութիւններուն պատճառած բազմօրինակ բայց հրաշալի ազդեցութեանը վրայ գաղափար մը ունենալու համար՝ պարտիմք անոնց ետևէն երթալ ուր որ անոնք թափանցեցին, ուսումնականին սենեակը՝ միաբանին խուցը՝ ու իշխաններուն ապարանքները:

Խոհեմամիտն Էրասմոս Հոլանտա էր երբ որ աս նախադասութիւնները իրեն հասան: Կուրախանար իր սրտին մէջ, որ անկարգութիւններուն բարեկարգութեանը վրայ իր ունեցած գաղտնի փափաքը այսպէս արիաբար բացայայտած տեսաւ: Գովեց անոնց հեղինակը, յորդորելով միայն որ աւելի չափաւորութեամբ և խոհեմութեամբ վարուի: Այլ սակայն երբոր մէկը իր առջևը կըմեղադրէր Լուտերի համարձակութիւնը, "Աստուած, ըսաւ Էրասմոս

բժիշկ մը տուաւ մարդոց՝ որ ան կերպովը մարմինը կըկարէ, վասն զի՝ առանց ասանկ մէկու մը հիւանդութիւնը անբժշկելի պիտի ըլլայ»: Ու երբոր յետ ժամանակաց Սաքսոնիայի կայսրընտիրը Լուտերի գործին վրայ իր կարծիքը ուզեց իմանալ, «Ամենևին չեմ զարմանար, ըսաւ ժպտելով, որ այսչափ չփոթութիւն պատճառեց ան. վասն զի ինքը երկու աններելի յանցանք գործեց. պապին թագին՝ ու միաբաններուն փորերուն դէմ պատերազմ բացաւ»:

Ստոյնլաւսիցի վանքին մեծաւորը Փղեկոս՝ ատենէ մը ՚ի վեր դադարեր էր պատարագ մատուցանելէն. բայց աս բանիս ճշմարիտ պատճառը մէկու մը ըսած չէր: Օր մը վանքին սեղանատանը մէջ կախուած գտաւ Լուտերի Նախադասութիւնները. ձեռքը առաւ զանոնք ու կարդաց, ու անոնց մէկ քանին կարդալուն չկրնալով զսպել իր ուրախութիւնը՝ իսկ և իսկ աղաղակեց ըսելով. «Ահ, վերջապէս եկած է մէկը՝ որուն շատ ժամանակէ ՚ի վեր կըսպասուէր, ու ամէն բան պիտի ցուցընէ ձեզի. միաբաններ՝ նայեցէք»: Փղեկոս գրեց վարժապետին ու յորդորեց որ ան փառաւոր մարտը արիութեամբ շարունակէ: Լուտեր կըկոչէ զանիկայ՝ ուրախութեամբ և քաջալերութեամբ լեցուն մարդ:

Սա միջոցիս Վուրցպուրկի հին և հռչակաւոր աթոռը կը նստէր բարեպաշտ՝ համեստ և իմաստուն մարդ մը՝ Լաւրենտիոս Բիբրացին: Ազնուականին մէկը երբոր եկաւ պատմեց ասոր թէ միտք ունի իր աղջիկը կուսանաց վանքը տալ, «Ան աղէկ է, ըսաւ, որ ամուսնացընես զանիկայ». ու վրայ բերաւ, «Եթէ որ ստակի հարկաւորութիւն ունիս աս բանը ընելու, ես փոխ տամ քեզի»: Կայսրը ու բոլոր իշխանները խիստ բարձր յարգութեամբ կըպատուէին զինքը. Եկեղեցիին՝ և յատկապէս վանքերուն անկարգութեանցը վրայ մեծ սուգ ունէր: Նախադասութիւնները ասոր ալ հասան իր պալատին մէջ. կարդաց զանոնք մեծ ուրախութեամբ, ու հրապարակաւ յայտնեց իր հաւանութիւնը Լուտերի գաղափարին վրայ: Ետքերը Ֆրիդերի-

կոս կայսրընտրին գրեց՝ "Թող մի տար որ բարեպաշտօն Մարտինոս Լուտեր վարդապետը քեզմէ հրաժարի. վասն զի՝ անոր դէմ եղած ամբաստանութիւնները անիրաւ են" ։ Կայսրընտիրը աս վկայութեանս վրայ ուրախացաւ, իր ձեռօքը գրեց Բարեկարգողին, ու իմացուց անոր ։

Մաքսիմիլիանոս կայսրը և Կարոլոսի նախորդը՝ ինքն ալ զմայլելով կարդաց Վիդդէմպէրկի միաբանին նախադասութիւնները, ու իմացաւ անոր մտացը ուր հասնիլը ։ Յառաջագոյն տեսաւ որ աս աննշան Օգոստինեանը հաւանականաբար զօրաւոր դաշնակից մը պիտի ըլլայ Գերմանիայի հետ, Հռովմայ հետ անոր ունեցած վէճին համար ։ Վասն որոյ աս պատգամը խրկեց Սաքսոնիայի կայսրընտրին. "Աղէկ նայէ Լուտեր միաբանը. վասն զի կրնայ գալ ատեն մը որ ինքը մեզի հարկաւորի". ու շատ չանցած տէրութեան իշխաններուն ժողովին մէջ փէֆինգէրին՝ կայսրընտրին հաւատարիմ խրատչին պատահելով, ըսաւ. "Ի՞նչ կընէ ձեր Օգոստինեանը. արդարև արհամարհելի չեն իր նախադասութիւնները. սքանչելի բաներ պիտի ցուցընէ միաբաններուն" ։

Մինչև անգամ Հռովմայ ու Վատիկանու մէջ շատ գէշ մտօք ընդունուած չէին նախադասութիւնները ։ Լեոն Ժ կընկատէր զանոնք այնպիսի զգացմամբ որ յաւէտ կը պատշաճի գրագիտութեան բարեկամի քան թէ պապի ։ Անոնց պարգևած զուարճութիւնը զանց առնել տուաւ իրեն ան անաչառ ճշմարտութիւնները որ կըպարունակէին. և երբ որ սրբազան պալատին վերակացուն որ էր քննիչ գրոց՝ Սեղբեստրոս Պրիէրիաս՝ խնդրեց իրմէն որ Լուտերը հերետիկոս ընդունի, պատասխան տուաւ և ըսաւ. "Աս նոյն եղբայրը Մարտինոս Լուտեր, տաղանդի տէր մարդ է. ու անոր դէմ ըսուածներուն բոլորը միայն միաբաններուն նախանձութիւնն է"* ։

*Che frate Martino Luthero aveva un bellissimo ingenio, e che coteste erano invidie fratesche (Brandelli Hist. trag. pars. 3.)

Լուտերի նախադասութիւնները քիչ անձանց վրայ ա-
ւելի ազդեցութիւն ունեցեր էին՝ քան որչափ Աննապէրկի
աշակերտին՝ որն որ Տէցէլ այնչափ անգթութեամբ մեր-
ժեր էր։ Միկոնիոս վանք մը մտեր էր, ու նոյն գիշերը ե-
րազին մէջ ընդարձակ դաշտ մը տեսեր էր հասուն ցորե-
նով ծածկուած։ "Հնձէ", ըսաւ մէկու մը ձայնը՝ որ կը
թուէր թէ իրեն կառաջնորդէ. և երբոր ինքը իր անկա-
րողութեանը համար ներում խնդրեց, իր առաջնորդը
հնձող մը ցուցուց անոր որ անիմանալի արագութեամբ
կաշխատէր։ "Անոր հետևէ, ու անոր ըրածին պէս ըրէ",
ըսաւ իր առաջնորդը։ Միկոնիոս Լուտերի նման սրբու-
թեան փափաքելով՝ վանքին մէջ ինքզինքը տուաւ հսկում-
ներու՝ ծոմերու՝ ճնշումներու, ու մարդոցմէ հնարուած
ամէն տեսակ գործերու։ Բայց 'ի վերջոյ իր հետամուտ
եղածը ստանալու բոլոր յոյսը ձգեց։ Կրոց աշակերտու-
թիւնը մէկ դի դրաւ, ու միայն ձեռագործ աշխատութիւն-
ներու սկսեց պարապիլ։ Երբեմն կազմարարութիւն կը-
նէր, երբեմն ճախարակագործութիւն կամ ուրիշ մեքե-
նական գործառնութիւն մը։ Բայց աս մարմնաւոր ժրու-
թիւնը օգուտ չըրաւ իր ամբոխեալ խիղճը հանդարտելու։
Աստուած խօսեր էր իրեն, ու ինքը չէր կրնար վերստին իր
առջի թմրութեանը մէջ իյնալ։ Աս մտաւոր նեղութիւնը
շատ տարիներ տևեց։ Մարդիկ երբեմն կերևակայեն՝ թէ
Բարեկարգողներուն ճամբաները բոլորովին դիւրին էին,
և թէ անոնց որ անգամ մը եկեղեցիին դժուարատար կա-
նոնապահութիւնները մերժեր էին, ուրիշ բան մնացած չէր
բայց եթէ դիւրութիւն և զուարճութիւն։ Ասանկ անձինք
չեն գիտեր՝ որ անոնք ճշմարտութեան հասան միայն ներ-
քին նեղութիւններով՝ որ հազարապատիկ աւելի դժուա-
րին են ան կանոնապահութիւններէն, որոնց դիւրութեամբ
կըհպատակին ծառայական հոգիները։ Վերջապէս 1517
տարին եկաւ։ Լուտերի նախադասութիւնները տպա-
գրութեամբ հրատարակուելով՝ բոլոր երկիրներ տարա-

ծեցան, ու Աննապերկի աշակերտին բնակած վանքը հասան ։ Անիկայ Յովհաննէս Մօխտ անուն ուրիշ միաբանի մը հետ վանքին մէկ կողմը քաշուեցաւ որ առանց արգելքի կարենայ կարդալ զանոնք ։ Ա՛ն էր արդարև ան ճշմարտութիւնը որ իր հօրմէն սորվեր էր ․ իր աչքերը բացուեցան ․ ձայն մը զգաց իր ներսը՝ որ կըհամեմատէր բովանդակ Գերմանիայի մէջ ան առենը հնչուած ձայնին ․ ու առատ մխիթարութիւն մը լցուց իր սիրտը ։ “Բացայայտ կըտեսնեմ, ըսաւ, որ Մարտինոս Լուտերն է ան հնձողը՝ որն որ տեսայ երազիս մէջ, և որ սորվեցուց ինծի հասունն ցորենը հնձել” ։ Անմիջապէս սկսեց դաւանիլ ան վարդապետութիւնը որ Լուտեր հրատարակեր էր ։ Միաբանները զարհուրելով ականջ կըդնէին իրեն, իր նոր կարծիքներուն կըհակառակէին, ու Լուտերին և անոր վանքին դէմ կըբողոքէին ։ “Այս վանքը, պատասխան տուաւ Միկոնիոս, կընմանի մեր Տէրոջը գերեզմանին ․ ոմանք կաշխատին Քրիստոսի յարութիւնը արգիլել, բայց չեն կրնար” ։ Վերջը իր մեծաւորները տեսնելով որ կարող չեն զանիկայ համոզելու, տարի ու կէս արգիլեցին որ իր վանքին շրջապատէն դուրս մէկու մը հետ հաղորդակցութիւն չունենայ ․ թող չտալով ոչ գրելու և ոչ նամակ ընդունելու, ու սպառնացան որ մշտնջենաւորապէս կըբանտարգեն զինքը ։ Ինչ և իցէ ազատութեան ժամը ասոր ալ հասաւ ։ Քիչ մը ատենէն Յուիկաւի ժողովրդապետ դըրուելով, Թուրինկիայի եկեղեցիներուն մէջ նախ և առաջ ինքը յայտնապէս քարոզեց պապականութեան դէմ ։ “Ան ատենն էր որ կարողացայ, կըսէ, Աւետարանի հունձին մէջ իմ մեծարու հօրս Լուտերին հետ աշխատիլ” ։

Ասոնցմէ զատ անտարակոյս կային և ուրիշ հոգիներ՝ որոնց կենդանութեան նշան եղան Լուտերի նախադասութիւնները ։ Նոր լոյս մը վառեցին անոնք շատ խուցերու՝ խրճիթներու և պալատներու մէջ ։ Անոնք որ վանական առանձնութեան մէջ հացալից սեղան մը՝ դատարկասուն

կեանք՝ մը՝ ու իրենց ընկերներուն զիրենք յարգելը կը փնտռէին, կըսէ Մոնթեսքիոս, Բարեկարգողին անուանը վրայ նախատինք բարդեցին. բայց այն միաբանները որոնք աղօթքով ծոմերով ու ճնշումներով կապրէին, շնորհակալ եղան Աստուծոյ, երբոր դարէ մը յառաջ Յովհաննէս Հուսի նախաձայնած արծիւին առաջին ձայնը լսեցին*: Հասարակ ժողովուրդը անգամ՝ որ սակաւ ինչ կիմանային աստուածաբանական խնդիրները, և միայն գիտէին՝ թէ աս մարդուն բողոքարկութիւնները մուրացկան վարդապետներուն ու դատարկասուն միաբաններուն դէմ էր, ուրախութեան ձայնով զանիկայ կողջունէին: Ասանկ անոր արիական նախադասութիւններովը տարապայման զգացում մը ծներ էր Գերմանիայի մէջ: Բայց անոր ժամանակակիցներէն քանի մը արթունները տեսան, թէ ծանր հետևանքներ պիտի ունենան այն նախադասութիւնները, ու թէ՝ բազմաթիւ արգելքներ պիտի ելլեն անոնց դէմ: Մեծաձայն յայտնեցին իրենց երկիւղները, ու բնաւ չուրախացան առանց զարհուրելու:

“Շատ կըվախնամ, գրեց Բեռնարդոս Ադելման՝ Աւկսպուրկի պատուական կանոնիկոսը՝ իր բարեկամին Փիրքհայմերին, որ այն արժանայարգ անձը վերջապէս տեղի տայ ներողութեանց կողմնականներուն ագահութեանը ու զօրութեանը: Իր ապացուցութիւնները այնչափ սակաւ զօրութիւն ունեցած են՝ որ Աւկսպուրկի եպիսկոպոսը մեր առաջնորդը և մետրապօլիտը պապին անունովը Հռովմայ Սրբոյն Պետրոսի համար նոր ներողութիւններու հրաման հաներ: Ժամանակ չանցուցած իշխաններէն պաշտպանութիւն թող խնդրէ. զգուշ թող կենայ զԱստուած փորձելու. վասն զի մէկ մարդ մը միտքը կորսընցուցած պիտի ըլլայ որ չտեսներ այն մեծ վտանգը որուն մէջ ինքը կըկե-

* Յովհաննէս Հուս իր հալածման ատենը մարգարէացաւ՝ թէ իրեն պէս տխմար սագին տեղը ճշմարտութիւնը զօրաւոր արծիւներ պիտի ծնանի: Տես Երես 123:

նայ''։ Ադելման մեծապէս ուրախացաւ՝ երբոր լուր մը ելաւ թէ Ը. Հենրիկոս Թագաւորը Անգղիոյ հրաւիրեր էր Լութերը։ ''Հոն պիտի կարողանայ, կըմտածէր, ճշմարտութիւնը սորվեցընել առանց նեղութիւն կրելու''։ Շատերը կային ալ որ այնպէս կերեւակայէին՝ թէ Աւետարանին վարդապետութիւնը իշխաններուն ուժովը պէտք է պաշտպանուիլ։ Չէին գիտեր որ առանց այսպիսի զօրութեան կը յառաջանայ ան. և թէ շատ անգամ աս զօրութեան դաշնակցութիւնը կըխափանէ ու կըտկարացընէ զանիկայ։

Ալպերտ Պրանց հռչակաւոր պատմագիրը Համպուրկի մէջ իր մահուան անկողինին վրայ էր երբոր Լութերի նախադասութիւնները անոր բերին։ ''Իրաւունք ունիս, եղբայր Մարտինոս, գոչեց մահուան մերձեցողը, բայց չպիտի յաջողիս բանդ։ Աղօթքէ մեկուն, մտիր քու խուցդ՝ ու աղաղակէ, Աստուած՝ ողորմէ՛ ինծի''։

Լութերի բարեկամներուն շատերը ոչ միայն վախցան անոր ընթացքէն, հապա ոմանք ալ իրենց տհաճութիւնը անոր յայտնեցին։

Պրանտէպուրկի եպիսկոպոսը իր թեմին մէջ շատ մեծ վէճի մը սկզբնաւորութիւնը տեսնելուն վրայ տրտմելով, ուզեց որ խափանէ զանիկայ։ Միտքը դրաւ որ քաղցրութեամբ ձեռք զարնէ բանին։ Լէնինի աբբային միջնորդութեամբը ըսաւ Լութերին, ''Ներողութեանց վրայ գրուած նախադասութիւններուն մէջ բան մը չեմ գտներ որ ուղղափառ հաւատոյ դէմ ըլլայ։ Ես ինքնս անգամ կը դատապարտեմ ան անխոհեմ քարոզութիւնները. բայց խաղաղութեան սիրոյն և քու եպիսկոպոսիդ պատուոյն համար դադարէ աս նիւթիս վրայ գրելէն''։ Լութեր տարակուսութեան մէջ ինկաւ որ շատ մեծ աբբայ մը՝ ու ասանկ երեւելի եպիսկոպոս մը այսպիսի խոնարհութեամբ խօսեր էին իրեն։ Իր սրտին առաջին ներգործութիւնովը շարժելով և յափշտակուելով պատասխան տուաւ, ''Կը գիջանիմ. աւելի կընտրեմ հնազանդութիւնը քան թէ

նոյն իսկ հրաշագործութիւն ընելը, թէ որ անիկայ կարելի ըլլար ինծի'' :

Կայսրընտիրը վշտանալով կըտեսնէր վէճի մը սկզբնաւորութիւնը, որ անտարակոյս օրինաւոր էր, բայց անոր վախճանը չէր կրնար առաջուց տեսնուիլ : Չկար իշխան մը որ առաւել անկեղծութեամբ ուզեր պահել հասարակաց խաղաղութիւնը քան որչափ Փրիդրիկոս : Իսկ սակայն հիմա աս փոքրիկ կայծը ի՜նչ մեծամեծ հրդեհներ կրնար յարուցանել . միաբաններուն աս վէճը ի՜նչ մեծամեծ կռիւներ, ի՜նչ ազգաց բաժանմունքներ կրնար յառաջ բերել : Կայսրընտիրը աս նիւթիս վրայ իր ունեցած նեղութիւնը կրկին և կրկին իմացուց Լուտերին :

Իր կարգին և մինչև Վիդդէմպէրկի իր վանքին մէջն ալ Լուտեր տհաճութեան պատահեցաւ : Մեծաւորը ու անոր փոխանորդը Տէցէլին և անոր ընկերներուն ըրած աղաղակին վրայ զարհուրեցան : Ահով ու դողով պաշարուած եղբայր Մարտինոսի խուցը գացին, "Կաղաչեմք քեզի, ըսին, անարգութիւն մի բերեր քու կարգիդ վրայ : Միւս կարգերը՝ և մանաւանդ Դոմինիկեանները արդէն ուրախութեամբ լցուած են, մտածելով որ անարգութեանը մէջ մինակ չեն իրենք'' : Լուտեր աս խօսքերէն այլայլեցաւ . բայց շուտով ինքզինքին գալով պատասխան՚ տուաւ . "Սիրելի հարք, թէ որ բանը Աստուծմէ չէ, պիտի ոչնչանայ . թէ որ Աստուծմէ է, թող տուէք յառաջ երթայ'' : Մեծաւորը ու իր փոխանորդը լռեցին : "Բանը տակաւին կը յառաջանայ, կըսէ Լուտեր՝ յետ ժամանակաց աս դիպուածը պատմելուն, և թէ որ Աստուած կամի, օր ըստ օրէ լաւագոյն պիտի յառաջանայ մինչև վերջը . Ամէն'' :

Լուտեր բազմապատիկ յարձակմունքներ ալ ունէր կրելու որ շատ ուրիշ կերպ էին : Էռֆուրդի մէջ ամբաստանուեցաւ թէ բռնութեամբ և հպարտութեամբ կըդատապարտէ ուրիշներուն կարծիքները . ասիկայ նախատինք մըն է՝ որ սովորաբար ան անձերուն վրայ կիյնայ, որոնք

Աստուծոյ Բանին զօրութիւնովը համոզուած կըխօսին : Ալ նախատուէր ևս իբրև վաղվաղկոտ և թեթևամիտ :

"Զափաւորութիւն կըպահանջեն ինծմէ՝ պատասխանեց Լուտեր, ու բուն իսկ իրենք ոտքի տակ կառնեն զանիկայ իմ վրաս դատաստան ընելնուն... Ուրիշին աչքի շիւղը կը տեսնենք միշտ, ու մեր աչքին մէջի գերանը չենք իմանար... Ճշմարտութիւնը աւելի պիտի չշահի իմ չափաւորութեամբս քան որչափ պիտի կորսընցունէ իմ յանդգնութեամբս":— "Կուզէի գիտնալ," կըշարունակէ՝ ուղղելով իր խօսքը Լանժին, "թէ իմ նախադասութիւններուս մէջ ի՞նչ սխալմունք գտաք դուք և ձեր աստուածաբանները : Ո՞վ չգիտեր թէ հազիւ երբեք կրնամք նոր գաղափար մը յառաջ տանիլ առանց հպարտ երևալու, և առանց ամբաստանուելու թէ կռիւ կուզեմք հանել : Եւ է որ նոյն ինքն խոնարհութիւնը ջանար նոր բան մը ընել, տարբեր կարծիք ունեցողները պիտի աղաղակէին թէ հպարտ է : Ինչո՞ւ համար Քրիստոս և բոլոր մարտիրոսները սպաննուեցան. անոր համար որ երևցան թէ հպարտութեամբ կարհամարհէին իրենց ապրած ատեններուն իմաստութիւնը, և անոր համար որ առաջ հին կարծիքներուն պատգամախօսներէն խոնարհութեամբ խորհուրդ չառած նոր ճշմարտութիւններ յառաջ բերին" :

"Ասան որոյ աս օրերուս իմաստունները թող չըսպասեն ինծմէ այնչափ խոնարհութիւն՝ կամ յաւէտ կեղծաւորութիւն, որ իմ պարտաւորութեամբս ինծմէ խօսիլ պահանջածը հրատարակելէս առաջ իրենցմէ խորհուրդ հարցընեմ : Իմ ըրածս մարդկային խոհեմութեամբ պիտի չկատարուի, այլ Աստուծոյ իմաստութեամբը : Եւ է որ գործը Աստուծմէ է, ո՞վ պիտի դադրեցընէ զանիկայ, թէ որ Աստուծմէ չէ, ո՞վ կրնայ յառաջացընել զանիկայ : Ոչ իմ կամքս՝ ոչ անոնցը՝ ոչ մերը, այլ քու կամքդ՝ քու կամքդ ըլլայ՝ ով Հայր սուրբ, որ երկինքն ես":

Ի՜նչ արիութիւն, ի՛նչ ազնիւ աստուածազդեցութիւն

ինչ առ Աստուած ապաւինութիւն, և մանաւանդ ինչ ճշմարտութիւն աս խօսքերուն մէջ, և ինչ ճշմարտութիւն բոլոր ժամանակաց համար։

Բայց և այնպէս՝ ան նախատինքները ու ամբաստանութիւնները որ ամէն կողմանէ Լուտերի վրայ կուգային, փոքր 'ի շատէ տպաւորութիւն մը ըրին անոր մտացը վրայ։ Յիրաւի իր ակնկալութիւններուն մէջ խաբուեցաւ. վասն զի այնպէս կը յուսար որ պիտի տեսնէ թէ Եկեղեցիին գլխաւորները ու ազգին գերահռչակ փիլիսոփաները իր հետը յայտնապէս պիտի միաբանին, բայց տարբեր եղաւ բանը։ Իր սկզբնաւորութեանը իսկ և իսկ ընդունած քաջալերական խօսքն էր աւելի սէր ցուցընողներուն բոլոր օգնութիւնը. ու ընդհակառակը մինչև հիմայ՝ անոր պատուամեծար յարգութեամբ բռնած մարդոց շատերը մեծաձայն աղաղակաւ դատապարտեցին զինքը։ Մինակ գտաւ զինքը բոլոր Եկեղեցիին մէջ, մինակ Հռոմայ դէմ, մինակ ան վաղեմի և ահագին շինուածքին ոտքը, որուն հիմունքը երկրիս սրտին կը հասնէին՝ ու պարիսպները երկնից բարձրութեանը, և որուն յանդուգն հարուած մը տալ համարձակեցաւ ինքը։ Խռովեցաւ ու սիրտը կոտրեցաւ աս խորհուրդին վրայ։ Ան մտատանջութիւնները՝ որոնք կը կարծէր թէ յաղթած է, նոր զօրութիւնով իր մտացը դարձան. կը զարհուրէր երբոր կը մտածէր թէ Եկեղեցիին բոլոր իշխանութիւնը իրեն դէմ ելած է։ Ան իշխանութենէն հրաժարիլը, հակառակիլը ան ձայնին՝ որուն ազգերը ու դարերը խոնարհութեամբ հնազանդած էին՝, դէմ դնելը ան եկեղեցիին՝ որն որ իր մանկութենէն սորված էր պատուել իբրև մայր հաւատացելոց, ինքը չնչին միաբան մը ըլլալով մարդկային կարողութենէն դուրս ջանք մըն էր։ Ո-չինչ քայլափոխ աւելի թանկագին եղաւ իրեն քան որչափ աս, և աս քայլափոխն էր որ որոշեց Բարեկարգութեան վիճակը։

Մէկը չկրնար իրմէն լաւագոյն նկարագրել ան խռովու-

թիւնը որ անատենը իր մտքին մէջ կըկրէր ։ “Ես գործը սկսեցի, ըսաւ, մեծ վախով ու մեծ դողով ։ Ի՞նչ էի ես անատենը. աղքատ՝ թշուառական՝ չնչին կրօնաւոր մը, առաւել դիակի մը նման քան թէ մարդու ։ Ո՞վ էի ես պապին մեծափառութեանը դէմ դնել, որուն առջևը ոչ միայն երկրի թագաւորները ու բովանդակ աշխարհ կըդողար, հապա նաև՝ թէ որ կրնամ ըսել, երկինք ու դժոխք պարտաւորած էին իր կամացը հարևանցի ակնարկութեանը հնազանդիլ ։ Մէկը չգիտեր թէ ինչ քաշեցի ան երկու առջի տարիները, և ինչ սրտաբեկութեան՝ կրնամ ըսել ինչ յուսահատութեան մէջ շատ անգամ կըթաղուէի ։ Չեն կրնար իմ նեղութիւններուս վրայ գաղափար մը ձևացընել ան բարձրամիտ հոգիները որոնք ետքը այնպիսի համարձակութեամբ դէմ դրին պապին. թէպէտ և բոլոր իրենց ճարտարութիւնովը չկրցան վնաս մը ընել անոր, թէ որ Քրիստոս խնծմով իր տկար և անարժան գործիքին ձեռքը՝ չըներ անոր վրայ վէրք մը որմէն բնաւ պիտի չըբժըշկուի ։ Բայց երբոր անոնք բաւական սեպեցին 'ի զննին կենալ՝ ու զիս մինակ ձգել վտանգին դէմ ելլելու, չէի այնպէս երջանիկ՝ այնպէս խաղաղ կամ այնպէս ապահով յաջողութիւն գտնելու. վասն զի անատենը շատ բաներ չէի գիտեր, որոնք հիմա՝ փառք Աստուծոյ՝ գիտեմ ։ Ճշմարիտ է որ շատ բարեպաշտ քրիստոնեաներ կային՝ որոնք մեծապէս հաճեցան իմ նախադասութիւններուս, ու շատ աղէկ կարծիք ունեցան անոնց վրայ. բայց ես կարող չէի ճանչնալ զասոնք, կամ իբրև Հոգւով Սրբով ներշնչեալ կարծել զանոնք. միայն կընայէի պապին՝ կարդինալներուն՝ եպիսկոպոսներուն՝ աստուածաբաններուն՝ իրաւաբաններուն՝ միաբաններուն ու քահանաներուն ։ Ասոնցմէ էր որ կըյուսայի Հոգին շնչել ։ Սակայն և այնպէս՝ Սուրբ Գրոց միջնորդութեամբը բոլոր ընդդիմադրող խնդիրներուն յաղթելէս ետև՝ Քրիստոսի շնորհքովը շատ տառապանքով աշխատութիւնով ու մեծ դժուարութիւնով վեր-

ջատէս յաղթեցի և ան մի միայն խնդիրը որ տակաւին խոչընդոտ կը լլար ինծի․ այսինքն է՝ թէ պարտիմ մտիկ ընել եկեղեցիին․ վասն զի պապին եկեղեցին իբրև ճշմարիտ եկեղեցի կըպատուէի իմ սրտովս․ և ասիկայ ես կընէի առաւել անկեղծութեամբ և յարգութեամբ քան թէ անարգ և վատահամբաւ խանգարիչները, որոնք ինծի հակառակելու համար հիմա այնչափ կըմեծցընեն եկեղեցին։ Եթէ որ պապը ոչինչ համարած ըլլայի ես՝ ինչպէս իրենց բերնովը զինքը այնչափ գովաբանողները սրտերնուն մէջ նոյնպէս կըհամարին զանիկայ, պիտի վախնայի՝ թէ ան նոյն վայրկեանին երկիրը պիտի բացուէր, ու կենդանւոյն պիտի կլլէր զիս իբրև Կորխը ու իր ընկերները"։

Աս պատերազմները ինչ պատիւ կընծայեն Լուտերին․ ինչ անկեղծութիւն, ինչ ուղղութիւն կըցուցընեն մեզի անոր սրտին մէջ․ քանի՜ առաւել մեր յարգութեանը կարժանաւորի ինքը աս ներքին և արտաքին ցաւալի յարձակմունքներովը, քան որչափ առանց մաքառման աներկիւղ արիութեամբ կարողանար արժանաւորելու։ Աս իր հոգւոյն վիշտը աղէկ ապացոյց է իր գործին ճշմարիտ և Աստուածային գործ ըլլալուն։ Կըտեսնեմք որ իր բոլոր գործերուն պատճառը ու ծագումը երկինքէն է։ Աս բոլոր հանգամանքներէն ետև որ նշանակեցինք՝ ո՞վ կըհամարձակի ըսել թէ Բարեկարգութիւնը քաղաքական գործ մըն էր։ Ո՛չ, արդարև մարդկային իմաստութեան պտուղ չէր ան, այլ Աստուածային կարողութեան։ Եթէ որ Լուտեր միայն մարդկային կիրքերով շարժած ըլլար, իր երկիւղներուն տեղի պիտի տար․ իր յուսաբեկութիւնները ու կասկածները պիտի շիջուցանէին ան հուրը որ իր հոգւոյն մէջ բորբոքեցաւ․ և միայն վաղանցիկ լոյս մը պիտի ձգէր Եկեղեցիին վրայ՝ ինչպէս որ առաջ ըրած էին այնչափ նախանձաւոր և բարեպաշտ անձինք, որոնց անունները մինչև մեզի հասան։ Բայց հիմա Աստուծոյ ժամանակը եկած էր․ գործը խափանուելու չէր․ Եկեղեցիին ազատութիւնը պիտի կա-

տարուէր ։ Լուտեր սահմանուած էր գոնէ ճանապարհ պատրաստել ան լիակատար ազատութեանը և ան գերազանց աճմանը որ Քրիստոսի Թագաւորութեանը խոստացեալ է ։ Այսպէս ինքը փորձառու եղաւ ան փառաւորեալ խոստմունքին ճշմարտութեանը, թէ "Տէրոջը սպասողները իրենց զօրութիւնը պիտի նորոգեն". Եսայ. Խ. 30 ։ Այս ան նոյն Աստուածային զօրութիւնը որ Վիդդէմպէրկի վարդապետին սիրտը կենդանացընելով պատերազմին քշեց զանիկայ, շուտով վերստին դարձուց անոր իր առջի հաստատութիւնը ։

## ՀԱՏՈՒԱԾ Է

Բարեկամներուն նախատինքը՝ երկչոտութիւնը և լռութիւնը նուաճեցին զԼուտեր, ու թշնամիներուն յարձակմունքները կրկին կենդանացուցին զինքը. սովորաբար աս է եղածը ։ Ճշմարտութեան թշնամիները իրենց դաժանութեանը սեպհական գործը ընել խորհելով, իրօք Աստուծոյ գործը կըկատարեն ։ Տեցէլ Լուտերին հրաւէրքովը մենամարտութեան ելաւ, բայց առանց սրտոտութեան ։ Նախ և առաջ ձեռնամուխ եղաւ պատասխանել Լուտերի քարոզին՝ որ ան նոյն զօրութիւնը ունեցեր էր հասարակ ժողովրդոց վրայ, ինչ որ անոր նախադասութիւնները ունեցեր էին գիտնականներուն վրայ ։ Բան առ բան պատասխանեց աս քարոզին իր յատուկ ոճովը. այնուհետև նշանակեց թէ 'ի վերջոյ առաւել պիտի հերքէ իր թշնամին քանի մը նախադասութիւններով, որոնք պիտի պաշտպանէ Օտէր գետին վրայի Ֆրանքֆորթի հռչակաւոր համալսարանին մէջ ։

Տեցէլի աս գործին մէջը բան մը կայ որ կըզարմացընէ զմեզ ։ Անիկայ է իր Գերմաներէն լեզուին և Լուտերի

Գերմաներէնին տարբերութիւնը։ Կըթուի թէ ասոնց մէջը քանի մը դարերու հեռաւորութիւն մը կայ։ Գերմաներէն լեզուին աղէկ տեղեկութիւն չունեցողը գրեթէ չիմանար Տէցելի միտքը, իր ոճը շատ հին և չմշակուած ըլլալով. բայց Լուտերի լեզուն գրեթէ բոլորովին աս օրուան գործածուած լեզուին պէս էր։ Բաւական է որ անոնց գրութիւնը բաղդատէ մէկը, որ իսկոյն իմացուի թէ Լուտեր Գերմանական լեզուին հեղինակն է։ Ասիկայ անոր ձիրքերուն՝ անտարակոյս պինտ պզտիկն է, բայց տակաւին ձիրք մըն է։

Լուտեր աս յարձակմանս պատասխան գրեց առանց նշանակելու Տէցելի անունը, ինչպէս որ Տէցել անոր անունը չէր նշանակեր։ Բայց Գերմանիայի մէջ չկար մէկը որ անոնց գործքերուն ճակատը չկրնար գրել հեղինակներուն անունները որ իրենք պատշաճաւոր սեպեցին ծածկել։

“Սրբազան հօրը դրած ապաշխարութիւնը, ըսաւ Լուտեր, չկրնար Քրիստոսի պահանջած ապաշխարութիւնը ըլլալ. վասն զի ինչ որ սրբազան հայրը կըդնէ, կրնայ վերցընել. և թէ որ աս երկու ապաշխարութիւնները մի և նոյն բան են, կըհետևի թէ սրբազան հայրը Քրիստոսի դրածը կըվերցընէ, ու Աստուծոյ պատուէրը կ'եղծանէ”։ Լուտեր Տէցելին թիւր մեկնութիւնները ցուցընելէն ետքը յառաջ կերթայ ըսելով. “Թող չարաչար վարի իմ հետս, թող կոչէ զիս հերետիկոս, հերձուածող, չարախօս, և ինչ որ կուզէ. ես ասոր համար իրեն թշնամի չեմ ըլլար, մանաւանդ թէ աս պատճառովս իրեն համար կաղօթեմ իբրև բարեկամի մը համար։ Բայց չեմ կրնար համբերել որ ինքը Սուրբ Գիրքերուն հետ որ մեր մխիթարութիւնը են, (Հռով. ժԵ. 4։) այնպէս վարուի ինչպէս որ խոզը վարսակի պարկին հետ կըվարուի։

Կըխոստովանինք թէ Լուտեր երբեմն այսպէս անքաղաքավար խօսքեր կըգործածէր, որոնք հիմակուան ախորժակին նայելով պախարակելի են. բայց ան ժամա-

նակին սովորութիւնն էր աս . և ասանկ անպատշաճ խօս-
քերուն մէջ ընդհանրապէս կըգտնեմք անանկ յարմա-
րութիւն ու ազդուութիւն մը՝ որ անոնց անվայելչութիւնը
ներել կուտայ մեզի ։ Ասոր կըշարունակէ ըսելով .

“Ան որ ներողութիւն կըգնէ, կըսեն դարձեալ մեր
թշնամիները, լաւագոյն կընէ քան թէ ան որ ողորմութիւն
կուտայ աղքատի մը , որ յետին կարօտութեան հասած
չէ ։ Ես պատուէրիս հետևողը աղէկ թող զգուշանայ որ
անօթին չկշտացընէ ու մերկը չհագուեցընէ, մինչև որ ա-
նոնք իրենց կարօտութենէն մեռնին, և հետևապէս այլ ևս
կարօտ չըլլան օգնութեան” ։

Լուտերին բարեգործութեան համար ունեցած աս նա-
խանձաւորութիւնը՝ հաւատքով արդարանալու վրայ իր ը-
սածին հետ թող բաղդատէ կարդացողը ։ Ապաքէն ով որ
Քրիստոնէութեան վրայ փորձառութիւն և գիտութիւն մը
ունի , արդէն կատարելապէս զգացած է աս ճշմարտու-
թիւնը , ու չկարօտիր նորէն անոր փորձը ընել , թէ՝ որ-
չափ որ հաստատ կըբռնեմք հաւատքով արդարանալու
վարդապետութիւնը, այնչափ աղէկ կըճանչնամք գործին
հարկաւորութիւնը, և այնչափ աւելի ժիր եմք զանոնք կա-
տարելու . ուր ընդհակառակն՝ հաւատոյ վարդապետու-
թեան թեթևութիւնը հարկաւորապէս իր հետը կըբերէ
բարեգործութեան զանցառութիւն ։ Լուտեր՝ ու իրմէն
առաջ սուրբն Պօղոս՝ առաջինին օրինակներն են ։ Իսկ
ճշմարիտ հաւատք չունեցողները՝ որոնցմով աշխարհս լե-
ցուն է , երկրորդին օրինակներն են ։

Լուտեր կըյառաջանայ Տէցէլի կշտամբանքներուն փո-
խարէն հատուցանել աս կերպով . “Ես հանճարեղներուն
ձայնը առնելուս , կըսէ , կըթուի ինծի թէ կըլսեմ որ մեծ
էշ մը իմ վրաս կըզռնչէ ։ Կըխնդամ անոր վրայ , ու մե-
ծապէս կըտրտմէի թէ որ ասանկ անձինք բարի Քրիս-
տոնեայ կոչէին զիս” ։ Պարտիմք ցուցընել զԼուտեր իր
եղածին պէս , ու բոլոր իր տկարութիւններովը ։ Ես զուար-

ճարտասանութեան՝ և գեղջկական զուարճաբանութեան հակամիտութիւնը անոնց մէկն էր : Բարեկարգողը մեծ մարդ էր, անտարակոյս Աստուծոյ մարդն էր . բայց մարդ էր՝ և ոչ հրեշտակ, նա՝ և ոչ կատարեալ մարդ :

Լուտեր իր թշնամիները պատերազմի գրգռելով կը շարունակէ, «Ահա հոս եմ ես՝ Վիդդէմպէրկի մէջ, ես՝ Մարտինոս Լուտեր վարժապետս : Եւ թէ որ քննիչ կամ դատաւոր մը կայ որ կուզէ երկաթ ծամել՝ կամ ժայռերը օդը նետել, կիմացընեմ իրեն թէ կրնայ ունենալ հոս գալու ազատագիր մը, բաց դռներ, հացալից սեղան, ու իրեն համար պատրաստուած սենեակ, բոլորը արժանապատուիշխանին՝ Սաքսոնիայի Կայսրընտիր Ֆրիդերիկոս դքսին մարդասէր խնամքովը, որ բնաւ պաշտպանութիւն ընելու չէ հերետիկոսներու» :

Կըտեսնեմք որ Լուտեր արիութեան պակասութիւն չունէր, վասն զի Աստուծոյ Բանին ապաւինէր էր, ու ասիկայ վէմ մըն է որ բնաւ չակարանար փոթորիկի ատեն մեզ պաշտպանելու : Բայց Աստուած իր հաւատարմութեամբը ուրիշ օգնութիւն ալ տուաւ անոր : Ան առատ ուրախութեանը՝ որով ժողովուրդը ընդունեց Լուտերի նախադասութիւնները, տրտմագին լռութիւն մը յաջորդեց : Պափնականները երկչոտութեամբ ետ քաշուեցան երբոր Տեցելին ու Պոմինիկեաններուն չարախօսութիւնները ու նախատինքները լսեցին : Եպիսկոպոսները՝ որոնք առաջ բարձրաձայն կըմեղադրէին ներողութեանց վատթար կիրառութիւնը, անոնց վրայ յարձակում ըլլալը տեսնելնուն սովորաբար պատահածին պէս ետ քաշուեցան ըսելով թէ ժամանակը չէ ասանկ յարձակման : Բարեկարգողին բարեկամներուն մեծագոյն մասը երկիւղի մէջ ինկան, ու դողալով ետ քաշուեցան : Բայց երբոր առաջին երկիւղը անցաւ, մարդոց մտքին մէջ ասոր հակառակ շարժում մը մտաւ : Վիդդէմպէրկի միաբանը՝ որ ատենէ մը 'ի վեր գրեթէ մինակ էր

Եկեղեցիին մէջ , շուտով տեսաւ զինքը վերստին շրջապատած բարեկամաց և հաւանողաց բազմութեամբը :

Մէկը կար՝ որ թէպէտ և երկչոտ էր՝ բայց տակաւին հաւատարիմ մնաց անոր այս վտանգաւոր ժամանակիս մէջ , և որուն բարեկամութիւնը մխիթարութիւն էր և օգնութիւն : Ասիկայ Սպալատինն էր Փրիդերիկոսի մատրանապետը : Անոնց թղթակցութիւնը չվերջացաւ : Լուտեր իր նախադասութիւնները ոչ դքսին խրկեր էր և ոչ անոր պալատականներէն մէկուն : Կերևայ թէ Սպալատին ասոր վրայ իր զարմացած ըլլալը յայտներ էր իր բարեկամին : “Չուզեցի , պատասխանեց Լուտեր , որ իմ նախադասութիւններս մեր պայծառափայլ իշխանին կամ անոր գերդաստանէն մէկու մը ձեռքը հասնի՝ նախ քան ան մարդոց ընդունիլը որոնք որ կըխորհին թէ իրենց կըվերաբերին անոնք , որ չըլլայ թէ այնպէս կարծեն որ ես իշխանին հրամանաւը , կամ անոր օգնութեանը հետամուտ ըլլալու , և Մայնցի Եպիսկոպոսին հակառակելու համար հրատարակեցի զանոնք : Կըլսեմ որ հիմայ ևս շատերը այսպէս կըկարծեն : Բայց արդ ապահովութեամբ կրնամ հաստատել թէ իմ նախադասութիւններս հրատարակուեցան առանց Փրիդերիկոս դքսին գիտութեանը” :

Թէ որ Սպալատին իր բարեկամը կըմխիթարէր՝ և իր ունեցած բոլոր իշխանութիւնովը անոր կօգնէր , Լուտեր ալ իր կողմանէ կըջանար կասկածոտ մատրանապետին իրեն ըրած բոլոր խնդիրներուն պատասխան տալ : Իր խընդիրներուն մէկը ան էր որ մեր օրերը շատ կըհարցուի : “Ո՞րն է , հարցուց , սուրբ Գիրքը սորվելու ամենալաւ եղանակը” :

“Մինչև հիմա՝ ով պատուական Սպալատին , պատասխանեց Լուտեր , միայն ան բաները հարցուցիր որոնց պատասխանը կարող էի տալ : Բայց Սրբազան Գրոց վարժութեանը մէջ քեզի առաջնորդութիւն ընելը իմ կարողութենէս վեր է : Սակայն և այսպէս՝ թէ որ զիս կըստիպես իմ կանոնս իմանալու , չեմ պահեր զանիկայ քեզմէ :

"Յայտնի է որ սուրբ Գրոց իմաստին չեմք կրնար հասնիլ վարժութեամբ կամ մտաւոր կարողութեամբ: Ան որով քու առաջին պարտաւորութիւնդ պիտի ըլլայ աղօթքով սկսիլը: Աղաչէ Տէրոջը՝ որ իր առատ ողորմութիւնովը բարեհաճի շնորհել քեզի ուղղմտութեամբ իմանալ իր Բանը: Աստուծոյ Բանը ուրիշ մեկնիչ չունի բայց եթէ ան Բանին նոյն իսկ հեղինակը. ինչպէս որ ինքը ըսաւ, Ամէնը Աստուծմէ սորված պիտի ըլլան: Բան մը մի՛ յուսար քու աշխատութենէդ՝ կամ քու մտքիդ կարողութենէն. այլ պարզապէս ապաւինէ Աստուծոյ, ու իր Հոգւոյն առաջնորդութեանը: Հաւատա ինծի որ փորձեցի ասիկայ": Ահա հոս կը տեսնեմք՝ թէ Լուտեր ինչպէս ստացաւ ան ճշմարտութիւնը որ քարոզեց ուրիշներուն: Չէ թէ ոմանց ըսածին պէս իր յանձնապաստան մտքին առաջնորդութեանը հետեւելով. ոչ ալ ուրիշներուն հաստատածին պէս խառնվայրույզ կիրքերու անձնատուր ըլլալով. այլ ամենազուտ և ամենասուրբ աղբիւրէն՝ նոյն ինքն Աստուծմէ ընդունեց զանիկայ, խոնարհութեամբ՝ ապաւինութեամբ ու աղօթքով խնդրելով:

Լուտեր՝ որ իր նախադասութիւնները տարածելու չէր աշխատէր, ոչ միայն կայսրընտրին ու անոր պալատը խըրկելէն ետ կեցեր էր, այլ Քրիստափոր Շէօըլ իր բարեկամին՝ Կայսերական Նիւռնպերկ քաղքին ատենադպրին ալ չէր ղրկեր զանոնք: Շէօըլ ասոր վրայ իր զարմանքը ցուցուց: "Իմ միտքս, պատասխան տուաւ Լուտեր, զանոնք ընդարձակ հրատարակել չէր: Կուզէի որ անոնց մէջ պարունակեալ զանազան մասերը մեր ընկերներէն ու մերձաւորներէն ոմանց հետ քննեմ: Թէ որ անոնք պախարակէին զանոնք, պիտի եղծանէի. թէ որ հաւանէին, պիտի հրատարակէի: Բայց հիմա կրկին և կրկին տպագրեցան, ու իմ բոլոր ակնկալութենէս աւելի այնչափ տարածեցան, որ կըցաւիմ անոնց հրատարակուելուն վրայ. չէ թէ կը վախնամ որ ճշմարտութիւնը ժողովրդոց յայտնի կըլլայ,

վասն զի իմ մեծ նպատակս ան է. Հապա որ անոնք Հասարակաց վարժութեանը Համար աղէկ կարգադրեալ չեն ։ Նաև քանի մը մասեր կըպարունակեն՝ որոնք տակաւին երկրայելի են իմ մտքիս մէջ ։ Այս թէ որ խորՀած ըլլայի թէ այսպէս տպաւորութիւն մը պիտի գործեն անոնք, կան նախադասութիւններ որ պիտի ձգէի, և կան ուրիշներ որ առաւել ևս Համարձակութեամբ պիտի Հաստատէի"։ Լուտեր ետքերը տարբեր խորՀուրդ ունեցաւ. ամէնէն չխնայելով որ իր բանը չափազանց էր, յայտնի ցուցուց թէ կըպարտաւորէր որ առաւել ևս կատարելութեամբ խօսած ըլլար։ Բայց ան կանոնները որ Լուտեր յայտնեց Քէոռլին, առաւել պատուական կընեն իր անկեղծութիւնը ։ Կը ցուցընեն թէ ինքը առաջուց ձևացուցած գաղափար կամ կողմնական միտք չունէր. թէ ազատ էր յանձնապաստանութենէ, և միայն ճշմարտութիւնը կըփնտռէր։ Արդար ինքը կատարելապէս իմացաւ զանիկայ, իր խօսքը փոխուցաւ ։ "Իմ առջի՝ գրութիւններուս մէջ, բաւ շատ տարիներէն ետքը, պիտի գանէք թէ ես շատ խոնարՀութեամբ տեղի տուի պապին բազմաթիւ ու կարևոր բաներուն վերայով որոնք Հիմա կատեմ, ու իբրև գարշելի և ՀայՀոյական բաներ կըՀամարիմ զանոնք"։

## ՀԱՏՈՒԱԾ Ը

ԺՈՂՈՎՐԴԵԱՑ միտքերը կամաց կամաց իրենց առջի շփոթութենէն Հանդարտեցան ։ Նոյն ինքն Լուտեր Հակամիտեալ էր ըսել՝ թէ ինքը այն մտօք խօսած չէր որ ուրիշները իմացան ։ Հասարակաց ուշադրութիւնը ևս նոր գիպուածներով անշուշտ պիտի դառնար, ու Հոգևորական վարդապետութեան դէմ շարժուած Հարուածը առանց երևելի ներգործութեան մը պիտի անցնէր՝ ինչպէս որ առաջ

շատ անգամ եղեր էր : Բայց Հռովմայ կողմնականները ասոր արգելք եղան ու չթողուցին որ գործը այսպէս վախճան մը ընդունի. բոցը շիջուցանելու տեղը ալ աւելի արծարծեցին :

Տեցէլ ու Դոմինիկեանները իրենց վրայ եղած յարձակմանը գոռոզաբար պատասխանեցին : Ուժգին եռանդով մը ուզելով որ իրենց առուտուրը խափանող միաբանը նուաճեն, ու Հռովմայ քահանայապետին հաճութիւնը իրենց ձգեն, բարկութեան աղաղակ մը վերցուցին. պնդեցին թէ պապին ներողութեանցը հակառակիլը նոյն ինքն պապին հակառակիլ է. և իրենց բոլոր միաբանները ու աստուածաբանները իրենց օգնելու հրաւիրեցին : Ապաքէն Տեցէլ Լուտերի նման թշնամիի մը հետ մարտընչելու իր անկարողութիւնը կըճանչնար : Վարժապետին յարձակմամբը բոլորովին խայտառակելով և մանաւանդ յետին աստիճանի բարկութեան շարժելով Վիդդէմպէրկի մերձ եղած սահմաններէն ելաւ, ու 1517ին Նոյեմբեր ամսուն մէջ Օտէր գետին վրայի Ֆրանքֆորթ քաղաքը հասաւ, ուր տեղի համալսարանը Վիդդէմպէրկի համալսարանին հակառակորդները շինած էին : Աս համալսարանին վարժապետներուն մէկն էր Կոնրադ Վիմփինա անունով շատ ճարտասան մարդ մը ու խիստ երևելի Աստուածաբան : Վիմփինա նախանձոտ աչքով կընայէր թէ Վիդդէմպէրկի վարժապետին և թէ անոր համալսարանին վրայ. վասն զի անոնց համբաւը մթնցուց իր անունը : Տեցէլ խնդրեց ասորմէ որ Լուտերի նախադասութիւններուն պատասխան գրէ. ու Վիմփինա երկու կարգ հակառակ նախադասութիւններ գրեց. առաջին կարգը ներողութեանց վարդապետութիւնը պաշտպանելու, ու երկրորդը պապին իշխանութիւնը հաստատելու :

Յունուարի 20ին 1518ին սկսուեցաւ աս վիճաբանութիւնը՝ որ այնչափ ժամանակաց հետէ կըպատրաստուէր, որ այնչափ սնապարծութեամբ հռչակուեր էր, և որուն վրայ Տեցէլ իր յոյսը հաստատեր էր, բարձրաձայն կոչե-

լով իր կուսակիցները որ պատերազմի պատրաստուին ։ Անտ տեղուանք եղած բոլոր մենաստաններուն միաբանները մէկ տեղ գալով ժողվուեցան երեք հարիւրէն աւելի ։ Տէցէլ իր Նախադասութիւնները կարդաց անոնց ։ Անոնց մէջ իր առջի ըսածներուն բոլորը կրկնեց, մինչեւ անգամ ան՝ թէ — "Ով որ կըսէ թէ հոգին քաւարանէն չազատիր ստակը սնտուկին մէջ ինկածին պէս, մոլորեալ է"* ։

Բայց 'ի վեր քան զամենայն ինչ անանկ Նախադասութիւններ յառաջ բերաւ, որով կերեւար թէ պապը իսկապէս "Աստուծոյ տաճարին մէջ նստած է՝ ու ինքզինքը կըցուցընէ թէ Աստուած է", առաքեալին ըսածին պէս Բ. Թեսաղ. Բ. 4 ։

Հոս կըդնեմք անոր քանի մը Նախադասութիւնները, որ իր բոլորտիքը շրջապատած բազմաթիւ ժողովին ներկայութեանը խոստացաւ թէ ինքը պատրաստ է զանոնք պաշտպանելու ։

Գ. "Պէտք է սորվեցընել Քրիստոնէից՝ թէ պապը իր լիակատար իշխանութիւնովը աւելի բարձր է ընդհանուր եկեղեցիէն ու ժողովներէն. եւ թէ՝ կատարեալ խոնարհութիւնով պէտք է հնազանդիլ անոր վճիռներուն ։

Դ. "Պէտք է սորվեցընել քրիստոնէից՝ թէ միայն պապը իշխանութիւն ունի քրիստոնէական վարդապետութեան վրայ եղած խնդիրները որոշելու. թէ ոչ ուրիշ մէկը՝ բայց միայն ինքը իշխանութիւն ունի՝ իր դատողութեանը համեմատ՝ սուրբ Գրոց իմաստը բացատրելու, եւ ուրիշներուն խօսքերը կամ գործերը ընդունելու կամ դատապարտելու ։

Ե. "Պէտք է սորվեցընել քրիստոնէից՝ թէ քրիստոնէական վարդապետութեան վերաբերեալ ու մարդկային

*Quisquis ergo dicit non citius posse animam volare quam in fundo cistœ denarius possit tinnire, errat. [Positiones Fratris Joh. Tezelii, pos. 56 ].

փրկութեան հարկաւոր նիւթերու մէջ , պապին դատողութիւնը ոչ երբէք կրնայ սխալիլ :

Ձ . "Պէտք է սորվեցընել քրիստոնէից՝ թէ անոնք հաւատոյ նիւթերուն մէջ աւելի վստահութիւն պիտի ունենան պապին դատողութեանը վրայ՝ որ իր վճիռներուն մէջ կը յայտնուի , քան թէ բոլոր գիտնականներուն միաբան կարծեացը վրայ՝ որ սուրբ Գրքերէն կը հանեն :

ԽԷ . "Պէտք է սորվեցընել քրիստոնէից՝ թէ կան շատ բաներ որոնք եկեղեցին ուղղափառ հաւատոյ մասերը կը համարի , թէպէտ և անոնք ոչ Աստուածային ներշնչութեամբ գրուած գիրքերուն՝ և ոչ նախնի հարց գրուածքներուն մէջ կը գտնուին :

ԽԸ . "Պէտք է սորվեցընել քրիստոնէից՝ թէ անոնք որ հերետիկոսներուն մոլորութիւնները կը պաշտպանեն , և իրենց իշխանութիւնովը արգելք կըլլան որ զիրենք մտիկ ընելու իշխանութիւն ունեցող դատաւորներուն առջևը բերուին անոնք , բանադրեալ են . և թէ որ մէկ տարուան միջոցի մէջ չդադարին այսպէս ընելէն՝ վատանուն պիտի համարուին , ու սաստիկ պատիժ պիտի կրեն , կանոններուն տնօրէնութեամբը՝ և ուրիշներուն խրատ ըլլալու համար * :

Ծ . "Պէտք է սորվեցընել քրիստոնէից՝ թէ անոնք որ այնչափ անպիտան գիրքեր կամ տետրակներ կը գրեն , որ կը քարոզեն՝ կամ յայտնի և չար մտօք կը վիճին "Բերնով խոստովանութեան" վրայ , "Բարեգործութիւնով արդարութեան" վրայ , հռովմէական պապին "Հարուստ և ընդարձակ ներողութեանցը" ու անոր "Իշխանութեանը" վրայ . անոնք որ ասանկ բաներ քարոզողներուն կամ գրողներուն կուսակից կըլլան , ու անոնց գրուածքներուն վրայ կը զուարճանան , ու զանոնք ժողովրդոց և ընկերու-

*Pro infamibus sunt tenendi, qui etiam per juris capitula terribiliter multis plectentur pœnis in omnium hominum terrorem. (Positiones fratris Joh. Tezelii, pos. 56.)

թեան մէջ կը ստարածեն. և վերջապէս ամէն անոնք՝ որոնք դաղտնապէս նախատանքով կամ անպատուութեամբ կը խօսին աս բաներուն վրայ, պարտին գիտնալ որ յիշեալ պատիժներուն տակը կիյնան, ու ինքզինքնին՝ և իրենց հետ ուրիշներն ալ յաւիտենական դատապարտութեան մէջ պիտի ընկղմեն դատաստանին օրը, և ամենախորին անարգութեան մէջ աս ներկայ աշխարհիս մէջը: "Ասոն զի ամէն գազան որ կըդպչի լեռանը, պիտի քարկոծուի":

Տեցելին յարձակման նպատակը միայն Լուտեր չէր: Իր 48երորդ նախադասութեանը մէջ հաւանականաբար իր միտքը Սաքսոնիայի կայսրընտրին կընայէր: Նոյնց զաս նախադասութիւնները Դոմինիկեանին հօտը կըբուրեն. վասն զի հակառակորդներուն սաստիկ պատուհաս կըպատնան անգութ դատաքննիչի մը պէս, որուն մէկը չկրնար համարձակիլ պատասխան տալու: Տեցելին հաւաքած երեք հարիւր վանական միաբանները՝ իր բոլոր ըսածներուն վրայ զմայլմամբ լցան: Համալսարանին աստուածաբանները կամ վախնալով որ չըլլայ թէ հերետիկոսութիւն զարդացուցողներուն կարգը դասուին, կամ Վիմփինայի սկզբունքներուն չափազանց յարեալ ըլլալով, չկամեցան յայտնապէս դէմ դնել ան սքանչելի նախադասութիւններուն՝ որ իրենց ներկայութեանը կարդացուեցան:

Աստի աս գործը՝ որուն վրայ այնչափ շշունչ եղեր էր, հաւանական կըթուէր թէ իբրև կեղծեալ պատերազմ պիտի վերջանայ: Բայց քննութեան ներկայ գտնուող ուսումնականաց բազմութեանը մէջ քսան տարեկանի չափ պատանի մը կար, Յովհաննէս Կնիփստրով անունով: Նասիկայ Լուտերի նախադասութիւնները կարդացեր էր, ու Սուրբ Գրոց համաձայն գտեր էր զանոնք: Նա երբոր տեսաւ թէ ճշմարտութիւնը հրապարակաւ ոտից կոխան եղաւ՝ չերևալով մէկը որ պաշտպանէ զանիկայ, պատանին արտմտելով իր ձայնը վերցուց՝ ու յանձնապաստան Տեցելին վրայ յարձակեցաւ, մեծ ափշութեան մէջ ձգելով բո-

վանդակ ժողովը : Սատասիրտ Դոմինիկեանը՝ որ այսպիսի ընդդիմութեան մը պատահելու ակնկալութիւն չունէր , զարհուրեցաւ մնաց : Պատասխան մը գտնելու համար խել մը աշխատելէն ետև մէկ դի քաշուեցաւ պատերազմի ասպարեզէն , ու տեղի տուաւ Սիմիրինայէն : Ասիկայ աւելի զօրութեամբ պաշտպանեց իր փաստը · բայց Սիփաւրով անանկ նեղը ձգեց զանիկայ , որ աս ձախող պատերազմը վերջացընելու համար Սիմիրինա իր նախագահութեան իշխանութիւնովը յայտնեց՝ թէ քննութեան վերջը առնուեցաւ , ու յառաջ անցաւ վարժապետ աստուածաբանութեան ատրճանը տալ Տէցէլի իբրև հատուցում աս փառաւոր վիճաբանութեանս : Այնուհետև Սիմիրինա աս նորահաս հակառակորդէն ազատելու համար Բոմերանիայի մէջ Սիրիցի վանքը խրկել տուաւ զանիկայ , հրաման ընելով որ զգուշութեամբ նային զինքը : Բայց աս նոր ատողը որ Օտէրի սահմաններէն վերցուեցաւ , սահմանուած էր յետ ժամանակաց Բոմերանիայի վրայ տարածել լոյսը : Աստուած երբոր յարմար կըդատէ , աշակերտը կըգործածէ վարժապետը խայտառակ ընելու :

Տէցէլ իր ընդունած կշտամբանքին դարման մատուցանել ուզելով՝ Հռովմայ և դատաքննութեան ատեանին վերջին միջոցը դիմեց բռնելու , այսինքն է՝ կրակով յաղթել հակառակորդները : Ուստի Ֆրանքֆորթի արուարձաններուն մէկին մէջ ամպիոն մը կանգնեց ու բարձր սեղան մը դրաւ : Հաւատոյ դատաքննիչի նշանով զարդարուած փառաւոր հանդէսով հոն գնաց , ամպիոնէն իր ամենակատաղի եղանակովը չարաչար թշնամանութիւն ըրաւ , անխնայ ձեռքով կայծակունք թօթափեց , ու բարձրաձայն աղաղակեց թէ Լուտեր անուն հերետիկոսը կենդանւոյն այրել պէտք է : Այնուհետև վարժապետին նախադասութիւնները ու քարոզը սեղանին վրայ դնելով կրակ տուաւ անոնց : Աւելի յաջողակութիւն ցուցուց աս գործառնութեանս մէջ , քան որչափ ցուցուցեր էր իր նախադասու-

թիւնները պաշտպանելուն. քանզի աս տեղս մէկը չկար իրեն հակառակող, ու իր յաղթութիւնը կատարեալ էր։ Ամպարաուան Դոմինիկեանը յաղթանակաւ վերստին Ֆրանքֆորթ մտաւ։ Երբոր զօրաւորները հարուած մը կուտեն՝ քանի մը տեսարանաց ցուցմունքներու կըդիմեն, և ասիկայ ձգել սորուիլ պէտք է անոնց որ իրենց կրած անարգութեանը մխիթարութիւն մը ըլլայ։

Տէցէլին երկրորդ նախադասութիւնները բարեկարգութեան մէկ հարկաւոր կէտը եղան։ Միաբանութեան տեղը փոխեցին անոնք՝ ներողութեանց վաճառանոցէն Ալտէկանու սրահներուն փոխադրելով զանիկայ, ու յարձակմունքը Տէցէլին վրայէն դարձուցին ու պապին ուղղեցին։ Եկեղեցւոյ գլխոյն սրբազան անձը դրին ան հէգ վաճառականին տեղը՝ որուն Լուտեր զարնուէր ու զանիկայ առանց զօրութեան ձգեր էր իր ձեռքին մէջ։ Լուտեր բոլորովին սքանչացաւ ասոր վրայ։ Ժամանակէ մը ետև հաւանական է որ Լուտեր ինքիրմէն պիտի ըներ աս քայլափոխը, բայց հիմա իր թշնամիները իր տեղը ըրին ասիկայ։ Այնուհետև վիճաբանութիւնը ոչ միայն վաճահամբաւ տուրևառի մը վրայ էր՝ այլ նոյն ինքն Հռոմայ վրայ. և ան քաջ ձեռքը՝ որուն նպատակն էր Տէցէլին խանութը տակնուվրայ ընել, զարկաւ և իր հիմունքներէն խախտեց եկեղեցական թագաւորին գահը։

Դարձեալ՝ Տէցէլին նախադասութիւնները հռովմէական վարդապետներուն գունդին ծառայեցին իբրև նշան պատերազմի Լուտերին վրայ յարձակելու։ Միաբանները՝ Էրասմոսէն ու Հռեւկղինոսէն ալ զարհուրելի թշնամիի մը երևան ելլելուն վրայ բարկութեան բռնելով, աղաղակ վերցուցին Լուտերի դէմ։ Բոլոր Դոմինիկեան ամպիոններէն Լուտերի անունը կըհնչէր։ Ժողովրդոց կիրքերը շարժեցին. քաջասիրտ վարդապետը խելագար, մոլորեցուցիչ ու դիւահար կըկոչէին։ Կըհաստատէին թէ անոր վարդապետութիւնը՝ ամենասոսկալի հերետիկոսութիւն մըն

է ։ "Միայն տասնըհինգ օր՝ կամ շաբաթ մը համբերեցէք, կըսէին, ու աս երեւելի հերետիկոսը կենդանւոյն պիտի այրուի" ։ Թէ որ բանը Կոմնինկեանց ձեռքը ըլլար, շուտով Հուսի վիճակին զինքը պիտի հասցընէին ․ բայց Աստուած անոր վրայ կըհսկէր ։ Արդէն շատերը կըհրատարակէին թէ Վիդդէմպէրկի բոլոր համալսարանը հերետիկոսութեամբ արատաւորուած է, ու իբրեւ փառահամբաւ եղած կըքարոզէին անոր անունը ։ "Կուրս ընենք ան թշուառականը, և բոլոր իր կուսակիցները" ․ կըսէին ։ Այս աս աղաղակները շատ անգամ իրօք կըշարժէին ժողովրդոց կիրքերը ։ Անոնք որ Բարեկարգողին գաղափարներուն հաղորդութիւն ունէին, հասարակաց դիտողութեանը ենթակայ կըլլային ․ և երբոր միաբաններն ձեռքերնին կարողութիւն ունենային, Աւետարանի աշակերտները անոնց ատելութեանը ազդուութիւնը կըզգային ։ Այսպէս՝ փրկիչին մարգարէութիւնը՝ սկսեց կատարուիլ, թէ "Պիտի Նախատեն ձեզ՝ ու պիտի հալածեն, ու սուտ տեղը ամէն կերպ գէշ խօսքեր պիտի խօսին վրանիդ՝ ինծի համար" ։ Աշխարհի աս հատուցումը ոչ մէկ դարու մը մէջ պակսած է Աւետարանի հաւատարիմ աշակերտներէն ։

Երբոր Լուտեր իմացաւ Տէցէլի Նախադասութիւնները ու ան ընդհանուր յարձակումը՝ որուն համար նշան տուած էին անոնք, իր քաջութիւնը արծարծեցաւ ։ Տեսաւ որ հարկաւոր էր համարձակաբար դէմ ելլել ասանկ թշնամիներուն ․ իր աներկիւղ ոգին ոչինչ դժուարութիւն զգաց հաստատելու թէ այսպէս պէտք է ընել ։ Անոնց տկարութիւնը ան նոյն ատենը իր զօրութիւնը յայտնեց իրեն, ու իր իրօք ինչ ըլլալը ճանչցուց իրեն ։

Բայց և այնպէս՝ տեղի չտուաւ հպարտութեան ան կիրքերուն՝ որոնք այնչափ բնական են մարդկային սրտին ։ "Աւելի դժուարութիւն ունիմ, գրեց աս միջոցիս Սպալատինին, իմ թշնամիներս արհամարհելէն և այնպէս Քրիստոսի դէմ մեղանչելէն ես զիս զսպելու, քան որչափ

պիտի ունենային զանոնք յաղթահարելու ։ Այնպէս տգէտ են անոնք թէ մարդկային և թէ Աստուածային բաներուն վրայ, որ նուաստութիւն կը համարիմ անոնց հետ վիճելը․ և սակայն բուն իսկ աս տգիտութիւնն է որ կուտայ անոնց՝ իրենց անիմանալի յանդգնութիւնը ու լրբենի դէմքը" ։ Բայց աս ընդհանուր թշնամութեան մէջ տեղը ամէն բանէ աւելի իր սիրտը զօրացունողը ան խորարմատ ճանաչումն էր, թէ իր փաստը ճշմարտութեան փաստն էր ։ "Մ՚ի զարմանար որ անոնք այսպէս անխնայ կը նախատեն զիս, գրեց Սպալատինին՝ 1518ին սկզբնաւորութեանը, ուրախութեամբ կը լսեմ ես անոնց նախատինքը ։ Եթէ որ անոնք իմ վրաս անէծք չկարդային, չէինք կրնար այնպէս հաստատաբար ապահով ըլլալ թէ իմ ձեռնարկած փաստս նոյն ինքն Աստուծոյ փաստն է ։ Քրիստոս ալ հակառակախօսութեան նշան դրուեցաւ" ։ "Գիտեմ, ըսաւ ուրիշ անգամ մը, որ սկիզբէն Աստուծոյ Բանը այնպէս եղած է՝ որ ով որ անիկայ աշխարհի մէջ բերել ուզէ, պարտի առաքելոց նման ամէն բան ձգել, ու մահուան մատնուիլ ։ Եթէ որ այսպէս չըլլար մեզի, Քրիստոսի բանը չէր ըլլար ան" ։ Խռովութեան մէջ տեղը այսպէս հանդարտութիւն ունենալը անանկ մէկ բան մըն է, որուն անծանօթ են աշխարհի դիւցազունները ։

Լուտեր տակաւին լռութիւն պահեց պապին վրայով եղած Տեցելի նախադասութիւններուն վրայ․ թէ որ կրիւք շարժած ըլլար, անտարակոյս սաստկութեամբ պիտի իյնար ան զարմանալի վարդապետութեանը վրայ՝ որուն տակը պաշտպանութիւն և պատսպարութիւն խնդրեց իր թշնամին ։ Բայց աս կերպը բան չըրաւ․ ու իր յապաղմանը՝ զգուշութեանը և լռութեանը մէջ վսեմութիւն մը և կարևորութիւն մը կայ, որ ըստ բաւականին կը յայտնէ ան ոգին որ կենդանացուց զինքը ։ Հանդարտ կեցաւ, բայց չէ թէ տկարութենէն․ վասն զի առաւել ծանրագոյն էր ան հարուածը երբոր վերջապէս հարկաւորեցաւ տալ ։

Տէցէլ Օտէր գետին վրայի Ֆրանքֆորթի մէջ Լուտերի գրութիւնները լրբաբար այրելէն ետև , իր Նախադասութիւնները Սաքսոնիա խրկեց . մտածելով թէ Լուտերի Նախադասութիւններուն փոխարէն դեղթափի տեղ պիտի ծառայեն անոնք : Հալլէ քաղաքէն դատաքննիչը մարդ մը խրկեց Վիդդէմպերկ , որ իր Նախադասութիւնները հոն տարածէ : Վիդդէմպերկի համալսարանին աշակերտները բարկացած էին որ Տէցէլ իրենց վարժապետին Նախադասութիւնները այրեր էր . և երբոր լսեցին թէ անոր կողմանէ մարդ եկած է , իսկոյն գունդագունդ անոր բոլորտիքը հաւաքեցան , և սպառնալով կըհարցընէին թէ ինչպէս համարձակեր էր այնպիսի բաներ բերել հոն : Ոմանք անոր բերած օրինակներուն մէկ մասը ծախու առին , ուրիշները՝ մնացեալները անոր ձեռքէն յափշտակեցին : Այսպէս անոր բերած վաճառքին բոլորը որ ութը հարիւր օրինակի չափ էր , իրենց ձեռքը անցուցին : Այնուհետև առանց գիտութեան կայսրընտրին և խորհրդարանին , համալսարանի կառավարին՝ Լուտերին և բոլոր վարժապետներուն , Վիդդէմպերկի աշակերտները համալսարանին դռներուն վրայ յայտարարութիւններ կախեցին աս խօսքովը . “Ով որ կըփափաքի Տէցէլի Նախադասութիւններուն այրուելուն և յուղարկաւորութեանը ներկայ գըտնուիլ , ժամը երկուքին վաճառանոցը թող հրամէ” :

Սահմանուած ժամուն տղները գունդագունդ հաւաքեցան , ու Դոմինիկեան վարդապետին Նախադասութիւնները ժողովուրդին ցնծութեան ձայներովը կրակի տուին : Միայն մէկ օրինակ մը ազատեցաւ կրակէն . Լուտեր վերջը անիկայ իր բարեկամին խրկեց , Էրֆուրթի Յովհաննէս Լանժին : Աս եռանդոտ պատանիները գործեցին առջիններուն տրուած պատուէրին վրայ՝ “աչքի տեղ աչք , ու ակռայի տեղ ակռայ” , և ոչ Քրիստոսի պատուէրին վրայ : Բայց երբոր վարդապետները ու վարժապետները Ֆրանքֆորթի մէջ այսպէս օրինակ մը ցուցըցին , զարմանալի

բան է թէ որ Վիդդէմպէրկի նորահաս աշակերտները ան օրինակին հետեւին ։ Ակադիմիայէն աս հատուցած պատժոյն լուրը բոլոր Գերմանիայի մէջ տարածեցաւ, ու շատ ղրոյց պատճառեց ։ Լուտեր սաստիկ վշտացաւ ասոր վրայ ։

Զարմացեալ եմ, գրեց Էրֆուրթի իր հին վարժապետին Յոդդակոսին, որ կը հաւատաք թէ ես Տեցելի նախադասութիւններուն այրուելուն բանի մը խառնուած ըլլամ ։ Կը կարծէք թէ բոլորովին կորսնցուցե՞ր եմ իմ միտքս. բայց ի՞նչ կրնամ ընել ։ Երբոր իմ վրայովս բան մը կը պատմուի, ի՛նչ որ ըլլայ ամէն մարդ անորոշաբար կը հաւատայ ։ Կրնա՞մ ես կապել մարդոց բերանները. ի՛նչ որ կուզեն թող ըսեն ու լսեն, տեսնեն ու պատմեն ։ Քանի որ Տէրը զօրութիւն կուտայ ինծի, յառաջ պիտի երթամ, ու Աստուծոյ օգնութեամբը բանէ մը պիտի չվախնամ" ։ — "Ասկից ի՛նչ հետեւիլը, ըսաւ Լանժին, չեմ գիտեր. միայն աս գիտեմ թէ աս գործովը առաւելապէս ծանրացած է ան վտանգը որուն մէջ կը կենամ" ։ Աս դիպուածը կը ցուցընէ թէ երիտասարդներուն սրտերը արդէն ինչպէս արծարծած էին ան փաստին վրայ՝ որուն ախոյեանն էր Լուտեր ։ Ասիկայ մեծ օգտի նշան մըն էր. վասն զի մէկ շարժում մը անգամ մը երիտասարդաց մէջ որ սկսի, հարկաւորապէս շուտով կը հաղորդի ան բովանդակ ազգին ։

Տեցելի և Վիմփինայի նախադասութիւնները թէպէտ և թեթև յարգութիւն մը ունեցան, բայց ազդուութիւն մը պատճառեցին ։ Վիճաբանութիւնը ընդարձակեցին. Եկեղեցւոյ պատմուճանին պատառուածը մեծցուցին, գերագոյն շահախնդրութեան նոր խնդիրներ վիճաբանութեան ասպարէզը հանեցին ։ Ասանկով Եկեղեցիին գլխաւորները սկսեցին ուշադրութեամբ զննել վէճը, և ուժգին զօրութեամբ ինքզինքնին Բարեկարգողին դէմ ցուցընել ։ "Չեմ գիտեր արդարև, ըսաւ Պրանտէպուրկի եպիսկոպոսը, թէ Լուտեր որո՞ւն պաշտպանութեանը կրնայ ապաւինիլ, որ աս կերպովս կը համարձակի եպիսկոպոսներուն իշխանու-

թեանը վրայ յարձակիլ"։ Իմանալով որ աս նոր պարագան կըպահանջէ նոր զգուշութիւններ, եպիսկոպոսը անձամբ Այդդէմպերկ եկաւ։ Բայց գտաւ Լութերը կենդանացած ան ներքին ուրախութիւնովը՝ որ բարի խղճմտանքէ կը ծագի, ու պատրաստ պատերազմելու։ Զգաց եպիսկոպոսը որ Օգոստինեան միաբանը իր ունեցածէն բարձրագոյն զօրութեան մը կըհնազանդէր, ու բարկացած սրտով դարձաւ գնաց Պրանտէպուրկ։ Օր մը՝ 1518ին ձմեռը չվերջացած, երբոր իր վառարանին քով նստեր էր, իր բոլորտիքը եղողներուն դառնալով ըսաւ. "Խաղաղութեամբ պիտի չհանգչեցընեմ իմ գլուխս, մինչև որ Մարտինոսը կրակը չնետեմ աս փայտին պէս". աս ըսելով փայտին կտորը վառարանին կրակը նետեց։ Տասնըվեցերորդ դարուն բարեկարգութիւնը Եկեղեցւոյ գլխաւորներէն օգնութիւն չգտաւ ինչպէս որ առաջին դարունը ծերակուտէն և Սինակովկայէն գտած չէր։ Քրիստոնէից եկեղեցւոյն մեծերը տասնըվեցերորդ դարուն հակառակեցան Լութերի՝ Բարեկարգութեան ու անոր պաշտօնեաներուն, ինչպէս որ Հրէից եկեղեցւոյնները հակառակեր էին Յիսուս Քրիստոսի Աւետարանին՝ ու անոր առաքեալներուն։ Լութեր՝ Պրանտէպուրկի եպիսկոպոսին իրեն տեսութեան գալուն վրայ խօսելով, ըսաւ. "Եպիսկոպոսները սկսեցին իմանալ թէ իմ ըրածս իրենց կիյնար ընել. ուստի կամաչեն, լռեն և յանդուգն կըկոչեն զիս, ու չեմ ուրանար իմ այսպէս ըլլալս։ Բայց իրենց չիյնար իմանալ թէ ինչ է Աստուած և ինչ ենք մենք"։

## ՀԱՏՈՒԱԾ Թ

ՏԵՑԵԼԻՆ առաջարկած ընդդիմութենէն աւելի ծանրը ելեր էր հիմա Լութերի դէմ. ինչու որ Հռոմ պատասխան

գրեր էր իրեն : Սրբազան պալատին շրջապատէն դուրս ելեր էր աս պատասխանը, բայց չէ թէ Ժ. Լեոնն էր որ ինքզինքը աստուածաբանութեան միջամուխ ընելու բարեհաճեր էր : "Միաբաններուն մէջ ծագած վէճ մըն է, ըսաւ ինքը մէկ օր մը, աղէկ է որ չխառնուիմ անոր" : Այլ ուրիշ անգամ մը ըսաւ. "Գինով Գերմանացի մըն է որ աս նախադասութիւնները գրեր է. երբոր գինովութենէն արթըննայ, շատ տարբեր պիտի խօսի" : Հռովմայեցի Դոմինիկեան մը՝ Սեղբեստրոս Գրիէրիաս անունով որ պապին պալատին վերակացուն էր՝ քննիչ հաւատոյ կարգուած էր, և ինքը առաջին եղաւ որ աս պաշտօնովս Սաքսոնացի միաբանին հրատարակած նախադասութիւններուն վրայ քննութիւն ըրաւ :

Աս հռովմայեցի քննիչը, աս Դոմինիկեանց նախագահը, աս եկեղեցական իշխանաւորը, որուն պաշտօնը իշխանութիւն շնորհեր էր իրեն որոշել թէ քրիստոնեայք ինչ վարդապետութիւններ պիտի դաւանին՝ և ինչ մասերու լռիկ պիտի կենան, ինչ պարտին գիտնալ և ինչ պարտին չգիտնալ, փութացեր էր պատասխան տալ Լուտերի : Ան որոյ գրուած մը հրատարակեց 'ի պատիւ Ժ. Լեոնի, որուն մէջ Գերմանացի միաբանին վրայ քամահրանքով կը խօսէր, ու բոլորովին հռովմէական յանդգնութեամբ մը կը յայտնէր թէ կուզէ գիտնալ՝ թէ ան Մարտինոսը արդեօք երկըթէ պարանոց ու պղինձէ գլուխ ունի՞ որ անհնար ըլլայ խորտակելու : Այնուհետև տրամախօսութեան ձևով յառաջացաւ Լուտերի նախադասութիւններուն վրայ յարձակիլ, ծաղրաբանութիւն թշնամանք և սպառնալիք գործածելով փոփոխաբար :

Միդդէմպէրկի Օգոստինեանին ու Հռովմայ Դոմինիկեանին մէջ եղած վէճը ան խնդրոյն վրայ էր՝ որ ըստ ինքեան Բարեկարգութեան սկզբունքն է. այսինքն՝ Ո՞րն է Քրիստոնէից համար մի միայն անսխալ կանոն հաւատոյ : Ահա հետևեալ պարբերութեամբ կը տեսնուի Եկե-

ղեկին գրութիւնը իր ինքնիշխան գործակալներէն հաս-տատուած՝ որոնց մէկն էր Սեղբեստրոս Պրիէրիաս :

Կրաւորական բանին իմաստը մեռեալ է առանց մեկնու-թեան Հոգիին՝ որն որ միայն կը յայտնէ անոր ծածկեալ նշանակութիւնը : Բայց այս Հոգին իւրաքանչիւր Քրիս-տոնէի տրուած չէ, այլ Եկեղեցիին, այսինքն է՝ եկեղեցա-կաններուն : Մեծ յանդգնութիւն է հաստատել՝ թէ ան որ Եկեղեցիին խոստացաւ անոր հետ ըլլալ մինչև աշխարհի վերջը, կարենայ ձգել զանիկայ սխալման մէջ իյնալու : Ուստի Սրբազան Գրոց իմաստը պարտինք հասկընալ ին-չոր որ Եկեղեցին Հոգւոյն Սրբոյ առաջնորդութեամբ որոշած է անիկայ :

Մինչև այս տեղս հռովմէադաւան վարդապետները կը միաբանէին . բայց այս մասին կը տարբերէին, որ ոմանք կը-սէին՝ ընդհանուր ժողովները Եկեղեցիին տեղակալներն են : Ուրիշները՝ և անոնց հետ Պրիէրիաս՝ կըսէին, Մեկ-նութեան Հոգիին թանգարանը պապն է . ու մէկը իշխա-նութիւն չունի ուրիշ կերպով բացատրել Սուրբ Գիրքը, բայց եթէ հռովմէական քահանայապետին վճռոյն հա-մեմատ :

Այսպիսի էր այն վարդապետութիւնը որ սրբազան պա-լատին վերակացուն ընդդիմադրեց Նորաբողբոջ Բարեկար-գութեան : Իր գրուածքին սկզբնաւորութեանը հաստա-տած սկզբունքներուն մէկը այս հետևեալն է . "Ով որ հը-ռովմէական Եկեղեցւոյն և հռովմէական քահանայապետին վարդապետութեանը վրայ չհաստատուիր իբրև անսխա-լելի կանոն հաւատոյ, ու չհամարիր թէ նոյն իսկ Սուրբ Գիրքն ալ անկէց կըքաղէ իր զօրութիւնը և իր հեղի-նակութիւնը, հերետիկոս է" * :

Այս հետևեալ կուգայ տրամախօսութիւնը, որուն մէջ խօսողներն են Լութեր և Սեղբեստրոս, և ուր որ վերջինը

* "A qua etiam sacra Scriptura robur trahit et auctoritatem, hœreticus est" (Sylvestri Prieratis Dialogus, fundamentum tertium.)

22 Վ

թեան մէջ կը տարածէն. և վերջապէս ամէն անոնք՝ որոնք դաղտնապէս նախատանքով կամ անպատուութեամբ կը խօսին աս բաներուն վրայ, պարտին գիտնալ որ քիչեալ պատիժներուն տակը կիյնան, ու ինքզինքնին՝ և իրենց հետ ուրիշներն ալ յաւիտենական դատապարտութեան մէջ պիտի ընկղմեն դատաստանին օրը, և ամենախորին անարգութեան մէջ աս ներկայ աշխարհիս մէջը: "Ան զի ամէն գազան որ կըդպչի լեռանը, պիտի քարկոծուի":

Տէցէլին յարձակման նպատակը միայն Լուտեր չէր: Իր 48երորդ նախադասութեանը մէջ հաւանականաբար իր միտքը Սաքսոնիայի կայսրընտրին կընայէր: Ասկէց զատ ան նախադասութիւնները Դոմինիկեանին հոտը կըբուրեն. վասն զի հակառակորդներուն սաստիկ պատուհաս կըսպառնան անգութ դատաքննիչի մը պէս, որուն մէկը չկրնար համարձակիլ պատասխան տալու: Տէցէլին հաւաքած երեք հարիւր վանական միաբանները՝ իր բոլոր ըսածներուն վրայ զմայլմամբ լցան: Համալսարանին աստուածաբանները կամ վախնալով որ չըլլայ թէ հերետիկոսութիւն զարդացունողներուն կարգը դասուին, կամ Վիմփինայի սկզբունքներուն չափազանց յարեալ ըլլալով, չկամեցան յայտնապէս դէմ դնել ան սքանչելի նախադասութիւններուն՝ որ իրենց ներկայութեանը կարդացուեցան:

Ուստի աս գործը՝ որուն վրայ այնչափ շշուկ եղեր էր, հաւանական կըթուէր թէ իբրև կեղծեալ պատերազմ պիտի վերջանայ: Բայց քննութեան ներկայ գտնուող ուսումնականաց բազմութեանը մէջ քսան տարեկանի չափ պատանի մը կար, Յովհաննէս Քնիփստրով անունով: Ասիկայ Լուտերի նախադասութիւնները կարդացեր էր, ու Սուրբ Գրոց համաձայն գտեր էր զանոնք: Իսկ երբոր տեսաւ թէ ճշմարտութիւնը հրապարակաւ ոտաց կոխան եղաւ՝ չերևալով մէկը որ պաշտպանէ զանիկայ, պատանին արտմտելով իր ձայնը վերցուց՝ ու յանձնապաստան Տէցէլին վրայ յարձակեցաւ, մեծ ափշութեան մէջ ձգելով բո-

վանդակ ժողովը ։ Վստահասիրտ Դոմինիկեանը՝ որ այսպիսի ընդդիմութեան մը պատահելու ակնկալութիւն չունէր , զարհուրեցաւ մնաց ։ Պատասխան մը գտնելու համար խել մը աշխատելէն ետև մէկ դի քաշուեցաւ պատերազմի ասպարէզէն , ու տեղի տուաւ Վիմփինայէն ։ Նորկայ աւելի զօրութեամբ պաշտպանեց իր փաստը . բայց Քնիփստրով անանկ նեղը ձգեց զանիկայ , որ աս ձախող պատերազմը վերջացընելու համար Վիմփինա իր նախագահութեան իշխանութիւնովը յայտնեց՝ թէ քննութեան վերջը առնուեցաւ , ու յառաջ անցաւ վարժապետ աստուածաբանութեան աստիճանը տալ Տէցէլի իբրև հատուցում աս փառաւոր վիճաբանութեանս ։ Նոյնուհետև Վիմփինա աս նորահաս հակառակորդէն ազատելու համար Բոմերանիայի մէջ Բիրիցի վանքը խրկել տուաւ զանիկայ , հրաման ընելով որ զգուշութեամբ նային զինքը ։ Բայց աս նոր աստղը որ Օտէրի սահմաններէն վերցուեցաւ , սահմանուած էր յետ ժամանակաց Բոմերանիայի վրայ տարածել լոյսը ։ Աստուած երբոր յարմար կը դատէ , աշակերտը կը գործածէ վարժապետը խայտառակ ընելու ։

Տէցէլ իր ընդունած կշտամբանքին դարման մատուցանել ուզելով՝ Հռովմայ և դատաքննութեան ատեանին վերջին միջոցը դիմեց բռնելու , այսինքն է՝ կրակով յաղթել հակառակորդները ։ Ուստի Ֆրանկֆորթի արուարձաններուն մէկին մէջ ամպիոն մը կանգնեց ու բարձր սեղան մը դրաւ ։ Հաւատոյ դատաքննիչի նշանով զարդարուած փառաւոր հանդէսով հոն գնաց , ամպիոնէն իր ամենակատաղի եղանակովը չարաչար թշնամանութիւն ըրաւ , անխնայ ձեռքով կայծակունք թօթափեց , ու բարձրաձայն աղաղակեց թէ Լուտեր անուն հերետիկոսը կենդանւոյն այրել պէտք է ։ Նոյնուհետև վարժապետին նախադասութիւնները ու քարոզը սեղանին վրայ դնելով կրակ տուաւ անոնց ։ Աւելի յաջողակութիւն ցուցուց աս գործառնութեանս մէջ , քան որչափ ցուցուցեր էր իր նախադասու-

թիւնները պաշտպանելու. քանզի աս տեղս մէկը չկար իրեն հակառակող, ու իր յաղթութիւնը կատարեալ էր։ Անմիջապէս Դոմինիկեանը յաղթանակաւ վերստին Ֆրանքֆորթ մտաւ։ Նորմոր զօրաւորները հարուած մը կրելն՝ քանի մը տեսարանաց ցուցմունքներու կրդիմեն, և ասիկայ թողլ սրտիլ պէտք է անոնց որ իրենց կրած անարգութեանը մխիթարութիւն մը ըլլայ։

Տէցէլին երկրորդ նախադասութիւնները բարեկարգութեան մէկ հարկաւոր կէտը եղան։ Միաբանութեան տեղը փոխեցին անոնք՝ ներողութեանց վաճառանոցէն Սարիկանու սրահներուն փոխադրելով զանիկայ, ու յարձակմունքը Տէցէլին վրայէն դարձուցին ու պապին ուղղեցին։ Եկեղեցւոյ գլխոյն սրբազան անձը դրին ան հեգ վաճառականին տեղը՝ որուն Լուտեր զարնուէր ու զանիկայ առանց զօրութեան ձգեր էր իր ձեռքին մէջ։ Լուտեր բոլորովին սքանչացաւ ասոր վրայ։ Ժամանակէ մը հետէ հաւանական է որ Լուտեր ինքիրմէն պիտի ըներ աս քայլափոխը, բայց հիմա իր թշնամիները իր տեղը ըրին ասիկայ։ Այնուհետեւ վիճաբանութիւնը ոչ միայն վատահամբաւ տուրեւառի մը վրայ էր՝ այլ նոյն ինքն Հռովմայ վրայ. և ան քաջ ձեռքը՝ որուն նպատակն էր Տէցէլին խանութը տակնուվրայ ընել, զարկաւ և իր հիմունքներէն խախտեց եկեղեցական թագաւորին գահը։

Դարձեալ՝ Տէցէլին նախադասութիւնները հռովմէական վարդապետներուն գունդին ծառայեցին իբրև նշան պատերազմի Լուտերին վրայ յարձակելու։ Միաբանները՝ Էրասմոսէն ու Ռէօկլինոսէն ալ զարհուրելի թշնամիի մը երևան ելլելուն վրայ բարկութեան բռնելով, աղաղակ վերցուցին Լուտերի դէմ։ Բոլոր Դոմինիկեան ամպիոններէն Լուտերի անունը կը հնչէր։ Ժողովրդոց կիրքերը շարժեցին. քաջասիրտ վարդապետը խելագար, մոլորեցուցիչ ու դիւահար կը կոչէին։ Կը հաստատէին թէ անոր վարդապետութիւնը՝ ամենասոսկալի հերետիկոսութիւն մըն

է ։ "Միայն տասնըհինգ օր՝ կամ շատը ամիս մը համբերեցէք, կըսէին, ու աս երեւելի հերետիկոսը կենդանւոյն պիտի այրուի" ։ Թէ որ բանը Կոմնենիկեանց ձեռքը ըլլար, շուտով Հուսի վիճակին զինքը պիտի հասցընէին ․ բայց Աստուած անոր վրայ կըհսկէր ։ Արդէն շատերը կըհրատարակէին թէ Վիդդէմպէրկի բոլոր համալսարանը հերետիկոսութեամբ արատաւորուած է, ու իբրեւ վատահամբաւ եղած կըքարոզէին անոր անունը ։ "Կուրս ընենք ան թշուառականը, եւ բոլոր իր կուսակիցները" ․ կըսէին ։ Այս աս աղաղակները շատ անգամ իրօք կըշարժէին ժողովրդոց կիրքերը ։ Անոնք որ Բարեկարգողին գաղափարներուն հաղորդութիւն ունէին, հասարակաց դիտողութեանը ենթակայ կըլլային ․ եւ երբոր միաբաններէ ձեռքերնին կարողութիւն ունենային, Աւետարանի աշակերտները անոնց ատելութեանը ազդուութիւնը կըզգային ։ Այսպէս՝ փրկիչին մարգարէութիւնը՝ սկսեց կատարուիլ, թէ "Պիտի նախատեն ձեզ՝ ու պիտի հալածեն, ու սուտ տեղը ամէն կերպ գէշ խօսքեր պիտի խօսին վրանիդ՝ ինծի համար" ։ Աշխարհի աս հատուցումը ոչ մէկ դարու մը մէջ պակսած է Աւետարանի հաստատուն աշակերտներէն ։

Երբոր Լուտեր իմացաւ Տէցէլի նախադասութիւնները ու ան ընդհանուր յարձակումը՝ որուն համար նշան տուած էին անոնք, իր քաջութիւնը արծարծեցաւ ։ Տեսաւ որ հարկաւոր էր համարձակաբար դէմ ելլել ասանկ թշնամիներուն ․ իր աներկիւղ ոգին ոչինչ դժուարութիւն զգաց հաստատելու թէ այսպէս պէտք է ընել ։ Անոնց տկարութիւնը ան նոյն ատենը իր զօրութիւնը յայտնեց իրեն, ու իր իրօք ինչ ըլլալը ճանչցուց իրեն ։

Բայց եւ այնպէս՝ տեղի չտուաւ հպարտութեան ան կիրքերուն՝ որոնք այնչափ բնական են մարդկային սրտին ։ "Աւելի դժուարութիւն ունիմ, գրեց աս միջոցիս Սպալատինին, իմ թշնամիներս արհամարհելէն եւ այնպէս Քրիստոսի դէմ մեղանչելէն ես զիս զսպելու, քան որչափ

պիտի ունենայի զանոնք յաղթահարելու ։ Այնպէս ազատ էին անոնք թէ մարդկային և թէ Աստուածային բաներուն վրայ, որ նուաստութիւն կը համարիմ անոնց հետ վիճելը · և սակայն բուն իսկ աս ազատութիւնն է որ կու տայ անոնց՝ իրենց անիմանալի յանդգնութիւնը ու լրբենի դէմքը" ։ Բայց աս ընդհանուր թշնամութեան մէջ տեղը ամէն բանէ աւելի իր սիրտը զօրացունողը ան խորարմատ ճանաչումն էր, թէ իր փաստը ճշմարտութեան փաստն էր ։ "Մի զարմանար որ անոնք այսպէս անխնայ կը նախատեն զիս, գրեց Սպալատինին՝ 1518ին սկզբնաւորութեանը, ուրախութեամբ կը լսեմ ես անոնց նախատինքը ։ Թէ որ անոնք իմ վրաս անէծք չկարդային, չէինք կրնար այնպէս հաստատաբար ապահով ըլլալ թէ իմ ձեռնարկած փաստս նոյն ինքն Աստուծոյ փաստն է ։ Քրիստոս ալ հակառակախօսութեան նշան դրուեցաւ" ։ "Գիտեմ, ըսաւ ուրիշ անգամ մը, որ սկիզբէն Աստուծոյ Բանը այնպէս եղած է՝ որ ով որ անիկայ աշխարհի մէջ բերել ուզէ, պարտի առաքելոց նման ամէն բան ձգել, ու մահուան մատնուիլ ։ Թէ որ այսպէս չըլլար մեզի, Քրիստոսի բանը չէր ըլլար ան" ։ Խռովութեան մէջ տեղը այսպէս հանդարտութիւն ունենալը անանկ մէկ բան մըն է, որուն անծանօթ են աշխարհի դիւցազունները ։

Լութեր տակաւին լռութիւն պահեց պապին վրայով եղած Տեցելի նախադասութիւններուն վրայ · թէ որ կրիւք շարժած ըլլար, անտարակոյս սաստկութեամբ պիտի խըռնար ան զարմանալի վարդապետութեանը վրայ՝ որուն տակը պաշտպանութիւն և պատսպարութիւն խնդրեց իր թշնամին ։ Բայց աս կերպը բան չըրաւ · ու իր յապաղմանը՝ զգուշութեանը և լռութեանը մէջ վսեմութիւն մը և կարևորութիւն մը կայ, որ ըստ բաւականին կը յայտնէ ան ոգին որ կենդանացուց զինքը ։ Հանդարտ կեցաւ, բայց չէ թէ տկարութենէն · վասն զի առաւել ծանրագոյն էր ան հարուածը երբոր վերջապէս հարկաւորեցաւ տալ ։

Տէցէլ Օտէր գետին վրայ Ֆրանքֆորթի մէջ Լուտերի գրութիւնները լրբաբար այրելէն ետև, իր Նախադասութիւնները Սաքսոնիա խրկեց. մտածելով թէ Լուտերի Նախադասութիւններուն փոխարէն դեղթափի տեղ պիտի ծառայեն անոնք: Հալլէ քաղաքէն դատաքննիչը մարդ մը խրկեց Վիտտէմպէրկ, որ իր Նախադասութիւնները հոն տարածէ: Վիտտէմպէրկի համալսարանին աշակերտները բարկացած էին որ Տէցէլ իրենց վարժապետին Նախադասութիւնները այրեր էր. և երբոր լսեցին թէ անոր կողմանէ մարդ եկած է, իսկոյն գունդագունդ անոր բոլորտիքը հաւաքեցան, և սպառնալով կըհարցընէին թէ ինչպէս համարձակեր էր այնպիսի բաներ բերել հոն: Ոմանք անոր բերած օրինակներուն մէկ մասը ծախու առին, ուրիշները՝ մնացեալները անոր ձեռքէն յափշտակեցին: Այսպէս անոր բերած վաճառքին բոլորը որ ութը հարիւր օրինակի չափ էր, իրենց ձեռքը անցուցին: Այնուհետև առանց գիտութեան կայսրընտրին և խորհրդարանին, համալսարանի կառավարին՝ Լուտերին և բոլոր վարժապետներուն, Վիտտէմպէրկի աշակերտները համալսարանին դռներուն վրայ յայտարարութիւններ կախեցին այս խօսքովը. “Ով որ կըփափաքի Տէցէլի Նախադասութիւններուն այրուելուն և յուղարկաւորութեանը ներկայ գըտնուիլ, ժամը երկուքին վաճառանոցը թող հրամէ”:

Սահմանուած ժամուն լսողները գունդագունդ հաւաքեցան, ու Դոմինիկեան վարդապետին Նախադասութիւնները ժողովուրդին ցնծութեան ձայներովը կրակի տուին: Միայն մէկ օրինակ մը ազատեցաւ կրակէն. Լուտեր վերջը անիկայ իր բարեկամին խրկեց, Էրֆուրթի Յովհաննէս Լանժին: Այս խռանդոտ պատանիները գործեցին առջիններուն տրուած պատուէրին վրայ՝ “աչքի տեղ աչք, ու ակռայի տեղ ակռայ”, և ոչ Քրիստոսի պատուէրին վրայ: Բայց երբոր վարդապետները ու վարժապետները Ֆրանքֆորթի մէջ այսպէս օրինակ մը ցուցըցին, զարմանալի

բան է թէ որ Վիդդեմպէրկի նորահաս աշակերտները ան օրինակին հետեւին ։ Ակադիմիային աս հաստուցած պատժոյն լուրը բոլոր Գերմանիայի մէջ տարածեցաւ, ու շատ զրոյց պատճառեց ։ Լուտեր սաստիկ վշտացաւ ասոր վրայ ։

Զարմացեալ եմ, գրեց Էրֆուրթի իր հին վարժապետին Յովդակոսին, որ կը հաւատաք թէ ես Տէցէլի նախադասութիւններուն այրուելուն բանի մը խառնուած ըլլամ ։ Կը կարծէք թէ բոլորովին կորսնցուցե՞ր եմ իմ միտքս ․ բայց ի՞նչ կրնամ ընել ։ Երբոր իմ վրայովս բան մը կը պատմուի, ի՞նչ որ ըլլայ ամէն մարդ անորոշաբար կը հաւատայ ։ Կրնա՞մ ես կապել մարդոց բերանները․ ի՞նչ որ կուզեն թող ըսեն ու լսեն, տեսնեն ու պատմեն ։ Քանի որ Տէրը զօրութիւն կուտայ ինծի, յառաջ պիտի երթամ, ու Աստուծոյ օգնութեամբը բանէ մը պիտի չվախնամ" ։ — "Ասկից ի՞նչ հետեւիլը, ըսաւ Լանժին, չեմ գիտեր․ միայն աս գիտեմ թէ աս գործովը առաւելապէս ծանրացած է ան վտանգը որուն մէջ կըկենամ" ։ Աս գիպուածը կըցուցնէ թէ երիտասարդներուն սրտերը արդէն ինչպէս արծարծած էին ան փաստին վրայ՝ որուն ախոյեանն էր Լուտեր ։ Ասիկայ մեծ օգտի նշան մըն էր․ վասն զի մէկ շարժում մը անգամ մը երիտասարդաց մէջ որ սկսի, հարկաւորապէս շուտով կը հաղորդի ան բովանդակ ազգին ։

Տէցէլի և Վիմփինայի նախադասութիւնները թէպէտ և թեթեւ յարգութիւն մը ունեցան, բայց ազդուութիւն մը պատճառեցին ։ Վիճաբանութիւնը ընդարձակեցին, Եկեղեցւոյ պատմուճանին պատառուածը մեծցուցին, գերագոյն շահախնդրութեան նոր խնդիրներ վիճաբանութեան ասպարէզը հանեցին ։ Ասանկով Եկեղեցիին գլխաւորները սկսեցին ուշադրութեամբ զննել վէճը, և ուժգին զօրութեամբ ինքզինքնին Բարեկարգողին դէմ ցուցընել ։ "Չեմ գիտեր արդարեւ, ըսաւ Գրանտէպուրկի եպիսկոպոսը, թէ Լուտեր որուն պաշտպանութեանը կրնայ ապաւինիլ, որ աս կերպովս կը համարձակի եպիսկոպոսներուն իշխանու-

թեանը վրայ յարձակիլ": Իմանալով որ աս նոր պարագան կըպահանջէ նոր զգուշութիւններ, եպիսկոպոսը անձամբ Ակդէմպերկ եկաւ: Բայց գտաւ Լուտերը կենդանացած ան ներքին ուրախութիւնովը՝ որ բարի խղճմտանքէ կը ծագի, ու պատրաստ պատերազմելու: Զգաց եպիսկոպոսը որ Օգոստինեան միաբանը իր ունեցածէն բարձրագոյն զօրութեան մը կըհնազանդէր, ու բարկացած սրտով դարձաւ գնաց Պրանտէպուրկ: Օր մը՝ 1518ին ձմեռը չվերջացած, երբոր իր վառարանին քով նստեր էր, իր բոլորտիքը եղողներուն դառնալով ըսաւ. "Խաղաղութեամբ պիտի չհանգչեցընեմ իմ գլուխս, մինչև որ Մարտինոսը կրակը չնետեմ աս փայտին պէս". աս ըսելով փայտին կտորը վառարանին կրակը նետեց: Տասնըվեցերորդ դարուն բարեկարգութիւնը Եկեղեցւոյ գլխաւորներէն օգնութիւն չգտաւ, ինչպէս որ առաջին դարունը ծերակուտէն և Սինակովկայէն գտած չէր: Քրիստոնէից եկեղեցւոյն մեծերը տասնըվեցերորդ դարուն հակառակեցան Լուտերի՝ Բարեկարգութեան ու անոր պաշտօնեաներուն, ինչպէս որ Հրէից եկեղեցւոյնները հակառակեր էին Յիսուս Քրիստոսի Աւետարանին՝ ու անոր առաքեալներուն: Լուտեր՝ Պրանտէպուրկի եպիսկոպոսին իրեն տեսութեան գալուն վրայ խօսելով, ըսաւ. "Եպիսկոպոսները սկսեցին իմանալ թէ իմ ըրածս իրենց կիյնար ընել. ուստի կամչեն, լերբ և յանդուգն կըկոչեն զիս, ու չեմ ուրանար իմ այսպէս ըլլալս: Բայց իրենց չկյնար իմանալ թէ ինչ է Աստուած և ինչ ենք մենք":

## ՀԱՏՈՒԱԾ Թ

ՏԷՑԵԼԻՆ առաջարկած ընդդիմութենէն աւելի ծանրը ելեր էր Հիմա Լուտերի դէմ. ինչու որ Հռովմ պատասխան

գրեր էր իրեն ։ Արքաղան պալատին շրջապատէն դուրս ելեր էր աս պատասխանը, բայց չէ թէ Ժ. Լեոնն էր որ ինքզինքը աստուածաբանութեան միջամուխ ընելու բարեհաճեր էր ։ "Միաբաններուն մէջ ծագած վէճ մըն է, ըսաւ ինքը մէկ օր մը, աղէկ է որ չխառնուիմ անոր" ։ Նոյն ուրիշ անգամ մը ըսաւ . "Գինով Գերմանացի մըն է որ աս նախադասութիւնները գրեր է . երբոր գինովութենէն արթըննայ, շատ տարբեր պիտի խօսի" ։ Հռովմայեցի Դոմինիկեան մը՝ Սեղբեստրոս Պրիէրիաս անունով որ պապին պալատին վերակացուն էր՝ քննիչ հաւատոյ կարգուած էր, և ինքը առաջին եղաւ որ աս պաշտօնովս Սաքսոնացի միաբանին հրատարակած նախադասութիւններուն վրայ քննութիւն ըրաւ ։

Աս հռովմայեցի քննիչը, աս Դոմինիկեանց նախագահը, աս եկեղեցական իշխանաւորը, որուն պաշտօնը իշխանութիւն շնորհեր էր իրեն որոշել թէ քրիստոնեայք ինչ վարդապետութիւններ պիտի դաւանին՝ և ինչ մասերու լռիկ պիտի կենան, ինչ պարտին գիտնալ և ինչ պարտին չգիտնալ, փափաքեր էր պատասխան տալ Լուտերի ։ Աման որդյ գրուած մը հրատարակեց 'ի պատիւ Ժ. Լեոնի, որուն մէջ Գերմանացի միաբանին վրայ քամահրանքով կըխօսէր, ու բոլորովին հռովմէական յանդգնութեամբ մը կըյայտանէր թէ կուզէ գիտնալ՝ թէ ան Մարտինոսը արդեօք երկաթէ պարանոց ու պղինձէ գլուխ ունի՞ որ անհնար ըլլայ խորտակելու ։ Այնուհետև տրամախօսութեան ձևով յառաջացաւ Լուտերի նախադասութիւններուն վրայ յարձակիլ, ծաղրաբանութիւն թշնամանք և սպառնալիք գործածելով փոփոխաբար ։

Վիդդէմպէրկի Օգոստինեանին ու Հռովմայ Դոմինիկեանին մէջ եղած վէճը ան խնդրոյն վրայ էր՝ որ ըստ ինքեան Բարեկարգութեան սկզբունքն է . այսինքն՝ Ո՞րն է Քրիստոնէից համար մի միայն անսխալ կանոն հաւատոյ ։ Ահա հետևեալ պարբերութեամբ կըտեսնուի Եկե-

ղեցիին գրութիւնը իր ինքնիշխան գործակալներէն հաստատած՝ որոնց մէկն էր Սեղբեստրոս Պրիէրիաս :

Կրաւորական բանին իմաստը մեռեալ է առանց մեկնութեան հոգիին՝ որն որ միայն կը յայտնէ անոր ծածկեալ նշանակութիւնը : Բայց աս հոգին իւրաքանչիւր Քրիստոնէի տրուած չէ, այլ Եկեղեցիին, այսինքն է՝ եկեղեցականներուն : Մեծ յանդգնութիւն է հաստատել՝ թէ ան որ Եկեղեցիին խոստացաւ անոր հետ ըլլալ մինչև աշխարհի վերջը, կարենայ ձգել զանիկայ սխալման մէջ իյնալու : Աստի Սրբազան Գրոց իմաստը պարտիմք հասկընալ ինտոր որ Եկեղեցին Հոգւոյն Սրբոյ առաջնորդութեամբը որոշած է անիկայ :

Մինչև աս տեղս հռովմէադաւան վարդապետները կը միաբանէին. բայց աս մասին կը տարբերէին, որ ոմանք կըսէին՝ ընդհանուր ժողովները Եկեղեցիին տեղակալներն են : Ուրիշները՝ և անոնց հետ Պրիէրիաս՝ կըսէին, Մեկնութեան հոգին Թանգարանը պապն է. ու մէկը իշխանութիւն չունի ուրիշ կերպով բացատրել Սուրբ Գիրքը, բայց եթէ հռովմէական քահանայապետին վճռոյն համեմատ :

Այսպիսի էր ան վարդապետութիւնը որ սրբազան պալատին վերակացուն ընդդիմադրեց Նորաբողբոջ Բարեկարգութեան : Իր գրուածքին սկզբնաւորութեանը հաստատած սկզբունքներուն մէկը աս հետևեալն է. "Ով որ հըռովմէական Եկեղեցւոյն և հռովմէական քահանայապետին վարդապետութեանը վրայ չհաստատուիր իբրև անսխալելի կանոն հաւատոյ, ու չհամարիր թէ նոյն իսկ Սուրբ Գիրքն ալ անկէց կը քաշէ իր զօրութիւնը և իր հեղինակութիւնը, հերետիկոս է"* :

Այնուհետև կուգայ տրամախօսութիւնը, որուն մէջ խօսողներն են Լուտեր և Սեղբեստրոս, և ուր որ վերջինը

*"A qua etiam sacra Scriptura robur trahit et auctoritatem, hæreticus est" (Sylvestri Prieratis Dialogus, fundamentum tertium.)

կաշխատի վարժապետին Նախադասութիւնները ըրել ։ Աղքսոնացի միաբանին գաղափարները բոլորովին նոր և օտար էին Հռովմէական քննիչին․ ուստի Պրիէրիաս ցուցուց, թէ ոչ անոր սրտին զգացումները և ոչ անոր գործքին շարժառիթները իմացեր էր ինքը ։ Ճշմարտութեան վարժապետը Հռովմայ կուսակիցներուն փոքրիկ կշռովը կըշռեց ։ "Սի՛լ պատուական Լուտեր, կըսէ, թէ որ մեր տէրոջմէն պապէն աղէկ եպիսկոպոսութիւն մը՝ և քու եկեղեցիդ նորոգելու լիակատար շնորհք մը ընդունէիր, ի՞նչպէս պիտի փոխուէր քու խօսքդ, ու մեծաձայն պիտի հռչակէիր ներողութիւնը՝ որն որ հիմայ կըբերկրիս անարգելու"։ Սա Իտալացին որչափ որ կըպարծենար քաղաքավար ըլլալ, շատ անգամ խիստ անվայել ծաղրաբանութիւններ կըգործածէ․ "Ճիւէ որ խածնելը շուներուն բնութիւնն է, ըսաւ Լուտերին, վախնամ թէ քու հայրդ շուն էր" ։ Իր գործին վախճանին մօտ Դոմինիկեանը կըզարմանայ իր վրայ, թէ ինչպէս բարեհաճեր է զիջանիլ աղըտամբ միաբանի մը հետ խօսակցելու․ և իր թշնամիէն բաժնուելու ատենը քննողութեան գժնդակ ժանիքները կը ցուցընէ անոր ։ "Հռովմէական Եկեղեցին, կըսէ, որուն հոգևոր և ժամանակաւոր ծայրագոյն իշխանութիւնը պապին ձեռքն է, աշխարհական ուժով կրնայ զսպել զանոնք՝ որոնք առաջ հաւատքը ընդունելով ետքը կըմեկնին անկէց ։ Եկեղեցին պարտաւորութիւն չունի փաստ ցուցընելով ապստամբներուն հետ կռուելու և անոնց յաղթելու" ։ Հռովմէական պալատի իշխանաւորին գրիչէն ելած սաստիկ խօսքերը խորին իմաստ ունէին, և սակայն չկրցան վախցունել զԼուտեր ։

Աստուածաշունչ գիրքն էր որ Բարեկարգողը ծնուցեր՝ ու Բարեկարգութիւնը սկսեր էր ։ Լուտերի հաւատքը Եկեղեցւոյ վկայութեանը վրայ հաստատեալ չէր․ այլ յառաջ եկեր էր նոյն իսկ Աստուածաշունչ գիրքէն, ներսէն՝ և ոչ դուրսէն ։ Այնպէս քաջ ճանչցեր էր աւետարանական

վարդապետութեան Աստուծոյ Բանին վրայ անշարժ շինուած ըլլալը, որ արտաքին վկայութեան բոլորը աւելորդ էր իրեն։

"Սուրբ Գիրքը իմանալու համար՝ հարկաւոր է որ Աստուծոյ Հոգին միտքը բանայ" կըսէր Եկեղեցին, և մինչև աս տեղս ճշմարիտ էր իր ըսածը։ Բայց իր սխալմունքը հոն էր՝ որ կըկարծէր թէ սուրբ Հոգին մենավաճառութիւն մըն է՝ որ մասնաւոր կարգի մը տրուած է, ու կըհամարէր թէ կրնայ ամփոփուիլ ժողովներու և դպրոցներու մէջ, քաղաքի մը կամ ժողովրդեան մը մէջ։ Աստուածորդին Աստուծոյ Հոգւոյն վրայ խօսելուն ըսաւ, "Հովը ուր որ ուզէ կըփչէ". և ուրիշ տեղ, "ԱՄԷՆՆ ԱԼ Աստուծմէ սորված պիտի ըլլան"։ Եկեղեցիին աղաւաղութիւնը՝ Հռովմայ հայրապետներուն փառասիրութիւնը՝ ժողովներուն նախանձայուզութիւնները՝ վարդապետներուն թշնամութիւնները՝ եպիսկոպոսներուն պատուամոլութիւնը, քահանայից բռնակալներէն հեռի աքսորեցին ան Սուրբ Հոգին, ան խոնարհութեան և խաղաղութեան Հոգին։ Աստուծոյ Հոգին մեկներ էր հպարտներուն ժողովներէն՝ ու եկեղեցիին իշխաններուն պալատներէն, ու բազմեր էր պարզամիտ քրիստոնէից և խոնարհ քահանայից մէջ։ Եկեղեցին իր իշխանութեան և հարստութեան սիրովը նուաստանալով, կենաց վարդապետութիւնը թիւրելովը ժողովրդոց առջին անպատիւ ըլլալով, Եկեղեցին՝ իր ամբարտաւանութիւնովը ու շռայլութիւնովը վատնած գանձը վերստին ունենալու համար փրկութիւն վաճառելու զբաղած ըլլալով, իր բոլոր պատիւը կորսնցուցեր էր, ու խելքի տէր մարդիկ իր վկայութիւնը ոչ ևս կըյարգէին։ Արհամարհելով այսպիսի նուաստացած հեղինակութիւնը՝ ուրախութեամբ դարձան անոնք Աստուծոյ Բանին և անոր անսխալելի հեղինակութեանը, ան ընդհանուր շփոթութեան մէջը իրենց առջին բացուած մի միայն ապաստանարան համարելով զանիկայ։

Ուրեմն ժամանակը հասունցեր էր. ան արիական շարժումը՝ որով Լուտեր մարդկային սրտին բարձրագոյն յոյսերը Վատիկանու բերդերէն զօրաւոր ձեռքով մը քակեց ու Աստուծոյ Բանին ամուր վէմին վրայ հաստատելու զանոնք փոխադրեց, եռանդուն մտօք ընդունուեցաւ։ Ասիկայ էր Բարեկարգողին մտքին մէջի նպատակը Պրիէրիասին գրած իր պատասխանւոյն մէջ։

Զգելով ան սկզբունքները որ Դոմինիկեանը իր գործոյն սկզբնաւորութեանը հաստատեր էր, «Ես ալ, ըսաւ Լուտեր, քու օրինակիդ հետեւելով, քանի մը սկզբունքներ պիտի հաստատեմ»։

Առաջինը Սրբոյն Պօղոսի աս խօսքն է. — «Թէ որ մէկը ձեր առածէն աւելի աւետարանը քարոզելու ըլլայ ձեզի, թէ և երկինքէն հրեշտակ մը ըլլայ ան, նզովեալ ըլլայ»։

Երկրորդը աս հետեւեալն է որ Սուրբն Օգոստինոս գրեց սրբոյն Հերոնիմոսի. — «Սորվեցայ ես միայն Աստուածաշունչ Գրոց ընծայել յարգութիւն հաստատուն հաւատոյ՝ թէ բնաւ չսխալեցան անոնք. ուրիշներուն վրայ՝ անոնց սորվեցուցածներուն չեմ հաւատար ես, միայն իրենք անանկ սորվեցունելնուն համար»։

Աս տեղս Լուտեր անշարժ ձեռքով մը կը հաստատէ Բարեկարգութեան հիմնական սկզբունքները. Աստուծոյ Բանը, բովանդակ Աստուծոյ Բանը, ոչ այլ ինչ բայց Աստուծոյ Բանը։ «Թէ որ աղէկ կը հասկընաս աս սկզբունքները, կը շարունակէ ըսելով, պիտի հասկընաս եւս թէ քու բոլոր տրամախօսութիւնդ քայքայուած է անոնցմով. վասն զի ուրիշ բան չըրիր դուն՝ բայց եթէ սրբոյն Թովմայի Ագուինացւոյն խօսքերը ու կարծիքները յառաջ բերիր»։ Այնուհետեւ յայտնապէս հերքելով իր հակառակորդին առածները՝ համարձակաբար կը յայտնէ թէ իր կարծիքը ան է՝ որ պապը ու ժողովները կրնան սխալիլ։ Կը գանգատի Հռովմայ պալատականներուն մարդահաճութեանցը վրայ, որոնք աս ու ան իշխանութիւնը կընծայեն

պապին ։ Կըցուցընէ թէ Եկեղեցին իրապէս * կըգոյանայ միայն Քրիստոսի վրայ, և ներկայապէս† կըգոյանայ միայն ընդհանուր ժողովին վրայ ։ Վերջը Գրիգորիասին իր վրայ ունեցած կարծիքը նշանակելով կըսէ. "Անշուշտ դուն զիս քու վրայովդ կըդատես. բայց թէ որ ես եպիսկոպոսութիւն ուզէի, անշուշտ չէի գործածեր այն լեզուն՝ որն որ դուն այնպէս վնասակար կըհամարիս ։ Կըկարծես որ ես չե՞մ գիտեր թէ Հռովմայ մէջ ինչպէս կըստացուին եպիսկոպոսական թեմերը ու քահանայական կարգերը ։ Չէ՞ որ տղաքը անգամ աս նոյն քաղքին ամէն մէկ փողոցին մէջ կերգեն աս ամենուն գիտցած խօսքը.

Բոլոր երկրի մէջ գեշէն գէշ տեղը
Հոս կըգտնուի Հռովմ քաղաքը" ։

Այսպիսի երգեր ան ատենները հասարակ էին Հռովմայ մէջ ։ Ասոր վերայ այսր ամենայնի Լուտեր ականատեսութեամբ կը խօսի Լեոնի վրայ ։ "Գիտեմ, կըսէ, որ ինքը Բաբելոնի մէջ Դանիէլի նման է. իր անմեղութիւնը շատ անգամ վտանգի տակ ձգեց իր կեանքը". ու կըվերջացունէ խիստ համառօտութեամբ պատասխան տալով Գրիգորիասի սատանայական խօսքին ։ "Ի վերջոյ կըսես թէ պապը միանգամայն քահանայապետ է և թագաւոր, և թէ կարողութիւն ունի աշխարհական ուժով Աստուածութեան բռնադատել ։ Ուրեմն արիւնի՞ կըծարաւիս դուն ։ Կըվկայեմ քեզի թէ ատ քու մեծաբանութիւններդ և սպառնալիքներդ ոչինչ շփոթութիւն կուտան ինծի ։ Աւան զի ինչ պիտի ըլլայ թէ որ զիս սպաննեն ։ Քրիստոս կենդանի է. Քրիստոս իմ Տէրս՝ ու ամենուն Տէրը, օրհնեալ յաւիտեանս. Ամէն" ։

Այսպէս Լուտեր պապութեան սեղանին հակառակ՝ աներկիւղութեամբ կանգնեց Աստուծոյ սուրբ և անսխալ Բանին սեղանը. սեղան մը՝ որուն առջին կըկամէր թէ ամէն

*Virtualiter. †Representativé.

ծունկ խոնարհի, և որուն վրայ իր կեանքը մատուցանելու ինքզինքը պատրաստ կըցուցընէ: Պրիերիաս տօր պատասխան մը հրատարակեց, ու նաքը երրորդ գիրք մը "Եկեղեցիին ու պապին անհակառակելի ճշմարտութեանը" վրայ: Այս գիրքին մէջ եկեղեցական իրաւանց վրայ զինքը հաստատելով ըսաւ. "Թէ որ պապը մինչև անգամ բոլոր ժողովուրդը իր հետը մէկ տեղ դժոխքը տանի, տօր համար չեմ կրնար՝ կամ յանդիմանել և կամ ուրանալ զինքը" *: Վերջապէս պապը պարտաւորեցաւ լռեցունել զՊրիերիաս:

Այս միջոցիս մէկ նոր թշնամի մը երևան ելաւ: Ասիկայ ալ Դոմինիկեան մըն էր Յակոբոս Ուխստրատէն անունով, Կողոնիա՝ քաղաքին հաւատոյ քննիչը, որ Լութերին առջի ջանքերը լսելուն իր կատաղութիւնը չկրցաւ զսպել: Ուխստրատէն սաստիկ զայրացաւ, իր բարկութիւնը բորբոքեցաւ, ու մեծաձայն աղաղակով հերետիկոսին մահը խնդրեց: Կամեցաւ կենդանույն այրել զանիկայ, որ Հռոմը յաղթող հանդիսացունէ: "Եկեղեցիին դէմ քրէական յանցանք մըն է, կըգոչէր, այսպիսի զարհուրելի հերետիկոսը ժամ մը ևս ողջ թողլու տալը: Խող անոր համար պատրաստուի փաղփաղակի գլխատպարտութեան տեղ մը": Ահ, աս արիւնախանձ խրատը շատ աղէկ բանուեցաւ զանազան երկիրներու մէջ, ու բազմաթիւ մարտիրոսներուն ձայները՝ Եկեղեցիին առջի դարերուն մէջ պատահածին նման, կրակի բոցերուն մէջէն ճշմարտութիւնը վկայեցին: Բայց զուր տեղը հուր և սուր կըխնդրէին Լութերին համար: Յաւիտենականին հրեշտակը միշտ անոր բոլորտիքը կըպատէր, ու զանիկայ կըպաշտպանէր:

Լութեր պատասխան գրեց Ուխստրատէնին համառօտ խօսքով, բայց մեծ ազդուութիւնով: "Ա՜չ, ըսաւ իր պատասխանույն վերջը, անկարեկից մարդասպան, եղբօրդ

* De juridica et irrefragabili veritate Romanæ Ecclesiæ. Lib. tertius, Cap. 12.

տրիւնին ծարաւոզ ։ Իմ բոլոր սրտովս կըպաղձամ՝ որ դուն զիս քրիստոնեայ և հաւատացեալ չկարծես․ այլ ընդհակառակն շարունակես բամբասել զիս իբրև հերետիկոս ։ Աղէկ միտք առ ասոնք՝ ով արեան ծարաւի, ճշմարտութեան թշնամի․ և եթէ քու կատաղութիւնդ կըթելադրէ քեզի իմ կեանքիս դէմ բան մը ընել ինծի, զգուշացիր շրջահայեցութեամբ գործել, ու աղէկ ընտրել քու ժամանակդ ։ Աստուած գիտէ թէ ինչ է իմ միտքս, թէ որ իմ կեանքս ազատ մնայ ։ . . . . Իմ յոյս ու ակնկալութիւնս Աստուծոյ կամեցողութեամբը պիտի դատարկ չըլլէ" ։ Լիստարատէն պատասխան չառաւ ։

Ուրիշ յարձակում մը կըսպասէր Ռաթենպուրգողին՝ առաւել տհաճելի իր զգացումներուն ։ Էք՝ Ինկօլստադի անուանի վարժապետը ու Լուտերի բարեկամը, հաշտարար նախադասութիւնները ընդունեն էր ։ Էք այն մարդը չէր որ ներողութեանց չարաչար կիրառութիւններուն քաղագով ըլլար․ բայց ինքը դպրոցի վարժապետ էր, և ոչ Աստուածաշնչի․ քաջ վարժուած դպրոցական աստուածաբանութեամբ և ոչ Աստուծոյ Բանովը ։ Ինչ որ Պրիէրիաս Հռովմայ կերպարանքը վրան առեր էր ու Լիստրատէն միաբաններունը, աս նոր հակառակորդը դպրոցներունը իր վրան կըցուցընէր ։

Էք՝ Լուտերի դրութիւններուն շատերը անշուշտ մոլորական պիտի կարծէր, որովհետև իր կարծիքներուն վրայ հաստատուած էր․ ինքը անձնատուր եղած էր դպրոցական կարծիքները պաշտպանելու, ինչպէս որ Լուտեր ալ հաւասարապէս անձնատուր եղած էր Աստուծոյ Բանին յարելու ։ Եւ թէպէտ կրնանք մտածել՝ թէ Էք սակաւ ինչ տրտմութեամբ իր բարեկամին հակառակելու պարտաւորեալ առաւ զէնքը, և սակայն իր անոր վրայ յարձակելուն եղանակէն կերևայ որ իր շարժառիթները կիրք և նախանձութեամբ խառնուած էին ։

Լուտերի նախադասութիւններուն վրայ ծանօթութիւն-

ներ գրեց Կոթողք (Obelisques) անունով *։ Այս գրութեանս մէջ նշմարուած չարասիրութիւնը Լուտերի սրտմտութիւնը բորբոքեց։ Բայց իր վիշտը աւելի եղաւ երբոր մտածեց թէ աս հարուածը բարեկամէ մը եկաւ։ Սերեմի՝ իր բարեկամին սիրոյն կորուստովն է որ ճշմարտութիւնը պիտի պաշտպանէր։ Լուտեր իր սրտին վիշտը յայտնեց նամակի մը մէջ՝ գրելով առ Եգրանոս, Ցուիկաւի ժողովրդապետին։ "Այս Կոթողներուն մէջ, ըսաւ, կըկոչուիմ վնասակար մարդ, Պոհեմիացի, հերետիկոս, ու կընախատուիմ երբև խռովայոյզ անզգամ և յանդուգն։ Չեմ յիշեր մանր նախատինքները, ինչպէս թանձրամիտ՝ ապուշ տգէտ, ծայրագոյն քահանայապետը արհամարհող, ԵՒ։ Բոլոր գրուածքին մէջ ուրիշ բան չկայ՝ բայց եթէ նախատինք. և դեռ ան՝ որ զանոնք գրեց, երևելի մարդ մըն է, որուն վրայ միացեալ են տաղանդ և գիտութիւն. ասկէց զատ մէկը՝ որ նոր պայմանադրուած սիրտ մտերմութեամբ կապուած էր ինծի։ Իր անունն է Յովհաննէս Էք՝ վարժապետ Աստուածաբանութեան, Ինկոլստադի համալսարանին վերակացուն. իր գրութիւններուն համար աղէկ ծանօթ է, և մեծապէս պատկառելի է ամենուն։ Թէ որ Սատանային դիտաւորութիւնը չգիտնայի, պիտի զարմանայի ան մոլեգնութեանը վրայ որ թելադրեց Էքին քակել այսպիսի փափաքելի և մանաւանդ այսպիսի նոր բարեկամութիւնը, ամենևին ծանօթութիւն մը չտուած ինծի"։

Բայց թէ որ Լուտերի սիրտը վշտացաւ, իր արիութիւնը չտկարացաւ. միայն թէ ուզեց լուռ մնալ։ Սակայն իր բարեկամները տարբեր կարծիք ունեցան. թախանձեցին ի-

* Տպագրիչք Կոթող կըկոչէին աս (†) նշանը, ինչպէս որ Աստղ աս (*) նշանը։ Էքին ծանօթութեանց գիրք մը պզտիկ, ամփոփութիւն է որ ամեն մէկ ծանօթութեան վերջը ասոնք նշաններ կը դնէին։ Ասոր համար Էք Կոթողք անուանեց իր ծանօթութիւնները, ինչպէս որ Լուտեր ալ իր պատասխանը կոչեց Աստղք։

րեն, ու պարտաւորեցին զինքը ջնջանիլ իրենց թախանձանքին ։ Վասն որոյ Էքին Կոթողներուն դէմ իր պատասխանը գրեց Աստեղք (Asterisques) անունով ։ Աս գործիս մէջ առաւել մեղմով վարեցաւ իր նոր թշնամւոյն հետ՝ քան որչափ վարեր էր իր առջի հակառակորդներուն հետ . բայց իր ծածկեալ սրտմտութիւնը երբեմն դուրս ելած կըյայտնուէր իր խօսքերուն մէջ ։

Ցուցուց թէ կոթողներուն բովանդակ խառնակութեանը մէջ ոչ սուրբ Գրքերէն բան մը կար, ոչ եկեղեցւոյ հայրերէն, և ոչ եկեղեցական կանոններէն . այլ բոլորին մէջ միայն դպրոցներուն մեկնաբանութիւնները . կարծիքներ, լոկ կարծիքներ ու երևակայութիւններ . մէկ խօսքով բոլոր աննոյն բաները որոնց վրայ Լուտեր յարձակեր էր ։ Բայց Աստղերը հոգիով ու զօրութիւնով լեցուն են . Հեղինակը կըսրտմտի իր բարեկամին գրքին մէջի սխալներուն վրայ, բայց կըխղճայ ՚ի զմարդը ։ Վերստին կըհաստատէ ան հիմնական սկզբունքը, որն որ հաստատեր էր Պրիէրիասին գրած իր պատասխանւոյն մէջ, թէ "Ծայրագոյն քահանայապետը մարդ է, ու կրնայ սխալիլ . բայց Աստուած նոյն ինքն ճշմարտութիւն է, ու չկրնար սխալիլ" ։ Այս եռքը դպրոցական վարժապետին դէմ ճիշդ յարմար ձեռնարկութիւն մը յառաջ բերելով, կըսէ . "Արդարև լրբութեան գործ է որ մէկը Արիստոտէլի փիլիսոփայութիւնը ըլլալ սորվեցընէ ինչ որ չկրնար ցուցընել Արիստոտէլի վկայութեամբը ։ Ասիկայ կընդունիք . և ասկէց մեծագոյն պատճառով յետին լրբութիւն է Եկեղեցւոյ մէջ ու Քրիստոնէից մէջ հաստատել ինչ որ Քրիստոս ինքը չսորվեցըներ ։ Իսկ արդ ո՞ւր կըգտնեմք Աստուածաշնչի մէջ, որ Քրիստոսի արդեանցը թանգարանը պապին քովը պահուած է" ։

Լուտեր չհրատարակեց Աստեղքը, այլ միայն իր բարեկամներուն խրկեց զանոնք ։ Ետքն էր որ հասարակութեան մէջ հրատարակուեցան անոնք ։

. Ինկօլստադի վարժապետին ու Վիդդէմպէրկի վարժապետին մէջ եղած աս թշնամութիւնը մեծ պգացում մը պատճառեց Գերմանիայի մէջ, վասն զի երկուքն ալ հասարակաց բարեկամներ էին։ Սա մանաւանդ մեծապէս շփոթեցաւ Էօքլ, ու ջանաց որ Էքը ու Լուտերը մէկ մէկու հետ հաշտեցընէ։ Լուտեր ցուցուց՝ թէ ինքը պատրաստ է ամէն բան մոռնալու, թէ կըսիրէ Էքին տաղանդները, կըզմայլի անոր գիտութեանը վրայ, և թէ առաւել վշտացած է քան թէ բարկացած իր բարեկամին ընթացքին վրայ։ "Պատրաստ եմ ես՝ ըսաւ Էօքլին, թէ հաշտութեան և թէ պատերազմի. բայց աւելի կընտրեմ հաշտութիւնը։ Ուրեմն սկսէ քու միջնորդութեան պաշտօնդ գործածելու. վշտացիր մեր հետը որ սատանան աս անմիաբանութեան սկիզբը մեր մէջը բորբոքեց, ու ետքը ուրախացիր որ Քրիստոս իր ողորմութիւնովը զանիկայ շիջուց"։ Խանդակաթ սիրով գրեց Էքին, բայց ան պատասխան չտուաւ. մինչև խօսք մը ևս չխրկեց անոր։ Հաշտութեան ժամանակը անցած էր։ Պատառուածը հետզհետէ մեծցաւ։ Էքին բարձրամտութիւնը ու անողոքելի կիրքը շուտով կտրեց իրենց թուլցած բարեկամութեան վերջին կապերը։

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ԱՅՍՊԻՍԻ էին ան յուզմունքները որոնց պատահեցաւ Աստուծոյ Բանին ախոյեանը՝ իր ընթացքին սկզբնաւորութեանը։ Բայց մինչդեռ հաւատոյ քննիչներուն՝ համալսարաններու կառավարիչներուն ու սրբազան պալատին վերակացուներուն հետ կըմարտնչէր, հասարակութեան մէջ կրօնքին անմոլար գիտութիւնը տարածելու հոգ կըտանէր։ Աս դիտաւորութեամբս գրեց ան նոյն ատենը հրատարակեց հասարակաց դիւրիմանալի զանազան տետրակներ

ինչպէս երկու տարի առաջ Վիդդէմպէրկի եկեղեցւոյն մէջ քարոզած Տասնաբանեայ Պատուիրանաց վրայ իր քարոզը՝ որն որ արդէն յիշատակեցինք, ու նաև Տէրունական աղօթքին վրայ իր մեկնութիւնը, պարզամիտ և ռամիկ աշխարհականներուն համար։ Ապաքէն բաղձալի է գիտնալ թէ Բարեկարգողը անատենը ինչ խօսեցաւ ժողովրդոց։ Վասն որոյ աս տեղս յառաջ բերեմք իր խօսքերուն մէկ քանիները՝ որ երկրին մէջ պտըտելու դրաւ ղանոնք, ինչպէս որ ինքը կըսէ աս երկրորդ գործոյն յառաջաբանութեանը մէջ։

"Երբոր աղօթք կընես, ըսաւ, քու խօսքերդ քիչ թող ըլլան, բայց քու խորհուրդներդ և զգացումներդ շատ և խորին։ Որչափ քիչ որ կըխօսիս, այնչափ լաւագոյն են քու աղօթքներդ։ Քիչ խօսքեր և շատ խորհուրդ քրիստոնէին յատուկ է։ Շատ խօսքեր ու քիչ խորհուրդ հեթանոսական է։

"Արտաքին և մարմնաւոր աղօթքն է շրթունքներուն ան մրմնջելը՝ ան արտաքին շատխօսութիւնը, որ առանց մտադրութեան կըկատարուի, ու մարդոցմէ կըլսուի և կըտեսնուի. բայց հոգւով և ճշմարտութեամբ աղօթքն է ան ներքին բաղձանքը, սրտին խորութենէն ելած յօժարութիւնները ու հառաչանքները։ Առաջինն է կեղծաւորներուն ու ինքզինքներնուն ապաւինողներուն աղօթքը. երկրորդն է Աստուծոյ զաւկըներուն աղօթքը, որոնք իր երկիւղին մէջ կըքալեն"։

Այնուհետև Տէրունական աղօթքին առաջին խօսքերուն անցնելով այսպէս կըբացատրէ.—

"ՀԱՅՐ ՄԵՐ"։— "Բոլոր անուններուն մէջ չկայ ուրիշ անուն մը որ առաւել առ Աստուած ձգէ զմեզ, քան թէ Հայր անունը։ Քիչ սէր պիտի զգայինք՝ ու քիչ մխիթարութիւն պիտի քաղէինք Տէր կամ Աստուած կամ Դատաւոր զինքը կոչելնուս։ Աս Հայր բառովը Տէրոջը կարեկցութեան գութերը կըշարժին. վասն զի չկայ ձայն մը

որ առաւել քաղցր կամ առաւել ազդու գայ հօր մը, քան որչափ իր որդւոյն ձայնը երբոր Հայր կըսէ'' ։

"ՈՐ ՅԵՐԿԻՆՍ ԵՍ'' ։—"Ով որ կըխոստովանի թէ իր հայրը երկինքն է, կըխոստովանի թէ ինքը երկրի վրայ պանդուխտ է. ուստի իր սրտին մէջ ջերմեռանդ փափաք մը կայ՝ մէկ զաւկի մը պէս որ իր հայրենիքէն հեռի օտարներու մէջ կապրի, կարօտութեան ու տրտմութեան մէջ։ Անիկայ կընմանի ըսել՝ Ափսոս՝ հայր իմ, դուն երկինքն ես, ու ես՝ քու վշտակիր որդիդ՝ երկրի վրայ, հեռի քեզմէ, ամէն տեսակ վտանգներով՝ պակսութիւններով ու տրտմութիւնով շրջապատած'' ։

"ՍՈՒՐԲ ԵՂԻՑԻ ԱՆՈՒՆ ՔՈ'' ։—"Ան որ բարկացող է՝ նախանձոտ է՝ անիծող է՝ բամբասող է, անպատիւ կընէ Աստուծոյ անունը որով ինքը մկրտուեցաւ'' ։

"ԵԿԵՍՑԷ ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆ ՔՈ'' ։—"Անոնք որ հարըստութիւն կըդիզեն ու փառաւոր բնակարաններ կըշինեն, որ աշխարհի տուածին եռանդէն կիյնան՝ ու իրենց շըթունքներովը աս աղօթքը կըսեն, կընմանին երգեհոնին ան մեծ փողերուն որ իրենց բոլոր ուժովը անդադար կըհնչեն եկեղեցիներուն մէջ՝ առանց խօսքի, առանց զգացման կամ մտառութեան։ . . . Մէկը Հռովմ կերթայ, միւսը սուրբ Յակոբ, երրորդը մատուռ մը կըշինէ, չորրորդը եկեղեցիները կըզարդարէ Աստուծոյ թագաւորութիւնը ստանալու համար. բայց ամէնն ալ զանց կընեն ան մի միայն հարկաւոր բանը, որ է՝ իրենց անոր թագաւորութիւնը ըլլալը։ Ինչո՞ւ համար ծովերէն կանցնիս Աստուծոյ թագաւորութիւնը փնտռելու. անիկայ քու սրտիդ մէջ յառաջ պիտի գայ'' ։

"ԵՂԻՑԻՆ ԿԱՄՔ ՔՈ'' ։—"Զարհուրելի բան մըն է որ աս խնդիրքը կընեմք։ Եկեղեցիին մէջ ո՞ւր կըտեսնեմք աս Աստուծոյ կամքը։ Եպիսկոպոս մը ուրիշ եպիսկոպոսի դէմ կելլէ, եկեղեցի մը ուրիշ եկեղեցիի դէմ։ Քահանաները՝ վարդապետները՝ մայրապետները մէկզմէկու հետ կըկռուին ու կըհակառակին և կըպատերազմին, և ամէն տեղ ան-

միաբանութիւն կըտիրէ ։ Ու սակայն իւրաքանչիւր կողմը կըսէ՝ թէ բարի կամքէ և ուղիղ դիտաւորութենէ է ըրածնին, ու այսպէս՝ 'ի փառս և 'ի պատիւ Աստուծոյ՝ բոլորն ալ սատանային գործը կըկատարեն" ։

"ԶՀԱՑ ՄԵՐ ՀԱՆԱՊԱԶՈՐԴ ՏՈՒՐ ՄԵԶ ԱՅՍՕՐ" ։ — "Ինչո՞ւ համար կըսեմք զհաց մեր. վասն զի՛ չէ թէ ան հասարակ հացին համար կաղօթեմք որ հեթանոսները կառնեն, և որ Աստուած ամէն մարդոց կուտայ, հապա ՄԵՐ հացին համար. այսինքն՝ անոնց հացին, որոնք երկնաւոր Հօրը զաւկըներն են"։

"Ու ի՞նչ է ուրեմն աս Աստուծոյ հացը։ Տէրն մեր Յիսուս Քրիստոս է. "Ես եմ կենաց հացը. ան որ երկինքէն կիջնայ, ու աշխարհի կեանք կուտայ" ։ Վասն որոյ մէկը թող չխաբուի. ի՛նչ քարոզներ և ի՛նչ վարժութիւններ որ չեն ցուցըներ ու չեն ճանչցուներ զՅիսուս Քրիստոս, չեն կրնար ըլլալ մեր հոգիներուն հանապազօրեայ հացը ու սնունդը" ։

"Բայց պիտի ըսէք թէ ի՞նչ է Քրիստոս ճանչնալը, և ի՞նչ օգուտ կրնայ գալ անկէց ։ Պատասխան կուտամ, Քրիստոս ճանչնալն ու սորվիլն է հասկընալ առաքեալին ըսածը, "Քրիստոս մեզի Աստուծմէ իմաստութիւն՝ արդարութիւն՝ ու սրբութիւն և փրկութիւն եղաւ" ։ Հիմա դուք կըհասկընաք ասիկայ՝ թէ որ կըխոստովանիք թէ ձեր բոլոր իմաստութիւնը միայն մեղադրելի յիմարութիւն, ձեր արդարութիւնը պատժապարտ անիրաւութիւն, ձեր սրբութիւնը ապականեալ պղծութիւն, ձեր փրկութիւնը դատապարտութեան ողորմելի վճիռ մըն է. թէ որ կըզգաք թէ Աստուծոյ և բոլոր արարածոց առջևը յիմար՝ մեղաւոր՝ պիղծ և դատապարտեալ էք. թէ որ կըցուցընէք ոչ միայն խօսքով այլ ձեր սրտին խորութենէն և ձեր գործերովը թէ ոչ փրկութիւն և ոչ մխիթարութիւն կայ ձեզի՝ եթէ ո՛չ Քրիստոսով միայն ։ Հաւատալը ուրիշ բան չէ, բայց եթէ երկինքէն իջած աս հացովս սնանիլը"։

Այսպէս Լուտեր հաւատարմութեամբ հաստատ մնաց իր առաջադրութեանը վրայ՝ կոյր ժողովուրդին աչքերը բանալու, որ կարգաւորները ուզածնուն պէս կառաջնորդէին անոնց։ Իր գրութիւնները արագաբար տարածեցան բոլոր Գերմանիայի մէջ, նոր լոյս մը յարուցին, ու ճըշմարտութեան սերմը առատապէս սփռեցին երկրի մը վրայ՝ որ աղէկ պատրաստուած էր զանիկայ ընդունելու։ Բայց հեռաւորներուն համար աշխատած ատենը չմոռցաւ զանոնք որ մօտ էին իրեն։

Դոմինիկեանները իրենց ամպիոններէն բանադրանք կը թափէին վատանուն հերետիկոսին վրայ։ Լուտեր՝ ժողովըրդոց բարեկամը, և ան՝ որ եթէ ուզէր կրնար քանի մը խօսքով հասարակաց բարկութիւնը շարժել անոնց դէմ, բանի տեղ չդրաւ այսպիսի յաղթութիւնները, և միայն մտածեց որ իր ունկնդիրները վարժէ։

Իր համբաւը՝ որ ևս քան զևս տարածեցաւ, ու ան արիութիւնը՝ որով Քրիստոսի դրօշակը կանգնեց գերութեան վիճակի մէջ ինկած եկեղեցւոյն մէջ տեղը, օր ըստ օրէ աճեցոյց իր քարոզութեանը եկողներուն թիւը։ Օր մը Վիդէմպէրկի ամպիոնը ելլելով ապաշխարութեան վարդապետութիւնը ցուցընելու ձեռք զարկաւ, ու աս դիպուածիս ճառ մը խօսեցաւ՝ որն որ ետքը շատ հռչակաւոր եղաւ, և որուն մէջ աւետարանական վարդապետութեան քանի մը սկզբունքները կըհաստատէր։

Նախ և առաջ մարդուն տուած թողութիւնը Աստուծոյ տուած թողութեան հետ դէմ դէմի բերաւ։ Երկու տեսակ թողութիւն կան, ըսաւ. պատիժի թողութիւն, ու մեղաց թողութիւն։ Առաջինը դրսուանց եկեղեցիին հետ կը հաշտեցընէ զյանցաւորը. երկրորդը՝ որ երկնից պարգև է, Աստուծոյ հետ կըհաշտեցընէ զյանցաւորը։ Եթէ որ մէկը չգտնէր իր վրայ խղճմտանքին· ան խաղաղութիւնը՝ սրտին ան ուրախութիւնը որ կըծագի Աստուծոյ տուած մեղաց թողութենէն, ոչինչ ներողութիւն կրնայ օգնու-

թիւն մը ընել իրեն, թէ և երկրի վրայ տրուած բոլոր ներողութիւնները գնելու ըլլայ”։

Յետոյ այսպէս կը շարունակէ. “Աղուորն որ մեղքերնին չներուած բարի գործեր ընեն. բայց պէտք է առաջ մեր մեղքերը ներուին՝, որ բարի գործերը կարելի. ըլլան կատարուիլ։ Չէ թէ գործերը կարտաքսեն զմեղքը. այլ դուն արտաքսէ զմեղքը, և ան ատենը կունենաս գործերը. վասն զի բարի գործերը պարտին կատարուիլ ուրախ սրտով ու առ Աստուած բարի խղճմտանքով, այսինքն է՝ մեղաց թողութիւնով”։

Վերջը կուգայ իր քարոզին գլխաւոր նպատակին, որ էր և մեծ վախճան բոլոր Բարեկարգութեան։ Եկեղեցին՝ զինքը Աստուծոյ և անոր Բանին տեղը դրեր էր. Լուտեր կը ջրէ ասիկայ, ու կը ցուցընէ թէ ամէն բան Աստուծոյ Բանին վրայ դրուած հաւատքէն կը կախուի։

“Մեղաց թողութիւն տալը, կըսէ, պապին՝ եպիսկոպոսին՝ քահանային՝ կամ ո՛ և իցէ ապրող մարդու մը կարողութենէն դուրս է. ու կը կայանայ միայն Քրիստոսի Բանին և քու հաւատքիդ վրայ։ Վասն զի Քրիստոս չկամեցաւ՝ որ մեր մխիթարութիւնը և մեր փրկութիւնը մարդու խօսքի մը կամ գործի մը վրայ շինուի. այլ միայն իր վրայ, իր գործին վրայ, և իր խօսքին վրայ։ . . . Քու ապաշխարութիւնդ և քու գործերդ կրնան խաբել զքեզ. բայց Քրիստոս քու Աստուածդ ոչ կը խաբէ զքեզ՝ և ոչ կը տկարանայ, ու սատանան չկրնար ոչնչացունել անոր խօսքերը”։

“Պապ մը՝ կամ եպիսկոպոս մը՝ ամենախոնարհ քահանայէ՛ մը աւելի կարողութիւն չունի մեղքի մը թողութիւն տալու։ Մինչև անգամ՝ առանց քահանայի՝ իւրաքանչիւր քրիստոնեայ թէ և կին մը կամ տղայ մը ըլլայ, կրնայ նոյն բանը ընել. վասն զի թէ որ պարզ հաւատացեալ մը քեզի ըսէ՝ “Աստուած թողութիւն շնորհէ քու մեղքերուդ՝ Յիսուս Քրիստոսի անունովը”, ու դուն հաստատուն հաւատքով ընդունիս ան խօսքը, որպէս թէ նոյն ինքն Աստուած խօսեցաւ քեզի ան, արձակեալ ես քու մեղքերէդ”։

"Թէ որ չես հաւատար թէ քու մեղքերդ ներուած են քեզի, ստախօս կ'ընես քու Աստուածդ, ու դուն զքեզ կը ցուցընես աւելի հաստատուած քու սնոտի խորհուրդներուդ վրայ, քան թէ Աստուծոյ և անոր Բանին վրայ":

"Հին Կտակարանին տակը՝ ոչ քահանան, ոչ թագաւորը, և ոչ մարգարէն իշխանութիւն ունէր մեղաց թողութիւն քարոզելու: Բայց Նորին տակը՝ իւրաքանչիւր հաւատացեալ աս իշխանութիւնը ունի. Եկեղեցին լեցուն է մեղաց թողութիւնով: Թէ որ բարեպաշտ քրիստոնեայ մը քու խղճմտանքդ մխիթարէ խաչին քարոզութիւնովը, թէ այր ըլլայ ատ քրիստոնեայն և թէ կին, թէ ծեր և թէ տղայ, ընդունէ նոյն մխիթարութիւնը այնպիսի հաւատքով՝ որ առաւել կամենաս հարիւր անգամ մեռնելու, քան թէ Աստուծոյ առջևը ասոր ճշմարիտ ըլլալուն վրայ տարակուսելու: Ապաշխարէ, բոլոր քու կրցած գործերդ կատարէ, բայց Քրիստոսով թողութիւն ունենալու հաւատքը առաջին տեղին թող ունենայ, ու քու պատերազմիդ բովանդակ ասպարէզին ան թող հրամայէ":

Այսպէս խօսեցաւ Լուտեր իր սքանչացած ու զմայլած ունկնդիրներուն: Յանձնապաստան քահանայից՝ Աստուծոյ և մարդուն մէջը իրենց շահուն համար կանգնած շինուածքներուն բոլորը կործանեցաւ, ու մարդ իր Աստուծոյն հետ դէմ առ դէմ բերուեցաւ: Թողութեան խօսքը մաքրապէս իջաւ երկինքէն, առանց անցնելու հազարումէկ ապականեալ առուներէ: Աստուծոյ վկայութեանը ընդունելի ըլլալուն ոչ ևս հարկաւոր էր որ մարդիկ իրենց խաբէական կնիքները դնէին: Քահանայական կարգի մենավաճառութիւնը բնաջինջ եղաւ, Եկեղեցին իր ծառայութենէն ազատեցաւ:

## ՀԱՏՈՒԱԾ ԺԱ

Նոյն ժամանակին հարկաւոր եղաւ՝ որ Վիդդէմպէրկի մէջ արծարծուած բոցը ուրիշ տեղ ալ բորբոքի ։ Լուտեր Աւետարանին ճշմարտութիւնը իր բնակած տեղը թէ ակադեմիային աշակերտներուն՝ և թէ ժողովրդոց հրատարակելովը չբաւականանալով, կըբաղձար որ ողջամիտ վարդապետութեան սերմերը ուրիշ տեղեր ալ սփռէ ։ Օգոստինեանց կարգը իր ընդհանուր ժողովը Հայտէլպէրկի մէջ գումարելու էր 1518ը Թուոյն գարունին ։ Լուտեր հոն հրաւիրուեցաւ իր կարգին խիստ երևելի մարդոցը մէկը սեպուած ըլլալով ։ Իր բարեկամները կրցածնուն չափ ջանացին արգիլել զինքը աս ճամբորդութիւնը յանձն առնելէն ։ Ճ՛ըշմարիտը՝ միաբանները աշխատեր էին Լուտերին անունը ատելի ընել ամէն ան տեղուանքը ուրկէց ինքը պիտի անցնէր ։ Նախատինքին վրայ սպառնալիքներ ալ աւելցուցին ։ Քիչ մը բանը բաւական պիտի ըլլար իր ճամբուն վրայ աղմուկ մը յարուցանելու, որուն մէջ կարելի է թէ զոհ ըլլար ինքը ։ "Կամ թէ՝ ըսին իր բարեկամները, ինչ որ չեն համարձակիր բռնութեամբ ընել, խարդախութեամբ և նենգութեամբ կըկատարեն" ։ Բայց Լուտեր ամենևին թոյլ չէր տար իրեն վտանգի վախովը ետ կենալ իր պարտաւորութիւնը կատարելէն, թէ և որչափ մեծ ըլլար ան վտանգը ։ Վասն որոյ իր բարեկամներուն երկչոտ խօսքերուն ականջ չդրաւ. յայտ յանդիման ցուցուց թէ որու ապաւինած էր, և որուն պաշտպանութեամբը իր միտքը հաստատած էր աս երկիւղալից ճամբորդութիւնը յանձն առնել ։ Անատեն Զատկին տօնը վերջացած ըլլալով՝ հանդարտութեամբ հետի ճամբայ ելաւ Ապրիլի 13ին 1518ին ։

Իր հետը ուղեցոյց մը առաւ Ուրբանոս անունով, որ կը տանէր իր փոքրիկ բեռը, ու մինչև Վուրցպուրկ պիտի ընկերանար իրեն ։ Արդեօք ի՜նչ խորհուրդներով լեցած պիտի ըլլայ Տէրոջը աս ծառային սիրտը՝ իր ճամբորդութեան

ատենը ։ Զատկին տասնըհինգերորդ օրը Կիրակի իրիկուան դէմ Վուրցպուրկ հասաւ, ու անկէց իր ուղեցոյցը ետ խրկեց ։

Աս քաղքին մէջն էր որ կըբնակէր Բիբրայի եպիսկոպոսը, որ այնչափ հաճութեամբ ընդուներ էր անոր նախադասութիւնները ։ Լուտեր Սաքսոնիայի կայսրընտիրէն յանձնարարական գիր մը ունէր ասոր ։ Եպիսկոպոսը ճըշմարտութեան աս քաջամարտիկ ախոյեանին հետ անձամբ ծանօթանալու այսպիսի պատեհութեանս վրայ մեծապէս ուրախանալով, անմիջապէս հրաւիրեց զանիկայ եպիսկոպոսական պալատը ։ Ինքը եւս անձամբ գնաց զանիկայ դիմաւորելու, խանդակաթ սիրով խօսեցաւ անոր հետ, ու մինչեւ Հայտէլպէրկ երթալու ուղեցոյց մը բռնել առաջարկեց անոր ։ Բայց Լուտեր Վուրցպուրկի մէջ իր երկու բարեկամները գտեր էր, Ստաուպից ընդհանուր մեծաւորը, ու Լանժ Էրֆուրթի վանքին մեծաւորը, որոնք իրենց կառքը առնել խոստացան անոր ։ Վասն որոյ շնորհակալ եղաւ Բիբրայի իր առաջարկած մարդասիրութեանը համար, ու հետեւեալ օրը երեք բարեկամ մէկ տեղ Վուրցպուրկէն ճամբայ ելան ։ Աս կերպով երեք օր ճամբորդութիւն ըրին մէկ տեղ խօսակցելով, ու Ապրիլի 21ին Հայտէլպէրկ հասան ։ Լուտեր Օգոստինեանց վանքը իջաւ ։

Սաքսոնիայի կայսրընտիրը նամակ մը տուած էր Լուտերին՝ Փալադին Վոլֆգանգ կոմսին համար, որ Պավարիայի դուքսն էր ։ Լուտեր անոր հոյակապ բերդը գնաց, որուն զուարճալի դիրքը մինչեւ աս օրս կըզմայլեցընէ օտարականները ։ Իր յանձնարարական գիրը տուաւ Յակովբոս Սիմլէրին՝ դուքսին ընտանեացը հոգաբարձուին ։ Ասիկայ նամակը կարդալուն ըսաւ, "Արդարեւ պատուական վկայական մը ունիս դուն" ։ Փալադին կոմսը շատ մարդասիրաբար ընդունեց զԼուտեր ․ ստէպ ստէպ իր սեղանը կըհրաւիրէր զանիկայ, Լանժին ու Ստաուպիցին հետ ։ Մեծ մխիթարութիւն էր Լուտերին ասանկ բարեկամական ընդունե-

լութեան մը պատահիլը : "Շա՜տ երջանիկ էինք մէկ տեղ կըրած, ու մէկզմէկ կըզըօսցընէինք հաճոյական և զուարճալի խօսակցութեամբ, մեր կերակուրները ուտելով, փալադինեան պալատին գեղեցկութիւնները զննելով, զարդերուն՝ զինարանին զրահներուն՝ և աս հուչակաւոր և ճըշմարտապէս արքայավայել բերդին պարունակած բոլոր երևելի բաներուն վրայ զմայլելով" :

Բայց Լուտեր ուրիշ պաշտօն մը ունէր կատարելու : Քանի որ ցերեկ էր պէտք էր իրեն գործել : Գերմանիայի արևմտեան և հարաւային կողմերուն վրայ ընդարձակ ազդեցութիւն ունեցող համալսարանը եկած ըլլալով այնպիսի հարուած մը պիտի ըներ հոն որ ան երկիրներուն եկեղեցիները ոտք պիտի հանէր : Վասն որոյ սկսեց գրել քանի մը նախադասութիւններ, որոնք խոստացաւ հաստատել հրապարակական վիճաբանութեամբ : Ասանկ վիճաբանութիւնները անսովոր բաներ չէին. բայց Լուտեր կըզգար որ ասիկայ օգտակար բան մը ըլլալու համար պէտք էր որ նորասքանչ բան մը ըլլայ : Իր բնական տրամադրութիւնը ալ թելադրեց իրեն որ ճշմարտութիւնը նորափառ եղանակաւ առաջարկէ. համալսարանին վարժապետները չկամեցան թոյլ տալ որ իրենց մեծ սրահին մէջ ըլլայ ան վիճաբանութիւնը : Ուստի Օգոստինեանց վանքին մէջ սենեակ մը պատրաստուեցաւ, ու հաստատեցին որ Ապրիլի 26երորդ օրը վիճաբանութիւնը բացուի :

Հայտէլպէրկ յետ ժամանակաց ընդունեց աւետարանական վարդապետութիւնը. բայց վանքին մէջի աս վէճիս ներկայ գտնուողը կրնար նախատես ըլլալ անատենը, թէ աս վէճը մէկ օր մը պտուղ պիտի բերէ :

Լուտերին համբաւը բազմաթիւ ունկնդիրներ քաշեց հոն. վարժապետները՝ պալատականները՝ քաղաքացիները՝ ուսման հետևողները խուռն բազմութեամբ հաւաքեցան : Հոս կըդնենք վարժապետին նորափառ նախադասութիւններուն մէկ քանիները :

Ա. "Աստուծոյ օրէնքը օգտակար կանոն մըն է մարդկային կեանքին. և սակայն չկրնար օգնել մարդուն արդարութիւն ստանալու, այլ ընդ հակառակն արգելք կըլլայ անոր":

Գ. "Աշխարհի գործերը որչափ որ գեղեցիկ և բարի ըլլան, տակաւին ուրիշ բան չեն՝ բայց յայտնապէս մահացու մեղքեր":

Է. "Նոյն ինքն արդարներուն գործերն ալ մահացու մեղքեր պիտի ըլլային, թէ որ Տէրոջը վրայ սրբազան ակնածութիւնով մը չվախնային թէ իրենց գործերը կրնան ճշմարտապէս մահացու մեղքեր ըլլալ":

Թ. "Առանց Քրիստոսի կատարուած գործերը ճշմարտապէս մեռեալ գործեր բայց ոչ մահացու մեղքեր են ըսելը, Աստուծոյ երկիւղը չարաչար մոռնալ է":

ԺԱ. "Ստոյգ է որ եթէ մէկը Քրիստոսի շնորհքը ընդունելու յարմարիլ կուզէ, պէտք է որ բոլորովին յոյսը կտրէ իր անձէն":

ԲԻ. "Այն իմաստութիւնը որ կըպարապի Աստուծոյ անտեսանելի կատարելութիւնները սորվիլ անոր գործերէն, կըփքացունէ՝ կըկուրացունէ և կըխստացունէ զմարդիկ":

ԻԳ. "Օրէնքը Աստուծոյ բարկութիւնը յառաջ կըկոչէ. կըսպաննէ՝ կանիծէ՝ կըդատէ և կըդատապարտէ ինչ որ Քրիստոսով չէ":

ԻԴ. "Ոչ սակայն աս իմաստութիւնը (ԻԲ) չար չէ, ու օրէնքը (ԻԳ) մերժելի չէ. բայց ան որ Աստուծոյ իմաստութիւնը խաչին ոտքը չսորվիր, չարի կըդարձունէ ան ամէնը որ բարի է":

ԻԵ. "Ան մարդը չարդարանար որ շատ գործեր կը գործէ, այլ ան՝ որ առանց գործի Քրիստոսի վրայ շատ կը հաւատայ":

ԻԶ. "Օրէնքը կըսէ, Ասիկայ ըրէ, ու իր աս պատուէրը բնաւ կատարուած չէ: Շնորհքը կըսէ, Հաւատա՛ անոր, և իսկոյն ամէն բան կըկատարուի":

ԻԸ. "Աստուծոյ սէրը բան մը չգտնէր մարդուն ներսը, այլ կը ծնանի անոր ներսը ինչ որ Աստուած պիտի սիրէ":

Աստուածաբանութեան հինգ վարժապետներ աս նախադասութիւններուն դէմ կեցան. քանզի այսպիսի աստուածաբանութիւնը օտարոտի բան մը թուեցաւ իրենց: Բայց և այնպէս՝ Լուտերի ըսածին պէս անանկ քաղցրութեամբ մը մնաց ան վիճաբանութեանը՝ որ պատճառեց իրեն մեծապէս յարգել զանոնք, թէպէտ ազդու զօրութեամբ և դատմամբ: Լուտեր ալ իր կողմանէ անսովոր հեզութիւն մը ցուցուց իր պատասխանատուութեանը, անհամեմատ համբերութիւն մը իր հակառակորդներուն ընդդիմութեանց ականջ դնելու, ու կատարեալ պատրաստականութիւն մը իրեն դէմ առաջարկուած դժուարութիւնները լուծելու: Իր պատասխանները՝ կարճ, բայց Աստուծոյ Բանովը լեցուն, զարմացուցին իր ունկնդիրները: "Բոլորովին Երասմոսին կընմանի, կըսէին շատերը, միայն թէ մէկ բանով մը անկէց գերազանց է. այսինքն՝ ինչ որ Երասմոս բաւական կը համարէր ուրիշներուն միտքը խօթել լռիկ կերպով, ասիկայ յայտնապէս կը խոստովանի":

Վիճաբանութիւնը իր վախճանին մօտենալու վրայ էր. և Լուտերին հակառակորդները պատերազմի ասպարէզէն վերջապէս պատուով մեկներ էին. անոնցմէ ամէնէն նորահասը Գէորգ Նիգէր վարժապետը միայն կը շարունակէր վիճաբանութիւնը ան զօրաւոր վիճաբանողին հետ: Օգոստինեան միաբանին արիական նախադասութիւններէն շփոթելով՝ ու ինչ առարկութեան ձեռք զարնելը չգիտնալով՝ երկիւղալից ձայնով մը կանչեց. "Թէ որ մեր գիւղականները այսպիսի բաներ լսէին, քարկոծելով կը սպաննէին զքեզ": Աս խօսքին վրայ ունկնդիրներուն մէջ ընդհանուր խնդալ մը տարածեցաւ:

Ունկնդիրները ոչ երբէք աւելի ուշադրութեամբ ականջ դրած էին աստուածաբանական վէճի մը: Բարեկարգողին առաջին խօսքերը մարդոց միտքերը արթընցուցեր էր: Ան

խնդիրները որ քիչ ժամանակ առաջ անտարբերութեամբ միայն պիտի ընդունուէին, հիմա շահով բեղմնաւորեցան։ Հետաքննին մէկը ներկայ գտնուողներուն դէմքերուն վրայ կրնար կարդալ նոր գաղափարներ, որ Սաքսոնացի վարդապետին արիական հաստատութիւնները անոնց մտքերուն մէջը ծնան։

Եւ մանաւանդ մեծապէս ազդեցին անոնք երեք երիտասարդներու։ Անոնցմէ մէկը Մարտինոս Բուկեր անունով քսանըեօթը տարեկան Դոմինիկեան մըն էր, որ իր կարգին նախապաշարմանցը հակառակ՝ կըթուէր թէ չէր ուզեր որ վարդապետին խօսքերուն մէկ բառը առանց իմանալու կորսնցունէ։ Ասիկայ Ալզակէի պզտի քաղքի մը մէջ ծնած, իր տասնըվեցերորդ տարեկան հասակին վանք մը մտաւ։ Շատ չանցած այնպիսի ընդունակութիւն մը ցուցուց, որ միաբաններուն աւելի լուսաւորեալները մեծամեծ ակնկալութիւններ ունեցան անոր վրայ։ «Ասիկայ մէկ օր մը, կը-սէին, մեր կարգին պարծանք պիտի ըլլայ»։ Աան որոյ իր վերակացուները Հայտէլպէրկ խրկեցին զինքը, որ փիլիսոփայութեան՝ աստուածաբանութեան՝ Յունարէնի և Եբրայերէնի պարապի հոն։ Աս միջոցիս Երասմոս իր գրուածքներուն մէկ քանիները հրատարակեր էր. ու Մարտինոս Բուկեր մեծափափաք իղձով զանոնք կըկարդար։

Ասկէց քիչ մը ետքը Լութերի առաջին հրատարակեալ գրուածքները երեւան ելան։ Ալզակացի ուսումնականը վաղվաղակի սկսեց բաղդատել Բարեկարգողին վարդապետութիւնները սուրբ Գիրքերուն հետ։ Ան ատենը պապական կրօնքին ճշմարտութեանը վրայ քանի մը կասկածներ ծնան իր մտքին մէջ։ Աս կերպով էր որ լոյսը կըտարածէր ան օրերը։ Փալատին կայսրընտիրը դիտեց աս երիտասարդը։ անոր ազդու և քաջահնչիւն ձայնը և հաճոյական շարժուածքը, անոր պերճախօսութիւնը, և ան համարձակութիւնը որով կըհակառակէր անատենի զօրացած մոլութիւններուն, նշանաւոր ըրին անոր քարոզութիւնը։ Կայս-

ընտիրին մատրանապետ ընտրուելով իր պաշտօնին պարտաւորութիւնները կըկատարէր, որ ատեն լսեց Լուտերի Հայտէլպէրկ գալը. ասիկայ ինչ մեծ ուրախութիւն եղաւ իրեն՚։ Օգոստինեանց վանքին սրահը դիմողներուն առաջին կարգին մէջն էր ինքը։ Իր հետը առեր էր թուղթ՝ գրիչ և թանաք, վարժապետին բսած բոլոր խօսքերը ՚ի գիր անցունելու։ Բայց երբոր իր ձեռքը արագ արագ կըգծագրէր Լուտերի խօսքերը, Աստուծոյ ձեռքը անջնջելի գրերով իր սրտին վրայ գրեց իր լսած մեծ ճշմարտութիւնները։ Նորհաց վարդապետութեան առաջին նշոյլները նոյն բարեյիշատակ ժամուն ճառագայթեցին իր հոգւոյն մէջ։ Դոմինիկեանը Քրիստոսի որսացուեցաւ։

Բուկերին մօտ նստեր էր Յովհաննէս Բրէնց՝ կամ Բրէնտիոս, որ անատենը տասնևինը տարու էր։ Բրէնց՝ Սուապիայի մէջ քաղաքի մը դատաւորի որդին, իր տասներեք տարու ըլլալուն Հայտէլպէրկի համալսարանը աշակերտ մտեր էր։ Իր ունեցած փոյթը անհամեմատ էր. կէս գիշերուան կարթըննար իր ուսմանցը պարապելու։ Աս սովորութիւնը այնպէս յարմարեցաւ իրեն որ իր կենացը մէջ բնաւ չէր կրնար քնանալ ան նոյն ժամէն ետքը. բայց վերջերը աս պահերուն լռութիւնը սուրբ Գրքերուն վրայ մտածութիւն ընելու կըգործածէր։ Բրէնց Գերմանիայի մէջ ան ատենը երևցած նոր լոյսը նշմարողներուն առաջիններէն մէկն էր, որ սիրով զեղուած հոգւով մը ողջունեց զանիկայ։ Մեծափափաք եռանդով կըկարդար Լուտերի գրուածքները։ Բայց ինչպէս ուրախացաւ Հայտէլպէրկի մէջ անձամբ զանիկայ մտիկ ընելու պատեհութեանը վրայ։ Վարժապետին նախադասութիւններուն մէկը յատկապէս դպաւ նորահաս Բրէնցին, որ էր աս. "Աստուծոյ առջին ան մարդը՝ չարդարանար որ շատ գործեր կըգործէ, այլ ան՝ որ առանց գործի Քրիստոսի վրայ շատ կըհաւատայ":

Նեքար գետին վրայ Հէյլպրօնացի բարեպաշտ տիկին մը՝ նոյն քաղքին առևտրականներէն Շնէֆ անուն մէկուն կինը, Աննայի օրինակին հետևելով իր անդրանիկ որդին Տէրօջը ուխտեր էր, աստուածաբանական ուսման անձնատուր եղած զանիկայ տեսնելու եռանդուն փափաքովը: Նա պատանին՝ 1495ին ծնած, արագութեամբ յառաջացաւ ուսման մէջ. բայց կամ իր ախորժելովը՝ կամ փառասիրութեամբ՝ և կամ իր հօրը բաղձանքին հակամիտելով իրաւաբանական ուսման սկսեց հետևիլ: Բարեպաշտօն մայրը վշտանալով կըտեսնէր որ իր որդին Էրհարդ իր ուխտածէն տարբեր ընթացքի մը կըհետևէր: Խրատեց զանիկայ, թախանձեց անոր, ու կրկին և կրկին յիշեցուց անոր՝ ինչ որ ուխտեր էր անոր ծնած ատենը: Վերջապէս իր մօրը թախանձանքէն յաղթուելով Էրհարդ Շնէֆ հաւանութիւն տուաւ, ու իսկ և իսկ այնպիսի սէր մը ունեցաւ իր նոր ուսմանցը որ բան մը չէր կրնար զինքը անկէց զատել:

Էրհարդ սերտ մտերմութիւն ունէր Բուկէրի և Բրէնցի հետ, և աս բարեկամութիւնը այնչափ տևեց որչափ որ ապրեցան անոնք. "Վասն զի, կըսէ իրենց պատմութիւնը ընողներուն մէկը, ուսման և առաքինութեան սիրոյն վրայ հիմնուած բարեկամութիւնները միշտ տևական են": Հայտելպէրկի վիճաբանութեանը իր երկու բարեկամներուն հետ ներկայ էր հոն: Վիդդէմպէրկի վարժապետին նախադասութիւնները և արիական ջանքերը նոր գրգիռ մը մատուցին իր մտացը: Մարդկային արժանաւորութեան սնոտի կարծիքը մերժելով մեղաւորին ձրի արդարանալու վարդապետութիւնը սիրով ընդունեց:

Հետևեալ օրը Բուկէր Լուտերին տեսութեան գնաց: "Մտերմական առանձին խօսակցութիւն մը ունեցայ, կըսէ, իր հետը, պատուական ճաշ մը՝ ոչ սովորական խորտիկներու, այլ իմ առջևս դրած ճշմարտութիւններուն: Իմ առարկած իւրաքանչիւր ընդդիմութիւններուս պատրաստական պատասխան մը կուտար վարժապետը, ու ամենա-

կատար յստակութեամբ կըբացատրէր ամէն բան ։ Ա՜հ․ երանի՛ թէ ժամանակ ունենայի աւելի գրել ձեզի անոր վրայով" ։ Նոյն ինքն Լուտեր Բուկերի զգայութեանցը մեծապէս շարժեցաւ ։ "Ասիկայ մէկ Հատիկ եղբայր մըն է՝ գրեց Սպալատինին, իր կարգին մէջը, որ անկեղծ է․ Երիտասարդ մըն է՝ որմէն մեծամեծ ակնկալութիւններ կրնան ըլլուիլ ։ Ազնուութեամբ զիս ընդունեց, ու կաթոգին սիրով խօսակցեցաւ ։ Ինքը արժանաւոր է մեր վստահութեանը և մեր սիրոյն" ։

Լուտերին տեսութեան եկան նաև Բրէնց՝ Սնէֆ և ուրիշ շատերը՝ շարժեալ ան նոր ճշմարտութիւններէն որ սկսեր էին իրենց մտքերը լուսաւորել ։ Խօսեցան և խորհեցան անոր Հետ, ու իրենց չՀասկըցածներուն մեկնութիւնը խնդրեցին ։ Բարեկարգողը Աստուծոյ Բանին վրայ Հաստատուելով պատասխան տուաւ անոնց, ու իր խօսած խօսքերուն ամէն մէկը նոր լոյս մատուցին անոնց մտքերուն ։ Կըթուէր թէ նոր աշխարՀ մը բացուեր էր իրենց առջևը ։

Լուտերին մեկնելէն ետև աս ազնուամիտ մարդիկը սկսեցին Հայտէլպէրկի մէջ սորվեցունել ։ Կըվայլէր որ Աստուծոյ մարդուն սկսածը յառաջ տանէին, ու անոր վառած ջաՀը շիջանելու թող չտային ։ Աշակերտը պիտի խօսի՝ երբոր վարժապետը լռէ ։ Բրէնց իր նորատի Հասակովը սրբոյն Մատթէոսի աւետարանը բացատրելու ձեռք զարկաւ՝ նախ իր սենեակին մէջ, և ապա՝ երբոր բաւական չէր նոյն տեղը՝ փիլիսոփայութեան դասատունին մէջ ։ Աստուածաբանները նախանձելով աս պատանիին Հաւաքած ունկնդիրներուն բազմութեանը վրայ սկսեցին բարկանալ ։ Ինքը Բրէնց ձեռնադրուելով, իր դասատուութիւնները Հոգւոյն Սրբոյ կանոնիկոսներուն դպրոցը փոխադրեց ։ Այսպէս ան Հուրը որ արդէն Սաքսոնիայի մէջ բոցբոջեր էր, Հայտէլպէրկի ալ Հաղորդեցաւ, լոյսը

արագապէս տարածեցաւ ։ Աս միջոցս կոչուեցաւ փալա-գինեանց ժամանակ Կինձոց ։

Բայց չէ թէ միայն փալադինեանք հնձեցին Հայտէլ-պէրկի ան բարեկիշատակ վիճաբանութեան պտուղները ։ Ճշմարտութեան աս քաջասիրտ բարեկամները շուտով եղան Եկեղեցիին պայծառ ջահերը ։ Ամէնն ալ գերագոյն պաշտօններու հասան , ու օգնութիւն ըրին ան վէճերուն մէջ որոնք որ Բարեկարգութենէն յառաջ եկան ։ Սթրաս-պուրկ՝ ու ետքը Անգղիա՝ Բուկէրի ջանքերովը ճշմար-տութեան յստակագոյն գիտութեանը հասան ։ Սնէֆ ա-ռաջ Մարպուրկի մէջ հրատարակեց զանիկայ , ետքը Սթութկարտի՝ Թիւպինկէնի ու Յենայի մէջ ․ ու Բրէնց Հայտէլպէրկի մէջ աշխատելէն ետև , Պրուսիայի Հալլէ քաղաքը ու Թիւպինկէն սորվեցուց ։ Բարեկարգութեան ընթացքը զննելնուս վերստին պիտի պատահինք աս ան-ձերուն ։

Աս վիճաբանութիւնը նոյն ինքն Լուտերը ևս յառաջա-ցուց ․ և որ ըստ օրէ աճեցաւ ճշմարտութեան գիտութիւնո-վը ։ “Անոնց մէկն եմ ես , ըսաւ , որ ինքզինքս յառաջա-ցուցի գրութիւն ընելով և ուրիշները վարժելով ․ և չէ թէ անոնց մէկը որոնք անպիտանութենէ յանկարծարար մեծ և իմաստուն վարժապետներ եղան” ։

Մեծապէս կուրախանար տեսնելով՝ թէ դպրոցներուն աշակերտները ինչպէս փափաքով կընդունէին ճշմարտու-թիւնը որ աճելու վրայ էր ։ Ասիկայ էր որ կըմխիթարէր զինքը , երբոր ծերունի վարժապետները իրենց կարծիքնե-րուն մէջ խորագոյն արմատացած կըգտնէր ։ “Փառաւոր յոյս մը ունիմ , ըսաւ , որ ինչպէս Քրիստոս Հրէից ազգէն մերժուելուն Հեթանոսներուն դարձաւ , այսպէս պիտի տեսնենք [illegible] յաջորդ սերունդը պիտի ընդունի ճշմարիտ աստուածաբանութիւնը , որն որ աս ծեր մարդիկը իրենց սնոտի և մտացածին կարծիքներուն կապուած կամակորու-թեամբ կըմերժեն հիմա” ։

Ժողովը վերջացած ըլլալով Լուտեր մտածեց Վիդ-դէմպէրկ դառնալ ։ Փալադին կոմսը գիր մը տուաւ անոր Կայսրընտիրին տալու, գրեալ Մայիսի սկիզբէն, որուն մէջ կըսէր թէ "Վիճաբանութեան մէջ Լուտերին ցուցըրած ճարտարութիւնը մեծ պատիւ ընծայեց Վիդդէմպէրկի համալսարանին" ։ Թող չտրուեցաւ իրեն որ հետի դառնայ․ Նիւռնպէրկի Օգոստինեան կրօնաւորները մինչև Վուրց-պուրկ տարին զինքը․ անկէց նոյն քաղքին եղբայրներուն հետ Էրփուրթ գնաց ։

Էրփուրթէն ելաւ վանքին կառքովը, որն որ զինքը Այզ-լէպէն տարաւ ։ Անկէց՝ նոյն տեղին Օգոստինեանները՝ իրենց պարծանք սեպելով ան վարժապետը որ այնպիսի պատուով հասցուց իրենց կարգը և իրենց քաղաքը՝ իր ծըն-նընդեան տեղը, Վիդդէմպէրկ ճամբեցին զանիկայ իրենց ձիերովը և իրենց ծախքովը ։ Ամէն մէկը կըբաղձար սիրոյ և յարգութեան նշան մը ցուցընել աս տարօրինակ մարդուն ; որուն համբաւը օր աւուր կաճէր ։

Համբարձման շաբաթ օրը, հոն հասաւ․ ճամբորդու-թիւնը աղէկ եկեր էր իրեն, ու իր բարեկամները աւելի ու-ժեղ և առողջ կարծեցին զինքը քան որչափ ճամբայ ելլա-լէն առաջ էր ։ Լուտեր իր ճամբորդութեանը և իր Հայ-տէլպէրկի վիճաբանութեանը հոգնութենէն ատեն մը հանգստացաւ, սակայն աս հանգստութիւնը ուրիշ բան չէր, բայց եթէ դժուարագոյն աշխատութիւններու պատ-րաստութիւն մը ։

# ԳԻՐՔ Գ

## ԼՈՒՏԵՐ ՊԱՊԻՆ ՆՈՒԻՐԱԿԻՆ ԿԸՆԵՐԿԱՅԱՆԱՅ

## 1518

*Մայիսէն մինչև Դեկտեմբեր։*

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա

*ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆԸ Քրիստոնէից ազգերուն մէջ վերջապէս իր գլուխը ամբարձեր էր։ Պապականութեան ստորնադոյն անդամներուն վրայ յաղթական հանդիսացած ըլլալով, հիմա նոյն ինքն անոր գլխոյն հետ պատերազմի մտնելու էր։ Պէտք տեսնեմք հիմա զԼութեր որ ուղղակի Հռովմայ հետ կըմաքառի։*

*Հայտէլպէրկէն դառնալէն ետքն էր որ Լութեր աս յարձակմանս յառաջացաւ։ Իր առջի նախադասութիւնները ներողութեանց վրայ աղէկ իմացուած չէին. վասն որոյ որոշեց որ առաւել պարզութեամբ ցուցընէ անոնց իմաստը։*

*Իր նախադասութիւններուն աս բացայայտութիւնները՝ որոնք ինքը Լուծմունք կոչեց, մեծ չափաւորութեամբ գրուած են։ Լութեր ջանաց մեղմել ան մասերը որ զայրացում պատճառեր էին, ու ճշմարիտ խոնարհութիւն մը ցուցուց։ Բայց միանգամայն անշարժ կեցաւ իր ապացուցութեանցը վրայ, և արիաբար պաշտպանեց ամէն մէկ նախադասութիւն որ ճշմարտութիւնը կըպարտաւորէր զինքը հաստատելու։ Միանգամ ևս կրկնեց՝ թէ իւրաքանչիւր Քրիստոնեայ որ ճշմարտապէս ապաշխարեր է, ա-*

ռանց ներողութեան մեղաց թողութիւն ընդունած է. թէ պապը ամենանուաստ քահանայէն աւելի կարողութիւն չունի բան մը ընելու՝ բայց եթէ պարզապէս իմացընել ապաշխարողին Աստուծոյ ներողութիւնը որ արդէն շնորհուած է անոր. թէ լոկ կեղծիք մըն է ան թէ սուրբերուն իրենց աւելորդ արդիւնքներովը ստացած գանձը պապին ձեռքն է և որու որ ուզէ կըմատակարարէ. և թէ Աստուածաշունչ գիրքն է մի միայն կանոն հաւատոյ: Բայց աս մասերուն մէկ քանիններուն վրայ բուն զինքը մտիկ ընենք:

Կըսկըսի ճշմարիտ ապաշխարութեան բնութիւնը հաստատել, ու Աստուծոյ աս գործը՝ որով մարդ կընորոգուի, Հռովմէական Եկեղեցւոյ միմոսութիւններուն ընդդիմադրել: "Յունական բառը μετανοεῖτε (Մէթանօյ՛թէ), ըսաւ, կընշանակէ՝ նոր հոգի մը, նոր միտք մը զգեցէք, նոր բնութիւն մը վրանիդ առէք, անանկ որ՝ երկրաւոր ըլլալէն դադրելով երկնաւոր մարդիկ ըլլաք: Քրիստոս հոգին և ոչ գրոյն վարժապետ է, և իր խօսքերը հոգի են և կեանք. կըսորվեցունէ ապաշխարութիւն մը հոգւով և ճշմարտութեամբ, և ոչ ան արտաքին ապաշխարանքները որոնք որ ամենագոռոզ մեղաւորները կրնան առանց ճշմարիտ խոնարհութեան կատարել":

Յառաջ երթալով կըկարդամք աս արիական խօսքերը: "Հոգ չէ ինծի թէ ինչ բանի կըհաճի կամ կըտհաճի պապը. ինքն ալ ուրիշ մարդոց պէս մարդ մըն է. ու եղան շատ պապեր՝ որոնք ոչ միայն սխալմունքներով և մոլութիւններով բռնուեցան, հապա առաւել ևս տարօրինակ բաներով: Մտիկ կընեմ պապին իբրև պապ, այսինքն է՝ երբոր ինքը կըխօսի կանոններուն համեմատ, կամ երբոր բան մը կըկարգադրէ ժողովով, բայց ոչ երբոր իր մտքէն կըխօսի: Թող որ ուրիշ կերպ գործէի՝ ըսել պիտի ըլլար թէ Քրիստոնէից աղէտալի կոտորածները որով Յուլիոս Բ պապը վատահամբաւեցաւ, Տէրոջը ոչխարներուն մէկ բարեգութ հովուին բարի գործերն էին":

"Անհնար է, կըսէ դարձեալ, մէկ մարդու մը Քրիստոնեայ ըլլալ առանց ունենալու զՔրիստոս. և թէ որ անիկայ ունի զՔրիստոս, նոյն ատենը ունի ան ամէնը՝ որ 'ի Քրիստոս է։ Խղճմտանքին խաղաղութիւն տուողը ան է՝ թէ հաւատքով մեր մեղքերը ոչ ևս մերն են՝ այլ Քրիստոսինը, որուն վրայ դրաւ Աստուած անոնց բոլորը. և թէ՝ ընդ հակառակն, Քրիստոսի բոլոր արդարութիւնը մերն է, որ Աստուած մեզի տուաւ զանիկայ։ Քրիստոս իր ձեռքը մեր վրայ կըդնէ, ու մենք կըբժշկիմք. իր պատմուճանը մեր վրայ կըձգէ, ու մենք կըզգեստաւորիմք. վասն զի ինքն է փառաւորեալ փրկիչ օրհնեալ յաւիտեանս"։

Քրիստոսով եղած փրկութեան ճոխութիւններուն այսպիսի տեսութիւններովը ոչ ևս կրնար ներողութեանց հարկաւորութիւն մը ըլլալ։

Այս թէպէտ Լութեր այսպէս հակառակեցաւ պապական իշխանութեան, բայց ակնածութեամբ կըխօսէր Լևոնի վրայ. "Մեր ապրած ատենները, ըսաւ, այնպէս գէշ են, որ բարձրագոյն պաշտօնի տէր անձինք ևս կարողութիւն չունին Եկեղեցիին օգնութեան հասնելու։ Մենք հիմա ամենապատուական պապ մը ունիմք Լևոնը. իր անկեղծութիւնը և իմաստութիւնը ուրախութեան նիւթեր են մեզի։ Բայց մինակ ի՞նչ կրնայ ընել աս քաղցր և հաճոյական անձը։ Ապաքէն ինքը արժանաւոր էր պապ ընտրուիլ աղէկ ատեններու. աս օրերս ոչ մէկուն արժանաւոր եմք մենք, բայց Բ Յուլիոսի և Զ Աղէքսանդրի"։

Այնուհետև եկաւ աս վախճանիս. "Պիտի խօսիմ քիչ խօսքով և համարձակութեամբ։ Եկեղեցին բարեկարգուելու կըկարօտի. և ասիկայ ոչ մէկ մարդու մը գործ է՝ ինչպէս պապին, և ոչ շատերուն՝ ինչպէս կարդինալներուն ու ժողովի մէջ հաւաքուած հայրերուն, այլ բոլոր աշխարհի. կամ յաւէտ անանկ գործ մըն է՝ որ միայն Աստուծոյ կըպատշաճի"։

Ասոնք են ան ազդարարութիւններուն և խորհուրդներուն

մէկ քանիները, որոնք որ Լուտեր ուղղեց իր հայրենեացը առաւել լուսաւորեալ անձերուն ։ Մայիսի 22ին 1518ին իր գրուածքը խրկեց Պրանտէպուրկի եպիսկոպոսին՝ զինքը ձեռնադրողին այսպէս գրելով անոր ․

"Ամենապատիւ Հայր Հոգևոր ․

"Ատենէ մը 'ի վեր է որ նոր և չլսուած վարդապետութիւն մը սկսուեցաւ քարոզուիլ աս կողմերս առաքելական ներողութեանց վրայ ․ ուսումնականները և ռամիկները առ հասարակ խռովեցան անով, ու շատերը՝ ծանօթ կամ անծանօթ խնդրեցին ինծմէ որ ամպիոնէն և կամ գրութեամբ իմ կարծիքս յայտնեմ յիշեալ վարդապետութեան նորութեանը, չըսեմ թէ անամօթութեանը վրայ ։ Առջի բերանը ես զիս լուռ պահեցի և չեզոք ․ բայց վերջապէս իրերը այնպիսի ընթացքի մը մտան որ սրբազան պապը վտահամբաւեցաւ ։

"Ի՞նչ կրնայի ընել ․ մտածեցի որ ինծի կիյնայ ո՛չ ընդունել և ո՛չ հերքել աս վարդապետութիւնները, այլ վէճ մը բանալ աս կարևոր նիւթիս վրայ, մինչև որ սուրբ Եկեղեցին վճիռ մը կտրէ անոր վրայ ։

"Չեղաւ մէկը որ ներկայացունէ զինքը վիճաբանութեան ասպարէզին՝ ուր որ բովանդակ աշխարհ հրաւիրեցի, և իմ նախադասութիւններս ո՛չ իբրև նիւթ վիճաբանութեան՝ այլ իբրև վճռաբար հաստատուած նախադասութիւններ համարուելով, պարտաւորեալ տեսայ զիս անոնց բացատրութիւնը հրատարակել ։ Հաճեցէք ուրեմն ընդունել աս դուզնաքեայ գրուածքը որ ձեզի կը մատուցանեմ, ո՛վ ամենագթած եպիսկոպոս ։ Եւ իմ յանդգնաբար չգործելս բոլոր աշխարհի տեսնելու համար՝ կաղաչեմ ձեր վերապատուութիւնը գրիչ և թանաք առնել, ու եղծել կամ մինչև անգամ կրակը նետել ինչ որ անհաճոյ է ձեզի ։ Գիտեմ որ Քրիստոս իմ աշխատութեանս կամ ծառայութիւններուս մէկին կարօտ չէ ․ ու դիւրութեամբ առանց

իմ միջնորդութեանս կրնայ յայտնել իր եկեղեցւոյն մէջ բարի աւետիսներ ։ Ո՛չ եթէ իմ թշնամիներուս ամբաստանութիւնները և սպառնալիքները կը շփոթեն զիս ․ քա՛ւ լիցի ․ թէ որ անոնք այնպէս խոհեմութենէ զուրկ և անամօթութեան անձնատուր եղած չըլլային, իմ վրայովս մէկը չէր խօսէր կամ բան մը իմանար ․ ու պէտք էր որ ես զիս անկիւնի մը մէջ փակէի, ու հոն առանձին գրոց պատաղէի իմ անձիս օգտին համար ։ Թէ որ աս բանը Աստուծմէ չէ, անշուշտ ոչ ինծի և ոչ ուրիշ մէկու մը օգուտ ունի, այլ պիտի ոչնչանայ ։ փառք և պատիւ ըլլայ անոր՝ որուն միայն կը պատշաճի" ։

Լութեր մինչև աս ատենս եկեղեցւոյ գլուխը՝ի պատուի բռնած էր ․ կը հաւատար թէ Լևոն արդարակորով անձն է, ու ճշմարտութեան վրայ անկեղծ սէր մը ունի ։ Վասն որոյ մտածեց որ անոր ալ գրէ ։ Շաբաթ մը ետև՝ Մայիսի 30ին 1518ին գրեց անոր նամակ մը, որուն քանի մը մնացորդները աս հետևեալն է ։

"Ամենաերջանիկ Հօր Լևոնի տասներորդի՝ ծայրագոյն եպիսկոպոսի, Մարտինոս Լութեր եղբայր՝ Օգոստինեան, բարեմաղթէ մշտնջենաւոր բարօրութիւն ։

"Կըլսեմ՝ սրբազնասուրբ Հայր, թէ չար լուրեր կը շրջին իմ վրայովս, և թէ իմ անունս գարշելի հոտ մը բուրել կուտան ձեր Սրբութեան առջևը ։ Կըկոչուիմ հերետիկոս՝ ուրացող՝ մատնիչ, և հազար տեսակ ուրիշ նախատական անուններ ։ Տեսածս զիս կը զարմացընէ, ու լսածս զիս կը շփոթէ ․ բայց իմ անմեղութեանս միակ հիմը կը մնայ անշարժ, որ է մաքուր և խաղաղ խիղճ մը ։ Ո՛վ Հայր սրբազնասուրբ, հաճեցէք լսել ինծի՝ որ տղեկ մըն եմ ու կը կարօտիմ վարժութեան" ։

Այնուհետև Լութեր կը սկըսի բոլոր բանը սկիզբէն պատմել, ու այսպէս կը յառաջանայ ։

"Բոլոր գինետուններուն մէջ ուրիշ բան չէր լսուէր՝ բայց եթէ կարգաւորներուն ագահութեանը վրայ գան-

պատներ, ու բանալիններուն և ծայրագոյն եպիսկոպոսին իշխանութեանը դէմ զրդցներ։ Բովանդակ Գերմանիա ՚ի վկայ կըկոչեմ ասոր. երբոր աս բաները լսեցի, իմ նախանձաւորութիւնս շարժեցաւ Քրիստոսի փառքին համար՝ թէ որ իմ սիրտս կըհասկընամ. իսկ եթէ ուրիշ միտք մը ընծայուելու ըլլայ իմ շարժմունքիս, իմ երիտասարդական և ջերմ արիւնս բորբոքեցաւ։

“Առաջարկեցի բանը Եկեղեցիին քանի մը գլխաւորներուն, բայց ոմանք իմ վրաս խնդացին, և ուրիշները լռութեան զարկին։ Ձեր անուանը ահարկութիւնը կըթուէր թէ անզգայ ըրած էր բոլորը։ Ասոր վրայ աս վիճաբանութիւնը հրատարակեցի։

“Աւասիկ ասիկայ է՝ սրբազնասուրբ Հայր, ասիկայ է ան գործը՝ որուն համար կըսվի թէ բովանդակ աշխարհը կրակի տուաւ։

“Եւ հիմայ ի՞նչ պիտի ընեմ ես. ան որ ըսի չեմ կրնար ետ առնել, ու կըտեսնեմ որ աս յայտարարութիւնը ամէն կողմանէ անպատմելի ատելութիւն կըբերէ իմ վրաս։ Չեմ ուզեր երևան ելլել աշխարհի մեծութեանը մէջ. վասն զի տգէտ եմ՝ անմիտ եմ՝ և այսպիսի մեծ բաներու համար շատ փոքր մէկը, մանաւանդ աս լուսաւորեալ դարուն մէջ, ուր եթէ նոյն ինքն Կիկերոն ողջ ըլլար՝ պիտի պարտաւորէր մթին անկիւնի մը մէջ ծածկել զինքը։

“Բայց իմ թշնամիներս հանդարտեցընելու և բազմաթիւ բարեկամներուս խնդիրները կատարելու համար, ահա [illegible]ս իմ խորհուրդներս կըհրատարակեմ։ Կըհրատարակեմ զանոնք՝ սուրբ Հայր, որ աւելի ապահովութեամբ բնակիմ ձեր բազուկներուն հովանաւորութեան տակը։ Ով որ կուզէ կրնայ աս տեղս իմանալ՝ թէ ի՞նչ անկեղծութեամբ սրտի Եկեղեցւոյ ծայրագոյն հեղինակութենէն խնդրեցի վարժել զիս, և ի՞նչ պատիւ ցուցըցի բանալիներուն իշխանութեանը վրայ։ Թէ որ անպատշաճ ըլլար իմ ըրածս, անհնար էր որ պայծառափայլ Փրիդերիկոս տէրը՝ Սաք-

սոնիայի դուքսը և կայսրընտիրը՝ որ առաքելական և քրիս-
տոնէական ճշմարտութեան բարեկամներուն մէջ նախա-
պատիւ կը փայլի, Վիդդէմպերկի իր համալսարանին մէջ
թոյլ տար մեալ այնպիսի վնասակար մէկը ինչպէս որ կըսեն
թէ ես եմ։

«Ասոր համար՝ ով սրբազնասուրբ Հայր, ես զիս ձեր Սըր-
բութեան ոտքը կը ձգեմ, և կը հնազանդիմ ձեզի բոլոր
անովը ինչ որ ունիմ և բոլոր անովը ինչ որ եմ։ Ջնջէ իմ
փաստս կամ պաշտպանէ զանիկայ. կուսակից եղիր ինծի
կամ հակառակէ ինծի. վերցուր իմ կեանքս կամ շնորհէ
զանիկայ ինչպէս որ կը հաճիս. ձեր ձայնը պիտի ընդունիմ
իբրև ձայն Քրիստոսի որ ձեր միջնորդութեամբը կիշխէ
և կը խօսի։ Թէ որ մահուան արժանի եմ, մեռնելէն ես
չեմ կենար. Տէրոջն է երկիրը ու բոլոր անոր մէջինները։
Ինքը փառաւորի յաւիտեանս յաւիտենից. Ամէն։ Ինքը
պահէ ձեզ մշտնջենաւորապէս. Ամէն։

«Ստորագրեալ յաւուր սրբոյ Երրորդութեան, յամին
1518։

Մարտինոս Լուտեր եղբայր, Օգոստինեան։

Ի՛նչ խոնարհութիւն և ճշմարտութիւն կը տեսնուի
Լուտերի աս երկիւղին՝ կամ յաւէտ աս հաւանութեանը
մէջ, թէ իր երիտասարդական և ջերմ արիւնը գուցէ չա-
փազանց վաղվաղկոտութեամբ բորբոքած էր։ Հոս կը տես-
նեմք անկեղծ մարդը՝ որ իր անձին վստահանալու տեղը իր
կիրքերուն զօրութենէն կըզգուշանայ միանգամայն ան գոր-
ծերուն մէջ որ բոլորովին Աստուծոյ Բանին համաձայն են։
Մէկ մոլեգնեալ ամբարտաւանի մը լեզուն այսպէս չըլլար։
Կը տեսնեմք Լուտերի ջերմեռանդ փափաքը՝ Լեոնը ճըշ-
մարտութեան կողմը շահելու, հերձուած հանելէն հեռա-
նալու, ու Եկեղեցւոյ հեղինակութենէն յառաջ բերել
տալու ան Բարեկարգութիւնը՝ որուն հարկաւորութիւնը
յայտնի կըցուցընէր։

Լուտեր աս գիրը գրելէն ետև նոյն օրը գրեց և իր բարեկամին Ստաւպիցին՝ իր կարգին մեծաւորին։ Անոր միջնորդութեամբը առաջադրեց խրկել Լեոնին միանգամայն իր Լուծմունքը և իր նամակը։

“Կը խնդրեմ ձեզմէ, ըսաւ, մարդասիրաբար ընդունել իմ ձեզի խրկած չնչին պտուղներս, ու խրկել զանոնք պատուական Ժ. Լեոն պապին։ Ոչ եթէ ասով ան վտանգին մէջը ձգել կըկամիմ ձեզ ուր որ ես կեցած եմ. վասն զի առաջադրած եմ ես ինքնս իյնալ բոլոր վտանգին տակը։ Քրիստոս պիտի տեսնէ և պիտի ցուցընէ թէ իմ ըսածս իրմէն կուգայ եթէ ինծմէ. Քրիստոս՝ առանց որոյ ոչ պապին լեզուն կրնայ շարժիլ, և ո՛չ թագաւորներուն սրտերը կրնան վճռել։

“Իսկ անոնց վրայով որոնք կըսպառնան ինծի՝ բան մը չունիմ պատասխանելու, բայց եթէ ան խօսքը, թէ՝ Աղքատը բան մը չունի վախնալու, վասն զի բան մը չունի կորսնցունելու։ Ոչ դրամ ունիմ և ո՛չ կալուածք, ու մէկուն ալ չեմ փափաքիր։ Թէ որ երբեմն պատիւ և բարի համբաւ վայելեցի, ան որ սկսեց մերկացընել զիս անոնցմէ, կը փափաքիմ որ կատարէ իր գործը։ Ուրիշ բան մնացած չէ ինծի՝ բայց աս թշուառ մարմինը բազմապատիկ փորձութիւններով տկարացած. թող սպաննեն զանիկայ խարդախութեամբ կամ բռնութեամբ, Աստուծոյ փառքին համար թող ըլլայ ան. ասանկ ընելովնին միայն մէկ կամ երկու ժամ պիտի կարճըցունեն իմ կեանքիս ժամանակը։ Բաւական է ինծի որ ունիմ պատուական փրկիչ մը՝ զօրաւոր Քահանայապետ մը՝ Յիսուս Քրիստոս իմ Տէրս. կը փառաւորեմ զինքը քանի որ շունչ ունիմ։ Թէ որ ուրիշ մէկը չկամիր իմ հետս զինքը փառաւորել, ի՞նչ փոյթ է ինծի”։

Աս խօսքերուս մէջ Լուտերի սրտին ներքինը կըկարդամք։

Երբոր ինքը այսպէս Հռովմայ վրայ կըվստահէր, Հռ-

ռոմ իրմէն վրէժխնդրութիւն ընել կըմտածէր ։ Ապրիլ 3ին՝ Ռափայէլ տը Ռօվէր կարդինալը պապին անունով Փրիդերիկոս կայսրընտրին գրեր էր իմացընել անոր՝ թէ իր հաւատքին վրայով կասկած կըլլուէր , և խնդրել որ Լուտերը պաշտպանելէն հրաժարի ։ Այսպէս Հռոմ կը սկըսէր զէնք վերցընել Լուտերին դէմ . իր առաջին հարուածը ուղղեր էր զրկել զանիկայ իր պաշտպանին պաշպանութենէն ։ Թէ որ յաջողէր իրեն Վիդդէմպէրկի միաբանին աս պատսպարութիւնը ոչնչացընել , դիւրին որս մը պիտի ըլլար ան ։

Գերմանացի իշխանաւորները հաստատապինդ կըպահէին իրենց Քրիստոնեայ իշխաններ կոչուելու համբաւը ։ Հերետիկոսութեան ամենաթեթև կասկածը երկիւղով կը լեցունէր զիրենք ։ Հռոմէական իշխանաւորները, անոնց մտացը աս տրամադրութիւնը ճարտարութեամբ պատեհութիւն ստացած էին իրենց ։ Փրիդերիկոս հանապազ իր հայրերուն կրօնքին յարեալ էր . վասն որոյ Ռափայէլ կարդինալին նամակը ազդողագոյն տպաւորութիւն մը ըրաւ անոր մտացը ։ Բայց կայսրընտիրը կանոն դրած էր իրեն որ բնաւ վաղվաղկոտ չըլլայ բանի մը մէջ ։ Գիտէր թէ ճըշմարտութիւնը միշտ զօրաւորներուն կողմը չէր ըլլար ։ Կայսերական երկրին Հռոմայ հետ ունեցած վէճերը՝ սորվեցուցեր էին քաջ ճանաչել աս արքունիքին շահախնդիր գաղափարները ։ Ինքը իմացեր էր թէ Քրիստոնեայ իշխան մը ըլլալու հարկաւոր չէր գերի ըլլալ պապին ։

“Ան աշխարհիկ անձերէն չէր , կըսէ Մէլանկտոն , որ ամէն փոփոխութիւնները նոյն իսկ անոնց սկզբնաւորութեանը կըջանան անհետ ընել ։ Փրիդերիկոս Աստուծոյ կամացը յանձներ էր զինքը ։ Հրատարակեալ գրուածները ամենայն խնամով կըկարդար , ու թոյլ չէր տար մէկուն որ իր ճշմարիտ դատածը խափանէ”։ Աս կարողութիւնը ունէր ինքը . ու իր վիճակներուն մէջ ինքնիշխան տէր էր , ասկէց զատ բովանդակ կայսերութեան մէջը գուցէ աւելի

յարգութիւն ստացած էր քան որչափ նոյն ինքն կայսրին կընծայուէր ։

“Հաւանական կերևայ որ Լուտեր բան մը իմացեր էր Սափայէլ կարդինալին աս նամակին վրայով, որ Յուլիսի 7ին հասաւ կայսրընտրին ։ Գուցէ երևցեր էր թէ բանադրանք մը պիտի ըլլայ՝ որուն կանխագէտ կըլթուէր Սափայէլին պատգամաւորը, որ անոր համար Լուտեր նոյն ամսուն 15ին Վիդդէմպէրկի ամպիոնը ելաւ՝ ու նոյն նիւթին վրայ ճառ մը քարոզեց, որ խորին տպաւորութիւն գործեց իր ունկնդիրներուն վրայ ։ Ներքին և արտաքին բանադրանքները իրարմէ որոշեց . առաջինը՝ որ Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալէն կարտաքսէ, ու երկրորդը՝ որ Եկեղեցւոյ ծեսերէն կըբաժնէ ։ “Մէկը, ըսաւ, չկրնար Աստուծոյ հետ հաշտեցընել ինկած հոգին, բայց միայն Տէրը ։ Մէկը չկրնար Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալէն անջատել զմարդը, բայց եթէ ան նոյն մարդը իր մեղքերովը ։ Երանի՜ ան մարդուն որ բանադրանաց անիրաւ վճիռի մը տակ կըմեռնի ։ Մինչդեռ անիկայ արդարութեան սիրոյն համար անիրաւ դատաստան մը կընդունի մարդոցմէ, մըշտնջենաւոր երանութեան պսակը կառնէ Աստուծմէ” ։

Ոմանք մեծաձայն գովաբանեցին աս արիական խօսքը, ուրիշները առաւել ևս զայրացան անով ։

Բայց Լուտեր հիմա մինակ չէր . և թէպէտ իր հաւատքը Աստուծմէ'ի զատ օգնութեան մը կարօտ չէր, իր ամէն կողմէն բանակ մը կըկազմուէր իր թշնամիներէն զինքը պաշտպանելու ։ Բարեկարգողին ձայնը Գերմանացւոց բովանդակ ազգը լսեր էր . իր քարոզութիւններէն և գրութիւններէն արձակեցան լուսոյ ճառագայթներ, որոնք իր ժամանակակիցները արթընցուցին և լուսաւորեցին ։ Քրիստոնէութիւնը որ այնչափ տարիներէն հետէ անզգայ մնացեր էր, կենդանացաւ հիմա Քրիստոնէական յափշտակութեամբ ։ Ժողովուրդին Հռոմէական սնապաշտութեանց ընծայած սէրը օրըստօրէ կընուազէր .

ձեռքերնին ստակով ներողութիւն գնելու եկողները ա-
մէն օր կըպակսէին , ու Լուտերի համբաւը ամէն օր կ՚ըն-
դարձակէր : Մարդոց միտքերը անոր վրայ կըդառնային , ու
սիրով և յարգութեամբ կընդունուէր իբրև անվեհեր
պաշտպան ճշմարտութեան և ազատութեան : Անտարակոյս
ամէն մարդ չէր կրնար իմանալ անոր քարոզած վարդա-
պետութիւնները : Շատերուն բաւական էր գիտնալ թէ
նոր վարդապետը պապին դէմ ելած էր , և թէ՝ անոր կա-
րող խօսքովը քահանաներուն և վարդապետներուն իշխա-
նութիւնը կործանելու վրայ էր : Լուտեր չէր գիտեր թէ
ինչ աստիճանի ազդեցութիւն մը ստացեր էր , մինչև որ
իր ազգին մէջի բոլոր ազատամիտ անձինքը ուրախութեան
ձայնով զինքը իրենց առաջնորդ ընդունեցին : Բայց շա-
տերուն Լուտերի երևան ելլելը ասկից աւելի էր : Աստու-
ծոյ Բանը՝ որ այնչափ զօրութեամբ կըճառէր , իբրև երկ-
բերան սուր՝ մարդոց հոգիներուն կըթափանցէր : Շատ
սրտերու մէջ թողութիւն և յաւիտենական կեանք ստա-
նալու համար ջերմեռանդ փափաք մը կըվառէր : Առջի դա-
րերէն 'ի վեր արդարութեան համար այսպիսի քաղց և
ծարաւ ունեցած չէր Եկեղեցին : Լուտերի գրութիւնները
նախ առաջին երևան ելլելնուն՝ հաւատացողներուն և ան-
հաւատներուն կարեկցութիւնը հաւասարապէս կըշարժէր .
անհաւատներունը՝ վասն զի անոնք կըկարծէին թէ հա-
ւատքը պիտի կործանէր , տակաւին չգիտնալով թէ իր
քարոզած վարդապետութեամբը կըհաստատէր զանիկայ .
հաւատացեալներունը՝ վասն զի անոնք կըտեսնէին թէ բո-
վանդակ աւետարանը հիմնուած էր ան կենդանի հաւատքին
վարդապետութեանը մէջ , որ իր գրութիւնները կըցուցընէին
այսպիսի մեծ զօրութեամբ մը : Ասոր համար ան գրու-
թիւններուն ազդեցութիւնը չափ և սահման չունէր : Ակն-
թարթի մէջ տարածեցան անոնք՝ բոլոր Գերմանիայի և
բովանդակ աշխարհի մէջ : Ամէն տեղ կըթագաւորէր կար-
ծիք մը՝ թէ մարդիկ ինչ որ հիմա կըտեսնէին՝ չէ՛ թէ նոր

աղանդի մը ծագումն էր, այլ Եկեղեցիին և ընկերութեան նորոգ ծնունդը ։ Անոնք որ անատենը Աստուծոյ Հոգւոյն ներշնչութեամբը վերստին ծնան, իրենց հոգևոր կեանք հաղորդելու միջոց եղողին բոլորտիքը հաւաքեցան ։ Քրիստոնէութիւնը երկու հակառակ բանակներու բաժնուեցաւ ․ մէկը հոգիին համար կըմարտնչէր ծիսի դէմ, միւսը ծիսի համար հոգիին դէմ ։ Ծիսին կողմն էր՝ իրաւ՝ զօրութեան և մեծութեան բոլոր երևոյթը, հոգիին կողմն էր տկարութիւն և փոքրկութիւն ։ Բայց ծէսը՝ հոգիէ զուրկ, կը նմանի պարապ ամանի մը որ մէկ շնչով մը կիյնայ կըկործանի ։ Անոր զօրութեան երևոյթը կըծառայէ միայն թըշնամութիւնը գրգռել իրեն դէմ ու իր կործանումը փաղփաղել ։ Այսպէս ճշմարտութեան պարզ Բանը քաջամարտիկ զինուորներու գունդ մը ծնաւ 'ի Նպաստ Լուտերի ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԱՊԱՔԷՆ շատ պէտք էր այս բանը ․ վասն զի այս կակապակցութեանս վրայ կըթուէր թէ Տէրութիւնը պիտի միաբանի Եկեղեցիին հետ, որ կըջանար ազատել զինքը այս ձանձրացուցիչ միաբանէն ։

Մաքսիմիլիանոս կայսրը արքունական ժողով մը ունէր Աւկզպուրկի մէջ ։ Վեց կայսրընտիրներ անձամբ հոն գացին կայսեր հրաւէրքովը, Գերմանիայի գաւառներուն բոլոր դեսպանները հոն ներկայ էին ։ Նաև Գաղղիայի, Ունկարիոյ և Բոլոնիայի թագաւորները հոն խրկեր էին իրենց դեսպանները ։ Ահա այս ժողովիս գլխաւոր նպատակներուն մէկը՝ որ էր ասիկայ ։ Մաքսիմիլիանոս կայսրը կըբաղձար որ իր Կարոլոս թոռը՝ որն որ արդէն Սպանիայի և Նաբօլիի թագաւոր էր, կոչուի թագաւոր Հռովմայ, և յաջորդ կայսերական թագին ։ Պապը աղէկ հասկընալով իր

օգոստը, չէր ուզեր տեսնել կայսերական գահը այնպիսի իշխան մը նստած, որուն զօրութիւնը Իտալիայի մէջ կրնայ զարհուրեցունել զինքը։ Կայսրը կըխորհէր որ կայսրընտիրներուն և նախարարներուն շատը իր կողմը շահեր է. բայց Փրիդերիկոսին կողմանէ ազդու ընդդիմութեան մը պատահեցաւ։ Զուր տեղը Թախանձեց անոր. զուր տեղը կայսրընտրին նախարարները ու ամենալաւ բարեկամները իրենց աղաչանքները կայսեր Թախանձանքներուն հետ միաբանեցին. Փրիդերիկոս անողոքելի մնաց, ու իր վրայով ըսուածին՝ պէս՝ հաստատուն միտք մը ցուցուց չդառնալու ան առաջադրութենէն որուն պատշաճաւորութիւնը ինքը կըտեսնէր։ Վասն որոյ կայսեր դիտաւորութիւնը պարապ ելաւ։

Ան նոյն ժամանակէն Մաքսիմիլիանոս կըխնդրէր ինքզինքը պապին բարեկամացունել, որպէս զի հաճութիւն տայ իր գաղափարներուն։ Ու իր բարեկամութեանը մասնաւոր ցոյց մը տալու համար՝ աս հետևեալ նամակը գրեց անոր Օգոստոսի 5ին։ "Սրբազնասուրբ Հայր, քանի մը օր է որ լսեցինք թէ Մարտինոս Լուտեր անուն Օգոստինեան կարգէն եղբայր մը, ներողութեանց վաճառման վրայ քանի մը նախադասութիւններ հաստատեր է։ Աւելի մեզ վշտացունողը ան է որ յիշեալ եղբայրը շատ պաշտպաններ կըգտնէ, որոնց մէջ ոմանք բարձրագոյն աստիճանի անձինք են։ Թէ որ ձեր Սրբութիւնը՝ ու Եկեղեցւոյ ամենապատիւ Հայրերը (կարդինալները) փութաջան խնամով 'ի գործ չին դներ ձեր իշխանութիւնը աս գայթակղեցուցիչ ընթացքը վերջացունելու, աս վնասակար ուսուցիչները պիտի խաբեն ոչ միայն հասարակ ժողովուրդը, հապա իրենց կորստեանը մէջ պիտի ձգեն և մեծամեծ իշխանները։ Ինչ որ ձեր Սրբութիւնը աս նիւթիս վրայ կըվճռէ 'ի փառս ամենակալ Աստուծոյ, մենք ամենայն խնամով կատարելու կըջանամք բոլոր մեր Տէրութեան մէջը"։

Աս նամակը գրուած պիտի ըլլայ սաստիկ վէճի մը պատ-

ճամբով որ Մաքսիմիլիանոս ունեցեր է Փրիդերիկոսի հետ ։ Անտարակոյս ասիկայ իմացած էր թէ կայսրը Հռովմայ քահանայապետին կըգրէր, ու գալու հարուածը նահանջելու համար ինքն ալ հաղորդակցութիւն կուզէր բանալ Հը-ռովմայ հետ ։ Ասոն որոյ նոյն օրը կարդինալ մը Ալո-վերէին ասանկ գրեց ։

«Ամենևին ուրիշ բաղձանք մը չունիմ, ըսաւ, բայց եթէ տիեզերական Եկեղեցւոյ իմ հնազանդութիւնս ցուցընել ։

«Ասոր ամենևին պաշտպանած չեմ Մարտինոս Լու-տեր վարդապետին գրութիւնները և քարոզները ։ Սակայն և այսպէս՝ կը լսեմ որ ինքը միօրինակ կը յայտնէ թէ ապա-տագրով մը կըկամի ներկայանալ գիտնական՝ բարեպաշտ՝ և անաչառ դատաւորներու առջև՝ իր վարդապետութիւնը պաշտպանելու, և անոնց վճռոյն հնազանդելու, թէ որ կրնան սուրբ Գրքերով ցուցընել իրեն իր սխալումը» ։

Լևոն Ժերորդ՝ որ մինչև աս ժամս բանը իր ընթացքին երթալու թոյլ տուեր էր, աստուածաբաններուն և վար-դապետներուն աղաղակէն գրգռելով Հռովմայ մէջ եկե-ղեցական ատեան մը կարգեց Լուտերը դատելու, ու աս ատեանին մէջ Եղբեստրոս Պրիէրիաս Լուտերի մեծ թշնամին՝ միանգամայն ամբաստանող էր և դատաւոր ։ Նա-խապատրաստութիւնները շուտով կարգի դրուեցան, ու ատեանը՝ կոչեց զԼուտեր, որ վաթսուն աւուր միջոցի մէջ անձամբ ներկայանայ հոն ։

Լուտեր Վիդդէմպէրկի մէջ հանդարտութեամբ կըսպա-սէր բարի վախճաններու՝ որ պապին ուղղած իր խոնարհ նամակէն պիտի յառաջ գար՝ ինչպէս որ ինքը կըկարծէր․ բայց Օգոստոսի 7ին՝ Մաքսիմիլիանոսի ու Փրիդերիկոսի նամակներուն ճամբու դրուելէն միայն երկու օր ետքը պա-պական ատեանին կոչումը ընդունեց ։ «Ան նոյն րոպէն որ օրհնութեան կըսպասէի, ըսաւ, անէծք իջաւ իմ վրաս ։ Կընմանէի ան գառին որ գայլին խմած առուակը պղտորեր էր ։ Տեցէլ ազատեցաւ, ու ես պիտի դիշատուէի» ։

Աս կոչումը բոլոր Վիդդէմպէրկի շփոթութիւն տուաւ, վասն զի՝ ինչ ճամբայ որ բռնէր Լուտեր՝ չէր կրնար վըտանգէ ազատ մնալ: Եթէ որ Հռոմ երթար, իր թշնամիներուն զոհ պիտի ըլլար. թէ որ չերթար, անհնազանդութեան յանցանքով պիտի դատապարտուէր ըստ սովորութեան, և չպիտի ազատ մնար. վասն զի իմացուեր էր թէ դեսպանը հրաման ընդունած էր պապէն բոլոր իր կըրցածը ընելու, որպէս զի կայսրը և Գերմանացի իշխանները Լուտերի դէմ գրգռէ: Ասոր վրայ իր բարեկամները շփոթեցան. Նոյն ինքն Լուտեր բաց 'ի կայսրընտիրէն չէր տեսներ մէկը որ կարող ըլլայ զինքը փրկելու. բայց նախապատիւ կըհամարէր մեռնիլ քան թէ իր իշխանին ապահովութիւնը վտանգի տակ ձգել: Իր բարեկամները վերջապէս հնարք մը գտան որ վտանգէ ազատ կըթողուր զՓրիդերիկոս: Եթէ որ ազատագիր չտար Լուտերին, ասով անիկայ օրինաւոր պատճառ կունենար Հռոմ չերթալուն համար զինքը արդարացունելու:

Օգոստոսի 8ին Լուտեր գրեց Սպալատինի խնդրելով անկէց որ կայսրընտիրը իր զօրութիւնը գործի դնէ՝ իր դատը Գերմանիայի մէջ 'լսել տալու: "Տես, ըսաւ՝ գրելով Ստաուպիցին, ինչ որոգայթներ կըպատրաստեն ինծի համար, և ինչպէս փշերով շրջապատած եմ: Բայց Քրիստոս կենդանի է և կըթագաւորէ, նոյն երեկ և այսօր և յաւիտեանս: Իմ խիղճս կըսէ ինծի թէ ես ճշմարտութիւնը սորվեցուցի, թէպէտ և ճշմարտութիւնը իմ քարոզելուս համար առաւել ևս ատելի կերևայ: Աստուած անիկայ մեղք չհամարի անոնց":

Լուտերի բարեկամները բաւական չսեպեցին միայն խորհուրդ ընել: Սպալատին՝ կայսրընտրին կողմանէ գրեց Սէների՝ Կայսրին խորհրդականին և ըսաւ. "Մարտինոս վարդապետը յօժարութեամբ կըհնազանդի Գերմանիայի համալսարաններուն ո՛ և իցէ մէկուն դատողութեանը, բաց 'ի Էրֆուրթի՝ Լիփսիայի՝ և Օտէր գետին վրայի Ֆրանք-

փորձի համալսարաններէն , որոնք իրենց անաչառութեան իրաւունքը կորսընցուցին ։ Անհնար է իրեն անձամբ երևնալ Հռովմայ մէջ"։

Միդդէմպէրկի համալսարանն ալ աղերսագիր մը խըրկեց նոյն իսկ պապին ։ "Իր վատառողջ մարմինը , ըսաւ՝ Լուտերի վրայ խօսելով , ու ճամբուն վտանգները , դժուարին՝ և մինչև անգամ անհնարին կընեն իրեն ձեր Սրբութեան հրամանին հնազանդիլը ։ Իր ներողութիւնը և իր աղերսանքները կըյօժարեցունեն զմեզ կարեկից ըլլալ իրեն ։ Վասն որոյ՝ ով սրբազնասուրբ Հայր, կաղաչեմք ձեզի իբրև հնազանդ որդեակներ , ճանչնալ զանիկայ իբրև մէկ մարդ մը՝ որ բնաւ երբէք թունաւորած չէ Հռովմէական Եկեղեցւոյ կանոններուն հակառակ վարդապետութիւններով"։

Համալսարանը իր ունեցած փոյթովը նոյն օրը ուրիշ գիր մըն ալ խրկեց Կարոլոս Վօն Միլտիցի՝ Սաքսոնացի ազնուականի մը , որ պապին սենեկապետն էր ու անոր խիստ սիրելին ։ Աս նամակին մէջ Լուտերի վրայով աւելի ազդու վկայութիւն մը տուին անոնք , քան որչափ առաջինին մէջ համարձակեր էին տալ ։ "Վերապատուելի Հայր Մարտինոս Լուտեր Օգոստինեանը , ըսին , մեր համալսարանին ամէնէն երևելի և ամէնէն պատուաւոր անդամն է ։ Բազմաթիւ տարիներէն 'ի վեր կըտեսնեմք անոր տաղանդը՝ անոր գիտութիւնը՝ արհեստներու և գրականութեան անոր ունեցած նրբին ծանօթութիւնը՝ անոր անմեղադրելի բարոյականը՝ և անոր Քրիստոնէական վարքը"։ Իր բոլորտիքը եղողներուն աս զօրաւոր սէրը Լուտերի արժանաւորութեանը մեծամեծ վկայութիւն մըն է ։

Մինչդեռ մեծ հոգով կըսպասուէր աս գործիս վախճանին , նուազագոյն դժուարութեամբ վերջացաւ ան՝ քան որչափ կըյուսացուէր ։ Պապին նուիրակը որ Վիօ՝ առջի ընդունած ուրիշ պաշտօնի մը մէջ պզտիկ ելնալով, Գերմանիայի մէջ իր դեսպանութիւնը նշանաւոր ընել կըբաղ-

ձար ուրիշ երեւելի ծառայութիւնով մը։ Մտածեց որ եթէ հերետիկոսութիւնը վերցընէ, պատուով պիտի դառնայ Հռովմ. վասն որոյ աղաչեց պապին որ աս գործը իրեն յանձնէ։ Լեւոն իր կողմանէ աղէկ միտեալ էր Փրիդերիկոսի, որ այնպէս հաստատութեամբ դէմ կեցեր էր Կարոլոսի ընտրութեանը. ու կըզգար որ վերստին կրնայ կարօտիլ անոր օգնութեանը։ Ուստի առանց այլ եւս նայելու Լուտերի գալուն՝ Օգոստոսի 23ին գրուած կոնդակով մը հրաման տուաւ իր նուիրակին որ այն գործը Գերմանիայի մէջ քննուի։ Արդ՝ պապը աս կերպ ընթացքի մը հաւանութիւն տալովը՝ իրեն վնաս մը չէր ըլլար, այլ ընդհակառակն՝ օգուտ. քանզի թէ որ Լուտեր հոն մնալով համոզուէր իր վարդապետութիւնը հերքելու, պիտի խափանուէր բոլոր այն աղմուկը եւ գայթակղութիւնը որ իր Հռովմ երթալէն պիտի պատճառէր։

"Կըպատուիրեմք քեզի, ըսաւ պապը, նախայիշեալ Լուտերը բռնադատել անձամբ քու առջեւդ երեւալու, հետամուտ ըլլալ եւ հնազանդութեան դարձունել զանիկայ, անմիջապէս աս մեր հրամանը ընդունելնուդ. որովհետեւ արդէն ինքը հերետիկոս ըլլալ վճռուած է մեր սիրելի Հերոնիմոս եղբօրմէն՝ Ասկուլանու եպիսկոպոսէն։

"Աս բանիս համար ուժ եւ օգնութիւն խնդրէ Քրիստոսով մեր ամենասիրելի որդիէն՝ Մաքսիմիլիանոսէն, ու Գերմանիայի ուրիշ իշխաններէն, եւ բոլոր ընկերութիւններէն, համալսարաններէն, եւ իշխանաւորներէն, թէ եկեղեցական եւ թէ աշխարհական։ Ու երբոր ձեռք կըձգես զինքը՝ զգուշութեամբ պահել տուր որ մեր առջեւը բերուի"։

Աս տեղս պապին այն ներող թոյլտուութիւնը ուրիշ բան չէր բայց եթէ Լուտերը Հռովմ քաշելու աւելի ապահով հնարք մը։ Այնուհետեւ կուգայ մեղմագոյն եղանակը։

"Թէ որ խելքը գլուխը գալով իր պարտաւորութեանը դառնայ, ու ինքիրմէն եւ առանց յորդորուելու թողութիւն խնդրէ այսպիսի մեծ յանցանքի մը, իշխանութիւն կուտամք

*քեզի ընդունել զանիկայ մայր սուրբ Եկեղեցւոյ միաւորութեանը" :*

*Սակայն շուտով կըդառնայ պապը իր Նզովքներուն :*

*"Բայց թէ որ իր կամակորութեանը մէջ յարատեւէ, և չկրնաս ձեռք ձգել զանիկայ, իշխանութիւն կուտամք քեզի դատապարտել զանիկայ Գերմանիայի բոլոր երկիրներուն մէջ. մերժել՝ նզովել և բանադրել ան ամէնը որ անոր յարեալ են, ու պատուիրել բոլոր Քրիստոնէից որ անոնց ընկերութենէն հրաժարին" :*

*Աս ալ հերիք չէ :*

*"Նաև վերջապէս՝ աս ժանտախտը առաւել ևս դիւրութեամբ բնաջինջ ըլլալու համար, բաց 'ի Մաքսիմիլիանոս կայսրէն՝ բանադրէ բոլոր եպիսկոպոսները՝ կրօնական կարգերը՝ համալսարանները՝ ընկերութիւնները՝ կոմսերը՝ դուքսերը և իշխանաւորները, որոնք հոգ չեն տանիր յիշեալ Մարտինոս Լուտերը և անոր համախոհները բռնելու ու պատշաճաւոր և զգուշաւոր պահպանութեամբ զանոնք քեզի խրկելու : Նաև եթէ (որն որ Աստուած չընէ) Նախայիշեալ իշխանները՝ ընկերութիւնները՝ համալսարանները և իշխանաւորները, կամ անոնց վերաբերեալ ո՛ և իցէ մէկը յիշեալ Մարտինոսը ու անոր համախոհները պահեն, կամ օգնութիւն և խրատ տան անոնց յայտնի կամ ծածուկ՝ իրենց ձեռքով կամ ուրիշներուն ձեռքով, կընզովեմք ան իշխանները՝ ընկերութիւնները՝ համալսարանները և իշխանաւորները՝ իրենց քաղաքներովը՝ գիւղերովը՝ ագարակներովը և աւաններովը, ինչպէս և ան քաղաքները՝ գիւղերը՝ ագարակները և աւանները՝ ուր որ յիշեալ Մարտինոսը կըփախչի. որչափ որ ինքը հոն մնայ, և իր մեկնելէն ետև ալ մինչև երեք օր նզովեալ ըլլան անոնք" :*

*Աս յանդուգն իշխանը որ կըկեղծաւորի երկրի վրայ փոխանորդ՝ ըլլալ Անոր որ ըսաւ՝ "Աստուած իր որդին չխրկեց աշխարհ՝ որ աշխարհը դատապարտէ, հապա որ աշխարհ անով փրկուի", իր անխծաբանութիւնը կըշարունա-*

ռովմ իրմէն վրէժխնդրութիւն ընել կըմտածէր ։ Ապրիլ 3ին՝ Ռափայէլ տը Ռօվէր կարդինալը պապին անունովը Փրիդերիկոս կայսրընտրին գրեր էր իմացընել անոր՝ թէ իր հաւատքին վրայով կասկած կըլլուէր , և խնդրել որ Լուտերը պաշտպանելէն հրաժարի ։ Այսպէս Հռովմ կը սկըսէր զէնք վերցընել Լուտերին դէմ . իր առաջին հարուածը ուղղեր էր զըկել զանիկայ իր պաշտպանին պաշպանութենէն ։ Թէ որ յաջողէր իրեն Վիդդէմպէրկի միաբանին աս պատսպարութիւնը ոչնչացընել , դիւրին որս մը պիտի ըլլար ան ։

Գերմանացի իշխանաւորները հաստատապինդ կըպահէին իրենց Քրիստոնեայ իշխաններ կոչուելու համբաւը ։ Հերետիկոսութեան ամենաթեթև կասկածը երկիւղով կը լեցունէր զիրենք ։ Հռովմէական իշխանաւորները անոնց մտացը աս տրամադրութիւնը ճարտարութեամբ պատեհութիւն ստացած էին իրենց ։ Փրիդերիկոս հանապազ իր հայրերուն կրօնքին յարեալ էր . վասն որոյ Ռափայէլ կարդինալին նամակը ազդողագոյն տպաւորութիւն մը ըրաւ անոր մտացը ։ Բայց կայսրընտիրը կանոն դրած էր իրեն որ բնաւ վաղվաղկոտ չըլլայ բանի մը մէջ ։ Գիտէր թէ ճըշմարտութիւնը միշտ զօրաւորներուն կողմը չէր ըլլար ։ Կայսերական երկրին Հռովմայ հետ ունեցած վէճերը՝ սորվեցուցեր էին քաջ ճանաչել աս արքունիքին շահախնդիր գաղափարները ։ Քններ իմացեր էր թէ Քրիստոնեայ իշխան մը ըլլալու հարկաւոր չէր գերի ըլլալ պապին ։

“Ան աշխարհիկ անձերէն չէր , կըսէ Մելանկտոն , որ ամէն փոփոխութիւնները նոյն իսկ անոնց սկզբնաւորութեանը կը ջանան անհետ ընել ։ Փրիդերիկոս Աստուծոյ կամացը յանձներ էր զինքը ։ Հրատարակեալ գրուածները ամենայն խնամով կըկարդար , ու թոյլ չէր տար մէկուն որ իր ճշմարիտ դատածը խափանէ” ։ Աս կարողութիւնը ունէր ինքը . ու իր վիճակներուն մէջ ինքնիշխան տէր էր , ասկէց զատ բովանդակ կայսերութեան մէջը գուցէ աւելի

յարգութիւն ստացած էր քան որչափ նոյն ինքն կայսրին կընծայուէր:

"Հաւանական կերևայ որ Լուտեր բան մը իմացեր էր Ռաֆայէլ կարդինալին աս նամակին վրայով, որ Յուլիսի 7ին Հասաւ կայսրընտրին: Գուցէ երևցեր էր թէ բանադրանք մը պիտի ըլլայ՝ որուն կանխագէտ կըլթուէր Ռաֆայէլին պատգամաւորը, որ անոր համար Լուտեր նոյն ամսուն 15ին Վիտտէմպէրկի ամպիոնը ելաւ՝ ու նոյն նիւթին վրայ ճառ մը քարոզեց, որ խորին տպաւորութիւն գործեց իր ունկնդիրներուն վրայ: Ներքին և արտաքին բանադրանքները իրարմէ որոշեց. առաջինը՝ որ Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալէն կարտաքսէ, ու երկրորդը՝ որ Եկեղեցւոյ ծէսերէն կըբաժնէ: "Մէկը, ըսաւ, չկրնար Աստուծոյ հետ հաշտեցընել ինկած հոգին, բայց միայն Տէրը: Մէկը չկրնար Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալէն անջատել զմարդը, բայց եթէ ան նոյն մարդը իր մեղքերովը: Երանի ան մարդուն որ բանադրանաց անիրաւ վճռի մը տակ կըմեռնի: Մինչդեռ անիկայ արդարութեան սիրոյն համար անիրաւ դատաստան մը կընդունի մարդոցմէ, մըշտնջենաւոր երանութեան պսակը կառնէ Աստուծմէ":

Ոմանք մեծաձայն գովաբանեցին աս արիական խօսքը, ուրիշները առաւել ևս զայրացան անով:

Բայց Լուտեր հիմա մինակ չէր. և թէպէտ իր հաւատքը Աստուծմէ՚ի զատ օգնութեան մը կարօտ չէր, իր ամէն կողմէն բանակ մը կըկազմուէր իր թշնամիներէն զինքը պաշտպանելու: Բարեկարգողին ձայնը Գերմանացւոց բովանդակ ազգը լսեր էր. իր քարոզութիւններէն և գրութիւններէն արձակեցան լուսոյ ճառագայթներ, որոնք իր ժամանակակիցները արթընցուցին և լուսաւորեցին: Քրիստոնէութիւնը որ այնչափ տարիներէն հետէ անզգայ մնացեր էր, կենդանացաւ հիմա Քրիստոնէական յափշտակութեամբ: Ժողովուրդին Հռովմէական սնապաշտութեանց ընծայած սէրը օրըստօրէ կընուազէր.

ձեռքերնին ստակով ներողութիւն գնելու եկողները ամէն օր կը պակսէին, ու Լութերի համբաւը ամէն օր կ՚ընդարձակէր ։ Մարդոց միտքերը անոր վրայ կը դառնային, ու սիրով և յարգութեամբ կ՚ընդունուէր իբրև անվեհեր պաշտպան ճշմարտութեան և ազատութեան ։ Անտարակոյս ամէն մարդ չէր կրնար իմանալ անոր քարոզած վարդապետութիւնները ։ Շատերուն բաւական էր գիտնալ թէ նոր վարդապետը պապին դէմ ելած էր, և թէ՝ անոր կարող խօսքովը քահանաներուն և վարդապետներուն իշխանութիւնը կործանելու վրայ էր ։ Լութեր չէր գիտեր թէ ինչ աստիճանի ազդեցութիւն մը ստացեր էր, մինչև որ իր ազգին մէջի բոլոր ազատամիտ անձինքը ուրախութեան ձայնով զինքը իրենց առաջնորդ ընդունեցին ։ Բայց շատերուն Լութերի երևան ելլելը ասկից աւելի էր ։ Աստուծոյ Բանը՝ որ այնչափ զօրութեամբ կը ճառէր, իբրև երկբերան սուր՝ մարդոց հոգիներուն կը թափանցէր ։ Շատ սրտերու մէջ թողութիւն և յաւիտենական կեանք ստանալու համար ջերմեռանդ փափաք մը կը վառէր ։ Առջի դարերէն 'ի վեր արդարութեան համար այսպիսի քաղց և ծարաւ ունեցած չէր Եկեղեցին ։ Լութերի գրութիւնները նախ առաջին երևան ելլելուն՝ հաւատացողներուն և անհաւատներուն կարեկցութիւնը հաւասարապէս կը շարժէր․ անհաւատներունը՝ վասն զի անոնք կը կարծէին թէ հաւատքը պիտի կործանէր, տակաւին չգիտնալով թէ իր քարոզած վարդապետութեամբը կը հաստատէր զանիկայ․ հաւատացեալներունը՝ վասն զի անոնք կը տեսնէին թէ բովանդակ աւետարանը հիմնուած էր այն կենդանի հաւատքին վարդապետութեանը մէջ, որ իր գրութիւնները կը ցուցընէին այսպիսի մեծ զօրութեամբ մը ։ Ասոր համար այն գրութիւններուն ազդեցութիւնը չափ և սահման չունէր ։ Ակնթարթի մէջ տարածեցան անոնք՝ բոլոր Գերմանիայի և բովանդակ աշխարհի մէջ ։ Ամէն տեղ կը թագաւորէր կարծիք մը՝ թէ մարդիկ ինչ որ հիմա կը տեսնէին՝ չէ՛ թէ նոր

աղանդի մը ծագումն էր, այլ Եկեղեցիին և ընկերութեան նորոգ ծնունդը։ Ասոնք որ անատենը Աստուծոյ Հոգւոյն ներշնչութեամբը վերստին ծնան, իրենց հոգևոր կեանք հաղորդելու միջոց եղողին բոլորտիքը հաւաքեցան։ Քրիստոնէութիւնը երկու հակառակ բանակներու բաժնուեցաւ. մէկը հոգիին համար կըմարտնչէր ծիսի դէմ, միւսը ծիսի համար հոգիին դէմ։ Ծիսին կողմն էր՝ իրաւ՝ զօրութեան և մեծութեան բոլոր երևոյթը, հոգիին կողմն էր տկարութիւն և փոքրկութիւն։ Բայց ծէսը՝ հոգիէ զուրկ, կը նմանի պարապ ամանի մը որ մէկ շնչով մը կիյնայ կըկործանի։ Նոր զօրութեան երևոյթը կըծառայէ միայն թըշնամութիւնը գրգռել իրեն դէմ ու իր կործանումը վաղվաղել։ Այսպէս ճշմարտութեան պարզ Բանը քաջամարտիկ զինուորներու գունդ մը ծնաւ ՚ի նպաստ Լուտերի։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԱՊԱՔԷՆ շատ պէտք էր աս բանը. վասն զի աս կակապակցութեանս վրայ կըթուէր թէ Տէրութիւնը պիտի միաբանի Եկեղեցիին հետ, որ կըջանար ազատել զինքը աս ձանձրացուցիչ միաբանէն։

Մաքսիմիլիանոս կայսրը արքունական ժողով մը ունէր Աւկզպուրկի մէջ։ Վեց կայսրընտիրներ անձամբ հոն գացին կայսեր հրաւէրքովը, Գերմանիայի գաւառներուն բոլոր դեսպանները հոն ներկայ էին։ Նաև Գաղղիայի, Ունկարիոյ և Բոլոնիայի թագաւորները հոն խրկեր էին իրենց դեսպանները։ Ահա աս ժողովիս գլխաւոր նպատակներուն մէկը՝ որ էր ասիկայ։ Մաքսիմիլիանոս կայսրը կըբաղձար որ իր Կարոլոս թոռը՝ որն որ արդէն Սպանիայի և Նաբոլիի թագաւոր էր, կոչուի թագաւոր Հռոմայ, և յաջորդ կայսերական թագին։ Պապը աղէկ հասկընալով իր

օգուտը, չէր ուզեր տեսնել կայսերական գահը այնպիսի իշխան մը նստած, որուն զօրութիւնը Իտալիայի մէջ կրնար զարհուրեցունել զինքը: Կայսրը կը խորհէր որ կայսրընտիրներուն և նախարարներուն շատը իր կողմը շահեր է. բայց Փրիդերիկոսին կողմանէ ազդու ընդդիմութեան մը պատահեցաւ: Զուր տեղը թախանձեց անոր. զուր տեղը կայսրընտրին նախարարները ու ամենալաւ բարեկամները իրենց աղաչանքները կայսեր թախանձանքներուն հետ միաբանեցին. Փրիդերիկոս անողորքելի մնաց, ու իր վրայով ըսուածին՝ պէս՝ հաստատուն միտք մը ցուցուց չդառնալու ան առաջադրութենէն որուն պատշաճաւորութիւնը ինքը կը տեսնէր: Վասն որոյ կայսեր դիտաւորութիւնը պարապ ելաւ:

Ան նոյն ժամանակէն Մաքսիմիլիանոս կը խնդրէր ինքզինքը պապին բարեկամացունել, որպէս զի հաճութիւն տայ իր գաղափարներուն: Իսկ իր բարեկամութեանը մասնաւոր ցոյց մը տալու համար՝ աս հետևեալ նամակը գրեց անոր Օգոստոսի 5ին: "Սրբազնասուրբ Հայր, քանի մը օր է որ լսեցինք թէ Մարտինոս Լուտեր անուն Օգոստինեան կարգէն եղբայր մը, ներողութեանց վաճառման վրայ քանի մը նախադասութիւններ հաստատեր է: Աւելի մեզ վշտացունողը ան է որ յիշեալ եղբայրը շատ պաշտպաններ կը գտնէ, որոնց մէջ ոմանք բարձրագոյն աստիճանի անձինք են: Թէ որ ձեր Սրբութիւնը՝ ու Եկեղեցւոյ ամենապատիւ Հայրերը (կարդինալները) փութաջան խնամով 'ի գործ չեն դներ ձեր իշխանութիւնը աս գայթակղեցուցիչ ընթացքը վերջացունելու, աս վնասակար ուսուցիչները պիտի խաբեն ոչ միայն հասարակ ժողովուրդը, հապա իրենց կորստեանը մէջ պիտի ձգեն և մեծամեծ իշխանները: Ինչ որ ձեր Սրբութիւնը աս նիւթիս վրայ կը վճռէ 'ի փառս ամենակալ Աստուծոյ, մենք ամենայն խնամով կատարելու կը ջանամք բոլոր մեր Տէրութեան մէջը":

Աս նամակը գրուած պիտի ըլլայ սաստիկ վէճի մը պատ-

ճառով որ Մաքսիմիլիանոս ունեցեր է Փրիդերիկոսի հետ : Անտարակոյս ասիկայ իմացած էր թէ կայսրը Հռովմայ քահանայապետին կըգրէր, ու գալու հարուածը նահանջելու համար ինքն ալ հաղորդակցութիւն կուզէր բանալ Հռովմայ հետ : Վասն որոյ նոյն օրը կարդինալ մը Սւօվերէին ասանկ գրեց :

"Ամենևին ուրիշ բաղձանք մը չունիմ, ըսաւ, բայց եթէ տիեզերական Եկեղեցւոյ իմ հնազանդութիւնս ցուցընել :

"Ուստի ամենևին պաշտպանած չեմ Մարտինոս Լուտեր վարդապետին գրութիւնները և քարոզները : Սակայն և այսպէս՝ կը լսեմ որ ինքը միօրինակ կը յայտնէ թէ ազատագրով մը կըկամի ներկայանալ գիտնական՝ բարեպաշտ՝ և անաչառ դատաւորներու առջև՝ իր վարդապետութիւնը պաշտպանելու, և անոնց վճռոյն հնազանդելու, թէ որ կրնան սուրբ Գրքերով ցուցընել իրեն իր սխալումը" :

Լևոն ժերորդ՝ որ մինչև աս ժամս բանը իր ընթացքին երթալու թող տուեր էր, աստուածաբաններուն և վարդապետներուն աղաղակէն գրգռելով Հռովմայ մէջ եկեղեցական ատեան մը կարգեց Լուտերը դատելու, ու աս ատեանին մէջ Սեղբեստրոս Պրիէրիաս Լուտերի մեծ թշնամին՝ միանգամայն ամբաստանող էր և դատաւոր : Նախապատրաստութիւնները շուտով կարգի դրուեցան, ու ատեանը՝ կոչեց զԼուտեր, որ վաթսուն աւուր միջոցի մէջ անձամբ ներկայանայ հոն :

Լուտեր Վիդդէմպէրկի մէջ հանդարտութեամբ կըսպասէր բարի վախճաններու՝ որ պապին ուղղած իր խոնարհ նամակէն պիտի յառաջ գար՝ ինչպէս որ ինքը կըկարծէր . բայց Օգոստոսի 7ին՝ Մաքսիմիլիանոսի ու Փրիդերիկոսի նամակներուն ճամբու դրուելէն միայն երկու օր ետքը պապական ատեանին կոչումը ընդունեց : "Ան նոյն րոպէն որ օրհնութեան կըսպասէի, ըսաւ, անէծք իջաւ իմ վրաս : Կընմանէի ան գառին որ գայլին խմած առուակը պղտորեր էր : Տէցէլ ազատեցաւ, ու ես պիտի դիշատուէի" :

*Այս կոչումը բոլոր Վիւրդեմպերկի շփոթութիւն տուաւ, վասն զի ինչ ճամբայ որ բռնէր Լուտեր՝ չէր կրնար վըտանգէ ազատ մնալ : Թէ որ Հռովմ երթար, իր թշնամիներուն զոհ պիտի ըլլար . թէ որ չերթար, անհնազանդութեան յանցանքով պիտի դատապարտուէր ըստ սովորութեան, և չպիտի ազատ մնար . վասն զի իմացուեր էր թէ դեսպանը հրաման ընդունած էր պապէն բոլոր իր կըրցածը ընելու, որպէս զի կայսրը և Գերմանացի իշխանները Լուտերի դէմ գրգռէ : Ասոր վրայ իր բարեկամները շփոթեցան . Նոյն ինքն Լուտեր բաց 'ի կայսրընտիրէն չէր տեսներ մէկը որ կարող ըլլայ զինքը փրկելու . բայց Նախապատիւ կըհամարէր մեռնիլ քան թէ իր իշխանին ապահովութիւնը վտանգի տակ ձգել : Իր բարեկամները վերջապէս հնարք մը գտան որ վտանգէ ազատ կըթողուր զԼիւթերիկոս : Թէ որ ազատագիր չտար Լուտերին, ասով անիկայ օրինաւոր պատճառ կունենար Հռովմ չերթալուն համար զինքը արդարացունելու :*

*Օգոստոսի 8ին Լուտեր գրեց Սպալատինի խնդրելով անկեց որ կայսրընտիրը իր զօրութիւնը գործի դնէ՝ իր դատը Գերմանիայի մէջ լսել տալու : "Տես, ըսաւ՝ գրելով Սպալատինին, ինչ որոգայթներ կըպատրաստեն ինծի համար, և ինչպէս փշերով շրջապատած եմ : Բայց Քրիստոս կենդանի է և կըթագաւորէ, նոյն երեկ և այսօր և յաւիտեանս : Իմ խիղճս կըսէ ինծի թէ ես ճշմարտութիւնը սորվեցուցի, թէպէտ և ճշմարտութիւնը իմ քարոզելուս համար առաւել ևս ատելի կերևայ : Աստուած ասիկայ մեղք չհամարի անոնց" :*

*Լուտերի բարեկամները բաւական չսեպեցին միայն խորհուրդ ընել : Սպալատին՝ կայսրընտրին կողմանէ գրեց Սէներին՝ Կայսրին խորհրդականին և ըսաւ . "Մարտինոս վարդապետը յօժարութեամբ կըհնազանդի Գերմանիայի համալսարաններուն ո՛ և իցէ մէկուն դատողութեանը, բաց 'ի Էրֆուրթի՝ Լիփսիայի՝ և Օտեր գետին վրայի Ֆրանք-*

փորձի համալսարաններէն, որոնք իրենց անաչառութեան իրաւունքը կորսընցուցին: Անհնար է իրեն անձամբ երեւնալ Հռովմայ մէջ":

Վիդդէմպէրկի համալսարանն ալ աղերսագիր մը խըրկեց նոյն իսկ պապին: "Իր վատառողջ մարմինը, ըսաւ Լուտերի վրայ խօսելով, ու ճամբուն վտանգները, դժուարին՝ եւ մինչեւ անգամ անհնարին կընեն իրեն ձեր Սրբութեան հրամանին հնազանդիլը: Իր նեղութիւնը եւ իր աղերսանքները կըյօժարեցունեն զմեզ կարեկից ըլլալ իրեն: Վասն որոյ՝ ով սրբազնասուրբ Հայր, կաղաչեմք ձեզի իբրեւ հնազանդ որդեակներ, ճանչնալ զանիկայ իբրեւ մէկ մարդ մը՝ որ բնաւ երբէք թունաւորած չէ Հռովմէական Եկեղեցւոյ կանոններուն հակառակ վարդապետութիւններով":

Համալսարանը իր ունեցած փոյթովը նոյն օրը ուրիշ գիր մըն ալ խրկեց Կարոլոս Ֆօն Միլտիցի Սաքսոնացի աղնուականի մը, որ պապին սենեկապետն էր ու անոր խիստ սիրելին: Այս նամակին մէջ Լուտերի վրայով աւելի ազդու վկայութիւն մը տուին անոնք, քան որչափ առաջինին մէջ համարձակեր էին տալ: "Վերապատուելի Հայր Մարտինոս Լուտեր Օգոստինեանը, ըսին, մեր համալսարանին ամենէն երեւելի եւ ամենէն պատուաւոր անդամն է: Բաղմաթիւ տարիներէն 'ի վեր կըտեսնեմք անոր տաղանդը՝ անոր գիտութիւնը՝ արհեստներու եւ դրականութեան անոր ունեցած ներքին ծանօթութիւնը՝ անոր անմեղադրելի բարոյականը՝ եւ անոր Քրիստոնէական վարքը": Իր բոլորտիքը եղողներուն աս զօրաւոր սէրը Լուտերի արժանաւորութեանը մեծամեծ վկայութիւն մըն է:

Մինչդեռ մեծ հոգով կըսպասուէր աս գործիս վախճանին, նուազագոյն դժուարութեամբ վերջացաւ ան՝ քան որչափ կըյուսացուէր: Պապին նուիրակը տը Վիօ՝ առջի ընդունած ուրիշ պաշտօնի մը մէջ պզտիկ իյնալով, Գերմանիոյ մէջ իր դեսպանութիւնը նշանաւոր ընել կըբաղ-

ձոր ուրիշ երեւելի ծառայութիւնով մը։ Մտածեց որ եթէ հերետիկոսութիւնը վերցընէ, պատուով պիտի դառնայ Հռովմ. վասն որոյ աղաչեց պապին որ աս գործը իրեն յանձնէ։ Լեւոն իր կողմանէ աղէկ միտեալ էր Ֆրիդերիկոսի, որ այնպէս հաստատութեամբ դէմ կեցեր էր Կարոլոսի ընտրութեանը. ու կըզգար որ վերստին կրնայ կարօտիլ անոր օգնութեանը։ Աստի առանց այլ եւս նայելու Լուտերի գալուն՝ Օգոստոսի 23ին գրուած կոնդակով մը հրաման տուաւ իր նուիրակին որ ան գործը Գերմանիայի մէջ քննուի։ Երդ՝ պապը աս կերպ ընթացքի մը հաւանութիւն տալովը՝ իրեն վնաս մը չէր ըլլար, այլ ընդհակառակն՝ օգուտ. քանզի թէ որ Լուտեր հոն մնալով համոզուէր իր վարդապետութիւնը հերքելու, պիտի խափանուէր բոլոր ան աղմուկը եւ գայթակղութիւնը որ իր Հռովմ երթալէն պիտի պատճառէր։

"Կըպատուիրեմք քեզի, ըսաւ պապը, նախայիշեալ Լուտերը բռնադատել անձամբ քու առջեւդ երեւալու, հետամուտ ըլլալ եւ հնազանդութեան դարձունել զանիկայ, անմիջապէս աս մեր հրամանը ընդունելնուդ. որովհետեւ արդէն ինքը հերետիկոս ըլլալ վճռուած է մեր սիրելի Հերոնիմոս եղբօրմէն՝ Ասկուլանու եպիսկոպոսէն։

"Աս բանիս համար ուժ եւ օգնութիւն խնդրէ Քրիստոսով մեր ամենասիրելի որդիէն՝ Մաքսիմիլիանոսէն, ու Գերմանիայի ուրիշ իշխաններէն, եւ բոլոր ընկերութիւններէն, համալսարաններէն, եւ իշխանաւորներէն, թէ եկեղեցական եւ թէ աշխարհական։ Իսկ երբոր ձեռք կըձգես զինքը՝ զգուշութեամբ պահել տուր որ մեր առջեւը բերուի"։

Աս տեղս պապին ան ներող թոյլտուութիւնը ուրիշ բան չէր բայց եթէ Լուտերը Հռովմ քաշելու աւելի ապահով հնարք մը։ Այնուհետեւ կուգայ մեղմագոյն եղանակը։

"Իսկ որ խելքը գլուխը գալով իր պարտաւորութեանը դառնայ, ու ինքիրմէն եւ առանց յորդորուելու թողութիւն խնդրէ այսպիսի մեծ յանցանքի մը, իշխանութիւն կուտամք

քեզի ընդունել զանիկայ մայր սուրբ Եկեղեցւոյ միաւորութեանը" ։

Սակայն շուտով կըդառնայ պապը իր նզովքներուն ։

"Բայց թէ որ իր կամակորութեանը մէջ յարատևէ, և չկրնաս ձեռք ձգել զանիկայ, իշխանութիւն կուտամք քեզի դատապարտել զանիկայ Գերմանիայի բոլոր երկիրներուն մէջ. մերժել՝ նզովել և բանադրել ան ամէնը որ անոր յարեալ են, ու պատուիրել բոլոր Քրիստոնէից որ անոնց ընկերութենէն հրաժարին" ։

Ա՛ս ալ հերիք չէ ։

"Եւ վերջապէս՝ աս ժանտախտը առաւել ևս դիւրութեամբ բնաջինջ ըլլալու համար, բաց 'ի Մաքսիմիլիանոս կայսրէն՝ բանադրէ բոլոր եպիսկոպոսները՝ կրօնական կարգերը՝ համալսարանները՝ ընկերութիւնները՝ կոմսերը՝ դուքսերը և իշխանաւորները, որոնք հոգ չեն տանիր յիշեալ Մարտինոս Լութերը և անոր համախոհները բռնելու ու պատշաճաւոր և զգուշաւոր պահպանութեամբ զանոնք քեզի խրկելու ։ Եւ եթէ (որն որ Ա՛ստուած չընէ) նախայիշեալ իշխանները՝ ընկերութիւնները՝ համալսարանները և իշխանաւորները, կամ անոնց վերաբերեալ ո՛ և իցէ մէկը՝ յիշեալ Մարտինոսը ու անոր համախոհները պահեն, կամ օգնութիւն և խրատ տան անոնց յայտնի կամ ծածուկ՝ իրենց ձեռքով կամ ուրիշներուն ձեռքով, կընզովեմք ան իշխանները՝ ընկերութիւնները՝ համալսարանները և իշխանաւորները՝ իրենց քաղաքներովը՝ գիւղերովը՝ ագարակներովը և աւաններովը, ինչպէս և ան քաղաքները՝ գիւղերը՝ ագարակները և աւանները՝ ուր որ յիշեալ Մարտինոսը կըփախչի. որչափ որ ինքը հոն մնայ, և իր մեկնելէն ետև ալ մինչև երեք օր նզովեալ ըլլան անոնք" ։

Ա՛ս յանդուգն իշխանը որ կըկեղծաւորի երկրի վրայ փոխանորդ՝ ըլլալ Ա՛նոր որ ըսաւ՝ "Ա՛ստուած իր որդին չխրկեց աշխարհ՝ որ աշխարհը դատապարտէ, հապա որ աշխարհ անով փրկուի", իր անխծաբանութիւնը կըշարունա-

կէ. և եկեղեցականաց դէմ պատիժներ հրատարակելէն ետև՝ այսպէս կը յառաջանայ.

- "Իսկ աշխարհականներուն համար՝ թէ որ անոնք առանց յապաղելու կամ տարակուսելու քու հրամաններուդ չեն հնազանդիր, կը հրատարակեմք որ անոնք դատապարտեալ են, (՚ի բաց առեալ միշտ Կայսերական Վեհափառութիւնը,) անկարող օրինաւոր գործ մը կատարելու, անարժան քրիստոնէական թաղման, և զրկեալ բոլոր ան ժառանգութիւններէն որ կամ առաքելական աթոռէն և կամ ո և իցէ իշխանէ մը ընդունած են" ։

Աս եղանակ վարմունք մը պիտի ընդունէր Լուտեր։ Հռովմայ տիրապետողը ամէն բան պատրաստեր էր զանիկայ՝ նուաճելու. ամէն մէքենայ գործի դրեր էր. մինչև անգամ գերեզմանին հանգստութիւնն ալ ազատ ձգալու չէր։ Լուտերի կորուստը՝ անհրաժարելի կը թուէր. վասն զի ինչպէս կրնար ազատիլ աս զօրաւոր միաբանութենէն ։ Բայց Հռովմ սխալած էր. Աստուծոյ Հոգիէն պատճառեալ շարժումը անոր ատեանին վճիռներովը չէր կրնար սանձահարուիլ ։

Արդար և անաչառ քննութեան մը երևոյթը անգամ չէր պահուէր. քանզի արդէն հրատարակուած էր՝ թէ Լուտեր հերետիկոս է. ոչ միայն իր դատը լսուելէն առաջ, այլ իր անձամբ երևալուն համար սահմանուած ժամանակին լրանալէն ալ շատ առաջ ։

Ի վերջոյ երբոր Լուտեր աս կոնդակին վրայով տեղեկացաւ, ազատաբար յայտնեց իր սրտմտութիւնը ։ "Ահաւասիկ տես, ըսաւ, բանին խիստ երևելի մասը. կոնդակը ելեր էր Օգոստոսի 23ին, ու ես կոչուեր էի Օգոստոսի 7ին. ուստի իմ կոչուելուս և կոնդակին ելլելուն մէջ տասնըվեց օր անցեր էր ։ Հիմա՝ հաշուեցէք, և կը տեսնէք որ Տէր Հերոնիմոս Ասկուլանու եպիսկոպոսը ինծի դէմ ելաւ՝ դատ վարեց՝ դատապարտեց զիս՝ և հերետիկոս ըլլալ հրատարակեց զիս՝ կոչումը ինծի չհասած, կամ թէ որ

հասաւ ալ՝ բայց վաթսուն օրուան տեղ միայն տասնըվեց օր անցած էր։ Հիմա կը հարցընեմ թէ ի՞նչ եղան ան վաթսուն օրերը որ կոչումին մէջ ինծի շնորհուած էին։ Օգոստոսի 7ին սկսեցին, Հոկտեմբերի 7ին պիտի վերջանային։ Ասիկա՞յ է մի Հռովմայ ատեանին կարգը և եղանակը, որ մի և նոյն աւուր մէջ կը կոչէ, կը յորդորէ, կամբաստանէ, կը դատէ, կը դատապարտէ ու յանցաւոր ըլլալ կը վճռէ մէկ մարդ մը՝ որ այնչափ հեռի է Հռովմէ, և որ աս բաներուն մէկը չգիտէր։ Ի՞նչ պատասխան ունին տալ ամէն ասոնց"։

Բայց ան նոյն ատենը որ Հռովմ իր շանթերովը կը զինուորէր իր նուիրակը, կը ջանար մեղմ և շողոքորդիչ խօսքերով բաժանել Լուտերի բարեկամութենէն ան իշխանը, որուն զօրութենէն սաստիկ կը վախնար պապը։ Նոյն օրը՝ Օգոստոսի 23ին 1518ին Սաքսոնիայի կայսրընտրին ալ գրեց պապը։ Գործի դրաւ նոյն բանեցուցած վարպետութիւնը որ առաջ նշանակեցինք, և ջանաց շողոքորդել իշխանին անձնասիրութիւնը։

“Սիրելի որդեակ, ըսաւ Հռովմէական Քահանայապետը, երբոր կը մտածեմք ձեր ազնիւ և պատուաւոր Գերդաստանը, ձեզ՝ որ անոր գլուխը և զարդն էք, երբոր կը յիշեմք թէ ինչպէս դուք և ձեր նախնիքները միշտ բաղձացած էք պինտ պահել քրիստոնէական հաւատքը ու սուրբ աթոռին պատիւը և մեծութիւնը, չեմք կրնար հաւատալ թէ մէկ մարդ մը որ հաւատքը կը ձգէ կարենայ ձեր Բարձրութեան պաշտպանութեանը ապաւինիլ, ու անմտադրութեամբ իր ամբարշտութեան երասանակը արձակել։ Բայց և այսպէս՝ ամէն կողմերէն լսեցինք՝ թէ Մարտինոս Լուտեր անուն եղբայր մը՝ Օգոստինեան կարգի միաբան մը, իբրև որդի անօրէնութեան և անարգող Աստուծոյ՝ մոռացեր է իր կրօնաւորական զգեստը և իր կարգը՝ որ կը պահանջէ խոնարհութիւն և հնազանդութիւն, ու կը պարծենայ թէ ոչ իշխանութենէ կը վախնայ և ոչ մէկու մը պատիժէն, ապահով ըլլալով ձեր օգնութեան և պաշտպանութեան տակը, ինչպէս որ ինքը կըսէ։

"Բայց որովհետև քաջ գիտեմք թէ ասով ինքզինքը կը խաբէ, արժան համարեցանք գրել ձեր Բարձրութեանդ, և յորդորել զձեզ՝ ըստ կամացն Աստուծոյ, որ նախանձաւոր ըլլաք ձեր պատուոյն իբրև Քրիստոնեայ իշխան, զարդ և փառաւորութիւն և անուշահոտ բուրումն ձեր ազնիւ գերդաստանին. որ դուք զձեզ պաշտպանէք աս զրպարտութիւններէն, ու մաքրէք զձեզ ոչ միայն ան ձեզի ընծայուած մեծ յանցանքը գործելէն, հապա նաև նոյն ինքն ան կասկածէն որ աս միաբանին անիմաստ յանդգնութիւնը կը փութայ բերել ձեր վրայ":

Լևոն նոյն ատենը իմացուց Փրիդերիկոսի՝ թէ սրբոյն Սեկուսդոսի կարդինալին յանձնած է բանը քննելու, ու հրամանըրաւ անոր՝ որ նուիրակին ձեռքը տայ զԼուտեր. և վերստին յիշելով իր սիրելի առարկութիւնը՝ վրայ բերաւ, "Ով չըլլայ թէ հիմակուան և ետքէն գալու բարեպաշտ ժողովուրդները մէկ օր մը ողբան և ըսեն. Ամէնէն վնասակար հերետիկոսութիւնը որ Աստուծոյ եկեղեցին վշտացուց, աս ազնիւ և պատուաւոր գերդաստանին օգնութեամբը և պաշտպանութեամբը եղաւ": Այսպէս պատրաստեր էր Հռովմ իր ընթացքը: Մէկ կողմէն շողոքորդութեան յիմարեցուցիչ խունկը ծխեց, միւս կողմէն իր վրէժխնդրութիւնը և իր սպառնալիքները ծածկեալ պահեց:

Բոլոր երկրաւոր իշխանութիւնները, կայսրը՝ պապը՝ իշխանները և դեսպանները սկսեցին շարժիլ Էրֆուրթի նուաստ միաբանին դէմ, որուն ներքին պատերազմները արդէն նշանակեցինք:

## ՀԱՏՈՒԱԾ Գ

Աս նամակը ու կոնդակը տակաւին Գերմանիա չհասած, և մինչդեռ Լուտեր տակաւին կըվախնար թէ պիտի պարտաւորի Հռովմ երթալու, բարեվիճակ դիպուած մը միխ-

*թարեց իր սիրտը ։ Կըկարօտէր բարեկամի մը որուն ծոցը կարենար թափել իր վիշտերը, և որուն հաւատարիմ սէրը պիտի մխիթարէր իր տրտմութեան ժամերը ։ Աստուած այսպիսի բարեկամ մը խրկեց անոր Մելանկթոնը ։*

*Գէորգ Շ վարզէրդ վարպետ զինագործ մըն էր Բրէտէնի մէջ որ փալադինութիւն ըսուած գաւառին մէջ փոքրիկ քաղաք մըն է ։ փետրուարի 14ին 1497ին որդի մը ծնաւ ասոր, որն որ ինքը փիլիպպոս կոչեց, և որ ետքը շատ հռչակաւոր եղաւ Մելանկթոն անունով ։ Գէորգ՝ որ փալադինութեան՝ Բավարիայի և Սաքսոնիայի իշխաններուն սէրը կըվայելէր, իր առևտուրին մէջ ունեցած կատարեալ ուղղութեանը համար շատ նշանաւոր էր ։ Շատ անգամ գնոյ առնողներուն առաջարկած գինը չընդունելով բուն արժէքէն պակաս կառնէր. և թէ որ անոնց չքաւոր ըլլալը գիտնար, կըպարտաւորէր զանոնք իրենց ստակը ետ առնել ։ Սովորութիւն ըրած էր իրեն կէս գիշերուն արթըննալ, և իր ծունկերուն վրայ աղօթք ընել ։ Եթէ որ երբեք պատահէր որ չկըրնար կատարել աս պաշտօնը՝, բոլոր օրը ինքզինքէն տժգոհ կըլլար ։*

*փիլիպպոս լման տասնըմէկ տարու չեղած իր հայրը մեռաւ ։ Գէորգ իր մեռնելէն երկու օր առաջ իր որդին իր անկողինին քով կանչեց, ու յորդորեց զանիկայ որ միշտ զԱստուած իրեն ներկայ ունենայ ։ "Առաջուց կըտեսնեմ, ըսաւ մահուան մերձեցողը, որ մրրկալից ժամանակներ պիտի գան ։ Մեծ բաներ տեսայ ես, բայց աւելի մեծերը գալու են ։ Որդեակ իմ, Աստուած պահէ քեզ, ու առաջնորդէ քեզի" ։ փիլիպպոս իր հօրը օրհնութիւնը առնելէն ետև խրկուեցաւ Սփայր, որ իր հօրը մահը չտեսնէ ։ Իր մեկնած ատենը դառնարցունք լացաւ ։*

*Ռուետէր փիլիպպոսի հաւը՝ որ ինքն ալ նորահաս որդի մը ունէր, որբ տղեկին հայրութիւն ըրաւ ։ Իր տունը առաւ փիլիպպոսը ու անոր եղբայրը Գէորգը, և շատ չանցած Յովհաննէս Ունգարոսը վարժապետ բռնեց աս երեք*

տղոցը ։ Հունգարոս պատուական մարդ մըն էր , ու ետքը մեծ ազդուութեամբ Աւետարանի քարոզութիւն ըրաւ մինչև իր ծերութիւնը ։ Երբոր պատանիին վրայ յանցանք մը տեսնէր , ամենևին զանցառութեան չէր ձգեր , այլ խոհեմութեամբ կըպատժէր զանիկայ ։ "Այսպէս էր՝ ըսաւ Մելանկտոն 1554ին , որ զիս քերթող ըրաւ ան ։ Ինքը զիս կըսիրէր իբրև որդի , ես զինքը կըսիրէի իբրև հայր . և կը յուսամ թէ երկինքը պիտի տեսնեմք զիրար" ։

Փիլիպպոս երևելի էր իր մտքին կատարելութեանը՝ ուսման մէջ իր ունեցած դիւրութեանը՝ ու սորվածը ուրիշին հաղորդելու տաղանդին համար ։ Ամենևին չէր կրնար դատարկ կենալ , հապա միշտ կըփնտռէր մէկը՝ որուն հետ կարենար քննել իր լսած բաները ։ Շատ անգամ կըպատահէր որ գիտնական ճանապարհորդներ Բրետենէն կանցնէին ու Ռևտէրի տեսութեան կերթային ։ Այսպիսի դիպուածներու Ռևտէրի թոռը՝ անմիջապէս զանոնք կը դիմաւորէր , հետերնին խօսակցութեան կըմտնէր , ու խօսուած նիւթերուն վրայով այնպէս նեղը կըձգէր զանոնք , որ մտիկ ընողները կըզարմանային ։

Զօրաւոր տաղանդի մը հետ միացուցեր էր և մեծ քաղցրաբարոյութիւն , և այնպէս բոլոր զինքը ճանչցողներուն սէրը շահեր էր ։ Թոթովախօս էր , բայց գերահռչակ Յոյն ատենախօսին նման այնչափ յարատևութեամբ աշխատեցաւ աս պակսութիւնը լցունելու , որ ետքերը անոր նշոյլը անգամ չէր զգացուեր ։

Իր հայրը որ մեռաւ՝ մանկահասակ Փիլիպպոսը իր եղբօրը և իր հօրեղբօրը հետ Փֆորցհէյմի դպրոցը խրկուեցան ։ Աս պատանեակները իրենց ազգականներէն տիկինի մը տունը բնակեցան , որ հռչակաւոր Ռևկղինոսի քոյրն էր ։ Գիտութեան ծարաւովը Փիլիպպոս՝ Գէորգ Սիմլէրի վարժութեան տակը , արագ յառաջադիմութիւն ցուց տուաւ ուսման մէջ , և մանաւանդ Յունականին , որուն խանդակաթ սիրով անձնատուր եղած էր ։ Ռևկղինոս

շատ անգամ կերթար Փօրցհէյմ ։ Իր քրոջը տունը ծանօթացաւ հոն բնակող պատանիներուն, և շատ կըսքանչանար Փիլիպպոսի պատասխաններուն վրայ ։ Յունարէն քերականութիւն մը և Աստուածաշունչ մը ընծայ տուաւ անոր ։ Աս երկու գիրքերը պատանիին բոլոր կեանքին վարժութիւնը ըլլալ սահմանուած էին ։

Ռեւկլինոս Իտալիայի իր երկրորդ ճամբորդութենէն դառնալուն՝ իր մանկահասակ բարեկամը որ տասներկու տարու էր անատենը, իր գալստեան օրը շնորհաւորեց քանի մը բարեկամներու հետ անոր ներկայութեանը Լատիներէն կատակերգութեան արարուած մը ձեւացունելով, որն որ ինքը շարադրեր էր ։ Ռեւկլինոս պատանիին տաղանդին վրայ զմայլելով գորովանօք գրկեց զանիկայ, ու իր սիրելի որդին անուանեց, յետոյ ժպտելով անոր գլուխը դրաւ ան կարմիր գլխարկը՝ որն որ ինքը վարժապետութեան աստիճան առած ատենը ընդունեներ էր ։ Աս ատենս էր որ Ռեւկլինոս անոր Շվարցէրդ անունը Մելանկտոնի փոխեց ։ Աս բառերուն երկուքն ալ կընշանակեն Սեւ—Հողէր ․ մէկը Գերմաներէն լեզուով և միւսը Յունարէն ։ Անատեններուն գիտնականներէն շատերը իրենց անունները Յունարէնի կամ Լատիներէնի կըթարգմանէին ։

Մելանկտոն իր տասներկու տարեկան հասակին մէջ Հայտէլպէրկի համալսարանը գնաց ։ Հոն էր որ սկսեց գիտութեան վրայ իր ունեցած ծարաւը զովացընել ։ Տասնըչորսին մէջ իր ակադեմական առաջին աստիճանը առաւ ։ 1512ին Ռեւկլինոս Տուբինգէն հրաւիրեց զանիկայ, ուր որ շատ երևելի գիտնականներ հաւաքուած էին ։ Հոն աստուածաբաններուն՝ բժիշկներուն և իրաւաբաններուն դասաւանդութիւնը մտիկ ընելու կերթար ան ։ Չկար գիտութիւն մը որ ինքը արժանի չհամարէր հետամուտ ըլլալու ․ ոչ համբաւ կըփնտռէր, այլ ուսման ստացումը և օգուտը ։

Եւ յատկապէս Սուրբ Գրքերը իր Ուշադրութիւնը դրաւեր էին ։ Տուբինգէնի Եկեղեցին յաճախ գացողները

Նկատեր էին որ շատ անգամ ձեռքը գիրք մը ունէր ան, որ ժամերգութեանց պարապ միջոցներուն կըկարդար: Աս անծանօթ գիրքը հասարակ՝ աղօթագրքէն մեծ կերեւնար. և մէկ ձայն մը ելաւ թէ Փիլիպպոս աս միջոցներուն արտաքին պատմութիւն մը կըկարդար: Բայց ետքը իմացուեցաւ որ իրենց կասկածանացը ենթակայ եղած գիրքը Սուրբ Գրոց օրինակ մըն էր: Իր բոլոր կեանքին մէջ ամենայն ժրութեամբ կըգործածէր աս գիրքը: Աս պատուական հատորը հանապազ իր հետը կըպըտըտցունէր, մինչև անգամ հասարակաց զանազան ժողովատեղիները ուր որ ինքը կը կանչուէր, հետը կըտանէր զանիկայ: Դպրոցականներուն սնոտի դրութիւնը մերժելով Աստուծոյ պարզիմաց Բանին յարեցաւ: Էրասմոս աս ատենս գրելով Էկոլամպադիոսի, այսպէս կըսէ. “Մելանկտոնի վրայով մեծամեծ գաղափարներ և երևելի ակնկալութիւններ ունիմ: Քրիստոս այնպէս կարգադրէր դիպուածները, որ մեզմէ շատ աւելի ապրէրան: Ինքը բոլորովին պիտի նսեմացընէ Էրասմոսը”:

'Ի վերայ այսր ամենայնի՝ Մելանկտոն իր ժամանակին սխալմանցը բաժանորդ էր: “Կըզարհուրիմ, ըսաւ ինքը՝ իր կենացը զարգացած մասին մէջ, երբոր կըմտածեմ ան սնապաշտական յարգութիւնը որ արձաններուն կըմատուցանէի, որ ատեն դեռ պապադաւան էի”:

1514ին Վարժապետ փիլիսոփայութեան եղաւ, ու սկսեց հրապարակաւ դասաւանդութիւն ընել: Անատենը տասնըեօթը տարու էր: Իր վարդապետութեանը անանկ մէկ փայլըչութիւն մը կընծայէր որ սքանչելի ընդդիմադրութիւն մը կըձևացունէր ան անախորժ մեթոտոսին հետ՝ որուն անատենը կըհետևէին վարժապետները, և յաւէտ վարդապետները: Խօսակցութեան մէջ հաճելի՝ կենցաղավարութեան մէջ հեզաբարոյ և շնորհալի՝ և զինքը ճանչցողներուն բոլորին սիրելի ըլլալով, գիտնականաց մէջ շուտ մը՝ մեծ արժանաւորութիւն և համբաւ ստացաւ:

Աս միջոցիս Ֆրիդերիկոս կայսրընտիրը կըմտածէր ե-

րելի գիտնական մը հրաւիրել Վիդդէմպերկի իր համալսարանին մէջ հին լեզուներու վարժապետ ըլլալու ։ Կոչեց Ռեւկլինոսի, ան ալ Մելանկտոնը ցուցուց ։ Մելանկտոն կիմանար թէ աս հրաւէրքիս մէջ Աստուծոյ ձայնը կայ ։ Բոլոր համալսարանը տրտմեցաւ իր մեկնելուն վրայ , և սակայն կային ոմանք որ կընախանձէին և կատէին զանիկայ ։ Ողջոյն հրաժարական տուաւ իր հայրենեացը ըսելով . “Տէրոջը կամքը ըլլայ” . ինքը անատենը քսանըմէկ տարեկան էր ։

Մելանկտոն ձիով կատարեց աս ճամբորդութիւնը , անցնելով Լիփսիայէն որ իր ճամբուն վրայ էր ։ Աս քաղքին համալսարանը իր պատուոյն համար խնջոյք մը ըրաւ , որ արդարև ակադեմական խնջոյք մըն էր ։ Բազմատեսակ կերակուրներ կըբերուէին կարգաւ , և ամէն մէկը սեղանին վրայ դրուելուն՝ վարժապետներուն մէկը կըկանգնէր , և առաջուց պատրաստուած Լատիներէն ճառ մը կըխօսէր Մելանկտոնին , որ ան ալ մէկէն 'ի մէկ պատասխան կուտար ։ 'Ի վերջոյ հոգնելով այսչափ պերճաբանութենէ , ըսաւ անոնց . “Ով պերճիմաստ բարեկամք , թող տուէք ինծի անգամ մը պատասխան տալ ձեր բոլոր ատենաբանութեանցը . վասն զի՝ բոլորովին անպատրաստ ըլլալովս , չեմ կրնար իմ պատասխանատուութեանս այնչափ այլայլութիւն տալ որչափ որ դուք ձեր ատենախօսութեանց մէջ խօթեցիք” ։ Ասոր վրայ կերակուրները կըբերուէին առանց ատենախօսութիւն մը ըլլալու ։

Մելանկտոն Վիդդէմպերկ հասաւ Օգոստոսի 25ին 1518ին , Ժ Լեոնին՝ Տը Վիօ կարդինալին խրկած կոնդակին ու կայսրընտրին նամակին գրուելէն երկու օր ետքը ։

Վիդդէմպերկի վարժապետները այնչափ մարդասիրութեամբ չընդունեցին զՄելանկտոն որչափ Լիփսիայինները ընդուներ էին ։ Տեսան պատանի մը՝ որ իր իսկապէս եղածէն ալ պզտիկ կերևէր , փոքրահասակ , երկչոտ և զգուշաւոր շարժուածքով ։ Ասիկա՞յ է , կըմտածէին , ան

հռչակաւոր վարժապետը, որ մեր օրուան մեծամեծ մարդիկը՝ ինչպէս Էրասմոս և Ռուէկլինոս, այնչափ գերազանց կը բարձրացընեն։ Ո՛չ Լութեր՝ որուն նախ առաջին զինքը ծանօթացուց, և ո՛չ անոր ընկերները անոր վրայով մեծ յոյս մը ունեցան, երբոր տեսան անոր հասակին փոքրկութիւնը՝ անոր կասկածոտութիւնը և անոր երկչոտ վարքը։

Իր հասնելէն չորս օր ետքը՝ Օգոստոսի 29ին իր հռչակաւոր՝ ատենախօսութիւնը ըրաւ։ Բոլոր համալսարանը հոն հաւաքուած էր։ Տղան՝ ինչպէս որ Լութեր զանիկայ կը կոչէ, այնպէս գեղեցիկ Լատիններէն խօսեցաւ, և ցուցուց այնչափ գիտութիւն՝ այնպէս մշակեալ միտք մը և այնչափ զօրաւոր դատողութիւն, որ իր ունկնդիրներուն բոլորը սքանչացան։

Ատենախօսութիւնը լմննալուն պէս ամէնն ալ իր բոլորտիքը հաւաքեցան զինքը շնորհաւորելու. բայց ո՛չ մէկը Լութերէն աւելի ուրախութիւն զգաց։ Իր սրտին զգացումները անմիջապէս իր բարեկամներուն հաղորդեց։ Օգոստոսի 31ին գրեց Սպալատինին և ըսաւ. «Մելանկտոնը իր գալէն միայն չորս օր ետքը այնպէս գեղեցիկ և իմաստալից ատենախօսութիւն մը ըրաւ, որ ամէնն ալ հաճութեամբ և զարմացմամբ մտիկ ըրին։ Շուտ մը փարատեցան մեր նախապաշարմունքները որ իր անձնական երևոյթէն ըմբռներ էինք. հիմա մենք անոր պերճախօսութիւնը կը գովենք զմայլելով։ Շնորհակալ ենք իշխանէն և ձեզի՝ ձեր մեզի ըրած բարերարութեանը համար։ Ասկէց աղէկ Յունարէնի վարժապետ չեմ կրնար ուզել։ Բայց կը վախնամ որ մեր աղքատօրէն ապրուստը իր փափկասուն մարմնոյն չպիտի յարմարի, և որ մենք չպիտի կրնանք երկար ժամանակ պահել զինքը իր վարձքին նուազութեանը համար։ Կը լսեմ որ Լիփսիայի ժողովուրդը արդէն կը պարծին թէ մեր ձեռքէն պիտի առնեն զինքը։ Սիրելի՛դ իմ Սպալատին, զգուշ կեցիր անոր հասակը ու անձնական երևոյթը արհամարհելէն։ Այս մարդը մեծամեծ պատուոյ արժանաւոր է»։

Մ՝ելանկտոն անմիջապէս սկսեց մեկնել Հոմերոսը և սրբոյն Պօղոսի Թուղթը առ Տիտոս․ ուժգին եռանդով բորբոքած էր ինքը: "Իմ բոլոր զօրութիւնս գործի պիտի դնեմ, գրեց Սպալատինին, Վիտտեմպերկի մէջ գիտութիւնը և առաքինութիւնը սիրողներուն սէրը շահելու": Իր ատենախօսութենէն չորս օր ետքը Լուտեր վերստին գրեց Սպալատինին:

"Ձեր յատկական խնամքին կը յանձնեմ զայն մեծիմաստ և ամենասիրելի Յունագէտ Փիլիպպոսը: Իր դասատուութեան սենեակը միշտ լեցուն է․ յատկապէս բոլոր աստուածաբանները իր դասասացութեանը ունկնդրութեան կ'երթան: Անոնց ամէնը՝ թէ բարձրագոյն թէ ստորնագոյն և թէ միջին դասու ըլլան՝ Յունարէն սորվելու կըդնէ":

Մ՝ելանկտոն ալ Լուտերի սիրոյն դարձաւ․ անմիջապէս նկատեց անոր վրայ քաղցր բնաւորութիւն մը՝ զօրաւոր միտք՝ քաջութիւն՝ և իմաստութիւն մը, որ մինչև անատենը ամենևին գտած չէր ուրիշ մէկու մը վրայ: Պատուեց և սիրեց զանիկայ: "Թէ որ կայ մէկը, ըսաւ, որ ես բոլոր սրտովս կը սիրեմ և կընդունիմ, Մարտինոս Լուտերն է":

Այսպիսի զգացումներով իրարու պատահեցան Լուտեր և Մ՝ելանկտոն, և իրենց բարեկամութիւնը մինչև 'ի մահ տևեց: Չեմք կրնար ըստ բաւականին զմայլիլ Աստուծոյ բարութեանը և իմաստութեանը վրայ, որ մէկտեղ բերաւ երկու մարդիկ այսչափ իրարմէ տարբեր, և սակայն այսչափ իրարու հարկաւոր: Այնչափ նշանաւոր էր Մ՝ելանկտոն սրամտութեան՝ խոհեմութեան և հեզութեան կողմանէ, որչափ Լուտեր եռանդոտութեան՝ ուժգնութեան և զօրութեան կողմանէ: Լուտեր կենդանացուց զՄ՝ելանկտոն, Մ՝ելանկտոն չափաւորեց զԼուտեր: Կընմանէին Ելէք-տրիականի հաստատական և ժխտական զօրութիւններուն, որոնց փոխադարձ գործողութեամբը հաւասարակշռութիւնը կը պահուէր: Թէ որ Մ՝ելանկտոն Լուտերի քովը չըլլար, կարելի էր որ գետը իր եզերքը կոխէր․ երբոր

Լուտեր անոր քովը չըլլար, Մելանկթոն կըտարտկուէր, ու հարկաւոր չեղած տեղը ետ կըքաշուէր : Լուտեր շատ բան տեսաւ ուժով, Մելանկթոն գուցէ անկէց պակաս բան չտեսաւ մեղմ և հեզիկ կերպով : Երկուքն ալ արդար անկեղծ և ազնուաբարոյ էին. երկուքն ալ յաւիտենական կենաց Բանին վրայ լեցուն սէր ունէին, և կըքարոզէին զանիկայ հաւատարմութեամբ :

Մելանկթոնի գալուստը ներգործութիւն մը ըրաւ ոչ միայն Վիդդէմպէրկի՝ այլ բովանդակ Գերմանիայի և իմաստնոց աշխարհին մէջ : Յունաց և Լատինացւոց հին հեղինակներէն և փիլիսոփայութենէ իր առած վարժութիւնը կարգաւորութիւն՝ յստակութիւն և ճշդութիւն տուեր էին իր գաղափարներուն որ իր ձեռնարկած նիւթերուն վրայ նոր լոյս մը և անպատմելի գեղեցկութիւն մը կը տարածէին : Աւետարանին քաղցր ոգին կըբեղմնաւորէր և կըկենդանացունէր իր բոլոր խորհուրդները. և իր դասախօսութեանցը մէջ խիստ անճաշակ գիտութիւնները այնպիսի վայելչութեամբ զարդարուած կերևէին որ բոլոր ունկընդիրները կըզմայլեցընէին : Մելանկթոնի ձեռքովը նոր կանոն մը սկսուեցաւ ուսուցանելու և ուսանելու : Գերմանացի երևելի պատմագիր մը * կըսէ, "Շնորհակալութիւն իրեն, Վիդդէմպէրկ բոլոր ազգին դպրոցը եղաւ" :

Ապաքէն շատ հարկաւոր էր որ Յունարէնին քաջ տեղեակ եղող մէկը դասատու ըլլայ աս համալսարանին մէջ. քանզի աստուածաբանութեան նոր յառաջադիմութիւնները կըհրաւիրէին վարժապետները և աշակերտները Յունարէն բնիկ լեզուով սորվելու քրիստոնէական հաւատոյ սկզբնական վարդապետութիւնները : Այն ատենէն Լուտեր մեծ փութով անձնատուր եղաւ աս աշխատութեանը. քանի մը Յունարէն բառերու նշանակութիւնը՝ որ մինչև ան ատենը իմացած չէր, յանկարծ կըլուսաւորէր իր

* Plank պատմագիր

աստուածաբանական գաղափարները ։ Ի՛նչ սփոփանք և ի՛նչ ցնծութիւն չզգաց, երբոր տեսաւ, օրինակի՛ աղագաւ, թէ Յունական բառը՝ μετάνοια (Մէթանիա), որն որ Լատինական Աւետարանին՝ կըձեկնէր ապաշխարանք մը, եկեղեցիէն պահանջուած մէկ հատուցում մը, մարդկային քաւութիւն մը, Յունարէնին մէջ կընշանակէր փոփոխութիւն մը կամ սրտի դարձ մը ։ Այն ատենը վաղվաղակի մէկ թանձր մառախուղ մը փարատեցաւ իր աչքերուն առջևէն ։ Այս բառին տրուած երկու նշանակութիւնները բաւական են ան երկու Եկեղեցիներուն որպիսութիւնը ճշդիւ ցուցընելու ։

Մ՚ելանքթոնին տուած գրգիռը Լուտերին՝ անոր Աստուածաշունչի թարգմանութեանը մէջ, աս երկու երևելի մարդոց բարեկամութեանը նշանաւոր պարագաններուն մէկն է ։ Լուտեր 1517էն սկզբնաւորութիւն մը ըրեր էր աս թարգմանութեան, ու կըցածին չափ Յունարէն և Լատիներէն գրքեր հաւաքեր էր ։ Բայց հիմայ իր սիրելի Փիլիպպոսին օգնականութեամբը իր աշխատութիւնը նոր զօրութիւնով սկսեց յառաջանալ ։ Լուտեր պարտաւորեց զՄ՚ելանքթոն որ իր քննութիւններուն մէջ իրեն ընկերութիւն ընէ. դժուարին տեղերը անոր հետ կըխորհէր ։ Աս գործը՝ որ Վարթպուրկին մենաւոր գործերուն մէկն ըլլալ սահմանուած էր, աւելի ապահովութեամբ և արագութեամբ իր վախճանին կըյառաջանար ։

## ՀԱՏՈՒԱԾ Դ

Մ՚ԵԼԱՆՔՏՈՆԻ գալուստը անտարակոյս քաղցր հանգստութիւն մը ընծայեց Լուտերի մտքին՝ այսպիսի վտանգաւոր վայրկեանի մը ։ Անտարակոյս նոր բարեկամութեան մը անուշակ ծանուցմամբը՝ ու գրաւորական վարժութեանց զբաղմամբը՝ որուն Լուտեր անձնատուր եղաւ նոր նախան-

ձաւորութեամբ, երբեմն բոլորովին մոռցաւ Հռովմը՝ Գրիգորիսը՝ Լևոնը՝ և այն եկեղեցական ատեանը որուն առջևը ինքը պիտի կայնէր: Այլ սակայն ատենք կարճատև վայրկեաններ էին, որ շուտով անցան գացին: Քանզի իր խորհուրդները հանապազ կըդառնային այն ահաւոր ատեանին վրայ՝ որուն առջևը կանչուեր էր իր ոխերիմ թշնամիներուն զօրութեամբը: Ինչ սարսափով աս խորհուրդը չպիտի լեցըներ ամէն հոգին որ ճշմարտութենէ 'ի զատ ուրիշ բան կըփնտռէր: Բայց Լուտեր չպարհուրեցաւ. Աստուածային հաւատարմութեանը և կարողութեանը վրայ յեցուն հաւատք ունենալով՝ հաստատուն մնաց, և պատրաստ էր ճշմարտութեանը համար առանձին դիմադրել ըլլալ ամենատատիկ թշնամիներու բազմութեանը:

Մեկնելու հաւանելէն քանի մը օր ետքը՝ ու դեռ չիմացուած պապին վճիռը որ Լուտերի դատաստանը Հռովմէն կըփոխադրէր Աւկսպուրկ տեսնուելու, Լուտեր այսպէս գրեց Սպալատինի. "Չեմ խնդրեր մեր իշխանէն որ իմ նախադասութիւններս պաշտպանելու համար բան մը ընէ. ես պատրաստ եմ մատնուելու, և միայնակ ձգուելու իմ բոլոր թշնամիներուս ձեռքը: Կայսրընտիրը թող ձգէ որ մրրիկը իր բոլոր կատաղութիւնը իմ վրաս թափէ: Ան՝ որուն ես ձեռնամուխ եղայ պաշտպանելու, կըյուսամ թէ Քրիստոսի օգնութիւնովը պիտի կարողանամ հաստատելու: Իսկ բռնութեան կողմանէ՝ հարկաւ պարտիմք զիջանիլ ատոր, բայց առանց ուրանալու զճշմարտութիւնը":

Լուտեր իր համարձակութիւնը ուրիշներուն ալ հաղորդեց: Ամենէն հեզահոգի և ամենէն երկչոտ մարդիկ ճշմարտութեան վկային վրան գալու վտանգը տեսնելնուն աղդուութեամբ և սրամտութեամբ լեցուն խօսքեր կըխօսէին: Յոհենմամպուն և խաղաղասէրն Ստաուպից Սեպտեմբերի 7ին գրեց Սպալատինի. "Մի դադրիք յորդորել զիշխանը մեր գլուխը, որ աղուէսներուն մէնչըլլէն չվախնայ: Պաշտպան թող կանգնի ճշմարտութեան, առանց նայելու Լուտերի՝

կամ Աստուածպիցէ՝ կամ ուրիշ մէկուն ։ Գոնէ միայն մէկ տեղ մը թող գտնուի, ուր կարող ըլլանք ազատաբար և առանց երկիւղի խօսիլ ։ Կ՚իմանամ որ Նորքեթոնի (մեզ մեծ ցաւ պիտի ըլլայ Հռովմայ) հարուածը արձակուած է ան ամենուն վրայ, որ զՔրիստոս շահի համար փառասէրներուն չար սովորութեանցը դէմ կը յարձակին ։ Այս ինքնս տեսայ որ ամպիոնէն վար քաշեցին մէկը՝ որ կը քարոզէր ճշմարտութիւնը, և՝ թէպէտ տօն օր մը, կապեցին ու բանտը դրին զանիկայ ։ Ուրիշները աւելի մեծ անգթութիւններ տեսած են ։ Այնան որոյ՝ ով կաթողին տիրեցեալ, հանեցուր փոխանակ իշխանին միտքը, որ իր գաղափարներուն մէջ յառաջանէ" ։

՚Ի վերջոյ հասաւ ան հրամանը որ կը պատուիրէր զԼուտեր կարդինալ Գայետանին առջևը երևնալու Աւգսպուրկի մէջ ։ Ու հիմա Լուտերի բանը Հռովմէական Եկեղեցւոյ իշխաններուն մէկին հետն էր ։ Ասոր բոլոր իր բարեկամները աղաչեցին իրեն որ ճամբայ չելլէ ։ Կը վախնային որ իր ճամբուն վրայ և որոգայթ մը լարուած ըլլայ, կամ իր կենացը դէմ դաւաճանութիւն մը ըլլայ ։ Ոմանք ջանացին պահուըտելու տեղ մը գտնել անոր ։ Նոյն ինքն Ստաուպից՝ երկչոտ Ստաուպից խռովեցաւ մտածելով անհեղութիւնները որ պիտի գար ան եղբայր Մարտինոսին՝ որն որ ինքը վանքին առանձնութենէն յառաջ քաշեր և ամբոխեալ ծովու մը վրայ ձգեր էր, ուր որ հիմա անոր կեանքը վտանգի մէջ էր ։ Ո՛հ, լաւագոյն չպիտի՞ ըլլար որ աս եղբայրը իր բովանդակ կեանքին մէջ անծանօթ մնար ։ Ու հիմա ատենը անցած է . և սակայն զանիկայ փրկելու համար իր բոլոր կրցածը պիտի ընէ ։ Այսպէս Սեպտեմբերի 15ին Սալցպուրկի իր վանքէն գրեց անոր որ փախչի և իր քովը երթայ բնակի ։ "Կ՚երթուի ինծի, ըսաւ, որ բոլոր աշխարհ կատաղութեամբ ճշմարտութեան դէմ միաբաներ է ։ Այսպէս ատելի եղաւ և խաչեալ Յիսուսը ։ Չեմ տեսներ որ ուրիշ բանի մը ակնկալութիւն ունենաս բաց 'ի հալածմանէ ։

Ինէ և Քրիստոսի պատուէրն է սուրբ Գրքերը քննելը , բայց շատ չանցած տուանց պապին հրամանին մէկը պիտի չկրնայ քննել զանոնք՝ և անոնցմէ սորվիլ զՔրիստոս : Քու բարեկամներուդ թիւը քիչ է . Աստուած աս քիչ բարեկամներուն քաջութիւն շնորհէ , որ քու ահաւոր թշնամիներուդ դէմ կայնին : Քու բռնելու ամենէն խելացի ճամբադ ատեն մը Միդդէմպերկը ձգել , ու գալ և իմ հեռու բնակիլն է : Անատենը մէկ տեղ ապրիմք ու մէկ տեղ մեռնիմք . իշխանին կարծիքն ալ ասիկայ է :

Լուտեր զանազան կողմերէ զարհուրեցուցիչ լուրեր առնաւ : Մանսֆէլտի Ալպերտ կոմսը պատգամ խրկեց անոր որ չըլլայ թէ ճամբայ ելլէ , վասն զի քանի մը երևելի ազնուականներ երդումով կապուեր էին բռնել ու խեղդել , կամ ջուրը նետել զանիկայ : Բայց բան մը չկրցաւ շարժել անոր առաջադրութիւնը : Չուզեց ականջ դնել Ստաւպիցին առաջադրութեանը , թէ՝ երթայ Սալցպուրկի վանքին մէջ պահուի . այլ հաւատարմութեամբ պիտի մնայ ան ալեկոծեալ թատրոնին մէջ՝ ուր որ Աստուծոյ ձեռքը զինքը դրաւ : Գիտէր որ հակառակորդներուն մէջ տեղը յարատևելով աշխարհի մէջ ճշմարտութիւնը յայտնաբարբառ քարոզելով ճշմարտութեան թագաւորութիւնը կը յառաջանայ : Ուրեմն ինչո՞ւ պիտի փախչի . կորստեան դարձողներուն թիւէն չէ ինքը , այլ իրենց հոգիներուն փրկութեանը հաւատացողներէն : Աս խօսքը Վարդապետին՝ որուն մշտնջենաւորապէս ծառայել ու զանիկայ սիրել ուխտեր էր , իր ականջին հնչեց . "Ով որ մարդոց առջև իս կը դաւանի , ես ալ անիկայ կը դաւանիմ՝ իմ Հօրս առջևը որ երկինքն է" : Լուտերի և Բարեկարգութեան պատմութեանը մէջ ամէն տեղ մենք զմեզ ներկայ կը գտնեմք ան աներկիւղ հոգիին՝ ան գերագոյն բարոյականութեան՝ ան անսահման սիրոյն առջևը , որն որ Քրիստոնէութեան առաջին հաստատութիւնը երևան հանեց աշխարհի : "Երեմիայի պէս՝ ըսաւ Լուտեր աս մեր պատմած ատենը , հա-

հատակութիւն և գրգռութիւն կրելու մէկն եմ . բայց որչափ որ իրենց սպառնալիքները կաւելցընեն , այնչափ իմ ուրախութիւնս կը շատցընեն ։ Արդէն իմ պատիւս և իմ բարի անունս ինծմէ հանեցին ։ Ինծի մնացածին բոլորը իմ տառապեալ մարմինս է . ան ալ թող առնեն , այսպէս քանի մը ժամ պիտի կարճըցունեն իմ կեանքս . իսկ իմ հոգիս՝ անիկայ չպիտի առնեն ։ Ան՝ որ կառաջադրէ Քրիստոսի Բանը աշխարհի մէջ տարածել , ամէն ժամու մահուան պատրաստ յուսալ ։

Այս միջոցիս կայսրընտիրը Աւկսպուրկ էր . ու երբոր ժողովէն ելլելու վրայ էր , Լուտերի համար երաշխաւոր եղաւ դեսպանին իր առջևը երևալու , որ ան ալ խոստացաւ Փրետերիկոսին՝ մարդասիրութեամբ զանիկայ ընդունելու ։ Սպալատին իշխանին հրամանաւը գրեց իր բարեկամին՝ թէ պապը գործակալ մը կարգեր էր որ իր դատը Գերմանիայի մէջ վարուի . թէ կայսրընտիրը չպիտի թողուր որ զինքը Հռովմ տանին . և իմացուց անոր որ պատրաստուի ճամբայ ելլել Աւկսպուրկ երթալու ։ Լուտեր որոշեց հնազանդիլ . Մանսֆելտի կոմսէն առած լուրը հաւանեցոյց զինքը Փրետերիկոսէն ապահովութեան հրամանագիր մը խնդրել ։ Կայսրընտիրը պատասխան տուաւ թէ հարկաւոր չէ ան , ու խրկեց անոր միայն յանձնարարական գրեր Աւկսպուրկի խորհրդականներէն քանի մը խիստ երևելիներուն տալու ։ Նոյն ատենը՝ իր ճամբորդութեանը համար քիչ մըն ալ ստակ խրկեց , ու Բարեկարգողը՝ աղքատ և անպաշտպան հետի ճամբայ ելաւ ինքզինքը իր թշնամիներուն զօրութեանը մատնելու ։

Ի՜նչ զգացումներով Վիդէնպերկէն ելած՝ և իր քայլերը դէպի Աւկսպուրկ ուղղած պիտի ըլլայ , ուր որ պապին դեսպանը կըսպասէր իրեն ։ Իր ճամբորդութեանը նպատակը Հայտելպերկ ըրած ճամբորդութեանը նպատակին պէս բարեկամական տեսակցութիւն մը չէր . պիտի երևար՝ առանց պաշտպանութեան՝ Հռովմայ դեսպանին





հռչակաւոր վարժապետը, որ մեր օրուան մեծամեծ մարդիկը՝ ինչպէս Էրասմոս և Ռուկլինոս, այնչափ գերազանց կըբարձրացընեն: Ո՛չ Լուտեր՝ որուն նախ առաջին զէնքը ծանօթացուց, և ոչ անոր ընկերները անոր վրայով մեծ յոյս մը ունեցան, երբոր տեսան անոր հասակին փոքրկութիւնը՝ անոր կասկածոտութիւնը և անոր երկչոտ վարքը:

Իր հասնելէն չորս օր ետքը՝ Օգոստոսի 29ին իր հռչակաւոր՝ ատենախօսութիւնը ըրաւ: Բոլոր համալսարանը հոն հաւաքուած էր: Տղան՝ ինչպէս որ Լուտեր զանիկայ կը կոչէ, այնպէս գեղեցիկ Լատիներէն խօսեցաւ, և ցուցուց այնչափ գիտութիւն՝ այնպէս մշակեալ միտք մը և այնչափ զօրաւոր դատողութիւն, որ իր ունկնդիրներուն բոլորը սքանչացան:

Ատենախօսութիւնը լսողներուն ամէնն ալ իր բովանդակը հաւաքեցան զինքը շնորհաւորելու. բայց ոչ մէկը Լուտերէն աւելի ուրախութիւն զգաց: Իր սրտին զգացումները անմիջապէս իր բարեկամներուն հաղորդեց: Օգոստոսի 31ին գրեց Սպալատինին և ըսաւ. "Մելանկտոնը իր գալէն միայն չորս օր ետքը այնպէս գեղեցիկ և իմաստալից ատենախօսութիւն մը ըրաւ, որ ամէնն ալ հաճութեամբ և զարմացմամբ մտիկ ըրին: Շուտ մը փարատեցան մեր նախապաշարմունքները որ իր անձնական երևոյթէն ըմբռներ էինք. Հիմա մենք անոր պերճախօսութիւնը կըգովեմք զմայլելով: Շնորհակալ եմք իշխանէն և ձեզմէ՝ ձեր մեզի ըրած բարերարութեանը համար: Ասկէց աղէկ Յունարէնի վարժապետ չեմ կրնար ուզել: Բայց կըվախնամ որ մեր աղքատօրէն ապրուստը իր փափկասուն մարմնոյն չպիտի յարմարի, և որ մենք չպիտի կրնամք երկար ժամանակ պահել զինքը իր վարձքին նուաղութեանը համար: Կը լսեմ որ Լիփսիայի ժողովուրդը արդէն կըպարծին թէ մեր ձեռքէն պիտի առնեն զինքը: Սիրելի՛դ իմ Սպալատին, զգոյշ կեցիր անոր հասակը ու անձնական երևոյթը արհամարհելէն: Աս մարդը մեծամեծ պատուոյ արժանաւոր է":

Մելանկտոն անմիջապէս սկսեց մեկնել Հոմերոսը և սրբոյն Պօղոսի Թուղթը առ Տիտոս․ ուժգին եռանդով բորբոքած էր ինքը։ "Իմ բոլոր զօրութիւնս գործի պիտի դնեմ, գրեց Սպալատինին, Վիդդէմպէրկի մէջ գիտութիւնը և առաքինութիւնը սիրողներուն սէրը շահելու"։ Իր առենախօսութենէն չորս օր ետքը Լութեր վերստին գրեց Սպալատինին ։

"Ձեր յատկական խնամքին կը յանձնեմ զան Մեծիմաստ և ամենապատուելի Յունագէտ Փիլիպպոսը։ Իր դասատուութեան սենեակը միշտ լեցուն է․ յատկապէս բոլոր աստուածաբանները իր դասասացութեանը ունկնդրութեան կերթան։ Անոնց ամէնը՝ թէ բարձրագոյն թէ ստորնագոյն և թէ միջին դասու ըլլան՝ Յունարէն սորվելու կըղնէ" ։

Մելանկտոն ալ Լութերի սիրոյն դարձաւ․ անմիջապէս նկատեց անոր վրայ քաղցր բնաւորութիւն մը՝ զօրաւոր միտք՝ քաջութիւն՝ և իմաստութիւն մը, որ մինչև անատենը ամենևին գտած չէր ուրիշ մէկու մը վրայ։ Պատուեց և սիրեց զանիկայ։ "Թէ որ կայ մէկը, ըսաւ, որ ես բոլոր սրտովս կը սիրեմ և կընդունիմ, Մարտինոս Լութերն է"։

Այսպիսի զգացումներով իրարու պատահեցան Լութեր և Մելանկտոն, և իրենց բարեկամութիւնը մինչև 'ի մահ տևեց։ Չեմք կրնար ըստ բաւականին զմայլիլ Աստուծոյ բարութեանը և իմաստութեանը վրայ, որ մէկ տեղ բերաւ երկու մարդիկ այսչափ իրարմէ տարբեր, և սակայն այսչափ իրարու հարկաւոր ։ Այնչափ նշանաւոր էր Մելանկտոն սրամտութեան՝ խոհեմութեան և հեզութեան կողմանէ, որչափ Լութեր եռանդոտութեան՝ ուժգնութեան և զօրութեան կողմանէ ։ Լութեր կենդանացուց զՄելանկտոն, Մելանկտոն չափաւորեց զԼութեր ։ Կընմանէին Ելէքտրիոնականի հաստատական և ժխտական զօրութիւններուն, որոնց փոխադարձ գործողութեամբը հաւասարակշռութիւնը կը պահուէր ։ Թէ որ Մելանկտոն Լութերի քովը չըլլար, կարելի էր որ գետը իր եզերքը կոխէր․ երբոր

Լութեր անոր քովը չըլլար, Մելանկթոն կըտարակուսէր, ու հարկաւոր չեղած տեղը ետ կըքաշուէր։ Լութեր շատ բան տեսաւ ուժով, Մելանկթոն գուցէ անկէց պակաս բան չտեսաւ մեղմ և հեզիկ կերպով։ Երկուքն ալ արդար անկեղծ և ազնուաբարոյ էին. երկուքն ալ յաւիտենական կենաց Բանին վրայ լեցուն սէր ունէին, և կըքարոզէին զանիկայ հաւատարմութեամբ։

Մելանկթոնի գալուստը ներգործութիւն մը ըրաւ ոչ միայն Վիդդէմպէրկի՝ այլ բովանդակ Գերմանիայի և իմաստնոց աշխարհին մէջ։ Յունաց և Լատինացւոց հին հեղինակներէն և փիլիսոփայութենէ իր ստացած վարժութիւնը կարգաւորութիւն՝ յստակութիւն և ճշդութիւն տուեր էին իր գաղափարներուն որ իր ձեռնարկած նիւթերուն վրայ նոր լոյս մը և անպատմելի գեղեցկութիւն մը կը տարածէին։ Աւետարանին քաղցր ոգին կըբեղմնաւորէր և կըկենդանացունէր իր բոլոր խորհուրդները. և իր դասասացութեանցը մէջ խիստ անճաշակ գիտութիւնները այնպիսի վայելչութեամբ զարդարուած կերևէին որ բոլոր ունկընդիրները կըզմայլեցընէին։ Մելանկթոնի ձեռքովը նոր կանոն մը սկսուեցաւ ուսուցանելու և ուսանելու։ Գերմանացի երևելի պատմագիր մը * կըսէ, "Շնորհակալութիւն իրեն, Վիդդէմպէրկ բոլոր ազգին դպրոցը եղաւ"։

Ապաքէն շատ հարկաւոր էր որ Յունարէնին քաջ տեղեակ եղող մէկը դասատու ըլլայ աս համալսարանին մէջ, քանզի աստուածաբանութեան նոր յառաջադիմութիւնները կըհրաւիրէին վարժապետները և աշակերտները Յունարէն բնիկ լեզուով սորվելու քրիստոնէական հաւատոյ սկզբնական վարդապետութիւնները։ Այն ատենէն Լութեր մեծ փութով անձնատուր եղաւ աս աշխատութեանը. քանի մը Յունարէն բառերու նշանակութիւնը՝ որ մինչև ան ատենը իմացած չէր, յանկարծ կըլուսաւորէր իր

* Plank պատմագիր

աստուածաբանական գաղափարները ։ Ի՛նչ սփոփանք և ինչ ցնծութիւն չզգաց, երբոր տեսաւ, օրինակի՝ աղագաւ, թէ Յունական բառը՝ μετάνοια (մեթանոյա), որն որ Լատինական Եկեղեցին՝ կը մեկնէր ապաշխարանք մը, եկեղեցիէն պահանջուած մէկ հատուցում մը, մարդկային քաւութիւն մը, Յունարէնին մէջ կը նշանակէր փոփոխութիւն մը կամ սրտի դարձ մը ։ Անատենը վաղվաղակի մէկ թանձր մառախուղ մը փարատեցաւ իր աչքերուն առջևէն ։ Աս բառիս տրուած երկու նշանակութիւնները բաւական են ան երկու Եկեղեցիներուն որպիսութիւնը ճշդիւ ցուցընելու ։

Մելանկթոնին տուած գրգիռը Լութերին՝ անոր Աստուածաշնչի թարգմանութեանը մէջ, աս երկու երևելի մարդոց բարեկամութեանը նշանաւոր պարագաներուն մէկն է ։ Լութեր 1517ին սկզբնաւորութիւն մը ըրեր էր աս թարգմանութեան, ու կրցածին չափ Յունարէն և Լատիներէն գրքեր հաւաքեր էր ։ Բայց հիմայ իր սիրելի Փիլիպպոսին օգնականութեամբը իր աշխատութիւնը նոր զօրութիւնով սկսեց յառաջանալ ։ Լութեր պատուաւորեց զՄելանկթոն որ իր քննութիւններուն մէջ իրեն ընկերութիւն ընէ. դժուարին տեղերը անոր հետ կը խորհէր ։ Աս գործը՝ որ Բարեկարգողին մեծամեծ գործերուն մէկն ըլլալ սահմանուած էր, աւելի ապահովութեամբ և արագութեամբ իր վախճանին կը յառաջանար ։

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

ՄԵԼԱՆԿԹՈՆԻ գալուստը անտարակոյս քաղցր հանգստութիւն մը ընծայեց Լութերի մտքին՝ այսպիսի վտանգաւոր վայրկեանի մը ։ Անտարակոյս նոր բարեկամութեան մը անուշակ ծաւալմամբը՝ ու գրաւօրական վարժութեանց զբաղմամբը՝ որուն Լութեր անձնատուր եղաւ նոր նախան-

ձաւորութեամբ, երբեմն բոլորովին մոռցաւ Հռովմը՝ Գրիգորիոսը՝ Լեոնը՝ և ան եկեղեցական ատեանը որուն առջևը ինքը պիտի կայնէր : Այլ սակայն ասոնք կարճատև վայրկեանները էին, որ շուտով անցան գացին : Քանզի իր խորհուրդները հանապազ կըդառնային ան ահաւոր ատեանին վրայ՝ որուն առջևը կանչուեր էր իր ոխերիմ թշնամիներուն զօրութեամբը : Ի՞նչ սարսափով աս խորհուրդը չպիտի լեցընէր անմէն հոգին որ ճշմարտութենէ 'ի զատ ուրիշ բան կըփնտուէր : Բայց Լուտեր չպարհուրեցաւ . Աստուածային հաւատարմութեանը և կարողութեանը վրայ լեցուն հաւատք ունենալով հաստատուն մնաց, և պատրաստ էր ճշմարտութեանը համար առանձին դիմադրաւ ըլլալ ամենասաստիկ թշնամիներու բարկութեանը :

Մելանքթոնի հասնելէն քանի մը օր առաջ՝ ու դեռ չիմացուած պապին վճիռը որ Լուտերի դատաստանը Հռովմէն կըփոխադրէր Աւկսպուրկ տեսնուելու, Լուտեր այսպէս գրեց Սպալատինի . "Չեմ խնդրեր մեր իշխանէն որ իմ նախադասութիւններս պաշտպանելու համար բան մը ընէ . ես պատրաստ եմ մատնուելու, և միայնակ ձգուելու իմ բոլոր թշնամիներուս ձեռքը : Կայսրընտիրը թող ձգէ որ մրրիկը իր բոլոր կատաղութիւնը իմ վրաս թափէ : Ան որուն ես ձեռնամուխ եղայ պաշտպանելու, կըյուսամ թէ Քրիստոսի օգնութիւնովը պիտի կարողանամ հաստատելու : Իսկ բռնութեան կողմանէ՝ հարկաւ պարտիմք զիջանիլ անոր, բայց առանց ուրանալու զճշմարտութիւնը" :

Լուտեր իր համարձակութիւնը ուրիշներուն ալ հաղորդեց : Ամենէն հեզահոգի և ամենէն երկչոտ մարդիկ ճշմարտութեան վկային վրան գալու վտանգը տեսնելնուն ազդուութեամբ և սրտմտութեամբ լեցուն խօսքեր կըխօսէին : Խոհեմամիտն և խաղաղասէրն Ստաուպից Սեպտեմբերի 7ին գրեց Սպալատինի . "Անդադար յորդորէ զիշխանը մեր գլուխը, որ առիւծներուն մռնչելէն չվախնայ : Պաշտպան թող կանգնի ճշմարտութեան, առանց նայելու Լուտերի՝

կամ Ստաուպիցի՝ կամ ուրիշ մէկուն ։ Պունէ միայն մէկ տեղ մը թող գտնուի, ուր կարող ըլլանք ազատաբար և առանց երկիւղի խօսիլ ։ Գիտեմ որ Սորբոնի (մայր մեաց պէտի ըսէի Հռովմայ) հարուածը արձակուած է ան ամենուն վրայ, որ զՔրիստոս չահի համար փաճառողներուն չար սովորութեանցը դէմ կը յարձակին ։ Այս ինքնս տեսայ որ ամպիոնէն վար քաշեցին մէկը՝ որ կը քարոզէր ճշմարտութիւնը, և՝ թէպէտ տօն օր մը, կապեցին ու բանտը դրին զանիկայ ։ Ուրիշները աւելի մեծ անգթութիւններ տեսած են ։ Ասոր որոյ՝ ո՜վ կաթողին օրհնեցեալ, հաճեցի՛ր վսեմաշուք իշխանին միտքը, որ իր գաղափարներուն մէջ յարատևէ" ։

'Ի վերջոյ հասաւ ան հրամանը որ կը պատրաստուէր զԼութեր կարդինալ դեսպանին առջևը երևնալու Աւկսպուրկի մէջ ։ Ալ հիմա Լութերի բանը Հռովմէական Եկեղեցւոյ իշխաններուն մէկին հետն էր ։ Ուստի բոլոր իր բարեկամները աղաչեցին իրեն որ ճամբայ չելլէ ։ Կը վախնային որ իր ճամբուն վրայ և որոգայթ մը լարուած ըլլայ, կամ իր կենացը դէմ դաւաճանութիւն մը ըլլայ ։ Ոմանք ջանացին պահուելու տեղ մը գտնել անոր ։ Նոյն ինքն Ստաուպից՝ երկչոտն Ստաուպից խռովեցաւ մտածելով անհնարութիւնները որ պիտի գար ան եղբայր Մարտինոսին՝ որն որ ինքը վանքին առանձնութենէն յառաջ քաշեր և ամբոխեալ ծովու մը վրայ ձգեր էր, ուր որ հիմա անոր կեանքը վտանգի մէջ էր ։ Ա՛հ, լաւագոյն չպիտի՞ ըլլար որ աս եղբայրը իր բովանդակ կեանքին մէջ անծանօթ մնար ։ Ալ հիմա ատենը անցած է . և սակայն զանիկայ փրկելու համար իր բոլոր կրցածը պիտի ընէ ։ Այսպէս Սեպտեմբերի 15ին Սալցպուրկի իր վանքէն գրեց անոր որ փախչի և իր քովը երթայ բնակի ։ "Կը թուի ինծի, ըսաւ, որ բոլոր աշխարհ կատաղութեամբ ճշմարտութեան դէմ միաբաներ է ։ Այսպէս ատելի եղաւ և խաչեալ Յիսուսը ։ Չեմ տեսներ որ ուրիշ բանի մը ակնկալութիւն ունենաս բաց 'ի հալածմանէ ։

նէ և Քրիստոսի պատուէրն է սուրբ Գրքերը քննելը․ բայց շատ չանցած տուանց պապին հրամանին մէկը պիտի չկրնայ քննել զանոնք՝ և անոնցմէ սորվիլ զՔրիստոս ։ Քու բարեկամներուդ թիւը քիչ է ․ Աստուած ալ քիչ բարեկամներուն քաջութիւն շնորհէ , որ քու ահաւոր թշնամիներուդ դէմ կայնին ։ Քու բռնելու ամենէն խելացի ճամբադ ատեն մը Վիդդէմպէրկը ձգել , ու գալ և իմ հետս բնակիլն է ։ Անատենը մէկ տեղ ապրիմք ու մէկ տեղ մեռնիմք ․ իշխանին կարծիքն ալ ասիկայ է ։

Լուտեր զանազան կողմերէ զարհուրեցուցիչ լուրեր առաւ ։ Մանսֆէլտի Ալպերտ կոմսը պատգամ խրկեց անոր որ չըլլայ թէ ճամբայ ելլէ , վասն զի քանի մը երևելի ազնուականներ երդումով կապուեր էին բռնել ու խեղդել , կամ ջուրը նետել զանիկայ ։ Բայց բան մը չկրցաւ շարժել անոր առաջադրութիւնը ։ Զուզեց ականջ դնել Ստաուպիցին առաջադրութեանը , թէ՝ երթայ Սալցպուրկի վանքին մէջ պահուի․ այլ հաւատարմութեամբ պիտի մնայ ան ալեկոծեալ թատրոնին մէջ՝ ուր որ Աստուծոյ ձեռքը զինքը դրաւ ։ Գիտէր որ հակառակորդներուն մէջ տեղը յարատևելով աշխարհի մէջ ճշմարտութիւնը յայտնաբարբառ քարոզելով ճշմարտութեան թագաւորութիւնը կը յառաջանայ ։ Արեան ինչո՞ւ պիտի փախչի ․ կորստեան դարձողներուն թիւէն չէ ինքը , այլ իրենց հոգիներուն փրկութեանը հաւատացողներէն ։ Այս խօսքը Վարդապետին՝ որուն մշտնջենաւորապէս ծառայել ու զանիկայ սիրել ուխտեր էր , իր ականջին հնչեց ․ "Ով որ մարդոց առջև իս կը դաւանի , ես ալ անիկայ կը դաւանիմ իմ Հօրս առջևը որ երկինքն է" ։ Լուտերի և Բարեկարգութեան պատմութեանը մէջ ամէն տեղ մենք զմեզ ներկայ կը գտնեմք ան աներկիւղ հոգիին՝ ան գերագոյն բարոյականութեան՝ ան անսահման սիրոյն առջևը , որն որ Քրիստոնէութեան առաջին հաստատութիւնը երևան հանեց աշխարհի ։ "Երեմիայի պէս՝ ըսաւ Լուտեր աս մեր պատմած ատենը , հա-

կատակութիւն և գրգռութիւն կրելու մէկն եմ . բայց որչափ որ իրենց սպառնալիքները կաւելցընեն , այնչափ իմ ուրախութիւնս կը շատցընեն ։ Արդէն իմ պատիւս և իմ բարի անունս ինծմէ հանեցին ։ Ինծի մնացածին բոլորը իմ տառապեալ մարմինս է . ան ալ թող առնեն , այսպէս քանի մը ժամ պիտի կարճըցունեն իմ կեանքս . իսկ իմ հոգիս՝ անիկայ չպիտի առնեն ։ Ան՝ որ կառաջադրէ Քրիստոսի Բանը աշխարհի մէջ տարածել , ամէն ժամու մահուան պարտի յուսալ ։

Աս միջոցիս կայսրընտիրը Աւկսպուրկ էր . ու երբոր ժողովէն ելլելու վրայ էր , Լուտերի համար երաշխաւոր եղաւ դեսպանին իր առջևը երևալու , որ ան ալ խոստացաւ Ֆրիդերիկոսին՝ մարդասիրութեամբ զանիկայ ընդունելու ։ Սպալատին իշխանին հրամանաւը գրեց իր բարեկամին՝ թէ պապը գործակալ մը կարգեր էր որ իր դատը Գերմանիայի մէջ վարուի . թէ կայսրընտիրը չպիտի թողուր որ զինքը Հռոմ տանին . և իմացուց անոր որ պատրաստուի ճամբայ ելլել Աւկսպուրկ երթալու ։ Լուտեր որոշեց հնազանդիլ . Մանսֆելտի կոմսէն առած լուրը հաւանեցոյց զինքը Ֆրիդերիկոսէն ապահովութեան հրամանագիր մը խնդրել ։ Կայսրընտիրը պատասխան տուաւ թէ հարկաւոր չէ ան , ու խրկեց անոր միայն յանձնարարական գրեր Աւկսպուրկի խորհրդականներէն քանի մը խիստ երևելիներուն տալու ։ Նոյն ատենը՝ իր ճամբորդութեանը համար քիչ մըն ալ ստակ խրկեց , ու Բարեկարգողը՝ աղքատ և անպաշտպան հետի ճամբայ ելաւ ինքզինքը իր թշնամիներուն զօրութեանը մատնելու ։

Ի՜նչ զգացումներով Վիդդեմպերկէն ելած՝ և իր քայլերը դէպի Աւկսպուրկ ուղղած պիտի ըլլայ , ուր որ պապին դեսպանը կըսպասէր իրեն ։ Իր ճամբորդութեանը նպատակը Հայտելպերկ ըրած ճամբորդութեանը նպատակին պէս բարեկամական տեսութիւն մը չէր . պիտի երևար՝ առանց պաշտպանութեան՝ Հռոմայ դեսպանին

տօղէր․ զուցէ կերթար մահուան պատահելու ։ Բայց իր հաւատքը ոչ խօսքով էր, այլ ճշմարտութիւնով․ վասն որոյ ասիկայ էր որ իրեն խաղաղութիւն տուաւ, որպէս զի առանց երկիւղի յանուն Տեառն Զօրութեանց յառաջացաւ Աւետարանին վրայ իր վկայութիւնը տալու ։

Սեպտեմբերի 28ին Վայմառ հասաւ, ու հոն Ֆրանչիսկեան ըսուած կրօնաւորներուն վանքը իջաւ ։ Միաբաններուն մէկը չէր կրնար իր աչքը վերցընել անոր վրայէն ։ Ասիկայ էր Միկոնիոսը․ ու աս առաջին անգամն էր որ տեսաւ զԼուտեր ։ Կը փափաքէր անոր քովը երթալ՝ և անոր ականջին խօսիլ թէ անոր ձեռքովն էր որ խաղաղութիւն կը վայելէր իր հոգւոյն մէջ, և թէ իր բոլոր փափաքը անոր հետ աշխատիլն է ։ Բայց Միկոնիոսի գլխաւորները զգուշութեամբ կը հսկէին զինքը, ու թոյլտուութիւն չունէր Լուտերին հետ խօսելու ։

Վարժապետին արիութիւնը զինքը տեսնողները կը զարմացընէր, որ անխռով մտօք հետի յառաջ կերթար կատարելու ան հրաւէրքը՝ որ շատերուն իրմէն առաջ մահուան հրաւէրք եղած էր ։ Շահախնդրութիւնը՝ զարմացումը և կարեկցութիւնը յաջորդաբար կը գրաւէին անոնց սրտերը ։ Յովհաննէս Կեսներ Ֆրանչիսկեանց խնամակալը ահով պաշարեցաւ երբոր մտածեց ան վտանգները որ իր հիւրին հանդիպելու էին, և ըսաւ․ “Եղբայր, Աւգսպուրկի մէջ Իտալացիներու պիտի պատահիս դուն ։ Անոնք ճարտարամիտ մարդիկ են, խորամանկ հակառակորդներ, ու խիստ նեղը պիտի ձգեն քեզ ։ Կը վախնամ որ չպիտի կարենաս քու փաստդ պաշտպանել անոնց դէմ ։ Կրակը պիտի ձգեն քեզ, ու բոցերը պիտի ճարակեն քու մարմինդ” ։ Լուտեր ծանրութեամբ մը պատասխան տուաւ․ “Սիրելի բարեկամ, աղօթէ մեր Տէր Աստուծոյն՝ որ երկինքն է, ու Հայր Մեր մը ըսէ ինծի համար և իր սիրելի զաւկին Յիսուսի համար, որ անորն է իմ փաստս, որպէս զի ինքը օգնէ անոր ։ Թէ որ ինքը անոր փաստը կը պաշտպանէ, իմս ապահով

է. բայց թէ որ ինքը անիկայ չպաշտպանէ, անշուշտ ես չպիտի կարենամ պաշտպանել զանիկայ, ու ինքը պիտի կրէ անարգանքը" ։

Լուտեր իր ճամբորդութիւնը հետի շարունակեց, ու հասաւ Նիւրնպերկ ։ Եւ որովհետեւ եկեղեցւոյ երեւելի իշխանի մը առջեւը պիտի ելլէր, ուզեց որ պատշաճաւոր կերպով մը զինքը ցուցընէ ։ Իր հագած հանդերձը հին էր, եւ իր ճամբորդութեանը պատճառաւ աւելի գէշցած ։ Վասն որոյ միաբանի զգեստ մը փոխ առաւ իր հաւատարիմ բարեկամէն Վենկեսլաս Լինք Նիւրնպերկի քարոզիչէն ։

Ան քաղաքէն գրած նամակները կը ցուցընեն ան հոգին որ անատենը կենդանացուցեր էր զինքը. "Կը գտնեմ, ըսաւ, վատասիրտ մարդիկ, որոնք կուզեն յորդորել զիս որ չերթամ Աւկսպուրկ. բայց ես որոշած եմ յառաջ երթալ. Տէրոջը կամքը թող ըլլայ ։ Քրիստոս նաեւ Աւկսպուրկի եւ իր թշնամիներուն մէջ տեղը կը թագաւորէ ։ Քրիստոս թող բարձրանայ, ու Լուտերի՝ կամ ուրիշ մեղաւորի մը մահը բան մը չէ ։ Ինչպէս որ գրուած է, "Բարձր եղիցի Աստուած փրկութեան իմոյ". Ողջ լեր ։ Յարատեւէ, հաստատ կեցիր, վասն զի պարտիմք անարգուիլ կամ մարդոցմէ, կամ Աստուծմէ. բայց Աստուած ճշմարիտ է, եւ մարդ սուտ" ։

Լինք եւ Լէոնարդոս՝ անուն Օգոստինեան միաբան մը չկրցան թողուլ զԼուտեր որ իրեն սպասած վտանգներուն մինակ դէմ ելլէ ։ Գիտէին անոր բնաւորութիւնը, ու կը զգային թէ ջերմեռանդութեամբ եւ արիութեամբ լեցուն ըլլալովը, խոհեմութեան մասին հաւանականաբար պակաս պիտի գտնուի ։ Վասն որոյ իր հետը ընկերացան, ու Հոկտեմբերի 7ին ուրբաթ օրը իրիկուան ժամանակ Աւկսպուրկ մտան, եւ Օգոստինեանց վանքը իջան ։

## ՀԱՏՈՒԱԾ Ե

Լուտեր քաղաքը հասածին պէս՝ և դեռ մէկը չտեսած՝ ուզելով որ ամէն կերպով յարգութիւն ցոյց տայ դեսպանին, Վենկեսլաս Լինքը խրկեց անոր բնակարանը՝ որ իր Աւկսպուրկ ըլլալը իմացընէ անոր։ Լինք գնաց՝ ու Վիդգէմպէրկի վարժապետին վրայով յարգութեամբ իմացուց անոր՝ թէ պատրաստ է իր առջին երևնալու երբոր ինքը կը հրամայէ. Տը Վիօ ուրախացաւ աս լուրին վրայ։ Ի վերջոյ՝ յանդուգն հերետիկոսը իր իշխանութեանը տակը ինկաւ. ու իր մտքին մէջ հաստատեց թէ ինքը Աւկսպուրկէն չպիտի ելլէ այնպէս ինչպէս որ հոն մտեր էր։ Ան նոյն ատենը որ Լինք դեսպանին գնաց, Լէոնարդոս ալ գնաց Ստաւպիցին իմացընել Լուտերի Աւկսպուրկ հասնիլը։ Քանզի ընդհանուր մեծաւորը առաջուց գրեր և ըսեր էր վարդապետին թէ հոն հասածին պէս անշուշտ ինքը պիտի գայ զանիկայ տեսնելու։ Անոր համար Լուտեր ժամանակ չկորսնցընելով իմացուց անոր որ գայ իրեն։

Ազգային ժողովը վերջացեր էր. կայսրը և կայսրընտիրները արդէն քաղաքէն մեկներ էին. թէպէտ և կայսրը բոլորովին չէր հեռացած, այլ մօտակայ արուարձաններուն մէջ որսորդութիւն կընէր։ Հռովմայի երեսփոխանը միայն մնացեր էր Աւկսպուրկի մէջ։ Թէ որ Լուտեր ժողովը չվերջացած հոն հասնէր, զօրաւոր բարեկամներու պիտի պատահէր. բայց հիմա հաւանական կը թուէր թէ ամէն բան պիտի նուաճի պապական իշխանութեան առջև։

Սակայն դատաւորը՝ որուն առջին Լուտեր պիտի երևնար, այնպիսի բնաւորութեան տէր մէկը չէր որ ասոր վախերը հանդարտեցընէ։ Իր անունն էր Թովմաս տը Վիօ՝ մականուանեալ Կայետանոս՝ Նէապօլսոյ տէրութեան Կայետա քաղաքը ծնած 1469ին, որմէն մեծամեծ ակնկալութիւններ եղած էր իր մանկութեանը ժամանակէն։ Տասնըվեց տարեկան ըլլալուն իր ծնողացը կամքին դէմ Դոմինիկեանց

կարգը մտեր էր ։ Աթոռը եղեր էր իր կարգին մեծաւոր, ու
Հռովմայ եկեղեցւոյն կարդինալ ։ Բայց այս գիտնական
վարդապետիս դպրոցական աստուածաբանութեան ջատա-
գովներուն մէկ խիստ նախանձաւորը ըլլալը՝ չարագուշակ
նշան մըն էր Լուտերին, վասն զի Նարեկարգողը սաստիկ
դէմ կեցեր էր անոր դրութեանը ։ Իր գիտութիւնը, իր խըս-
տակրօն բնաւորութիւնը և իր անարատ բարոյականու-
թիւնը Գերմանիայի մէջ ազդեցութիւն մը և զօրութիւն
մը տուեր էին իրեն, որ ուրիշ Հռովմայեցի պալատական-
ները կարող չէին դիւրութեամբ ստանալ ։ Անտարակոյս իր
սրբակեցութեան համբաւին համար էր որ այս գործին վրայ
ինքը հաստատուեցաւ ։ Հռովմ հաշուեց թէ այս բանս
աքանչելի կերպով պիտի յարմարի իր դիտաւորութիւննե-
րուն ։ Այսպէս՝ մինչև անգամ Աւետարանու աղէկ որպիսու-
թիւնները աւելի սոսկալի ըրին զինքը . ասկից զատ՝ իրեն
յանձնուած գործը ամենևին խառնակ գործ մը չէր ։ Արդէն
հրատարակուած էր թէ Լուտեր հերետիկոս է . թէ որ իր
կարծիքները չհերքէր, դեսպանը պիտի բանտարգէր զին-
քը . իսկ եթէ փախչէր, պիտի բանադրէր անոր ամէնը որ
պիտի համարձակէին ընդունել զանիկայ ։ Ահա՛ ընթացքը՝
այն որ բռնելու իշխանութիւն ընդունած էր անոր Նախա-
պատիւ անձը, որուն առջին կոչուած էր Լուտեր ։

Նարեկարգողը շաբաթ առտու Հոկտեմբերի 8ին՝ ինքզին-
քը Աստուծոյ յանձնելով սկսեց համբերութեամբ սպասել
որ բանին ընթացքովը յայտնի ըլլայ անոր կամքը, բայց եր-
կար ատեն չսպասեց ։ Անծանօթ անձն մը՝ որպէս թէ բո-
լորովին անոր օգնութիւն ընելու անձնատուր եղած՝ լուր
խրկեց անոր թէ կերթայ զինքը տեսնելու, խրատելով որ
մինչև զինքը չտեսնէ դեսպանին աչքին չերևնայ ։ Այս լուրը
խրկողն էր Իտալացի պալատական մը Ուրբանոս Տը Սէրրա
Լօնկա կոչուած, որ Մօնդֆէրրադի իշխանին կողմանէ
դեսպանութեամբ շատ անգամ Գերմանիա գնացեր էր ։
Կըճանչնար Սաքսոնիայի կայսրընտիրը, քանզի անոր աւ

Երբեմն դեսպանութեան պաշտօնով խրկուած էր իր տէ-րոջմէն ։ Բայց հիմա իշխանը մեռնելով տը Սիօ կարդի-նալին յարեր էր ։

Ըս պալատականը՝ որուն արուեստը և խօսքը սքանչելի եղանակով կըհակադրէր Լուտերի գերապանծ անկեղծու-թեանը և պատուական ուղղութեանը, շատ չանցած հա-սաւ Օգոստինեանց վանքը ։ Կարդինալը խրկեր էր ասիկայ որ Լուտերը փորձէ, ու պատրաստէ զանիկայ իր կարծիք-ները հերքելու ։ Սէրրա Լօնկա ևս կըմտածէր թէ Գեր-մանիայի մէջ երկար ժամանակ իր մնալը յաջողակութիւն կուտար իրեն քան որչափ ունէին կարդինալին ուրիշ գոր-ծակալները . ուստի կըյուսար որ աս Գերմանացի միաբա-նին հետ շուտով պիտի կատարէ բանը ։ Եկաւ հասաւ ինքը երկու սպասաւորով, ու ձևացուց թէ ինքիրմէն եկած է՝ Սաքսոնիայի կայսրընտրին սիրելոյն բարեկամութեանը ու Եկեղեցիին սիրոյն համար ։ Զափազանց քաղաքավարու-թիւններով Լուտերը բարևելէն ետքը՝ ջանաց համոզել զանիկայ որ ամէն կերպով հնազանդի դեսպանին, ու հերքէ իր վարդապետութիւնը և իր նախադասութիւնները ։

Լուտեր պատասխան տուաւ թէ ինքը՝ բոլորովին պատ-րաստ է խոնարհիլ և հնազանդիլ, ու որ և իցէ մասի մէջ իր սխալած ըլլալը ապացուցուելուն հաւանութիւն տալ ։ Սէրրա Լօնկա աս խօսքին վրայ ուրախութեամբ գոչեց . "Ահա ես շիտակ դեսպանին կերթամ, և շուտով կուգամ քեզ տանելու ։ Ամէն բան աղէկ պիտի ըլլայ, և շուտով կարգի պիտի դրուի" ։

Ասիկայ գնաց, ու Սաքսոնացի միաբանը՝ յուսի և եր-կիւղի մէջ մնաց . և սակայն աւելի յոյսը տիրեց իր վրայ ։ Սէրրա Լօնկայի տես գալը ու անոր զարմանալի խօսքերը զօրացուցին իր քաջալերութիւնը ։ Լուտեր ետքերը աս ան-ձը կըկոչէ յիմար միջամուխ ։

Աւկսպուրկի զանազան խորհրդականները և ուրիշ պա-տուաւոր բնակիչները՝ որոնց խնամքին յանձնուած էր

Լուտեր՝ կայսրընտրէն, բոլորն ալ կըփափաքէին տեսնելու ան մարդը՝ որուն անունը արդէն հնչեր էր բովանդակ Գերմանիայի մէջ ։ Մտերմական բարեկամութեամբ բարևելու գացին այս չնաշխարհիկ մարդը, որ երկար ճամբորդութիւն մը ըրած էր Հռովմայ գործակալներուն ձեռքը մատնելու իր անձը։ "Ունի՞ս ապահովութեան հրամանագիր", հարցուցին իրեն ։ "Ո՛չ". պատասխան տուաւ քաջասիրտ միաբանը։ "Ի՜նչ արիութիւն" աղաղակեցին ամէնքը։ "Ասիկայ քաղաքավար խօսք մըն էր՝ իմ յանդգնութիւնս յայտնելու". ըսաւ Լուտեր ։ Ամէնը մէկէն աղաչեցին իրեն որ առաջ կայսրէն ապահովութեան հրամանագիր մը ձեռք չձգած դեսպանին չերթայ ։ Հաւանական է որ արդէն բան մը իմացուած էր պապին կոնդակին վրայով որն որ դեսպանին ձեռքն էր ։

Իր բարեկամները իրենց վրայ առին հարկաւոր եղած հրամանագիրը կայսրէն առնել ։ Այնուհետև սկսեցին պատմել Լուտերի թէ որչափ երևելի անձինք իր վրայ սէր ունին ։ "Նոյն ինքն Գաղղիացի պաշտօնատարը՝ որ քանի մը օր առաջ Աւկսպուրկէն ելաւ, չափազանց պատուով խօսեցաւ քու վրադ". ըսին իրեն ։ Աս խօսքը դպաւ Լուտերին, ու ետքերը կըյիշէր զանիկայ . այսպէս տէրութեան առաջին քաղաքներուն մէկին խիստ երևելի քաղաքացիները արդէն Բարեկարգութեան կողմը շահուեր էին ։

Իրենց խօսակցութիւնը մինչև հոն հասնելուն Սերրա Լօնկա դարձաւ ։ "Դոկտոր, ըսաւ Լուտերին, կարդինալը քեզի կըսպասէ . ես ինքնս պիտի տանիմ զքեզ անոր ։ Բայց առաջ քեզի ըսեմ թէ ինչպէս պիտի երևաս իր առջևը . երբոր իր նստած սենեակը մտնես, երեսի վրայ գետինը պիտի խոնարհիս . երբոր ինքը քեզի ըսէ որ ելլես, ծունկի վրայ պիտի գաս իր առջևը . ու չպիտի կանգնիս ոտքի վրայ՝ մինչև որ ինքը հրաման ընէ քեզի ։ Միտք առ որ Եկեղեցւոյ մէկ իշխանին առջևը երևան պիտի ելլես ։ Մնացածը հոգ մըներ, բոլորը շուտով պիտի կարգադրուի առանց դժուարութեան" ։

Լուտեր՝ որ առաջ Սէրրա Լօնկայի խոստացեր էր հետը երթալ երբոր կանչէ զինքը, խռովեցաւ մնաց: Բայց և այնպէս փութաց իմացընել անոր Աւկսպուրկի իր բարեկամներուն խրատը, ու ապահովութեան հրամանագրի վրայ քանի մը բան խօսեցաւ:

"Զգուշացիր աս կերպ բան մը խնդրելէն, պատասխանեց Սէրրա Լօնկա վաղվաղելով, ամենևին կարօտ չես անոր: Դեսպանը բարեկամ է քեզի, ու բոլորովին պատրաստ է սիրով վերջացընել բանը. իսկ թէ որ ապահովութեան հրամանագիր խնդրես, բոլոր բանը պիտի եղծանես":

"Իմ բարերար տէրս Սաքսոնիայի կայսրընտիրը աս քաղքիս զանազան երևելի անձանց խնամքին յանձնած է զիս, ըսաւ Լուտեր: Անոնք զիս կըխրատեն որ առանց հրամանագրի բան մը չընեմ. պէտք է որ անոնց խրատը բըռնեմ: Թէ որ չբռնեմ՝ ու ինծի բան մը պատահի, պիտի գրեն կայսրընտրին իմ տէրոջս՝ թէ իրենց խօսքը մտիկ չըրի":

Լուտեր իր առաջադրութեանը վրայ հաստատ կեցաւ, ու Սէրրա Լօնկա պարտաւորեցաւ դառնալ զինքը ղրկողին ու պատմել անոր իր պատգամաւորութեան անյաջողութիւնը ան նոյն վայրկեանին՝ երբոր կըյուսար՛ թէ յաջողութեամբ պիտի պսակուի: Այսպէս վերջացաւ ան աւուր խօսակցութիւնը Սէնթ Ֆէրրադի առեանախօսին հետը:

Բայց չվերջացաւ նոյն օրը առանց խորախորհուրդ մտածելու Լուտեր իր վիճակը: Սէրրա Լօնկայի եռանդը ու խորհրդականներուն կասկածները համոզեցին զինքը իր դժուարին պարագաներու մէջ ըլլալուն վրայ: Բայց սակայն երկնից Աստուածը իր պաշտպանն էր, ու անոր պաշտպանութեան տակը ապահովութեամբ կրնար ննջել:

Հետևեալ օրը՝ որ Կիրակի էր ուրիշ բանի վրայ չէր խօսուէր քաղքին մէջ՝ բայց Լուտեր վարդապետին վրայ, ու ամէն մարդ կըբաղձար տեսնել զանիկայ: Խուռն բազմութեամբ իր բոլորտիքը շրջապատեցին. ու բարի վարդապետը անտարակոյս կըժպտէր աս օտարոտի հետաքըրքրութեանս վրայ:

Բայց ուրիշ կերպ թախանձանք մըն ալ ունէր կրելու․
թէ որ մէկ ընդհանուր փափաք մը կար զինքը տեսնելու,
առաւել մեծ փափաք մը կար զինքը մտիկ ընելու։ Ամէն
կողմերէն խնդիր կըլլար իրեն որ քարոզէ։ Լուտեր չունէր
աւելի մեծ ուրախութիւն քան թէ Աւետարանը քարոզելը․
անպատմելի ուրախութեամբ պիտի լցուէր իր սիրտը՝ թէ
որ աս մեծ քաղքիս ու իր գտնուած վսեմ պարագաներուն
մէջ քարոզէր զՔրիստոս։ Բայց աս տեղ՝ ինչպէս և միշտ՝
կըցուցընէր վայելած բանին կատարեալ զգացումը և իր
մեծաւորները պատուամեծար յարգութեամբ բռնած ըլ-
լալը։ Ներում խնդրեց քարոզելու՝ վախնալով որ չըլ-
լայ թէ դեսպանը մտածէ թէ զինքը՝ գրգռելու ու իրեն
դէմ խռովելու համար այսպէս կընէ։ Աս չափաւորու-
թիւնը ու խոհեմութիւնը անշուշտ քարոզի մը չափ պա-
տուական վարժութիւններ էին։

Բայց կարդինալին պաշտօնեաները չթողուցին իրեն
հանգստանալ, այլ վերստին դարձան իրենց պաշտօնը կա-
տարելու․ "Կարդինալը, ըսին, իր շնորհքը ու սէրը կը
խրկէ քեզի։ ինչո՞ւ համար կըվախնաս"։ Եւ ջանացին որ
կերպ կերպ ձեռնարկութիւններով հնարք մը գտնեն համո-
զել զինքը դեսպանին առջևը ելլելու։ "Այնպէս քաղցր
բնութիւն ունի, որ հօր մը կընմանի"․ ըսաւ աս լրտեսնե-
րուն մէկը․ բայց ուրիշ մէկը Լուտերին մօտենալով ական-
ջէն վար ըսաւ․ "Մի հաւատար անոնց ըսածին․ ինքը ա-
մենևին իր խօսքին վրայ չըկենար"։ Լուտեր իր առաջա-
դրութեանը վրայ հաստատ կեցաւ։

Երկուշաբթի առաւօտուն Հոկտեմբերի 10ին Սերրա
Լոնկա վերստին նորոգեց իր թախանձանքները։ Պալատա-
կանը աս գործին մէջ իր յաջողիլը պատուոյ նպատակ ըրած
էր իրեն։ Իր ներս մտած վայրկեանին՝

"Ինչո՞ւ համար, ըսաւ Լատինական լեզուով, ինչու հա-
մար չես երթար կարդինալին․ կատարեալ ներողամտու-
թեամբ քեզի կըսպասէ ինքը։ Բոլոր վէճը ինքը կըվերջա-

ցընէ աս վերջ գրերովը, Revoca Հերքեա՛։ Սիրելի՛ իմ, Հետս եկուր. վախնալու բան մը չկայ"։

Լուտեր իր սրտին մէջ խորհեցաւ թէ ասոնք վերջ խիստ զգուշալի գրեր են. բայց առանց այլ եւս քննելու պատասխան տուաւ.

"Հրամանագիրը ընդունածիս պէս պիտի գամ"։

Սէրրա Լօնկա աս խօսքին վրայ բարկացաւ. կըպնդէր, ուրիշ պատճառներ յառաջ կըբերէր անոր միտքը պաղեցընելու. բայց Լուտեր անշարժ կեցաւ։ Իտալացի պալատականը առաւել եւս գրգռուելով՝ կանչեց.

"Անշուշտ դուն կըկարծես որ կայսրընտիրը քու պատճառովդ պատերազմ պիտի բանայ, ու իր նախնիքներէն ժառանգած երկիրները քեզի համար կորստեան վտանգի մէջ պիտի ձգէ"։

Լուտեր. Քա՛ւ լիցի։

Սէրրա Լօնկա. Երբոր ամէնքը քեզ երեսէ ձգեն, որո՞ւն տակը պիտի պաշտպանուիս։

Լուտեր, հաւատոյ աչօք դէպի վեր նայելով, ըսաւ. Երկինքին տակը։

Այս վսեմ և անակնկալ պատասխանիս վրայ Սէրրա Լօնկա ատեն մը համրացաւ մնաց. անկէ ետև շարունակեց ըսելով.

"Ինչպէս պիտի վարէիր թէ որ դեսպանը՝ պապը՝ և բոլոր կարդինալները քու իշխանութեանդ տակը ունենայիր, ինչպէս որ անոնք աս վայրկեանիս իրենց իշխանութեան տակը ունին զքեզ"։

Լուտեր. Ամենուն պատշաճաւոր պատիւ և յարգութիւն կընծայէի. բայց ամէն բանէ վեր է ինծի Աստուծոյ Բանը։

Սէրրա Լօնկա, խնդալով ու իր մատներուն մէկովը չի հաւատալու նշան ընելով, ըսաւ. Հա՜, հա՜. ամենուն պատշաճաւոր պատի՜ւ. ամենեւին չեմ հաւատար ատոր։

Այս ըսելով դռնէն դուրս ելաւ, իր ձիուն վրայ ցատկեց, ու իսկոյն աներեւոյթ եղաւ։

Սէրրա Լօնկա այլ ևս չգնաց Լուտերին. բայց երկար ատեն կըյիշէր այն ընդդիմութիւնը որ Բարեկարգողէն կրեց ։ Մեր պատմութեան ընթացքին մէջ ետքերը նորէն պիտի տեսնեմք զինքը որ բարձրաձայն աղաղակաւ Լուտերի արիւնը կըխնդրէ ։

Սէրրա Լօնկայի երթալէն ետև՝ Լուտեր իսկոյն ընդունեց ազատագիրը որ իր բարեկամները առեր էին կայսերական խորհրդականներէն ։ Լուտեր դեսպանին առջևը երևնալու վրայ էր ։ Բայց աս հրամանագիրը ձեռք ձգելուն մարդկային իշխանութեան չապաւինեցաւ ինքը, վասն զի աղէկ կըյիշէր որ կայսեր հրամանագիրը կրակի բոցերէն ապրեցուցած չէր զՅովհաննէս Հուսը ։ Միայն ուզեց իր պարտաւորութիւնը ընել, իր իշխանին բարեկամներուն տուած խրատին հետևելով ։ Իր դատը Տէրը պիտի վճռեր. թէ որ Աստուած իր կեանքը ուզեր, ինքը պատրաստ էր ուրախութեամբ տալ զանիկայ ։ Աս վտանգաւորը վայրկեանին կըփափաքէր միանգամ ևս խօսակցիլ իր բարեկամներուն հետ՝ և մանաւանդ Մելանկթոնի հետ, որ արդէն այնչափ սիրելի էր իրեն ։

‘‘Դուն զքեզ քաջասիրտ ցուցուր, ըսաւ, ինտոր որ արդէն ցուցուցիր ։ Մեր սիրելի երկրին պատանիները վարժէ ուղիղ և Աստուծոյ կամացը հաճոյ եղած բաներուն մէջ ։ Իսկ իմ վրայովս՝ քեզի ու անոնց համար իմ անձս պիտի մատուցանեմ, թէ որ Տէրոջը կամքը ասիկայ է. առաւել կընտրեմ մեռնիլ՝ մանաւանդ և քու պատուական ընկերութիւնդ կորսընցունել՝ որն որ ինծի ամենամեծ դժբաղդութիւն է, քան թէ հերքել ան՝ ինչ որ իմ պարտաւորութիւնս էր սորվեցընել ։

‘‘Իտալիա Եգիպտոսի նման թանձրամած խաւարի մէջ թաղուած է. այնպիսի խաւարի որ կրնայ շօշափուիլ ։ Բոլոր ազգը ոչ զՔրիստոս գիտէ, և ոչ անոր պատշաճեալ բաները ։ Բայց և այնպէս հաւատոյ և բարոյականութեան մեր տէրերը ու վարդապետներն են անոնք ։ Այսպէս մեր

մէջը կատարուած է Աստուծոյ բարկութիւնը, մարգարէին ըսածին պէս, “Այս կացուցից ’ի վերայ նոցա մանկունս իշխանս. և խաբեբայք տիրեսցեն նոցա” : Եսայի, Գ. 4 : Սիրելի Փիլիպպոս, քու առ Աստուած պարտաւորութիւնդ կատարէ, ու ջերմեռանդ և սուրբ աղօթքով անոր բարկութիւնը դարձուր” :

Դեսպանը իմանալով որ Լուտեր հետևեալ օրը իրեն պիտի երևայ, ժողվեց զանոնք որոնց վրայ վստահութիւն ունէր՝ թէ Իտալացիները և թէ Գերմանացիները, որպէս զի խորհի անոնց հետ թէ ինչպէս պէտք է վարուիլ Գերմանացի միաբանին հետ : Կարծիքները բաժնուեցան : Մէկը ըսաւ. “Պարտիմք բռնադատել զինքը որ իր վարդապետութիւնը հերքէ” : Ուրիշ մէկը ըսաւ. “Պարտիմք բռնել զինքը ու բանտը դնել” : Երրորդը կըկարծէր թէ լաւագոյն պիտի ըլլայ զանիկայ մէջ տեղէն վերցընելը : Չորրորդը՝ թէ պէտք է յաւէտ որսալ զինքը հեզութեամբ և մարդասիրութեամբ : Կերևայ որ կարդինալը առջի բերանը առաջարկեց աս վերջին կերպը փորձի դնել :

## ՀԱՏՈՒԱԾ Զ

ՏԵՍՈՒԹԵԱՆ օրը վերջապէս եկաւ հասաւ : Դեսպանը գիտնալով որ Լուտեր յօժարութիւն ցուցըցած էր հերքելու ինչ որ կրնար ապացուցուիլ թէ ճշմարտութեան դէմ է, յուսով լեցուած էր. քանզի վստահութեամբ կըկարծէր թէ իր աստիճանը ու գիտութիւնը ունեցող մէկը առանց մեծ դժուարութեան Եկեղեցիին հնազանդելու պիտի դարձընէ զվարդապետը :

Լուտեր գնաց դեսպանին բնակարանը՝ Կարմեղեանց մեծաւորին իր վանատուր բարեկամին ընկերութեամբը, ու վանքին երկու եղբայրներուն հետ : Ասոնց մէկն էր Լինք

վարդապետը՝ ու միւսը Օգոստինեան միաբան մը, հաւանականաբար այն նոյն անձը որ Նիւռնպէրկէն ընկերացեր էր իրեն ։ Դեսպանին պալատը մտածին պէս՝ բոլոր Իտալացիները որոնք Եկեղեցւոյ աս Իշխանիս պաշտօնեաներն էին, իր բոլորտիքը թափեցան, ամէնն ալ բաղձալով որ տեսնեն անուանի վարդապետը, ու այնպէս նեղը ձգեցին զինքը որ դժուարութեամբ կրցաւ յառաջ երթալ ։ Երբոր մտաւ այն սենեակը՝ ուր որ կարդինալը կըսպասէր իրեն, Լութեր գտաւ զինքը առաքելական նուիրակին ու Սերրա Լօնկային հետ ։ Դեսպանը ցուրտ կերպով բայց քաղաքավարութեամբ ողջունեց անոր գալուստը. և Լութեր Սերրա Լօնկայի խրատին հետևելով երեսին վրայ գետինը խոնարհեցաւ կարդինալին առջևը ։ Երբոր դեսպանը հրաման ըրաւ որ ելլէ, ծունկի վրայ եկաւ. և երբոր հրամանը կըրկնուեցաւ, ոտքի վրայ կանգնեցաւ ։ Դեսպանին գերդաստանէն խիստ երևելի Իտալացիներուն շատերը սենեակը մտան խօսակցութիւնը մտիկ ընելու, ու անհամբերութեամբ կըսպասէին որ Գերմանացի միաբանին՝ ինքզինքը պապին երեսփոխանին առջին խոնարհեցընելը տեսնեն ։

Դեսպանը լուռ կըկենար. կըսպասէր որ Լութեր սկսի հերքել իր վարդապետութիւնը, կըսէ ժամանակակից մէկը ։ Բայց Լութեր յարգանօք կըսպասէր որ Հռովմայեցի իշխանը իրեն խօսի ։ Սակայն երբոր տեսաւ թէ ան իր բերանը չէր բանար, իմացաւ որ անոր լռութիւնը հրաւէր մըն էր իրեն գործը բանալու, ու այսպէս սկսեց խօսիլ.

"Ամենապատիւ հայր, սրբազան պապին հրաւէրքովը, ու իմ բարեշնորհ տեառնս՝ Սաքսոնիայի կայսրընտրին ուզելովը՝ ձեր առջևը կերևամ իբրև խոնարհ և հնազանդ որդի Քրիստոնէական սուրբ Եկեղեցւոյ. ու կըխոստովանիմ թէ ես էի որ հրատարակեցի այն նախադասութիւնները՝ որ հետաքննութեան տակ ինկած են ։ Ամենայն խոնարհութեամբ պատրաստ եմ ինծի դէմ եղած ամբաստանու-

թիւնները լսելու, ու թէ որ սխալած եմ՝ ճշմարտութեան մէջ վարժուելու":

Կարդինալը՝ որ միտքը դրեր էր քաղցր և գորովալից հօր պէս խօսիլ մոլորեալ որդիի մը, խիստ բարեկամական եղանակով մը չպատասխանեց, Լուտերի խոնարհութիւնը գովեց, ու նոյն խոնարհութիւնը տեսնելուն վրայ իր զգացած ուրախութիւնը յայտնեց ըսելով. "Սիրելի որդեակ, բովանդակ Գերմանիա շփոթութեամբ լցուցիր նորոգութեանց վրայ քու ըրած վիճաբանութիւնովդ. կըլսեմ որ դուն Սուրբ Գրոց մէջ քաջահմուտ վարդապետ մըն ես, և որ՝ շատ հետևողներ ունիս: Սան որոյ թէ որ կընդունաս Եկեղեցւոյ մէկ անդամը ըլլալ, ու պապը ամենագթած տէր մը ունենալ քեզի, ականջ դիր ինծի":

Աս կանխաբանութենէս ետև՝ դեսպանը անմիջապէս սկսեց ըսել անոր ան ամէնը որ իրմէն կըպահանջէր. այսչափ վստահ էր անոր հնազանդութեան գալուն վրայ: "Երեք խնդիրներ կան՝ որ սրբազնասուրբ հօրն մերոյ տասներորդ Լևոն պապին հրամանաւը պիտի առաջարկեմ քեզի: Նախ՝ պարտիս քու պարտաւորութեանդ դառնալ. պարտիս խոստովանիլ քու յանցանքներդ, հերքել քու մոլորութիւններդ՝ քու նախադասութիւններդ և քու քարոզներդ: Երկրորդ՝ պարտիս խոստանալ որ այնուհետև պիտի հրաժարիս քու կարծիքներդ տարածելէն: Եւ երրորդ՝ պարտիս խոստանալ առաւել զգաստ կենալու, ու հրաժարիլ ամէն ան բաներէն՝ որ վիշտ կամ նեղութիւն կուտան Եկեղեցւոյ":

Լուտէր. "Ամենապատուական հայր, թոյլտուութիւն կըխնդրեմ տեսնելու պապին կոնդակը, որուն ուժովը կատարեալ իշխանութիւն ընդունած էք դուք աս գործիս մէջ խառնուելու":

Սերրա Լօնկա՝ ու կարդինալին պաշտօնեաներէն մնացեալ Իտալացիները ապշեցան մնացին այսպիսի խնդիրի մը վրայ. և թէպէտ Գերմանացի միաբանը արդէն նորասքանչ

*մէկը երևցած էր իրենց, բոլորովին խռովեցան ասանկ հա-մարձակ խօսքի մը վրայ ։*

Տը Մ.իօ. «*Սիրելի որդեակ, քու խնդրոյդ հաւանու-թիւն չկրնար տրուիլ ։ Քու ընելիքդ աս է որ քու սխալ-ներդ խոստովանիս, այսուհետև քու խօսքերուդ զգուշա-նաս, քու փսխածիդ չդառնաս. անանկ որ առջնց հոգի ու սրտնեղութեան ճամբ. և անատենը սրբազնասուրբ հօրս մերոյ պապին հրամանովը ու տուած իշխանութիւնովը բո-լոր գործը ես կարգի կըդնեմ*» ։

Լուտեր. *Հաճեցէք ուրեմն իմացընել ինծի՝ թէ ի՞նչ բանի մէջ սխալած եմ*» ։

*Իտալացի պալատականները առջի նուագէն աւելի սքան-չացան աս խնդրոյն վրայ, որոնք կըյուսային տեսնել՝ թէ ողորմելի Գերմանացին երեսանկեալ պիտի պաղատէր ո-ղորմութիւն գտնելու ։ Ասոնցմէ ոչ մէկը պիտի կրցանէր պատասխան տալ այսպիսի անպատշաճ խնդրոյ մը. բայց* Տը Մ.իօ *ներողամտութեան եղանակ մը վրան առնելով ըսաւ.*

«*Սիրելի որդեակ, ահա երկու նախադասութիւններ՝ որ դուն հրատարակած ես, որոնք ամենէն առաջ պարտիս հեր-քել. — Նախ՝ թէ ներողութեանց գանձը Յիսուս Քրիս-տոսի տեառն մերոյ չարչարանաց ու արդիւնքներուն վրայ չկայանար ։ Երկրորդ՝ թէ Սուրբ խորհուրդը ընդունելու համար պէտք է որ ընդունողը հաւատք ունենայ ։*

*Աս երկու նախադասութիւնները արդարև մեծ հարուած մը կուտային Հռովմայ տուրևառին ։ Քանզի թէ որ պապը իշխանութիւն չունենար փրկչին արդիւքները ըստ հաճոյից գործածելու, թէ որ Եկեղեցիին վաճառա-կուններուն ըրած տուրևառին կոնդակը առնուելուն՝ մար-դիկ բաժանորդ չէին ըլլար Քրիստոսի անսպառ արդա-րութեան, աս թղթէ շրջաբերութիւնը իր յարգը պիտի կորսընցունէր, ու մարդիկ ոչինչ թղթի մը կտորէ լաւա-գոյն չպիտի համարէին զանիկայ ։ Նմանապէս և խորհուրդ-*

երբեմն դեսպանութեան պաշտօնով խրկուած էր իր տէ-րոջմէն ։ Բայց հիմա իշխանը մեռնելով՝ տը Վիօ կարդի-նալին յարեր էր ։

Աս պալատականը՝ որուն արուեստը և խօսքը սքանչելի եղանակով կը հակադրէր Լուտերի գերապանծ անկեղծու-թեանը և պատուական ուղղութեանը, շատ չանցած հա-սաւ Օգոստինեանց վանքը ։ Կարդինալը խրկեր էր ասիկայ որ Լուտերը փորձէ, ու պատրաստէ զանիկայ իր կարծիք-ները հերքելու ։ Սէրրա Լօնկա ալ կը մտածէր թէ Գեր-մանիայի մէջ երկար ժամանակ իր մնալը յաջողակութիւն կուտար իրեն քան որչափ ունէին կարդինալին ուրիշ գոր-ծակալները. ուստի կը յուսար որ աս Գերմանացի միաբա-նին հետ շուտով պիտի կատարէ բանը ։ Եկաւ հասաւ ինքը երկու սպասաւորով, ու ձևացուց թէ ինքիրմէն եկած է՝ Սաքսոնիայի կայսրընտրին սիրելոյն բարեկամութեանը ու Եկեղեցիին սիրոյն համար ։ Զափազանց քաղաքավարու-թիւններով Լուտերը բարևելէն ետքը՝ ջանաց համոզել զանիկայ որ ամէն կերպով հնազանդի դեսպանին, ու հերքէ իր վարդապետութիւնը և իր նախադասութիւնները ։

Լուտեր պատասխան տուաւ թէ ինքը՝ բոլորովին պատ-րաստ է խոնարհիլ և հնազանդիլ, ու որ և իցէ մասի մէջ իր սխալած ըլլալը ապացուցուելուն հաւանութիւն տալ ։ Սէրրա Լօնկա աս խօսքին վրայ ուրախութեամբ գոչեց. "Ահա ես շիտակ դեսպանին կերթամ, և շուտով կուգամ քեզ տանելու ։ Ամէն բան աղէկ պիտի ըլլայ, և շուտով կարգի պիտի դրուի" ։

Ասիկայ գնաց, ու Սաքսոնացի միաբանը՝ յուսի և եր-կիւղի մէջ մնաց. և սակայն աւելի յոյսը տիրեց իր վրայ ։ Սէրրա Լօնկայի տես գալը ու անոր զարմանալի խօսքերը զօրացուցին իր քաջալերութիւնը ։ Լուտեր ետքերը աս ան-ձը կը կոչէ յիմար միջամուխ ։

Աւգսպուրկի զանազան խորհրդականները և ուրիշ պա-տուաւոր բնակիչները՝ որոնց խնամքին յանձնուած էր

Լուտեր՝ կայսրընտրէն, բոլորն ալ կըփափաքէին տեսնելու ան մարդը՝ որուն անունը արդէն հնչեր էր բովանդակ Գերմանիայի մէջ ։ Մտերմական բարեկամութեամբ բարեւելու գացին աս չնաշխարհիկ մարդը, որ երկար ճամբորդութիւն մը ըրած էր Հռովմայ գործակալներուն ձեռքը մատնելու իր անձը ։ “Ունի՞ս ապահովութեան հրամանագիր”, հարցուցին իրեն ․ “Ո՛չ” ․ պատասխան տուաւ քաջասիրտ միաբանը ։ “Ի՞նչ արիութիւն” աղաղակեցին ամէնքը ։ “Ասիկայ քաղաքավար խօսք մըն էր՝ իմ յանդգնութիւնս յայտնելու” ․ ըսաւ Լուտեր ։ Ամէնը մէկէն աղաչեցին իրեն որ առաջ կայսրէն ապահովութեան հրամանագիր մը ձեռք չձգած դեսպանին չերթայ ։ Հաւանական է որ արդէն բան մը իմացուած էր պապին կոնդակին վրայով որն որ դեսպանին ձեռքն էր ։

Իր բարեկամները իրենց վրայ առին հարկաւոր եղած հրամանագիրը կայսրէն առնել ։ Այնուհետեւ սկսեցին պատմել Լուտերի թէ որչափ երեւելի անձինք իր վրայ սէր ունին ։ “Նոյն ինքն Գաղղիացի պաշտօնատարը՝ որ քանի մը օր առաջ Ակսպուրկէն ելաւ, չափազանց պատուով խօսեցաւ քու վրադ” ․ ըսին իրեն ։ Աս խօսքը դպաւ Լուտերին, ու ետքերը կըյիշէր զանիկայ ․ այսպէս տէրութեան առաջին քաղաքներուն մէկին խիստ երեւելի քաղաքացիները արդէն Բարեկարգութեան կողմը շահուեր էին ։

Իրենց խօսակցութիւնը մինչեւ հոս հասնելուն Մերրա Լօնկա դարձաւ ․ “Եկոր, ըսաւ Լուտերին, կարդինալը քեզի կըսպասէ ․ ես ինքնս պիտի տանիմ զքեզ անոր ։ Բայց առաջ քեզի ըսեմ թէ ինչպէս պիտի երեւաս իր առջեւը ․ երբոր իր նստած սենեակը մտնես, երեսի վրայ գետինը պիտի խոնարհիս ․ երբոր ինքը քեզի ըսէ որ ելլես, ծունկի վրայ պիտի գաս իր առջեւը ․ ու չպիտի կանգնիս ոտքի վրայ՝ մինչեւ որ ինքը հրաման ընէ քեզի ։ Միտք առ որ Եկեղեցւոյ մէկ իշխանին առջեւը երեւան պիտի ելլես ։ Մնացածը հոգ մըներ, բոլորը շուտով պիտի կարգադրուի առանց դժուարութեան” ։

Լուտեր՝ որ առաջ Սէրրա Լօնկայի խոստացեր էր հետը երթալ երբոր կանչէ զինքը, խռովեցաւ մնաց : Բայց և այնպէս փութաց իմացընել անոր Աւկսպուրկի իր բարեկամներուն խրատը, ու ապահովութեան հրամանագրի վրայ քանի մը բան խօսեցաւ :

“Զգուշացիր աս կերպ բան մը խնդրելէն, պատասխանեց Սէրրա Լօնկա վաղվաղելով, ամենևին կարօտ չես անոր : Դեսպանը բարեկամ է քեզի, ու քոլորովին պատրաստ է սիրով վերջացընել բանը . իսկ թէ որ ապահովութեան հրամանագիր խնդրես, բոլոր բանը պիտի եղծանես” :

“Իմ բարերար տէրս Սաքսոնիայի կայսրընտիրը աս քաղքիս զանազան երևելի անձանց խնամքին յանձնած է զիս, ըսաւ Լուտեր : Անոնք զիս կըխրատեն որ առանց հրամանագրի բան մը չընեմ . պէտք է որ անոնց խրատը բըռնեմ : Թէ որ չբռնեմ՝ ու ինծի բան մը պատահի, պիտի գրեն կայսրընտրին իմ տէրոջս՝ թէ իրենց խօսքը մտիկ չըրի” :

Լուտեր իր առաջադրութեանը վրայ հաստատ կեցաւ, ու Սէրրա Լօնկա պարտաւորեցաւ դառնալ զինքը ղրկողին ու պատմել անոր իր պատգամաւորութեան անյաջողութիւնը ան նոյն վայրկեանին՝ երբոր կըյուսար՝ թէ յաջողութեամբ պիտի պսակուի : Այսպէս վերջացաւ ան աւուր խօսակցութիւնը Սնթփէրրադի ատենախօսին հետ :

Բայց չվերջացաւ նոյն օրը առանց խորախորհուրդ մտածելու Լուտեր իր վիճակը : Սէրրա Լօնկայի եռանդը ու խորհրդականներուն կասկածները համոզեցին զինքը իր դժուարին պարագաներու մէջ ըլլալուն վրայ : Բայց սակայն երկնից Աստուածը իր պաշտպանն էր, ու անոր պաշտպանութեան տակը ապահովութեամբ կրնար ննջել :

Հետևեալ օրը՝ որ Կիրակի էր ուրիշ բանի վրայ չէր խօսուէր քաղքին մէջ՝ բայց Լուտեր վարդապետին վրայ, ու ամէն մարդ կըբաղձար տեսնել զանիկայ : Խուռն բազմութեամբ իր բոլորտիքը շրջապատեցին . ու բարի վարդապետը անտարակոյս կըժպտէր աս օտարոտի հետաքըրքրութեանս վրայ :

Բայց ուրիշ կերպ թախանձանք մըն ալ ունէր կրելու. թէ որ մէկ ընդհանուր փափաք մը կար զինքը տեսնելու, առաւել մեծ փափաք մը կար զինքը մոլիկ ընելու: Ամէն կողմերէն խնդիր կըլլար իրեն որ քարոզէ: Լուտեր չունէր աւելի մեծ ուրախութիւն քան թէ Աւետարանը քարոզելը. անպատմելի ուրախութեամբ պիտի լցուէր իր սիրտը՝ թէ որ աս մեծ քաղքիս ու իր գտնուած վսեմ պարագաներուն մէջ քարոզէր զՔրիստոս: Բայց աս տեղ՝ ինչպէս և միշտ՝ կըցուցընէր վայելած բանին կատարեալ զգացումը և իր մեծաւորները պատուամեծար յարգութեամբ բռնած ըլլալը: Սերում խնդրեց քարոզելու՝ վախնալով որ չըլլայ թէ դեսպանը մտածէ թէ զինքը՝ գրգռելու ու իրեն դէմ խրոխտալու համար այսպէս կընէ: Աս չափաւորութիւնը ու խոհեմութիւնը անշուշտ քարոզի մը չափ պատուական վարժութիւններ էին:

Բայց կարդինալին պաշտօնեաները չթողուցին իրեն հանգստանալ, այլ վերստին դարձան իրենց պաշտօնը կատարելու: "Կարդինալը, ըսին, իր շնորհքը ու սէրը կը խրկէ քեզի: ինչո՞ւ համար կըվախնաս": Ու ջանացին որ կերպ կերպ ձեռնարկութիւններով ճարք մը գտնեն համոզել զինքը դեսպանին առջևը ելլելու: "Ինչպէս քաղցր բնութիւն ունի, որ հօր մը կընմանի". ըսաւ աս լրտեսներուն մէկը. բայց ուրիշ մէկը Լուտերին մօտենալով ականջէն վար ըսաւ. "Մի հաւատար անոնց ըսածին. ինքը ամենևին իր խօսքին վրայ չըկենար": Լուտեր իր առաջադրութեանը վրայ հաստատ կեցաւ:

Երկուշաբթի առաւօտուն Հոկտեմբերի 10ին Սերրա Լօնկա վերստին նորոգեց իր թախանձանքները: Պալատականը աս գործին մէջ իր յաջողիլը պատուոյ նպատակ ըրած էր իրեն: Իր ներս մտած վայրկեանին՝

"Ինչո՞ւ համար, ըսաւ Լատինական լեզուով, ինչու համար չես երթար կարդինալին. կատարեալ ներողամտութեամբ քեզի կըսպասէ ինքը: Բոլոր վէճը ինքը կըվերջա-

*ցընէ աս վեց գրերովը*, Revoca *Հերքեա։ Աղաչեմ իմ հետս եկուր․ վախնալու բան մը չկայ"։*

*Լուտեր իր սրտին մէջ խորհեցաւ թէ ասոնք վեց խիստ զգուշալի գրեր են․ բայց առանց այլ եւս քննելու պատասխան տուաւ․*

*"Հրամանագիրը ընդունածիս պէս պիտի գամ"։*

*Մէրրա Յօնկա աս խօսքին վրայ բարկացաւ․ կըպնդէր, ուրիշ պատճառներ յառաջ կըբերէր անոր միտքը պաղեցնելու․ բայց Լուտեր անշարժ կեցաւ։ Իտալացի պալատականը առաւել եւս գրգռուելով՝ կանչեց․*

*"Անշուշտ դուն կըկարծես որ կայսրընտիրը քու պատճառովդ պատերազմ պիտի բանայ, ու իր նախնիքներէն ժառանգած երկիրները քեզի համար կորստեան վտանգի մէջ պիտի ձգէ"։*

Լուտէր․ *Բնաւ լեցի։*

Մէրրա Յօնկա․ *Երբոր ամէնքը քեզ երեսէ ձգեն, որո՞ւն տակը պիտի պաշտպանուիս։*

*Լուտեր, հաւատոյ աչօք դէպի վեր նայելով, ըսաւ․ Երկինքին տակը։*

*Աս վսեմ և անակնկալ պատասխանիս վրայ Մէրրա Յօնկա ատեն մը համրացաւ մնաց․ անկէ ետև շարունակեց ըսելով․*

*"Ինչպէս պիտի վարէիր թէ որ դեսպանը՝ պապը՝ և բոլոր կարդինալները քու իշխանութեանդ տակը ունենայիր, ինչպէս որ անոնք աս վայրկեանիս իրենց իշխանութեան տակը ունին զքեզ"։*

Լուտէր․ *Ամենուն պատշաճաւոր պատիւ և յարգութիւն կընծայէի․ բայց ամէն բանէ վեր է ինծի Աստուծոյ Բանը։*

*Մէրրա Յօնկա, խնդալով ու իր մատներուն մէկովը չի հաւատալու նշան ընելով, ըսաւ․ Հա՜, հա՜․ ամենուն պատշաճաւոր պատի՜ւ․ ամենեւին չեմ հաւատար ատոր։*

*Աս ըսելով դռնէն դուրս ելաւ, իր ձիուն վրայ ցատկեց, ու իսկոյն աներեւոյթ եղաւ։*

Մերրա Լօնկա այլ ևս չգնաց Լուտերին. բայց երկար ատեն կը յիշէր այն ընդդիմութիւնը որ Բարեկարգողէն կրեց ։ Մեր պատմութեան ընթացքին մէջ ետքերը նորէն պիտի տեսնենք զինքը որ բարձրաձայն աղաղակաւ Լուտերի արիւնը կը խնդրէ ։

Մերրա Լօնկայի երթալէն ետև՝ Լուտեր իսկոյն ընդունեց ազատագիրը որ իր բարեկամները առեր էին կայսերական խորհրդականներէն ։ Լուտեր դեսպանին առջևը երևնալու վրայ էր ։ Բայց աս հրամանագիրը ձեռք ձգելուն մարդկային իշխանութեան չապաւինեցաւ ինքը, վասն զի աղէկ կը յիշէր որ կայսեր հրամանագիրը կրակի բոցերէն ազատեցուցած չէր զՅովհաննէս Հուսը ։ Միայն ուղեց իր պարտաւորութիւնը ընել, իր իշխանին բարեկամներուն տուած խրատին հետևելով ։ Իր դատը Տէրը պիտի վճռեր. թէ որ Աստուած իր կեանքը ուզեր, ինքը պատրաստ էր ուրախութեամբ տալ զանիկայ ։ Աս վտանգաւորը վայրկեանիս կը փափաքէր միանգամ ևս խօսակցիլ իր բարեկամներուն հետ՝ և մանաւանդ Մելանկտոնի հետ, որ արդէն այնչափ սիրելի էր իրեն ։

“Դուն զքեզ քաջասիրտ ցուցուր, ըսաւ, ինտոր որ արդէն ցուցուցիր ։ Մեր սիրելի երկրին պատանիները վարժէ ուղիղ և Աստուծոյ կամացը հաճոյ եղած բաներուն մէջ ։ Իսկ իմ վրայովս՝ քեզի ու անոնց համար իմ անձս պիտի մատուցանեմ, թէ որ Տէրոջը կամքը ասիկայ է. առաւել կընտրեմ մեռնիլ՝ մանաւանդ և քու պատուական ընկերութիւնդ կորսընցունել՝ որն որ ինծի ամենամեծ դժբաղդութիւն է, քան թէ հերքել ան՝ ինչ որ իմ պարտաւորութիւնս էր սորվեցընել ։

“Իտալիա Եգիպտոսի նման թանձրամած խաւարի մէջ թաղուած է. այնպիսի խաւարի որ կրնայ շօշափուիլ ։ Բոլոր ազգը ոչ զՔրիստոս գիտէ, և ոչ անոր պատշաճեալ բաները ։ Բայց և այնպէս հաւատոյ և բարոյականութեան մեր տէրերը ու վարդապետներն են անոնք ։ Այսպէս մեր

մէջը կատարուած է Աստուծոյ բարկութիւնը, մարգարէին ըսածին պէս, "Այս կացուցից 'ի վերայ նոցա մանկունս իշխանս. և խաբեբայք տիրեսցեն նոցա" : Եսայ, Գ. 4: Սիրելի Փիլիպպոս, քու առ Աստուած պարտաւորութիւնդ կատարէ, ու ջերմեռանդ և սուրբ աղօթքով անոր բարկութիւնը դարձուր":

Դեսպանը իմանալով որ Լուտեր հետևեալ օրը իրեն պիտի երևայ, ժողվեց զանոնք որոնց վրայ վստահութիւն ունէր՝ թէ Իտալացիները և թէ Գերմանացիները, որպէս զի խորհի անոնց հետ թէ ինչպէս պէտք է վարուիլ Գերմանացի միաբանին հետ: Կարծիքները բաժնուեցան: Մէկը ըսաւ. "Պարտիմք բռնադատել զինքը որ իր վարդապետութիւնը հերքէ": Ուրիշ մէկը ըսաւ. "Պարտիմք բռնել զինքը ու բանտը դնել": Երրորդը կըկարծէր թէ լաւագոյն պիտի ըլլայ զանիկայ մէջ տեղէն վերցընելը: Չորրորդը՝ թէ պէտք է յաւէտ որսալ զինքը հեզութեամբ և մարդասիրութեամբ: Կերևայ որ կարդինալը առջի բերանը առաջադրեց աս վերջին կերպը փորձի դնել:

## ՀԱՏՈՒԱԾ Զ.

ՔՆՆՈՒԹԵԱՆ որը վերջապէս եկաւ հասաւ: Դեսպանը գիտնալով որ Լուտեր յօժարութիւն ցուցըրած էր հերքելու ինչ որ կրնար ապացուցուիլ թէ ճշմարտութեան դէմ է, յուսով լեցուած էր. քանզի վստահութեամբ կըկարծէր թէ իր աստիճանը ու գիտութիւնը ունեցող մէկը առանց մեծ դժուարութեան Եկեղեցիին հնազանդելու պիտի դարձընէ զվարդապետը:

Լուտեր գնաց դեսպանին բնակարանը՝ Կարմեղեանց մեծաւորին իր վանատուր բարեկամին ընկերութեամբը, ու վանքին երկու եղբայրներուն հետ: Ասոնց մէկն էր Լինք

վարդապետը՝ ու միւսը Օգոստինեան միաբան մը, հաւանականաբար ան նոյն անձը որ Նիւռնպէրկէն ընկերացեր էր իրեն: Դեսպանին պալատը մտածին պէս՝ բոլոր Իտալացիները որոնք Եկեղեցւոյ աս Իշխանիս պաշտօնեայներն էին, իր բոլորտիքը թափեցան, ամէնն ալ բաղձալով որ տեսնեն անուանի վարդապետը, ու այնպէս նեղը ձգեցին զինքը որ դժուարութեամբ կրցաւ յառաջ երթալ: Երբոր մտաւ ան սենեակը՝ ուր որ կարդինալը կըսպասէր իրեն, Լուտեր գտաւ զինքը առաքելական նուիրակին ու Սերրա Լօնկային հետ: Դեսպանը ցուրտ կերպով բայց քաղաքավարութեամբ ողջունեց անոր գալուստը. և Լուտեր Սերրա Լօնկայի խրատին հետևելով երեսին վրայ գետինը խոնարհեցաւ կարդինալին առջևը: Երբոր դեսպանը հրաման ըրաւ որ ելլէ, ծունկի վրայ եկաւ. և երբոր հրամանը կըրկնուեցաւ, ոտքի վրայ կանգնեցաւ: Դեսպանին գերդաստանէն խիստ երևելի Իտալացիներուն շատերը սենեակը մտան խօսակցութիւնը մտիկ ընելու, ու անհամբերութեամբ կըսպասէին որ Գերմանացի միաբանին՝ ինքզինքը պապին երեսփոխանին առջին խոնարհեցընելը տեսնեն:

Դեսպանը լուռ կըկենար. կըսպասէր որ Լուտեր սկսի հերքել իր վարդապետութիւնը, կըսէ ժամանակակից մէկը: Բայց Լուտեր յարգանօք կըսպասէր որ Հռովմայեցի իշխանը իրեն խօսի: Սակայն երբոր տեսաւ թէ ան իր բերանը չէր բանար, իմացաւ որ անոր լռութիւնը հրաւէր մըն էր իրեն գործը բանալու, ու այսպէս սկսեց խօսիլ.

«Ամենապատիւ հայր, սրբազան պապին հրաւէրքովը, ու իմ բարեշնորհ տեառնս՝ Սաքսոնիայի կայսրընտրին ուզելովը ձեր առջևը կերևամ իբրև խոնարհ և հնազանդ որդի Քրիստոնէական սուրբ Եկեղեցւոյ. ու կըխոստովանիմ թէ ես էի որ հրատարակեցի ան նախադասութիւնները՝ որ հետաքննութեան տակ ինկած են: Ամենայն խոնարհութեամբ պատրաստ եմ ինծի դէմ եղած ամբաստանու-

*թիւնները լսելու, ու թէ որ սխալած եմ՝ ճշմարտութեան մէջ վարժուելու" ։*

*Կարդինալը՝ որ միտքը դրեր էր քաղցր և գործակից հօր պէս խօսիլ մոլորեալ որդիի մը, խիստ բարեկամական եղանակով մը չպատասխանեց, Լուտերի խոնարհութիւնը գովեց, ու նոյն խոնարհութիւնը տեսնելուն վրայ իր զգացած ուրախութիւնը յայտնեց ըսելով. "Սիրելի որդեակ, բովանդակ Գերմանիա շփոթութեամբ լցուցիր ներողութեանց վրայ քու ըրած վիճաբանութիւնովդ. կըլսեմ որ դուն Սուրբ Գրոց մէջ քաջահմուտ վարդապետ մըն ես, և որ՝ շատ հետևողներ ունիս ։ Ասան որոյ թէ որ կըբաղձաս Եկեղեցւոյ մէկ անդամը ըլլալ, ու պապը ամենագթած տէր մը ունենալ քեզի, ականջ դիր ինծի" ։*

*Աս կանխաբանութենէս ետև՝ դեսպանը անմիջապէս սկսեց ըսել անոր ան ամէնը որ իրմէն կըպահանջէր. այսչափ վստահ էր անոր հնազանդութեան գալուն վրայ ։ "Երեք խնդիրներ կան՝ որ սրբազնասուրբ հօրն մերոյ տասներորդ Լեւոն պապին հրամանաւը պիտի առաջարկեմ քեզի ։ Նախ՝ պարտիս քու պարտաւորութեանդ դառնալ. պարտիս խոստովանիլ քու յանցանքներդ, հերքել քու մոլորութիւններդ՝ քու նախադասութիւններդ և քու քարոզներդ ։ Երկրորդ՝ պարտիս խոստանալ որ այնուհետև պիտի հրաժարիս քու կարծիքներդ տարածելէն ։ Եւ երրորդ՝ պարտիս խոստանալ առաւել զգաստ կենալու, ու հրաժարիլ ամէն ան բաներէն՝ որ վիշտ կամ նեղութիւն կուտան Եկեղեցւոյ" ։*

*Լուտեր. "Ամենապատուական հայր, թոյլտուութիւն կըխնդրեմ տեսնելու պապին կոնդակը, որուն ուժովը կատարեալ իշխանութիւն ընդունած էք դուք աս գործիս մէջ խառնուելու" ։*

*Սերրա Լօնկա՝ ու կարդինալին պաշտօնեաներէն միւցեալ Իտալացիները ապշեցան ճռացին այսպիսի խնդիրի մը վրայ. և թէպէտ Գերմանացի միաբանը արդէն նորասքանչ*

մէկը երեւցած էր իրենց, բոլորովին խռովեցան տեսնելով համարձակ խօսքի մը վրայ։

Տէ Մ. Ժօ. "Սիրելի որդեակ, քու խնդրոյդ հաւանութիւն չկրնար տրուիլ։ Քու ընելիքդ աս է որ քու սխալներդ խոստովանիս, այսուհետեւ քու խօսքերուդ զգուշանաս, քու փոխանծիդ չդառնաս. անանկ որ առանց հոգի ու սրտի ներողութեան ժամք. և ամառնը սրբազնասուրբ հօրմ մերոյ պապին հրամանովը ու տուած իշխանութիւնովը բոլոր գործը ես կարգի կդնեմ"։

Լոռէր. "Հաճեցէք ուրեմն իմացընել ինծի՝ թէ ի՞նչ բանի մէջ սխալած եմ"։

Իտալացի պալատականները առջի նուագէն աւելի սքանչացան աս խնդրոյն վրայ, որոնք կը յուսային տեսնել՝ թէ ողորմելի Գերմանացին երեսանկեալ պիտի պաղատէր ողորմութիւն գտնելու։ Անոնցմէ ոչ մէկը պիտի կրնար պատասխան տալ այսպիսի անպատշաճ խնդրոյ մը. բայց Տը Մ. Ժօ ներողամտութեան եղանակ մը վրան առնելով ըսաւ.

"Սիրելի որդեակ, ահա երկու նախադասութիւններ՝ որ դուն հրատարակած ես, որոնք ամենէն առաջ պարտիս հերքել. — Նախ՝ թէ ներողութեանց գանձը Յիսուս Քրիստոսի տեառն մերոյ չարչարանաց ու արդիւնքներուն վրայ չհաստատուիր։ Երկրորդ՝ թէ Սուրբ խորհուրդը ընդունողը հաւատք ունենայ։

Աս երկու նախադասութիւնները արդարեւ միահարբեր հարուած մը կուտային Հռովմայ տուրեւառին։ Քանզի թէ որ պապը իշխանութիւն չունենար փրկչին արդիւքները ըստ հաճոյից գործածելու, թէ որ Եկեղեցիին վաճառարկուներուն ըրած տուրեւառին կոնդակը առնողները՝ մարդիկ բաժանորդ չէին ըլլար Քրիստոսի անսպառ արդարութեան, աս թղթէ շրջաբերութիւնը իր յարգը պիտի կորսնցունէր, ու մարդիկ ոչինչ թղթի մը կտորէ լաւագոյն չպիտի համարէին զանիկայ։ Նմանապէս և խորհուրդ-

ներուն վրայ. ներողութիւնները Հռովմ չնաշխարհիկ վաճառականութիւն մը կըհամարէր. բայց խորհուրդները իր ամէն օրուան վաճառքներն էին, և անոնց բերած արդիւնքը պզտի բան չէր: Ասոր խորհուրդները Քրիստոնէին հոգւոյն ստուգապէս օգտակար ըլլալու համար հաւատոյ հարկաւորութիւն հաստատելը, ժողովրդոց առջևը անոնց զօրութիւնը տկարացունել էր: Վասն զի հաւատքը պապին ձեռօքը չտրուիր. ասիկայ անոր կարողութենէն դուրս է, և միայն Աստուծմէ կրնայ գալ: Վասն որոյ հաւատոյ հարկաւորութիւնը հրատարակելը՝ պապին ձեռքէն յափշտակել էր թէ ան առուտուրը և թէ անոր ընծայուած օգուտները: Լուտեր աս երկու վարդապետութեանցս հակառակելով հետևեցաւ Քրիստոսի օրինակին, որ իր քարոզութիւնը սկսելուն հատավաճառներուն սեղանները կործանեց, ու առուտուր ընողները տաճարէն դուրս ըրաւ ըսելով: “Իմ հօրս տունը առուտուրի տուն մի՛ ընէք”:

Կայետանոս կարդինալը շարունակեց իր խօսքը և ըսաւ. “Քու սխալներդ ջրելու համար սրբոյն Թովմայի և ուրիշ դպրոցական աստուածաբաններու հեղինակութիւնը յառաջ չեմ բերեր. բոլորովին Աստուածաշունչ սուրբ Գրոց վրայ կըհաստատուիմ, ու կատարեալ բարեկամութեամբ քու հետդ կըխօսիմ”:

’Ի վերայ այսր ամենայնի՝ երբոր Տը Վիօ իր ապացուցութիւնները սկսեց յառաջ բերել, իր դրած կանոնէն խոտորեցաւ: Լուտերին առջի նախադասութեանը դէմ Կղեմէս պապին մէկ Սահմանադրութիւնը բերաւ. ու երկրորդին դէմ դպրոցական Աստուածաբաններուն ամէն տեսակ կարծիքները: Ասոր վրայ վիճաբանութիւնը դարձաւ պապին սա սահմանադրութեանը վրայ՝ որ ’ի նպաստ ներողութեանց հրատարակեր էր: Լուտեր երբոր լսեց թէ դեսպանը ինչ զօրութիւն կընծայէր Հռովմայ վճռոյն, սըրտմտելով ըսաւ.

“Այսպիսի սահմանադրութիւնները ասանկ երևելի խըն-

դիրներու վրայ բաւական վկայութիւն ըլլալ չեմ կրնար ընդունիլ ես . վասն զի անոնք սուրբ Գրոց իմաստը կը շրջեն, և ոչ երբէք ճշդութեամբ յառաջ կըբերեն զանոնք":

**Տը Վիօ**. "Պապը իշխանութիւն և զօրութիւն ունի ամէն բաներու վրայ":

**Լութէր** (պաչնալով). "Բայց ոչ սուրբ Գրոց վրայ":

**Տը Վիօ** (ծաղրաբանելով). "Ոչ սուրբ Գրոց վրա՜յ . . . չե՞ս գիտեր որ պապը ժողովներէն բարձր է, վասն զի ինքը մօտերս դատապարտեց ու պատժեց Փալէի ժողովը":

**Լութէր**. "Բայց Փարիզու համալսարանը աս վճռոյն դէմ բողոքեց":

**Տը Վիօ**. "Ան Փարիզու պարոնները իրենց ըրածին արժանաւոր հատուցումը պիտի ընդունին":

Կարդինալը ու Լուտեր այնուհետև յառաջացան քննել երկրորդ խնդիրը, այսինքն ան՝ որ Լուտեր հաստատեր էր՝ թէ խորհուրդներուն բարութիւնը ընդունելու համար հաւատք պէտք է: Լուտեր իր սովորական կերպովը իր բռնած կարծիքին վրայ զանազան վկայութիւններ բերաւ սուրբ Գրքերէն. բայց դեսպանը արհամարհանօք ընդունեց զանոնք: "Դուն հիմայ կըխօսիս հաւատոյ վրայ ընդհանրապէս". ըսաւ: "Ոչ այդպէս". պատասխան տուաւ Լուտեր: Իտալացիներուն մէկը՝ դեսպանին արարողապետը Լուտերին ըրած ընդդիմութեանը ու տուած պատասխաններուն վրայ բարկանալով՝ սիրտը կեփէր որ խօսի: Շատ անգամ ջանաց անոնց խօսակցութիւնը ընդմիջել. բայց դեսպանը հրաման կընէր որ լռէ. վերջապէս պարտաւորեցաւ այնպէս սաստիկ յանդիմանել զանիկայ, որ ամչնալով սենեակէն դուրս ելաւ մարդը:

"Իսկ ներողութեանց վրայով՝ ըսաւ Լուտեր դեսպանին՝ թէ որ կրնաս ցուցընել ինծի թէ սխալած եմ, ես պատրաստ եմ խրատուելու, կրնանք մէկ դի թողուլ աս խնդիրը առանց ձգելու մեր հաւատքը իբրև Քրիստոնեայ: Բայց հաւատոյ խնդրոյն վրայով թէ որ բան մը ձգելու ըլլամ

զՔրիստոս ուրացած կըլլամ ։ Վասն որոյ չեմ կրնար և չեմ կամիր ձգել ատ մասը , ու Աստուծոյ օգնութեամբը մինչև 'ի վախճան պիտի բռնեմ զանիկայ'' ։

Տր Վ.քօ (բարկանալու—սկսելով) • ''Եթէ կամիս և եթէ չկամիս , աս սոյն օրս պարտիս հերքել ատ խնդիրը • ապա թէ ոչ՝ միայն աս խնդրոյն համար կըմերժեմ և կըդատապարտեմ՝ քու բոլոր վարդապետութիւնդ'' ։

Լուտէր • ''Ես ուրիշ կամք չունիմ բայց Տէրոջը կամքը ։ Ինքը պիտի ընէ ինծի ինչ որ իրեն հաճելի կերևնայ • բայց թէ որ չորս հարիւր գլուխ ունենայի , առաւել կըկամէի անոնց ամէնն ալ տալ քան թէ հերքել Քրիստոնէական սուրբ հաւատոյ վրայ իմ ըրած վկայութիւնս'' ։

Տր Վ.քօ • ''Ես քու հետդ վիճաբանելու եկած չեմ հոս ։ Հերքէ , կամ պատրաստուէ կրել ան պատիժները որուն արժանաւորեցար'' ։

Լուտեր յայտնապէս իմացաւ որ խօսքով չպիտի վերջանար աս գործը ։ Իր թշնամին անանկ նստեր էր իր առջևը որպէս թէ նոյն ինքն պապն էր , ու կըխնդրէր անկէց որ խոնարհ հնազանդութիւն մը ցուցընէ ան ամենուն ինչ որ կըսէր անոր , բայց ինքը Լուտերի պատասխանները՝ Սուրբ Գրոց վրայ հաստատուածները և կընդունէր նախատինքներով ու ամէն տեսակ հեգնութիւններով և արհամարհութիւններով ։ Լուտեր մտածեց որ խոհեմութիւնը գրութեամբ պատասխան տալն է կարդինալին ։

Վասն որոյ երբոր ցուցուց թէ ետ պիտի քաշուէր , ''Կուզե՞ս , ըսաւ դեսպանը , որ ազատագիր մը տամ քեզի Հռոմ երթալու'' ։

Չկար ուրիշ բան մը որ այնչափ հաճելի ըլլար Կայետանոսին՝ որչափ աս խնդրոյս ընդունելը ։ Ասանկով ինքը պիտի ազատէր ան գործէն՝ որուն դժուարութիւնը սկսեց իմանալ , ու Լուտեր և անոր հերետիկոսութիւնը պիտի իյնային անոնց ձեռքը՝ որոնք գիտէին թէ ինչպէս պիտի բանեցընեն զանոնք ։ Բայց Բարեկարգողը՝ որ Աւկսպուրկէ

մէջ ևս զինքը շրջապատած վտանգները կըզգար, զգուշացաւ հրաժարիլ ան առաջարկութենէն՝ որ կապած ձեռքով ու ոտքով պիտի մատնէր զինքը իր թշնամիներուն վրէժխնդրութեանը ։ Տը Վիօ շատ անգամ առաջարկեց աս բանը, ու Լուտեր ամէն անգամին մերժեց անոր առաջարկութիւնը ։ Դեսպանը Լուտերի մերժելուն վրայ իր զգացած զայրացումը ծածկեց․ իշխանական եղանակ մը վրան առաւ, ու ճամբեց միաբանը գորովալից ժպիտով մը՝ ջանալով ծածկել իր յուսակտուր ըլլալը, և միանգամայն ցուցընելով այնպիսի քաղաքավարութիւն մը իբր թէ որ կը յուսար լաւ ևս յաջողիլ ուրիշ անգամի մը։

Հաղիւ թէ Լուտեր իջած էր պալատին գաւիթը, որ ան ունայնաբան Իտալացին, ան արարողապետը՝ որն որ իր տէրոջը յանդիմանութիւններէն պարտաւորած էր հեռանալ խորհրդարանին սրահէն, ուրախութեամբ լեցուած որ պիտի կարենայ խօսիլ, Տը Վիօի տեսութենէն հեռու, և իր լուսաւորեալ իրաւունքներովը աս դարշելի հերետիկոսը շփոթելու փափաքովը վառուած, անոր ետևէն վազեց, և սկսեց քալելով ըսել անոր իր իմաստակութիւնները։ Իսկ Լուտեր՝ աս վատթար մարդէն ձանձրանալով, անանկ կծու խօսքերով պատասխանեց իրեն, որ ողորմելի արարողապետը, բոլորովին շփոթած հեռացաւ անկէց, և ամօթով կարդինալին պալատը մտաւ ։

Լուտեր իր մեծարու թշնամիին վրայ շատ բարձր գաղափար մը չունեցաւ։ Լսեց անկէց այնպիսի խօսքեր՝ որոնք բոլորովին հակառակ էին ողջամիտ աստուածաբանութեան, և որոնք ուրիշին բերանը ծայրագոյն աստիճանի հերետիկոսութիւն կը համարուէին ։ Բայց և այսպէս՝ Տը Վիօ Դոմինիկեաններուն ամէնէն իմաստունը կը կարծուէր․ Պրիէրիաս ևս իրմէն նուաստ կը համարուէր։ "Ասկէց կըրնամք գտնել՝ ըսաւ Լուտեր, թէ ինչ պիտի ըլլան անոնք որ տասը կամ հարիւր աստիճան անկէց վար են" ։

Ընդ հակառակն՝ Վիդէմպէրկի վարդապետին գերա-

պանծ հաստատութիւնը մեծապէս զարմացուց կարդինալը ու անոր բոլոր պալատականները։ Փոխանակ ողորմելի միաբանի մը որ խոնարհութեամբ կըպաղատի ներում գտնելու, տեսան ազատ հոգւոյ տէր մարդ մը, արիասիրտ քրիստոնեայ մը, լուսաւորեալ վարդապետ մը, որ կըխնդրէր անոնցմէ իրենց անիրաւ ամբաստանութեանցը ապացոյցները, ու քաջութեամբ կըպաշտպանէր իր վարդապետութիւնը։ Կայետանոսի պալատին բնակիչները միաբերան աղաղակեցին հերետիկոսին հպարտութեանը՝ յամառութեանը՝ և լրբութեանը դէմ։ Լուտեր և Տը Վիօ սորվեցան մէկ մէկու ինչ ըլլալը, ու երկուքն ալ կըպատրաստուէին երկրորդ խօսակցութեան մը։

Երբ՝ Լուտեր Կարմեղեանց վանքը դառնալուն խնդալից զարմանքով մը բռնուեցաւ։ Հոն գտաւ Ստաւպիցը՝ Օգոստինեան կարգի ընդհանրական մեծաւորը, իր բարեկամը և իր հայրը։ Որովհետև Ստաւպից չէր կրցեր խափանել զԼուտեր Աւկսպուրկ երթալէն, իր սիրոյն նոր և ազդու փորձը ցուցուց իր բարեկամին՝ ինքը անձամբ նոյն քաղաքը գալով. և կըյուսար որ մէկ օգնութիւն մը ընէր անոր։ Այս պատուական անձը կըգուշակէր որ դեսպանին հետ ըլլալու խօսակցութիւնէն մեծամեծ հետևանքներ պիտի ծագի։ Իր երկիւղները ու Լուտերին վրայ ունեցած իր սէրը միաբան շփոթեցին զինքը։ Այն փորձութեան խօսակցութիւնէն ետև այսպիսի պատուական բարեկամի մը գալուստը սպեղանի էր Բարեկարգողին սրտին։ Պատմեց անոր թէ ինչպէս անճար եղաւ բաւական պատասխան մը տանալ, և ինչպէս պահանջուեցաւ իրմէ հերքել իր ըսածը, ամենևին առանց ցուցընելու իր սխալած ըլլալը։ «Պէտք է քեզի որ անշուշտ գրութեամբ պատասխան տաս դեսպանին», ըսաւ Ստաւպից։

Այս առաջին խօսակցութեանը վրայ լսելէն ետև, Ստաւպից չէր յուսար որ հետևեալներուն աղէկ վախճան մը ծագէր։ Վասն որոյ միտքը դրաւ ճամբայ մը բռնել՝ որ

թէ վերջինը պիտի ըլլար ։ Լուտերի բարեկամները իր հետը դեսպանին պալատը երթալ ուզելով, Կարմեղեանց վանքը գացին ։ Ասոնց մէջն էին կայսերականին երկու խորհրդականները՝ որոնք իրենց իշխանին հրամանովը խօսակցութեան ատենը հոն ներկայ գտնուելով, Լուտերին անձին պաշտպանութեանը պիտի հսկէին ։ Ասոնք նախընթաց իրիկունը Աւգսպուրկ հասած էին ․ Լուտեր ալ իր հետը քարտուղար մը առաւ, ու իր բոլոր բարեկամներուն հետ դեսպանին պալատը երթալու ելաւ ։

Երբոր ճամբայ ելան՝ Ստաուպից Լուտերին քովէն կերթար ․ իր բարեկամին քաջալերը բոլոր բաները կըզգար ․ գիտէր որ եթէ անոր աչքը ուղղելով չըլլար ան Աստուած՝ որ իր ծառաներուն ազատիչն է, աս փորձութեան ատենը պիտի տկարանար ․ "Սիրելի եղբայր, ըսաւ վեհանձնութեամբ, հաստատուն քու միտքդ ըլլայ որ դուն աս վիճաբանութիւնները սկսեցիր Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ անունովը" ։ Այսպէս էր որ Աստուած իր խոնարհ ծառան մխիթարութիւնով ու քաջալերութիւնով կըզօրացնէր ։

Երբոր հասան Կարդինալին պալատը՝ Լուտեր մէկ նոր հակառակորդ մը գտաւ հոն ․ ատիկայ էր Աւգսպուրկի Դոմինիկեանց մեծաւորը, որ իր գլխաւորին քովը նստեր էր ։ Լուտեր իր առաջադրանքին պէս իր տալու պատասխանը 'ի գիր առած էր ։ Սովորական ողջունագրութիւնները կատարուելէն ետև, Լուտեր զօրաւոր ձայնով մը աս հետևեալ յայտարարութիւնը կարդաց ․

"Յայտնի ըլլայ որ ես Հռովմէական սուրբ Եկեղեցին կըպատուեմ և միշտ պիտի պատուեմ ։ Իմ հրապարակական վիճաբանութիւններուս մէջ ճշմարտութիւնը խնդրած եմ, ու իմ սորվեցուցածներուս ուղիղ, ճշմարիտ և քրիստոնէական ըլլալ կըհամարիմ մինչև աս ժամս ։ 'Ի վերայ այսր ամենայնի՝ մարդ եմ ես, ու կրնամ սխալիլ ․ վասն որոյ յօժարութեամբ կըկամիմ որ վարժուիմ և ուղղիմ ուր որ կարելի է թէ մոլորած եմ ։ Պատրաստ եմ բերնով

խոստովանիլ թէ Տը Վիօ իւր գովելի չափաւորութիւն մը և անաչառութիւն մը ցուցուց ասով ։

Օրէ օր առաւել յայտնի կը լլար թէ դեսպանը ուրիշ բան չէր ուզեր լսել Լուտերէն՝ բայց «Կը հերքեմ» բառը, ու Լուտեր իր միտքը դրեր էր բերնէն չհանել զանիկայ ։ Ասանկ մէկզմէկու հակառակ ջանացողութեան մը մէջ ի՞նչ վախճանի կրնար յուսացուիլ ։ Ինչպէս կրնար մտածուիլ թէ Հռովմայ բռնաւոր զօրութիւնը՝ որ մէկ մարդու մը դէմ զինուորուած էր, 'ի վերջոյ պիտի տկարանար յաղթելու զանիկայ ։ Լուտեր ասոնց ամէնը կը տեսնէր. կըզգար ան ծանր ձեռքին ճնշումը՝ որուն տակը զինքը դնել համարձակեր էր ։ Կորուց յոյսը երբեք Վիդդեմպէրկ դառնալու, իր սիրելի Փիլիպպոսը կրկին տեսնելու, ու անգամ մըն ալ ինքզինքը շրջապատուած գտնելու ան ազնիւ պատանիներէն՝ որոնց սրտին մէջ յաւիտենական կենաց սերմեր ցանելը այնչափ իր բերկրութիւնն էր ։ Բանադրանաց վճիռը իր գլխուն վրայ կախուած տեսաւ, ու շատ չանցած անոր իր վրան իյնալուն տարակոյս չունեցաւ ։ Այս նախագուշակութիւնները վշտացուցին, բայց չնուաճեցին զինքը ։ Իր առ Աստուած ապաւինութիւնը չշարժեցաւ ։ Իրաւ կրնայ ըլլալ որ Աստուած իր մինչև հիմայ ձեռք առած գործերը ջնջէ վերցընէ, բայց անտարակոյս ճշմարտութիւնը պիտի պահէ. և ինչ որ պատահելու ըլլայ, Լուտեր ալ պատրաստ է մինչև 'ի վախճան զանիկայ պաշտպանել ։ Ասոր համար աս զգացումներովս սկսեց պատրաստել ան բողոքը որ պիտի խրկէր դեսպանին ։ Կերևայ որ Հոկտեմբերի 13երորդ օրը՝ աս գործին կըպարապէր ։

## ՀԱՏՈՒԱԾ Ը

ՀԵՏԵՒԵԱԼ օրը Լուտեր դարձեալ գնաց Սպալատինին պալատը՝ կայսրընտրին երկու խորհրդականներուն հետը ։ Ի-

տալացիները ըստ հասարակ սովորութեան իր բոլորտիքը դիզուեցան, ու անոնցմէ շատերը խօսակցութեան ատենը ներկայ էին ։ Յուսուֆ գեսպանին առջևը ելաւ, ու իր բողոքը անոր մատուց ։ Կարդինալին պաշտօնեաները իրենց լերբենի և գոռոզ աչքերովը անթարթափ կընայէին գրութեանը վրայ ։ Հոս կըդնեմք ան աղաչագրութիւնը որ Ս.Էգիդէմիջերկի վարժապետը անոնց առջևը մատուց ։

"Սիրելու եղբայրներս վրայով կամբաստանէք ինծմէ. և նախ ինծի դէմ յառաջ կըբերէք Զ. Կղեմէս պապին սահմանադրութիւնը, ուր որ կըհաստատուի թէ ներողութեանց գանձին մէջ Յիսուս Քրիստոսի և սրբոց արդիւնքները կան. աս հաստատութիւնը իմ նախադասութիւններուս մէջ ես կուրանամ ։

Բայց Փանտըրվալտանս* իր առաջին գրքին մէջ կըյայտնէ թէ մեր սուրբ հայրերուն վերաբերեալ բաներու մէջ ոչ միայն ընդհանուր ժողովը՝ այլ իւրաքանչիւր մասնաւոր քրիստոնեայ ևս պապէն վեր է, միայն թէ անկէց լաւագոյն վկայութիւններ և պատճառներ յառաջ բերէ Սուրբ Գիրքէն. քանզի Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ ձայնը բովանդակ մարդոց ձայնէն վեր է, ինչ անունով որ անոնք կոչուին ։

"Օ՛ իմ սրբազան խառաւողը՝ ու իմ խիստ ցաւալի մտածութիւններս դրդողը ան է որ աս սահմանադրութիւնը կը պարունակէ շատ բաներ որոնք բոլորովին հակառակ են ճշմարտութեան ։ Նախ կըհաստատէ թէ սրբոց արդիւնքը գանձ մըն է. բայց բովանդակ Աստուածաշունչ գիրքը կը վկայէ թէ Աստուած զեր՚ի վերոյ առատութեամբ կըվարձատրէ իր ծառաները քան որչափ որ անոնք արժանաւոր են ։ Մարգարէն կըգոչէ ըսելով "Ու ծառայիդ հետ դատաստանի մի՛ մտներ, ով Տէր, վասն զի մէկ արդար մարդ մը

*Ս.ուէլեայ հնգետասաներորդ դարուն մէջ փիլիսոփայէ աստէղեոլոգոս էր ։

նելով իր միտքը, ըսաւ. "Հաստատեցի ու վկայեցի ես թէ Աստուծոյ առջեւ մէկը չկրնար արդարանալ առանց հաւատքի։ Արդարին արդարութիւնը ու իր կեանքը, իր հաւատքն է"։

Լուտեր աս նախադասութիւնը հաստատեց Սուրբ Գրոց բազմապատիկ վկայութիւններովը ու ասանկ վերջացուց. – "Հաճեցէք ուրեմն բարեխօսել ինծի համար սրբազնասուրբ տեառն մերոյ Ժ Լեոն պապին, որ այսչափ խստութեամբ չվարի իմ հետս։ Իմ հոգիս ճշմարտութեան լոյսը կըփնտռէ. և թէ որ ճշմարտութեան դէմ բան մը սորվեցուցած եմ, ոչ այնչափ մեծամիտ եմ և ոչ այնչափ սնափառ որ ամչնամ հերքելու։ Իմ ամենամեծ ուրախութիւնս ան պիտի ըլլայ որ տեսնեմ թէ յաղթական կըհանդիսանայ ան վարդապետութիւնը՝ որ Աստուծոյ մտացը համաձայն է. միայն թէ չեմ ուզեր որ իմ խղճիս դէմ բան մը ըներու զիս բռնադատեն"։

Դեսպանը Լուտերին մատուցած ազդարարութիւնը առաւ, ու վեր 'ի վերոյ զանիկայ կարդալէն ետև ցրտութեամբ մը ըսաւ. "Շատ խօսքեր վատներ ես, ու անանկ բաներ գրեր ես որ անօգուտ են մեր նպատակին։ Բոլորովին անմտութեամբ պատասխաներ ես քեզի դէմ բերուած ան երկու ամբաստանութիւններուն, ու քու թուղթդ լցուցեր ես Սուրբ Գրոց բազմապատիկ վկայութիւններովը որ ամենեւին վերաբերութիւն մը չունին խնդրոյն"։ Այնուհետև արհամարհելով նետեց թուղթը, որպէս թէ անարժան իր նկատմանը. ու նոյն եղանակը վրան առնելով որ քիչ շատ յաջող գնացեր էր վերջին խօսակցութեան մէջը, վերստին նորոգեց իր աղաղակը թէ Լուտեր պարտի հերքել։ Լուտեր իր հաստատութենէն չշարժեցաւ։ "Ե՛ղբայր, եղբայր, գոչեց Տը Վիօ՝ Իտալական լեզուով, վերջին անգամին քու հոս եղած ատենդ շատ կակուղ էիր, իսկ այսօր բոլորովին յամառեալ ես"։ Անատեն կարդինալը սրբոյն Թովմայի գրութիւններէն առնուած երկար ճառ մը սկսեց.

իր բոլոր կարողութիւնովը վերստին կըբարձրացընէր Զ Կղեմեսի սահմանադրութիւնը, կըպնդէր կըհաստատէր թէ նոյն սահմանադրութեան ուժովը Քրիստոսի իսկական արդիւնքները հաւատացելոց կըտրուին ներողութեանց միջնորդութիւնովը. կըկարծէր թէ լռեցուց զԼուտեր: Նարեկարգողը երբեմն կըջանար խօսիլ, բայց Տը Վիօ միջոց չտալով կորոտար և կըգոռար, ու առջի նուագին պէս կուզէր որ պատերազմի ասպարէզին՝ մի միայն ինքը յաղթական հանդիսանայ:

Աս կերպ ընթացքը առաջին անգամ չափով մը յաջողակ եղած էր. բայց Լուտեր ան մարդը չէր որ անգամ մը ևս համբերէր անոր: Իր սրտմտութիւնը 'ի վերջոյ բորբոքեցաւ, ու հիմա իրեն եկաւ կարգը որ 'ի գնին կեցողները զարմացընէ, որոնք մեծաւորին ճոռոմաբանութեամբը արդէն յաղթուած կըհամարէին զինքը: Իր քաջահնչիւն ձայնը հանեց. կարդինալին սիրուն ընդդիմութիւնը ձեռք առաւ, ու շատ խնստեցուց անոր իր յանդգնութիւնը՝ որով համարձակեցաւ Նայրեկարգողին դէմ կեցողներուն կարգը մտնել: Վերջապէս երբոր "Հերքէ, հերքէ" կըկնեց Տը Վիօ, ցուցընելով անոր պապին սահմանադրութիւնը. "Շատ աղէկ՝ պատասխան տուաւ Լուտեր. աս սահմանադրութիւնովը ևս ցուցուր ինծի թէ բուն Քրիստոսի արդիւնքը ներողութեանց գանձն է, ու ես ձեր վսեմութեան կամքին ու բարեհաճութեանը համաձայն կըզիջանիմ հերքել":

Իտալացիները որոնք չէին յուսար Լուտերէն ասանկ մէկ հաւանութիւն մը, անոր խօսքերուն վրայ ցնծութեամբ լցան, ու չէին կրնար զսպել իրենց ուրախութիւնը երբ որ տեսան թէ թշնամին վերջապէս թակարդը ինկաւ: Իսկ կարդինալը կընմանէր խելքը կորսընցուցած մէկու մը. բարձրաձայն կըծիծաղէր, բայց իր ծիծաղը սրտմտութեան ու բարկութեան ծիծաղ էր. յառաջ վազեց, ան հռչակաւոր սահմանադրութիւնը պարունակող գիրքը առաւ,

թղթերը դարձուց, ան խօսքը գտաւ, ու փքացաւ հպարտացաւ ան յաղթութիւնովը որ ձեռք ձգած համարեցաւ, ընչաստպառ եռանդով 'ի լուր ամենեցուն կարդաց զանիկայ: Իտալացիները յաղթող հանդիսացան հիմա. կայսրընտրին խորհրդականները խռովեցան ու շփոթեցան. բայց Լուտեր պատշաճաւոր վայրկեանին կըսպասէր: Վերջապէս երբոր կարդինալը եկաւ աս խօսքին, "Տէր Յիսուս Քրիստոս ստացաւ աս գանձը իր արդիւնքներովը", Լուտեր անոր խօսքը կտրեց և ըսաւ. "Արժանապատիւ հայր, աղէկ իմացիր ան խօսքը, ու խնամով մտածէ անոր վրայ, թէ՝ "Քրիստոս ստացաւ գանձ մը՝ իր արդիւնքներովը". ուրեմն արդիւնքները գանձ չեն, վասն զի՝ փիլիսոփայական ճշդութեամբ խօսելով, պատճառը իրմէն պատճառեալ բանէն տարբեր բան մըն է: Քրիստոսի արդիւնքները պապին համար ստացան ժողովրդոց այսպիսի ներողութիւններ տալու իշխանութիւնը. բայց անոնք որ պապը կըցրուէ Քրիստոսի նոյն իսկ արդիւքները չեն: Այսպէս՝ ուրեմն իմ եզրակացութիւնս ուղիղ է, ու աս սահմանադրութիւնը որ այսպիսի մեծաբարբառ ձայնով 'ի վկայ կըկոչէք, իմ հետս կըվկայէ ան ճշմարտութեանը որ ես յայտնեցի":

Տը Վիօ տակաւին գիրքը իր ձեռքը բռնած էր. իր աչքերը դեռ ան խօսքին վրայ էին, ու տալու պատասխան չունէր: Ահա ինկած է ինքը ան նոյն թակարդին մէջ որ ուրիշին համար պատրաստեր էր. ու Լուտեր զօրաւոր ձեռքով մը ամուր բռնեց զանիկայ՝ յետին զարմացման մէջ ձգելով Իտալացի պալատականները: Կարդինալը կուզէր 'ազատիլ բայց անհնար էր. քանզի վիճաբանութեան սկզբնաւորութենէն սրբազան Գրոց ու Նախնեաց վկայութիւնը մէկ կողմ ձգեր էր, ու Զ Կղեմեսի սահմանադրութեանը տակ զինքը պատսպարեր էր, և հիմայ իր անառիկ բերդին մէջը բռնուեցաւ: Բայց և այսպէս շատ վարպետ էր իր յաղթուիլը ծածկելու. վասն որոյ իր շփոթութիւնը չյայտնելու համար իսկ և իսկ փոխեց նիւթը, և ուրիշ տար-

բեր խնդիրներու վրայով սկսեց սաստկութեամբ յարձակիլ Լութերին վրայ։ Բայց Լութեր որ իմացաւ աս խորամանկութիւնը, ամէն կողմանէ սխմեց թակարդը որուն մէջ բռներ էր իր թշնամին, ու անճար ըրաւ անոր անկեց փախչիլը։ "Ամենապատիւ հայր, ըսաւ, ձեր վսեմութիւնը չկարծէ թէ մենք Գերմանացիքս բոլորովին անտեղեակ եմք քերականութեան. գանձ ըլլալը ու գանձ գնելը երկու խիստ տարբեր բաներ են"։

"Հերքէ, գոչեց Տը Վիօ, հերքէ. ապա թէ ոչ Հռոմ պիտի խրկեմ քեզ, որ հոն ներկայանաս ան դատաւորներուն որոնք քու դատդ քննելու են։ Պիտի բանադրեմ քեզ՝ և քու բոլոր կուսակիցներդ, և ամէն անոնք որոնք երբէք պաշտպան պիտի կենան քեզի. ու Եկեղեցիէն պիտի արտաքսեմ զանոնք։ Առաքելական սուրբ աթոռէն կատարեալ իշխանութիւն տրուած է'ինծի ասիկայ ընելու։ Մի կարծես որ քու պաշտպաններդ պիտի արգիլե՞ն զիս։ Մի մտածես որ պապը կըվախնա՞յ Գերմանիայէն։ Պապին պզտի մատը աւելի ուժով է քան թէ Գերմանիայի բոլոր իշխանները մէկ տեղ"։

Պատասխան տուաւ Լութեր. "Շնորհք ըրէ, իմ ձեզի տուած գրաւոր պատասխանս ձ Լեոն պապին խրկէ, իմ ամենախոնարհ բարեմաղթութիւններովս"։

Դեսպանը աս խօսքին վրայ քիչ մը հանգստութիւն գտնալու ուրախանալով կրկին մեծութեան երեւոյթ մը վրան առաւ, ու Լութերին դառնալով ամբարտաւան և և ղայրագին ձայնով մը ըսաւ.

"Հերքէ, կամ մէյմըն ալ հոս մի՛ գար"։

Աս խօսքը դպաւ Լութերին. հիմա ինքը պարտի պատասխան տալ ոչ խօսքով, այլ ուրիշ կերպով։ Խոնարհութիւն մը ըրաւ ու ետ քաշուեցաւ։ Կայսրընտրին խորհրդականները իր ետեւէն դուրս ելան, ու Կարդինալը և իր Իտալացիները մինակ մնալով իրարու երես կընայէին, վիճաբանութեան այսպիսի վախճանի հասնելուն վրայ բոլորովին շփոթած։

Լուտեր և Տը Վիօ ոչ ևս իրար տեսան . բայց Բարեկարգողը ազդու տպաւորութիւն մը ըրած էր դեսպանին վրայ , որ ոչ երբէք բոլորովին ջնջուեցաւ : Լուտերի հաւատոյ վրայ հիմակուան ըսածները , և իր յետագայ գրուածքներուն մէջ Տը Վիօի կարդացածները մեծապէս փոխեցին կարդինալին գաղափարները : Հռովմայ աստուածաբանները զարմանքով ու տհաճութեամբ տեսան արդարանալու վրայով անոր ան գաղափարները՝ որ յետոյ Հռովմայեցւոց Թուղթին վրայ իր գրած մեկնութեանը մէջ յառաջ բերաւ : Ոչ Բարեկարգութիւնը նահանջեցաւ , և ոչ Բարեկարգողը հերքեց . այլ անոր դատաւորը՝ որ այնչափ անգամ հրամայեր էր անոր հերքել , իր գաղափարները փոխեց , ու անուղղակի իր սխալները հերքեց : Այսպէս Բարեկարգողին անշարժելի հաւատարմութիւնը վարձքով պսակուեցաւ :

Լուտեր իր պանդխտացած վանքը դարձաւ . անշարժ կեցեր էր , ճշմարտութեան վրայ վկայեր էր , իր առ Աստուած պարտաւորութիւնը կատարեր էր . Մնացածը Աստուած պիտի կատարէ : Իր սիրտը կլեցուի ուրախութեամբ և խաղաղութեամբ :

## ՀԱՏՈՒԱԾ Թ

ՍԱԿԱՅՆ և այսպէս քաջալերական լուրեր չէին բերեր իրեն . բոլոր քաղքին մէջ շշունչ մը կար որ եթէ Լուտեր չհերքէ , պիտի բռնուի ու բանտը դրուի : Կըհաստատուէր թէ իր կարգին ընդհանուր մեծաւորը նոյն ինքն Ստաուպից ալ հաւանութիւն տուեր էր ասոր : Լուտեր չէր կրնար հաւատալ թէ իր բարեկամը այսպիսի բան մը ընէ . ոչ . Ստաուպից չէր կրնար մատնել զանիկայ : Իսկ կարդինալին դաւաճանութիւնները ըստ բաւականին գուշակուած էին իր խօսքերէն : Այսու ամենայնիւ Լուտեր չպիտի փախչէր

վտանգէն. իր կեանքը՝ և նոյն ինքն ճշմարտութիւնը զօրաւոր պաշտպանութեան մը տակ էին, ու բոլոր աս սպառնալիքներուն հակառակ իր միտքը որոշեց չելլել Աւկսպուրկէն։

Դեսպանը շուտով զղջաց իր բռնաբարութեննէն. զգաց որ իրեն ինկած քաղաքավարութեան պահանջածը մոռցեր էր ընելու. ուստի ուզեց որ հիմա կատարէ։ Ստաուպից հազիւ թէ իր ճաշը լմնցուցեր էր (վասն զի խօսակցութիւնը առտուանց եղած էր ու ճաշը կէս օրին դրուած,) որ ատեն պատգամ մը ընդունեց կարդինալէն անոր բնակարանը երթալու։ Ուստի Վէնկէսլաս Լինքին ընկերութեամբը ելաւ գնաց հոն։ Ընդհանրական մեծաւորը մինակ գտաւ զդեսպանը Սերրա Լոնկային հետ։ Տը Վիօ իսկ և իսկ դիմաւորեց Ստաուպիցը, ու չափազանց հեզութեամբ սկսեց խօսիլ անոր և ըսել. "Նայէ հիմա որ համոզես քու միաբանդ, ու յորդորես զինքը որ հերքէ։ Ինչ որ եղաւ՝ եղաւ, արդարև շատ կըհաւնիմ իրեն, ու ինծմէ աղէկ բարեկամ չունի ինքը"։

Ստաուպից. "Այս արդէն իմ ջանացողութիւններս ըրած եմ, ու վերստին կըխրատեմ զինքը խոնարհութեամբ հնազանդիլ Եկեղեցիին"։

Տը Վիօ. "Պարտիս պատշաճաւոր պատասխաններ տալ իրեն սուրբ Գրքէն հանած փաստերուն"։

Ստաուպից. "Պարտիմ խոստովանիլ, տէր իմ, թէ ասիկայ իմ կարողութենէս վեր բան է. վասն զի Մարտինոս վարդապետը շատ գերազանց է ինծմէ թէ նրբամտութեամբ և թէ սուրբ Գրոց վրայ իր ունեցած գիտութեամբը"։

Ընդհանրական մեծաւորին անկեղծ խոստովանութեանը վրայ անտարակոյս կըժպտէր կարդինալը։ Իր փորձառութիւնը ևս սորվեցուցեր էր իրեն թէ դժուարին գործ էր Լուտերին սխալած ըլլալը փաստով ցուցընելը։ Շարունակեց իր խօսքը, ուղղելով զինքը միանգամայն Լինքին և Ստաուպիցին.

"Գիտէ՞ք արդեօք որ դուք ևս եկեղեցիին դատապարտութեանցը տակ ինկած էք իբրև ջատագով հերետիկոսական վարդապետութեան" :

Ստաուպից. "Ջանացէք վերստին խօսակցիլ Լուտերին հետ, ու հրապարակական վիճաբանութիւն մը բանալ քննուելու մասերուն վրայ":

Տը Վիօ զարհուրելով աս խօսքէն սկսեց գոչել, "Այս անգղանին հետ ալ ևս վէճ չեմ ըներ. անոր ան աչքերը՝ խորունկ թաղուած են իր գլխուն մէջ, ու իր նայուածքը շատ բաներ կընշանակեն" :

Ստաուպից վերջապէս խոստանալ տուաւ կարդինալին որ գրով ցուցընէ ինչ որ կուզէ թէ Լուտեր հերքէ:

Անատեն ընդհանրական մեծաւորը դարձաւ գնաց Լուտերին: Կարդինալին խօսքերէն չափով մը շարժած ըլլալով ջանաց քիչ մը հաճոզել զանիկայ: "Պատասխան տուր ուրեմն, ըսաւ Լուտեր, ան վկայութիւններուն որ սուրբ Գիրքէն յառաջ բերի": "Ատիկայ իմ կարողութենէս դուրս բան է", ըսաւ Ստաուպից: "Աղէկ, կրկնեց Լուտեր, իմ խիղճս թոյլ չտար ինծի հերքել, մինչև որ Սուրբ Գրոց ան վկայութիւնները կարենան ցուցուիլ թէ ուրիշ նշանակութիւն ունին: Ա՜ս ի՜նչ, Կարդինալը կըխոստանայ՞ թէ կըյօժարի բանը աս ճամբով կարգի դնել նախատանաց կամ վնասու տակ չձգելով զիս: Ա՜հ, ասոնք նուրբ Իտալական խօսքեր են. բայց պարզ Գերմաններէն լեզուով իմ մշտնջենաւոր խայտառակութենէս և վնասէս ուրիշ բան չեն նշանակեր: Ի՞նչ բարի կրնամ յուսալ թէ որ մարդու վախովը և իմ խղճմտանքիս դէմ ճշմարտութիւնը ուրանամ" :

Ստաուպից կեցաւ ան տեղը. միայն իմացուց Լուտերին թէ կարդինալը հաւանութիւն տուած էր որ գրութեամբ խրկէ անոր ան մասերը որ իրմէն կըպահանջէր թէ հերքէ: Այնուհետև՝ անտարակոյս կըկարծուի թէ իմացուց անոր Աւկսպուրկէն մեկնելու իր դիտաւորութիւնը, ուր որ հիմա

ալ բան չունէր ընելու ։ Այն ատենը Լուտեր իրենց հոգի-ները մխիթարելու և զօրացունելու համար ձևացուցած գաղափար մը * հաղորդեց անոր ։ Ստաւպից խոստացաւ վերստին դառնալ, ու առ ժամանակ մը մեկնեցան իրարմէ ։

Լուտեր մինակ մնալով իր խուցին մէջ, սկսեց մտածել իր սրտին խիստ սիրելի բարեկամները ։ Իր մտածութիւննե-րը Վայմարի և Վիդդէմպէրկի վրայ կը շրջէին ։ Փափաքե-ցաւ որ անցած բաները պատմէ կայսրընտրին, ու մտածե-լով որ կարելի է թէ անպատշաճ բան մը ըլլայ իշխանին հետ անձամբ խօսիլը, գրեց Սպալատինին և խնդրեց որ իր գործերուն ինչ վիճակի մէջ ըլլալը անոր իմացունէ ։ Բոլոր անցած բաները իմացուց անոր. մինչև դեսպանին նոր ը-րած խոստմունքը՝ գրով ցուցընելու քննուելու մասերը ։ Իր նամակը վերջացուց ըսելով. "Այսպէս կըկենայ բա-նը. բայց ես դեսպանին վրայ ոչ յոյս ունիմ և ոչ հաւա-տարմութիւն ։ Միտքս դրած եմ որ միայն մէկ վանկ մը չհերքեմ. իրեն մատուցած պատասխանս տպագրութեամբ պիտի հրատարակեմ, որպէս զի թէ որ բռնաբարութիւն մը ընէ, բովանդակ քրիստոնէից առջևը խայտառակ ըլլայ"։

Այնուհետև մնացեալ քանի մը վայրկեանները Վիդ-դէմպէրկի իր բարեկամներուն լուր խրկելու գործածեց ։

"Խաղաղութիւն և բարօրութիւն", գրեց Կարլստադ-վարժապետին ։ "Ընդունէ աս կարճ խօսքը երկար նամա-կի մը տեղ, վասն զի ժամանակը և իրերը կըբռնադատեն զիս ։ Կըյուսամ որ ուրիշ նուագի ընդարձակօրէն կըգրեմ քեզի և ուրիշներուն ։ Երեք օր իմ գործս քննուեցաւ, ու իրերը այնպիսի կէտի մը հասան՝ որ այլ ես յոյս չունիմ կրկին ձեզ տեսնելու, ու բանի մը ակնկալութիւն չունիմ բայց բանադրանքի ։ Դեսպանը թոյլ չտար ինծի զիս պաշտպանելու հրապարակաւ կամ առանձին ։ Կըսէ ինծի թէ իր փափաքը հօր պէս վարուիլ է իմ հետս և ոչ թէ

* Տե՟ Երե՟ 266

դատաւորի պէս . և սակայն ուրիշ բան չուզեր լսել ինձմէ բայց եթէ աս բառերը . “Կըհերքեմ և կըխոստովանիմ թէ սխալած եմ” : Ու ասոնք ան բառերն են որ ես բերնէս չպիտի հանեմ : Իմ փաստս մեծ վտանգի մէջ է , վասն զի՝ չէ թէ միայն անողոքելի թշնամիներէ կըդատուի ան , հապա նաև այնպիսի մարդոցմէ որ անընդունակ են հասկընալու անոր զօրութիւնը : Բայց Տէրը կենդանի է և կըթագաւորէ . իր պահպանութեանը կըյանձնեմ զիս , ու չեմ տարակուսիր որ բարեպաշտ հոգիններուն աղօթքովը ազատութիւն պիտի շնորհէ ինծի . իմ սիրտս կըզգայ թէ ինծի համար աղօթք կըլլուի :

“Կամ անմիջապէս ձեզի պիտի դառնամ , կամ բանտադրանաց վճռոյն տակ ուրիշ տեղ պատսպարութիւն պիտի փնտռեմ :

“Ինծի ինչ որ պատահելու ըլլայ , դուք զձեզ մարդու պէս բռնեցէք . հաստատուն կեցէք , և ուրախութեամբ ու առանց երկիւղի զՔրիստոս փառաւորեցէք :

“Կարդինալը միշտ կըկոչէ զիս՝ Սիրելի որդեակ . գիտեմ թէ որչափ քիչ բան կընշանակէ աս խօսքը : Այսու ամենայնիւ քաջ կըճանչնամ որ ամենէն սիրելի և ամենէն ընդունելի մարդ մը պիտի ըլլամ իրեն , թէ որ իմ բերնէս հանեմ աս մի միայն բառը , “Revoco”, (կըհերքեմ) : Բայց ես չեմ կամիր իմ քրիստոնէական հաւատքս ուրանալով հերետիկոս ըլլալ : Աւելի աղէկ է ինծի հալածուիլ ու նզովուիլ , ու չարաչար սպաննուիլ՝ քան թէ անանկ ըլլալ :

“Ողջ լեր , սիրելի վարժապետ : Ցուցուր աս նամակը մեր աստուածաբաններուն՝ Ամսդորֆին , Փիլիպպոսին , Մէտէնին և ուրիշներուն , որպէս զի աղօթք ընէք ինծի համար՝ ու նաև ձեզի համար . վասն զի ասիկայ ձեր փաստն ալ է որ հիմա քննուելու վրայ է . մանաւանդ թէ Յիսուս Քրիստոսի հաւատքին ու Աստուծոյ շնորհացը փաստն է ան” :

Ի՜նչ քաղցր խորհուրդ է աս , որ մխիթարութեամբ ու խաղաղութեամբ կըլեցընէ միշտ անոնց սրտերը՝ որոնք

ալ բան չունէր ընելու ։ Ան ատենը Լուտեր իրենց հոգիները մխիթարելու և զօրացունելու համար ձևացուցած գաղափար մը * հաղորդեց անոր ։ Ստաուպից խոստացաւ վերստին դառնալ, ու առ ժամանակ մը մեկնեցան իրարմէ ։

Լուտեր մինակ մնալով իր խուցին մէջ, սկսեց մտածել իր սրտին խիստ սիրելի բարեկամները ։ Իր մտածութիւնները Վայմարի և Վիդդէմպէրկի վրայ կը շրջէին ։ Փափաքեցաւ որ անցած բաները պատմէ կայսրընտրին, ու մտածելով որ կարելի է թէ անպատշաճ բան մը ըլլայ իշխանին հետ անձամբ խօսիլը, գրեց Սպալատինին և խնդրեց որ իր գործերուն ինչ վիճակի մէջ ըլլալը անոր իմացունէ ։ Բոլոր անցած բաները իմացուց անոր. մինչև դեսպանին նոր ըրած խոստմունքը՝ գրով ցուցընելու քննուելու մասերը ։ Իր նամակը վերջացուց ըսելով. "Այսպէս կը կենայ բանը. բայց ես դեսպանին վրայ ոչ յոյս ունիմ և ոչ հաւատարմութիւն ։ Միտքս դրած եմ որ միայն մէկ վանկ մը չհերքեմ. իրեն մատուցած պատասխանս տպագրութեամբ պիտի հրատարակեմ, որպէս զի թէ որ բռնաբարութիւն մը ընէ, բովանդակ քրիստոնէից առջևը խայտառակ ըլլայ" ։

Այնուհետև մնացեալ քանի մը վայրկեանները Վիդդէմպէրկի իր բարեկամներուն լուր խրկելու գործածեց ։

"Խաղաղութիւն և բարօրութիւն", գրեց Կարլստադ վարժապետին ։ "Ընդունէ աս կարճ խօսքը երկար նամակի մը տեղ, վասն զի ժամանակը և իրերը կըբռնադատեն զիս ։ Կը յուսամ որ ուրիշ նուագի ընդարձակօրէն կըգրեմ քեզի և ուրիշներուն ։ Երեք օր իմ գործս քննուեցաւ, ու իրերը այնպիսի կէտի մը հասան՝ որ այլ ևս յոյս չունիմ կրկին ձեզ տեսնելու, ու բանի մը ակնկալութիւն չունիմ բայց բանադրանքի ։ Դեսպանը թոյլ չտար ինծի զիս պաշտպանելու հրապարակաւ կամ առանձին ։ Կըսէ ինծի թէ իր փափաքը հօր պէս վարուիլ է իմ հետս և ոչ թէ

* Տե՛ս Երե՛ս 266

դատաւորի պէս . և սակայն ուրիշ բան չուզեր լսել ինծմէ բայց եթէ աս բառերը . "Կըհերքեմ և կըխոստովանիմ թէ սխալած եմ" ։ Եւ ասոնք ան բառերն են որ ես բերնէս չպիտի հանեմ ։ Իմ փաստս մեծ վտանգի մէջ է , վասն զի չէ թէ միայն անողորմելի թշնամիներէ կըդատուի ան , հապա նաև այնպիսի մարդոցմէ որ անընդունակ են հասկընալու անոր զօրութիւնը ։ Բայց Տէրը կենդանի է և կըթագաւորէ . իր պահպանութեանը կըյանձնեմ զիս , ու չեմ տարակուսիր որ բարեպաշտ հոգիներուն աղօթքովը ազատութիւն պիտի շնորհէ ինծի . իմ սիրտս կըզգայ թէ ինծի համար աղօթք կըլլուի ։

"Կամ անվնաս ձեզի պիտի դառնամ , կամ բանտդրանաց վճռոյն տակ ուրիշ տեղ պատսպարութիւն պիտի փնտռեմ ։

"Ինծի ինչ որ պատահելու ըլլայ , դուք զձեզ մարդու պէս բռնեցէք . հաստատուն կեցէք , և ուրախութեամբ ու առանց երկիւղի զՔրիստոս փառաւորեցէք ։

"Կարդինալը միշտ կըկոչէ զիս՝ Սիրելի որդեակ . գիտեմ թէ որչափ քիչ բան կընշանակէ աս խօսքը ։ Այսու ամենայնիւ քաջ կըճանչնամ որ ամենէն սիրելի և ամենէն ընդունելի մարդ մը պիտի ըլլամ իրեն , թէ որ իմ բերնէս հանեմ աս մի միայն բառը , "Revoco", (կըհերքեմ) ։ Բայց ես չեմ կամիր իմ քրիստոնէական հաւատքս ուրանալով հերետիկոս ըլլալ ։ Առաւել աղէկ է ինծի հալածուիլ ու նզովուիլ , ու չարաչար սպաննուիլ՝ քան թէ անանկ ըլլալ ։

"Ողջ լեր , սիրելի վարժապետ ։ Ցուցուր աս նամակը մեր աստուածաբաններուն՝ Ամսդորֆին , Փիլիպպոսին , Ավտէնին և ուրիշներուն , որպէս զի աղօթք ընէք ինծի համար՝ ու նաև ձեզի համար . վասն զի ասիկայ ձեր փաստն ալ է որ հիմա քննուելու վրայ է . մանաւանդ թէ Յիսուս Քրիստոսի հաւատքին ու Աստուծոյ շնորհացը փաստն է ան" ։

Ի՜նչ քաղցր խորհուրդ է աս , որ մխիթարութեամբ ու խաղաղութեամբ կըլեցընէ միշտ անոնց սրտերը՝ որոնք

վկայեցին Յիսուս Քրիստոսի՝ անոր Աստուածութեանը և շնորհացը, որ ատեն աշխարհ ամէն կողմանէ իր կշտամբանքները՝ իր անէծքները և իր նախատինքները կըթափէ անոնց վրայ. "Մեր փաստը Տէրոջը հաւատալուն փաստն է": Այս ինչ քաղցրութիւն կերևայ ան զգացմանը մէջ, որ Բարեկարգողը կըյայտնէ ըսելով, "Իմ սիրտս կըզգայ թէ ինծի համար աղօթք կըլլուի": Բարեկարգութիւնը գործ մըն էր աղօթքի և առ Աստուած ապաւինութեան:

Այսպէս խօսեցաւ Լուտեր իր հեռաւոր բարեկամներուն հետ. և Ստաուպից շատ չանցած վերստին դարձաւ. Ռուէլ վարդապետը ու Ֆայլից ասպետը՝ որոնց երկուքն ալ կայսրընտիրը խրկեր էր, կարդինալէն հրաժարելէն ետև իրեն եկան տեսութեան: Աւետարանի հետևողներէն ոմանք ալ անոնց հետ միաբանեցան. ու Լուտեր՝ աս ազնուամիտ անձանց այսպէս մէկ տեղ գալը տեսնելով, որոնք շուտով իրարմէ պիտի զատուէին, և որոնցմէ ինքը գուցէ մշտնջենաւորապէս պիտի բաժնուէր, առաջարկեց որ Տէրունական ընթրեաց սրբազան խորհուրդին կատարմանը մէկ տեղ գտնուին*: Առաջարկութիւնը ընդունուեցաւ, ու հաւատացեալոց աս փոքրիկ ժողովը Քրիստոսի մարմնոյ և արեանը հաղորդեցան: Բարեկարգողին բարեկամները արդեօք ինչ զգացումներ ունեցած պիտի ըլլան ան նոյն վայրկեանին, երբոր Տէրունական ընթրեաց սուրբ խորհուրդին կատարման ատենը կըմտածէին թէ գուցէ վերջին նուագն էր ասիկայ որ աս առանձնաշնորհութիւնը պիտի վայելէր ան: Ինչ ուրախութիւնով և սիրով լցուած պիտի ըլլայ Լուտերի սիրտն ալ՝ մտածելով թէ ան նոյն վայրկեանին երբոր մարդիկ զինքը երեսէ կըձգէին, իր Տէրը այսպէս մարդասիրաբար զինքը կընդունէր: Ինչպէս վսեմ եղած պիտի ըլլայ ան ընթրիքը. ինչ սրբազան ան իրիկունը:

Հետևեալ օրը† Լուտեր կըսպասէր ընդունելու ան խըն-

* Տե՛ս Երե. 264:   † Շաբաթ օրը՝ Հոկտ. 15:

գիրները որ կարդինալը պիտի խրկեր իրեն ։ Բայց մէկ պատգամ մը չընդունելով անկէց, խնդրեց իր բարեկամէն Սէնկէսլաս Լինք վարդապետէն որ կարդինալին երթայ ։ Տը Վիօ կատարեալ մարդասիրութեամբ ընդունեց Լինքը, ու հաւատացուց անոր թէ ինքը կուզէ որ խիստ բարեկամաբար ճամբայ մը բռնէ ։ "Մարտինոս Լուտեր վարդապետը ոչ ևս հերետիկոս կը համարիմ, ըսաւ. աս անգամիս չպիտի բանադրեմ զինքը, մինչև որ ուրիշ հրաման ընդունիմ Հռովմէն. վասն զի իր պատասխանը պապին խրկեցի սուրհանդակով մը"։ Այնուհետև իր միտքը անոր վրայ աղէկ ըլլալուն փորձը ցուցընելու համար ըսաւ. "Թէ որ Լուտեր վարդապետը միայն ներողութեանց վրայ իր գրածը հերքէ, շուտով պիտի վերջանայ բանը. վասն զի՝ սուրբ խորհուրդներուն վրայով հաւատոյ հարկաւորութիւնը անանկ բան մըն է որ ամէն մէկը իր ուզածին պէս կրնայ մեկնել ու իմանալ ան"։ Սպալատին՝ որ կը պատմէ աս դիպուածը, աս հեգնական բայց ճշմարիտ խորհրդածութիւնը վրայ կը բերէ. "Ասկէց յայտնի կըլլայ թէ Հռովմ աւելի յարգութիւն կընծայէ ստակի քան մեր սուրբ հաւատոյն ու հոգիներուն փրկութեանը"։

Լինք վերստին դարձաւ Լուտերին. հոն գտաւ Ստաւպիցը, ու պատմեց եղած խօսքերը ։ Երբոր դեսպանին անակնկալ հաւանութիւնը յիշեց, "Աղէկ պիտի ըլլար՝ ըսաւ Ստաւպից, թէ որ Սէնկէսլաս վարդապետը գրագիր մը ու քանի մը վկաներ առած ըլլար իր հետը, ան խօսքը 'ի գիր անցունելու. վասն զի թէ որ ասանկ առաջարկութիւն մը հրատարակուէր շատ վնասակար պիտի ըլլար աս Հռովմայեցիներուն դատին"։

Բայց Հռովմայեցի եպիսկոպոսը որչափ որ մեղմացուց իր եղանակը, անկեղծ Գերմանացիները այնչափ հաստատեցան անոր վրայ հաւատարմութիւն չունենալու ։ Ան արժանահաւատ անձանց մէկ քանիները՝ որոնց յանձնուած էր Լուտեր, մէջերնին ժողով մը ըրին. "Դեսպանը, ըսին,

աս իր խօսած սուրհանդակովը չարիք մը պատրաստելու վրայ է, ու շատ կըվախցուի որ ամէնքնիդ ալ պիտի բըռնուիք ու բանտարգուիք” ։

Վասն որոյ Ստաուպից և Վէնկէսլաս որոշեցին քաղքէն ելլել. ողջունեցին զԼուտեր՝ որ հաստատ կեցեր էր Աւկսպուրկ մնալու, ու երկու տարբեր ճամբաներով Նիւրնպէրկ երթալու ելան, բազմապատիկ կասկածներու մէջ ինկած ու քաջասիրտ վկային վիճակին վրայ որ իրենց ետեւը ձգեցին ։

Կիրակի օրը շատ խաղաղութեամբ անցաւ. Լուտեր պարապ տեղը սպասեց դեսպանէն պատգամ մը ընդունելու. անիկայ խօսք մը չխրկեց իրեն ։ Անատեն մտածեց որ ինքը գրէ անոր. քանզի Ստաուպից և Լինք իրենց ճամբայ ելլելէն առաջ խնդրեր էին իրմէն որ ըստ կարի ամենայն յարգութեամբ վարուի դեսպանին հետ ։ Լուտեր ալ տակաւին փորձած չէր ո՛չ զՀռովմ և ոչ անոր պատգամաւորները. ասիկայ իր առաջին փորձառութիւնն էր. թէ որ իր խոնարհ ակնածութիւնը չյաջողէր, պիտի գիտնար թէ ինչ բանի ակնկալութիւն ունենալու էր ետքը. բայց հիմա գոնէ անիկայ պարտի փորձել ։ Կիրակի մէկ օր մը չէր անցնէր առանց ինքզինքը դատապարտելու, ու պէտք եղածէն աւելի ազդու խօսքեր գործածելուն իր հակառակութեանը վրայ ողբալու. ինչո՞ւ համար չպիտի խոստովանէր կարդինալին, ինչ որ ամէն օր կըխոստովանէր Աստուծոյ ։ Մանաւանդ որ Լուտերի սիրտը քաղցրութեամբ դիւրաւ կըշարժէր, ու չարիքի մը կասկած չէր ունենար ։ Վասն որոյ իր գրիչը առաւ, ու յարգական լաւակամութեամբ այսպէս գրեց կարդինալին *.

“Ամենապատիւ Հայր Հոգեւոր, միանգամ եւս կըմերձենամ ձեզի ոչ անձամբ այլ գրութեամբ, խնդրելով ձեր հայրական բարեգթութենէն որ մարդասիրաբար լսէք ինծի ։

* Նամակին Լէօբը Հատր. 17 է ։

"Վերապատուելի Ստաւպից վարդապետը՝ Քրիստոսով իմ ամենասիրելի հայրս խրատեց զիս ինքզինքս խոնարհեցընել, իմ դատողութեանս չապաւինիլ, ու իմ կարծիքս բարեպաշտ և անաչառ մարդոց դատողութեան տակը ձգել: Գովեց նաև ձեր հայրական բարեգթութիւնը, ու կատարելապէս ցուցուց ինծի ձեր բարեկամական յօժարութիւնը որ իմ վրաս ունիք: Աս լուրը ուրախութեամբ լցուց իմ սիրտս:

"Արդ՝ ով ամենապատիւ հայր, կը խոստովանիմ՝ որպէս և արդէն խոստովանած եմ, թէ (ինչոր որ կըսեն ինծի) բաւական խոնարհութիւն և հեզութիւն չցուցուցի, ոչ ալ բաւական յարգութիւն ծայրագոյն քահանայապետին անուանը. և թէպէտ իմ հակառակորդներս մեծապէս դրգռեցին զիս, բայց հիմա կը տեսնեմ թէ լաւագոյն եղած պիտի ըլլար թէ որ իմ դատս աւելի խոնարհութեամբ, քաղաքավարութեամբ ու յարգութեամբ վարած ըլլայի, ու յիմարին իր յիմարութեանը պէս պատասխան տուած չըլլայի, որպէս զի ես ալ յիմար չըլլայի: Առակ. իզ. 4:

"Ասիկայ մեծ վիշտ է ինծի, ու թողութիւն կը խնդրեմ. Նաև հրապարակաւ ասանկ պիտի խոստովանիմ ամպիոնէն, ինչպէս արդարև շատ անգամ ըրած եմ առաջ: Կը փափաքիմ Աստուծոյ շնորհքովը տարբեր կերպով խօսելու ջանալ: Նաև ասկէց աւելին պիտի ընեմ. առանց պահանջուելու իմ յօժարութեամբս պատրաստ եմ խոստանալ որ ներողութեանց վրայով ոչ ևս մէկ խօսք մը առնեմ իմ բերանս, թէ որ աս բանը կարգի դրուի. բայց պէտք է որ ասիկայ ինծի սկսել տուողներն ալ հարկադրեն իրենց կողմանէ չափաւորել խօսքերնին, կամ լուռ կենալ:

"Բայց թէ որ իմ սովրեցուցածիս ճշմարտութեանը վրայով կը խօսիք, ձեզի կիմացունեմ թէ սրբոյն Թովմայի և ուրիշ վարդապետներուն վկայութիւնը չկրնար համոզել զիս. պէտք է ինծի լսել տալ (թէ որ արժանի եմ,) հարսին ձայնը՝ որ է Եկեղեցին. վասն զի ստոյգ է թէ ինքը կըլսէ փեսային ձայնը, որ է Քրիստոս:

"Ան որոյ ամենայն խոնարհութեամբ և հպատակութեամբ կաղաչեմ ձեզի որ մինչև հիմա հաստատութիւն չգտած ևս գործը սրբազնասուրբ տեառն մերոյ Ժ Լևոնի Թողուք, որպէս զի Եկեղեցին որոշէ՝ վճռէ՝ ու կարգադրէ, և անոնք որ հերքելու պիտի հրաւիրուին, բարի խղճիւ և կատարեալ անկեղծութեան հաւատքով կարենան հերքել"։

Աս Նամակը կարդալնուս ուրիշ խորհրդածութիւն մը կրնամք հանել անկէց ։ Կըտեսնենք որ Լուտեր յառաջագոյն ձևացուցած գաղափարի մը վրայ չէր գործէր, այլ պարզապէս իր մտքին և սրտին վրայ տպաւորուած յաջորդական ապացուցութիւններուն հնազանդելով կը շարժէր ։ Հաստատեալ գաղափարէ մը կամ Նախակազմ հակառակութենէ մը հեռի ըլլալով՝ երբեմն առանց իր զգացմանը ինքզինքին կը հակառակէր. առջի տուած ապացուցութիւնները տակաւին իր մտացը մէջ հաստատ էին, թէպէտ և անոնց հակառակները արդէն տեղի գտած էին հոն ։

Լուտեր պատասխան չընդունեց աս Նամակին. Կայետանոս և բոլոր իր պալատականները այնչափ սաստկութեամբ տակնուվրայ ըլլալնէն ետև յանկարծ անշարժ մնացին ։ Ի՞նչ էր ասոր պատճառը. չէ՞ր կրնար ըլլալ ասիկայ ան հանդարտութիւնը որ փոթորիկէ մը առաջ կը պատահի ։ Ոմանք աս յապաղումը ան մտօքը կիմանային՝ ինչպէս որ Պալլավիչինի ցուցուց զանիկայ ըսելով. "Կարդինալը կըսպասէր որ մեծամիտ միաբանը ուռեցած փուքի նման կամաց կամաց իր Ներսը լեցած հովը սպառէ, ու խոնարհի"։ Անոնք որ կարծէին թէ լաւագոյն կիմանան Հռովմայ ճամբաները, ստուգապէս կըզգային թէ կարդինալին միտքը Լուտերը բռնել էր, բայց կայսերական ազատագրին պատճառովը չհամարձակելով ինքիրմէն այսպիսի բռնութիւն մը ընելու՝ իր խրկած պատգամին պատասխանը Հռովմէն ընդունելու կըսպասէր ։ Ուրիշները չէին կրնար հաւատալ թէ կարդինալը այսչափ ժամանակ պիտի սպասէր ։ "Մաքսիմիլիանոս կայսրը, կըսէին, (և կարելի է թէ ճշմարիտ էր.

ըստածնին ,) թէպէտ և ազատագիր տուած է Լուտերին , բայց չտարակուսիր Եկեղեցւոյ քննութեանը յանձնել զանիկայ , ինչպէս և Միգեսմունդ չտարակուսեցաւ Կոստանդիայի ժողովոյն ձեռքը տալ Հուս : Դեսպանը գուցէ հիմա կայսեր իմացընելու վրայ է սա բանը . Անգսիմիլիանոսի վճռոյն գալուստը ամէն ժամու կրնայ յուսացուիլ : Որչափ որ առաջ հակառակ էր պապին , կըթուի թէ հիմա այնչափ հաճելի ըլլալ կուզէ անոր , և այսպէս պիտի ըլլայ ինքը՝ մինչև որ կայսերական թագը պսակէ իր թոռին գլուխը" : Կորսընցունելու վայրկեան մը չէր մնացեր : "Բողոք մը գրէ պապին , ըսին Լուտերը շրջապատող բարեկիրտ անձինք , բողոք մը գրէ պապին , ու առանց յապաղելու ելիր Աւկսպուրկէն" :

Լուտեր վերջապէս իր բարեկամներուն կամացը զիջաւ . որովհետև իր նոյն քաղաքը մնալը չորս օրէն 'ի վեր անօգուտ եղած էր , և իր պաշտպանութիւնը հսկելու համար կայսրընտրին խրկած Սաքսոնացի խորհրդականներուն մեկնելէն ետև՝ հոն մնալովը բացականապէս ցուցըցեր էր , թէ բանէ մը վախ չունէր ու պատրաստ էր իրեն համար պատասխան տալու : Բայց մտածեց որ իր դիտաւորութիւնը առաջ Տը Վիօին իմացընէ . գրեց անոր Երեքշաբթի օրը , իր մեկնելուն առջի իրիկունը : Աս նամակը՝ առջի գրածէն աւելի համարձակ ոճով էր . իր ըրած խոնարհութեան անօգուտ ըլլալը տեսնելով , Լուտեր իրաւունքը ու իր թշնամիներուն անիրաւութիւնը ճանչնալով կըթուի թէ կըզօրանար ոտքի վրայ կելլեր :

"Ամենապատիւ հայր հոգևոր , գրեց Տը Վիօին , ձեր հայրական քաղցրութիւնը արդարև տեսաւ ու ըստ բաւականին ճանչցաւ իմ հնազանդութիւնս : Արբազնասուրբ տեառն մերոյ Լևոնի հրամանաւը յանձն առի երկար ճամբորդութիւն մը կատարելու՝ բազմապատիկ վտանգներէ անցնելով , մեծ տկարութեամբ մարմնոյ , և յետին չքաւորութեան վիճակի մէջ : Ձեր վսեմութեան առջևը անձամբ

ներկայացայ, և վերջապէս ես զիս Լորին Որրութեան ոտքը ձգեցի, ու հիմա կըսպասեմ իր բարեհաճութեան ը և պատրաստ եմ հնազանդիլ իր վճռոյն, թէ դատապարտէ և թէ անպարտ արձակէ զիս: Ուրեմն կըզգամ որ ամենևին զանց ըրած չեմ ինչ որ կըպահանջուի եկեղեցիին հնազանդ որդիէ մը:

''Ուստի իմ դիտաւորութիւնս այն է որ անօգուտ տեղը այլ ևս չմնամ հոս. և արդարև անհնար է ինծի մնալ, ուրովհետև հարկաւոր եղած միջոցները չունիմ. ու դուք յայտնապէս արգիլեցիք ինծի վերստին չերևալ ձեր առջևը՝ թէ որ չպիտի հերքեմ:

''Վասն որոյ Տէրոջը անունովը վերստին ճամբայ կելլեմ, փափաքելով՝ որ եթէ կարելի է՝ խաղաղութեամբ ապրելու տեղ մը գտնեմ: Քանի մը ինծմէ խելացի մարդիկ համոզեցին զիս որ ձեր հայրական քաղցրութենէն՝ և մինչև անգամ մեր սրբազնասուրբ տէրոջմէն՝ ոչ բարւոք տեղեկացեալ Ժ Լևոնէն բողոք ընեմ իրեն՝ երբոր ինքը բարւոք տեղեկացեալ է բանին: Ու թէպէտ գիտեմ որ ասանկ բողոքը հերքելէն աւելի հաճոյ պիտի ըլլայ կայսրընտրին բարձրութեանը, և սակայն թէ որ միայն իմ զգացումներէս խորհուրդ առնելու ըլլայի, չէի ըներ այն բողոքը: Յանցանք մը գործած չեմ, վասն որոյ պէտք չէ ինծի բանէ մը վախնալ'':

Լուտեր աս նամակը գրելէն ետև (որ իր մեկնելէն ետև տրուեցաւ դեսպանին,) պատրաստուեցաւ Աւկսպուրկէն ելլել: Աստուած մինչև հիմա պահպաներ էր զինքը, ու ինքը 'ի բոլոր սրտէ փառաւորեց զՏէրը իր պահպանութեանը համար: Բայց իր պարտաւորութիւնը զԱստուած չփորձել էր. վասն որոյ ողջունեց իր բարեկամները որ այնպիսի քրիստոնէական հիւրընկալութիւն ըրեր էին իրեն, ու Զորեքշաբթի առտու արշալուսէն առաջ պատրաստ էր ճամբայ ելլել: Իր բարեկամները խրատեցին զինքը որ ամէն կերպ զգուշութիւնները բանեցընէ, վախնալով որ եթէ

իր մեկնիլը իմացուի, գուցէ պիտի դէմ կեցուի ։ Նոր համար կրցածին չափ անոնց խրատը բռնեց ։ Սատաղից իրեն հաւնոր ձի մը ձգած էր ; ու անիկայ վանքին դուռը բերուեցաւ ։ Մ՛խանգամ եւ բարեաւ մնա կըսէ իր եղբայրներուն, այնուհետեւ ձին կըհեծնէ ու ճամբայ կելլէ առանց երասանակ ունենալու ձիուն գլուխը, առանց ճամբու կօշիկի և մորակի, և առանց զէնքի ։ Քաղաքապետը ձիաւոր մը խրկեր էր անոր իբրև ուղեցոյց, որ աղէկ տեղեակ էր ճամբաներուն ։ Աս մարդը գիշերային մթութեան մէջ Աւկսպուրկի լաւ փողոցներէն կանցընէ զանիկայ. ու իրենց ընթացքը կուղղեն դէպի քաղքին պարսպին մէկ պզտի դըռանը ։ Խորհրդականներուն մէկը՝ Լանգեմանթէլ անունով՝ պատրաստեր էր որ դուռը բացուի անոր ։ Լութեր տակաւին գեղջկային իշխանութեանը տակն է. Հռոմէյ ձեռքը տակաւին իր վրայ է. թէ որ Խտալացիները գիտնային իրենց որսին փախչելը անտարակոյս աղաղակ պիտի վերցընէին անոր ետեւէն իյնալու. ով գիտէ թէ Հռոմէյ քաջասիրտ թշնամին տակաւին չպիտի բռնուի ու բանտարգուի ։ . . . Վերջապէս Լութեր և իր ուղեցոյցը փոքրիկ դրանը կը հասնին. դուռը կըբացուի, ու անոնք դուրս կելլեն Աւկսպուրկէն, և իրենց ձիերը արշաւասոյր ընթացքի մը դնելով վաղվաղակի հեռի կըձգեն զքաղաքը իրենց ետեւը ։

Լութեր ճամբայ ելած ատենը պապին դրած իր բողոքը Փօմաւէք մեծաւորին ձեռքը յանձներ էր. իր բարեկամները խրատեր էին զինքը որ դեսպանին չերկէ զանիկայ ։ Մեծաւորին ըսուեր էր որ վարդապետին մեկնելէն երկու կամ երեք օր ետեւ՝ քարտուղարի մը և վկաներու ներկայութեանը մայր եկեղեցին դուռը կախէ զանիկայ ։ Ասիկայ ինչպէս որ կարգադրուած էր եղաւ ։

Աս գրուածքին մէջ Լութեր ցուցուց՝ թէ կըբողոքէր "գործին ոչ բարւոք տեղեկացեալ սրբազնասուրբ հայր պապէն՝ շնորհօքն Աստուծոյ Քրիստոսով սրբազնասուրբ տեառն և հօր Ժ Լեւոնի, երբոր բարւոք տեղեկացեալ ըլ-

լայ եմ": Այս թուղթը գրուեցաւ կանոնաւոր կերպով կայսերական քարտուղարին Պօլ Տը Սերբաքոնինգենի ձեռքը Բարգուղիմէոս Ալիձէյր և Մէնգէլ Մայնրիս երկու Օգոստինեան միաբաններու ներկայութեանը : Անոր թուականն էր Հոկտեմբերի 16 :

Երբոր լսեց կարդինալը թէ Լուտեր մեկներ է, զարմանքով զարնուեցաւ, և ինչպէս որ ինքը կայսրընտրին գրած նամակի մը մէջ ցուցուց, նաև ահով ու դողով : Եւ արդարև ունէր պատճառ խռովելու. վասն զի Լուտերի մեկնիլը՝ որ տասանկ յանկարծակի վերջացուց անոր ընելու միջնորդութիւնները, երկար ժամանակէ 'ի վեր անոր ամբարտաւանութեանը յղացած բոլոր յոյսերը խայտառակ ըրաւ : Փառասիրութեամբ ցանկացեր էր՝ որ Եկեղեցին վէրքերը բժշկելու, ու Գերմանիայի մէջ պապին օր ըստ օրէ տկարացող իշխանութիւնը վերստին հաստատելու պատիւը ինքն ունենար. բայց հիմա հերետիկոսը փախուցեր էր՝ չէ թէ միայն առանց պատժոյ, հապա և առանց գոնէ զանիկայ խոնարհեցընելու : Միջնորդութիւնը միայն ծառայեր էր յայտ յանդիման ցուցընելու մէկ կողմանէ Լուտերի անկեղծութիւնը ուղղութիւնը և հաստատութիւնը, և միւս կողմանէ պապին և անոր երեսփոխանին խրոխտ և անիրաւ ընթացքը : Հռովմ բան մը չշահեցաւ նէն ետև, կորսընցուցեր էր ալ. ու իր իշխանութիւնը վերստին չհաստատուելէն ետև, իրօք նոր սանձահարութիւն մը կրեր էր : Վատիկանու մէջ ի՞նչ պիտի ըսուի ամէն ասոնց վրայ. Հռովմէն ընդունուելու հետևեալ պատգամները ի՞նչ պիտի ըլլան : Անշուշտ դեսպանին գտնուած վիճակին դժուարութիւնները պիտի մոռցուին, բանին անյաջող վախճանը իր անխոհեմութեանը պիտի ընծայուի : Սէրրա Լօնկա և Իտալացիներուն ձևացեալները կատաղութեամբ լցան, երբոր տեսան՝ թէ իրենց այնչափ խորամանկութեամբը Գերմանացի միաբանէ մը խաբուեցան : Տը Վիօ ևս հազիւ կրնար ծածկել իր զայրացումը. այսպիսի նախա-

տենքը անշուշտ վրէժխնդրութեան պիտի գրգռէ զինքը, և շուտով տեսնելու եմք իր բարկութիւնը յայտնելը կայսրընտրին գրած նամակի մը մէջ.

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ՊԱՄՔ որ Լուտեր իր ձիաւոր ուղեցոյցին ընկերութեամբը Աւկսպուրկէն իր ճամբորդութիւնը կը շարունակէր. կը ստիպէր իր ձին, ու քաջարշաւ ընթացքի մը մէջ կը պահէր ողորմելի կենդանին: Իր միտքը կը բերէր Յովհաննէս Հուսի համար պատմուած կամ ճշմարիտ կամ կեղծեալ փախուստը, անոր ինչպէս բռնուիլը, ու անոր թշնամիներուն ըսածը՝ որ կը հաստատէին թէ Հուս իր փախչելովը կայսրին ազատագիրը աւրելով իրաւունք ունէին զինքը այրելու *: Բայց սա խռովայոյզ զգացումները երկար չկեցան Լուտերի մտքին մէջ: Հեռացած ըլլալով քաղքէն ուր որ տասը օր մնացեր էր Հռովմայ ահաւոր ձեռքին տակը՝ որ արդէն ճշմարտութեան այնչափ վկաները նուաճեր ու այնչափ արիւն թափեր էր, արգելք չունենալով, բացօթեայ տեղ ըլլալով, գիւղերէ և ագարակներէ անցնելով, ու Տէրոջը բազուկովը հրաշալի կերպիւ ազատած ըլլալով, բովանդակ իր հոգին փառաբանութեամբ լցաւ: Աղէկ կըրնար երգել սաղմոսերգու մարգարէին հետ. "Անձինք մեր ապրեցան որպէս ճնճղուկք յորոգայթէ որսողաց: Որոգայթ նոցա փշրեցան, և մեք ապրեցաք: Օգնութիւն է մեզ յանուանէ Տեառն, որ արար զերկինս և զերկիր": Լուտերի սիրտը այսպէս լցուած էր ուրախութեամբ. բայց իր խորհուրդները վերստին դարձան Տը Վիօի վրայ: Կը մտածէր թէ, "Կարդինալին շատ հաճելի պիտի ըլլար զիս իր ձեռքը ունենալ, ու Հռովմ խրկել. և տարակոյս չկայ որ ինքը շատ տրտում պիտի ըլլայ իր ձեռքէն փախչելուս

* Weissman, Hist. Eccl. I, p. 1237.

վրայ։ Կարծեցին որ Աւգսպուրգի մէջ իր ճանկերուն մէջ ա-ռած էին զիս. կարծեցին որ պինդ բռներ են զիս. սակայն ձուկ մը բռներ էր ինքը պոչէն, և ան սողալով ելաւ իր ձեռքէն։ Ափսոս որ այս մարդիկը այսչափ արժողութիւն կընծայեն ինծի։ Քանզի Քրիստոս փրկիչն մեր երեսուն կտոր ար-ծաթի ծախուեցաւ, բայց ասոնք շատ ոսկի պիտի տան զիս իրենց ձեռքը անցընելու" *։

Անմիջին օրը անսովորաբար փախստական ճամբայ ելաւ. երբ Կոյլին երբոր հասաւ ան իրեւանը ուր որ գիշերը պիտի ան-ցընէր, այնպէս յոգնած էր որ ձիէն վար իջնալուն՝ կարո-ղութիւն չունէր ոտքի վրայ կանգնելու, ու յարդին վրայ ինկաւ անշարժ մնաց։ Այս և իսկ նոյն գիշերը քիչ մը հան-գստացաւ, ու հետեւեալ օրը իր ճամբորդութիւնը շարու-նակեց։ Նիւրնպերկ հասնելուն հոն գտաւ Ստաուպից՝ որ զբաղած էր իր կարգին վանքերուն այցելութիւն ընելու։ Այս քաղաքիս մէջը նախատարգին տեսաւ ան կոնդակը որ պա-պը Կայետանոսին ղրկեր էր իր վրայովը։ Զարմացաւ ասոր վրայ, և թէ որ Աւգսպուրգէն ելլալէն առաջ կարդացած ըլլար զանիկայ, հաւանական է որ ամենեւին չպիտի երեւար կարդինալին առջեւը։ "Հնար չէ հաւատալ, ըսաւ, թէ ծայրագոյն քահանայապետէ մը ասանկ այլանդակ բան մը ելած ըլլայ"։

Լութեր իր ճամբուն վրայ ամէն տեղ ընդհանուր հե-տաքրքրութեան առարկայ մըն էր. ետ կը դառնար ինքը բան մը չխոստովանեցուցած։ Եղբայր կրօնաւորի մը Հռովմայ եպիսկոպոսին վրայ ըրած այսպիսի յաղթութիւնը ա-մէն որուն սրտերը զարմանքով կը լեցընէր։ Աստուծոյ Բանը պա-պին բանէն աւելի պատուով պահուեր էր. քաղաքացի գա-րերէն հետէ իշխանութիւն վարող զօրութիւնը սաստիկ սան-ձահարութիւն մը հիմայ ընդուներ էր։ Այսպէս Լութերի ճամբորդութիւնը շատ հանդէսով էր. մարդիկ կարդախ-նային Հռովմայ կամակորութեանը վրայ, որ հաւանական

* L. Opp. (L) XVII p. 202.

Աստուած իրեն ինչ պիտի ըներ : Ան է որ ամենց յուսացուածին պէս հոն անձանձրոյթ մնար, երիտասարդներուն վարժութեանը և ուսման մէջ զարգանալնուն բոլորովին անձնատուր ըլլալ իր միտքը դրեր էր * :

Հոկտեմբերի 30ին Լութեր Վիթթէմպէրկ հասաւ․ իր արտորալը ոչինչ եղեր էր․ ոչ կայսրընտիրը եկեր էր տեղին և ոչ Սպալատին : Իր բարեկամները ուրախացան զինքը նորէն իրենց մէջը տեսնելնուն : Լութեր փութաց իմացընել Սպալատինին իր գալուստը․ "Այսօր Վիթթէմպէրկ հասայ, ըսաւ, Աստուծոյ ողորմութեամբը առողջ և ամբողջ․ բայց չեմ գիտեր թէ որչափ պիտի մնամ հոս․ . . . լցեալ եմ ուրախութեամբ և խաղաղութեամբ, ու դժուարին է ինծի իմանալ թէ իմ քաշած փորձութիւնս ինչու անանկ ծանր կերևնայ այսչափ երևելի մարդոց" :

Տը Վիօ Լութերին մեկնելէն ետև երկար չսպասեց իր բոլոր սրտմտութիւնը կայսրընտրին առջևը թափելու․ իր գրած նամակը վրէժխնդրութիւն կըբուրէր : Անբնահաճութեան եղանակաւ մը խօսակցութեան պատմութիւնը գրեց Փրիդերիկոսի, ու նամակին վերջաւորութեանը մէջ ըսաւ․ "Որովհետև եղբայր Մարտինոսը հայրական եղանակաւ չքերուիր իր յանցանքը խոստովանելու՝ և ուղղափառ եկեղեցւոյ հաւատարիմ մնալու, կըխնդրեմ ձեր բարձրութենէն զինքը Հռոմ խրկել, կամ ձեր սահմաններէն դուրս աքսորել : Գիտնաք որ աս բազմակնճիռ՝ վատախորհուրդ և վնասակար գործը չկրնար երկար ատեն մնալ․ վասն զի ամէն աս խորամանկութիւնը և չարութիւնը սրբազնասուրբ տեառն մերոյ իմացուելուն պէս, ինքը յանկարծական վախճանի մը պիտի բերէ զանիկայ" : Կարդինալը իր ձեռօքը գրուած յաւելուած յօդուածով մը կաղաչէր կայսրընտրին որ չնչին միաբանի մը համար իր երևելի նախնիքներուն և իր պատիւը խայտառակութեամբ չարատաւորէ :

* L. Opp. (L) XVII. p. 183.

Լուտերի հոգին ոչ երբեք այնչափ բարձրաստիճան սրտմտութեան հասեր էր՝ որչափ աս նամակին օրինակը կարդալուն, որ կայսրընտիրը խրկեց իրեն: Առաջակայ նեղութիւններուն ճանաչումը որ ինքը սահմանուած էր կրելու. ճշմարտութեան յարգը որուն համար վիճեցաւ, Հռովմայեցի դեսպանին բռնած ճամբուն վրայ իր գգուանքը՝ միապէս զայրացուցին իր սիրտը: Իր հոգւոյն այսպէս խռովեալ վայրկեանին գրուած իր պատասխանը նշանաւոր է ան արիութեամբը՝ վսեմութեամբը և հաւատքովը, որ ինքը միշտ կը ցուցընէր իր կենացը խիստ փորձանաւոր հանգամանքներուն մէջ: Աւկսպուրկի վիճաբանութեանը վրայով ինքն ալ՝ կարգը իրեն գալով պատմութիւն մը կընէ. և կարդինալին ընթացքը նկարագրելով, կըյառաջանայ խօսիլ այսպէս.

"Կուզէի պատասխանել դեսպանին ես զիս կայսրընտրին տեղը դնելով:

"Պիտի ըսէի իրեն. "Ցուցուր ինծի թէ ըսածդ կը հասկընաս. գրուածքով թող յառաջ տարուի վէճը. և անատենը եղբայր Մարտինոսը Հռովմ պիտի խրկեմ, կամ պիտի բռնեմ և զինքը սպաննել տամ: Պիտի ես զգուշանամ իմ խղճիս և իմ պատուոյս վրայ, ու թող չտամ որ իմ համբաւս արատաւորի: Բայց քանի որ քու բացարձակ գիտութիւնդ լուսէն կը փախչի, և միայն աղաղակով ինքզինքը կըցուցընէ, չեմ կրնար ես հաւատք ընծայել մթութեան":

"Ասիկայ է, ով վսեմափայլ իշխան, ասիկայ է պատասխանը որ իրեն պիտի տայի: "Գերապատուելի դեսպանը կամ նոյն ինքն պապը թող գրութեամբ ցուցընեն իմ սխալներս. թող յառաջ բերեն իրենց պատճառները. թող խրատեն զիս՝ որ կուզեմ խրատուիլ, որ կը խնդրեմ խրատուիլ, որ բոլոր սրտովս կը փափաքիմ խրատ, անանկ որ հեթանոս մը ևս չպիտի մերժէ զիս հաճեցընելու: Ուէ որ չհերքեմ ու չդատապարտեմ զիս՝ երբոր անոնք ինծի ցու-

ցընեն թէ սուրբ Գիրքերէն իմ բերած վկայութիւններս իմ իմացածէս տարբեր միտքով իմացուելու են, ան ատենը՝ ով Ս սեմափայլ Կայսրընտիր, ձեր բարձրութիւնը նախ և առաջ թող հալածէ և աքսորէ զիս. համալսարանը թող արտաքսէ և իր սրտմտութեանը մէջ թող թաղէ զիս: Ասկից ալ անդին կանցնիմ՝ ու երկինք և երկիր՝ի վկայ կըկոչեմ, նոյն ինքն Քրիստոս Յիսուս Տէրը թող մերժէ ու դատապարտէ զիս: Ասանք սնոտի յանձնապաստանութեան խօսքեր չեն, այլ հաստատուն գիտակցութեան: Տէրը թող զրկէ զիս իր շնորհքէն, ու Աստուծոյ բոլոր արարածները հրաժարին ինծի օգնելէն, թէ որ չընդունիմ ես ան վարդապետութիւնը որ կըցուցընեն ինծի թէ լաւագոյն է:

“Բայց թէ որ իմ նուաստ վիճակիս համար, ու աղքատ և մուրացիկ եղբայր մը ըլլալուս պատճառովը բանի տեղ չեն դներ զիս, և անանկով կըմերժեն ճշմարտութեան ճամբուն մէջ զիս խրատելու, ձեր բարձրութիւնը թող խնդրէ դեսպաններն գրութեամբ իմացընել ձեզի ինչ բանի մէջ սխալած ըլլալս. և թէ որ ձեր բարձրութեանն ալ չեն ըներ աս շնորհքը, կամ մեհափառ կայսեր թող գրեն իրենց խորհուրդները, և կամ Գերմանացի արքեպիսկոպոսի մը: Ի՞նչ պարտիմ ընել ասկից աւելի, ի՞նչ կրնամ ընել ասկէց աւելի:

“Ձեր բարձրութիւնը ականջ թող դնէ ձեր խղճմտանքին և ձեր պատուոյն ձայնին, ու չղրկէ զիս Հռոմ: Ասիկայ մէկը չկրնար ձեզմէ պահանջել. վասն զի անհնար է որ ես Հռոմմայ մէջ ազատ մնամ. նոյն ինքն պապը ազատ չէ հոն: Ասիկայ քրիստոնէի արիւն մատնելու ձեզ ստիպել պիտի ըլլայ: Անոնք հոն թուղթ ունին, գրիչ և թանաք ունին. նաև անհամար գրագիրներ ունին. դիւրին բան է իրենց գրել թէ ուր և ինչպէս սխալած եմ. նուազ աշխատութիւն պիտի ըլլայ իրենց՝ գրութեամբ հեռուէն խրատել զիս, քան թէ զիս իրենց մէջը ունենալով դաւաճանութեամբ սպաննել:

"Սան որոյ ամենայն խոնարհութեամբ և հպատակութեամբ կաղաչեմ ձեզի որ մինչև հիմա հաստատութիւն չգտած աս գործը սրբազնասուրբ տեառն մերոյ Ժ Լևոնի թողուք, որպէս զի Եկեղեցին որոշէ՝ վճռէ՝ ու կարգադրէ, և անոնք որ հերքելու պիտի հրաժարին, բարի խղճիւ և կատարեալ անկեղծութեան հաւատքով կարենան հերքել":

Աս նամակը կարդալնուս ուրիշ խորհրդածութիւն մը կրնամք հանել անկէց: Կը տեսնեմք որ Լուտեր յառաջագոյն ձևացուցած գաղափարի մը վրայ չէր գործեր, այլ պարզապէս իր մտքին և սրտին վրայ տպաւորուած յաջորդական ապացուցութիւններուն հնազանդելով կը շարժէր: Հաստատեալ գաղափարէ մը կամ նախակազմ հակառակութենէ մը հեռի ըլլալով՝ երբեմն առանց իր զգացմանը ինքզինքին կը հակառակէր. առջի ստացած ապացուցութիւնները տակաւին իր մտացը մէջ հաստատ էին, թէպէտ և անոնց հակառակները արդէն տեղի գտած էին հոն:

Լուտեր պատասխան չընդունեց աս նամակին. Կայետանոս և բոլոր իր պալատականները այնչափ սաստկութեամբ տակնուվրայ ըլլալնէն ետև յանկարծ անշարժ մնացին: Ի՞նչ էր ասոր պատճառը. չէ՞ր կրնար ըլլալ ասիկայ ան հանդարտութիւնը որ փոթորիկէ մը առաջ կը պատահի: Ոմանք աս յապաղումը ան մտօքը կիմանային՝ ինչպէս որ Պալլավիչինի ցուցուց զանիկայ ըսելով. "Կարդինալը կըսպասէր որ մեծամիտ միաբանը ուռեցած փուքի նման կամաց կամաց իր ներսը լեցած հովը սպառէ, ու խոնարհի": Անոնք որ կարծէին թէ լաւագոյն կիմանան Հռովմայ ճամբաները, ստուգապէս կը զգային թէ կարդինալին միտքը Լուտերը բռնել էր, բայց կայսերական ազատագրին պատճառովը չհամարձակելով ինքիրմէն այսպիսի բռնութիւն մը ընելու՝ իր խրկած պատգամին պատասխանը Հռովմէն ընդունելու կը սպասէր: Ուրիշները չէին կրնար հաւատալ թէ կարդինալը այսչափ ժամանակ պիտի սպասէր: "Մաքսիմիլիանոս կայսրը, կըսէին, (և կարելի է թէ ճշմարիտ էր.

ըսածնին ,) Թէպէտ և ազատագիր տուած է Լուտերին , բայց չտարակուսիր Եկեղեցւոյ քննութեանը յանձնել զանիկայ , ինչպէս և Սիգեսմունդ չտարակուսեցաւ Կոստանդիայի ժողովոյն ձեռքը տալ զՀուս : Պապանը գուցէ հիմա կայսեր իմացընելու վրայ է աս բանը. Մաքսիմիլիանոսի վճռոյն գալուստը ամէն ժամու կրնայ յուսացուիլ : Որչափ որ առաջ հակառակ էր պապին , կըթուի թէ հիմա այնչափ հաճելի ըլլալ կուզէ անոր , և այսպէս պիտի ըլլայ ինքը՝ մինչև որ կայսերական թագը պսակէ իր թոռին գլուխը'' : Կորսընցունելու վայրկեան մը չէր մնացեր : "Բողոք մը գրէ պապին , ըսին Լուտերը շրջապատող բարեսիրտ անձինք , բողոք մը գրէ պապին , ու առանց յապաղելու ելիր Աւկսպուրկէն'' :

Լուտեր վերջապէս իր բարեկամներուն կամացը զիջաւ. որովհետև իր նոյն քաղաքը մնալը չորս օրէն 'ի վեր անօգուտ եղած էր , և իր պաշտպանութիւնը հսկելու համար կայսրընտրին ղրկած Սաքսոնացի խորհրդականներուն մեկնելէն ետև՝ հոն մնալովը բաւականապէս ցուցըցեր էր , թէ բանէ մը վախ չունէր ու պատրաստ էր իրեն համար պատասխան տալու : Բայց մտածեց որ իր դիտաւորութիւնը առաջ Տը Վիօին իմացընէ. գրեց անոր Երեքշաբթի օրը , իր մեկնելուն առջի իրիկունը : Աս նամակը՝ առջի գրածէն աւելի համարձակ ոճով էր. իր ըրած խոնարհութեան անօգուտ ըլլալը տեսնելով , Լուտեր իրաւունքը ու իր թշնամիներուն անիրաւութիւնը ճանչնալով կըթուի թէ կըզօրանար ոտքի վրայ կելլեր :

"Ամենապատիւ հայր հոգևոր , գրեց Տը Վիօին , ձեր հայրական քաղցրութիւնը արդարև տեսաւ ու ըստ բաւականին ճանչցաւ իմ հնազանդութիւնս : Սրբազնասուրբ տեառն մերոյ Ժ Լևոնի հրամանաւը յանձն առի երկար ճամբորդութիւն մը կատարելու՝ բազմապատիկ վտանգներէ անցնելով , մեծ տկարութեամբ մարմնոյ , և յետին չքաւորութեան վիճակի մէջ : Ձեր վսեմութեան առջևք անձամբ

ներկայացայ, և վերջապէս ես զիս Նորին Սրբութեան ոտքը ձգեցի, ու հիմա կըսպասեմ իր բարեհաճութեան ը և պատրաստ եմ հնազանդիլ իր վճռոյն, թէ դատապարտէ և թէ անպարտ արձակէ զիս: Ուրեմն կըզգամ որ ամենևին զանց ըրած չեմ ինչ որ կըպահանջուի եկեղեցիին հնազանդ որդիէ մը:

"Ուստի իմ դիտաւորութիւնս ան է որ անօգուտ տեղը այլ ևս չմնամ հոս. և արդարև անհնար է ինծի մնալ, որովհետև հարկաւոր եղած միջոցները չունիմ. ու դուք յայտնապէս արգիլեցիք ինծի վերստին չերևալ ձեր առջևը՝ թէ որ չպիտի հերքեմ:

"Վասն որոյ Տէրոջը անունովը վերստին ճամբայ կելլեմ, փափաքելով՝ որ եթէ կարելի է՝ խաղաղութեամբ ապրելու տեղ մը գտնեմ: Քանի մը ինծմէ խելացի մարդիկ համոզեցին զիս որ ձեր հայրական քաղցրութենէն՝ և մինչև անգամ մեր սրբազնասուրբ տէրոջմէն՝ ոչ բարւոք տեղեկացեալ Ժ Լևոնէն բողոք ընեմ իրեն՝ երբոր ինքը բարւոք տեղեկացեալ է բանին: Իսկ թէպէտ գիտեմ որ ասանկ բողոքը հերքելէն աւելի հաճոյ պիտի ըլլայ կայսրընտրին բարձրութեանը, և սակայն թէ որ միայն իմ զգացումներէս խորհուրդ առնելու ըլլայի, չէի ըներ ան բողոքը: Յանցանք մը գործած չեմ, վասն որոյ պէտք չէ ինծի բանէ մը վախնալ":

Լուտեր աս նամակը գրելէն ետև (որ իր մեկնելէն ետև տրուեցաւ դեսպանին,) պատրաստուեցաւ Աւկսպուրկէն ելլել: Աստուած մինչև հիմա պահպաներ էր զինքը, ու ինքը 'ի բոլոր սրտէ փառաւորեց զՏէրը իր պահպանութեանը համար: Բայց իր պարտաւորութիւնը զԱստուած չփորձել էր. վասն որոյ ողջունեց իր բարեկամները որ այնպիսի քրիստոնէական հիւրընկալութիւն ըրեր էին իրեն, ու Չորեքշաբթի առտու արշալուսէն առաջ պատրաստ էր ճամբայ ելլել: Իր բարեկամները խրատեցին զինքը որ ամէն կերպ զգուշութիւնները բանեցընէ, վախնալով որ եթէ

իր մեկնիլը խեղացուի, գուցէ պիտի դէմ կեցուի: Անոր համար կրցածին չափ անանց խօսքը բռնեց: Ստաուպից իրեն համար ձի մը ձգած էր; ու անիկայ վանքին դուռը բերուեցաւ: Միանգամ եւս բարեւ մնաս կըսէ իր եղբայրներուն, այնուհետեւ ձին կըհեծնէ ու ճամբայ կելլէ առանց երասանակ ունենալու ձիուն գլուխը, առանց հողմբու կօշիկի և մորակի, և առանց զէնքի: Քաղաքապետը ձիաւոր մը խրկեր էր անոր իբրև ուղեցոյց, որ աղէկ տեղեակ էր ճամբաներուն: Աս մարդը գիշերային մթութեան մէջ Աուկս-պուրկի լռեկ փողոցներէն կանցընէ զանիկայ. ու իրենց ընթացքը կուղղեն դէպի քաղաքին պարսպին մէկ պզտի դըռանը: Խորհրդականներուն մէկը՝ Լանգէմանտէլ անունով պատուիրեր էր որ դուռը բացուի անոր: Լուտեր տակաւին դեսպանին իշխանութեանը տակն է. Հռովմայ ձեռքը տակաւին իր վրայ է. թէ որ Իտալացիները գիտնային իրենց որսին փախչիլը անտարակոյս աղաղակ պիտի վերցընէին անոր ետեւէն իյնալու. ով գիտէ թէ Հռովմայ քաջասիրտ թշնամին տակաւին չպիտի բռնուի ու բանտարգուի: . . . Վերջապէս Լուտեր և իր ուղեցոյցը փոքրիկ դրանը կը հասնին. դուռը կըբացուի, ու անոնք դուրս կելլեն Աուկս-պուրկէն, և իրենց ձիերը արշաւասոյր ընթացքի մը դնելով վաղվաղակի հեռի կըձգեն զքաղաքը իրենց ետեւը:

Լուտեր ճամբայ ելած ատենը պապին գրած իր բողոքը Փօռմսաւի մեծաւորին ձեռքը յանձներ էր. իր բարեկամները խրատեր էին զինքը որ դեսպանին չերկէ զանիկայ: Մեծաւորին ըսուեր էր որ վարդապետին մեկնելէն երկու կամ երեք օր ետեւ՝ քարտուղարի մը և վկաներու ներկայութեանը մայր եկեղեցիին դուռը կախէ զանիկայ: Ասիկայ ինչպէս որ կարգադրուած էր եղաւ:

Աս գրուածքին մէջ Լուտեր ցուցուց՝ թէ կըբողոքէր "գործին ոչ բարւոք տեղեկացեալ սրբազնասուրբ Հայր պապէն՝ շնորհօքն Աստուծոյ Քրիստոսով սրբազնասուրբ տեառն և Հօր Լևոնի, երբոր բարւոք տեղեկացեալ ըլ-

լայ են": Այս թուղթը գրուեցաւ կանոնաւոր կերպով կայսերական քարտուղարին Պօղ Տը Լոբբաքոմինգենի ձեռքը Նարգուղիեւոս Սուինձեյր և Մէնգել Մոսյնըրիս երկու Օգոստինեան միաբաններու ներկայութեանը : Անոր թուականն էր Հոկտեմբերի 16 :

Երբոր լսեց կարդինալը թէ Լուտեր մեկներ է, զարմանքով զարնուեցաւ, և ինչպէս որ ինքը կայսրընտրին գրած նամակի մը մէջ ցուցուց, նաև ահով ու դողով : Այս արդարև ունէր պատճառ խռովելու . վասն զի Լուտերի մեկնիլը՝ որ տասնեկ յանկարծակի վերջացուց անոր ընելու միջնորդութիւնները, երկար ժամանակէ 'ի վեր անոր ամբարտաւանութեանը յղացած բոլոր յոյսերը խափանած ըրաւ : Փառասիրութեամբ ցանկացեր էր՝ որ Եկեղեցիին վէրքերը բժշկելու, ու Գերմանիայի մէջ պապին օր ըստ օրէ տկարացող իշխանութիւնը վերստին հաստատելու պատիւը ինքն ունենար . բայց հիմա հերետիկոսը փախուցեր էր՝ չէ թէ միայն առանց պատժոյ, հապա և առանց գոնէ զանիկայ խոնարհեցընելու : Վիճաբանութիւնը միայն ծառայեր էր յայտ յանդիման ցուցընելու մէկ կողմանէ Լուտերի անկեղծութիւնը ուղղութիւնը և հաստատութիւնը, և միւս կողմանէ պապին և անոր երեսփոխանին խրոխտ և անիրաւ ընթացքը : Հռովմ բան մը չստանալէն ետև, կորսնցուցեր էր ալ . ու իր իշխանութիւնը վերստին չհաստատելէն ետև, իրօք նոր սանձահարութիւն մը կրեր էր : Վատիկանու մէջ ի՞նչ պիտի ըսուի ասկէն ասանց վրայ . Հռովմէն ընդունուելու հետևեալ պատգամները ի՞նչ պիտի ըլլան : Անշուշտ դեսպանին գտնուած վիճակին դժուարութիւնները պիտի մոռցուին, բանին անյաջող վախճանը իր անխոհեմութեանը պիտի ընծայուի : Սէրրա Լօնկա և Իտալացիներուն ծաղրանքները կատաղութեամբ լցան, երբոր տեսան՝ թէ իրենց այնչափ խորամանկութեամբը Գերմանացի միաբանէ մը խաբուեցան : Տը Վիօ ևս հազիւ կրնար ծածկել իր զայրացումը . այսպիսի նախա-

տինքը անշուշտ վրէժխնդրութեան պիտի դրդէ զինքը, և շուտով տեսնելու ենք իր բարկութիւնը յայտնելը կայսրընտրողին գրած նամակի մը մէջ.

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ԴԱՄՔ որ Լուտեր իր ձիաւոր ուղեցոյցին ընկերութեամբը Աւկսպուրկէն իր ճամբորդութիւնը կը շարունակէր․ կը ստիպէր իր ձին, ու քաջարշաւ ընթացքի մը մէջ կը պահէր ողորմելի կենդանին։ Իր միտքը կը բերէր Յովհաննէս Հուսի համար պատմուած կամ ճշմարիտ կամ կեղծեալ փախուստը, անոր ինչպէս բռնուիլը, ու անոր թշնամիներուն ըսածը՝ որ կը հաստատէին թէ Հուս իր փախչելովը կայսրին ազատագիրը աւրելով իրաւունք ունէին զինքը այրելու *։ Բայց աս խռովայոյզ զգացումները երկար չկեցան Լուտերի մտքին մէջ։ Հեռացած ըլլալով քաղքէն ուր որ տասը օր մնացեր էր Հռովմայ ահաւոր ձեռքին տակը՝ որ արդէն ճշմարտութեան այնչափ վկաները նուաճեր ու այնչափ արիւն թափեր էր, արգելք չունենալով, բացօթեայ տեղ ըլլալով, գիւղերէ և ագարակներէ անցնելով, ու Տէրոջը բազուկովը հրաշալի կերպիւ ազատած ըլլալով, բովանդակ իր հոգին փառաբանութեամբ լցաւ։ Աղէկ կրնար երգել սաղմոսերգու մարգարէին հետ. "Անձինք մեր ապրեցան որպէս ճնճղուկք յորոգայթէ որսողաց։ Որոգայթ նոցա փշրեցան, և մեք ապրեցաք։ Օգնութիւն է մեզ յանուանէ Տեառն, որ արար զերկինս և զերկիր"։ Լուտերի սիրտը այսպէս լցուած էր ուրախութեամբ․ բայց իր խորհուրդները վերստին դարձան Տը Վիօի վրայ։ Կը մտածէր թէ, "Կարդինալին շատ հաճելի պիտի ըլլար զիս իր ձեռքը ունենալ, ու Հռովմ խրկել․ և տարակոյս չկայ որ ինքը շատ տրտում պիտի ըլլայ իր ձեռքէն փախչելուս

* Weissman, Hist. Eccl. I, p. 1237.

վրայ։ Կարծենք որ Լէյփցիկի մէջ իր ճանկերուն մէջ առած էր զիս. կարծեցի որ պինդ բռներ էր զիս. սակայն ձուկ մը բռներ էր ինքը պոչէն, և ան սողալով ելաւ իր ձեռքէն։ Ափսոս որ աս մարդիկը այսչափ արժողութիւն կընծայեն ինծի։ Քանզի Քրիստոս փրկիչն մեր երեսուն կտոր արծաթի ծախուեցաւ, բայց ասոնք շատ ոսկի պիտի տան զիս իրենց ձեռքը անցընելու"*։

Ճանչին օրը տասնեչորս փարսախ ճամբայ առաւ. Երեկոյին Տրեւիր հասաւ այն իջևանը ուր որ գիշերը պիտի անցընէր, այնպէս յոգնած էր որ ձիէն վար իջնալուն՝ կարողութիւն չունէր ոտքի վրայ կանգնելու, ու յարդին վրայ ինկաւ անշարժ մնաց։ Բայց և իցէ նոյն գիշերը քիչ մը հանգստացաւ, ու հետևեալ օրը իր ճամբորդութիւնը շարունակեց։ Իսենախերկ հասնելուն հոն գտաւ Ստաուպիցը՝ որ զբաղած էր իր կարգին վանքերուն այցելութիւն ընելու։ Ան քաղաքիս մէջը նախատասանքէն առնուաւ ան կոնդակը որ պապը Կայետանոսին խրկեր էր իր վրայովը։ Զարմանեցաւ անոր վրայ, և թէ որ Աւգսպուրկէն ելլալէն առաջ կարդացած ըլլար զանիկայ, հաւանական է որ ամենևին չպիտի երևար կարդինալին առջևը։ "Դժուար չէ հաւատալ, ըսաւ, թէ ծայրագոյն քահանայապետէ մը ասանկ այլանդակ բան մը ելած ըլլայ"։

Լուտեր իր ճամբուն վրայ ամէն տեղ ընդհանուր հետաքրքրութեան առարկայ մըն էր. ետ կըդառնար ինքը բան մը չկորսընցուցած։ Աղքատ կրօնաւորի մը Հռովմայ երեսփոխանին վրայ տարած այսպիսի յաղթութիւնը ամէն սրտերը զարմանքով կըլեցընէր։ Աստուծոյ Բանը պապին բանէն աւելի պատուով պսակուեր էր. բազմաթիւ դարերէն հետէ իշխանութիւն վարող զօրութիւնը սաստիկ սանձահարութիւն մը հիմայ ընդուներ էր։ Այսպէս Լուտերի ճամբորդութիւնը շատ հանդէսով էր. մարդիկ կարախանային Հռովմայ կամակորութեանը վրայ, որ հաւանական

* L. Opp. (L) XVII p. 202.

կերևար թէ անոր կործանումը պիտի վաղվաղէ ։ Ինչ որ իր ամօթալից շահերը շարունակելու ոյժ կորսուած չըլլար , թէ որ բաւական խոհեմութիւն բանեցուցած ըլլար Գերմանացիները չարհամարհելու , թէ որ բողոքած չար սովորութիւնները բարեկարգած ըլլար , մարդկօրէն դատելով գուցէ ամէն բան պիտի դառնար այն մահահանգոյն վիճակին՝ ուրկէց Լուտեր զանոնք արթընցուցեր էր ։ Բայց պապականութիւնը չփութացաւ ըմբռնել , ու վարդապետը բանադատեցաւ ուրիշ բազմաթիւ սխալներ 'ի լոյս հանել , ու ճշմարտութեան գիտութիւնովը և յայտնութիւնովը յառաջանալ ։

Լուտեր իր ճամբորդութիւնը կըվաղվաղէր , Հոկտեմբերի 31ին Վիդդէմպէրկ դառնալը՝ ուզելով . վասն զի կը յուսար թէ կարդինալը հոն պիտի ըլլայ Ամենայն Սրբոց տօնին , ու ինքը պիտի կարենայ անոր հետ տեսնուելու ։ Նիւրէմպէրկի մէջ կարդացած կոնդակը իր վիճակին բոլոր վտանգները ցուցուցեր էր իրեն ։ Արդարէն Հռոմայ մէջ արդէն դատապարտուած ըլլալով , չէր կրնար յուսալ՝ ոչ Վիդդէմպէրկի մնալու , ոչ վանքի մը մէջ ապաստանարան մը գտնելու , և ոչ ուր և իցէ տեղ մը խաղաղութեամբ և ապահովութեամբ բնակելու ։ Սաքսոնիայի իշխանին պաշտպանութիւնը գուցէ կրնար օգուտ մը ըլլալ իրեն . բայց անոր վրայ անհնարին վստահութիւն մը չունէր . Նա իշխանին պալատին մէջ՝ իր բարեկամներէն ոչ՝ նա բանի մը ակնկալութիւն ունենալու էր ։ Վասն զի Ստաուպից երկար ժամանակաց հետէ իր վայելած ոէրը կորսնցուցած ըլլալով , Սաքսոնիայէն ելած էր . Սպալատինն ալ թէ և սիրելի էր Փրիդերիկոսի , բայց անոր վրայ շատ զօրութիւն չունէր ։ Նոյն ինքն Փրիդերիկոսը ևս աւետարանի վարդապետութեան մէջ այնքան վարժուած չէր որ անոր պատճառովը յայտնի վտանգներու մէջը ենթակայ ըլլար ։ Բայց և այսպէս Լուտեր մտածեց որ աղէկը Վիդդէմպէրկ դառնալ էր , ու հոն սպասել՝ տեսնելու թէ յաւիտենական և ողորմած

Աստուած իրեն ինչ պիտի ընէր ։ Թէ որ ամենց յուսացածին պէս հոն անձանձրոյթ մնար, երիտասարդներուն վարժութեանը և ուսման մէջ զարգանալնուն բոլորովին անձնատուր ըլլալ իր միտքը դրեր էր * ։

Հոկտեմբերի 30ին Լուտեր Վիդդէմպերկ հասաւ. իր արտորալը ոչինչ եղեր էր. ոչ կայսրընտիրը եկեր էր տեղին և ոչ Սպալատին ։ Իր բարեկամները ուրախացան զինքը նորէն իրենց մէջը տեսնելնուն ։ Լուտեր փութաց իմացընել Սպալատինին իր գալուստը. "Այսօր Վիդդէմպերկ հասայ, ըսաւ, Աստուծոյ ողորմութեամբը առողջ և ամբողջ. բայց չեմ գիտեր թէ որչափ պիտի մնամ հոս. . . . լցեալ եմ ուրախութեամբ և խաղաղութեամբ, ու դժուարին է ինծի իմանալ թէ իմ քաշած փորձութիւնս ինչու անանկ ծանր կերևնայ այսչափ երևելի մարդոց" ։

Տը Վիօ Լուտերին մեկնելէն ետև երկար չսպասեց իր բոլոր սրտմտութիւնը կայսրընտրին առջևը թափելու. իր գրած նամակը վրէժխնդրութիւն կըբուրէր ։ Ինքնահաւանութեան եղանակաւ մը խօսակցութեան պատմութիւնը գրեց Փրիդերիկոսի, ու նամակին վերջաբանութեանը մէջ ըսաւ. "Որովհետև եղբայր Մարտինոսը հայրական եղանակաւ չքեբուիր իր յանցանքը խոստովանելու՝ և ուղղափառ եկեղեցւոյ հաւատարիմ մնալու, կը խնդրեմ ձեր բարձրութենէն զինքը Հռովմ խրկել, կամ ձեր սահմաններէն դուրս աքսորել ։ Գիտնաք որ աս բազմակնճիռ վատախորհուրդ և վնասակար գործը չկրնար երկար տևեն մնալ. վասն զի ամէն աս խորամանկութիւնը և չարութիւնը սրբազնասուրբ տեառն մերոյ իմացուելուն պէս, ինքը յանկարծական վախճանի մը պիտի բերէ զանիկայ" ։ Կարդինալը իր ձեռօքը գրուած յաւելուած յօդուածով մը կաղաչէր կայսրընտրին որ չնչին միաբանի մը համար իր երևելի նախնիքներուն և իր պատիւը խայտառակութեամբ չարատաւորէ ։

* L. Opp. (L) XVII. p. 183.

Լութերի հոգին ոչ երբէք այնչափ բարձրաստիճան սրտմտութեան հասեր էր՝ որչափ աս նամակին օրինակը կարդալուն, որ կայսրընտիրը խրկեց իրեն: Առաջակայ նեղութիւններուն ճանաչումը որ ինքը սահմանուած էր կրելու. ճշմարտութեան յարգը որուն համար վիճեցաւ, Հռովմայեցի դեսպանին բռնած ճամբուն վրայ իր զզուանքը՝ միապէս զայրացուցին իր սիրտը: Իր հոգւոյն այսպէս խռովեալ վայրկեանին գրուած իր պատասխանը նշանաւոր է ան արիութեամբը՝ վսեմութեամբը և հաւատքովը, որ ինքը միշտ կըցուցընէր իր կենացը խիստ փորձանաւոր հանգամանքներուն մէջ: Աւկսպուրկի վիճաբանութեանը վրայով ինքն ալ՝ կարգը իրեն գալով պատմութիւն մը կընէ. և կարդինալին ընթացքը նկարագրելով, կըյառաջանայ խօսիլ այսպէս.

"Կուզէի պատասխանել դեսպանին ես զիս կայսրընտրին տեղը դնելով:

"Պիտի ըսէի իրեն. "Ցուցուր ինծի թէ ըսածդ կըհասկընաս. գրուածքով թող յառաջ տարուի վէճը. և անատենը եղբայր Մարտինոսը Հռովմ պիտի խրկեմ, կամ պիտի բռնեմ և զինքը սպաննել տամ: Պիտի ես զգուշանամ իմ խղճիս և իմ պատուոյս վրայ, ու թող չտամ որ իմ համբաւս արատաւորի: Բայց քանի որ քու բացարձակ գիտութիւնդ լուսէն կըփախչի, և միայն աղաղակով ինքզինքը կըցուցընէ, չեմ կրնար ես հաւատք ընծայել մթութեան":

"Ասիկայ է, ո՛վ վսեմափայլ իշխան, ասիկայ է պատասխանը որ իրեն պիտի տայի: "Սրբապատուելի դեսպանը կամ նոյն ինքն պապը թող գրութեամբ ցուցընեն իմ սխալներս. թող յառաջ բերեն իրենց պատճառները. թող խրատեն զիս՝ որ կուզեմ խրատուիլ, որ կըխնդրեմ խրատուիլ, որ բոլոր սրտովս կըփափաքիմ խրատ, անանկ որ հեթանոս մը ևս չպիտի մերժէ զիս հաճեցընելու: Թէ որ չհերքեմ ու չդատապարտեմ զիս՝ երբոր անոնք ինծի ցու-

ցընեն թէ սուրբ Գիրքերէն իմ բերած վկայութիւններս իմ իմացածէս տարբեր մտքով իմացուելու են, անատենը՝ ով Ս. սեմափայլ Կայսրընտիր, ձեր բարձրութիւնը նախ և առաջ թող հալածէ և աքսորէ զիս. համալսարանը թող արտաքսէ և իր սրտմտութեանը մէջ թող թաղէ զիս։ Ասկից ալ անդին կանցնիմ՝ ու երկինք և երկիր՝ի վկայ կը կոչեմ, նոյն ինքն Քրիստոս Յիսուս Տէրը թող մերժէ ու դատապարտէ զիս։ Ասանք սնոտի յանձնապաստանութեան խօսքեր չեն, այլ հաստատուն գիտակցութեան։ Տէրը թող զրկէ զիս իր շնորհքէն, ու Աստուծոյ բոլոր արարածները հրաժարին ինծի օգնելէն, թէ որ չընդունիմ ես ան վարդապետութիւնը որ կը ցուցընեն ինծի թէ լաւագոյն է։

“Բայց թէ որ իմ նուաստ վիճակիս համար, ու աղքատ և մուրացիկ եղբայր մը ըլլալուս պատճառովը բանի տեղ չեն դներ զիս, և անանկով կը մերժեն ճշմարտութեան ճամբուն մէջ զիս խրատելու, ձեր բարձրութիւնը թող խնդրէ դեսպաններէն գրութեամբ իմացընել ձեզի ինչ բանի մէջ սխալած ըլլալս. և թէ որ ձեր բարձրութեանն ալ չեն ըներ աս շնորհքը, կամ վեհափառ կայսեր թող գրեն իրենց խորհուրդները, և կամ Գերմանացի արքեպիսկոպոսի մը։ Ի՞նչ պարտիմ ընել ասկից աւելի, ի՞նչ կրնամ ընել ասկէց աւելի։

“Ձեր բարձրութիւնը ականջ թող դնէ ձեր խղճմտանքին և ձեր պատուոյն ձայնին, ու չխրկէ զիս Հռոմ։ Ասիկայ մէկը չկրնար ձեզմէ պահանջել. վասն զի անհնար է որ ես Հռոմմայ մէջ ազատ մնամ. նոյն ինքն պապը ազատ չէ հոն։ Ասիկայ քրիստոնէի արիւն մատնելու ձեզ ստիպել պիտի ըլլայ։ Անոնք հոն թուղթ ունին, գրիչ և թանաք ունին. նաև անհամար գրագիրներ ունին. դիւրին բան է իրենց գրել թէ ուր և ինչպէս սխալած եմ. Նուազ աշխատութիւն պիտի ըլլայ իրենց՝ գրութեամբ հեռուէն խրատել զիս, քան թէ զիս իրենց մէջը ունենալով դաւաճանութեամբ սպաննել։

"Ինքզինքս պիտի աքսորեմ ես . իմ թշնամիներս ամէն կողմանէ որոգայթ լարած են ինծի՛ համար, անանկ որ տեղ մը չեմ կրնար ապահով մնալ : Իմ պատճառովս Ձեզի վնաս մը չգալու համար յանուն Աստուծոյ ձեր սահմաններէն կելլեմ : Յաւիտենական և ողորմած Աստուած ուր որ կուզէ զիս ունենալ, հոն պիտի երթամ : Ինքը թող ընէ ինծի ինչ որ իրեն հաճոյ է :

"Ուրեմն պատուամեծար յարգութեամբ բարեաւ մնա կըսեմ ձեզի, ով ամենապայծառ կայսրընտիր : Ամենակարող Աստուծոյ կը յանձնեմ զձեզ, և անվախճան շնորհակալութիւն կըմատուցանեմ ձեզի՝ բոլոր բարերարութիւններուն համար որ ինծի ըրիք : Այսուհետև ինչ ժողովրդոց մէջ որ բնակիմ , ուր որ իմ ապառնի վիճակս ըլլայ, միշտ պիտի յիշեմ զձեզ , ու երախտապարտ սրտով անդադար պիտի աղօթեմ ձեր և ձերիններուն երջանկութեանը համար :

"Գոհութիւն Աստուծոյ որ տակաւին ուրախութեամբ լեցուն եմ , և փառաբանութիւն իրեն որ Քրիստոս Որդին Աստուծոյ արժանի կըսեպէ զիս ասանկ սուրբ փաստի մը մէջ չարչարուելու : Կըխնդրեմ որ ինքը մշտնջենաւորապէս պահպանէ ձեր պայծառափայլ Բարձրութիւնը . Ամէն" :

Աս նամակը՝ որ ճշմարտութեան և արդարութեան խօսքերով այսպէս լեցուն էր, խորին տպաւորութիւն մը ըրաւ կայսրընտրին : Ան երբէք իր մտքէն անցուցած պիտի ըլլար մէկ անմեղ մարդ մը Հռովմայ զօրութեանը մատնել . կարելի է որ միայն պիտի համոզէր զԼուտեր որ ատեն մը ինքզինքը պահէ . բայց այժմ իր միտքը դրաւ որ դեսպանին սպառնալիքներուն գէթ առ երևոյթս ալ չզիջանի : Գրեց Փէֆինգէրին իր խորհրդականին որ անատենը կայսերական պալատն էր, որ եղած բաներուն ստոյգ պատմութիւնը վեհափառ կայսեր ցուցընէ՝ ու աղաչէ անոր գրել Հռովմ, որպէս զի բանը իր վախճանին հասցունեն , կամ գոնէ Գերմանիայի մէջ անաչառ դատաւորներու ձեռքը որոշուի :

Քանի մը օրէն ետքը կայսրընտիրը պատասխան գրեց դեսպանին այսպէս.

"Որովհետև Մարտինոս վարդապետը Աւկսպուրկի մէջ ձեզի ներկայացաւ, պէտք էր որ գոհ ըլլայիք։ Չեմք յուսար որ առանց համոզելու զինքը իր սխալած ըլլալուն պիտի բռնադատէիք հերքել իր վարդապետութիւնը։ Մեր սահմաններուն մէջ գտնուած գիտնական անձանց մէկը կարծիք մը չտուաւ մեզի թէ Մարտինոսի վարդապետութիւնը ամբարիշտ՝ քրիստոնէութեան հակառակ՝ և հերետիկոսական վարդապետութիւն է"։ Իր նամակին վերջին մասին մէջ կը ցուցընէ իշխանը թէ ինքը ոչ Հռովմ խրկել կը կամի զԼուտեր, և ոչ իր սահմաններէն դուրս հանել զանիկայ։

Աս նամակը որ Լուտերին տրուեցաւ, անպատում ուրախութեամբ լցուց անոր սիրտը։ "Խարեշնորհ Աստուած . . . գրեց Սպալատինին. ինչ ուրախութեամբ կրկին և կրկին կարդացի զանիկայ. վասն զի գիտեմ թէ ինչ վստահութիւն կրնամ դնել աս ազդու և հանճարաւոր խօսքերուն վրայ։ Վախնամ թէ Իտալացիները անոնց միտքը կատարեալ չիմանան. բայց գոնէ պիտի իմանան թէ իրենց արդէն լմընցած կարծածը հազիւ թէ նոր սկսած է։ Հաճեցէք իմ շնորհապարտ երախտագիտութիւններս մատուցանել իշխանին։ Սքանչելի բան է թէ ինքը (Տը Վիօ) որ քիչ ատեն առաջ ինծի պէս մուրացիկ կրօնաւոր մըն էր, չվախնար արհամարհութեամբ խօսիլ մեծազօր իշխաններուն, համար տալու կոչել զանոնք, սպառնալ և հրամայել անոնց, ու այսպիսի անտեղի ամբարտաւանութեամբ վարիլ անոնց հետ։ Թող սորվի թէ ժամանակաւոր իշխանութիւնը Աստուծմէ կարգեալ է, և թէ ոչ ոք հրաման ունի անոր փառաւորութիւնը առ ոտն կոխելու" *։

Կար բան մը՝ որ անտարակոյս քաջալերած էր զՖրիտերիկոս պատասխանել դեսպանին այնպիսի եղանակաւ որ ան

* L. Epp. I p. 198 (Թուղթք Լուտ. ա հատոր, 198 երես։)

չէր յուսար . ասիկայ էր Վիդդէմպէրկի համալսարանին իրեն ուղղած նամակը : Ոչ առանց պատճառի ինքզինքնին յայտնեցին անոնք իրենց վարժապետին կողմնապահ ըլլալ : Համալսարանին համբաւը հետզհետէ կը շատնար , ու բոլոր ուրիշ դպրոցներէն կը գերազանցէր ան : Գերմանիայի ամէն կողմերէն բազմաթիւ աշակերտներ կը հաւաքէին հոն աս տարօրինակ մարդուն դասատուութիւնը լսելու , որուն տուած վարժութիւնները կը թուէր թէ նոր թուական մը կը բանային կրօնքի և գիտութեան : Զանազան գաւառներէն եկող աս պատանիները՝ երբոր հեռուէն Վիդդէմպէրկի աշտարակներուն գլուխները կը տեսնային , շատ անգամ կը կայնէին , ու իրենց ձեռքերը երկինքը վերցընելով կը փառաւորէին զԱստուած՝ որ ճշմարտութեան լոյսը ճառագայթել տուաւ Վիդդէմպէրկէն՝ (ինչպէս որ 'ի Հնումն Սիոն լեռնէն ,) որ խիստ հեռաւոր երկիրներու թափանցէ ան :* Համալսարանին աշակերտացը վրայ նոր կենդանութիւն մը և զօրութիւն մը տարածեցաւ . "Մեր պատանիները այնպէս ժիր են ինչպէս որ մրջիւնները բուներնուն բերանը" . գրեց Լուտեր :

## ՀԱՏՈՒԱԾ ԺԱ

ԼՈՒՏԵՐ մտածելով թէ կարելի է որ շատ չանցած Գերմանիայէն աքսորուի , Աւկսպուրկի մէջ եղած վիճաբանութեան պատմութիւնը տպագրութեամբ հրատարակելու զբաղեցաւ : Միտքը դրաւ որ Հռովմայ և իր մէջը եղած վէճին իբրև յիշատակարան մը պահուի անիկայ : Տեսաւ ան փոթորիկը որ պատրաստ էր ելլելու , բայց չվախցաւ անկէց . և օր ըստ օրէ կը սպասէր թէ Հռովմայ անէծքները իր վրայ պիտի թափին : Ամէն բան շիտկեց և կարգադրեց

* Scultet. Annal. I. p. 7

որպէս զի պատրաստ ըլլայ երբոր անիկայ հասնի ։ “Իմ պատմուճանս ժողված և իմ մէջքս ամուրցուցած ըլլալով, ըսաւ, Աբրահամի նման պատրաստ եմ ելլելու՝ առանց գիտնալու ուր իրթալս, կամ յաւէտ աղէկ գիտնալով ուր երթալս, որովհետև ամէն տեղ է Աստուած”։ Մտածելով որ հրաժարական նամակ մը ձգէ իր ելլելէն ետև, գրեց Սպալատինին և ըսաւ. “Համարձակէ ուրեմն անիծեալ և բանադրեալ մարդու մը նամակը կարդալ”։

Իր բարեկամները մեծ երկիւղի ու հոգի մէջ էին իր վըրայովը։ Ողաչեցին իրեն որ ինքզինքը կայսրընտրին ձեռքը մատնէ իբրև կալանաւոր, որպէս զի ան իշխանը անվնաս պահէ զինքը մէկ տեղ մը։

Իր թշնամիները չէին կրնար իմանալ իր այնքան համարձակութեանը պատճառը։ Օր մը՝ Գրանտէպուրկի եպիսկոպոսին պալատին մէջ խօսակցութիւնը Բարեկարգողին վրայ դառնալով՝ հարցուեցաւ թէ արդեօք ի՞նչ պաշտպանութեան ապաւինած է ինքը։ Ոմանք ըսին. “Էրրասմոսի ու Գապիտոնի և ուրիշ գիտնական անձանց պաշտպանութեանը կը յուսայ”։ “Ոչ, ոչ, պատասխանեց եպիսկոպոսը. պապին ամենևին փոյթը չէ ատ մարդիկը՝ Վիդդէմպէրկի համալսարանէն ու Սաքսոնիայի դուքսէն պաշտպանութեան կընայի Լութեր”։ . . . Այսպէս երկու կողմէն ալ չէին գիտեր ան ամուր աշտարակը՝ որուն ապաւինած էր Բարեկարգողը։

Լութերի միտքը զբաղած էր Գերմանիայէն դուրս ելլելու խորհուրդներով։ Չէ թէ վտանգին երկիւղէն ծնունդառին աս խորհուրդները, հապա ճշմարտութիւնը յայտնի դաւանելու համար Գերմանիայի մէջ իր գտնելու անդադար ընդդիմութիւններուն նախազգացումէն։ “Թէ որ հոս կենամ, ըսաւ, ազատութիւն չպիտի տրուի ինծի շատ բաներ խօսելու և գրելու։ Թէ որ մեկնիմ, իմ սրտիս խորհուրդները ազատօրէն պիտի դուրս բղխեմ, ու իմ կեանքս Քրիստոսի պիտի ուխտեմ”։

Գաղղիայի մէջ կը յուսար Լուտեր հրատարակել ճշմարտութիւնը առանց արգելքի։ փարիզու համալսարանին և վարժապետներուն ունեցած ազատութիւնը նախանձու արժանաւոր երևցաւ իրեն։ Մանաւանդ որ ինքն ալ շատ մասերու մէջ հոն եղած կարծիքներուն համաձայն էր. բայց թէ որ Լուտեր Վիդդէմպէրկէն Գաղղիա փոխադրուած ըլլար, արդեօք ի՞նչ պիտի յառաջ գար. Բարեկարգութիւնը պիտի հաստատուէ՞ր հոն, ինչպէս որ հաստատուեցաւ Գերմանիայի մէջ. Հռովմայ զօրութիւնը պիտի տկարանա՞ր հոն, ու Գաղղիա՝ ուր որ ետքը Հռովմայ քահանայապետական կարծիքներուն ու անհաւատութեան խանգարիչ կարծիքներուն մէջ ան երկարատև յուզմունքը եղաւ, արդեօք աւետարանական լուսոյ մեծ մատակարարը պիտի ըլլա՞ր։ Անօգուտ բան է ընդունայն կարծիքներու մէջ թափառիլը։ Բայց Լուտեր առանց տարակուսի փարիզի մէջ ըլլալով Եւրոպայի ու Գաղղիայի ապառնի վիճակին վրայով մեծ տարբերութիւն ըրած պիտի ըլլար։

Լուտերի կիրքը մեծապէս շարժեր էր. քաղքին եկեղեցւոյն մէջ շատ անգամ կը քարոզէր ինքը Վիդդէմպէրկի ժողովրդապետին Սիմոն Հէյնս փոնդանոսին տեղը, որ յաճախ հիւանդ էր։ Կուզէր որ՝ ինչ կը ըլլայ ըլլայ՝ իր հրաժարական ողջոյնը մատուցանէ ան ժողովուրդին՝ որոնց այնչափ անգամ փրկութեան վարդապետութիւնը քարոզեր էր։ Վասն որոյ օր մը ամպիոնէն ըսաւ. “Ես խիստ անհաստատ քարոզիչ մըն եմ, ու իմ վիճակիս վրայով խիստ անստոյգ եմ։ Որչափ անգամ յանկարծ ձգած եմ զձեզ առանց բարեւ մը ըսելու։ Եթէ որ մէյմըն ալ աս բանը պատահի, ու ես այլ ևս չդառնամ, հիմայ ընդունեցէք իմ վերջին ողջոյնս”։ Այնուհետև քանի մը խօսքեր ալ խօսելով հանդարտութեամբ և հեզութեամբ վերջացուց իր քարոզը, ըսելով. “Վերջապէս կը յորդորեմ զձեզ՝ որ եթէ պապին դատապարտութիւնները բոլոր սաստկութեամբ իմ վրաս թափուելու ըլլան, չվախնաք։ Մի

մեղադրէք զպապը . ոչ անոր և ոչ ուրիշ կենդանի մարդու մը վրայ ատելութիւն ունեցէք , այլ բոլոր բանը Աստուծոյ ձգեցէք" ։

Ի վերջոյ իր մեկնելու վայրկեանը հասած թուեցաւ . իշխանը ճամբով մը հասկըցուց իրեն՝ թէ կուզէր որ Վիդդէմպէրկէն ելլէ ինքը ։ Կայսրընտրին կամեցողութիւնները այնպէս յարգի էին Լուտերի քով՝ որ չէր կրնար չվաղվաղել զանոնք կատարելու . ուստի Բարեկարգողը պատրաստուեցաւ ճամբայ ելլել՝ առանց աղէկ գիտնալու թէ որ կողմ պիտի ուղղէր իր քայլերը ։ Ինչևիցէ իր մերձաւոր բարեկամները միանգամ ևս տեսնել ուզելով , հրաժարական խնճոյքի մը հրաւիրեց զանոնք ։ Սեղան նստելով անոնց հետը՝ միանգամ ևս վայելեց անոնց քաղցր խօսակցութիւնը , և անոնց սիրապատար և հոգածու բարեկամութիւնը ։ Մէյմըն ալ նամակ մը եկաւ իրեն , որ խրկուած էր պալատէն ։ Երբոր բացաւ ու կարդաց զանիկայ , իր սիրտը նուաղեցաւ իր ներսը ։ Նամակին մէջ պարունակուածը իր մեկնելուն կրկին հրամանն էր ։ Կըհարցընէր իշխանը թէ ինչո՞ւ այնչափ ուշացեր էր ճամբայ ելլելու ։ Տկարացաւ տրտմեցաւ իր հոգին . բայց և այնպէս քաջալերութիւն առաւ , ու իր գլուխը վեր վերցընելով հաստատութեամբ և խնդագին դէմքով մը նայեցաւ իր բոլորտիքը եղողներուն , և ըսաւ . "Հայրս ու մայրս կըթողուն զիս , բայց Տէրը պիտի ընդունի զիս" ։ Պէտք է որ ալ ինքը մեկնի . իր բարեկամները մեծապէս տրտմեցան մտածելով՝ թէ ինչ պիտի պատահի իրեն ։ Թէ որ Լուտերի պաշտպանները թողուն զինքը , ո՞վ պիտի ընդունի զինքը ։ Եւ աս Աւետարանը՝ աս ճշմարտութեան Բանը՝ աս իր սկսած գործը անտարակոյս պիտի կորնչի հաւատարիմ վկային հետ մէկ տեղ ։ Բարեկարգութիւնը բարակ թելէ մը կախուած կըթուէր , ու Լուտեր Վիդդէմպէրկի պարիսպները ձգած վայրկեանին ան թելը չպիտի՞ կտրուէր ։ Խնճոյքին մէջ լռութիւն մը պատեց . Լուտերի բարեկամները անոր զգա-

ցումներուն հետ միաբանելով չկրցին զսպել իրենց արտասուքը։ Բայց շատ չանցած երկրորդ պատգամաւոր մը եկաւ. Լուտեր անոր բերած նամակը բացաւ, սպասելով որ իր մեկնելուն վրայով երկրորդական հրաման մը պիտի գտնէ անոր մէջ։ Բայց՝ ո՜վ ամենակարող զօրութեան Տեառն . . . առ այժմ ազատութիւն է իրեն։ Ամէն բան փոխուած է. “Որովհետև պապին նոր պատգամաւորը կը յուսայ թէ քննութեան ատեանով մը ամէն բան կրնայ կարգի դրուիլ, առ այժմ կեցի՛ր” կըսէր նամակը։ Ի՜նչ կարևոր ժամ էր աս. և ի՜նչ արդեօք կրնար պատահիլ թէ որ Լուտեր՝ որ միշտ հոգ կըտանէր իշխանին կամացը հնազանդիլ, առաջին նամակը ընդունելուն անմիջապէս Վիդդէմպէրկէն ելած ըլլար։ Ոչ Բարեկարգողը և ոչ Բարեկարգութիւնը այնպէս տկարացած էին երբեք ինչպէս աս՝ վայրկեանիս։ Կրնար մտածուիլ թէ անոնց օրհասը հասեր էր. բայց ակնթարթի մէջ փոխուեցաւ ան։ Բարեկարգողը իր ընթացքին վերջի աստիճանին իջած ըլլալով՝ արագաբար ելաւ, ու ան նոյն ատենէն իր ազդեցութիւնը սկսեց անդադար բարձրանալ։

Սպալատին Ֆրիդերիկոսի հրամանովը Լիխթէմպէրկ կանչեց զԼուտեր, անոր հետը տեսնուելու։ Երկար խօսակցեցան ասոնք գործերուն վիճակին վրայով։ “Թէ որ պապին դատապարտութեան վճիռը գայ, անճար է ինծի Վիդդէմպէրկ մնալ” ըսաւ Լուտեր։ “Զգուշացիր չափազանց վաղվաղկոտ ըլլալէն Գաղղիա երթալու համար”. պատասխանեց Սպալատին. և զատուեցաւ անկէց, ապըսպըրելով որ սպասէ ուրիշ լուրեր առնելու իրմէն։ “Միայն թէ իմ հոգիս Քրիստոսի յանձնեցէք, ըսաւ Լուտեր իր բարեկամներուն. կըտեսնեմ որ իմ թշնամիներս առաւել քան զառաւել կըհաստատեն զիս կորսընցունելու. բայց Քրիստոս նոյն ատենը կըզօրացընէ զիս իմ վարդապետութիւնս չհերքելու համար իմ միտքս դրած հաստատութեանս մէջ”։

Լուտեր այս միջոցիս հրատարակեց Աւկսպուրկի մէջ եղած վիճաբանութեան վրայով իր գրած պատմութիւնը ։ Սպալատին՝ կայսրընտրին կողմանէ գրած էր անոր որ այս բանը չընէ , բայց ժամանակը անցեր էր ։ Սակայն երբոր գործը հրատարակեցաւ , իշխանը իր հաճութիւնը յայտնեց ։ Լուտեր իր յառաջաբանութեանը մէջ կըսէ · "Ամենամեծդ Աստուած · ի՜նչ նոր , ի՜նչ սքանչելի յանցաւորութիւն եղած է լոյս և ճշմարտութիւն փնտռելը , և մանաւանդ Եկեղեցւոյ մէջ , այսինքն՝ ճշմարտութեան սահմանին մէջ" ։ "Կըխրկեմ ձեզի այս ճառը , գրեց Լինքին · ասիկայ անտարակոյս խորունկ կըվիրաւորէ դեսպանը · բայց իմ գրիչս պատրաստ է շատ աւելի մեծ բաներ դուրս հանել ։ Ես ալ չեմ գիտեր թէ այս խորհուրդները ուրկէց կուգան ինծի · որչափ որ կըտեսնեմ , տակաւին գործը սկսած չէ ։ այսպէս Հռովմայ մեծամեծները քիչ պատճառ ունին յուսալու թէ անոր վերջը շուտով տեսնեն ։ Իմ գրուածքս ձեզի կըխրկեմ ան միտքով՝ որ դուք դատէք թէ արդեօք իրաւունք չունի՞մ հաւատալու թէ սրբոյն Պօղոսի խօսած Նեռը հիմա Հռովմայ պալատին մէջ կըթագաւորէ" ։

Ամէն կողմերէ չարագուշակ լուրեր կուգային Լուտերի · իր բարեկամներուն մէկը գրեց իրեն թէ Հռովմայ նոր պատգամաւորը հրաման ընդուներ էր զինքը բռնելու ու պապին ձեռքը մատնելու ։ Ուրիշ մէկը կըպատմէր թէ իր ճամբորդութեանը մէջ պալատականի մը հանդիպեր էր , ու խօսակցութիւնը Գերմանիայի անատեննուան երևելի գործերուն վրայ դառնալով՝ պալատականը հաւտացուցեր էր իրեն թէ ինքը խոստացած է Լուտերը բռնել ու ծայրագոյն քահանայապետին ձեռքը մատնել ։ "Բայց որչափ որ անոնց կատաղութիւնը ու բռնութիւնը կաւելնայ , գրեց Լուտեր , այնչափ իմ անոնցմէ վախնալս կըքիչնայ" ։

Կայետանոսի անյաջողութիւնը շատ անհաճոյ բան եղեր էր Հռովմայ ։ Գործին դատարկ ելլելուն վրայ զգացուած սրտնեղութիւնը նախ և առաջ անոր վրայ թափեցաւ ։

Հռովմայ բոլոր պալատականները կըմտածէին թէ իրաւունք ունին մեղադրելու զինքը բաւական խոհեմութիւն և ճարտարութիւն չգործածելուն համար՝ որոնք իրենց համարմամբը ամենահարկաւոր որպիսութիւններ էին մէկ դեսպանի մը, ու ասանկ կարևոր դիպուածի մը ատեն իր դպրոցական աստուածաբանութեան խստութիւնը չմեղմելուն համար: "Յանցանքը բոլորովին իրն է, ըսին. իր անճոռնի իմաստակութիւնը բոլոր բանը աւրեց: Ինչո՞ւ համար եպիսկոպոսութիւն մը՝ կամ թէ որ հարկաւորէր՝ կարդինալի գլխարկ մը խոստանալով որսալուն տեղը նախատինքներով և սպառնալիքներով բարկութեան չարժեց զԼուտեր": * Ոս վարձկանները իրենցմէ կըգատէին զԲարեկարգողը: Ինչ և իցէ աս անյաջողութեանս դարման մը պէտք էր գտնուիլ: Մէկ կողմանէ հարկաւոր էր որ Հռովմ ինքզինքը ցուցընէ՝ միւս կողմանէ պէտք էր որ չվշտացընէ զկայսրընտիրը, վասն զի կըյուսար թէ նոր կայսեր ընտրութեան ատենը շատ օգտակար պիտի ըլլայ իրեն: Եւ որովհետև Հռովմայ եկեղեցականներուն անհնար էր գաղափար մը ձևացընել ան ճշմարիտ պատճառին վրայ ուրկից Լուտեր իր ուժը և համարձակութիւնը կառնէր, մտածեցին որ կայսրընտիրը աւելի հաղորդութիւն ունի բանին քան որչափ իրօք ունէր ան: Վասն որոյ պապը որոշեց տարբեր ճամբայ մը բռնել. Գերմանիայի մէջ կոնդակ մը հրատարակել տալ իր դեսպանին ձեռօքը, որուն մէջ կըհաստատէր ներողութեանց վարդապետութեանը ճիշդ ան մասերուն վրայ որ վիճաբանութեան նիւթ եղեր էին, բայց ոչ կայսրընտրին անունը կըյիշէր և ոչ Լուտերինը: Եւ ինչպէս որ Բարեկարգողը միշտ կըսէր թէ Հռովմէական եկեղեցւոյ վճռոյն պիտի հնազանդի, կըխորհէր պապը թէ հիմա կամ իր խօսքը պիտի պահէ, կամ յայտնի պիտի ցուցընէ զինքը թէ եկեղեցւոյ խաղաղութիւնը վրդովող ու առաքելական աթոռը արհամարհող

*Sarpi, Concile de Trente, p. 8.

է․ որն որ ըլլար՝ կըկարծուէր թէ պապը պիտի շահի։ Բայց ճշմարտութեան դէմ այսպիսի յամառութեամբ հակառակելէն բնաւ երբէք բան մը չշահուիր։ Ի զուր սպառնացաւ պապը բանադրել ան ամէնը որ իր հրամայածէն տարբեր վարդապետութիւն կը քարոզեն․ ասանկ հրամաններով լոյսը չխափանուիր։ Աւելի խոհեմութիւն պիտի ըլլար քանի մը սահմաններով չափաւորել ներողութեանց վաճառականներուն պահանջմունքները։ Հռովմայ աս վճիռը յայտնապէս նոր գործ մըն էր անխոհեմութեան․ ան բորբոքեալ չար սովորութիւնները վաւերացընելով բոլոր խոհականանձերը գրգռեց, ու Լուտերի եկեղեցւոյ դաշնակցութեան դառնալը անհնար գործեց։ "Այնպէս կըկարծուէր, կըսէ Հռովմէադաւան պատմագիր մը՝ * որ մեծ թշնամի էր Բարեկարգութեան, թէ աս վճիռը ուրիշ բանի համար չեղաւ բայց եթէ պապին և ներողութիւն վաճառողներուն օգտին համար, որոնք սկսեր էին չգտնել մէկը՝ որ կամենայ ստակ տալ իրենց աս ներողութիւններուն համար"։

Կարդինալ Տը Վիօ հրատարակեց պապին աս վճիռը Աւստրիայի Լինց քաղաքը Դեկտեմբերի 13ին 1518ին․ բայց Լուտեր արդէն զինքը ապահով կացութեան մը մէջ դրեր էր։ Նոյեմբերի 28ին Վիդէմպէրկի սուրբ Հաղորդութեան տաճարին մէջ բողոքեր էր պապէն Եկեղեցւոյ ընդհանուր ժողովին։ Յառաջագոյն տեսեր էր իր վրան պատռելու փոթորիկը, ու գիտէր թէ միայն Աստուած կըրնար վերցընել զանիկայ։ Բայց իրեն ալ բան մը կիյնար ընելու, ու ինքը ըրաւ անիկայ․ թէ որ միայն կայսրընտրին համար ըլլայ, անշուշտ պէտք է որ Վիդէմպէրկէն ելլէ Հռովմայ բանադրանքը հոն հասածին պէս․ և սակայն միտքը դրաւ որ Սաքսոնիայէն ու Գերմանիայէն չելլէ առանց հրապարակաւ բողոք մը ընելու։ Վասն որոյ իր բողոքը գրեց․ ու Հռովմայ բռնութիւնը իրեն հասնելուն պէս

* Մէյմպուրկ՝ որ Գաղղիացի Յիսուսեան կրօնաւոր մըն էր։

գանիկայ շուտ մը ցրուելու համար տպագրել տուաւ, հաստատուն պայման մը ընելով տպագրիչին հետ որ բոլոր օրինակները իր ձեռքը տայ: Բայց աս մարդը շահասիրութեամբ գրեթէ բոլոր տպագրութիւնը վաճառեց, մինչդեռ Լուտեր հանդարտ կըսպասէր գանոնք ընդունելու: Լուտեր շատ վշտացաւ ասոր վրայ, բայց բանը եղած էր. աս համարձակ բողոքը հեռի և ընդարձակ տարածեցաւ: Լուտեր կրկին կըվկայէր անոր մէջ թէ ինքը միտք չունէր սուրբ Եկեղեցւոյ դէմ՝ առաքելական աթոռոյն իշխանութեանը դէմ՝ ու [illegible] պապին դէմ բան մը ըսելու: “Բայց որովհետև, ըսաւ, պապը որ Աստուծոյ փոխանորդն է երկրի վրայ՝ ուրիշ ո՛ և իցէ մարդու մը պէս կրնայ սխալիլ՝ մեղանչել՝ և սուտ խօսիլ, ու ընդդիմանալու անհնար եղած անիրաւութեան գործերուն դէմ մի միայն ապահովութիւնը ընդհանուր ժողովի բողոքելն է, աս պատճառներովս ես զիս պարտաւորեալ կըգտնեմ աս բանիս դիմելու”*:

Տես դուն հիմա Բարեկարգութիւնը նոր ընթացքի մը մտած: Ոչ ևս պապէն ու անոր վճռէն կախեալ է ան, այլ ընդհանուր ժողովէ: Լուտեր ընդհանուր Եկեղեցիին կը խօսի, ու սուրբ Հաղորդութեան տաճարէն ելած ձայնը Տէրոջը հօտին բովանդակ ժողովին մէջ պիտի լուի: Չէ թէ արիութեան կըկարօտի Բարեկարգողը. տես որ ինքը անոր նոր փորձը կըցուցընէ: Կըկարօտի Աստուծոյ. և ան արդեօք պիտի հասնի՞ իրեն: Ասոր պատասխանը պիտի կարդամք Բարեկարգութեան զանազան երևոյթներուն վրայ, որոնք տակաւին մեր առջևէն պիտի անցնին:

* Loscher, Ref. Act.

## ԳԻՐՔ Դ

## ԼԻՓՍԻԱՅԻ ՎԻՃԱԲԱՆՈՒԹԻՒՆԸ

## 1519

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա

Թանձրամած ամպեր կը հաւաքէին Լութերի և Բարեկարգութեան վրայ : Ընդհանուր ժողովին իր բռած բողոքը նոր հարուած մըն էր պապական իշխանութեան : Իսկ երկրորդ Պիոսի մէկ կոնդակը վճռած էր որ նթէ մէկը արքայական հայրապետին հեղինակութիւնը անանկ կերպով ուրանայ , մեծագոյն բանադրանաց ենթակայ է , թէ և նոյն ինքն կայսրը ըլլայ ան անձը : Փրիդերիկոս եւ՝ Սաքսոնիայի կայսրընտիրը՝ աւետարանական վարդապետութեան վրայ տակաւին քիչ հաստատուած , Լութերը իր սահմաններէն աքսորելու պատրաստ էր * : Ասանկ Ժ Լևոնի մէկ ուրիշ պատգամը պիտի ձգէր Բարեկարգողը օտարներու մէջ՝ որոնք գուցէ վախնային Հռովմայ բանադրած միաբանը պատսպարելով իրենց ապահովութիւնը վտանգի մէջ ձգել :

Բայց ան նոյն վայրկեանին երբոր Լևոնի պալատականները կը ստիպէին զինքը խստութիւն բանեցընել , երբոր միւս հարուած մը իր թշնամին իր ոտքը պիտի ձգէր ,

* Տես Կայսրընտրին նամակը Հռովմ խրկած իր դեսպանին : Գործք Լութերի Հատ . ԺԷ . Երես 198 :

յանկարծ աս պապը իր ընթացքը փոխեց *, ու հաշտու-թեան առաջարկութիւններ սկսեց ընել ։

Աս այն ատենս Հռովմայ պալատին մէջ Սաքսոնացի ազնուական մը կար, որ պապին սենեկապետն՝ ու Մայնցի Թրավէսի և Մայսէնի կանոնիկոսն էր ։ Ասիկայ աշխա-տութեամբ յառաջադէմ մէկը եղեր էր, ու կը պարծենար թէ Սաքսոնիայի իշխաններուն հետ ազգակցութեան կա-պով մէկ է, անանկ որ Հռովմայ պալատականները երբեմն կը կոչէին զինքը Դուքս Սաքսոնիայի ։ Իտալիայի մէջ իր Գերմանական ազնուութեանը վրայ կը մեծաբանէր, Գեր-մանիայի մէջ Իտալիայի սովորութիւնները ու քաղաքակրու-թիւնները բրտութեամբ՝ի գործ կը դնէր ։ Ինքզինքը գինե-մոլութեան տուած էր †, ու աս մոլութիւնը իր Հռովմ բնակիլէն զօրութիւն ստացեր էր ։ Այսու ամենայնիւ Հռովմայեցի պալատականները մեծամեծ ակնկալութիւն-ներ կընէին իրմէ ։ Իր բնիկ Գերմանացի ըլլալը, իր յանկու-ցիչ կենցաղավարութիւնը, ու հաշտութիւն գործելու իր ունեցած ճարտարութիւնը համոզեցին զանոնք՝ թէ Կարոլոս Միլտից (որ այսպէս կը կոչուէր ինքը,) իր խոհեմութեամբը պիտի խաղաղէ ան պատերազմը որ կը սպառնար աշխարհի ։

Հարկաւոր էր որ Հռովմայեցի սենեկապետին պատգա-մաւորութեան առոյգ պատճառը ծածկեալ պահուի. և ա-սիկայ դժուարին բան չէր ։ Չորս տարի առաջ կրօնասէր կայսրընտիրը աղաչեր էր պապին որ Ոսկի Վարդը շնորհէ իրեն, որ օրինակ կը բռնէին Յիսուս Քրիստոսի մարմնոյն ։ Ծայրագոյն քահանայապետը ամէն տարի ասանկ վարդ մը կօրհնէր, ու Եւրոպայի մեծամեծ իշխաններէն մէկուն կը շնորհէր ։ Ուստի որոշուեցաւ որ աս տարի կայսրընտրին տրուի անիկայ. վասն որոյ Միլտից ճամբայ ելաւ՝ հրաման ընդունելով որ իրերուն ինչ վիճակի մէջ ըլլալը քննէ, ու

* Rationem agendi prorsus oppositam inire statuit. (Cardinal Pallavicini Hist. Concil. Trid. Tom. I p. 51.)

† Nec ab usu immoderato vini abstinuit. (Pallavicini Hist. Con[c]. Trid. I. p. 19.

Սպալատին և փէֆինգէրը՝ կայսրընտրին խորհրդականները շահի ։ Միլտից աս երկու անձինքներուն մասնաւոր նամակներ կըբերէր, որովհետև Կայսրընտրին բոլորտիքը եղողները իր կողմը շահելով, Հռովմ կըյուսար թէ իր հիմակուան զարհուրելի թշնամւոյն վրայ իսկ և իսկ յաղթող պիտի հանդիսանայ ։

Նոր Նուիրակը Գերմանիա հասաւ Դեկտեմբերի մէջ 1518ին, ու իր ճամբորդութեանը մէջ աշխատեցաւ հաստարակաց կարծիքը փորձելու ։ Բայց ինչպէս սաստիկ զարմանքի մէջ մնաց երբոր իր կանգ առած տեղերը տեսաւ՝ թէ բնակիչներուն մեծ մասը Բարեկարգութեան պաշտպան էին, ու մարդիկ եռանդուն մտօք կըխօսէին Լուտերի վըրայ * ։ Մէկը որ ինքզինքը պապին կուսակից ըլլալ կըյայտնէր, անոր տեղը երեքը կըգտնէր անոր դէմ կեցող ։ Լուտեր մէկ դիպուած մը կըպատմէ որ աս հետևեալն է ։ Նուիրակը իր իջած պանդոկներուն մէջի տիկիններուն և ծառաներուն բազմիցս կըհարցընէր՝ թէ "Ի՞նչ կարծիք ունիք դուք Հռովմայ աթոռին վրայ" ։ Որ մը աս խեղճ կնիկներուն մէկը պարզամտութեամբ մը այսպէս պատասխանեց. "Ի՞նչպէս կրնամք գիտնալ մենք թէ դուք Հռովմայ մէջ ինչ տեսակ աթոռներ ունիք. արդեօք քարէ՞ եթէ փայտէ" † ։

Նոր Նուիրակին գալստեան սուգ լուրը կասկածով և երկբայութեամբ լցուց կայսրընտրին պալատը՝ Համալսարանը՝ Վիդդէմպէրկ քաղաքը և բոլոր Սաքսոնիա ։ "Գոհութիւն Աստուծոյ որ Մարտինոս տակաւին ողջ է" գրեց Մելանկտոն շփոթելով ։ Շշունչ մը ծագեցաւ թէ Հռովմայեցի սենեկապետը հրաման ընդունած էր Լուտերը իր ձեռքը անցունելու դաւաճանութեամբ կամ բռնութեամբ ։

* Sciscitatus, per viam Miltitzius quanam esset in æstimatione Lutherus . . . sensit de eo cum admiratione homines loqui. (Pallavicini Hist. Conc. Trid. tom. I. p 51:

† Quid nos scire possumus quales vos Romæ habeatis sellas, ligneasne an lapideas? (Luther opp. Lat. in Præf.)

Ամէն կողմերէ կըխրատէին վարժապետը որ Միլտիցի որո-գայթներէն զգուշանայ։ "Պապը եկած է, կըսէին, որ քեզ բռնէ ու պապին ձեռքը մատնէ. արժանահաւատ անձինք իր ունեցած հրովարտակը տեսած են"։ "Աստուծոյ կամա-ցը կըսպասեմ ես", պատասխան տուաւ Լուտեր։

Միլտից յիրաւի հասեր էր, և իր հետը նամակներ բե-րած էր կայսրընտրին՝ անոր խորհրդականներուն՝ եպիսկո-պոսներուն՝ ու Վիդդէմպէրկի քաղաքապետին։ Եօթա-նասուն հատ ալ առաքելական կոնդակներ բերեր էր իր հետը, որ եթէ Հռովմայ շողոքորթութիւնովը և ընծանե-րովը Փրիդերիկոս համոզուէր՝ Բարեկարգողը Միլտիցի ձեռքը տալու, աս կոնդակները պիտի գործածէր ան իրեն ապահովութեանը համար. քանզի միտք ունէր որ իր ճամ-բուն վրայ իւրաքանչիւր քաղաքի մէջ ասոնցմէ մէկ հատ կախէ և ասանկով իր կալանաւորը առանց հակառակու-թեան Հռովմ տանի։

Կըթուէր թէ պապը իր բոլոր խորհուրդները կարգի դրած էր. և արդէն կայսրընտրին պալատականները կը շփոթէին թէ ինչ ճամբայ բռնեն. թէ և կրնային բռնու-թեան դէմ կենալ, բայց ինչպէս դէմ կենային քրիստո-նէից լրութեան գլխոյն՝ որ հեղութեամբ և փաստով կըխօ-սէր։ Աղէկ չէ՞ր ըլլար կըսէին որ մէկ տեղ մը պահուի Լու-տեր, մինչև որ աս փոթորիկը անցնի։ Ինչ և իցէ անակն-կալ դիպուած մը պատահեցաւ աս բազմակնճիռ վիճակէն ազատել Լուտերը, կայսրընտիրը՝ և Բարեկարգութիւնը։ Աշխարհի կերպարանքը յանկարծ մը փոխուեցաւ։

Յունուարի 12ին 1519ին Մաքսիմիլիանոս Գերմանիայի կայսրը մեռաւ։ Փրիդերիկոս Սաքսոնիայի կայսրընտիրը Գերմանական սահմանադրութեանց համեմատ տէրու-թեան հոգաբարձուն եղաւ։ Ան նոյն վայրկեանին կայս-րընտիրը ազատեցաւ պապին նուիրակներուն և անոնց հնարքներուն երկիւղէն։ Նոր շահախնդրութիւններ սկսե-ցին ազդել Հռովմայ՝ որոնք ստիպեցին զպապը Փրիդերի-

կոսի հետ իր ունեցած գործառնութիւններուն մէջ վարպետութիւն բանեցունել, ու արգիլեցին ան հարուածը՝ որ Միլտից և Տը Վիօ իրենց միտքը դրած էին ընել։ Պապը մեծապէս կըփափաքէր կայսերական աթոռէն զրկել Աւստրիայի Կարոլոսը, որ արդէն Նաբօլիի թագաւորն էր։ Իր դատողութեամբը առաւել կըվախցուէր աթոռը նստող սահմանակիցէ մը, քան թէ Գերմանացի միաբանէ մը։ Ալը բաղձար շահիլ կայսրընտրին գործակցութիւնը, որ մեծ նպաստ կրնար ըլլալ իրեն աս բանիս մէջ. վասն որոյ որոշեց սակաւ ինչ թոյլտուութիւն ընել միաբանին, որպէս զի լաւագոյն կարողանայ հակառակիլ Կարոլոսին. բայց աս խորագիտութեան հակառակ երկուքն ալ յառաջացան.

Գումք որ Միլտից՝ որ Մաքսիմիլիանոսի մեռնելէն առաջ Սաքսոնիա հասեր էր, ժամանակ չէր կորսընցուցեր իր նախկին բարեկամը Սպալատինը տեսնելու. բայց հազիւ սկսեր էր Լուտերի դէմ իր ամբաստանութիւնները բանալ, որ ատեն մատրանապետը Տեցելի վրայ գանգատելով բողբոքեցաւ։ Ներողութեանց վաճառականին ստութիւնները ու հայհոյութիւնները նուիրակին իմացուց, ու յայտնեց թէ բովանդակ Գերմանիա Դոմինիկեանին ընթացքին կընծայեն Եկեղեցին վրդովող երկպառակութիւնները։

Միլտից սքանչացաւ մնաց. փոխանակ ամբաստանողի ինքզինքը գտաւ ամբաստանեալ մէկու մը տեղը։ Իր բարկութիւնը վաղվաղակի Տեցելի վրայ դարձաւ, ու կանչեց զանիկայ ներկայանալ իրեն Ալթէնպուրկի մէջ և համար տալ իր ընթացքին վրայով։

Դոմինիկեանը՝ որ իր պարծենկոտութեանը չափ և երկչոտ էր, զարհուրելով ան ժողովուրդէն որոնց սրտմտութիւնը բորբոքեր էր իր խաբէութիւններովը, քաղաքներուն ու գաւառներուն մէջ իր շարժումը վերջացուցեր էր, ու աս միջոցիս Լիփսի քաղաքը սրբոյն Պօղոսի դպրոցը առանձնացեր էր։ Միլտիցի նամակը ընդունելուն իր երեսին գոյ-

նը շրջեցաւ։ Խոստացաւ իրեն՝ թէ նոյն ինքն Հռովմ զինքը կըթողու, կըդատապարտէ, ու կըդրդէ ելլել ան մի միայն ապաստանարանէն՝ ուր որ զինքը ապահով կըկարծէր, իբրև թէ իր թշնամիներուն սրտմտութեանը զինքը մատնելու։ Տէցէլ յանձնառու չեղաւ հնազանդիլ նուիրակին հրաւիրանացը. ու 31 Դեկտեմբերի 1518ին այսպէս գրեց Միլտիցին. "Անշուշտ ես պիտի չզղջայի ճամբուն նեղութեանը վրայ թէ որ կարենայի Լիփսիայէն դուրս ելլել առանց վտանգի մէջ դնելու իմ կեանքս. բայց Մարտինոս Լուտերը այնպէս գրգռեց ու իմ վրաս յարոյց մեծամեծները, որ ես բնաւ տեղ մը ապահովութիւն չունիմ։ Լուտերի կողմնականներէն շատերը երդում ըրած են զիս մեռցունելու. վասն որոյ չեմ կրնար քու քովդ գալ" *։ Զարմանալի ընդդիմութիւն մը կար աս երկու անձանց մէջ՝ որոնց մէկը Լիփսիայի սրբոյն Պօղոսի դպրոցը կըկենար ան ատենը, և միւսը Վիդէմպէրկի Օգոստինեանց վանքը։ Աստուծոյ ծառան աներկիւղ քաջասրտութիւն մը կը ցուցընէր վտանգներուն մէջ, իսկ մարդոց ծառան՝ անգոսնելի երկչոտութիւն մը։

Միլտից պատուէր ընդունած էր որ նախ ջանայ յորդորանքով կատարել բանը. և միայն անատենը իր եօթանասուն կոնդակները պիտի հանէր՝ ու Լուտերը բռնելու համար կայսրընտիրը հաւանութեան ածելու Հռովմէական միջոցները մէկ դի պիտի դնէր, երբոր աս ճամբան չյաջողէր. վասն որոյ Բարեկարգողին հետ տեսնուելու փափաք մը ցուցուց։ Սպալատին՝ անոնց հասարակաց բարեկամը, որոշեց որ աս տեսութիւնը իր տունը ըլլայ, ու Լուտեր Յունուարի 2ին կամ 3ին Վիդէմպէրկէն ելաւ Ալթէնպուրկ երթալու։

Աս տեսութեանս մէջ Միլտից արքունի հրովարտակ բերողի ու Հռովմէական պալատականի մը բոլոր դաւաճա-

* Loscher. II, 567.

նութիւնները 'ի գործ դրաւ : Լութերի հասած վայրկեանին Նուիրակը մեծ բարեկամութիւն ցուցընելով անոր քով գնաց : Զարմացաւ Լութեր, թէ ինչպէս իր բռնութիւնը քաղցրութեան փոխուեր է : "Աս նոր Սաւուղը՝ ըսաւ, Գերմանիա կուգար եօթանասունէն աւելի պապական կոնդակներ հետը բերելով, որ զիս ողջ և շղթայակապ մարդասպան Հռովմ քաղաքը տանի. բայց Տէրը ճամբուն վրայ կործանեց զանիկայ" * :

"Սիրելի Մարտինոս, ըսաւ Միլտից համոզական եղանակով, կըկարծէի որ դուն ծերունի աստուածաբան մըն ես՝ որ իր վառարանին քով հանդարտ նստած քանի մը աստուածաբանական նոր գաղափարներ կըհնարէ. բայց կըտեսնեմ որ դուն տակաւին երիտասարդ ես ու ծաղկահասակ կենաց մէջ" : Այնուհետև աւելի վստահութիւն մը ցուցընելով ըսաւ. "Գիտե՞ս որ բովանդակ աշխարհ պապէն դարձուցիր" : Միլտից աղէկ գիտէր թէ մարդոց սնափառութիւնը շողոքորթելովն է որ անոնք խիստ դիւրութեամբ կը խաբուին, բայց չճանչցաւ ան մարդը որուն հետ ինքը կը խօսէր :

"Թէ և քսանըհինգ հազար զօրք ունենայի ինծի օգնելու, շարունակեց ըսելով, արդարև յանձնառու չէի ըլլար քեզ բռնելու ու Հռովմ տանելու" : Այսպէս Հռովմ իր ունեցած այնչափ զօրութիւնովը ևս տկարութիւն զգաց նուաստ միաբանի մը առջևը, ու միաբանը Հռովմայ առջևը իր անձը զօրաւոր կըզգար : "Աստուած, կըսէ Լութեր, ծովին եզերքը կըխափանէ մեծամեծ ալիքները. և ի՞նչպէս. միայն մանր աւազներով" :

Նուիրակը մտածելով թէ աս շողոքորթութիւններովս Լութերի միտքը որսացեր էր, այսպէս շարունակեց իր խօսքը. "Գըկոր համոզուէ, ու դուն ինքնդ գոցէ ան վէրքը

* Sed per viam a Domino prostratus . . . mutavit violentiam in benevolentiam fallacissime simulatam. (L. Epp. I. p. 206.)

որ Եկեղեցիին վրայ բացիր, և որ մէկը չկրնար բժշկել զա-
նիկայ բայց միայն դուն: Կաղաչեմ քեզի զգուշ կեցիր (ըս-
տաւ կեղծ արտասուք թափելով) անանկ փոթորիկ մը հա-
նելէն որով մարդկային սեռի ամենալաւ երջանկութիւնը
պիտի նաւաբեկի"*: Այնուհետև կամաց կամաց յառա-
ջացաւ ազդել անոր թէ աս ցաւին դեղ և դարման մատու-
ցանելու մի միայն ճամբան իր վարդապետութիւնը հերքելն
է. բայց իսկ և իսկ մեղմացուց աս հակառակելի բառը՝ Լու-
տերի վրայ յարգական խօսքեր ընելով, ու Տէցելի դէմ
իր սրտմտութիւնը ցուցընելով: Քաջավարժ ձեռքով լա-
րուեցաւ որոգայթը. ի՞նչ յոյս ազատութեան կրնար ըլլալ
անոր ցանցերէն:

"Թէ որ Մայնցի արքեպիսկոպոսը սկիզբէն այսպէս վա-
րէր իմ հետս, ըսաւ Լուտեր ետքերը, աս գործը չէր հա-
ներ ան աղմուկը որ հանեց"†:

Անատեն Լուտեր անխռով սրտիւ՝ և սակայն եռանդով
ու ազդուութեամբ սկսեց խօսիլ. Մայնցի արքեպիսկոպո-
սին վրայ իր ունեցած սրտմտութիւնը համարձակ յայտ-
նեց, ու աներկիւղ գանգատեցաւ ան անարժան ճամբուն
վրայ՝ որով Հռովմայ ատեանը իր հետը վարեցաւ, թէպէտ
և իր դիտաւորութիւնները բարի էին: Միլտից՝ որ այս-
պիսի համարձակ խօսք լսելու ակնկալութիւն չունէր, իր
բարկութիւնը զսպեց:

"Կըխոստանամ, ըսաւ Լուտեր, այսուհետև լռել աս
բաներուն վրայ, թէ որ իմ թշնամիներս ալ յանձն առնեն
լռել. բայց թէ որ անոնք իրենց յարձակմունքները հա-
նապազորդեն, շատ չանցած պիտի տեսնեմք որ մասնաւոր
վիճաբանութենէ մը երևելի հակառակութիւն պիտի ծա-
գի. իմ զէնքերս պատրաստ կեցած են": Վայրկեան մը
շունչ առնելէն ետև ըսաւ. "Քայլ մը ևս անդին պիտի

* Profusis lacrymis ipsum oravit, ne tam perniciosam Christiano generi tempestatem cieret. (Pallavicini I. 52)

† L. Opp. Lat. in Præf.

անցնիմ. պիտի գրեմ պապին սրբութեանը, խոստովանելով որ սակաւ ինչ աւելի խստութիւն գործածեցի. և պիտի իմացընեմ թէ Եկեղեցիին հաւատարիմ որդի մը ըլլալուս համար էր որ դէմ ելայ ան կերպ քարոզութեան որ ժողովրդոց ծաղրաբանութիւնը ու արհամարհութիւնը իր վրայ կըբերէր։ Կըկամիմ ևս գրութիւն մը հրատարակել, որուն մէջ պիտի խնդրեմ թէ ամէն անոնք որոնք իմ գրուածքներս կըկարդան, Հռովմայ Եկեղեցւոյն վրայ յարձակում մը ըլլալ չկարծեն ան գրութիւնները, մանաւանդ թէ հանապազորդեն հնազանդ ըլլալ անոր իշխանութեանը։ Ես յօժար սրտով ամէն բան կընեմ և ամէն բան կը քաշեմ. բայց իմ վարդապետութիւնս հերքելու վրայ՝ ատ բանը մի յուսաք ինծմէ"։

Միլտից Լուտերի անյողդողդ եղանակէն տեսաւ թէ խելացութիւնը Բարեկարգողին խոստացածներովը բաւականացած ձևանալն է. միայն առաջարկեց որ վիճաբանութեան քանի մը մասերուն համար արքեպիսկոպոս մը դատաւոր ընտրուի։ "Այնպէս թող ըլլայ, ըսաւ Լուտեր. բայց ես շատ կըվախնամ թէ պապը դատաւոր մը պիտի չընդունի. և թէ որ անանկ ըլլայ, ես ալ պապին վճռածը չեմ ընդունիր, ու վիճաբանութիւնը վերստին կըսկըսի. քանզի պապը պիտի տայ բնաբանը, ու ես մեկնութիւն պիտի ընեմ անոր վրայ"։

Այսպէս վերջացաւ Լուտերի առաջին խօսակցութիւնը Միլտիցի հետ։ Անգամ մը ևս մէկ տեղ եկան, և աս ատենը՝ պատերազմին առ ժամանակ մը դադարիլը կամ յաւէտ խաղաղութիւնը հաստատուեցաւ։ Լուտեր բոլոր անցքերը անմիջապէս իմացուց կայսրընտրին։

"Ամենապայծառ իշխան և բարեշնորհ տէր, գրեց, խոնարհաբար կըփութամ ծանուցանել Ձեր Կայսրընտրական Բարձրութեանը թէ Կարոլոս Միլտից ու ես վերջապէս միաբանեցանք, ու մեր վիճաբանութիւնները վերջացուցինք աս հետևեալ յօդուածներովը.

Ա. «Երկու կողմն ալ արգիլուած է որ այսուհետև ան ծագած վէճին վրայ բան մը գրէ կամ գործէ։

Բ. «Միլտից իրերուն ինչ վիճակի մէջ ըլլալը առանց յապաղելու պիտի ծանուցանէ պապին սրբութեանը։ Սրբազան պապը լուսաւորեալ եպիսկոպոս մը պիտի կարգէ բանը քննելու, ու ցուցընելու ան մոլորական յօդուածները որ պիտի հերքեմ։ Ինչ որ իմ սխալած ըլլալս փաստով ցուցուի ինծի, յօժարութեամբ պիտի հերքեմ, ու ոչ ևս մէկ բան մը պիտի ընեմ որ Հռովմէական սուրբ Եկեղեցւոյ հեղինակութիւնը կամ պատիւը նուազեցընէ»։

Միաբանութիւնը այսպէս հաստատուած ըլլալով, Միլտիցի ուրախութիւնը լցաւ։ «Դարէ մը 'ի վեր, ըսաւ, ոչինչ վիճաբանութիւն աւելի սրտնեղութիւն պատճառեր էր կարդինալներուն ու Հռովմայ ատեանին, քան թէ ասիկայ։ Առաւել կը յօժարէին տասը հազար տուգանք տալ, քան թէ ան վէճը երկարած տեսնել»*։

Պապին սենեկապետը չէր գիտէր թէ ինչպէս բռնէր Վիդդէմպէրկի միաբանը. մէկ վայրկեանին իր բերկրութիւնը կը յայտնէր, միւս վայրկեանին արտասուք կը թափէր։ Աս զգացումներուն ցուցմունքները շատ քիչ շարժեցին Նարեկարգողը, բայց զգուշացաւ որ չցուցընէ թէ ինքը ինչ կը խորհէր անոնց վրայ։ «Չհասկընալ կը ձևանայի, կըսէ, աս կոկորդիլոսի արտասուքներուն նշանակութիւնը»։ Կըսեն թէ կոկորդիլոսը երբոր չկրնար իր որսը ձեռք ձգել, կարտասուէ։

Միլտից ընթրիքի հրաւիրեց զԼուտեր, ու վարդապետը ընդունեց անոր հրաւէրքը. իր կոչնատէրը մէկ դի դրաւ իր պաշտօնատարութեան պատուաւոր աստիճանը, ու Լուտեր տեղի տուաւ իր բնական զուարթամտութեանը։ Խնդալից խնջոյք մը կատարեցին. ու հրաժարելու վայրկեանը հասնելուն՝ Նուիրակը իր բազուկները բացաւ հերե-

* Pallavicini, Tom. I. p. 52.

տիկոս վարդապետին , ու համբուրեց զանիկայ ։ "Յուդայի համբոյր" . ըսաւ Լուտեր իր մտքէն ։ "Կըձեւանայի չհասկընալ աս Իտալական քաղաքավարութիւնները" , գրեց Ստաուպիցին ։

Արդեօք աս համբոյրը իրաւ հաշտութիւն պիտի գործէ՞ր Հռովմայ ու լուսանալու սկսած Բարեկարգութեան մէջ ։ Միլտից կըյուսար թէ կրնար գործել , ու կուրախանար ան յուսովը . վասն զի ինքը Հռովմայ ատեանէն աւելի մօտէն կըտեսնէր ան զարհուրելի կատարածը որ Բարեկարգութիւնը պիտի բերէր պապականութեան վրայ ։ Թէ որ Լուտեր և իր հակառակորդները լռութեան մէջ պահուին , կըսէր ինքնիրեն , վիճաբանութիւնը պիտի վերջանայ , ու Հռովմ ճարտարութեամբ նոր պարագաներ հանելով , իր առաջին զօրութիւնը վերստին պիտի ստանայ ։ Ուստի ամէն կերպով կերեւար թէ կռիւը գրեթէ անցած էր . Հռովմ իր բազուկները բացեր էր , ու Բարեկարգողը զինքը անոնց մէջ ձգեր էր ։ Մնաց որ Բարեկարգութիւնը ոչ մարդկային գործ էր , հապա Աստուածային ։ Ինչ որ իրօք Եկեղեցիին կենդանութիւնն էր , Հռովմ սխալմամբ կը կարծէր թէ միաբանի մը հետ միայն մէկ վէճ մըն էր ։ Հռովմէական սեննեկապետին համբոյրները չէին կրնար խափանել Քրիստոնէութեան նորոգութիւնը ։

Միլտից իր նոր հաստատած դաշնադրութեանը վրայ* Ալթէնպուրկէն ելաւ գնաց Լիփսիա , ուր որ Տեցել ան ատենը կըբնակէր ։ Հարկաւոր չէր պատուիրել Դոմինիկեանին որ լուռ կենայ , վասն զի ինքը ուրախութեամբ պիտի խնդրէր որ եթէ կարելի է երկրիս տակը ինքզինքը ծածկէ . բայց Նուիրակը առաջադրեր էր իր սրտմտութիւնը անոր վրայ թափել . ուստի Լիփսիա հասնելուն պէս իր առջեւը կոչեց զանիկայ ։ Նախատինքով ծանրաբեռնեց զանիկայ , մեղադրեց զինքը թէ բոլոր չարիքներուն պատ-

* Տես. Երես. 300 . տող 16 ։

ճառը ինքն էր , ու սպառնացաւ թէ պապին բարկութիւնը իր վրայ թափել պիտի տայ ։ Ասկէց ալ անդին անցաւ ․ Ֆուգէրներուն վաճառատան գործակալը՝ որ անատենը Լիփսիա էր , ասոր հետը դատ կըվարէր ։ Միլտից ցուցուց Դոմինիկեանին աս վաճառատան հաշիւները , իր ստորագրութեամբը գրուած մուրհակները , ստուգեց թէ շատ ստակ վատներ կամ իր վրայ անցուցեր էր ։ Ապերջանիկ մարդը՝ որ իր յաղթութեան օրերը ոչինչ կընար ամչցունել զինքը , աս ճշմարիտ յանցանքներովս պաղեցաւ մնաց ։ Չէր գիտէր թէ ինչ կերպով ծածկէր իր ամօթը ․ անանկ յուսահատութեան մէջ ինկաւ որ իր առողջութիւնը փնասեցաւ ։ Լուտեր իր նախկին թշնամւոյն ողորմելի վիճակին լուրը առաւ , ու կըթուի թէ միայն ինքը գտնուեցաւ զանիկայ խղճացող ։ "Կըխղճամ Տէցէլը"* գրեց Սպալատինին ։ Եւ ոչ թէ ինքը աս տեղը կանկ առաւ ․ վասն զի չէ թէ մարդն էր որ ինքը կատէր այլ անոր գործերը ։ Ան նոյն վայրկեանին երբոր Հռովմ իր սրտմտութիւնը անոր վրայ պիտի թափէր , Լուտեր մխիթարութեան նամակ մը գրեց անոր ․ բայց բոլորը անօգուտ էր ։ Տէցէլ իր խղճին խայթոցովը տանջուելով , իր ամենասիրելի բարեկամներուն նախատինքներովը շփոթելով , ու պապին բարկութենէն զարհուրելով շատ չանցած թշուառաբար մեռաւ ։ Ընդհանրապէս կըկարծուէր թէ տրտմութիւնն էր որ փութացուց իր վախճանը ։

Լուտեր Միլտիցի ըրած իր խոստմունքը † կատարելով Մարտի 3ին աս հետեւեալ նամակը գրեց պապին ․

"Արբազնասուրբ Հայր ․

Իցէ թէ ձեր Սրբութիւնը բարեհաճի խոնարհեցընել իր հայրական ականջը՝ որ նոյն ինքն Քրիստոսինն է , իր

* Doleo Tetzelium. L. Epp. 1. p. 223.
† Տե․ էջե․ 300 , տող 1 ։

ողորմելի ոչխարին, ու մարդասիրութեամբ լսէ անոր մայելու ձայնին։ Ինչ ունիմ ընել, ով Հայր սրբազնասուրբ. ձեր սրտմտութեանը հոսանքին դէմ չեմ կրնար կանգնիլ, ու փախչելու ճամբայ մը չեմ գիտեր։ Կըխնդրեն ինծմէ որ հերքեմ. յօժարութեամբ կընէի աս բանը, թէ որ անիկայ անոնց բաղձացած վախճանին տանէր հասցունէր։ Բայց իմ թշնամիներուս յարուցած հալածումները հեռի և ընդարձակ տարածեցին իմ գրութիւններս, ու այնպէս խորին տպաւորեցան անոնք մարդոց սրտերուն մէջ որ հնար չէ քերել եղծանել զանոնք։ Հերքելը միայն աւելի անպատիւ պիտի ընէ Հռովմայ Եկեղեցին, ու ամէն կողմերէ աղաղակ մը պիտի յարուցանէ անոր դէմ ամբաստանելու։ Սրբազնասուրբ Հայր, առաջի Աստուծոյ և բոլոր աշխարհի յայտնի կըխոստովանիմ, որ ես բնաւ չխնդրեցի և ոչ երբէք կըխնդրեմ բռնութեամբ կամ ճարտարութեամբ տկարացընել Հռովմէական Եկեղեցիին կամ ձեր Սրբութեան իշխանութիւնը։ Կըխոստովանիմ թէ ոչ երկինքը ու ոչ երկրի վրայ բան մը կայ որ աս Եկեղեցիէն նախապատիւ պիտի ընտրուի, բայց միայն Յիսուս Քրիստոս ամենեցուն Տէրը" *։

Աս խօսքերը կերևան օտար՝ և մինչև անգամ պարսաւելի Լուտերի բերանը, թէ որ չյիշեմք թէ լոյսը յանկարծ չծագեց իր վրայ՝ այլ առ սակաւ սակաւ, և աստիճան քան զաստիճան։ Աս խօսքերը վկայ են ան երևելի ճշմարտութեան, թէ Բարեկարգութիւնը սոսկապէս պապականութեան ընդդիմութիւն մը չէր։ Պապին դէմ հակառակիլը Բարեկարգութեան միայն մէկ երկրորդական նպատակ մըն էր։ Իր առաջին սկզբունքը կենդանի վարդապետութիւն մըն էր, "Յիսուս Քրիստոս ամենեցուն Տէրը, ամենուն նախապատիւը", ու նոյն ինքն Հռովմէն գերազանցը, ինչպէս որ իր նամակին վերջին խօսքերովը նշանակեց։ Ահա

* L. Epp. I. p. 234.

այսպէս էր իրապէս վեշտասաներորդ դարուն ծագած խռովութեան պատճառը ։

Հաւանական է որ աս մեր պատմած ժամանակէն քիչ մը առաջ պապը առանց նկատելու պիտի չանցնէր ան նամակը՝ որուն մէջ Մ. Իզգէմպէրկի միաբանը յայտնապէս ժխտեց հերքելը ։ Բայց Մաքսիմիլիանոս ոչ ևս ողջ էր. կը խնդրուէր թէ ո՛վ պիտի յաջորդէր անոր, ու Լուտերի նամակը զանց եղաւ մէկ քաղաքական խառնակութեանց մէջ որ անատենը կը վրդովէր քահանայապետաց քաղաքը ։

Բարեկարգողը իր ժամանակը գործի դրաւ իր կարող թշնամիէն աւելի օգտակար կերպով մը ։ Մինչդեռ Լեոն Տասներորդ իր աշխարհային շահախնդրութեանցը մէջ ընկղմած ամենայն զօրութեամբ կը ջանար կայսերական գահէն զրկել իր ահաւոր սահմանակիցը Կարոլոս Սպանիոյ թագաւորը, Լուտեր օրըստօրէ գիտութեամբ և հաւատքով կաճէր ։ Պապական վճիռներուն ուսմանը պարապեցաւ, ու իր գտած ծանօթութիւնները մեծապէս կերպաւորեցին իր գաղափարները ։ Սպալատինին գրեց ու ըսաւ. "Քահանայապետաց վճիռները կը կարդամ, ու՝ քու ականջիդ կը խօսիմ, չեմ գիտեր թէ պապը նոյն ինքն նե՞ռն է, եթէ անոր առաքեալը. այսպէս ստութեամբ ցուցուած կամ յաւէտ՚ի խաչ հանուած է Քրիստոս անոնց մէջ" *։

Բայց տակաւին կը յարգէր ինքը Հռովմայ Եկեղեցին, ու ամենևին խորհուրդ մը չունէր անկէց զատուելու ։ "Տարակոյս չկայ, կըսէր ան յայտարարութեան մէջ որ խոստացած էր Միլտիցին հրատարակելու, թէ Հռովմէական Եկեղեցին Աստուծոյ առջևը բոլոր ուրիշ եկեղեցիներէն աւելի պատուեալ է. քանզի հոն Սուրբն Պետրոս, Սուրբն Պօղոս, քառասունըվեց պապեր, հազարաւոր մարտիրոսներ իրենց կեանքը դրին յաղթելով դժոխքի և աշխարհի, անանկ որ կրնայ ըսուիլ թէ՝ Աստուծոյ աչքը յատկական

* L. Epp. I, 239.

խնամով մը կըհանդչի Հռովմէական Եկեղեցւոյն վրայ ։ Եւ թէպէտ աս օրուան օրս անոր մէջ ամէն բան թշուառ կացութեան մը մէջ է , բայց ասիկայ պատճառ չէ անկէց բաժնուելու ։ Ընդհակառակն իրերը որչափ գէշ երթան , մենք այնչափ պինդ պիտի կենամք հոն . վասն զի չէ թէ մեր անկէց բաժնուելովն է որ կրնամք աղէկցընել զանիկայ ։ Պէտք չէ որ բաժնուինք Աստուծմէ՝ սատանային մէկ գործին համար . ոչ ալ հոն տեղի ամբարիշտներուն բազմութեանը համար դադարինք՝ Հռովմայ փարախին մէջը գտնուած Աստուծոյ որդւոցը հետ ընկերութիւն ընելէն ։ Ոչինչ մեղք՝ ոչինչ չարիք կրնան քակել սիրոյ կապը , կամ անջատել մարմնին միութիւնը ։ Վասն զի սէրը ամէն բան կրնայ ընել . ու բան մը դժուարին չէ անոնց որ միացեալ են'' ։

Ուրեմն չէ թէ Լուտեր էր որ ինքզինքը բաժնեց Հռովմէն , այլ Հռովմ զինքը բաժնեց Լուտերէն . ու ասանկ ընելով մերկացաւ իրմէ Ուղղափառ Եկեղեցւոյ վաղեմի հաւատքը , որուն ախոյեանն էր անատենը Լուտեր ։ Չէ թէ Լուտեր էր որ Հռովմայ իշխանութիւնը անոր ձեռքէն առաւ՝ ու անոր եպիսկոպոսը պարտաւորեց իջնալ ան աթոռէն որ բռնութեամբ յափշտակուած էր , այլ միայն իր քարոզած վարդապետութիւնները՝ Աստուծոյ ազդու և յայտնի կերպով Եկեղեցւոյ մէջ վերստին յայտնած առաքելոց պատգամները զօրութիւն ստացան կործանել աթոռէն ան բռնակալը՝ որ դարերէն 'ի վեր գերի վարեր էր Եկեղեցին ։

Լուտերի աս յայտարարութիւնները որ փետրուար ամսուն վերջերը հրատարակուեցան , կատարելապէս չհաճեցուցին Միլտիցը ու Տը Վիօ ։ Աս անգղերուն երկուքն ալ տեսնալով իրենց որսին իրենցմէ փախչիլը , հին Թրէվէսի պարսպին մէջ առանձնացեր էին ։ Հոն՝ կայսրընտիր արքեպիսկոպոսին օգնութեամբը կյուսային թէ իրենց միաբանութեամբը պիտի կատարէին ան խորհուրդը , որն որ

իւրաքանչիւրը առանձին չէին կրցեր կատարելու ։ Կուսի-րակներուն երկուքն ալ յայտնապէս կըտեսնէին թէ բան մը չէր յուսացուէր Փրիդերիկոսէ, որ գերագոյն զօրութեամբ զարդարուած էր հիմա ։ Կըտեսնէին թէ Լուտեր հաստատութեամբ կըմերժէր հերքելը . յաջողութեան մի միայն ճարն էր միաբանը կայսրընտրին պաշտպանութեան տակէն հանել, և անատենը իրենց ձեռքը անցընել զանիկայ ։ Անգամ մը թող մտնէր Թիւրէմէս Լուտեր՝ Եկեղեցւոյ մէկ իշխանին՝ Վաղանդեալ սահմանին մէջ, ու ալ մէկ ճարտարութիւն մը չէր զատէր զինքը անկէց մինչև որ կատարելապէս լցունէր քահանայապետին պահանջմունքները ։ Վասն որոյ իրենց աս խորհուրդը 'ի գործ դրին առանց յապաղելու, ու Միլտից Թիւրէմէսի կայսրընտիր արքեպիսկոպոսին ըսաւ . “Լուտեր ձեր Նորհափայլութեան դատաւորութիւնը ընդունեց, վասն որոյ կըխնդրեմք որ զանիկայ ձեր առջևը կանչէք” ։ Այսպէս Թիւրէմէսի կայսրընտիր արքեպիսկոպոսը Մայիսի 3ին Սաքսոնիայի կայսրընտրին գրեց, խնդրելով անկէց որ Լուտերը իրեն խրկէ ։ Նոյն ատենը Տը Միօ՝ և անմիջապէս անոր ետևէն ինքը Միլտից՝ գրեցին Փրիդերիկոսի, աւետիս տալ անոր թէ Ոսկի Վարդը Սէկզպուրկ հասած Ֆուգէրներուն յանձնուէր է ։ Մտածեցին թէ զօրաւոր հարուած մը տալու վայրկեանը եկած հասած է ։

Բայց իրերը փոխուած էին . ոչ Փրիդերիկոս և ոչ Լուտեր շարժեցաւ իր վստահութենէն ։ Կայսրընտիրը իր նոր վիճակը կըճանչնար, ու ոչ ևս կըվախնար պապէն՝ թող թէ անոր գործակալներէն ։ Իսկ Բարեկարգողը տեսնելով Միլտիցի ու Տը Միօի միաբանիլը, զգաց թէ ինչ պիտի պատահի իրեն թէ որ անոնց հրաւէրքը ընդունի ։ “Ամէն կողմանէ, ըսաւ, որոգայթ լարուած է իմ անձիս” ։ Անաւանդ որ ինքը պապին բողոքեր էր, ու պապը՝ թագապսակ գլուխներուն հետ բազմակնճիռ գործերով զբաղած . անոր բողոքին պատասխան չէր տուէր ։ Լուտեր գրեց Միլտիցի ու ըսաւ . “Ինչպէս կրնամ Հռովմէն հրաման

անցնիմ․ պիտի գրեմ պապին սրբութեանը, խոստովանելով որ սակաւ ինչ աւելի խստութիւն գործածեցի․ և պիտի իմացընեմ թէ Եկեղեցիին հաւատարիմ որդի մը ըլլալուս համար էր որ դէմ ելայ ան կերպ քարոզութեան որ ժողովրդոց ծաղրաբանութիւնը ու արհամարհութիւնը իր վրայ կը բերէր։ Կըկամիմ ևս գրութիւն մը հրատարակել, որուն մէջ պիտի խնդրեմ թէ ամէն անոնք որոնք իմ գրուածքներս կը կարդան, Հռովմայ Եկեղեցւոյն վրայ յարձակում մը ըլլալ չկարծեն ան գրութիւնները, մանաւանդ թէ հանապազորդեն հնազանդ ըլլալ անոր իշխանութեանը։ Այո․ յօժար սրտով ամէն բան կընեմ և ամէն բան կը քաշեմ․ բայց իմ վարդապետութիւնս հերքելու վրայ՝ ատ բանը մի յուսաք ինծմէ"։

Միլտից Լուտերի անյողդողդ եղանակէն տեսաւ թէ խելացութիւնը Բարեկարգողին խոստացածներովը բաւականացած ձևանալն է․ միայն առաջարկեց որ վիճաբանութեան քանի մը մասերուն համար արքեպիսկոպոս մը դատաւոր ընտրուի։ "Այնպէս թող ըլլայ, ըսաւ Լուտեր․ բայց ես շատ կը վախնամ թէ պապը դատաւոր մը պիտի չընդունի․ և թէ որ անանկ ըլլայ, ես ալ պապին վճռածը չեմ ընդունիր, ու վիճաբանութիւնը վերստին կըսկըսի․ քանզի պապը պիտի տայ բնաբանը, ու ես մեկնութիւն պիտի ընեմ անոր վրայ"։

Այսպէս վերջացաւ Լուտերի առաջին խօսակցութիւնը Միլտիցի հետ։ Անգամ մը ևս մէկ տեղ եկան, և աս ատենը՝ պատերազմին առ ժամանակ մը դադարիլը կամ յաւէտ խաղաղութիւնը հաստատուեցաւ։ Լուտեր բոլոր անցքերը անմիջապէս իմացուց կայսրընտրին։

"Ամենապայծառ իշխան և բարեշնորհ տէր, գրեց, խոնարհաբար կը փութամ ծանուցանել Ձեր Կայսրընտրական Բարձրութեանը թէ Կարոլոս Միլտից ու ես վերջապէս միաբանեցանք, ու մեր վիճաբանութիւնները վերջացուցինք աս հետևեալ յօդուածներովը․

Ա. "Երկու կողմն ալ արգիլուած է որ այսուհետեւ ան ծագած վէճին վրայ բան մը գրէ կամ գործէ ։

Բ. "Միլտից իրերուն ինչ վիճակի մէջ ըլլալը առանց յապաղելու պիտի ծանուցանէ պապին սրբութեանը ։ Սըրբազան պապը լուսաւորեալ եպիսկոպոս մը պիտի կարգէ բանը քննելու, ու ցուցընելու ան մոլորական յօդուածները որ պիտի հերքեմ ։ Թէ որ իմ սխալած ըլլալս փաստով ցուցուի ինծի, յօժարութեամբ պիտի հերքեմ, ու ոչ եւս մէկ բան մը պիտի ընեմ որ Հռովմէական սուրբ Եկեղեցւոյ հեղինակութիւնը կամ պատիւը նուազեցընէ" ։

Միաբանութիւնը այսպէս հաստատուած ըլլալով, Միլտիցի ուրախութիւնը լցաւ ։ "Դարէ մը 'ի վեր, ըսաւ, ոչինչ վիճաբանութիւն աւելի սրտնեղութիւն պատճառեր էր կարդինալներուն ու Հռովմայ ատեանին, քան թէ ասիկայ ։ Առաւել կը յօժարէին տասը հազար տուգաթ տալ, քան թէ ան վէճը երկարած տեսնել"* ։

Պապին սենեկապետը չէր գիտեր թէ ինչպէս բռնէր Վիդդէմպէրկի միաբանը . մէկ վայրկեանին իր բերկրութիւնը կը յայտնէր, միւս վայրկեանին արտասուք կը թափէր ։ Աս զգացումներուն ցուցմունքները շատ քիչ շարժեցին Բարեկարգողը, բայց զգուշացաւ որ չցուցընէ թէ ինքը ինչ կը խորհէր անոնց վրայ ։ "Չհասկընալ կը ձեւանայի, կըսէ, աս կոկորդիլոսի արտասուքներուն նշանակութիւնը" ։ Կըսեն թէ կոկորդիլոսը երբոր չկրնար իր որսը ձեռք ձգել, կարտասուէ ։

Միլտից ընթրիքի հրաւիրեց զԼութեր, ու վարդապետը ընդունեց անոր հրաւէրքը . իր կոչնատէրը մէկ դի դրաւ իր պաշտօնատարութեան պատուաւոր աստիճանը, ու Լութեր տեղի տուաւ իր բնական զուարթամտութեանը ։ Խնդալից խնջոյք մը կատարեցին . ու հրաժարելու վայրկեանը հասնելուն՝ նուիրակը իր բազուկները բացաւ հերե-

* Pallavicini, Tom. I. p. 52.

տիկոս վարդապետին, ու համբուրեց զանիկայ: «Յուդայի համբոյր» ըսաւ Լուտեր իր մտքէն: «Արձականայի չհասկընալ աս Իտալական քաղաքավարութիւնները», գրեց Ստաւպիցին:

Արդեօք աս համբոյրը իրաւ հաշտութիւն պիտի գործէ՞ր Հռովմայ ու լուսանալու սկսած Բարեկարգութեան մէջ: Միլտից կը յուսար թէ կրնար գործել, ու կուրախանար անյուսովը. վասն զի ինքը Հռովմայ ատեանէն աւելի մօտէն կը տեսնէր ան զարհուրելի կատարածը որ Բարեկարգութիւնը պիտի բերէր պապականութեան վրայ: Թէ որ Լուտեր և իր հակառակորդները լռութեան մէջ պահուին, կ՚ըսէր ինքնիրեն, վիճաբանութիւնը պիտի վերջանայ, ու Հռովմ ճարտարութեամբ նոր պարագաներ հանելով, իր առաջին զօրութիւնը վերստին պիտի ստանայ: Ուստի ամէն կերպով կերևար թէ կռիւը գրեթէ անցած էր. Հռովմ իր բազուկները բացեր էր, ու Բարեկարգողը զինքը անոնց մէջ ձգեր էր: Մնաց որ Բարեկարգութիւնը ոչ մարդկային գործ էր, հապա Աստուածային: Ինչ որ իրօք Եկեղեցիին կենդանութիւնն էր, Հռովմ սխալմամբ կը կարծէր թէ միաբանի մը հետ միայն մէկ վէճ մըն էր: Հռովմէական սենեկապետին համբոյրները չէին կրնար խափանել Քրիստոնէութեան նորոգութիւնը:

Միլտից իր նոր հաստատած դաշնադրութեանը վրայ* Ալթէնպուրկէն ելաւ գնաց Լիփսիա, ուր որ Տեցել ան ատենը կը բնակէր: Հարկաւոր չէր պատուիրել Դոմինիկեանին որ լուռ կենայ, վասն զի ինքը ուրախութեամբ պիտի խնդրէր որ եթէ կարելի է երկրիս տակը ինքզինքը ծածկէ. բայց Նուիրակը առաջադրեր էր իր սրտմտութիւնը անոր վրայ թափել. ուստի Լիփսիա հասնելուն պէս իր առջևը կոչեց զանիկայ: Նախատինքով ծանրաբեռնեց զանիկայ, մեղադրեց զինքը թէ բոլոր չարիքներուն պատ-

* Տես երես 300. տող 16:

ճառը ինքն էր , ու սպառնացաւ թէ պապին բարկութիւնը իր վրայ թափել պիտի տայ : Ըսկէց ալ անդին անցաւ . Վուգէրներուն վաճառատան գործակալը՝ որ անատենը Լիփսիա էր , աոր հետը դատ կըվարէր : Միլտից ցուցուց Դոմինիկեանին աս վաճառատան հաշիւները , իր ստորագրութեամբը գրուած մուրհակները , ուստուգեց թէ շատ ստակ վատներ կամ իր վրայ անցուցեր էր : Ըպերջանիկ մարդը՝ որ իր յաղթութեան օրերը ոչինչ կրնար ամչցունել զինքը , աս ճշմարիտ յանցանքներովս պաղեցաւ մնաց : Չէր գիտեր թէ ինչ կերպով ծածկէր իր ամօթը . անանկ յուսահատութեան մէջ ինկաւ որ իր առողջութիւնը վնասեցաւ : Լուտեր իր նախկին թշնամույն ողորմելի վիճակին լուրը առաւ , ու կըթուի թէ միայն ինքը գտնուեցաւ զանիկայ խղճացող : "Կըխղճամ Տեցելը"* գրեց Սպալատինին : Նաեւ ոչ թէ ինքը աս տեղը կանկ առաւ . վասն զի չէ թէ մարդն էր որ ինքը կատէր այլ անոր գործերը : Ըն նոյն վայրկեանին երբոր Հռոմ իր սրտմտութիւնը անոր վրայ պիտի թափէր , Լուտեր մխիթարութեան նամակ մը գրեց անոր . բայց բոլորը անօգուտ էր : Տեցել իր խղճին խայթոցովը տանջուելով , իր ամենասիրելի բարեկամներուն նախատինքներովը շփոթելով , ու պապին բարկութենէն զարհուրելով շատ չանցած թշուառաբար մեռաւ : Ընդհանրապէս կըկարծուէր թէ տրտմութիւնն էր որ փութացուց իր վախճանը :

Լուտեր Միլտիցի ըրած իր խոստմունքը † կատարելով Մարտի 3ին աս հետեւեալ նամակը գրեց պապին .

"Սրբազնասուրբ Հայր .

Իցէ թէ ձեր Սրբութիւնը բարեհաճի խոնարհեցընել իր հայրական ականջը՝ որ նոյն ինքն Քրիստոսինն է , իր

* Doleo Tetzelium. L. Epp. 1. p. 223.
† Տե՛ս Երե՛ս 300 , տող 1 :

ողորմելի ոչխարին, ու մարդասիրութեամբ լսէ անոր մայե-
լու ձայնին։ Ի՜նչ ունիմ ընել, ով Հայր սրբազնասուրբ.
ձեր սրտմտութեանը հոսանքին դէմ չեմ կրնար կանգնիլ,
ու փախչելու ճամբայ մը չեմ գտներ։ Կը խնդրեն ինծմէ որ
հերքեմ. յօժարութեամբ կընէի աս բանը, թէ որ անիկայ
անոնց բաղձացած վախճանին տանէր հասցունէր։ Բայց
իմ թշնամիներուս յարուցած հալածումները հեռի և ըն-
դարձակ տարածեցին իմ գրութիւններս, ու այնպէս խո-
րին տպաւորեցան անոնք մարդոց սրտերուն մէջ որ՝ հնար չէ
քերել եղծանել զանոնք։ Հերքելը միայն աւելի անպա-
տիւ պիտի ընէ Հռովմայ Եկեղեցին, ու ամէն կողմերէ ա-
ղաղակ մը պիտի յարուցանէ անոր դէմ ամբաստանելու։
Սրբազնասուրբ Հայր, առաջի Աստուծոյ և բոլոր աշխար-
հի յայտնի կը խոստովանիմ, որ ես բնաւ չխնդրեցի և ոչ
երբէք կը խնդրեմ բռնութեամբ կամ ճարտարութեամբ
տկարացընել Հռովմէական Եկեղեցիին կամ ձեր Սրբու-
թեան իշխանութիւնը։ Կը խոստովանիմ թէ ոչ երկինքը
ու ոչ երկրի վրայ բան մը կայ որ աս Եկեղեցիէն նախա-
պատիւ պիտի ընտրուի, բայց միայն Յիսուս Քրիստոս ա-
մենեցուն Տէրը" *։

Աս խօսքերը կերևան օտար՝ և մինչև անգամ պարսաւելի
Լուտերի բերանը, թէ որ չյիշեմք թէ լոյսը յանկարծ
չծագեց իր վրայ՝ այլ առ սակաւ սակաւ, և աստիճան քան
զաստիճան։ Աս խօսքերը վկայ են ան երևելի ճշմարտու-
թեան, թէ Բարեկարգութիւնը սոսկապէս պապականու-
թեան ընդդիմութիւն մը չէր։ Պապին դէմ հակառակիլը
Բարեկարգութեան միայն մէկ երկրորդական նպատակ մըն
էր։ Իր առաջին սկզբունքը կենդանի վարդապետութիւն
մըն էր, "Յիսուս Քրիստոս ամենեցուն Տէրը, ամենուն
նախապատիւը", ու նոյն ինքն Հռովմէն գերազանցը, ինչ-
պէս որ իր նամակին վերջին խօսքերովը նշանակեց։ Ահա

* L. Epp. I. p. 234.

այնպէս էր իրապէս վեշտասաներորդ դարուն ծագած խռովութեան պատճառը ։

Հաւանական է որ աս մեր պատմած ժամանակէն քիչ մը առաջ պապը առանց նկատելու պիտի չանցնէր ան նամակը՝ որուն մէջ Վիդդէմպէրկի միաբանը յայտնապէս ժխտեց Հերքերը ։ Բայց Մաքսիմիլիանոս ոչ ևս ողջ էր ․ կըխնդրուէր թէ ով պիտի յաջորդէր անոր , ու Լուտերի նամակը զանց եղաւ մնաց քաղաքական խառնակութեանց մէջ որ անատենը կըվրդովէր քահանայապետաց քաղաքը ։

Բարեկարգողը իր ժամանակը գործի դրաւ իր կարող թշնամիէն աւելի օգտակար կերպով մը ։ Մ'ինչդեռ Լեոն Տասներորդ իր աշխարհային շահախնդրութեանցը մէջ ընկղմած ամենայն զօրութեամբ կըջանար կայսերական գահէն զրկել իր ահաւոր սահմանակիցը Կարոլոս Սափօյի թագաւորը , Լուտեր օրըստօրէ գիտութեամբ և հաւատքով կաճէր ։ Պապական վճիռներուն ուսմանը պարապեցաւ , ու իր գտած ծանօթութիւնները մեծապէս կերպաւորեցին իր գաղափարները ։ Սպալատինին գրեց ու ըսաւ ․ "Քահանայապետաց վճիռները կըկարդամ , ու՝ քու ականջիդ կըխօսիմ , չեմ գիտեր թէ պապը նոյն ինքն Նե՞ռն է , եթէ անոր առաքեալը ․ այսպէս ստութեամբ ցուցուած կամ յաւէտ 'ի խաչ հանուած է Քրիստոս անոնց մէջ" * ։

Բայց տակաւին կըյարգէր ինքը Հռովմայ Եկեղեցին , ու ամենևին խորհուրդ մը չունէր անկէց զատուելու ։ "Տարակոյս չկայ , կըսէր ան յայտարարութեան մէջ որ խոստացած էր Միլտիցին հրատարակելու , թէ Հռովմէական Եկեղեցին Աստուծոյ առջևը բոլոր ուրիշ եկեղեցիներէն աւելի պատուեալ է ․ քանզի հոն Սուրբն Պետրոս , Սուրբն Պօղոս , քառասունըվեց պապեր , հազարաւոր մարտիրոսներ իրենց կեանքը դրին յաղթելով դժոխքի և աշխարհի , անանկ որ կրնայ ըսուիլ թէ՝ Աստուծոյ աչքը յատկական

* L. Epp. I, 239.

խնամուլ մը կը հանդչի Հռովմէական Եկեղեցւոյն վրայ ։ Եւ թէպէտ աս օրուան օրս անոր մէջ ամէն բան թշուառ կացութեան մը մէջ է, բայց ասիկայ պատճառ չէ անկէց բաժնուելու ։ Ընդհակառակն իրերը որչափ գէշ երթան, մենք այնչափ պինդ պիտի կենամք հոն. վասն զի չէ թէ մեր անկէց բաժնուելովն է որ կրնամք աղէկցընել զանիկայ ։ Պէտք չէ որ բաժնուինք Աստուծմէ՝ սատանային մէկ գործին համար. ոչ ալ հոն տեղի ամբարիշտներուն բազմութեանը համար դադարինք՝ Հռովմայ փարախին մէջը գտնուած Աստուծոյ որդւոցը հետ ընկերութիւն ընելէն ։ Ոչինչ մեղք՝ ոչինչ չարիք կրնան քակել սիրոյ կապը, կամ անջատել մարմինին միութիւնը ։ Վասն զի սէրը ամէն բան կրնայ ընել. ու բան մը դժուարին չէ անոնց որ միացեալ են" ։

Ուրեմն չէ թէ Լուտեր էր որ ինքզինքը բաժնեց Հռովմէն, այլ Հռովմ զինքը բաժնեց Լուտերէն. ու ասանկ ընելով մերկացաւ իրմէ Ուղղափառ Եկեղեցւոյ վաղեմի հաւատքը, որուն ախոյեանն էր անատենը Լուտեր ։ Չէ թէ Լուտեր էր որ Հռովմայ իշխանութիւնը անոր ձեռքէն առաւ՝ ու անոր եպիսկոպոսը պարտաւորեց իջնալ ան աթոռէն որ բռնութեամբ յափշտակուած էր, այլ միայն իր քարոզած վարդապետութիւնները՝ Աստուծոյ ազդու և յայտնի կերպով Եկեղեցւոյ մէջ վերստին յայտնած առաքելոց պատգամները զօրութիւն ստացան կործանել աթոռէն ան բռնակալը՝ որ դարերէն 'ի վեր գերի վարեր էր Եկեղեցին ։

Լուտերի աս յայտարարութիւնները որ փետրուար ամսուն վերջերը հրատարակուեցան, կատարելապէս չհաճեցուցին Միլտիցը ու Տը Վիօն ։ Աս անգղերուն երկուքն ալ տեսնալով իրենց որսին իրենցմէ փախչիլը, հին Թրէվէսի պարսպին մէջ առանձնացեր էին ։ Հոն՝ կայսրընտիր արքեպիսկոպոսին օգնութեամբը կըյուսային թէ իրենց միաբանութեամբը պիտի կատարէին ան խորհուրդը, որն որ

իւրաքանչիւրը առանձին չէին կրցեր կատարելու: Կուրի-րակներուն երկուքն ալ յայտնապէս կըտեսնէին թէ բան մը չէր յուսացուէր Փրիդերիկոսէ, որ գերագոյն զօրութեամբ զարդարուած էր հիմա: Կըտեսնէին թէ Լուտեր հաստատութեամբ կըմերժէր հերքելը. յաջողութեան մի միայն ճարն էր միաբանը կայսրընտրին պաշտպանութեան տակէն հանել, և անատենը իրենց ձեռքը անցընել զանիկայ: Անգամ մը թող մտնէր Թրէվէս Լուտեր՝ Եկեղեցւոյ մէկ իշխանին նուազանդեալ սահմանին մէջ, ու ալ մէկ ճարտարութիւն մը չէր զատէր զինքը անկէց մինչև որ կատարելապէս լցունէր քահանայապետին պահանջմունքները: Վասն որոյ իրենց աս խորհուրդը 'ի գործ դրին առանց յապաղելու, ու Միլտից Թրէվէսի կայսրընտիր արքեպիսկոպոսին ըսաւ. "Լուտեր ձեր Շնորհափայլութեան դատաւորութիւնը ընդունեց, վասն որոյ կըխնդրեմք որ զանիկայ ձեր առջևը կանչէք": Այսպէս Թրէվէսի կայսրընտիր արքեպիսկոպոսը Մայիսի 3ին Սաքսոնիայի կայսրընտրին գրեց, խնդրելով անկէց որ Լուտերը իրեն խրկէ: Նոյն ատենը Տը Վիօ՝ և անմիջապէս անոր ետևէն ինքը Միլտից՝ գրեցին Փրիդերիկոսի, աւետիս տալ անոր թէ Ոսկի Վարդը Աւկզպուրկ հասած Ֆուգէրներուն յանձնուէր է: Մտածեցին թէ զօրաւոր հարուած մը տալու վայրկեանը եկած հասած է:

Բայց իրերը փոխուած էին. ոչ Փրիդերիկոս և ոչ Լուտեր շարժեցաւ իր վստահութենէն: Կայսրընտիրը իր նոր վիճակը կըճանչնար, ու ոչ ևս կըվախնար պապէն՝ թող թէ անոր գործակալներէն: Իսկ Բարեկարգողը տեսնելով Միլտիցի ու Տը Վիօի միաբանիլը, զգաց թէ ինչ պիտի պատահի իրեն թէ որ անոնց հրաւէրքը ընդունի: "Ամէն կողմանէ, ըսաւ, որոգայթ լարուած է իմ անձիս": Անաւանդ որ ինքը պապին բողոքեր էր, ու պապը՝ Թագապսակ գլուխներուն հետ բազմակնճիռ գործերով զբաղած. անոր բողոքին պատասխան չէր տուեր: Լուտեր գրեց Միլտիցի ու ըսաւ. "Ինչպէս կրնամ Հռովմէն հրաման

չառած ճամբայ ելլել աս խռովայոյզ ժամանակներուս ։ Ինչպէս կրնամ ինքզինքս այնչափ վտանգներու ու այնպիսի ծանր ծախքերու տակ ձգել իմ աղքատութիւնովս" ։

Գամք որ Մրէվէսի կայսրընտիր եպիսկոպոսը խոհեմ և զգաստ մարդ մը՝ ու Փրիդերիկոսի հետ սերտ բարեկամութեամբ կապուած ըլլալով, միտքը դրաւ որ իր բարեկամին օգուտը հոգայ ։ Ասկէց զատ կամք չունէր աս բանին միջամուխ ըլլալու թէ որ հաստատութեամբ չպահանջուէր իրմէն ։ Վասն որոյ Սաքսոնիայի կայսրընտրին հետ միաբանեցաւ որ տէրութեան իշխանաց ժողովին ձգուի քննութիւնը, ու մինչև երկու տարի անցնիլը աս ժողովը չգումարեցաւ ։

Մինչդեռ Լուտերը զարհուրեցընող վտանգները նախախնամական ձեռքով մը այսպէս տեղի տուին, ինքը արիութեամբ կըյառաջանար մէկ վախճանի մը որ չէր իմանար ։ Իր համբաւը կըշատնար, ճշմարտութեան փաստը զօրութիւն կըստանար, Վիդդեմպերկի մէջ աշակերտաց թիւը կըբազմանար, ու անոնց մէջ Գերմանիայի խիստ երևելի պատանիները կըգտնուէին ։ "Մեր քաղաքը, գրեց Լուտեր, հազիւ կրնայ պարունակել եկողներուն բազմութիւնը" ։ Եւ ուրիշ անգամ մը ըսաւ․ "Աշակերտները յորդահոս գետի նման կըյորդեն մեր վրայ" * ։

Բայց արդէն Բարեկարգողին ձայնը Գերմանիայի սահմաններէն դուրս լսուած էր․ տէրութեան սահմանագլուխներէն անցնելով՝ սկսեր էր Քրիստոնէից զանազան ազգերուն մէջ զօրացած Հռովմէական զօրութեան հիմունքները շարժել ։ Ֆռոպէնիոս Պազէլի հռչակաւոր տպագրիչը Լուտերի գրութիւններուն հաւաքումը հրատարակեր էր, որոնք արագօրէն տարածեցան․ անոնցմէ 600 օրինակ խըրկեր էր Գաղղիա ու Սպանիա ։ Փարիզու մէջ յայտնի կը ծախուէին անոնք, ու Անգղիայի մէջ ալ մեծագոյն փա-

* L. Epp. I. p. 278, 279.

փաքով կընդունուէին աս գիրքերը ։ Սպանիացի վաճառականներ իրենց լեզուին թարգմանել տուին զանոնք, ու իրենց երկիրը խրկեցին ։

Կալվի՝ փավիացի ուսումնական գրավաճառ մը բազմաթիւ օրինակներ տարաւ Իտալիա, ու բոլոր քաղաքներուն մէջ տարածեց զանոնք ։ Չէ թէ շահասիրութեան փափաքը աս գիտնական անձը դրդեց անոնք տարածելու, այլ Աստուծոյ սիրոյն կենդանութեանը նպաստամատոյց ըլլալու բաղձանքը ։ Ան զօրութիւնը՝ որով Լուտեր Քրիստոսի փաստը կըպաշտպանէր, ուրախութեամբ լցուց զանիկայ ։ "Իտալիայի բոլոր գիտնականները, գրեց ինքը, ինծի հետ պիտի միաբանին, ու պիտի խրկեմք ձեզի հարկատու քերթուածներ մեր ամենընտիր քերթողներէն" ։

Ֆրոպէնիոս իր տպագրութեան մէկ օրինակը Լուտերի խրկելուն աս ուրախարար լուրերը պատմեց անոր, ու այսպէս յառաջ տարաւ իր խօսքը ․ "Բոլոր տպագրութիւնը ծախեցի, միայն տասը օրինակ մնաց․ և ոչ երբէք մէկ առուտուր մը այնչափ շահաւոր եղաւ ինծի որչափ որ աս" ։ Ուրիշ նամակներ ալ կիմացընէին Լուտերին իր գրութիւններուն տարածած ուրախութիւնը ։ "Ուրախ եմ, գրեց ինքը, որ ճշմարտութիւնը այսչափ ընդունելի կըլլայ, թէպէտ և սակաւ իմաստութեամբ ու թոթովախօս լեզուով քարոզուեցաւ" ։

Այսպիսի էր լուսաւորութեան սկզբնաւորութիւնը Եւրոպայի զանազան երկիրներուն մէջ ։ Ան նոյն վայրկեանին երբոր Հռովմայ քահանայապետը կըմտածէր Գերմանիայի մէջ խափանել գործը, անիկայ սկսեց ինքզինքը յայտնել Գաղղիայի՝ Ստորին Գաւառներուն՝ Իտալիայի՝ Սպանիայի՝ Անգղիայի և Զուիցերիի մէջ ։ Հռովմայ կարողութիւնը թէև կտրէ նախնական ցօղունը, . . . սերմերը բոլոր երկիրներու մէջ սփռած են այսուհետև ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ՄԻՆՉԴԵՌ պատերազմը Տէրութեան սահմաններուն դուրսը սկսելու վրայ էր , ներսը 'ի կախ մնացած կերևար ։ Հռովմայ խռովայոյզ դաշնակիցները՝ Յուտերբոքի Ֆրանչիսկեան միաբանները . որ անխոհեմութեամբ յարձակեր էին Լուտերի վրայ , Նարեկարգողին սաստիկ պատասխանը ընդունելնէն ետև լռութեամբ ետ քաշուեր էին ։ Պապին մէկալ կուսակիցները ձայն չէին հաներ , ու Տէցէլ ևս ասպարէզին մէջ չէր գտնուէր ։ Լուտերի բարեկամները աղաչեր էին իրեն դադարիլ այլ ևս վիճելէն , ու ինքը խոստացեր էր այնպէս ընել ։ Նախադասութիւնները մոռացութեան երթալ սկսեր էին . աս կեղծ խաղաղութիւնը Նարեկարգողին պերճաբանութիւնը տկարացուց ձգեց . ու Նարեկարգութիւնը իր ընթացքին մէջ արգելուած թուեցաւ ։ "Բայց մարդիկ անօգուտ գաղափարներ կըկազմէին՝ կըսէ Լուտեր աս միջոցիս վրայ ետքը խօսելուն , վասն զի Տէրը արթնցեր էր ազգերուն մէջ դատաստան ընելու" ։ Ուրիշ տեղ կըսէ , "Աստուած չէր առաջնորդեր՝ այլ կըմղէր ու յառաջ կըվարէր զիս ։ Իմ գործերուս տէրը ես չէի . ուրախութեամբ կուզէի խաղաղ ապրելու , բայց աղմուկի ու փոփոխութեան մէջ ձգուեցայ" * ։

Էք՝ դպրոցական վարդապետը՝ Կոթողներուն հեղինակը ու Լուտերի նախկին բարեկամը , առաջ ինքը ելաւ վերստին սկսիլ պատերազմը ։ Ասիկայ 'ի բոլոր սրտէ յարեալ էր պապականութեան . բայց կըթուի թէ սրտանց օտար էր կրօնքին , ու ամէն դարի մէջ միշտ բազմաթիւ եղող ան կարգի մարդոցմէն էր , որ գիտութիւնը՝ և մինչև անգամ աստուածաբանութիւնը ու կրօնքը աշխարհի մէջ իրենց յառաջադէմ ըլլալու միջոցներ կըհամարին ։ Սնափառութիւնը հաւասարապէս կըբնակի և՛ եկեղեցականին վերարկուին տակը , և՛ պատերազմականին զրահին տակը ։ Էք՝

* L. Epp. I. 231.

յանձնապաստանութեամբ լցուած , ու իր կուսակիցներուն բազմութեամբը՝ և Հունկարիայի Լոմպարտիայի ու Գերմանիայի ութը համալսարաններէն ստացած յաղթանակներովը հպարտացած՝ մեծափափաք իղձով մէկ առթի մը կըբաղձար Լուտերի դէմ իր կարողութիւնը և իր ճարտարութիւնը ցուցընելու ։ Նուաստ միաբանը՝ որ յանկարծ իմ հսկայ դարձաւ , աս Լուտերը՝ որ մինչև հիմա չկրցաւ մէկը խոնարհեցընել , իր հպարտութեանը դպաւ , և իր նախանձութիւնը շարժեց * ։ Տեսնենք թէ ինչ մասնաւոր դիպուած էր ան որ Ինկոլստադի վարժապետին բաղձացած պատեհութիւնը իրեն շնորհեց իր հակառակորդին հետ ասպարէզը ելլելու ։

Նախանձաւոր բայց տարապայման եռանդուն Կարլստադ տակաւին Լուտերի հետ հաղորդակցութիւն ունէր ․ ասոնք յատկապէս կապակցեալ էին ևս շնորհաց վարդապետութեան վրայ իրենց սիրովը , ու սրբոյն Օգոստինոսի գրութեանց վրայ իրենց զմայլմամբը ։ Ատաւրուն բնաւորութեան ու նուազ ընտրողութեան տէր ըլլալով , Կարլստադ ան մարդը չէր որ Մ՝իլտիցի ճարտարութեամբը ու խորագիտութեամբը սանձահարուէր ։ Էքին Կոթողներուն դէմ քանի մը նախադասութիւններ հրատարակեր էր , որոնց մէջ յայտնի ցուցըցեր էր Լուտերի գաղափարները ու իրենց միօրինակ ընդունած հաւատքը ։ Էք պատասխան տուեր էր անոր , ու Կարլստադ ալ անոր խօսքին տակը չէր մնացեր ։ Ասանկով ասոնց վիճաբանութիւնը բորբոքեր էր ․ Էք՝ միշտ անանկ պատեհութիւն փընտըռելով հակաճառութեան կոչեց զԿարլստադ , ու բարկասիրտն Կարլստադ անոր կոչումը ընդունեց ։ Այսպէս Աստուած աս երկու մարդոց բորբոքեալ կիրքերը գործի դրաւ իր խորհուրդները կատարելու ։ Լուտեր աս վիճաբանութիւններուն մէջ մաս չունէր , և սակայն սահ-

* Pallavicini, Tom. 1, p. 55.

մանուած էր որ ինքը կռուին ախոյեանը ըլլայ։ Կան մարդիկ՝ որոնք դիպուածին հարկաւորութեամբը տեսարանին մէջ միշտ անոնք յառաջ կըբերուին։ Որոշուեր էր որ Լիփսիա ըլլար վիճաբանութեան տեսարանը։ Ահա ասիկայ է Լիփսիայի վիճաբանութեան սկզբնաւորութիւնը, որ այնչափ համբաւաւոր եղաւ ետքը։

Արդարև Էք պզտի բան համարեցաւ վիճաբանութիւնը Կարլստադի հետ վարելը. ինչու որ իր դիտաւորութիւնը Լուտերը նուաճելն էր։ Վասն որոյ ամէն միջոցները գործի դնելով նայեցաւ որ դրդէ զանիկայ ասպարէզը ելլելու, ու աս դիտաւորութեամբս տասներեք նախադասութիւններ հրատարակեց, որոնք այնպէս գրած էր որ ուղղակի Բարեկարգողին գլխաւոր վարդապետութեանցը կընայէին։

Երեքտասաներորդը այսպէս գրուած էր. «Մենք կուրանամք հռովմէական եկեղեցւոյն ամէն եկեղեցիներուն գլուխ չըլլալը Սեղբեստրոս պապին ժամանակէն առաջ. և իբրև յաջորդ Պետրոսի և փոխանորդ Յիսուս Քրիստոսի կըճանչնամք ամէն ատեն զանիկայ որ սրբոյն Պետրոսի աթոռը կընստի անոր հաւատքը ունենալով»։ Սեղբեստրոս մեծին Կոստանդիանոսի ժամանակակից էր. ուրեմն աս նախադասութեամբը Էք չէր ընդունէր որ Հռովմայի նախագահութիւնը աս կայսրէն տրուած ըլլայ։

Լուտեր՝ որ դժկամակութեամբ յանձնառու եղեր էր լուռ կենալ, աս նախադասութիւնները կարդալուն մեծապէս շարժեցաւ։ Տեսաւ որ անոնք իրեն ուղղեալ էին, ու զգաց թէ չէր կրնար հրաժարիլ պատերազմի հրաւէրքէն առանց իր վրայ անարգութիւն բերելու։ «Աս մարդը, ըսաւ, կըսէ թէ իր հակառակորդը Կարլստադն է, ու նոյն ատենը իմ վրաս կըյարձակի։ Բայց Աստուած կըթագաւորէ. ինքը գիտէ թէ ինչ պիտի յառաջ բերէ աս դիպուածէն։ Ոչինչ փոյթ է թէ աս գործը ինչպէս պիտի վերջանայ թէ Էք վարժապետին համար թէ ինծի համար. քանզի Աստուծոյ խորհուրդը պէտք է որ կատարուի։ Շնորհակալու-

թիւն Ինքին, աւելկայ՝ որ մինչեւ հիմայ ոչինչ համարուած բան մըն էր, 'ի վերջոյ երեւելի բան մը պիտի ըլլայ, ու Հռովմայ եւ անոր քահանայապետին բռնակալութեանը մահաբեր հարուած մը պիտի տայ" :

Պատերազմին առ ժամանակ մը դադարելու պայմանը Հռովմ ինքը խափաներ էր. մանաւանդ թէ վերստին պատերազմի նշան տալով կռիւը ուրիշ կողմ մը փոխադրուեր էր, ուր որ Լուտեր տակաւին ուղղակի դիմած չէր: Ինք իր հակառակորդներուն ուշադրութիւնը Հռովմայ գլխաւորութեանը վրայ դարձուցեր էր. ասով Տեցելի վնասակար օրինակին հետեւեցաւ*: Հռովմ ինքը հրաւիրեց հարուածը. եւ թէ որ վերջը իր կրած կոտորածին նշանները ձգեց դաշտին վրայ, ստոյգ է որ ինքը գրգռեր էր ան ահաւոր մարտը:

Պապին գլխաւորութիւնը անգամ մը տակնուվրայ որ ըլլար, ինչ որ Հռովմ անոր վրայ շիներ էր հարկաւ յերկիր պիտի կործանէր: Աս պատճառաւս պապականութիւնը վտանգի մէջ էր, եւ սակայն ոչ Միլտից եւ ոչ Կայետանոս ջանացին խափանել աս նոր վէճը: Արդեօք Բարեկարգութիւնը յաղթուած կըկարծէին. կամ թէ արդեօք կուրութեամբ զարնուած էին որ շատ անգամ զօրաւորները կը պատրէ իրենց կործանմանը համար:

Լուտեր որ այնչափ ատեն լռելովը՝ չափաւորութեան սքանչելի օրինակ մը ցուցուցեր էր, համարձակութեամբ ընդունեց իր նոր հակառակորդին պատերազմի հրաւէրքը: Ինքին նախադասութիւններուն պատասխան՝ նոր նախադասութիւններ հրատարակեց: Վերջինը աս արժանալուր խօսքերովը գրուած էր. "Հռովմէական քահանայապետներուն ողորմելի կոնդակներովը՝ որոնք չորս հարիւր տարի չկայ գրուած են, Հռովմայ եկեղեցւոյն գլխաւորութիւնը կապացուցանեն. բայց աս գլխաւորութիւնը

* Տե՛ս Երե՛ս 158 :

ունի իրեն դէմ հազար հարիւր տարուան արժանահաւատ պատմութիւնը, սուրբ Գրոց վճիռները, և եզրակացութիւնը Նիկիոյ ժողովոյն որ բոլոր ժողովներէն աւելի սուրբն է *։

Նոյն ատենը Լուտեր այսպէս գրեց Սպայըրնտրին. «Գիտէ Աստուած որ իմ հաստատ դիտաւորութիւնս էր լռութիւն պահել, և որ կուրախանայի տեսնել թէ վիճաբանութիւնը վերջացաւ։ Այնպէս զգոյշ էի պապին գործակալին հետ վճռուած պայմանին վրայ հաստատ մնալու, որ՝ պատասխան չտուի Սեղբեստրոս Պրիէրիասի, թէ և իմ թշնամիներս զիս կընախատէին ու իմ բարեկամներս զիս կըյորդորէին։ Բայց հիմա Էքը կըյարձակի իմ վրաս, և ոչ միայն իմ վրաս, այլ Վիդդէմպէրկի բովանդակ համալսարանին վրայ։ Չեմ կրնար ձգել որ ճշմարտութիւնը այսպէս խայտառակութեան ենթակայ ըլլայ»։

Լուտեր նոյն ատենը գրեց և Կարլստադի. «Արժանապատիւ Անդրէաս, չեմ ուզեր որ դուն աս վիճաբանութեանս մէջ մտնես, որովհետև յարձակումը իրօք ինծի ուղղուած է։ Ուրախութեամբ սրտի մէկ դի կըդնեմ իմ կարևոր ուսմունքներս, որ Հռովմայ քահանայապետը շողքորթողներուն հետ իմ անձս զուարճացընեմ»։

Լուտերի բարեկամներուն ամէնը իր արիութեանը մասնակցութիւն չունէին, վասն զի մինչև հիմայ մէկը չէր կըրցեր Էքին իմաստակութեանցը դէմ դնել։ Բայց իրենց շփոթութեան գլխաւոր պատճառն էր՝ վիճաբանելու առաջարկուած նիւթին վրայ, ո՛ր՝ պապին գլխաւորութեանը։ Վիդդէմպէրկի նուաստ միաբանը ինչպէս կրնայ դէմ ելլել ան հսկային՝ որ բազմաթիւ դարերէն հետէ իր բոլոր թշնամիները ընկճեր ու նուաճեր է։ Միայն Լուտեր չէր վախնար, ու իր սրտին մէջ կըսէր. «Տէրը իմ ձեռքս պիտի մատնէ զանիկայ»։ Իր ունեցած հաւատքը իր բարե-

* L. Opp. (L.) XVII. p. 245.

կամներուն քաջալերութիւն կըմատուցանէր ։ "Սիրելի Սպալատին, կաղաչեմ քեզի, ըսաւ, տեղի մի տար երկիւղի ։ Աղէկ գիտես որ եթէ Քրիստոս մեր կողմը չըլլար, մինչև հիմա իմ ըրածներս իմ կործանումս փաղփաղած պիտի ըլլային ։ Ո՛վ սիրելի Սպալատին, կարող չէ ճշմարտութիւնը խօսիլ Սուրբ Գրոց ու Եկեղեցւոյ վրայ՝ առանց գրգռելու զգաղանը ։ Մի՛ յուսար զիս հանգիստ տեսնելու մինչև որ մէկ դի չդնեմ Աստուածային բաներուն ուսմանը պարապիլը ։ Թէ որ աս բանը Աստուծմէ է, պիտի չկատարուի ան մինչև իմ բոլոր բարեկամներուս զիս ձգելը, ինչպէս որ Քրիստոսի բոլոր աշակերտները ձգեցին զինքը ։ Ճշմարտութիւնը առանց օգնութեան պիտի կանգնի՝ ու պիտի յաղթէ իր ձեռքովը, և ոչ թէ իմ կամ քու կամ ուրիշ մարդու մը ձեռքովը * ։ Թէ որ ես կորնչիմ, աշխարհ իմ հետս չկորնչիր . բայց՝ վա՛յ թշուառականիս, կըվախնամ որ արժանի չեմ այսպիսի փաստի մը համար մեռնելու" ։

Լուտեր նամակ նամակի վրայ գրեց Գէորգ դուքսին՝ † որուն սահմաններուն մէջ կիյնար Լիփսիա, որ հրաման տայ իրեն հոն երթալու ու վիճաբանութեան մէջ խառնուելու . բայց ոչինչ պատասխան ընդունեց անկէց ։ Ասիկայ՝ Բոտիպրատոս՝ ‡ Բոյեմիացի թագաւորին թոռը պապին իշխանութեանը վրայով Լուտերի նախադասութենէն չփոթելով, ու վախնալով որ չըլլայ թէ Սաքսոնիա տե-

* L. Epp. I. 261. † L. Epp. I. 282.

‡ Գէորգ Բոտիպրատոս՝ որ 1458ին Լատիսլաւի մահուանը վրայ հրաւիրեցաւ Բոյեմիացիներէն թագաւորական թագին, Սաքսոնիայի Գէորգ դուքսին մեծ հայրն էր մօրը կողմանէ ։ Ասիկայ Յովհաննէս Հուսի հետեւողները պաշտպանելուն համար, Բ Պօղոս պապը 1466ին բանադրեց զինքը . և մինչև անգամ հրատարակեց որ անոր հպատակները պատերազմի ելլեն անոր դէմ կրօնքը պաշտպանելու համար . ասկէց շատերը գրգռուեցան զէնք վերցունել անոր դէմ, բայց յատուկ գլուխ մը չունենալովնին, վերջապէս յաղթուեցան ։ Ասոր թոռը Գէորգ դուքսը Սաքսոնիայի, Լուտերի ժամանակը, յառաջագոյն զգալով թէ գուցէ իրեն ալ սանկ չարիքներ պատահին, չէր ուզեր որ իր վրայ կասկած ըլլայ թէ Լուտերի փառքը կը պաշտպանէ, մանաւանդ որ չէր հաւնէր անոր վարդապետութեանը ։

սարան ըլլայ նոյնօրինակ պատերազմներու որոնք հարուստ ժամանակաց հետէ քանդեր կործաներ էին զԲոյեմիա , առաջարկեց հաճութիւն չտալ Լուտերի խնդրոյն ։ Ասոր վրայ Լուտեր որոշեց որ իր երեքտասաններորդ նախադասութեանը վրայ մեկնութիւն մը հրատարակէ . բայց աս գրուածքը Գէորգ դուքսը չհամոզելէն զատ իր առաջադրութեանը վրայ հաստատեց ալ զանիկայ . ուստի յայտնապէս արգիլեց Բարեկարգողին վիճաբանութեան մէջ մտնելը, թոյլ տալով միայն ներկայ գտնուիլ հոն իբրև 'ի զննին կեցող մէկը ։ Լուտեր մեծապէս տրտմեցաւ . բայց և այնպէս իր փափաքը Աստուծոյ առաջնորդութեանը հետևիլն էր , ու որոշեց երթալ հոն, տեսնել եղած բաները, ու սպասել Աստուծոյ Նախախնամութեանը ։

Դուքսը միանգամայն և իր բոլոր զօրութիւնովը վիճաբանութիւնը յառաջ կը վարէր Էքին ու Կարլստադին մէջ ։ Գէորգ ջերմեռանդութեամբ յարեալ էր պապական վարդապետութեան, բայց արդար և անկեղծ մարդ էր , ազատօրէն հարցափորձ ընելը կըսիրէր , ու մէկ կարծիք մը միայն Հռովմայ անհաճոյ ըլլալուն համար՝ հերետիկոսական չէր համարէր ։ Ասկէց զատ՝ կայսրընտիրն ալ ստիպէր էր իր եղբօրորդւոյն աս բանին ըլլալուն համար , ուստի Գէորգ Փրիդերիկոսի խօսքովը համարձակութիւն առնելով հրաման ըրաւ որ վիճաբանութիւնը բացուի ։

Մէռզէպուրկի եպիսկոպոսը Ադոլֆոս՝ որուն թեմն էր Լիփսիա , Մէլտիցէն ու Կայետանոսէն աւելի պայծառ կը տեսնէր թէ այսպիսի կարևոր խնդիրները առանձին վիճաբանութեան մը ենթակայ ընելը վտանգաւոր բան էր ։ Հռովմ իր բազմաթիւ դարերու ստացուածքը դիւրաւ չէր կրնար այսպիսի վտանգի մը տակ ձգել ։ Լիփսիայի բոլոր աստուածաբանները նոյն երկիւղովը բռնուած՝ աղաչեցին իրենց եպիսկոպոսին որ միջամուխ ըլլայ ու արգիլէ ան վիճաբանութիւնը , վասն որոյ Ադոլֆոս փութաջան խնամով ջանաց Գէորգ դուքսը իր խորհուրդէն դարձընել ,

բայց ան քաջադէպ իմաստութեամբ պատասխան տուաւ և ըսաւ. “Կըսքանչանամ որ կը գտնեմ եպիսկոպոս մը՝ որ Հաւատոյ նիւթերուն մէջ տարակուսելի խնդիրները քըննելու մեր հայրերուն հին և գովանի սովորութիւնը կարհամարհէ : Խնէ որ ձեր աստուածաբանները իրենց վարդապետութիւնը պաշտպանելու կը դժկամակին, անոնց տրուած ստակը լաւագոյն է պառաւ կանանց ու տղոց տրուիլ, որոնք գէթ կրնան կար կարել ու երգել” * :

Աս նամակը քիչ ներգործութիւն ըրաւ եպիսկոպոսին ու իր աստուածաբաններուն վրայ : Վարդապետները ու քահանաները իրենց ամպիոններէն կաղաչէին ժողովրդոց հեռի կենալ նոր հերետիկոսներէն. կըթշնամանէին զԼուտեր՝ ամենամթին գոյներով նկարագրելով զինքը ու իր բարեկամները, Բարեկարգութեան վարդապետներուն դէմ յարուցանելու ռամիկներուն կատաղութիւնը : Նոյն ինքն Տեցել որ դեռ կապրէր, իր առանձնութենէն կըգոչէր և կըսէր. “Բուն ինքը Սատանան է որ աս վիճաբանութիւնը յառաջ կը վարէ” † :

## ՀԱՏՈՒԱԾ Գ

Ան նոյն ատենը որ կայսրընտիրները Ֆրանքֆորթ կըհաւաքուէին Գերմանիայի կայսր մը ընտրելու (Յունիսի մէջ 1519), աստուածաբաններն ալ եկան Լիփսիա ժողվուեցան այնպիսի գործի մը համար որուն դեռ անծանօթ էր աշխարհ, բայց անոր հարկաւորութիւնն ալ նմանապէս շատ մեծ պիտի ըլլար ապագային :

Էք ժամադրեալ տեղին հասնողներուն առաջինը եղաւ : Յունիսի 21ին Լիփսիա մտաւ Պոլիանդէր անուն երիտա-

* Schneider, Lips. Chr. IV. 168.
† Das Walt der Teufel (L. Epp. I. 255.)

սարդի մը ընկերութեամբը, որն որ Ինկոլստադէն իր հետ բերած էր վիճաբանութեան մէջ խօսուածները՝ ի գիր անցընելու, և մեծ պատուով ընդունուեցաւ: Քահանայական զգեստով զարդարուած մեծաշուք հանդէսով քաղաքին փողոցներէն անցաւ Սուրբ Հաղորդութեան տօնին օրը. ժողովուրդը խուռն բազմութեամբ կը հաւաքէին տեսնելու զինքը: "Բոլոր բազմութիւնը ինծի կողմնակից էր, կըսէ ինքը՝ խօսելով ասոր վրայ, բայց շշունչ մը տարածեցաւ քաղաքին մէջ թէ կռիւին մէջը պիտի յաղթուիմ":

Տօնին հետևեալ օրը որ էր Ուրբաթ՝ Յունիսի 24ին՝ և սրբոյն Յովհաննու տօնախմբութեանը, Վիտէմպէրկէն եկողները Լիփսիա մտան: Կարլստադ՝ որ Էքին հետ պիտի վիճաբանէր, առանձին իր սայլին մէջ մեկալներուն առջևէն կերթար: Պառնիմոս՝ Բոմերանիայի դուքսը՝ որ այն միջոցին Վիտէմպէրկի մէջ ուսման կը պարապէր, ու համալսարանին վերակացու ընտրուած էր, Կարլստադին ետևէն կուգար բաց կառքի մը մէջ. իր քովը նստած էին երկու անուանի աստուածաբանները՝ Բարեկարգութեան հայրերը, Մելանքթոն և Լուտեր: Մելանքթոն իր բարեկամէն բաժնուիլ չէր կամեցեր. Լուտեր ալ աղաչեր էր իր սիրելոյն որ իր հետը ընկերանայ:

Յովհաննէս Լանժ Օգոստինեանց մեծաւորը, քանի մը իրաւագէտներ, քանի մը արհեստից վարժապետներ, աստուածաբանութեան երկու փոքր դասատուներ և ուրիշ եկեղեցականներ, որոնց մէջն էր և Նիկողայոս Ամսդորֆ, կը վերջացընէին աս հանդէսը: Ամսդորֆ՝ որ Սաքսոնիայի երևելի ազգատոհմէ մը սերեալ էր, հրաժարելով այն փառաւոր ընթացքէն առ որ կը կոչէր իր ծնունդին ազնուութիւնը, ինքզինքը աստուածաբանական ուսման տուած էր: Ներողութեանց վրայ գրուած նախադասութիւնները առաջնորդեր էին իրեն ճշմարտութեան ծանօթանալու, ու անմիջապէս արիաբար յայտներ էր իր հաւատոյն դաւանութիւնը: Զօրաւոր մնաց և եռանդուն բնաւորութեան

տէր ըլլալով, Ամստորֆ յառաջ կըվարէր զԼուտեր, որ արդէն բնութեամբ դիւրապատրաստ էր խիթալի գործերու ։ Բարձրագոյն աստիճանի ծնունդ ըլլալով բարձր աստիճաններէն երկիւղ չէր կրէր, ու մեծամեծաց հետ խօսելուն երբեմն այնպէս ազատօրէն կըխօսէր որ բրտութեան կըմօտենար ։ "Յիսուս Քրիստոսի աւետարանը, ըսաւ ազնուական ժողովի մը ներկայութեանը, աղքատներուն և նեղեալներունն է, և ոչ ձեզի պէս դուքսերուն՝ տէրերուն և պալատականներուն որ հեշտութեան ու վայելչութեան մէջ կապրիք" * ։

Բայց սակայն չէր Վիդդէմպէրկէն եկողներուն բովանդակ դասը ։ Աշակերտաց բազմութենէն մեծ խումբ մը ընկերացաւ իրենց վարժապետներուն ։ Ինք կըհաստատէ թէ երկու հարիւր հոգի էին ասոնք. Նիզակներով զինուորուած կըծառայէին վարժապետներուն իրենց ճամբուն մէջ, առաջադրէր էին զանոնք պաշտպանել, ու կըպերճանային իրենց փաստին վրայ ։

Աս կարգով Լիփսիա հասաւ Բարեկարգողներուն հանդէսը ։ Կարլստադի սայլին մէկ անիւը կոտրեցաւ երբոր նոր անցեր էր Գրիմմայի դռնէն ու ժամաներ էր սրբոյն Պօղոսի գերեզմանատունը ։ Աւագ սարկաւագը՝ † որուն փառասիրութիւնը կըհեշտանար այսպիսի վսեմ հանդէսով քաղաքը մտնելուն, տղմին մէջ ինկաւ. և թէպէտ իր անձին վնաս մը չեղաւ, բայց պարտաւորեցաւ հետի յառաջ երթալ իրեն բնակելու համար պատրաստուած տեղը ։ Լուտերի կառքը որ Կարլստադին ետևէն կուգար, անցաւ զանիկայ՝ ու ողջ և առողջ հասուց զինքը իրեն սահմանուած տեղը ։ Լիփսիայի ժողովուրդը որ հաւաքեր էին տեսնել Վիդդէմպէրկի ախոյեաններուն քաղաքը մտնելը, աս դիպուածը Կարլստադին համար չարագուշակ նշան մըն է ըսին, ու իսկ և իսկ ամենուն մտացը մէջ ազդողապէս տպա-

* Weismann, Hist. Eccl. 1. p. 1444.

† Տես. Երես. 63. տող 19 ։

ւորեցաւ թէ ինքը վիճաբանութեան մէջ պիտի յաղթուի, բայց Լուտեր յաղթող պիտի մնայ պատերազմի ասպարէզին վրայ :

Մըրդ՝ Ադոլֆոս Մերզէպուրկի եպիսկոպոսը անփոյթ չկեցաւ : Լուտերի ու Կարլշտադի մօտաւորութիւնը իմանալուն՝ և անոնց ժամանելէն ալ առաջ եկեղեցիներուն դռները յայտարարութիւններ կախել տուաւ ու բանադրանաց սպառնալիքով կարգիլէր վիճաբանութեան բացուիլը : Գէորգ դուքսը սքանչանալով աս յանդգնութեանը վրայ, քաղաքին ատեանին հրաման ըրաւ որ եպիսկոպոսին հրամանը պատռեն, ու բանտարգեց ան յանձնապաստան միջամուխը որ համարձակեր էր անոր հրամանը կատարելու : Գէորգ անձամբ եկեր էր Լիփսիա. իր բոլոր պալատականները իր հետն էին, որոնց մէջն էր և Հերոնիմոս Էմսէր, որուն հետ Լուտեր բարեյիշատակ գիշեր մը անցուցեր էր 'ի Տրեզտա * : Գէորգ սովորական պարգևները բաշխեց երկու վիճաբանողներուն : "Դուքսը, ըսաւ Էք պարծենալով, գեղեցիկ եղջերու մը ինծի բաշխեց, ու Կարլշտադին միայն այծեամ մը տուաւ" † :

Էք Լուտերի գալուստը լսածին պէս անոր բնակարանը գնաց. "Ի՞նչ է աս, ըսաւ, կլսեմ թէ դուն չես կամիր եղեր իմ հետս վիճաբանիլ" :

Լուտեր. "Ինչպէս կրնամ վիճաբանիլ երբոր դուքսը հրաման չտար ինծի վիճաբանելու" :

Էք. "Թէ որ ես քու հետդ չվիճաբանիմ, շատ քիչ փոյթ կընեմ Կարլշտադի հետ վիճաբանելու : Քեզի համար ես հոս եկած եմ" : Ասոր վրայ մէկ վայրկեան լուռ մնաց, ու վերստին ըսաւ. "Թէ որ ես դուքսէն հրաման առնեմ, դուն կելլե՞ս ատեանը" :

Լուտեր. "Միայն հրաման առ, ու դէմ առ դէմ ելլեմք" :

* Տէս. Էրէս. 80 :
† Seckenodrf p. 190.

Էք վաղվաղակի գնաց դուքսին, ու ջանաց փարատել անոր երկիւղները․ հաւատարմացուց զանիկայ թէ ինքը ապահով է յաղթութիւնը ստանալու, և թէ՝ պապին իշխանութիւնը վիճաբանութենէն վնաս մը չկրելէն զատ՝ առաւել ևս փառաւորուած դուրս պիտի ելլէ անկէց․ "Պէտք է որ, ըսաւ, վիճաբանութիւնը գլխաւոր թշնամիին հետ վարուի։ Վասնզի թէ որ Լուտեր չխոնարհի, ամէն բան դեռ անկատար կը մնայ․ թէ որ անիկայ յաղթուի, ամէն բան վերջացած է"։ Ուստի Գէորք խնդրուած հրամանը շնորհեց։

Դուքսը իր պալատին մէջ որ Փլայսէնպուրկ կը կոչուէր, ընդարձակ սրահ մը պատրաստել տուած էր։ Երկու հատ բարձրկեկ ամպիոններ շինուած էին իրարու դէմ․ սեղաններ դրուած էին վիճաբանութեան խօսքերը 'ի գիր անցունող նօտարներուն համար, և շուրջանակի նստարաններ շարուած էին ունկնդիրներուն համար։ Ամպիոնները ու նստարանները մեծածախ պաստառակալներով զարդարուած էին։ Վիդդէմպէրկի վարժապետին յատկացած ամպիոնին ճակատը սրբոյն Մարտինոսի պատկերը կախուած էր, իսկ միւսին՝ որ Էքին յատկացեալ էր, սրբոյն Գէորգինը։ Գոռոզամիտն Էք աս պատկերին վրայ խորհրդածելով ըսաւ․ "Պիտի տեսնենք թէ ես իմ թշնամիներս սմբակակոխ չե՞մ մի ըներ"։ Ամէն բան մեծաբարբառ կը քարոզէր վիճաբանութեան վսեմութիւնը։

## ՀԱՏՈՒԱԾ Դ.

ՅՈՒՆԻՍԻ 27երորդ օրը վիճաբանութիւնը սկսելու համար հաստատուած օրն էր։ Առաւօտուն կանուխ համալսարանին մեծ դպրոցին մէջ ժողով մը գումարեցաւ՝ ու անկէց բոլոր ընկերութիւնը թափորով գացին սրբոյն Թովմասի

եկեղեցին , ուր որ Հանդիսաւոր պատարագ եղաւ դուքսին Հրամանովը ու ծախքովը : Ետև ժամերգութեան բոլոր ժողովը Թափորով գացին դուքսին պալատը : Հանդէսին առջեւէն կը քալէր Գէորգ դուքսը ու Պոմերանիայի դուքսը . ետեւէն կուգային կոմսերը՝ աբբաները՝ ասպետները և ուրիշ աստիճանաւորները , և վերջապէս երկու կողմի վարժապետները : Պահապանաց գունդ մը եօթանասունուվեց քաղաքացիէ բաղկացեալ՝ նիզակներով զինուորուած՝ անոնց ընթացքին կընկերանային , դրօշակներով և պատերազմական նուագարաններով , մինչև պալատին դռները :

Երբոր Թափորը պալատը մտաւ՝ ամէն մէկը իր տեղը նստաւ այն սրահին մէջ ուր որ վիճաբանութիւնը պիտի ըլլար : Գէորգ դուքսը , ու իրեն յաջորդը Յովհաննէս դուքսը , Անհալդի Գէորգ դուքսը տասներկու տարեկան , ու Պոմերանիայի դուքսը իրենց յատկացած աթոռները նստան :

Ատեն Մոսէլլանոս* ամպիոնը ելաւ դուքսին հրամանաւը յիշեցընելու աստուածաբաններուն՝ թէ ինչ ձևով վիճաբանութիւն պիտի ընեն : "Թէ որ կռիւի իյնաք , ըսաւ , ի՞նչ տարբերութիւն պիտի մնայ վիճաբանող աստուածաբանի մը ու անպատկառ մենամարտողի մը մէջ : Աս վիճաբանութեանս մէջ ո՞րն է յաղթութիւնը , բայց եթէ մէկ եղբօր մը մոլորութենէ դառնալը"† :

Ատենաբանութիւնը վերջանալուն Փլայսէնպուրկի սրահներուն մէջ սրբազան նուագարան մը հնչուեցաւ . բոլոր ժողովը ծնկան վրայ եկաւ , ու առ սուրբ Հոգին պաղատելու Veni, Sancte Spiritus! (Եկ Հոգիդ Սուրբ) հին օրհնաբանութիւնը երգուեցաւ : Բարեկարգութեան պատմութիւնին մէջ վսեմ վայրկեաններ են ասոնք : Երեք անգամ մաղթանքը կրկնուեցաւ . և մինչդեռ աս ազդու երգը շուր-

* Պետրոս Մոսէլլանոս Յունարէնի դասատու էր Լայփցիգի համալսարանին մէջ . աստ Երասմոսին գրած նամակներէն կիմացուի որ ինքը քիչ յոյս ունէր վիճաբանողներուն վրայ . միայն կըզուարճանար անոնց վիճաբանութիւններովը :

† Seckendorf, p. 209.

ջանակի կը լուէր, հին վարդապետութեան պաշտպաննե-րը ու Նորին ախոյեանները, միջին դարերու եկեղեցական-ները ու անոնք որ Առաքելոց Եկեղեցին վերստին հաս-տատել կուզէին, իրենց ճակատները մեծ խոնարհութեամբ մէկ տեղ յերկիր կորացուցեր էին: Միութեան վա-ղեմի կապը աս այլ և այլ մտքերուն ամէնը դեռ մէկ տեղ կապած էր. աս բոլոր շրթունքներէն մի և նոյն աղօթքը կը մատուցուէր, որպէս թէ մէկ սիրտ մըն էր որ զանիկայ կարտաբերէր:

Ասոնք արտաքին և անկենդան միութեան վերջին փայլ-կեաններն էին. Հոգւոյն և կենացնորոգ Միութիւնը սկսե-լու վրայ էր: Եկեղեցիին վրայ Հոգւոյն սրբոյ իջումը խոր-րուեցաւ, և ահա ան՝ Քրիստոնէութիւնը նորոգելու հա-մար իջնալու կըպատրաստուէր:

Աւետարանը և աղօթքը լրանալուն ամէնը իրենց ծուն-կերուն վրայէն ելան կանգնեցան: Վիճաբանութիւնը սկսելու վրայ էր, բայց կէսօրուան զանգակը զարնուելով յետ միջօրէի ժամը՝ երկուքին ձգուեցաւ ան:

Դուքսը իր սեղանը հրաւիրեց ան գլխաւոր անձերը ո-րոնք վիճաբանութեան ներկայ պիտի գտնուէին: Ճաշէն ետև վերստին դարձան բերդը. ՚ի զննին կեցողներուն բազ-մութեամբը լեցուն էր սրահը: Վիճաբանողները անմիջա-պէս իրենց տեղերը բռնեցին. բայց ասոնց արտաքին ե-րևոյթը աղէկ իմացընելու համար աս տեղս ցուցընենք անոնց կենդանագրութիւնը, վիճաբանութեան ներկայ գտնուող անկողմնասէր վկաներուն մէկին ստորագրու-թեամբը:

«Մարտինոս Լուտեր միջահասակ է, ու միշտ ընթերցման պարապելուն համար այնպէս նիհար՝ որ իր ոսկորները դրեթէ կըհամրուին: Ծաղկեալ երիտասարդութեան մէջ է, ու իր ձայնը յստակ և քաջահնչիւն է. Սուրբ Գրոց վրայ իր ունեցած գիտութիւնը և իմացումը անհամեմատ է. Ա-ստուծոյ Բանին բովանդակը իր ձեռքին տակն է: Ասկէց

պատշաճ ճարքներ կը գտնէ զանազան ձեռնարկութիւններ ու գաղափարներ յառաջ բերելու : Միայն թէ գուցէ փափաքելի էր որ աւելի դատողութիւն ունենար ամէն բան իր ուղիղ կարգովը կարգաւորելու : Կենցաղավարութեան մէջ զուարճալի է ու բարեբարոյ, և ոչ երբէք գոռոզ կամ մեծամիտ. ինքզինքը ամենուն կը յարմարէ. իր խօսելու կերպը հաճելի է և խնդալից. շատ հաստատութիւն կը ցուցընէ, ու իր թշնամիները որչափ սպառնան իր վրայ՝ ինքը միշտ գոհ կերևայ. անանկ որ մարդ կը բռնադատուի հաւատալ թէ առանց Աստուածային օգնութեան չէ որ ինքը այնպէս մեծամեծ բաներ կ՚ընէ : Սակայն մեղադրանաց արժանաւորած է որ իր յանդիմանութեանցը մէջ աւելի խիստ է քան որչափ կը վայլէ աստուածաբանի մը, մանաւանդ կրօնքի մէջ նորութիւններ յառաջ բերողի մը'' :

"Կարլստադի հասակը աւելի կարճ է. մութ և արևակէզ գոյն ունի, իր ձայնը անախորժ է, իր յիշողութիւնը Լուտերինին չափ սուր չէ. անկէ շատ բարկութեան հակամէտ է : Ու սակայն՝ թէպէտ և սակաւ ինչ ստորնագոյն՝ նոյն որպիսութիւնները ունի, որոնցմով իր բարեկամը Լուտեր անուանի է'' :

"Էք բարձրահասակ է և թիկնաւէտ. իր ձայնը սուր է և ճշմարտապէս Գերմանացիի ձայն : Առողջ թոքեր ունի, անանկ որ թատրոնի մը մէջ կրնայ աղէկ լսուիլ, և մինչև անգամ խիստ լաւ մունետիկ կ՚ըլլայ. իր արտասանութիւնը աւելի ծանր է քան թէ յստակ : Ֆաբիոսի ու Կիկերոնի այնչափ գոված վայելչութենէն մէկ մաս մը չունի : Իր բերանը՝ աչքերը ու բոլոր դէմքը աւելի զինուորի կամ մսագործի մը գաղափար կու տայ տեսնողին, քան թէ աստուածաբանի : Սքանչելի յիշողութիւն ունի. և թէ որ իր միտքն ալ անոր հաւասար ըլլար, ճշմարտապէս կատարեալ մարդ մը եղած պիտի ըլլար : Բայց իր իմացականութիւնը ծանր է, ու կը կարօտի ան ընտրողութեանը՝ առանց որոյ բոլոր ուրիշ ձիրքերը անպիտան են : Անոր համար վիճա-

բանութեան մէջ Աստուածաշունչէն ու Նախնի Հարց գրուածքներէն բազմաթիւ վկայութիւններ յառաջ կըբերէ՝ ու բազմատեսակ ապացուցութիւններ կընէ առանց զգուշաւոր ընտրութեան կամ ուղիղ դատման : Ասոր վրայ՝ իր լրբութիւնն ալ գրեթէ խելքէ դուրս է. Թէ որ դժուարութեան մը մէջ իյնայ՝ առաջիկայ նիւթէն կը շեղի, ուրիշի ձեռնամուխ կըլլայ, երբեմն նաև իր թշնամւոյն կարծիքը ձեռք կառնէ տարբեր խօսքով, ու սքանչելի եղանակաւ իր հակառակորդին կընծայէ ան նոյն անտեղութիւնը որն որ ինքը կըպաշտպանէր"* :

Ահա այսպէս կըստորագրէ Մոսէլանոս ան մարդիկը՝ որոնք անատենը գրաւեցին Փլայսէնպուրկի սրահին մէջ գունդագունդ հաւաքուած ամբոխին ուշադրութիւնը :

Նախառաջին Էք և Կարլստադ սկսեցին վիճաբանութիւնը :

Էք վայրկեանի մը չափ իր աչքերը ուղղեց քանի մը նիւթերու վրայ՝ որ իր հակառակորդին ամպիոնին մէջի սեղանին վրայ դրուած էին, և որոնք իր աչքերուն անհաճոյ կերևային : Ասոնք էին Աստուածաշունչ գիրքը, ու Եկեղեցւոյ հարց գրուածքները : "Չեմ ուզեր ես աս վիճաբանութեանս մտնել՝ յանկարծ գոչեց Էք, թէ որ դուն գրքեր հետդ բերելու թոյլտուութիւն ունիս" : Զարմանալի բան է, որ մէկ աստուածաբան մը վիճաբանութիւն ընելու համար գրքերու դիմէ : Էքին զարմանքը առաւել ևս զարմանալի էր : "Ասոր բոլորը՝ կըսէ Լուտեր՝ թզենիի տերև մըն է, որով աս Ադամը իր մերկութիւնը կըկամի ծածկել : Ոչ ապաքէն Օգոստինոս Մանիքեցւոց դէմ վիճաբանած ատենը գրքերուն կընայէր" : Բայց աս անոնց փոյթը չէր . Էքին կուսակիցները իրենց աղաղակը կըբարձրացընէին, ու փոխադարձ մեղադրանքներ կըլլային : "Յիշողութիւն չունի աս մարդը", ըսաւ Էք : Վերջապէս Ինկոլստադի ա-

* Mosellanus in Seckend. p. 206.

տէնադպրին կամեցողութեամբը հաստատուեցաւ որ իւրաքանչիւր կողմ իր յիշողութիւնը և իր լեզուն միայն պիտի գործածէ։ «Ուրեմն ասանկով ըսին շատերը, աս վիճաբանութեան վախճանը չէ թէ ճշմարտութիւն խնդրելը պիտի ըլլայ, այլ վիճաբանողներուն ասութեանը և յիշողութեանը գովաբանութիւն ընծայելը»։

Էքին և Կարլստադին մէջ եղած վիճաբանութեան նիւթը երևելի նիւթ մըն էր։ «Մարդկային կամքը իր գործէն առաջ ոչինչ բարի կրնայ գործել. ըսաւ Կարլստադ։ Ամէն բարի գործ բովանդակապէս և բացարձակապէս Աստուծմէ կուգայ, որ կուտայ մարդուն նախ կամք, և ապա զանիկայ կատարելու կարողութիւն»։ Աս ճշմարտութիւնը Սուրբ Գիրքը կը քարոզէ աս խօսքով. «Զի Աստուած է որ յաջողէ 'ի ձեզ զկամելն և զառնելն վասն հաճութեան իւրոյ*», և սուրբն Օգոստինոս՝ որ Պեղագեանց հետ վիճաբանած ատենը գրեթէ նոյն խօսքովը բացայայտեր էր։ Իւրաքանչիւր գործ որ Աստուծոյ սիրովը ու անոր հնազանդութեամբը չկատարուիր, չկրնար անոր աչքը բարի համարուիլ, թէպէտ և ուրիշ եղանակներով մարդուս խիստ ազնիւ շարժառիթներէն յառաջ եկած ըլլայ ան։ Բայց մարդ բնական հակառակութիւն մը ունի Աստուծոյ կամքին, ու կարող չէ յաղթել ասոր։ Իսկ եթէ ոչ կարողութիւն ունի ասիկայ ընելու, և ոչ կամք, ուրեմն պէտք է որ աստուածային կարողութեան գործը ըլլայ աս։

Ահա ասիկայ էր ատենօք եկեղեցւոյ վարդապետութիւնը ազատ կամքին պարզ խնդրոյն վրայով։ Բայց դպրոցականները այնպիսի բացատրութիւն մը տուեր էին անոր՝ որ ալ դժուարաւ կըհասկցուէր։ Քանզի կըսէին անոնք. «Անշուշտ մարդուն բնական կամքը չկրնար երբեք բան մը ընել որ ստուգիւ հաճոյ ըլլայ Աստուծոյ. բայց շատ բան կրնայ ընել որ մարդ աւելի ընդունակութիւն ունենայ Աստուծոյ

* Փիլիպ. Բ. 13։

շնորհքը ընդունելու , և աւելի արժանաւորութիւն զանիկայ ստանալու": Նոնք աս բնական կամքին պատրաստութիւնները՝ Սյսելչութեան Արժանաւորութիւն կանոնաներին . "Որանզի ժողովն է, կըսէր Թովմա Ագուինացին, որ Աստուած բոլորովին մասնաւոր խնամք մը ունենայ այն մարդուն վրայ որ իր յատուկ կամքը բարւոք կըգործածէ": Իսկ դարձին համար՝ որ մարդուն սրտին մէջ պիտի գործուի , անշուշտ Աստուծոյ շնորհքը պիտի կատարէ զանիկայ , բայց դպրոցականներուն լսածին նայելով առանց դուրս ձգելու բնական կարողութիւնները : Աս կարողութիւնները՝ կըսէին անոնք , մեղքէն ընաջինջ եղած չեն . ինչու որ մեղքը ուրիշ բան չըներ բայց եթէ անոնց ընդարձակուելուն արգելք կըդնէ . սակայն աս արգելքը վերցուելուն պէս՝ (և ասիկայ է , կըսէին , Աստուծոյ շնորհքին ընելու գործը) այն կարողութիւններուն գործողութիւնը վերստին կըսկսի : Թռչունը՝ կըսեն , (յիշենք հոս իրենց հաճելի բաղդատութիւններուն մէկը) որ ատեն մը ոտքէն կապուած է , աս վիճակիս մէջ ոչ իր ոյժը կորսնցուցեր է և ոչ թռչելու կերպը մոռցեր է . միայն պէտք է որ մէկ օտար ձեռք մը իր կապերը արձըկէ , որպէս զի կարող ըլլայ նորէն իր թևերը գործածելու : Այսպէս է մարդն ալ , կըսէին անոնք :

Ասիկայ էր Էքին ու Կարլստադին վիճաբանութեան նիւթը : Էք առաջ բոլորովին հակառակ երևցեր էր աս նիւթիս վրայ Կարլստադին յառաջ բերած նախադասութիւններուն . բայց իր ընտրած առաջարկութիւնը պաշտպանելու դժուարութիւն կրելով՝ ըսաւ , "Կընդունիմ թէ մեր կամքը կարողութիւն չունի բարի մը գործելու , և թէ Աստուծմէ կընդունի կարողութիւն": "Ուրեմն կըխոստովանիս , հարցուց Կարլստադ՝ ուրախանալով անոր հաւանութեանը վրայ , թէ մէկ բարի գործ մը բովանդակապէս Աստուծմէ կուգայ": "Իրաւ որ բարի գործին բոլորը Աստուծմէ կուգայ , պատասխանեց խորագէտն Էք , բայց ոչ բովանդա-

կապէս"։ "Ատիկայ մէկ գիւտ մըն է որ աստուածաբան-ներուն խիստ արժանաւոր է սորվիլ"։ գոչեց Մելանկտոն "Արեգակը ամբողջ խնձորը կարտադրէ՝ շարունակեց Էք, բայց ոչ բովանդակապէս՝ առանց տունկին գործակցութեանը"*։ Անտարակոյս բնաւ մէկը չընդունիր թէ խնձորը լոկ արեգակին արտադրութիւնն ըլլայ ։

Հակադրեալ կողմինները առաւել ևս խորամուխ ըլլալով աս խնդրոյս՝ որ միանգամայն նուրբ և երևելի խնդիր է փիլիսոփայութեան և կրօնքի մէջ ', պատասխան տուին. "Շատ աղէկ՝ բայց քննեմք թէ Աստուած ինչպէս կըգործակցի աս գործին"։ "Ես կըխոստովանիմ, ըսաւ Էք, թէ մարդու մը դարձը պատճառող առաջին խորհուրդը Աստուծմէ կուգայ, և թէ՝ ասոր մէջ մարդուն կամքը բոլորովին կրող է"։ Աս բանին երկու հակառակորդները միաբանեցան։ "Ես իմ կողմանէս կըխոստովանիմ, ըսաւ Կարլստադ, թէ աս առաջին գործէն ետքը՝ որ Աստուծմէ կուգայ, մարդուն կողմանէ ալ բան մը կըպահանջուի, որն որ սուրբն Պօղոս կըկոչէ կամք, ու հայրերը կանուանեն հաճո[illegible]"։ Ասոր ևս երկուքն ալ միաբանեցան, բայց աս կէտէն անդին բաժնուեցան։ "Աս հաճութիւնը մարդուն կողմանէ, ըսաւ Էք, ըստ մասին մեր բնական կամքէն կուգայ, և ըստ մասին Աստուծոյ շնորհքէն"։ "Ոչ, ըսաւ Կարլստադ, պէտք է որ բոլորովին Աստուած յառաջ բերէ աս կամքը մարդուն վրայ"։ Էք սկսեց զարմանալ ու սրտմտիլ աս խօսքին վրայ որ պատշաճապէս կիմացընէ մարդուն իր անձին ոչնչութիւնը ։ "Քու վարդապետութիւնդ, ըսաւ Էք, քարի ու փայտի կարգը կըդասէ զմարդը, անկարող գործողութեան"։ "Ինչ, պատասխանեցին Բարեկարգողները․ արդեօք ան ընդունակութիւնը՝ որ կըխոստովանիմք թէ մարդս ունի՝ Աստուծոյ իր վրայ յառաջ բերած կարողութիւնը ընդունելու, ըստ բաւականին չտար-

* Pallavicini, Tom. 1, p. 58.

բերեր զանիկայ քարէն կամ փայտէն”։ Պատասխան տուաւ անոնց Հակառակորդը և ըսաւ. “Բայց դուք ուղղակի կը Հակառակիք փորձառութեան, որ ատեն կըՀրաժարիք խոստովանելէն թէ մարդ բնական կարողութիւն մը ունի”։ “Չեմք ուրանար՝ պատասխան տուին մէկայլները, թէ մարդս քանի մը զօրութիւններ ունի, և թէ կրնայ խոկալ՝ մտածել և ընտրել. միայն թէ ասանկ կարողութիւնները կը Համարիմք իբրև լոկ գործիքներ, որ զանոնք մինչև որ Աստուծոյ ձեռքը չշարժէ նէ չեն կրնար բարի բան մը ընել. կընմանին սղոցի որ մարդ իր ձեռքը կըբռնէ”։

Ասոր տեղը Ազատ Կամաց վրայ եղած մեծ խնդիրը մէջ բերուած էր. ու դիւրին էր ապացուցանել թէ Նորհկարգողներուն վարդապետութիւնը մարդուն վրայէն չէր վերցըներ՝ բարոյապէս ներգործողի ազատութիւնը, ու չէր ըներ զանիկայ իբրև կրող մեքենայ մը։ Բարոյապէս ներգործողի ազատութիւնը կըկայանայ իր ընտրողութեանը Համաձայն գործելու կարողութեանը մէջ։ Ուրաքանչիւր գործ որ կըկատարուի առանց արտաքին բռնութեան, ու յառաջ կուգայ մտքին որոշմանէն, ազատ գործ մըն է։ Միտքը իր որոշումը շարժառիթներէն կըՀանէ. բայց միշտ կըտեսնեմք որ նոյն շարժառիթները այլ և այլ միտքերու այլ և այլ կերպով կըներգործեն։ Վասնզի շատերը Համաձայն չեն գործեր այն շարժառիթներուն՝ որ կը խոստովանին թէ կատարելապէս զօրաւոր են։ Ուրեմն շարժառիթին աս տկարութիւնը կըծագի սրտին ու մտքին ապականութեամբը Հակառակող արգելքներէն։ Բայց Աստուած “Նոր սիրտ մը և նոր Հոգի մը” տալուն, աս արգելքները կըվերցընէ. ու զանոնք վերցընելուն՝ փոխանակ մերկացընելու զմարդը իր ազատութենէն՝ կըվերցունէ զանիկայ՝ որ կըխափանէր զմարդը ազատօրէն գործելէն, ու իր խղճմտանքին լուսին Հետևելէն։ Աս կերպով՝ Աւետարանի բացայայտածին պէս՝ ճշմարիտ ազատ կընէ զանիկայ *։

* Յովհ. ը. 36։

ւորեցաւ թէ ինքը վիճաբանութեան մէջ պիտի յաղթուի, բայց Լուտեր յաղթող պիտի մնայ պատերազմի ասպարէզին վրայ :

Սուրբ Ադոլֆոս Մերզէպուրկի եպիսկոպոսը անփոյթ չկեցաւ : Լուտերի ու Կարլշտադի մօտաւորութիւնը իմանալուն՝ և անոնց ժամանելէն ալ առաջ եկեղեցիներուն դռները յայտարարութիւններ կախել տուաւ ու բանադրանաց սպառնալիքով կարգիլէր վիճաբանութեան բացուիլը : Գէորգ դուքսը սքանչանալով ատ յանդգնութեանը վրայ, քաղաքին ատեանին հրաման ըրաւ որ եպիսկոպոսին հրամանը պատռեն, ու բանտարգեց ան յանձնապաստան միջամուխը որ համարձակեր էր անոր հրամանը կատարելու : Գէորգ անձամբ եկեր էր Լիփսիա. իր բոլոր պալատականները իր հետն էին, որոնց մէջն էր և Յերոնիմոս Էմզեր, որուն հետ Լուտեր բարեկիշատակ գիշեր մը անցուցեր էր 'ի Տրեզտա * : Գէորգ սովորական պարգևները բաշխեց երկու վիճաբանողներուն : "Լուտերը, ըսաւ Էք պարծենալով, գեղեցիկ եղջերու մը ինծի բաշխեց, ու Կարլշտադին միայն այծեամ մը տուաւ" † :

Էք Լուտերի գալուստը լսածին պէս անոր բնակարանը գնաց. "Ի՞նչ է ատ, ըսաւ, կըլսեմ թէ դուն չես կամիր եղեր իմ հետս վիճաբանիլ" :

Լուտեր. "Ինչպէս կրնամ վիճաբանիլ երբոր դուքսը հրաման չտար ինծի վիճաբանելու" :

Էք. "Թէ որ ես քու հետդ չվիճաբանիմ, շատ քիչ փոյթ կընեմ Կարլշտադի հետ վիճաբանելու : Քեզի համար ես հոս եկած եմ" : Ասոր վրայ մէկ վայրկեան լուռ մնաց, ու վերստին ըսաւ. "Թէ որ ես դուքսէն հրաման առնեմ, դուն կելլե՞ս ատեանը" :

Լուտեր. "Միայն հրաման առ, ու դէմ առ դէմ ելլենք" :

* Տե. Երե. 80 :
† Seckenodrf p. 190.

Էք վաղվաղակի գնաց դուքսին, ու ջանաց փարատել անոր երկիւղները. հաւատարմացուց զանիկայ թէ ինքը ապահով է յաղթութիւնը ստանալու, և թէ՝ պապին իշխանութիւնը վիճաբանութենէն վնաս մը չկրելէն զատ՝ առաւել ևս փառաւորուած դուրս պիտի ելլէ անկէց. «Պէտք է որ, ըսաւ, վիճաբանութիւնը գլխաւոր թշնամիին հետ վարուի: Քանզի թէ որ Լուտեր չխոնարհի, ամէն բան դեռ անկատար կըմնայ. թէ որ անիկայ յաղթուի, ամէն բան վերջացած է»: Ուստի Գէորգ խնդրուած հրամանը շնորհեց:

Դուքսը իր պալատին մէջ որ Փլայսէնպուրկ կըկոչուէր, ընդարձակ սրահ մը պատրաստել տուած էր: Երկու հատ բարձրկեկ ամպիոններ շինուած էին իրարու դէմ. սեղաններ դրուած էին վիճաբանութեան խօսքերը 'ի գիր անցունող նօտարներուն համար, և շուրջանակի նստարաններ շարուած էին ունկնդիրներուն համար: Ամպիոնները ու նստարանները մեծածախ պաստառակալներով զարդարուած էին: Վիդդէմպէրկի վարժապետին յատկացած ամպիոնին ճակատը սրբոյն Մարտինոսի պատկերը կախուած էր, իսկ միւսին՝ որ Էքին յատկացեալ էր, սրբոյն Գէորգին: Գոռոզամիտն Էք աս պատկերին վրայ խորհրդածելով ըսաւ. «Պիտի տեսնենք թէ ես իմ թշնամիներս սմբակակոխ չե՞մ ըներ»: Ամէն բան մեծաբարբառ կըքարոզէր վիճաբանութեան վսեմութիւնը:

## ՀԱՏՈՒԱԾ Դ

ՅՈՒՆԻՍԻ 27երորդ օրը վիճաբանութիւնը սկսելու համար հաստատուած օրն էր: Առաւօտուն կանուխ համալսարանին մեծ դպրոցին մէջ ժողով մը գումարեցաւ՝ ու անկէց բոլոր ընկերութիւնը թափորով գացին սրբոյն Թովմայի

եկեղեցին , ուր որ հանդիսաւոր պատարագ եղաւ դուքսին հրամանովը ու ծախքովը ։ Յետ ժամերգութեան բոլոր ժողովը թափօրով գացին դուքսին պալատը ։ Հանդէսին առջեւէն կը քալէր Գէորգ դուքսը ու Պոմերանիայի դուքսը ․ ետեւէն կուգային կոմսերը՝ աբբաները՝ ասպետները եւ ուրիշ աստիճանաւորները , եւ վերջապէս երկու կողմի վարժապետները ։ Պահապանաց գունդ մը եօթանասունըվեց քաղաքացիէ բաղկացեալ՝ նիզակներով զինուորուած՝ անոնց ընթացքին կ՚ընկերանային , դրօշակներով եւ պատերազմական նուագարաններով , մինչեւ պալատին դռները ։

Երբոր թափօրը պալատը մտաւ՝ ամէն մէկը իր տեղը նստաւ այն սրահին մէջ ուր որ վիճաբանութիւնը պիտի ըլլար ։ Գէորգ դուքսը , ու իրեն յաջորդը Յովհաննէս դուքսը , Անհալդի Գէորգ դուքսը տասներկու տարեկան , ու Պոմերանիայի դուքսը իրենց յատկացած աթոռները նստան ։

Նախ Մոսէլանոս* ամպիոնը ելաւ դուքսին հրամանաւը յիշեցընելու աստուածաբաններուն՝ թէ ինչ ճամբով վիճաբանութիւն պիտի ընեն ։ “Թէ որ կռուի իյնաք , ըսաւ , ի՞նչ տարբերութիւն պիտի մնայ վիճաբանող աստուածաբանի մը ու անպատկառ մենամարտողի մը մէջ ։ Աս վիճաբանութեանս մէջ ո՞րն է յաղթութիւնը , բայց եթէ մէկ եղբօր մը մոլորութենէ դառնալը”† ։

Ատենաբանութիւնը վերջանալուն Փլայսէնպուրկի սրահներուն մէջ սրբազան նուագարան մը հնչուեցաւ․ բոլոր ժողովը ծնկան վրայ եկաւ , ու առ սուրբ Հոգին պաղատելու Veni, Sancte Spiritus! (Եկ Հոգիդ Սուրբ) հին օրհնաբանութիւնը երգուեցաւ ։ Բարեկարգութեան պատմութիւնին մէջ վսեմ վայրկեաններ են ասոնք ։ Երեք անգամ մաղթանքը կրկնուեցաւ․ եւ մինչդեռ աս ազդու երգը շուր-

* Պետրոս Մոսէլանոս Յունարէնի դասատու էր Լայփսիկի համալսարանին մէջ․ ասոր Երասմոսին գրած նամակներէն կիմացուի որ ինքը քիչ փոյթ ունէր վիճաբանողներուն վրայ․ միայն կը զուարճանար անոնց վիճաբանութիւններովը ։

† Seckendorf, p. 209.

ջանակի կը լսուէր, հին վարդապետութեան պաշտպաննե-
րը ու նորին ախոյեանները, միջին դարերու եկեղեցական-
ները ու անոնք որ Առաքելոց Եկեղեցին վերստին հաս-
տատել կուզէին, իրենց ճակատները մեծ խոնարհութեամբ
մէկ տեղ յերկիր կորացուցեր էին։ Միութեան վա-
ղեմի կապը աս այլ և այլ մտքերուն ամէնը դեռ մէկ տեղ
կապած էր. աս բոլոր շրթունքներէն մի և նոյն աղօթքը կը
մատուցուէր, որպէս թէ մէկ սիրտ մըն էր որ զանիկայ
կարտաբերէր։

Ասոնք արտաքին և անկենդան միութեան վերջին փայլ-
կեաններն էին. Հոգւոյն և կենացնորոգ Միութիւնը սկսե-
լու վրայ էր։ Եկեղեցիին վրայ Հոգւոյն սրբոյ իջումը խնդ-
րուեցաւ, և ահա ան՝ Քրիստոնէութիւնը նորոգելու հա-
մար իջնալու կը պատրաստուէր։

Ժողովարանը և աղօթքը լռանալուն ամէնը իրենց ծուն-
կերուն վրայէն ելան կանգնեցան։ Միաբանութիւնը
սկսելու վրայ էր, բայց կէսօրուան զանգակը զարնուելով
յետ միջօրէի ժամը՝ երկուքին ձգուեցաւ ան։

Դուքսը իր սեղանը հրաւիրեց ան գլխաւոր անձերը ո-
րոնք վիճաբանութեան ներկայ պիտի գտնուէին։ Ճաշէն
ետև վերստին դարձան եկեղեցի. Ի զննին կեցողներուն բազ-
մութեամբը լեցուն էր սրահը։ Վիճաբանողները անմիջա-
պէս իրենց տեղերը բռնեցին. բայց ասոնց արտաքին ե-
րևոյթը աղէկ իմացընելու համար աս տեղս ցուցընեմք
անոնց կենդանագրութիւնը, վիճաբանութեան ներկայ
գտնուող անկողմնասէր վկաներուն մէկին ստորագրու-
թեամբը։

«Մարտինոս Լուտեր միջահասակ է, ու միշտ ընթերցման
պարապելուն համար այնպէս նիհար՝ որ իր ոսկորները
գրեթէ կըհամրուէին։ Ծաղկեալ երիտասարդութեան մէջ
է, ու իր ձայնը յստակ և քաղցրահնչիւն է. Սուրբ Գրոց վրայ
իր ունեցած գիտութիւնը և իմացումը անհամեմատ է. Աս-
տուծոյ Բանին բովանդակը իր ձեռքին տակն է։ Ասկէց

վատ շատ ճարքներ կըգտնէ զանազան ձեռնարկութիւններ ու գաղափարներ յառաջ բերելու ։ Միայն թէ գուցէ փափաքելի էր որ աւելի դատողութիւն ունենար ամէն բան իր ուղիղ կարգովը կարգաւորելու ։ Կենցաղավարութեան մէջ զուարճալի է ու բարեբարոյ, և ոչ երբէք գոռոզ կամ մեծամիտ․ ինքզինքը ամենուն կըյարմարէ․ իր խօսելու կերպը հաճելի է և խնդալից․ շատ հաստատութիւն կըցուցընէ, ու իր թշնամիները որչափ սպառնան իր վրայ՝ ինքը միշտ գոհ կերևայ․ անանկ որ մարդ կըբռնադատի հաւատալ թէ առանց Աստուածային օգնութեան չէ որ ինքը այնպէս մեծամեծ բաներ կընէ ։ Սակայն մեղադրանաց արժանաւորած է որ իր յանդիմանութեանցը մէջ աւելի խիստ է քան որչափ կըվայլէ աստուածաբանի մը, մանաւանդ կրօնքի մէջ նորութիւններ յառաջ բերողի մը'' ։

“Կարլշտադի հասակը աւելի կարճ է․ մութ և արևակէզ դիմքունի, իր ձայնը անախորժ է, իր յիշողութիւնը Լուտերինին չափ սուր չէ․ անկէ շատ բարկութեան հակամէտ է ։ Նա սակայն՝ թէպէտ և սակաւ ինչ ստորնագոյն՝ նոյն որպիսութիւնները ունի, որոնցմով իր բարեկամը Լուտեր անուանի է'' ։

“Էքը բարձրահասակ է և թիկնաւէտ․ իր ձայնը սուր է և ճշմարտապէս Գերմանացիի ձայն ։ Առողջ թոքեր ունի, անանկ որ թատրոնի մը մէջ կրնայ աղէկ լսուիլ, և մինչև անգամ խիստ լաւ մունետիկ կըլլայ․ իր արտասանութիւնը աւելի ծանր է քան թէ յստակ ։ Փաբիոսի ու Կիկերոնի այնչափ գովուած վայելչութենէն մէկ մաս մը չունի ։ Իր բերանը՝ աչքերը ու բոլոր դէմքը աւելի զինուորի կամ մսագործի մը գաղափար կուտայ տեսնողին, քան թէ աստուածաբանի ։ Սքանչելի յիշողութիւն ունի․ և թէ որ իր միտքն ալ անոր հաւասար ըլլար, ճշմարտապէս կատարեալ մարդ մը եղած պիտի ըլլար ։ Բայց իր իմացականութիւնը ծանր է, ու կըկարօտի ան ընտրողութեանը՝ առանց որոյ բոլոր ուրիշ ձիրքերը անպիտան են ։ Անոր համար վիճա-

բանութեան մէջ Աստուածաշունչէն ու Նախնի Հարց գրուածքներէն բազմաթիւ վկայութիւններ յառաջ կըբերէ՝ ու բազմատեսակ ապացուցութիւններ կընէ առանց զգուշաւոր ընտրութեան կամ ուղիղ դատման ։ Ասոր վրայ՝ իր լըբութիւնն ալ գրեթէ խելքէ դուրս է ․ Թէ որ դժուարութեան մը մէջ իյնայ՝ առաջիկայ նիւթէն կը շեղի, ուրիշի ձեռնամուխ կըլլայ, երբեմն նաև իր թշնամւոյն կարծիքը ձեռք կառնէ տարբեր խօսքով, ու սքանչելի եղանակաւ իր հակառակորդին կընծայէ ան նոյն անտեղութիւնը որն որ ինքը կըպաշտպանէր”* ։

Ահա այսպէս կըստորագրէ Մոսէլանոս ան մարդիկը՝ որոնք անատենը գրաւեցին փլայսէնպուրկի սրահին մէջ գունդագունդ հաւաքուած ամբոխին ուշադրութիւնը ։

Նախառաջին Էք և Կարլստադ սկսեցին վիճաբանութիւնը ։

Էք վայրկեանի մը չափ իր աչքերը ուղղեց քանի մը նիւթերու վրայ՝ որ իր հակառակորդին ամպիոնին մէջի սեղանին վրայ դրուած էին, և որոնք իր աչքերուն անհաճոյ կերևային ։ Ասոնք էին Աստուածաշունչ գիրքը, ու Եկեղեցւոյ Հարց գրուածքները ։ “Չեմ ուզեր ես աս վիճաբանութեանս մտնել՝ յանկարծ գոչեց Էք, թէ որ դուն գրքեր հետդ բերելու թոյլտուութիւն ունիս” ։ Զարմանալի բան է՝ որ մէկ աստուածաբան մը վիճաբանութիւն ընելու համար գրքերու դիմէ ։ Էքին զարմանքը առաւել ևս զարմանալի էր ։ “Ասոր բոլորը՝ կըսէ Լուտեր՝ թզենիի տերև մըն է, որով աս Ադամը իր մերկութիւնը կըկամի ծածկել ։ Ո՞չ ապաքէն Օգոստինոս Մանիքեցւոց դէմ վիճաբանած ատենը գրքերուն կընայէր” ։ Բայց աս անոնց փոյթը չէր ․ Էքին կուսակիցները իրենց աղաղակը կըբարձրացընէին, ու փոխադարձ մեղադրանքներ կըլլային ։ “Յիշողութիւն չունի աս մարդը”, ըսաւ Էք ։ Վերջապէս Ինկոլստադի ա-

* Mosellanus in Seckend. p. 206.

ախնադպրին կամեցողութեամբը հաստատուեցաւ որ իւրաքանչիւր կողմ իր յիշողութիւնը և իր լեզուն միայն պիտի գործածէ: «Ուրեմն ասանկով ըսին շատերը, ու վիճաբանութեան վախճանը չէ թէ ճշմարտութիւն խնդրելը պիտի ըլլայ, այլ վիճաբանողներուն ատութեանը և յիշողութեանը գովաբանութիւն ընծայելը»:

Էքին և Կարլստադին մէջ եղած վիճաբանութեան նիւթը երևելի նիւթ մըն էր: «Մարդկային կամքը իր դարձէն առաջ ոչինչ բարի կրնայ գործել. ըսաւ Կարլստադ: Ամէն բարի գործ բովանդակապէս և բացարձակապէս Աստուծմէ կուգայ, որ կուտայ մարդուն նախ կամք, և ապա զանիկայ կատարելու կարողութիւն»: Աս ճշմարտութիւնը Սուրբ Գիրքը կը քարոզէ աս խօսքովս. «Զի Աստուած է որ յաջողէ 'ի ձեզ զկամելն և զառնելն վասն հաճութեան իրոյ*», և սուրբն Օգոստինոս՝ որ Պեղագեանց հետ վիճաբանած ատենը գրեթէ նոյն խօսքովը բացայայտեր էր: Իւրաքանչիւր գործ որ Աստուծոյ սիրովը ու անոր հնազանդութեամբը չկատարուիր, չկրնար անոր աչքը բարի համարուիլ, թէպէտ և ուրիշ եղանակներով մարդուս խիստ ազնիւ շարժառիթներէն յառաջ եկած ըլլայ ան: Բայց մարդ բնական հակառակութիւն մը ունի Աստուծոյ կամքին, ու կարող չէ յաղթել ասոր: Իսկ եթէ ոչ կարողութիւն ունի ասիկայ ընելու, և ոչ կամք, ուրեմն պէտք է որ աստուածային կարողութեան գործը ըլլայ աս:

Ահա ասիկայ էր ատենոք եկեղեցւոյ վարդապետութիւնը ազատ կամքին պարզ խնդրոյն վրայով: Բայց դպրոցականները այնպիսի բացատրութիւն մը տուեր էին անոր՝ որ ալ դժուարաւ կը հասկըցուէր: Քանզի կըսէին անոնք. «Անշուշտ մարդուն բնական կամքը չկրնար երբէք բան մը ընել որ ստուգիւ հաճոյ ըլլայ Աստուծոյ. բայց շատ բան կրնայ ընել որ մարդ աւելի ընդունակութիւն ունենայ Աստուծոյ

* Փիլիպ. Բ. 13:

շնորհքը ընդունելու, և աւելի արժանաւորութիւն զանիկայ ստանալու'': Անոնք աս բնական կամքին պատրաստութիւնները՝ Սայելչութեան Արժանաւորութիւն կանոնանէին. "Քանզի ձայնելող է, կըսէր Թովմա Ագուինացին, որ Աստուած բոլորովին մասնաւոր խնամք մը ունենայ ան մարդուն վրայ որ իր յատուկ կամքը բարւոք կըգործածէ'': Իսկ դարձին համար՝ որ մարդուն սրտին մէջ պիտի գործուի, անշուշտ Աստուծոյ շնորհքը պիտի կատարէ զանիկայ, բայց դպրոցականներուն ըսածին նայելով առանց դուրս ձգելու բնական կարողութիւնները: Աս կարողութիւնները՝ կըսէին անոնք, մեղքէն ընաջինջ եղած չեն. ինչու որ մեղքը ուրիշ բան չըներ բայց եթէ անոնց ընդարձակուելուն արգելք կըդնէ. սակայն աս արգելքը վերցուելուն պէս՝ (և ասիկայ է, կըսէին, Աստուծոյ շնորհքին ընելու գործը) ան կարողութիւններուն գործողութիւնը վերստին կըսկսի: Թռչունը՝ կըսեն, (յիշենք հոս իրենց հաճելի բաղդատութիւններուն մէկը) որ ատեն մը ոտքէն կապուած է, աս վիճակիս մէջ ոչ իր ոյժը կորսնցուցեր է և ոչ թռչելու կերպը մոռցեր է. միայն պէտք է որ մէկ օտար ձեռք մը իր կապերը արձըկէ, որպէս զի կարող ըլլայ նորէն իր թևերը գործածելու: Այսպէս է մարդն ալ, կըսէին անոնք:

Ասիկայ էր Էքին ու Կարլստատին վիճաբանութեան նիւթը: Էք առաջ բոլորովին հակառակ երևցեր էր աս նիւթիս վրայ Կարլստատին յառաջ բերած նախադասութիւններուն. բայց իր ընտրած առաջարկութիւնը պաշտպանելու դժուարութիւն կրելով՝ ըսաւ, "Կընդունիմ թէ մեր կամքը կարողութիւն չունի բարի մը գործելու, և թէ Աստուծմէ կընդունի կարողութիւն'': "Ուրեմն կըխոստովանի՞ս, հարցուց Կարլստատ՝ ուրախանալով անոր հաւանութեանը վրայ, թէ մէկ բարի գործ մը բովանդակապէս Աստուծմէ կուգայ'': "Իրաւ որ բարի գործին բոլորը Աստուծմէ կուգայ, պատասխանեց խորագէտն Էք, բայց ոչ բովանդա-

կապէս»։ «Ատիկայ մէկ գիւտ մըն է որ աստուածաբան-ներուն խիստ արժանաւոր է սորվիլ» . գոչեց Մելանկտոն «Արեգակը ամբողջ խնձորը կարտադրէ՝ շարունակեց Լոք, բայց ոչ բովանդակապէս՝ առանց տունկին գործակցութեանը»*։ Անտարակոյս բնաւ մէկը չընդունիր թէ խնձորը լոկ արեգակին արտադրութիւնն ըլլայ ։

Հակադրեալ կողմինները առաւել ևս խորամուխ ըլլալով այս խնդրոյս՝ որ միանգամայն նուրբ և երևելի խնդիր է փիլիսոփայութեան և կրօնքի մէջ՝, պատասխան տուին. «Շատ աղէկ՝ բայց քննենք թէ Աստուած ինչպէս կըգործակցի այս գործին»։ «Ես կըխոստովանիմ, ըսաւ Լոք, թէ մարդու մը դարձը պատճառող առաջին խորհուրդը Աստուծմէ կուգայ, և թէ՝ ասոր մէջ մարդուն կամքը բոլորովին կրող է»։ Այս բանին երկու հակառակորդները միաբանեցան։ «Ես իմ կողմանէս կըխոստովանիմ, ըսաւ Կարլստադ, թէ այս առաջին գործէն ետքը՝ որ Աստուծմէ կուգայ, մարդուն կողմանէ ալ բան մը կըպահանջուի, որն որ սուրբն Պօղոս կըկոչէ կամք, ու հայրերը կանուանեն հաճա-[illegible]»։ Ասոր ևս երկուքն ալ միաբանեցան, բայց այս կէտէն անդին բաժնուեցան։ «Այս հաճութիւնը մարդուն կողմանէ, ըսաւ Լոք, ըստ մասին մեր բնական կամքէն կուգայ, և ըստ մասին Աստուծոյ շնորհքէն»։ «Ոչ, ըսաւ Կարլստադ, պէտք է որ բոլորովին Աստուած յառաջ բերէ այս կամքը մարդուն վրայ»։ Լոք սկսեց զարմանալ ու սրտմտիլ այս խօսքին վրայ որ պատշաճապէս կիմացընէ մարդուն իր անձին ոչնչութիւնը ։ «Քու վարդապետութիւնդ, ըսաւ Լոք, քարի ու փայտի կարգը կըդասէ զմարդը, անկարող գործողութեան» ։ «Ի՞նչ, պատասխանեցին Մարբեկարգողները . արդեօք ան ընդունակութիւնը՝ որ կըխոստովանիմք թէ մարդս ունի՝ Աստուծոյ իր վրայ յառաջ բերած կարողութիւնը ընդունելու, ըստ բաւականին չտար-

* Pallavicini, Tom. 1, p. 58.

բերեր զանիկայ քարէն կամ փայտէն": Պատասխան տուաւ-անոնց հակառակորդը և ըսաւ. "Բայց դուք ուղղակի կը հակառակիք փորձառութեան, որ ատեն կըհրաժարիք խոստովանելէն թէ մարդ բնական կարողութիւն մը ունի": "Չեմք ուրանար՝ պատասխան տուին մէկալները, թէ մարդս քանի մը զօրութիւններ ունի, և թէ կրնայ խօսիլ՝ մտա-ծել և ընտրել. միայն թէ ասանկ կարողութիւնները կը համարիմք իբրև լոկ գործիքներ, որ զանոնք մինչև որ Աս-տուծոյ ձեռքը չշարժէ նէ չեն կրնար բարի բան մը ընել. կընմանին սղոցի որ մարդ իր ձեռքը կըառնէ":

Աս տեղս Ազատ Կամաց վրայ եղած մեծ խնդիրը մէջ բե-րուած էր. ու դիւրին էր ապացուցանել թէ Բարեկար-գողներուն վարդապետութիւնը մարդուն վրայէն չէր վեր-ցըներ՝ բարոյապէս ներգործողի ազատութիւնը, ու չէր ընէր զանիկայ իբրև կրող մեքենայ մը: Բարոյապէս ներ-գործողի ազատութիւնը կըկայանայ իր ընտրողութեանը համաձայն գործելու կարողութեանը մէջ: Իւրաքանչիւր գործ որ կըկատարուի առանց արտաքին բռնութեան, ու յառաջ կուգայ մտքին որոշմանէն, ազատ գործ մըն է: Միտքը իր որոշումը շարժառիթներէն կըհանէ. բայց միշտ կըտեսնեմք որ նոյն շարժառիթները այլ և այլ միտքե-րու այլ և այլ կերպով կըներգործեն: Քանզի շատերը համաձայն չեն գործեր ան շարժառիթներուն՝ որ կը խոստովանին թէ կատարելապէս զօրաւոր են: Երբեմն շարժառիթին աս տկարութիւնը կըծագի սրտին ու մտքին ապականութեանը հակառակող արգելքներէն: Բայց Աստուած "Նոր սիրտ մը և Նոր հոգի մը" տալուն, աս ար-գելքները կըվերցընէ. ու զանոնք վերցընելուն՝ փոխանակ մերկացընելու զմարդը իր ազատութենէն՝ կըվերցունէ զա-նիկայ՝ որ կըխափանէր զմարդը ազատօրէն գործելէն, ու իր խղճմտանքին լուսին հետևելէն: Աս կերպով՝ Աւետարանի բացայայտածին պէս՝ ճշմարիտ ազատ կընէ զանիկայ*:

* Յովհ. Ը. 36:

՚Ի զննին կեցողները շատ անգամ ընդմիջեցին վիճաբանութեան սա առաջին տեսարանը ։ Շատ շփոթութիւն և մինչև անգամ բարձրաձայն աղաղակներ կըլսուէին մէջերնին ։ Որ և իցէ նախադասութիւն որ ունկնդիրներուն մեծ մասին անհաճոյ կըթուէր, վաղվաղակի շշունչ մը կըյարուցանէր, ու ատեանը կըհարկաւորէր պատուիրել անոնց որ լսեն ։ Այն ինքն վիճաբանողներուն ալ երբեմն գլուխը կըտաքնար վիճաբանութեան սաստկութեամբը ։

Լուտերի քովը կայնած էր Մելանկտոն, որ գրեթէ անոր հաւասար առարկայ էր հետաքրքրութեան ։ Իր հասակը կարճ էր, ու տարիքը տղայութենէն աւելի ըլլալ չէր կարծուէր ։ Լուտեր սերտ բարեկամութեամբ անոր հետ կապուած կըթուէր. մէկ տեղ ներս կըմտնային, ու մէկ տեղ դուրս կելլէին ։ ''Մելանկտոնի վրայ նայողը, կըսէ Հելվետիացի աստուածաբան մը * որ Վիդէմպէրկի մէջ սորվեր էր իր գիտութիւնը, զանիկայ տղայ մը կըկարծէ. բայց մտքով գիտութեամբ ու տաղանդով հսկայ է. ու կը զարմանայ մարդ թէ ասանկ փոքրիկ մարմնոյ մը մէջ ինչպէս կրնայ այսչափ գերազանց իմաստութիւն և տաղանդ պարունակուիլ'' ։ Հանգստութեան միջոցներուն Մելանկտոն կըխօսակցէր Կարլշտադին ու Լուտերին հետ. օգնութիւն կընէր անոնց՝ վիճաբանութեան համար իրենց պատրաստուելուն, ու իր բազմատաս հմտութենէն յառաջ եկած առաջարկութիւնները կուտէր անոնց. բայց վիճաբանութեան ժամանակը հանդարտ կընստէր ՚ի զննին կեցողներուն մէջ, ուշադրութեամբ մտիկ ընելով ատենաբաններուն խօսքերը ։ Սակայն երբեմն Կարլշտադին կօգնէր. վասն զի երբոր ասիկայ Ինկօլշտադի ատենադպրին պատասխանութիւններովը նեղ քաշուելու կըմօտենար, նարահաս ուսուցիչը բառ մը կըխօսէր անոր ականջին՝ կամ կտոր մը թուղթ կերկընցնէր անոր՝ որուն վրայ գրած էր

* Kessler

պատասխան մը ։ Էք անգամ մը ասիկայ տեսնելով , ու սրտմտելով որ քրիստոնէութեան աշակերտը՝ ինչոր որ ինքը կը կոչէր զանիկայ , վիճաբանութեան մէջ խառնուի , զար-ձաւ անոր ու գոռոզաբար ըսաւ. "Ո՛ւա կեցի՛ր՝ Փիլիպ-պոս , գուն քու ուսմանդ հոգ տար , ու ինծի արգելք մի ըլլար" ։ Լուտեր իր բարեկամին եղած աս անմարդի կշտ-ամբանքին վրայ սրտմտեցաւ. "Փիլիպպոսի զգուշութիւ-նը աւելի յարգի է՝ ըսաւ՝ իմ քովս , քան թէ հազար աս-տուածաբան Էքերունը"։

Հեզահոգին Մելանկթոն դիւրութեամբ կիմանար վի-ճաբանութեան պակասաւոր մասերը ։ "Չկրնար մարդ ա-ռանց զարմանալու մտաւ՝ կըսէ * իր համեստութեամբը ու շնորհաշուք հոգիովը որ իր ամէն խօսքերուն մէջ կը տեսնենք , երբոր մտածէ թէ ինչ սաստկութեամբ աս նիւթե-րուն վրայ կը խօսուէր ։ Ի՞նչպէս կրնար մէկը անկէց օգուտ մը քաղելու ակնկալութիւն ունենալ ։ Աստուծոյ Հոգին հանդարտութիւն կը սիրէ և լռութիւն . անկէց է որ անիկայ մեր սրտերուն կը թափանցէ ։ Քրիստոսի հարսը փողոցնե-րուն մէջ ու ճամբաներուն գլուխը չկայնիր , այլ իր փեսան իր մօրը տունը կը տանի" † ։

Երկու կողմն ալ կըսէր թէ յաղթութիւնը իրն է . Էք բաղմապատիկ հնարքներու կը դիմէր որ ինքը յաղթող ե-րեւայ ։ Երբոր վիճաբանութեան մէջ մէկմէկու մօտենային , շատ անգամ կաղաղակէր թէ իր թշնամին իր կարծիքը ընդունեց . և թէ որ աս չըլլար , Լուտերի ըսածին պէս յանկարծ կը դառնար , տարբեր խօսքերով Կարլստադի կարծիքը յառաջ կը բերէր , ու խորամանկաբար կը հարցընէր թէ արդեօք կրնայ՞ չխոստովանիլ զանիկայ ։ Բաղմութիւնն ալ որ չէր զգար իմաստակին բռնած եղանակը , կըսկըսէր ծափաձայն ցնծալ և ուրախանալ անոր հետ ։ Բայց և

* Melancht. opp. p. 134. (Գործք Մելանկթոնի . երես . 134 .)
† Երգ Երգոց . Գ . 4 ։

այնպէս՝ վիճաբանութեան ընթացքին մէջ Էք առանց իր իմանալուն, ճշմարտապէս շատ աւելի զինք իր հակառակորդին կարծեացը քան որչափ ինքը իր մտքէն անցուցեր էր :

Վիճաբանութեան սկսելէն երեք կամ չորս օր ետքը Սրբոց Առաքելոցն Պետրոսի և Պօղոսի տօնախմբութեան պատճառովը ուրիշ ատենի ձգուեցաւ ան :

Պոմերանիայի դուքսը Լուտերէն խնդրեց որ նոյն օրը իր մատուռին մէջ քարոզէ : Լուտեր ուրախութեամբ ընդունեց անոր խնդիրը . բայց մատուռը շուտ մը լցուելով և ունկնդիրներուն բազմութիւնը հետզհետէ աւելնալով ժողովը փոխադրուեցաւ պալատին մեծ սրահը՝ ուր որ վիճաբանութիւնը կը լլար : Լուտեր իր բնաբանը նոյն աւուր աւետարանէն առաւ , ու քարոզեց Աստուծոյ շնորհացը և սրբոյն Պետրոսի իշխանութեանը վրայ : Ինչ որ ինքը սովորութիւն ունէր պաշտպանելու գիտնական ունկնդիրներուն առջև , անատենը ժողովրդոց հրատարակեց : Քրիստոնէութիւնը ճշմարտութեան լոյսը հաւասարապէս կընծայէ և՛ ամէնէն խոնարհ և՛ ամէնէն իմաստուն մտքերուն . ասիկայ է որ կը զանազանէ զանիկայ բոլոր ուրիշ կրօնքներէն ու բոլոր փիլիսոփայական կարգերէն : Լուտերի քարոզը լսող Լիփսիայի աստուածաբանները աճապարեցին պատմել Էքին իրենց դպչող խօսքերը՝, որոնցմով գայթակղեր էին : "Պէտք է որ պատասխան տաս անոր , աղաղակեցին . աս մեծամեծ սխալները պէտք է որ հրապարակաւ յաղթահարուին" : Էք ալ ասկէց աղէկ բան չէր ուզեր . բոլոր եկեղեցիները իր հրամանին տակն ըլլալով՝ չորս անգամ յաջորդաբար ամպիոնը ելաւ , ու Լուտերը և անոր քարոզը չարաչար թշնամանեց : Լուտերի բարեկամները սրտմտելով ասոր վրայ խնդրեցին որ ըստ կարգի Վիդդէմպէրկի աստուածաբանն ալ մտիկ ըլլուի , բայց իրենց խնդիրը զանց եղաւ : Ամպիոնները աւետարանի թշնամիներուն բաց էին , ու զանիկայ քարոզողներուն գոց : "Լուռ կեցայ ,

կըսէ Լուտեր, ու պարտաւորեցայ ես զիս նախատուելու բամբասուելու և զրպարտուելու թողուլ, առանց կարող ըլլալու ինքզինքս արդարացընելու կամ պաշտպանելու *":

Մեծ շփոթութիւն կըտիրեր քաղաքին մէջ. երկու կողմերը կընմանէին երկու ոխերիմ թշնամեաց բանակներու, ու երբեմն կըզարնուէին իրարու: Լիփսիայի ու Վիդդէմպէրկի աշակերտներուն մէջ յաճախ կռիւներ կըպատահէին իջևաններուն մէջ. առ հասարակ կըհաստատուէր եկեղեցականաց ժողովներուն մէջ ևս՝ թէ Լուտեր պզտի տուփի մը մէջ Սատանայ մը կըպտըտցունէր իր հետը: "Չեմ գիտեր, ըսաւ Էք թշնամանօք, թէ Սատանան արդեօք տուփին մէջն է եթէ իր վերարկուին տակը. բայց ան աղէկ գիտեմ որ կամ մէկին և կամ միւսին մէջն է":

## ՀԱՏՈՒԱԾ Ե

ՅՈՒԼԻՍԻ 4ին վիճաբանութիւնը սկսեց Էքին և Լուտերին մէջ: Ամէն բան յայտնաբարբառ կըքարոզէր՝ թէ ասիկայ նոր վերջացած վիճաբանութենէն աւելի սաստիկ և վճռական պիտի ըլլայ: Երկու վիճաբանողները յառաջ կըխաղային ասպարէզը ելլելու, հաստատութեամբ առաջադրած իրենց զէնքերը չձգել մինչև որ մէկ կողմը կամ մէկալը յաղթող չքարոզուի: Հասարակաց ուշադրութիւնը կենդանացեր էր, վասն զի վիճաբանութեան նիւթը պապին գլխաւորութիւնն էր:

Առտուան ժամը եօթին երկու վիճաբանողները իրենց տեղերը բռնեցին, որոնց բոլորտիքը շրջապատեր էին ուշի ուշով ունկնդրութիւն ընողներուն բազմութիւնը:

Լուտեր ոտքի վրայ ելաւ, ու հարկաւոր նախազգուշութիւն մը ընելով խոնարհութեամբ ըսաւ.

* L. Opp. (L) XVII p. 247.

"Յանուն ամենակալ Տեառն. Ամէն: Յայտնի ըլլայ առ ժողովիս որ ծայրագոյն քահանայապետին վրայ իմ ունեցած ակնածութիւնս պիտի թողլ չտար ինծի աս վիճաբանութեանս մտնել, թէ որ արժանապատիւ Էք վարդապետը առ այս յորդորած չըլլար զիս":

Լութ. "Յանուն քո օրհնեալ Յիսուս: Ես վիճաբանութեանս մտնելէս առաջ կըվկայեմ ձեր ներկայութեանը՝ ով ազնիւ իշխաններ, թէ իմ ըսածիս ամէնը բոլոր եպիսկոպոսական աթոռներուն առաջիններին ու անոր վրայ նստողին վճռոյն տակն է":

Մարկեանի մը չափ լռելէն ետև շարունակեց Էք և ըսաւ.

"Աստուծոյ Եկեղեցւոյն մէջ գլխաւորութիւն մը կայ որ նոյն ինքն Քրիստոսէ յառաջ եկած է: Զինուորեալ եկեղեցին հաստատուած է յաղթական եկեղեցիին նմանութիւնովը. բայց աս յաղթականը միապետութիւն մըն է, որուն մէջ ամէն բան կարգաւ կելլէ իր մի միայն գլխոյն, այսինքն է՝ Աստուծոյ: Ասոր համար Քրիստոս նոյնօրինակ կարգ մը հաստատեց երկրի վրայ: Եկեղեցին առանց գլխու ինչ այլանդակ հրեշ մը պիտի ըլլար":

Լուտեր, ժողովին դառնալով. "Երբոր վերապատուելի վարդապետը կըսէ թէ խիստ հարկաւոր է որ ընդհանրական Եկեղեցին գլուխ մը ունենայ, աղէկ կըսէ: Թէ որ մէջերնիս մէկը կայ որ ասոր հակառակը կըհաստատէ, յառաջ թող գայ: Ես անանկ բան չեմ ընդունիր":

Լութ. "Թէ որ զինուորեալ եկեղեցին բնաւ չմնաց առանց իր մէկ հատիկ գլխոյն, կըխնդրեմ ով կրնայ ըլլալ ան գլուխը, եթէ ոչ Հռովմայ քահանայապետը":

Լութէր. "Զինուորեալ Եկեղեցիին գլուխը Քրիստոս ինքն է, և ոչ մահկանացու մարդ մը: Ասոր կըհաւատամ ես Աստուծոյ վկայութեամբը, որուն Բանը կըսէ. "Պէտք է Քրիստոսի թագաւորութիւն ընել, մինչև որ բոլոր թշնա-

մինները իր ոտքերուն տակը դնէ*։ Ուրեմն ոչ ևս ականջ դնեմք անոնց որ զինուորեալ եկեղեցիին գլուխ ըլալէն մէկ դի հանելով զՔրիստոս՝ կըկամին որ անիկայ միայն երկնից մէջ յաղթական Եկեղեցիին գլուխ ըլլայ։ Իսկ իր թագաւորութիւնը հաւատոյ թագաւորութիւն է. ու մենք թէպէտև մեր գլուխը չեմք տեսներ, սակայն անոր հետ կապակցեալ եմք"։

Էք յաղթուած չերևալով, և ուրիշ առաջարկութիւններու դառնալով, ըսաւ. "Քահանայական միութիւնը Հռովմէն կելլէ, ինչպէս որ սուրբն Կիպրիանոս կըսէ"։

Լուտեր. "Արևմտեան Եկեղեցիին համար, կընդունիմ անիկայ. բայց չէ՞ որ աս Հռովմէական Եկեղեցին ևս Երուսաղէմայ Եկեղեցիէն ելած է։ Ըստ ուղղութեամբ խօսելով, Երուսաղէմայ Եկեղեցին մայր և դայեակ է ամէն եկեղեցիներուն"։

Էք. "Սուրբն Հերոնիմոս կըհաստատէ որ եթէ պապը բոլոր ուրիշ եկեղեցիներուն՝ իշխանութենէն աւելի չունենայ, Եկեղեցիին մէջ այնչափ հերձուած պիտի ըլլայ, որչափ որ եպիսկոպոս կայ"։

Լուտեր. "Կընդունիմ անիկայ. այսինքն՝ եթէ որ բոլոր հաւատացեալները միաբանէին, մարդկային օրինադրութեամբ աս իշխանութիւնը կրնար տրուիլ Հռովմայ քահանայապետին։ Նաև կընդունիմ՝ որ եթէ հաւատացելոց բոլորը մէկ տեղ միաբանէին Հռովմայ կամ Փարիզու կամ Մակտեպուրկի եպիսկոպոսը առաջին և գլխաւոր եպիսկոպոս ճանչնալու, մեր պարտաւորութիւնը պիտի ըլլար նոյնպէս ճանչնալ զանիկայ, բովանդակ եկեղեցւոյ ընդհանուր հաւանութեանը համար. բայց ասիկայ անանկ բան մըն է որ աշխարհ ոչ տեսաւ և ոչ երբէք պիտի տեսնէ։ Աս մեր օրերը անգամ Յունաց եկեղեցին Հռովմայ եկեղեցիին հետ միութիւն ընելէն ետ չկենա՞ր"։

* Ա. Կորնթ. ԺԵ. 25։

Լուտեր աս ատեններս պատրաստ էր խոստովանիլ թէ պապը Եկեղեցիին գլուխն է, ազատաբար ընտրուած Եկեղեցիէն. բայց կուրանար յԱստուածային իրաւանց անոր գլխաւորութիւն ունենալը։ Ատենէ մը ետքն էր որ չընդունեց թէ անոր ո և իցէ իշխանութիւն մը արժանաւոր է. և ասիկայ գլխաւորաբար Լիփսիայի վիճաբանութենէն ծագեցաւ։ Բայց Էք մէկ սկզբունք մը բռնած էր որ Լուտեր իրմէն աղէկ կըհասկընար զանիկայ. որովհետև Էք Եկեղեցւոյ Հարց հեղինակութիւնը յառաջ բերած էր, Լուտեր առաջադրեց Եկեղեցւոյ Հարց խօսքերովը ջրել զինքը, այսպէս.

“Իմ խօսքիս ճշմարտապէս սրբոյն Հերոնիմոսի մտքին համաձայն ըլլալը՝ պիտի ցուցընեմ բուն իր նամակէն որ գրեց Եւագրիոսին։ Ամէն մէկ եպիսկոպոս, կըսէ, թէ Հռովմայ և թէ Եւգուպիայի, թէ Կոստանդնուպօլսի և թէ Ռեգիայի, թէ Աղեքսանդրիայի և թէ Դանեաց, մի և նոյն պատիւը ու քահանայական կարգը ունի։ Հարստութեան զօրութիւնը ու աղքատութեան տկարութիւնը միայն անոնց վիճակին զանազանութիւն կուտայ”։

Եկեղեցւոյ Հարց գրուածքներէն Լուտեր Ժողովոց վճիռներուն անցաւ, որոնք Հռովմայ եպիսկոպոսը իր հաւասարակիցներուն մէջ միայն առաջինը կըհամարին։ “Աֆրիկէի Ժողովին վճռոյն մէջ կըկարդամք, ըսաւ, թէ՝ Առաջին աթոռին եպիսկոպոսը թող չկոչուի Գլուխ Քահանայապետաց կամ Ծայրագոյն Քահանայապետ, կամ ասոր նման ուրիշ բան մը, այլ պարզապէս առաջին աթոռոյն եպիսկոպոսը։ Թէ որ Հռովմայ եպիսկոպոսին իշխանութիւնը յԱստուածային իրաւանց ըլլար, ըսաւ Լուտեր, աս վճիռը հերետիկոսական պիտի չըլլա՞ր”։

Էք պատասխան տուաւ ասոր իր սովորաբար գործածած խորամանկ զանազանութիւններուն մէկովը։

“Թէ որ կուզես, Հռովմայ եպիսկոպոսը ընդհանուր եպիսկոպոս չէ, այլ ընդհանուր Եկեղեցւոյ եպիսկոպոս”։

Լութէր. "Այդ պատասխանիդ խօսք մը չունիմ. Թող մեր ունկնդիրները իրենք դատաստան ընեն ասոր վրայ":

"Ապաքէն՝ ըսաւ ետքը, ասիկայ աստուածաբանի վայելուչ բացատրութիւն մըն է, և ան կերպը բացատրութիւն մը որ յաղթութեան փափաքով վիճաբանողը կրնայ գտնել: Անօգուտ չեղաւ Լիփսիա գալս, որովհետև սորվեցայ թէ պապը ճշմարտապէս ընդհանուր եպիսկոպոս չէ, այլ ընդհանուր եկեղեցւոյ եպիսկոպոս":

Էք. "Ինչ և իցէ գամք հիմայ մեր խնդրոյն նպատակին. վերապատուելի վարդապետը Հռովմայ եկեղեցւոյն յառաջնութիւնը՝ յԱստուածային իրաւանց ըլլալուն վրայով վկայութիւն կը խնդրէ ինծմէ. աս վկայութիւնը կը գտնեմ ես Քրիստոսի ան խօսքին մէջ որ ըսաւ, Դուն ես Պետրոս, ու աս վէմին վրայ պիտի շինեմ իմ եկեղեցիս *: Սուրբն Օգոստինոս իր Թուղթերուն մէկին մէջ այսպէս կը մեկնէ աս խօսքը. Դուն ես Պետրոս, ու աս վէմին՝ այսինքն է Պետրոսին վրայ պիտի շինեմ իմ եկեղեցիս: Իրաւ Օգոստինոս ուրիշ տեղ ըսաւ թէ աս վէմովը պարտիմք իմանալ զՔրիստոս, բայց ընաւ իր առջի մեկնութիւնը չհերքեց":

Լութէր. "Եթէ որ վերապատուելի վարդապետը կուզէ ինծի դէմ վկայութիւն բերել Օգոստինոսի ասանկ հակասական խօսքերը, նախ և առաջ ինքը թող միաբանէ զանոնք: Վասն զի ստոյգ է թէ սուրբն Օգոստինոս կրկին և կրկին ըսաւ թէ վէմը Քրիստոս էր. ու հազիւ մէկ անգամ մը թէ Պետրոս էր: Բայց թէ և սուրբն Օգոստինոս և բոլոր հայրերը ըսէին թէ Քրիստոսի ըսած վէմը Առաքեալն է, ես՝ թէ և մինակ մնայի՝ սուրբ գրոց հեղինակութեամբը՝ որ է Աստուածային իրաւամբ՝ պիտի ուրանայի ան դրութիւնը. վասն զի գրուած է. Մէկը ալ ուրիշ հիմ չկրնար դնել ան դրուածէն զատ, որ է Յիսուս Քրիստոս †:

* Մատթ. ԺԶ. 18. ըստ Յոյն Բնագրին:
† Ա. Կորնթ. Գ. 11:

Պետրոս ինքն ալ կըկոչէ զՔրիստոս գլուխ անկեան՝ և վէմ կենդանի, որուն վրայ շինուած եմք հոգևոր տաճար” * ։

Էք. “Սքանչանամ վերապատուելի վարդապետին խոնարհութեանը և համեստութեանը վրայ՝ որով ինքը կըբարեհաճի առանձին այսչափ երևելի հարց դէմը ելլել, այնպէս հաստատելով թէ ինքը ծայրագոյն քահանայապետներէն աւելի գիտէ աս բաները։ . . . Արդարև զարմանալի բան թէ որ Աստուած այնչափ սուրբերէն և մարտիրոսներէն ծածուկ պահած է ճշմարտութիւնը . . . . մինչև վերապատուելի հայր վարդապետին աշխարհ գալը”։

Լուտէր. “Եկեղեցւոյ հայրերը ինծի հակառակ չեն։ Սուրբն Օգոստինոս, սուրբն Ամբրոսիոս, ու խիստ երևելի աստուածաբանները իմ ըսածիս պէս կըսեն։ “Եկեղեցին աս հաւատոյ դաւանութեանը վրայ շինուած է՝ †” կըսէ սուրբն Ամբրոսիոս, երբոր ինքը կըբացատրէ թէ ինչ պիտի իմացուի ան վէմովը՝ որուն վրայ կըկանգնի եկեղեցին։ Ուրեմն իմ հակառակորդս իր լեզուն թող քաշէ. անանկ խօսքը որ ինքը հիմայ ըսաւ, խորիմաստ վիճաբանութեան մէջ դեղ և դարման ըլլալուն տեղը միայն թշնամութիւնը կըգրգռէ”։

Էք չէր կարծեր իր թշնամւոյն այսչափ իմաստութիւն ունենալը, ոչ ալ կըյուսար որ կարող պիտի ըլլայ ազատել զինքը ան Լաբիւրինթոսէն որուն մէջ ձգել աշխատեր էր զանիկայ. “Վերապատուելի հայրը, ըսաւ, իր նիւթը աղէկ պատրաստելէն ետև մտաւ աս վիճաբանութեանս։ Ձեր պատուականութիւնները ներողամիտ ըլլան ինծի որ այնչափ ճիշդ քննութիւններ յառաջ չեմ բերեր։ Ես հոս վիճաբանելու եկայ, և ոչ թէ գիրք շինելու”։ Էք մէկ կերպով մը պաշարուեցաւ, բայց ոչ յաղթուեցաւ։ Ուրիշ պատրաստ առաջարկութիւն չունենալով՝ ատելի և արհա-

* Ա. Պետ. Բ. 4, 5։

† Super isto articulo fidei, fundata est Ecclesia.

մարհելի վարդապետութեան մը ձեռք զարկաւ , որն որ եթէ չնուաճէր իր թշնամին , գէթ մեծապէս պիտի չփոթէր զանիկայ : Թէ որ Լուտերի վրայ կարծուէր որ Պոհեմիացի՝ հերետիկոս՝ Հուսեան է , յաղթուած էր : Ուստի Ինկօլստադի վարդապետը աս խորամանկութիւնը բանեցուց : "Յառաջմանէ այնպէս ընդունուած է միշտ , ըսաւ , թէ Հռովմայ Եկեղեցին իր գլխաւորութիւնը Քրիստոսէն կառնէ , և ոչ թէ մարդկային օրինադրութենէ . բայց պէտք է գիտնալ՝ որ Պոհեմիացիք երբոր յամառութեամբ իրենց մոլորութիւնները կըպաշտպանէին , աս վարդապետութեանս դէմ ելան : Ներում կըխնդրեմ վերապատուելի հայր վարդապետէն որ Եկեղեցիին դէմ կենալնուն համար ես Պոհեմիացիներուն դէմ կըխօսիմ , և որ աս մեր ներկայ վիճաբանութիւնը ան հերետիկոսները իմ միտքս բերաւ . վասն զի . . . իմ տկար դատմամբս . . . հայր վարդապետին հետևցուցած խօսքերը բոլորովին անոնց մոլորութիւնները կըպաշտպանեն . և կըսուի՝ թէ Հուսեանք ալ աստով կըպարծենան" :

Էք շիտակ իմացաւ ասկէց ինչ հետևիլը : Բոլոր իր կուսակիցները մեծաձայն գովաբանեցին իր ճարտարաճար համոզանքը , և ուրախութիւն մը երևցաւ ունկնդիրներուն մէջ : "Աս նախատական խօսքերը , ըսաւ Բարեկարգողը յետ ժամանակաց , աւելի հաճելի էին անոնց մտացը , քան թէ վիճաբանութեան յառաջադիմութիւնը" :

Լուտեր . "Ես ոչ կըսիրեմ , և ոչ երբէք պիտի սիրեմ հերձուածը : Պոհեմիացիները որովհետև ինքզինքնուն զատուեցան մեր հետը մէկ ըլլալէն՝ յանցանքի տակ են , թէ և յԱստուածային իրաւանց պաշտպանութիւն ունենայ իրենց վարդապետութիւնը . քանզի Աստուածային իրաւանց վերագոյնը սէրն է ու հոգւոյն միութիւնը" :

Յուլիսի 5ին առտուան ժողովին մէջ խօսեցաւ Լուտեր աս խօսքերը . ու ճաշի ժամը հասած ըլլալով շատ չանցած ժողովը ցրուեցաւ : Հաւանական է որ Բարեկարգողէն

բարեկամներէն կամ գուցէ թշնամիներէն մէկը ազդած ըլլայ իրեն՝ թէ Պոհեմիացի Քրիստոնեաները այսպէս դատելովը սահմանէն դուրս ելած է ։ Ասան զի չէ՞ որ անոնք ճշմարտապէս ան վարդապետութիւններուն համար պինդ կեցեր էին որոնք որ Լուտեր անատենը կըպաշտպանէր ։ Անոր համար երբոր կէս օրէն ետև ժամը երկուքին ժողովը նորէն գումարեցաւ, Լուտեր խօսիլ սկսեց արիաբար և ըսաւ. "Յովհաննէս Հուսի ու Պոհեմիացիներուն խնդիրներուն մէջ կան ոմանք որ խիստ ընդունելի են Քրիստոսի ։ Ասիկայ ստոյգ է. ու աստանկ է ան խնդիրը, Միայն Մէկ ընդհանուր եկեղեցի մը կայ. և դարձեալ ան, Մեր փրկութեանը հարկաւոր բան մը չէ որ հաւատամք թէ Հռովմէական եկեղեցին ուրիշներէն մեծ է ։ Ինծի փոյթ չէ թէ արդեօք Վիքլիֆ ըսաւ ասիկայ եթէ Հուս. Ճշմարտութիւնը ասիկայ է" ։

Լուտերի աս խօսքը խորին զգացում մը տուաւ ունկընդիրներուն ։ Ուղղափառաց ժողովի մը մէջ միաբանի մը բերնէ յարգութեամբ արտաբերուեցան Հուս՝ և Վիքլիֆ անունները, որոնք ատելի էին ։ Սրահին մէջ գրեթէ ընդհանուր շշունչ մը ծագեցաւ ։ Կէորգ դուքսը ևս շփոթեցաւ. իր մօրը Նախնիքներուն սահմանները ապականող քաղաքական խռովութեան դրօշակին Սաքսոնիայի մէջ բացուիլը յառաջագոյն տեսաւ ։ Ուստի չկրնալով զսպել իր զգացումները, գլուխը շարժելով ձեռքերը իր կողերուն դրաւ ու մեծաձայն աղաղակաւ 'ի լուր բոլոր ժողովոյն գոչեց, "Յիմարեցաւ աս մարդը" ։ Բոլոր ժողովը աղմկալից շարժման մէջ էր. Նստողները ելան կանգնեցան, ու խումբ խումբ իրարու հետ կըխօսակցէին. Ննջողները արթընցան. Լուտերի թշնամիները խայտացին, ու իր բարեկամները տարապայման շփոթեցան ։ Շատերը որ մինչև նոյն ատենը հաճութեամբ կըլսէին իրեն, սկսեցին կասկածիլ իր ուղղափառութեանը վրայ ։ Աս խօսքին ներգործութիւնը ոչ երբեք ջնջուեցաւ Կէորգ դուքսին մտքէն. ան

նոյն ժամէն չար աչքով սկսեց նայիլ Նարեկարգողին վրայ, ու եղաւ իր թշնամին ։

Իսկ Լուտեր տեղի չտուաւ ան շշունչներուն. իր գլխաւոր ապացոյցներուն մէկը աս էր որ Յոյնք երբէք ընդունած չէին պապը, և սակայն բնաւ հերետիկոս չկոչուեցան. թէ՝ Յունաց եկեղեցին կար, հիմայ ալ կայ և պիտի կենայ առանց պապի. և թէ՝ աս եկեղեցին Քրիստոսի կըվերաբերի, ինչպէս և Հռովմայինն ալ ։ Էք, ասոր հակառակը կըհաստատէր լրբաբար, թէ քրիստոնէական եկեղեցի և հռովմէական եկեղեցի՝ մի և նոյն եկեղեցի է, թէ Յոյները պապը չընդունելով քրիստոնէական հաւատքն ալ չեն ընդունիր, և թէ անոնք անշուշտ հերետիկոս են ։ "Ի՞նչ, գոչեց Լուտեր. "Գրիգոր Նազիանզեցին, մեծն Բարսեղ, Եպիփանոս, Ոսկեբերան ու բազմաթիւ սուրբ Յոյն եպիսկոպոսներ փրկուեցան, թէպէտ և բնաւ երբէք չհաւատացին թէ Հռովմայ եկեղեցին սուրբ եկեղեցիներէն մեծ է ։ Հռովմայ քահանայապետը կարող չէ նոր 'ի նորոյ հաւատոյ մասունքներ աւելցընել ։ Հաւատացեալ քրիստոնէից միայն Սրբազան Գրոց հեղինակութիւնը տրուած է. միայն անիկայ է Աստուածային իրաւանց ։ Կըխնդրեմ արժանապատիւ Էք վարդապետէն որ ընդունի թէ Հռովմայ քահանայապետները մարդիկ էին. ու չխօսի անոնց վրայ այնպէս՝ որ իբր թէ աստուածներ էին" ։

Աս տեղը Էք սկսաւ ան զուարճախօսութիւններուն մէկը ձեռք առնել՝ որոնք ըստ երևոյթին դիւրապատրաստ յաղթութիւն մը կընծայեն զանոնք գործածողին ։

"Գերապատուելի վարդապետը որ իր խոհարարութեանը մէջ քաջակիրթ չէ, ըսաւ, հերձուածողները և Յունաց սուրբերը մէկ տեղ բերելով ոչինչ խառնուրդ մը չի-նեց. որպէս 'զի՝ մէկուն սրբութեան հոտը մէկալներուն թունաւոր համը ծածկէ" ։

Լուտեր քաջութեամբ Էքին խօսքը միջահատելով ըսաւ. "Արժանապատիւ վարդապետը անամօթութեամբ կը

խօսի . իմ դատողութեամբս Քրիստոս չկրնար միաբանութիւն ունենալ Բելիարին հետ" :

Այսպիսի էին այն վիճաբանութիւնները որ զբաղեցուցին երկու աստուածաբանները : Ժողովը քաջ ուշադրութիւն կըմատուցանէր ասոնց . բայց երբեմն ունկնդիրներուն շահախնդրութիւնը կըթուլանար , ու այն միջոցին անհաճոյ չէր թուէր իրենց թէ որ դիպուած մը պատահէր զիրենք արթընցունելու : Եւ ինչպէս շատ անգամ կըլլայ որ խիստ երևելի գործերուն մէջ ծիծաղաշարժ դիպուածներ կըմտնեն , Լիփսիայի մէջ ալ ասոր նման բան մը պատահեցաւ :

Գէորգ դուքսը այն ժամանակին սովորութեանը հետևելով թզուկ մը կըպահէր : Քանի մը ծաղրածուներ ըսին ասոր թէ "Լուտեր կըվիճի որ թզուկը կրնայ ամուսնանալ , բայց Էք ասոր հակառակը կըպնդէ" : Ասոր վրայ թզուկը մեծ ատելութիւն ունէր իր ներսը Էքին վրայօք , ու ամէն անգամ որ դուքսին հետ սրահը կուգար սպաննական նայուածք մը կըձգէր անոր վրայ : Օր մը Ինկօլստադի վարժապետը խեղկատակութեան զարնելով մէկ աչքը գոցեց , (ինչպէս որ թզուկը միականի էր ,) ու միւս աչքովը դէպի թզուկին կընայէր : Թզուկը չկրնալով այլ ևս զինքը զսպել , սկսեց նախատինք և անէծք թափել իմաստուն վարդապետին վրայ : Բոլոր ժողովը սկսեց բարձրաձայն խնդալ , ու աս դիպուածը անոնց մտքերուն սաստիկ աշխատութիւնը չափով մը նուազեցուց :

Աս միջոցիս քաղաքին ու եկեղեցիներուն մէջ կըպատահէին զանազան դիպուածներ , որոնք կըցուցընէին թէ Հռովմայ կուսակիցները Լուտերի համարձակ խօսքերովը ի՜նչ երկիւղի մէջ ինկած էին : Կիրակի օր մը Միդդեմպէրկի վարդապետը Դոմինիկեանց եկեղեցին մտաւ ձայնաւոր պատարագէն առաջ : Եկեղեցւոյն մէջ միայն քանի մը վարդապետներ կային որ փոքր սեղաններուն վրայ առջի թիւ պատարագները կըսէին : Մանքին մէջ լսուե-

լուն պէս թէ Հերետիկոս Լուտերը եկեղեցին մտեր է , միաբանները արտորնօք վազեցին , սրբութեան սպասը առին , ու զանիկայ տապանակին մէջ դնելով զգուշութեամբ ցոցեցին՝ որ չըլլայ թէ սրբազան խորհուրդը պըղծուի Միդդէմպէրկի Օգոստինեանին Հերետիկոսական աչքերէն ։ Երբոր անոնք աս կընէին՝ պատարագ ընողները սրբազան անօթները ժողվեցին , սեղաններուն առջեւէն քաշուեցան , եկեղեցւոյն մէջէն անցան ու փախան գացին աւանդատունը , որպէս թէ՝ մէկ պատմագրի մը ըսածին պէս , սատանան անոնց ետեւէն կըվազէր ։

Աս վիճաբանութիւնները ամէն տեղ խօսակցութեան նիւթ եղան ։ իջեւաններուն մէջ՝ համալսարանին և պալատին մէջ ամէն մէկը իր կարծիքը կըխօսէր ։ Գէորք դուքսը թէ և սաստիկ զայրացած էր բայց յամառութեամբ չմերժեց բոլորովին՝ իր մտքին համոզուելուն ։ Օր մը երբոր Էք և Լուտեր իր հետը կըճաշէին , անոնց խօսքը միջահատեց ըսելով . "Ինէ յԱստուածային իրաւանց ըլլայ և թէ մարդկային , ստոյգը ան է որ պապը պապ է" ։ Լուտեր մեծապէս հաճեցաւ աս խօսքին ։ "Դուքսը , ըսաւ , ամենեւին չէր խօսէր աս խօսքը , թէ որ իմ առաջարկութիւններս ազդեցութիւն մը ըրած չըլլային իրեն ։

Հինգ օր տեւեց աս վիճաբանութիւնը պապին գլխաւորութեանը վրայ ։ Յուլիսի 8ին սկսեցին վիճաբանիլ Քաւարանին վրայ , ու ասիկայ ալ երկու օրէն աւելի տեւեց ։ Լուտեր աս անգամիս քաւարանին ճշմարիտ ըլլալը ընդունեց . բայց ուրացաւ թէ Սուրբ Գիրքերը ու եկեղեցւոյ հայրերը աւանդած էին աս վարդապետութիւնը , ինչպէս որ դպրոցական աստուածաբանները ու իր հակառակորդն ալ կըհաստատէին ։ "Մեր Էք վարդապետը , ըսաւ , այսօր Սուրբ Գրոց վրայէն անցաւ գրեթէ առանց դպչելու անոնց , ճիշդ ինտոր որ սարդը ջուրին երեսէն կանցնի" ։

Յուլիսի 11ին վիճաբանողները հասան Ներողութեանց վրայ ։ "Ասիկայ խաղէն աւելի՝ սոսկ կատակէն աւելի բան

մը չէր. ըսաւ Լութեր: «Ներողութեանց վրայ պաշտպանութեան շուքը անգամ չնստաւ. ու Էք գրեթէ ամէն բանով ինծի հետ համաձայնեցաւ»: Էք ինքն ալ ըսաւ. «Թէ որ Մարտինոս վարդապետին հետ պապին գլխաւորութեանը վրայ վիճաբանած չըլլայի, գրեթէ իր հետը միաբանած պիտի ըլլայի»:

Այնուհետեւ վիճաբանութիւնը դարձաւ Ապաշխարութեան վրայ, Քահանային արձակմանը վրայ, ու վճարման վրայ: Էք իր սովորութեանը պէս վկայութեան կոչեց դպրոցական աստուածաբանները, Դոմինիկեանները, ու պապին վճիռները: Իսկ Լութեր վիճաբանութիւնը վերջացուց ասոր խօսքովը.

«Գերապատուելի վարդապետը սուրբ Գրքերէն այնպէս կըփախչի, ինչպէս որ սատանան խաչին առջեւէն կը փախչի: Իսկ ես Եկեղեցւոյ հարց պարտուպատշաճ յարգութիւնը մատուցանելով, Աստուծոյ Բանին հեղինակութիւնը նախապատիւ կըհամարիմ. և միայն ասիկայ մեր դատաւորներուն դէմ կըհանեմ»:

Այսպէս վերջացաւ Էքին և Լութերին վիճաբանութիւնը: Կարլստատ ու Ինկոլստատի վարդապետը երկու օր ալ վիճեցան բարի գործոց մէջ մարդկային արդիւնքները քննելու: Յուլիսի 16ին բոլոր գործը աւարտեցաւ՝ քսան օր տեւելէն ետքը, ու Լիփսիայի մեծաւորը քարոզ մը տուաւ: Ասիկայ լրանալուն նուագարան սկսուեցաւ լսուիլ, ու "Te Deum" (զքեզ Աստուած) օրհնաբանական երգովը հանդէսը վերջացաւ:

Բայց աս վսեմ երգաբանութեանս ատենը մարդոց մտքերը ոչ ևս այնպէս էին ինչպէս Veni, Sancte Spiritus! (Եկ Հոգի սուրբ) օրհնաբանութեան երգուած ատենն էին: Քանզի շատերուն նախագուշակութիւնները արդէն կատարուեցան. ու հակառակ կողմի երկու ախոյեաններուն հարուածները պապականութեան մարմնոյն վրայ ևս լայնապատառ վէրք մը բացեր էին:

## ՀԱՏՈՒԱԾ Զ

ԱՍՏՈՒԾՈՅ տնօրէնութեանը սահմանուած էր որ աս վիճաբանութիւնը իբրև ծուխ չցնդի. ինչ և իցէ գործ որ հաւատքով կըկատարուի, արդիւնաւոր պտուղ կըբերէ։ Լուտերի խօսքերը աննահանջելի զօրութեամբ իրենց ճամբան գտան անոր ունկնդիրներուն մտացը թափանցելու։ Շատերը՝ որոնք կանոնաւորապէս պալատին սրահը եկեր էին ունկնդրութեան համար, ճշմարտութիւնը ընդունեցին։

Այս մանաւանդ համալսարանին աշակերտներուն մէջէն շատերը զմայլելով ընդունեցին Լուտերի խօսքերը։ Վիդդէմպէրկի վարդապետին քաջութեանը ու կարողութեանը և Ինկօլստադի աստուածաբանին իմաստակական զանազանութիւններուն և ընդունայն դիտողութիւններուն տարբերութիւնը քաջ իմացան։ Յայսպանդիման տեսան որ Լուտեր հաստատուած էր Աստուծոյ Բանին վրայ, ու Էք միայն մարդկային աւանդութեանց վրայ։ Ասոր ներգործութիւնը վազվազակի երևան ելաւ. վասն զի վիճաբանութեան վերջանալէն ետև Լիփսիայի համալսարանին դասատուութեան սրահները գրեթէ պարպուեցան։ Իրաւ կրնայ ըսուիլ թէ ժամանակին դիպուածը ըրաւ աս բանը, վասն զի ժանտախտը ճարակեցաւ ան կողմերը. բայց անկէց փախչող աշակերտները ուրիշ համալսարաններ կըրնային երթալ, ինչպէս Էրֆուրթի կամ Ինկօլստադի համալսարանը։ Ուրեմն ճշմարտութեան զօրութիւնն էր որ Վիդդէմպէրկ քաշեց զանոնք, ու ան տեղի աշակերտաց թիւը կրկնապատիկ աւելցաւ։

Լիփսիայի վիճաբանութիւնը ասոնցմէ ալ ազնուագոյն վախճաններ ունէր։ Մելանկտոն՝ Բարեկարգութեան գլխաւոր աստուածաբանը, հոն ընդունեց իր կոչումը աս պաշտօնին։ Աս խոհական և հանդարտ անձը վիճաբանութեան ներկայ գտնուած էր՝ հազիւ թէ միջամուխ ըլլալով անոր։ Մինչև անատենը ինքզինքը փիլիսոփայութեան մէջ

պատաղեցուցած էր . բայց վիճաբանութիւնը նոր գրգիռ մը տուաւ անոր , ու պերճաբան վարժապետը փիլիսոփայութենէ աստուածաբանութեան մղեց ։ Ան նոյն ժամէն իր իմաստութեանը բարձրութիւնները Աստուծոյ Բանին առջևը խոնարհեցուց, ու աւետարանական վարդապետութիւնը տղայական պարզմտութեամբ ընդունեց . և իր ունկնդիրները կըլսէին որ փրկութեան ճանապարհը կըբացատրէր շնորհալի և յստակ եղանակով մը որ զանոնք կըզմայլեցընէր ։ Արիութեամբ յառաջ կերթար աս ճամբուն մէջ որ այնչափ նոր էր իրեն , վասն զի՝ "Քրիստոս , կըսէ ինքը , պիտի չպակսի իրեններէն"։ Աս կէտէն անդին երկու բարեկամները 'ի միասին յառաջացան , ազատութեան և ճշմարտութեան համար աշխատելով՝ մէկը Պօղոսի արիութեամբը , և միւսը Յովհաննու հեզութեամբը ։ Լուտեր աղէկ բացատրեց իրենց կոչումներուն տարբերութիւնը , ըսելով . "Ես ծնայ պատերազմի ասպարէզին վրայ թշնամիներու ու դևերու հետ կռուելու . ասկէց է որ իմ գրուածքներս պատերազմ ու փոթորիկ կըյարուցանեն ։ Ես ծառին ճիւղը ու բունը արմատէն փրցունելու եմ , փուշերը ու տատասկները մաքրելու եմ , տղմուտները ու ճախինները լցունելու եմ ։ Կընմանիմ զօրեղ փայտահատի որ կըմաքրէ ու կըհարթէ ճանապարհը ։ Բայց մեր արհեստից վարժապետը Փիլիպպոս՝ հանդարտութեամբ ու մեղմով կըյառաջանայ , ուրախութեամբ հերկելով ու տնկելով՝ սերմանելով և ոռոգելով , ինչպէս որ Աստուած իր պարգևները առատապէս շնորհած է իրեն"։

Թէև որ Մելանկտոն հանդարտ սերմանօղը իր պաշտօնին կոչուեցաւ Լիփսիայի վիճաբանութեամբը , Լուտեր զօրեղ փայտահատն ալ զգաց որ նոյն վիճաբանութիւնը իր թևերուն ուժը աւելցուց , ու իր արիութիւնը համեմատաբար զօրացաւ ։ Վիճաբանութեան ամենէն երևելի վախճանը արդարև ան էր որ նոյն ինքն Լուտերի վրայ գործեցաւ . "Դպրոցական աստուածաբանութիւնը , կըսէ ,

Իսկ վարժապետին մեծապանծ նախագահութեանը տակ, իմ աչքս հողի պէս փշրեցաւ անատենը": Դպրոցականներուն ու եկեղեցականներուն սրբութեան խորանին առջևը քաշած վարագուրը վերէն 'ի վար պատռեցաւ Բարեկարգողին առջևը։ Նոր 'ի նորոյ քննութիւններու յառաջանալով, Լուտեր անակնկալ տեղեկութիւններու ծանօթացաւ. զարմանքով և անոր հաւասար սրտմտութեամբ չարիքին մեծութիւնը կատարելապէս տեսաւ։ Եկեղեցւոյ տարեգրութիւնները քննելով՝ գտաւ թէ Հռովմայ գլխաւորութիւնը իր ծագումը առեր էր միայն եկեղեցականաց փառասիրութենէն ու ժողովրդոց դիւրահաւան տգիտութենէն։ Աս տրտմառիթ տեղեկութիւններուն վրայ չկրցաւ լուռ կենալ. իր թշնամիներուն գոռոզութիւնը, վէճին յաղթութիւնը իրենց սեպելը՝ անով անոնց մեծաբանելը և լոյսը շիջուցանելու անոնց ջանքը որոշեցին իր դիտաւորութիւնը։ Յառաջացաւ ան ճամբուն մէջ ուրկէց Աստուած իրեն առաջնորդեց, առանց անհանգիստ ըլլալու թէ անիկայ ինչ վախճանի պիտի հասցընէ զինքը։ Լուտեր ասիկայ պապական լուծէն իր օտարանալուն սկզբնաւորութիւնը համարեցաւ։ "Սորվեցէք ինծմէ, կըսէ, թէ ինչպէս դժուարին է մէկ դի ձգել ան մոլորութիւնները որ բովանդակ աշխարհ իր օրինակովը կըհաստատէ, և որ երկար գործածութեամբ երկրորդ բնութիւն եղած է մեզի։ Եօթը տարի մեծ նախանձաւորութեամբ կարդացի ու հրապարակաւ մեկնեցի սուրբ Գիրքերը, անանկ որ՝ գրեթէ բոլորը 'ի բերան գիտէի։ Նաև Յիսուս Քրիստոսի իմ Տէրոջս հաւատքին ու գիտութեանը բոլոր առաջնապտուղները ունէի. այսինքն՝ գիտէի թէ մենք ոչ գործերով կարդարանամք ու կըփրկուիմք, այլ Քրիստոսի հաւատքովը. և մինչև անգամ՝ յայտնապէս կըհաստատէի թէ պապին քրիստոնէից եկեղեցւոյ գլուխը ըլլալը Աստուածային իրաւանց չէ։ Բայց սակայն ասոնց ամենէն չկրցի տեսնել ան հետևութիւնը, թէ պապը 'ի հարկէ և առանց երկբայու-

թեան սատանայէն է. վասն զի՝ ինչ որ Աստուծմէ չէ, հարկաւ պիտի ըլլայ սատանայէն": Դարձեալ կըսէ, "Հիմայ ևս թոյլ չեմ տար իմ սրտմտութեանս որ համարձակ խօսի անոնց դէմ՝ որոնք դեռ պապին յարեալ են. որովհետև ես ալ՝ որ այնչափ տարիներ այնչափ զգուշութեամբ սուրբ Գիրքերը կարդացի, տակաւին սաստիկ յամառութեամբ պապականութեան յարեալ էի":

Այսպիսի էին Լիփսիայի վիճաբանութեան իրական վախճանները, և անոնք նոյն իսկ վիճաբանութենէն շատ երևելի էին:

## ՀԱՏՈՒԱԾ Ե

Էք խնդրինքը տուաւ ամէն ան մոլեգնութիւններուն՝ որոնցմով կըկարծէր թէ ինքը յաղթական հանդիսացած պիտի երևայ: Լութերի վրայ զրպարտութիւններ հրատարակեց. ամբաստանութիւնները մէկ մէկու վրայ բարդեց: Փրիդերիկոսին գրեց, ու իմաստուն հազարապետի մը պէս ջանաց շահիլ ան շփոթութիւնէն որ միշտ կըպատահի կռուէ մը ետև, որպէս զի քանի մը երևելի Թոյլտուութիւններ ընդունի նոյն իշխանէն. նաև իր թշնամւոյն անձին դէմ բան մը չըրած՝ ուզեց որ անոր գրուածքները այրէ, մինչև անգամ իր չկարդացածներն ալ: Նա վերջապէս՝ "Մեր բնաջինջ ընենք աս ամէն որդերը քանի որ չափէ դուրս բազմացած չեն անոնք", ըսելով՝ Հարաբերեան վարդապետը աղաչեց կայսրընտրին որ գաւառական հոգևոր ժողովը գումարէ:

Էք ոչ միայն Լութերի վրայ թափեց իր բարկութիւնը, այլ իր յանդգնութիւնը Մելանկթոնն ալ 'ի համար կոչեց: Ասիկայ որ սերտ բարեկամութեամբ կապուած էր մեծարու Էքոլամփատիոսի հետ, վիճաբանութեան պատ-

մութիւնը խորքէն անոր , ու անոր մէջ գովութեամբ ևս կը խօսէր Էքի վարդապետին վրայ * ։ Բայց և այնպէս անոր գոռոզութիւնը վիրաւորեցաւ . անմիջապէս գրիչը ձեռքը առաւ ու Մէլանխթոնի դէմ գրեց ըսելով . “Այն Վիթ-թեմպէրկի քերթողը՝ որ ճշմարիտը խօսելով թէպէտ Յոյն և Լատին լեզուներուն տեղեկութիւն ունի , բայց համարձակեցաւ թուղթ մը հրատարակել որուն մէջ կը նախատէ զիս” ։

Մէլանխթոն պատասխանեց առոք , և ասիկայ իր առաջին աստուածաբանական գրուածքն էր որ ըրաւ ։ Աս գրութիւնը գեղեցիկ քաղաքավարութեամբ կը փայլի , որ աս պատուական անձին մէկ նշանաւոր արդիւնութիւնն է ։ Ուղիղ մեկնութեան սկզբունքները դնելով կը ցուցընէ թէ սուրբ Գիրքերը նախնի հարց գրուածքներովը պէտք չէ բացատրել , այլ նախնի հարց գրուածքները սուրբ Գիրքերով ։

“Քանի՛ քանի անգամ սխալած չէ Հերոնիմոս , Օգոստինոս , և Ամբրոսիոս ։ Որչափ անգամ չեմք գտներ որ իրենց գաղափարութեանը մէջ կը տարբերին . որչափ անգամ չեմք լսեր որ իրենց սխալմունքները կը հերքեն ։ Ուրեմն միայն մէկ Գիրք մը կայ որ Աստուածային ներշնչութեամբ ու առանց սխալի գրուած է ։

“Լուտեր , կըսեն իր թշնամիները , նախնեաց քանի մը մթին մեկնութիւններուն չհետեւիր . և ինչո՞ւ համար պիտի միաբանիմ անոնց ։ Մատթէ առաքելոյն խօսքին վրայ թէ “Դու ես վէմ , և ՚ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ” , իր մեկնութեանը մէջ ան նոյն խօսքը կըսէ ինչ որ Որոգինես ըսած է . նոյն բանը կըգրէ ինչ որ Օգոստինոս իր ճառին մէջ , ու Ամբրոսիոս Ղուկասու վրայ գրած իր վեցերորդ գրքին մէջ կըգրեն , պէտք չէ յիշել ուրիշները ։ Գիտէք ըսէք ուրեմն՝ ի՞նչ , նախնեաց հարք կըհակառակի՞ն մէկ մէկու . և ի՞նչ կայ աս տեղս այնչափ զարմանալու բան մը ։

* Eccius ob varias et insignes ingenii dotes. (L. Opp. Lat. I, p. 337.)

Նախնի հարց գրուածքները կըպատուեմ, որովհետեւ սուրբ Գրոց կըհաւատամ. սուրբ Գրոց միտքը որպէս նոյն ինքն երկնային ճշմարտութիւն՝ մէկ է ու պարզ։ Նա միտքը իմանալու ձեռք կըզարնեմք սուրբ Գիրքերը մէկ մէկու հետ բաղդատելով, ու բոլորին կարգէն եւ կապակցութենէն զանիկայ կըմակաբերեմք։ Աստուածատուր սուրբ Գրոց վըրայով փիլիսոփայութեան կանոն մը աւանդուած է մեզի, որ է աս. մարդոց բոլոր կարծիքները եւ սկզբունքները սուրբ Գրքերին քով պէտի բերուին՝ իբրեւ փորձաքարի՝ որով անոնք փորձուելու են"։

Երկար ժամանակէ 'ի վեր մէկը այսպիսի գեղեցկութեամբ չէր ցուցըրած այսպիսի զօրաւոր ճշմարտութիւններ։ Աստուծոյ Բանը դարձեալ իր յատուկ տեղը հաստատուեցաւ, ու նախնիքները իրենց տեղերը։ Սուրբ Գրոց ճշմարիտ իմաստը իմանալու ճամբան յայտնի ցուցուեցաւ։ Աւետարանը դպրոցներուն մեկնութիւններէն գերաղանց գտնուեցաւ։ Մէլանկտոն մէկ եղանակ մը յառաջ բերաւ՝ որ միշտ յարմար էր գործածելու եւ անով պատասխան տալու անոնց՝ որոնք Լութերին նման գժուարութեանց մէջ կուզէին պաշարել աս նիւթը։ Տկար քերթողը ելաւ, ու դըպրոցական մենամարտիկին հուժկու եւ զօրաւոր ուսերը անոր բազուկին առաջին շարժմանը տեղի տուին։

Իսկ քանի որ իր տկարութիւնը կիմանար, իր աղաղակները կըբարձրանային։ Մոռցեց որ մեծաբանութիւնով ու ամբաստանութիւններով ձեռք ձգէ ան յաղթութիւնը՝ որն որ իր ձեռնարկութիւններովը չէր կրցեր ստանալ։ Միաբանները ու Հռովմայ բոլոր կուսակիցներն ալ աս աղաղակներուն հետ միաբանեցան, ու Գերմանիայի ամէն կողմերէն նախատինք կըթափէր Լուտերի վրայ. բայց ան անոնցմով չշարժեցաւ։ "Որչափ նախատինք բարդին իմ վրաս, ըսաւ Լուտեր, այնչափ կըփառաւորիմ անով։ Ճշմարտութիւնը՝ այսինքն է Քրիստոս՝ պէտք է որ աճի, բայց ես իջնամ։ Փեսային ու հարսին ձայնը ուրախութիւն

մը կուտայ ինծի, որ անոնց աղաղակներուն պատճառած երկիւղէն խիստ գերազանց է։ Մարդիկ չեն որ ինծի դէմ կըկենան, ու ես անոնց դէմ թշնամութիւն չունիմ. այլ Սատանան է՝ չարեաց իշխանը, որ կըջանայ վախցունել զիս։ Բայց ան որ մեր մէջն է, մեծ է քան թէ ան որ աշխարհի մէջ է։ Ոչ գարուս կարծիքը մեզի դէմ է, հետևեալինը աւելի մեր կողմը պիտի ըլլայ"*։

Լիփսիայի վիճաբանութիւնը Գերմանիայի մէջ Լութերի թշնամիները աւելցուց, բայց հեռաւոր տեղեր անոր բարեկամներուն թիւը առատացուց։ "Ատենով Պոհեմիայի մէջ Հուս ինչ էր նէ, նոյն երկրին եղբայրները գրեցին անոր, դուն ալ՝ ով Մարտինոս նոյնն ես հիմա Սաքսոնիայի մէջ. վասն որոյ անդադար աղօթէ, ու զօրացիր Տէրով"։

Երբոր նոր բարեկամներ ու նոր թշնամիներ երևան կելլէին, հին բարեկամներէն ոմանք կըսկսէին Լութերէն օտարանալու նշաններ ցուցընել։ Ստաուպից՝ որուն միջնորդութեամբը Բարեկարգողը Էրֆուրթի վանքին անշքութենէն յառաջ եկեր էր, սկսեց ցրտութիւն մը ցուցընել անոր։ Ստաուպիցին ասանկ ընելը Լութերին հետևելու կարող չըլլալուն էր։ "Կըթողուս զիս, գրեց անոր Բարեկարգողը. բոլոր աս օրս կաթէն կտրած տղի մը պէս տրտմութեան մէջ եմ քեզի համար։ Երեկ գիշեր քու վրայովդ երազ տեսայ. կըթուէր ինծի թէ ինծմէ կըհրաժարէիր, ու ես դառնապէս կուլայի և կըհեծէի. բայց թուեցաւ թէ ձեռքդ դէպի ինծի երկընցուցիր, ու ըսիր որ հանգիստ ըլլամ, վասն զի կրկին կըկամիս ինծի դառնալ"։

Խաղաղարարն Միլտից առաջադրեց որ ուրիշ ջանք մըն ալ ընէ վիճաբանողներուն միտքերը հանդարտեցընելու. բայց ինչ ազդեցութիւն կար էր ունենալ ան մարդոցը վրայ՝ որոնք կռիւին զգացողութեամբը տակաւին աղմկած

* L. Opp. Lat. I, 310.

էին . վասն որոյ իր ջանացողութիւնները անօգուտ եղան ։ Հռչակաւոր Ոսկեղէն Վարդը կայսրընտրին մատուց , բայց ան իշխանը զանիկայ անձամբ ընդունելու եւ արժան չսեպեց ։ Հիմայ Ֆրիդերիկոս Հռովմայ խարդախութիւններուն աղէկ տեղեակ էր . ուստի անօգուտ էր այլ եւ մտածել զանիկայ խաբելու ։

## ՀԱՏՈՒԱԾ Ը

ԼՈՒՏԵՐ ամենեւին ետ չքաշուելով շարունակեց յառաջ երթալ . աս միջոցիս էր որ Գաղատացւոց թղթոյն վրայ իր առաջին մեկնութիւնը հրատարակելով ամենասաստիկ հարուած մը տուաւ երեւելի սխալմունքի մը դէմ ։ Նոյն թղթոյն վրայ իր գրած երկրորդ մեկնութիւնը անտարակոյս գերազանցեց քան զառաջինը , բայց ասոր մէջ եւ ազդու զօրութեամբ յառաջ բերաւ հաւատքով արդարանալու վարդապետութիւնը ։ Ռաքելական թղթոյն մեկնիչին ամէն մէկ խօսքը եռանդով լեցուն էր , ու Աստուած իր գթութիւնը ժողովրդոց սրտերուն մէջ մտցունելու գործիքի մը պէս ան խօսքերը ձեռք առաւ գործածելու ։ "Քրիստոս ինքզինքը մեր մեղքերուն համար տուաւ , կըսէ մեկնիչը ։ Արծաթ կամ ոսկի չէ մեզի համար տուածը . մարդ մը չէ . հրեշտակաց բոլոր գունդը չէ . այլ ինքզինքը , որմէն զատ ուրիշ մեծ բան մը չկայ , որ տուաւ ։ Եւ աս անհամեմատ գանձը մեր մեղքերուն համար տուաւ" ։

Բայց երբոր Լուտեր ցուցուց թէ մարդուն փրկութիւնը միայն Քրիստոսով է , նոյն ատենը ցուցուց եւ թէ աս փրկութիւնը մարդուն սիրտը կըփոխէ , ու բարի գործերու մէջ զանիկայ կըժրացունէ ։ "Ան որ Քրիստոսի Բանը ճշմարտապէս լսեց , ըսաւ , ու զանիկայ կըպահէ , այնուհետեւ սուրբ Հոգիով զարդարուած է ։ Դուն անշուշտ կըսկըսես ան

մարդը որ քեզի քա՛ն փիօրին պարգև տուաւ, կամ քեզի ծառայութիւն մը ըրաւ, կամ որ և իցէ կերպով քու վրադ սէր ունենալը ցուցուց. Հապա որչափ ևս առաւել պիտի սիրես զանիկայ որ քեզի համար ոչ ոսկի կամ արծաթ տուաւ, այլ ինքզինքը. որ քեզի համար այնչափ վէրքեր ընդունեց, որ քու պատճառովդ արիւն քրտինք ու տագնապ կրեց, որ քու տեղդ մեռնիլ յանձն առաւ, մէկ խօսքով քու մեղքերէդ քեզ ազատելու համար իր անձին մահ ընդունեց, ու քեզի Հայր մը ստացաւ երկինքը սիրով լեցուն: Թէ որ դուն չես սիրեր զինքը, քու սիրտդ անոր ըրած բաները չիմացաւ կամ չհասկըցաւ. ու դուն անոր բաներուն չհաւտացիր. վասն զի հաւատքն է որ սիրով կը յաջողի": "Աս թուղթը, կըսէ Լուտեր՝ Գաղատացւոց թղթոյն վրայ խօսելով, իմ թուղթս է. անիկայ ես ինծի նշանեցի":

Իր թշնամիները իր յառաջադիմութիւնը երագեցին. վասն զի աւանց անոնց աւելի ծանր եղած պիտի ըլլար ան: Անոնց յիմարութիւնը բուն իր քաջութեանը չափ նպաստեց իրեն. սաստիկ եռանդով ու կիրքով կըվիճէին ան բաներուն վրայ՝ որ առ առաւելն միայն երկրորդական ու նուաստ գաղափարներ էին. և երբոր Լուտեր Հռովմէական վարդապետութեան նոյն իսկ հիմանցը վրայ յարձակեցաւ, տեսան անոնց սասանութիւնը ու բերան չբացին: Ան նոյն ատենը որ իրենց թշնամին միջնաբերդը մըտնելու ու ճշմարտութեան դրօշակը հոն կանգնեցունելու վրայ էր, սկսեցին դուրսի պատնէշներուն մէկ քանիները պաշտպանել: Ուստի շատ սքանչացան ետքը՝ երբոր տեսան իրենց պաշտպան կեցած բերդը տակէն ական հատած՝ բռնկցուցած՝ ու բոցերուն մէջ կործանած, մինչդեռ իրենք զանիկայ անառիկ կըկարծէին, ու պաշարողներուն դէմ կըմեծաբանէին: Ասանկ աղէտալի կատարածներուն մէջ հասարակօրէն այսպէս կըպատահի բանը:

Ամէն բան կիմացունէր թէ Լուտեր շուտով աւելի պի-

տի կարօտի հաւատոյ և արիութեան, քան որչափ երբէք կարօտացեր էր. ինչու որ Էք վրէժխնդրութեան գաղափարներ կըձևացունէր։ Լիփսիայի մենամարտիկը փոխանակ դափնի պսակներ ընդունելու՝ որոնց յուսացած էր, իր երկրին բոլոր խելացի մարդոցը ծաղրաբանութեան նիւթ եղաւ, ու կծու երգիծաբանութիւններ իր վրայ կը հրատարակուէին։

Լուտեր աս գրուածներուն մեծ մասին համար իր տհաճութիւնը ցուցուց. “Ա՛լ աղէկ է, ըսաւ, յայտնապէս յարձակիլ, քան թէ ցանկապատի մը ետևին պահուըտելով խածնել”։

Որչափ խաբուեցաւ Ինկոլշտադի դիւանադպիրը. իր հայրենակիցները հեռացան անկէ, ու ինքն ալ պատրաստուեցաւ որ Ալպեան լեռներուն միւս կողմը անցնի, ու դուրսէն օգնութիւն փնտրէ։ Ամէն տեղ ուսկից որ կանցնէր՝ սպառնալիք կըժայթքէր Լուտերի դէմ, նմանապէս Մելանկտոնի ու Կարլշտադի և կայսրընտրին դէմ ալ։ “Իր մեծախօսութիւնները լսողը՝ կըսէ Վիդդէմպէրկի վարժապետը, այնպէս կըկարծէր որ ինքզինքը ամենակարող Աստուծոյ տեղ դրեր է”։ Էք բարկութեամբ և վրէժխնդրութեան փափաքով լցուած՝ 1520ին թուղթ մը հրատարակելէն ետև ողջամիտ վարդապետութեան դէմ, սուրբ Պետրոսի գլխաւորութեանը վրայով, որուն մէջ կը հաստատէր որ աս առաքեալը՝ պապերուն առաջինը ըլլալով քսան և հինգ տարի Հռոմ կեցեր էր, ճամբայ ելաւ Իտալիա երթալու, որ իր գործած յաղթութիւններուն վարձը հոն ընդունի, ու Հռոմայ մէջ՝ պապին պալատին քովը աւելի զօրեղ նետեր պատրաստէ քան թէ ան դըպրոցական վիճաբանութեան զէնքերը որ իր ձեռքին մէջ խորտակեր էին։

Լուտեր աղէկ գիտէր թէ իր թշնամւոյն աս ճամբորդութիւնը ինչ վտանգներ պիտի բերէ իր գլխուն, բայց չսրտաբեկեցաւ։ Սպալատին շփոթութեան մէջ ինկած՝

ստիպեց՝ անոր որ հաշտութեան ձայն մը հնարէ: "Ո՛չ, պատասխան տուաւ Լութեր. քանի որ անիկայ յասպարէզ կը կոչէ զիս, ես չեմ կրնար կռուէն ետ քաշուիլ: Ամէն բան Աստուծոյ կը յանձնեմ, ու իմ նաւակս հովերուն և ալիքներուն՝ կուտամ: Պատերազմը Տէրոջն է. ինչո՞ւ համար կը կարծես թէ Քրիստոս իր փառքը խաղաղութիւնով յառաջ պիտի տանի: Չէ՞ որ ինքը, չէ՞ որ իրմէն ետքը բոլոր մարտիրոսները պատերազմի մէջ թափեցին իրենց արիւնը":

Այսպիսի էր Լիփսիայի երկու հակառակորդներուն վիճակը, 1520ին սկզբնաւորութեանը: Էկը կը պատրաստուէր պապական զօրութիւնը գործածելու՝ որ իր հակառակորդը նուաճէ, միւսը կ՚սպասէր կռուոյն՝ ան նոյն հանդարտութեամբը՝ որով ընդհանրապէս մարդիկ խաղաղութեան կը յուսան: Սահմանուած էր նոյն տարին՝ որ ան ատենը նոր սկսեր էր, տեսնէ փոթորկին պայթիլը:

պատաղեցուցած էր . բայց վիճաբանութիւնը նոր գրգիռ մը տուաւ անոր , ու պերճաբան վարժապետը փիլիսոփայութենէ աստուածաբանութեան մղեց : Ան նոյն ժամէն իր իմաստութեանը բարձրութիւնները Աստուծոյ Բանին առջևը խոնարհեցուց , ու աւետարանական վարդապետութիւնը տղայական պարզմտութեամբ ընդունեց . և իր ունկընդիրները կըլսէին որ փրկութեան ճանապարհը կըբացատրէր շնորհալի և յստակ եղանակով մը որ զամէնը կը զմայլեցընէր : Արիութեամբ յառաջ կերթար աս ճամբուն մէջ որ այնչափ նոր էր իրեն , վասն զի՝ "Քրիստոս , կըսէ ինքը , պիտի չպակսի իրեններէն": Աս կէտէն անդին երկու բարեկամները 'ի միասին յառաջացան , ազատութեան և ճշմարտութեան համար աշխատելով մէկը Պօղոսի արիութեամբը , և միւսը Յովհաննու հեզութեամբը : Լուտեր աղէկ բացատրեց իրենց կոչումներուն տարբերութիւնը , ըսելով . "Ես ծնայ պատերազմի ասպարէզին վրայ թշնամիներու ու դևերու հետ կռուելու . անկէց է որ իմ գըրուածքներս պատերազմ ու փոթորիկ կըյարուցանեն : Ես ծառին ճիւղը ու բունը արմատէն փրցունելու եմ , փուշերը ու տատասկները մաքրելու եմ , ողմուտները ու ճախիճները լցունելու եմ : Կընմանիմ զօրեղ փայտահատի որ կըմաքրէ ու կըհարթէ ճանապարհը : Բայց մեր արհեստից վարժապետը Փիլիպպոս՝ հանդարտութեամբ ու մեղմով կըյառաջանայ , ուրախութեամբ հերկելով ու տնկելով սերմանելով և ոռոգելով , ինչպէս որ Աստուած իր պարգևները առատապէս շնորհած է իրեն":

Թէ որ Մելանկտոն հանդարտ սերմանօղը իր պաշտօնին կոչուեցաւ Լիփսիայի վիճաբանութեամբը , Լուտեր զօրեղ փայտահատն ալ զգաց որ նոյն վիճաբանութիւնը իր թևերուն ուժը աւելցուց , ու իր արիութիւնը համեմատաբար զօրացաւ : Վիճաբանութեան ամենէն երևելի վախճանը արդարև ան էր որ նոյն ինքն Լուտերի վրայ գործուեցաւ . "Դպրոցական աստուածաբանութիւնը , կըսէ ,

Աչք վարժապետին մեծապանծ նախագահութեանը տակ, իմ առջեւս հողի պէս փշրեցաւ անատենը" : Կաթողիկաններուն ու եկեղեցականներուն սրբութեան խորանին առջեւ քաշած վարագուրը վերէն 'ի վար պատռեցաւ Բարեկարգողին առջեւ : Նոր 'ի նորոյ քննութիւններու յառաջանալով, Լուտեր անակնկալ տեղեկութիւններու ծանօթացաւ . զարմանքով և անոր հաւասար սրտմտութեամբ չարիքին մեծութիւնը կատարելապէս տեսաւ : Եկեղեցւոյ տարեգրութիւնները քննելով՝ գտաւ թէ Հռովմայ գլխաւորութիւնը իր ծագումը առեր էր միայն եկեղեցականաց փառասիրութենէն ու ժողովրդոց դիւրահաւան տգիտութենէն : Աս տրտմառիթ տեղեկութիւններուն վրայ չկրցաւ լուռ կենալ . իր թշնամիներուն գոռոզութիւնը, վէճին յաղթութիւնը իրենց սեպելը՝ անով անոնց մեծաբանելը և լոյսը շիջուցանելու անոնց ջանքը որոշեցին իր դիտաւորութիւնը : Յառաջացաւ ան ճամբուն մէջ ուրկէց Աստուած իրեն առաջնորդեց, առանց անհանգիստ ըլլալու թէ անիկայ ինչ վախճանի պիտի հասցընէ զինքը : Լուտեր ասիկայ պապական լուծէն իր օտարանալուն սկզբնաւորութիւնը համարեցաւ : "Սորվեցէք ինծմէ, կըսէ, թէ ինչպէս դժուարին է մէկ դի ձգել ան մոլորութիւնները որ բովանդակ աշխարհ իր օրինակովը կըհաստատէ, և որ երկար գործածութեամբ երկրորդ բնութիւն եղած է մեզի : Եօթը տարի մեծ նախանձաւորութեամբ կարդացի ու հրապարակաւ մեկնեցի սուրբ Գիրքերը, անանկ որ՝ գրեթէ բոլորը 'ի բերան գիտէի : Նաև Յիսուս Քրիստոսի իմ Տէրոջս հաւատքին ու գիտութեանը բոլոր առաջնապտուղները ունէի . այսինքն՝ գիտէի թէ մենք ոչ գործերով կարդարանամք ու կըփրկուիմք, այլ Քրիստոսի հաւատքովը . և մինչև անգամ՝ յայտնապէս կըհաստատէի թէ պապին քրիստոնէից եկեղեցւոյ գլուխը ըլլալը յԱստուածային իրաւանց չէ : Այլ սակայն ասոնց ամենէն չկրցի տեսնել ան հետևութիւնը, թէ պապը 'ի հարկէ և առանց երկբայու-

թեան սատանայէն է. վասն զի՝ ինչ որ Աստուծմէ չէ, հարկաւ պիտի ըլլայ սատանայէն": Դարձեալ կըսէ, "Հիմայ և ես թող չեմ տար իմ սրտմտութեանս որ համարձակ խօսի անոնց դէմ՝ որոնք դեռ պապին յարեալ են. որովհետև ես ալ՝ որ այնչափ տարիներ այնչափ զգուշութեամբ սուրբ Գիրքերը կարդացի, տակաւին սաստիկ յամառութեամբ պապականութեան յարեալ էի":

Այսպիսի էին Լիփսիայի վիճաբանութեան իրական վախճանները, և ասոնք նոյն իսկ վիճաբանութենէն շատ երևելի էին:

## ՀԱՏՈՒԱԾ Ե

Էք ինքզինքը տուաւ ամէն ան մոլեգնութիւններուն՝ որոնցմով կըկարծէր թէ ինքը յաղթական հանդիսացած պիտի երևայ: Լուտերի վրայ զրպարտութիւններ հրատարակեց. ամբաստանութիւնները մէկ մէկու վրայ բարդեց: Փրիդերիկոսին գրեց, ու իմաստուն հազարապետի մը պէս ջանաց շահիլ ան շփոթութիւնէն որ միշտ կըպատահի կռիւէ մը ետև, որպէս զի քանի մը երևելի թոյլտուութիւններ ընդունի նոյն իշխանէն. նաև իր թշնամւոյն անձին դէմ բան մը չըրած՝ ուզեց որ անոր գրուածքները այրէ, մինչև անգամ իր չկարդացածներն ալ: Էւ վերջապէս՝ "Արիք ընաջինջ ընեմք աս ամէն որդերը քանի որ չափէ դուրս բազմացած չեն անոնք", ըսելով չարաբերան վարդապետը աղաչեց կայսրընտրին որ գաւառական հոգևոր ժողովը գումարէ:

Էք ոչ միայն Լուտերի վրայ թափեց իր բարկութիւնը, այլ իր յանդգնութիւնը Մելանքթոնին ալ 'ի համար կոչեց: Ասիկայ որ սերտ բարեկամութեամբ կապուած էր մեծայրու Էքոլամփատիոսի հետ, վիճաբանութեան պատ-

մտաւթիւնը խոկեց անոր, ու անոր մէջ զօրութեամբ եւս կը խօսէր Էքի վարդապետին վրայ*։ Բայց և այնպէս անոր զառածութիւնը վիրաւորեցաւ. անմիջապէս գրիչը ձեռքը առաւ ու Մելանխթոնի դէմ գրեց ըսելով. "Ա՛ն Վիթ-դէմպէրկի քերթողը՝ որ ճշմարիտը խօսելով թէպէտ Յոյն և Լատին լեզուներուն տեղեկութիւն ունի, բայց համարձակեցաւ թուղթ մը հրատարակել որուն մէջ կընախատէ զիս"։

Մելանխթոն պատասխանեց անոր, և ասիկայ իր առաջին աստուածաբանական գրուածքն էր որ ըրաւ։ Աս գրութիւնը գեղեցիկ քաղաքավարութեամբ կըփայլէ, որ սա պատուական անձին մէկ նշանաւոր որպիսութիւնն է։ Ուղիղ մեկնութեան սկզբունքները դնելով կըցուցընէ թէ սուրբ Գիրքերը Նախնի Հարց գրուածքներովը պէտք չէ բացատրել, այլ Նախնի Հարց գրուածքները սուրբ Գիրքերով։

"Քանի՛ քանի՛ անգամ սխալած չէ Հերոնիմոս, Օգոստինոս, և Ամբրոսիոս։ Որչափ անգամ չեմք գտներ որ իրենց զատողութեանը մէջ կըստորբերին. որչափ անգամ չեմք լսեր որ իրենց սխալմունքները կըհերքեն։ Ուրեմն միայն մէկ Գիրք մը կայ որ Աստուածային ներշնչութեամբ ու առանց սխալի գրուած է։

"Լուտեր, կըսեն իր թշնամիները, Նախնեաց քանի մը մթին մեկնութիւններուն չհնազանդիր. և ինչո՞ւ համար պիտի հնազանդի անոնց։ Մատթէոսի ան խօսքին վրայ թէ "Դու ես վէմ, և ’ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ", իր մեկնութեանը մէջ ան նոյն խօսքը կըսէ ինչ որ Որոգինէս ըսած է. նոյն բանը կըգրէ ինչ որ Օգոստինոս իր ճառին մէջ, ու Ամբրոսիոս Ղուկասու վրայ գրած իր վեցերորդ գրքին մէջ կըգրեն, պէտք չէ յիշել ուրիշները։ Միթէ ըսէք ուրեմն՝ ի՞նչ, Նախնի Հարք կըհակառակի՞ն մէկ մէկու. և ի՞նչ կայ աս տեղս այնչափ զարմանալու բան մը։

* Eccius ob varias et insignes ingenii dotes. (L. Opp. Lat. I. p. 337.)

‘Նախնի հարց գրուածքները կըպատուեմ, որովհետեւ սուրբ Գրոց կըհաւատամ. սուրբ Գրոց միտքը որպէս նոյն ինքն երկնային ճշմարտութիւն՝ մէկ է ու պարզ ։ Այս միտքը իմանալու ձեռք կըզարնեմք սուրբ Գիրքերը մէկ մէկու հետ բաղդատելով, ու բոլորին կարգէն և կապակցութենէն զանիկայ կըմակաբերեմք ։ Աստուածատուր սուրբ Գրոց վըրայով փիլիսոփայութեան կանոն մը աւանդուած է մեզի, որ է աս. մարդոց բոլոր կարծիքները և սկզբունքները սուրբ Գրքին քով պիտի բերուին՝ իբրև փորձաքարի՝ որով անոնք փորձուելու են" ։

Երկար ժամանակէ 'ի վեր մէկը այսպիսի գեղեցկութեամբ չէր ցուցըրցած այսպիսի զօրաւոր ճշմարտութիւններ ։ Աստուծոյ Բանը դարձեալ իր յատուկ տեղը հաստատուեցաւ, ու նախնիքները իրենց տեղերը ։ Սուրբ Գրոց ճշմարիտ իմաստը իմանալու ճամբան յայտնի ցուցուեցաւ ։ Աւետարանը դպրոցներուն մեկնութիւններէն գերազանց գտնուեցաւ ։ Մելանկտոն մէկ եղանակ մը յառաջ բերաւ՝ որ միշտ յարմար էր գործածելու և անով պատասխան տալու անոնց՝ որոնք Էքին նման դժուարութեանց մէջ կուզէին պաշարել աս նիւթը ։ Տկար քերթողը ելաւ, ու դըպրոցական մենամարտկին հուժկու և զօրաւոր ուսերը անոր բազուկին առաջին շարժմանը տեղի տուին ։

Էք քանի որ իր տկարութիւնը կիմանար, իր աղաղակները կըբարձրանային ։ Մտածեց որ մեծաբանութիւնով ու ամբաստանութիւններով ձեռք ձգէ ան յաղթութիւնը՝ որն որ իր ձեռնարկութիւններովը չէր կրցեր առնել ։ Միաբանները ու Հռովմայ բոլոր կուսակիցներն ալ աս աղաղակներուն հետ միաբանեցան, ու Գերմանիայի ամէն կողմերէն նախատինք կըթափէր Լութերի վըրայ. բայց ան անոնցմով չշարժեցաւ ։ "Որչափ նախատինք բարդեն իմ վրաս, ըսաւ Լութեր, այնչափ կըփառաւորիմ անով ։ Ճըշմարտութիւնը՝ այսինքն է Քրիստոս՝ պէտք է որ աճի, բայց ես իջնամ ։ Փեսային ու հարսին ձայնը ուրախութիւն

մը կուտայ ինծի, որ անոնց աղաղակներուն պատճառած երկիւղէն խիստ գերազանց է ։ Մարդիկ չեն որ ինծի դէմ կըկենան, ու ես անոնց դէմ թշնամութիւն չունիմ. այլ Սատանան է՝ չարեաց իշխանը, որ կըջանայ վախցունել զիս ։ Բայց ան որ մեր մէջն է, մեծ է քան թէ ան որ աշխարհի մէջ է ։ Աս դարուս կարծիքը մեզի դէմ է, հետեւեալինը աւելի մեր կողմը պիտի ըլլայ” * ։

Լիփսիայի վիճաբանութիւնը Գերմանիայի մէջ Լուտերի թշնամիները աւելցուց, բայց հեռաւոր տեղեր անոր բարեկամներուն թիւը առատացուց ։ “Ատենով Պոհեմիայի մէջ Հուս ինչ էր նէ, նոյն երկրին եղբայրները գրեցին անոր, դուն ալ՝ ով Մարտինոս նոյնն ես հիմա Սաքսոնիայի մէջ. վասն որոյ անդադար աղօթէ, ու զօրացիր Տէրով’ ։

Երբոր նոր բարեկամներ ու նոր թշնամիներ երեւան կելլէին, հին բարեկամներէն ոմանք կըսկսէին Լուտերէն օտարանալու նշաններ ցուցընել ։ Ստաուպից՝ որուն միջնորդութեամբը Բարեկարգողը Էրֆուրթի վանքին անշքութենէն յառաջ եկեր էր, սկսեց ցրտութիւն մը ցուցընել անոր ։ Ստաուպիցին ասանկ ընելը Լուտերին հետեւելու կարող չըլլալուն էր ։ “Կըթողո՛ւս զիս, գրեց անոր Բարեկարգողը. բոլոր աս օրս կաթէն կտրած տղի մը պէս տրտմութեան մէջ եմ քեզի համար ։ Երեկ գիշեր քու վրայովդ երազ տեսայ. կըթուէր ինծի թէ ինծմէ կըհրաժարէիր, ու ես դառնապէս կուլայի և կըհեծէի. բայց թուեցաւ թէ ձեռքդ դէպի ինծի երկընցուցիր, ու ըսիր որ հանգիստ ըլլամ, վասն զի կրկին կըկամիս ինծի դառնալ” ։

Խաղաղարարն Միլտից առաջադրեց որ ուրիշ ջանք մըն ալ ընէ վիճաբանողներուն միտքերը հանդարտեցընելու. բայց ի՛նչ ազդեցութիւն կրնար էր ունենալ ան մարդոցը վրայ՝ որոնք կռուին զգացողութեամբը տակաւին աղմկած

* L. Opp. Lat. I, 310.

էին · վասն որոյ իր ջանացողութիւնները անօգուտ եղան ։ Հռչակաւոր Ոսկեղէն Սիրտը կայսրընտրին մօտուց, բայց ան իշխանը զանիկայ անձամբ ընդունելու եւ արժան չսեպեց ։ Հիմայ Փրիդերիկոս Հռովմայ կառավարութիւններուն աղէկ տեղեակ էր · ուստի անօգուտ էր այլ եւ մտածել զանիկայ խաբելու ։

## ՀԱՏՈՒԱԾ Ը

ԼՈՒՏԵՐ ամենեւին ետ չքաշուելով շարունակեց յառաջ երթալ · աս միջոցին էր որ Գաղատացւոց Թղթոյն վրայ իր առաջին մեկնութիւնը հրատարակելով ամենաստաստիկ հարուած մը տուաւ եկեղեցի սխալմունքի մը դէմ ։ Նոյն Թղթոյն վրայ իր գրած երկրորդ մեկնութիւնը անտարակոյս գերազանցեց քան զառաջինը, բայց անոր մէջ եւ աղդու զօրութեամբ յառաջ բերաւ հաւատքով արդարանալու վարդապետութիւնը ։ Առաքելական Թղթոյն մեկնիչին ամէն մէկ խօսքը եռանդով լեցուն էր, ու Աստուած իր գիտութիւնը ժողովրդոց սրտերուն մէջ մտցունելու գործիքի մը պէս ան խօսքերը ձեռք առաւ գործածելու ։ "Քրիստոս ինքզինքը մեր մեղքերուն համար տուաւ, կըսէ մեկնիչը ։ Արծաթ կամ ոսկի չէ մեզի համար տուածը · մարդ մը չէ · հրեշտակաց բոլոր գունդը չէ · այլ ինքզինքը, որմէն զատ ուրիշ մեծ բան մը չկայ, որ տուաւ ։ Եւ աս անհամեմատ գանձը մեր մեղքերուն համար տուաւ" ։

Բայց երբոր Լուտեր ցուցուց թէ մարդուն փրկութիւնը միայն Քրիստոսով է, նոյն ատենը ցուցուց եւ թէ աս փրկութիւնը մարդուն սիրտը կըփոխէ, ու բարի գործերու մէջ զանիկայ կըժրացունէ ։ "Ան որ Քրիստոսի Անունը ճշմարտապէս լսեց, ըսաւ, ու զանիկայ կըպահէ, այնուհետեւ սիրոյ հոգիով զարդարուած է ։ Դուն անշուշտ կըսկսիս ան

մարդը որ քեզի քանի ֆիօրին պարգև տուաւ, կամ քեզի ծառայութիւն մը ըրաւ, կամ որ և իցէ կերպով քու վրադ սէր ունենալը ցուցուց. հապա որչափ ևս առաւել պիտի սիրես զանիկայ որ քեզի համար ոչ ոսկի կամ արծաթ տուաւ, այլ ինքզինքը. որ քեզի համար այնչափ վէրքեր ընդունեց, որ քու պատճառովդ արիւն քրտինք ու տագնապ կրեց, որ քու տեղդ մեռնիլ յանձն առաւ, մէկ խօսքով քու մեղքերէդ քեզ ազատելու համար իր անձին մահ ընդունեց, ու քեզի Հայր մը ստացաւ երկինքը սիրով լեցուն: Ուէ որ դուն չես սիրեր զինքը, քու սիրտդ սն[illegible] ը-բած բաները չիմացաւ կամ չհասկըցաւ. ու դուն[illegible]ն բաներուն չհաւատացիր. վասն զի հաւատքն է որ սիրով կը յաջողի": "Աս թուղթը, կըսէ Լուտեր՝ Գաղատացւոց թըղթոյն վրայ խօսելով, իմ թուղթս է. անիկայ ես ինծի նշանեցի":

Իր թշնամիները իր յառաջադիմութիւնը երագեցին. վասն զի առանց անոնց աւելի ծանր եղած պիտի ըլլար ան: Անոնց յիմարութիւնը բուն իր քաջութեանը չափ նպաստեց իրեն. սաստիկ եռանդով ու կիրքով կը վիճէին ան բաներուն վրայ՝ որ առ առաւելն միայն երկրորդական ու նուաստ գաղափարներ էին. և երբոր Լուտեր Հռովմէական վարդապետութեան նոյն իսկ հիմանցը վրայ յարձակեցաւ, տեսան անոնց սասանութիւնը ու բերան չբացին: Ան նոյն ատենը որ իրենց թշնամին միջնաբերդը մըտնելու ու ճշմարտութեան դրօշակը հոն կանգնեցունելու վրայ էր, սկսեցին դուրսի պատնէշներուն մէկ քանիները պաշտպանել: Ուստի շատ սքանչացան ետքը՝ երբոր տեսան իրենց պաշտպան կեցած բերդը տակէն ական հատած՝ բռնկցուցած՝ ու բոցերուն մէջ կործանած, մինչդեռ իրենք զանիկայ անառիկ կըկարծէին, ու պաշարողներուն դէմ կըմեծաբանէին: Ասանկ աղէտալի կատարածներուն մէջ հասարակօրէն այսպէս կըպատահի բանը:

Ամէն բան կիմացունէր թէ Լուտեր շուտով աւելի պի-

տի կարօտի հաւատոյ և արիութեան, քան որչափ երբէք կարօտացեր էր. ինչու որ Աչք վրէժխնդրութեան գաղափարներ կըձևացունէր: Լիփսիայի մենամարտիկը փոխանակ դափնի պսակներ ընդունելու՝ որոնց յուսացած էր, իր երկրին բոլոր խելացի մարդոցը ծաղրաբանութեան նիւթ եղաւ, ու կծու երգիծաբանութիւններ իր վրայ կը հրատարակուէին:

Լուտեր աս գրուածներուն մեծ մասին համար իր տհաճութիւնը ցուցուց. "Ալ աղէկ է, ըսաւ, յայտնապէս յարձակիլ, քան թէ ցանկապատի մը ետին պահուելով խածնել":

Որչափ խաբուեցաւ Ինկօլշտատի դիւանադպիրը. իր հայրենակիցները հեռացան անկէ, ու ինքն ալ պատրաստուեցաւ որ Ալպեան լեռներուն միւս կողմը անցնի, ու Հռոմէն օգնութիւն փնտռէ: Ամէն տեղ ուսկից որ կանցնէր՝ սպառնալիք կըժայթքէր Լուտերի դէմ, նմանապէս Մելանկտոնի ու Կարլշտատի և կայսրընտրին դէմ ալ: "Իր մեծախօսութիւնները լսողը՝ կըսէ Վիդէմպէրկի վարժապետը, այնպէս կըկարծէր որ ինքզինքը ամենակարող Աստուծոյ տեղ դրեր է": Աչք բարկութեամբ և վրէժխնդրութեան փափաքով լցուած՝ 1520ին Թուղթ մը հըրատարակելէն ետև ողջամիտ վարդապետութեան դէմ, սուրբ Պետրոսի գլխաւորութեանը վրայով, որուն մէջ կը հաստատէր որ աս առաքեալը՝ պապերուն առաջինը ըլլալով քսան և հինգ տարի Հռոմ կեցեր էր, ճամբայ ելաւ Իտալիա երթալու, որ իր գործած յաղթութիւններուն վարձը հոն ընդունի, ու Հռոմայ մէջ՝ պապին պալատին քովը աւելի զօրեղ նետեր պատրաստէ քան թէ ան դըպրոցական վիճաբանութեան զէնքերը որ իր ձեռքին մէջ խորտակեր էին:

Լուտեր աղէկ գիտէր թէ իր թշնամւոյն աս ճամբորդութիւնը ինչ վտանգներ պիտի բերէ իր գլխուն, բայց չսրտաբեկեցաւ: Սպալատին չփոթութեան մէջ ինկած՝

ստիպեց՝ անոր որ հաշտութեան ճառ մը կ'ըսէր ։ "Ո՛չ , պա-
տասխան տուաւ Լուտեր . քանի որ անիկայ յասպարէզ կը
կոչէ զիս , ես չեմ կրնար կռուէն ետ քաշուիլ ։ Ամէն բան
Աստուծոյ կը յանձնեմ , ու իմ նաւակս հովերուն և ալիք-
ներուն կուտամ ։ Պատերազմը Տէրոջն է . ինչո՞ւ համար կը
կարծես թէ Քրիստոս իր փառքը խաղաղութիւնով յա-
ռաջ պիտի տանի ։ Չէ՞ որ ինքը , չէ՞ որ իրմէն ետքը բոլոր
մարտիրոսները պատերազմի մէջ թափեցին իրենց արիւնը" ։

Այսպիսի էր Լիփսիայի երկու հակառակորդներուն վի-
ճակը , 1520ին սկզբնաւորութեանը ։ Էկը կը պատրաստէր
պապական զօրութիւնը գրգռելու՝ որ իր հակառակորդը
նուաճէ , միւսը կը սպասէր՝ կռուոյն՝ ան նոյն հանդարտու-
թեամբը՝ որով ընդհանրապէս մարդիկ խաղաղութեան կը
յուսան ։ Սահմանուած էր նոյն տարին՝ որ անատենը նոր
սկսեր էր , տեսնէ փոթորոկին պատուիլը ։

## ԳԻՐՔ Ե

## ՀՌՈՎՄԷԱՑ ՊԱՊԻՆ ԿՈՆԴԱԿԸ

## 1520

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա

Այս միջոցիս՝ Թատրոնին մէջը նոր խաղարկու՛ մը երեւան ելլելու վրայ էր: Աստուածային կամքն ան էր որ Վիդ-դեմպէրկի միաբանը՝ մեծին Կարոլոսի օրերէն հետէ Քրիս-տոնէութեան մէջ երեւցած ինքնակալներէն ամենէն զօրա-ւորին հետ երես երեսի բերուի: Մանկահասակ եւ քաջա-ռոյգ իշխան մը ընտրեց՝ որ ամէն կերպով կերեւար թէ եր-կարատեւ Թագաւորութիւն մը պիտի վարէ. իշխան մը ընտ-րեց՝ որուն գաւազանը հին աշխարհի մեծ մասը ու նաեւ նորն ալ կառավարեց, անանկ որ՝ ան հռչակաւոր խօսքին պէս, իր լայնատարած գաւառներուն մէջը արեգակը ոչ եր-բէք իր մարը կըմտնէր. եւ աս իշխանին հետ դէմ դէմի բե-րաւ նուաստ Բարեկարգութիւնը, որ Լութերի վանքին աննշան խուցին մէջ սկսեր էր ողորմելի միաբանի մը տառա-պանքովը ու հեծութիւններովը: Աս ինքնակալին եւ իր տէ-րութեանը պատմութիւնը յայտնապէս սահմանուած էր երեւելի դաս մը տալ աշխարհի: Պիտի ցուցընէր բովանդակ մարդկային զօրութեան ոչնչութիւնը, երբոր անիկայ "Աս-տուծոյ տկարին" դէմ կըյանդգնի հակառակիլ: Ա Կորնթ. Ա. 25: Ան որ անանկ մէկ իշխան մը կոչուէր Թագաւորե-լու՝ որ Լութերին բարեկամ ըլլար, Բարեկարգութեան

յառաջադիմութիւնը անոր պաշտպանութեանը պիտի ընծայուէր. և թէ որ անանկ մէկը նստէր կայսերական Գահը որ Լուտերի հակառակ ըլլար, բայց ինքը զօրաւոր անձ մը չըլլար, Բարեկարգութեան յառաջադիմութիւնը պիտի ընծայուէր թագաւորող կայսրին տկարութեանը: Բայց Փավիայի մեծամեծ յաղթականն էր, որուն գոռոզութիւնը Աստուծոյ Բանին առջևը պիտի նուաճէր. ու բոլոր աշխարհ հրաւիրուած էր տեսնալու ըլլալը՝ թէ ան՝ որուն իշխանութիւն տրուած էր Ս. Ֆրանչիսկոսը Մատրիտու բանտերուն մէջ ձգելու, պարտաւորեցաւ իր թուրը աղքատ հանքագործի մը տղուն առջևը ձգել:

Մաքսիմիլիանոս կայսրը ոչ ևս կենդանի էր. վասն որոյ կայսրընտիրները Ֆրանքֆորթ հաւաքեցան անոր յաջորդ մը ընտրելու: Ժամանակին պարագաներուն նայելով բաւականաւ Եւրոպայի մեծ կարևորութիւն ունէր աս ընտրութիւնը. ու քրիստոնեայ երկիրներուն բոլորը աս ընտրութեանը կըսպասէին: Իրաւ Մաքսիմիլիանոս մեծութեան համբաւ հանած չէր, բայց իր յիշատակութիւնը ժողովրդոց սիրելի էր: Խանդակաթ սիրով կըյիշէին անոր հանճարեղութիւնը և քաղցր բնաւորութիւնը: Լուտեր իր բարեկամներուն հետ խօսակցած ատենը յաճախ կըյիշէր զինքը, ու մէկ օր մը անոր վրայով աս հետևեալ դիպուածը պատմեց:

Անգամ մը մուրացկանին մէկը կայսեր քովէն քալելով ու զանիկայ իբրև եղբայր կոչելով ողորմութիւն կըխնդրէր անկէց. "Ամա՛ն զի, կըսէր աղքատը, մենք երկուքս ալ մի և նոյն հօր Ադամայ որդիքն ենք. ես աղքատ եմ՝ բայց դուն հարուստ ես. և անոր համար պէտք է որ ինծի օգնես": Աս խօսքին վրայ կայսրը դէպ ՚ի մուրացկանին դառնալով ըսաւ. "Առ աս դրամը, ու գնա միւս եղբայրներուդ. և թէ որ անոնց ամէն մէկը այսչափ տայ քեզի, շուտով ինձմէ աւելի հարուստ պիտի ըլլաս":

Ժամանակը կըպահանջէր որ կայսերական թագը Մաք-

սիմիլիանոսէն աւելի զօրաւոր իշխանի մը գլուխը դրուի։ Նախնները փոխուելու վրայ էին. փառասէր Թագաւորներ պիտի կռուէին արեւմտեան կայսրութեան աթոռին վրայ. որուն ձեռքը ուժեղ էր նէ կայսրութեան երասանակը ան պիտի յափշտակէր, ու խորին խաղաղութեան պիտի յաջորդէր երկարատեւ և արիւնախանձ պատերազմներ։

Երեք Թագաւորք կըղձանային ձեռք ձգել կայսերաց Թագը Ֆրանքֆորթի ժողովին մէջ։ Նախ առաջին ինքզինքը առաջարկեց ծաղկահասակ իշխան մը՝ վախճանեալ կայսեր Թոռը, որ նոյն դարուն առջի տարին ծնած էր, և հետեւապէս տասնեւինը տարու էր։ Իր անունն էր Կարոլոս, ու ծնած էր Կէնթի մէջ։ Հօրը կողմանէ իր մեծ մայրը Մարիամ՝ Կարոլոս Քաջասրտին դուստրը՝ կտակաձգեր էր իրեն Ֆլանտրայի ու Պուրկոնտիոյ արգաւանդ երկիրները։ Իսկ Յովհաննա իր մայրը՝ Արակոնացի Ֆերտինանտոսի և անոր կնոջը Քասթիլյայի Իզապէլլայի դուստրը՝ ու Մաքսիմիլիանոս կայսեր որդւոյն Փիլիպպոսի կինը իրեն շնորհեր էր Սպանիայի Նաբոլիի ու Սիկիլիայի միացեալ Թագաւորութիւնները, որոնց վրայ Քրիստափոր Քոլոմպոս ալ աւելցուցեր էր Նոր Աշխարհքը։ Ասոնց վրայ՝ իր հաւըն մահը հիմա զինքը անցուց Աւստրիայի տէրութիւններուն ժառանգութեամբ տասցմանը։

Պատանին Կարոլոս բաւական չհամարելով բազմաթիւ արքայական գաւառները որ իր ձեռքին մէջ ժողվուեր էին, կայսերական բարձր աստիճանին հասնելու կը փափաքէր։ Կըկարծէր թէ բոլոր երկրաւոր մեծութեանց ծայրը անոր մէջ կը պարունակի, ու ժողովրդոց մտքերուն վրայ սքանչելի ներգործութիւն մը ստանալու միջոց մըն է ան։

Ֆրանչիսկոս Ա՛ Գաղղիայի Թագաւորը, կայսերական Թագին հետամուտ ըլլողներուն երկրորդն էր։

Ի վերջոյ Հենրիկոս Ը՛ Անգղիայի Թագաւորն ալ անոնց կարգը մտաւ, նախանձելով ան իշխանութեանը՝ որն որ կայսրընտիրները ընտրութեամբ պիտի տային կամ

Ֆրանչիսկոսի և կամ Կարոլոսի. բայց ինքը շուտով ետ քաշուեցաւ, ու ձգեց աս երկու նախանձորդներուն որ կայսերական թագին վրայով իրենց մէջը վիճաբանին։

Կայսրընտիրները աս երկու թագաւորներուն ընտրութեանը հակամիտեալ չէին. կըմտածէին թէ Գերմանիայի ժողովուրդը բոլորովին օտար իշխող մը պիտի համարի Գաղղիայի թագաւորը։ Իսկ Կարոլոսին վրայով կայսրընտիրներուն մէջ հաստատեալ սկզբունք մըն էր չընտրել այնպիսի իշխան մը՝ որ արդէն տէրութեան մէջ երևելի խաղարկու մը հանդիսացած էր։ Պապն ալ անոնց հետ կը վախնար այսպիսի ընտրութենէն. չէր ուզեր ոչ Նափոլիի թագաւորը՝ իր սահմանակիցը, և ոչ Գաղղիայի թագաւորը՝ որուն զօրութենէն կըսարսափէր ինքը։ Աւստի գրեց կայսրընտիրներուն և յորդորեց զանոնք ըսելով, "Ձեր մէջէն մէկը ընտրեցէք"։ Տրավէզի Կայսրընտիրը առաջարկեց որ Սաքսոնիայի Փրիդերիկոս կայսրընտիրը կոչուի նոյն բարձր աստիճանին. վասն որոյ կայսերական թագը Լուտերի աս բարեկամին ոտիցը առջին դրուեցաւ։

Այսպիսի՝ ընտրութիւնը բովանդակ Գերմանիայի ընդունելի եղած պիտի ըլլար. վասն զի Փրիդերիկոսի խոհեմութիւնը ու ժողովրդոց վրայ իր ունեցած սէրը աղէկ ճանչցուած էր։ Օրինակի աղագաւ՝ Էրֆուրթի բնակիչներուն ապստամբութեան ատենը ստիպեր էին իրեն որ բռնութեամբ առնէ քաղաքը. բայց ինքը յանձնառու չէր եղեր, որպէս զի արիւնհեղութիւն չըլլայ։ Իսկ երբոր ըսեր էին իրեն թէ հինգ հոգիի կեանքին վնաս պիտի չըլլայ, պատասխան տուեր էր թէ "Մէկ հոգիին կեանքն ալ շատ է"։ Նաև կըթուէր որ Բարեկարգութեան պաշտպանին ընտրուիլը՝ իսկ և իսկ 'ի գլուխ պիտի հանէր Բարեկարգութիւնը։ Արդեօք պէտք չէ՞ր որ Փրիդերիկոս իբրև Աստուծմէ կոչում մը համարէր կայսրընտիրներուն խնդիրքը։ Կարելի է որ Սաքսոնիայի կայսրընտրին հրաժարիլը՝ որն որ այնչափ կըգովաբանեն պատմագիրները, իրեն մէկ պակ-

ւութիւն մը սեպուելու է ։ Կարելի է որ ըստ մասին ալ իր հրաժարելուն ընծայուելու է ան մեծամեծ կռիւները՝ որոնցմով Գերմանիա ետքը բաժնուեցաւ ։ Բայց դժուարին է դատել թէ Փրիդերիկոս արդեօք մեղադրանաց արժանի է իր հրաժարելուն համար, եթէ գովութեան՝ իր խոնարհութեանը համար ։ Ինքը խորհեցաւ թէ տէրութեան ապահովութիւնը կըպահանջէ որ հրաժարի նոյն թագէն *, վասն որոյ Կարոլոսի վրայ դարձուց իր ընկերներուն միտքը ։

Հռովմայ Նուիրակը երբոր տեսաւ թէ Կարոլոս պիտի ընտրուի, իմացուց թէ պապը իր ընդդիմութիւնները վերցուցած է. և Յունիսի 28ին Մաքսիմիլիանոսի թոռը ընտրուեցաւ ։ Սպանիացի դեսպանները 30,000 ոսկի ֆիօրին մատուցին Սաքսոնիայի կայսրընտրին, իրենց թագաւորին կողմանէ իբրև նշան անոր երախտագիտութեանը. բայց Փրիդերիկոս չընդունեց այս ընծան; և իր նախարարներուն ալ պատուիրեց որ մէկ ընծայ մը չառնեն ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

ԼՈՒՏԵՐ նախատես էր թէ Բարեկարգութեան դատը շատ չանցած նորընտիր կայսեր առջևը պիտի ելլէ. վասն որոյ մինչդեռ Կարոլոս, Մատրիտ՝ Սպանիայի մայրաքաղաքն էր, գրեց ու ըսաւ անոր. "Ինէ որ իմ պաշտպանած դատս արժանի է երկնից Մեծվայելչութեան աթոռին առջևը ելևնալու, անշուշտ անարժան պիտի չըլլայ երկրաւոր իշխանի մը ուշադրութիւնը գրաւելու ։ Ո՛վ Կարոլոս, երկրի թագաւորներուն իշխանը, քու ամենապայծառ վեհափառութեանդ ոտքը կըձգեմ զիս իբրև աղէրսարկու, և կը պաղատիմ քեզի որ բարեհաճիս քու թևերուդ հովանաւորութեանը տակը ընդունիլ ոչ զիս, այլ յաւիտենական ճըշ-

*Pallavicini 1. p. 79.

մարտութեան դաշտը, որ զանիկայ պաշտպանելու համար Աս-տուած քեզի իշխանութիւն տուաւ”: Սպանիայի նորահաս թագաւորը Գերմանացի միաբանէ մը եկած սա օտարոտի նամակը զանցառութեան ձգեց, ու պատասխան չտուաւ:

Երբոր Լուտեր զուր տեղը իր աչքը դէպ ’ի Մատրիտ դարձուցած էր, կերևար թէ փոթորիկը իր բոլորտիքը կը սաստկանար: Մոլեգին նախանձաւորութեան բոցը Գեր-մանիայի մէջ կը բորբոքէր: Մելանկտոնի խօսքին նայելով, քահանաներէն ոմանք յայտնապէս կը ծանուցանէին թէ ով որ Լուտերը սպաննէ, մեղքէ ազատ պիտի ըլլայ: “Ժա-մանակը եկաւ՝ կըսէ Լուտեր, որ ատեն մարդիկ մեզ մեռ-ցունելնուն պիտի համարին թէ Յիսուս Քրիստոսի պաշ-տօն կը մատուցանեն”: Սա մահառիթ աղդարարութիւննե-րը իրենց բնական հետևանքները գործեցին: Լուտերի վարքը գրողներուն մէկը կը պատմէ՝ թէ մէկ օր մը երբոր ա-նիկայ Օգոստինեանց վանքին առջևը կը պըտըտէր, օտա-րական մէկը թևին մէջ ատրճանակ մը պահած քովը եկաւ ու ըսաւ անոր. “Ինչո՞ւ համար այսպէս մինակ կը պըտը-տիս”: Պատասխան տուաւ Լուտեր. “Աստուծոյ ձեռքն եմ ես. անիկայ է իմ զօրութիւնս և ապաւինութիւնս. մահ-կանացու մարդը ի՞նչ կրնայ ընել ինծի”: Ասոր վրայ օտա-րականին գոյնը նետեց, ու դողալով փախաւ գնաց *:

Սէրրա Լոնկա Ռէկոպուրկի ատենաբանը ևս սա միջոցիս այսպէս գրեց կայսրընտրին. “Ձեր բարձրութեան սահ-մաններուն մէջը ապաւինելու տեղ մը թող չգտնէ Լու-տեր. ամէն տեղ յայտնապէս թող հալածուի ու քարկո-ծուի. անիկայ աւելի կուրախացընէ զիս քան եթէ 10,000 ոսկի տաս ինծի” †:

Բայց սակայն փոթորիկը գլխաւորաբար Հռովմայի կողմէն իր ահարկու ձայնը կը հանէր: Թուրինկիացի ազ-նուական մը Վաղենտինոս Տեալբէն անունով Մայնցի

*Was kan mir ein Mensch thun ?(Keith, L. Umstände, p. 89 .)
†Tenzel hist. Ber. I, p. 168.

տրքեպիսկոպոսին փոխանորդը ու պապականութեան նախանձաւոր կողմնապահ մը, Հռովմայ մէջ Սաքսոնիայի կայսրընտրին երեսփոխանն էր։ Տեւտլեբէն գայթակղելով որ իր իշխանը հերետիկոս միաբանին պաշտպանութիւն կ՚ընէ, կըտեսնէր թէ աս անխոհեմ ընթացքովը, իր դեսպանութիւնը ոչնչացած է։ Մտածեց որ կայսրընտիրը վախցընելով պիտի համոզէ զանիկայ, որ ան ապստամբ աստուածաբանը երեսէ ձգէ։ "Ամենեւին ինծի ականջ դնող չկայ Լուտերին մատուցած ձեր պաշտպանութեանը պատճառովը", գրեց անոր։ Բայց Հռովմէականները խաբուեցան որ մտածեցին թէ վախցունեն խոհեմ Փրիդերիկոսը. վասն զի աս իշխանը աղէկ գիտէր թէ Աստուծոյ կամքը ու ժողովրդոց ձայնը առաւել անհակառակելի են քան թէ պապական աթեանին վճիռները։ Ուստի գրեց իր դեսպանին որ պապին իմացընէ թէ ինքը Լուտերը պաշտպանելուն տեղը միշտ թողուցած է որ անիկայ իր անձը պաշտպանէ. թէ արդէն ծանուցած է անոր որ համալսարանէն և մինչև անգամ Սաքսոնիայի երկրէն ելլէ. թէ վարժապետը յայտնած է որ պատրաստ է ջատագովելու և հիմայ կայսրընտրի վիճակներուն մէջ պիտի չըլլար թէ որ Կարոլոս Միլտից նուիրակը իշխանին աղաչած չըլլար որ իր մօտը պահէ Լուտերը, որպէս զի ուրիշ երկիրներ երթալով աւելի ազատութեամբ չգործէ քան որչափ կըգործէ Սաքսոնիայի մէջ։ Ասկէց ալ աւելին ըրաւ Փրիդերիկոս. ուզեց որ Հռովմայ աչքերը բանայ։ "Գերմանիա, ըսաւ իր նամակին մէջ, բազմաթիւ գիտնականներ կըպարունակէ՝ որոնք աղէկ տեղեկութիւն ունին լեզուներու և գիտութեանց. աշխարհականները ևս սկսեցին լուսաւորիլ, ու սրբազան գրոց վրայ սէր ձգել. և թէ որ Լուտեր վարդապետին ունեցած պատճառները բոլորովին մերժուին, շատ երկիւղ կայ որ խաղաղութիւնը ոչ երբէք վերստին պիտի հաստատուի։ Լուտերի վարդապետութիւնը շատ սրտերու մէջ խորին արմատացաւ։ Թէ որ փոխանակ Աստուածա-

շնչէ վիպասութիւններովը զանիկայ հերքելու՝ Եկեղեցին որոտումներովը զանիկայ նուաճելու ջանք ըլլուի, մեծամեծ վնասներ պիտի պատճառին, ու զարհուրելի և վտանգաւոր խռովութիւններ պիտի ծագին" ։

Կայսրընտիրը Լութերի հաւատարմութեանը վստահելով Տեռլեքէնի նամակը՝ և ուրիշ նամակ մը որ Ս. Պետրոսք կարդինալէն ընդուներ էր խրկեց Լութերին ։ Բարեկարգողը մեծապէս շարժեցաւ զանոնք կարդալուն․ իր բոլորտիքը շրջապատած վտանգը մէկէն տեսաւ, ու իր միտքը ակնթարթի մը չափ խռովեցաւ․ բայց ասանկ վայրկեաններուն էր որ իր հաւատքը երևան կելլէր իր բոլոր զօրութիւնովը ։ Շատ անգամ երբոր ինքը տկար էր ու յուսահատութեան մէջ իյնալու մօտ, կըտեսնուէր որ կելլէր կը կանգնէր, և աւելի՛ զօրեղ կերևար փոթորիկին մէջը ։ Ուրախութեամբ ազատած պիտի ըլլար այնչափ փորձութիւններէն, բայց աղէկ գիտէր թէ խաղաղութիւնը քանի՛ պիտի նստեցունէին իրեն, և անոր համար սրտմտութեամբ մերժեց զանիկայ, "Լուռ կենամ, կըսէ, յօժար կամօք այսպէս կընեմ՝ թէ որ թող կուտան ինծի, այսինքն է՝ թէ որ ուրիշները կըլռեցընեն ։ Ով որ իմ պաշտօններուս կը նախանձի, թող առնէ զանոնք ։ Ով որ իմ գրուածքներուս բնաջինջ ըլլալը կուզէ, թող առնէ զանոնք ։ Ես պատրաստ եմ լուռ կենալու, թէ որ ինծմէ չպահանջուի որ աւետարանական ճշմարտութիւնն ալ լուռ մնայ * ։ Ո՛չ կարդինալի աստիճան կուզեմ, ո՛չ ոսկի, և ո՛չ Հռովմայ յարգի բռնած բաներուն մէկը․ միայն աս կուզեմ որ փրկութեան ճամբան քրիստոնէից առջևը բաց մնայ ։ Թշնամեաց սպառնալիքներուն բոլորը չեն կրնար զիս վախցունել, անոնց խոստմունքներուն բոլորը չեն կրնար զիս համոզել" ։

Լութեր աս զգացումներովս բորբոքելով՝ իսկ և իսկ իր սիրտը նորէն արիացաւ, ու աւելի ընտրեց քրիստոնէական

*L. Epp. I. p. 462.

պատերազմը՝ քան թէ առանձնական հանդարտութիւնը ։ Մէկ գիշերը բաւական եղաւ որ Հռովմայ զօրութիւնը կործանելու փափաքը իր մտքին մէջ վերստին ծնանի. ուստի հետեւեալ առտուն այսպէս գրեց. “Իմ առաջադրութիւնս հաստատ է. միօրինակ կարհամարհեմ Հռովմայ սրտմտութիւնը ու հաճութիւնը. մէկ դի թող կենայ հաշտութիւնը. ոչ եւս կըփափաքիմ անոր հետ հաղորդութիւն մը ունենալու *: Թող դատապարտէ, թող այրէ իմ գրուածքներս. կարգը ինծի կուգայ որ ես ալ դատապարտեմ ու հրապարակաւ այրեմ պապական կանոններուն գիրքերը, որոնք որ բոլոր հերետիկոսութեանց ցանցն է. մինչեւ հիմա չափաւորութիւն գործածելս անօգուտ եղաւ, վասն որոյ հիմայ կըթողում զանիկայ” ։

Իր բարեկամները շատ հեռի էին այսպիսի հանդարտութենէ եւ Վիդդէմպէրկի մէջ եղած երկիւղը մեծ էր ։ “Տարօրինակ ակնկալութեան մը մէջ ենք՝ ըսաւ Մելանկտոն. աւելի կըկամիմ մեռնիլ քան թէ Լութերէն զատուիլ. թէ որ Աստուած օգնութիւն չերկէ մեզի, կըկորնչիմք” ։ Ամիսէ մը ետքը իր տառապանացը մէջ գրեց ու ըսաւ. “Մեր Լութերը դեռ կենդանի է. Աստուած տայ որ շատ ապրի. ինչու որ Հռովմէական չարախօսները ամէն միջոցները ՚ի գործ կըդնեն զանիկայ կորսնցունելու ։ Աղօթք ըրէք սըրբազան ուսմանց աներկիւղ պաշտպանողին պահպանուելուն համար” ։

Աս աղօթքները լսուեցան. կայսրընտրին ազդարարութիւնները՝ որ իր երեսփոխանին միջնորդութեամբը խօսեցաւ Հռովմայ, առանց հիման չէին ։ Լութերի քարոզութիւնը հնաւոր եւ ընդարձակ տեղուանք՝ խրճիթներու մէջ, վանքերու՝ քաղաքացւոց տուներու՝ ազնուականաց բերդերու՝ ճեմարաններու՝ եւ թագաւորաց պալատներու մէջ լսուեր էր ։ “Իմ կեանքս, ըսեր էր Սաքսոնիայի.

*L. Epp. I. p. 466.

Պէորք գուքսին, պտղաբեր թող ըլլայ միայն մէկ մարդ մը դարձի բերելով, և յօժարութեամբ պիտի կամենամ որ իմ գրքերուս բոլորը կորնչին": Բայց չէ թէ միայն մէկ մարդ մը՝ այլ մէկ մեծ բազմութիւն մը լուսաւորուեր էր աս խոնարհ վարդապետին գրուածքներէն: Ուստի ամէն տեղ մարդիկ պատրաստ էին զինքը պաշտպանելու. զինքը կորսնցունելու սուրը Վատիկանու պալատին մէջ կը շինուէր, բայց Գերմանիայի մէջ դիւցազունք կելլէին որ իրենց կեանքը վտանգի դնելով զանիկայ կը կամէին պաշտպանել: Նոյն ատենը որ եպիսկոպոսները բարկութեամբ կը բորբոքէին՝ իշխանները լուռ կը կենային՝ ժողովուրդը զարմացած կը սպասէր՝ ու որոտմունքը արդէն կը լսուէր եօթնաբլուր քաղաքին վրայ, Աստուած Գերմանիայի իշխանաւորները շարժեց որ իր ծառային համար պատնէշ մը յօրինեն:

Սեղբեստրոս Շօմպուրկցին՝ Ֆրանկօնիայի խիստ զօրաւոր ասպետներուն մէկը աս առիթով իր որդին Միլդէմպէրկ խրկեց Բարեկարգողին քովը: "Դու կեանքդ վտանգի մէջ է՝ գրեր էր Շօմպուրկցին, և թէ որ կայսրընտրիչներուն՝ իշխաններուն կամ դատաւորներուն օգնութիւնը քեզի չհասնի, կաղաչեմ քեզի, զգուշացիր Պոհեմիա երթալէն, ուր որ արդէն այնչափ գիտնական անձինք այնչափ բան կրեցին. Նայէ որ ինծի գաս: Աստուծոյ կամօքը շատ չանցած հարիւր ազնուականներէն աւելի պիտի հաւաքեմ, ու անոնց օգնականութեամբը պիտի կարենամ ամէն վտանգներէն քեզ պահպանել":

Ֆրանչիսկոս Սիկինգէնցին իր դարուն դիւցազնը՝ որուն արիական քաջասրտութիւնը արդէն տեսանք, կը գրէր զԲարեկարգողը՝ թէ անոր համար որ սիրելու արժանաւոր կը կարծէր զանիկայ, և թէ անոր համար որ միաբաններուն ատելի էր ան*: "Իմ ծառայութիւնս՝ իմ ստացուածքս, և

*Corp. Reform, I. p. 132.

իմ անձս, մէկ խօսքով իմ բոլոր ունեցածս քեզի համար է. գրեց անոր։ Քու միտքդ Աւետարանին ճշմարտութիւնը հաստատ պահել է. պատրաստ եմ աս գործին մէջ իմ օգնութիւնս քեզի մատուցանել"։ Հարմութ Կրոնպէրկցին ալ նոյն խօսքը կըխօսէր։

Ուլրիկ Հութթընցին վեշտասաներորդ դարուն բանաստեղծը ու քաջամարտիկ ասպետը ամէն առիթները ձեռք կառնէր Լութերին կողմանէ խօսելու։ Բայց ինչ մեծ անհամեմատութիւն կար աս երկու անձանց մէջ. Հութթէն գրեց Բարեկարգողին թէ՝ "Պէտք է որ ունենամք սուր, նետ, նիզակ, ու ռումբ, որպէս զի Սատանային կատաղութեանը դէմ դնեմք"։ Լութեր աս թուղթերը ընդունելուն գոչեց ըսելով, "Աւետարանին պաշտպանութեանը համար զէնքերու և արիւնհեղութեան չեմ դիմեր ես։ Աստուծոյ Բանին քարոզութեամբը աշխարհ յաղթուեցաւ, Աստուծոյ Բանովը Եկեղեցին փրկուեցաւ, և նոյն Բանովը անիկայ վերստին պիտի նորոգուի"։ Վերոյիշեալ Շօմպուրկի նամակը ընդունելուն դարձեալ ըսաւ. "Չեմ անարգեր անոր առաջարկութիւնը. միայն թէ մէկու մը ապաւինիլ չեմ ուզեր՝ բայց եթէ Քրիստոսի միայն"*։ Հութթըն աւելի տեղեակ էր Լութերի նպատակին ու իրենին տարբերութեանը. և հետևապէս աս շքեղութեամբս գրեց անոր ան նիւթին վրայ. "Իմ խորհուրդներս երկրաւոր նպատակներու կըվարուին. բայց դուն այսպիսի բաները արհամարհելով միայն Աստուածային բաներու անձնատուր եղած ես"†. և ասոր վրայ իսկ և իսկ սկսեց աշխատիլ որ եթէ կար է նէ ճշմարտութեան կողմը դարձունէ Ֆէրտինանտոսը ու Ե Կարոլոսը‡։

Այսպէս մէկ վայրկեանի մը Լութերի թշնամիները զէնքը կըլնուածէին, ու միւս վայրկեանին իր բարեկամները

*L. Epp. I. p. 148.
†L. Opp. Lat. I. p. 175.
‡Corp. Ref. I. p. 201.

զինքը պաշտպանելու կ՚ելլէին ։ "Իմ նաւակս , կ՚ըսէ , հովերուն առջին ինկած կ՚երթայ . երկիւղը ու յոյսը փոփոխակի կուտիրեն բայց հոգ չեմ ըներ ես" ։ Սակայն իր ընդունած կարեկցութեան ապացոյցները իրենց ազդեցութիւնը գործեցին անոր մտացը ։ "Տէրը կը թագաւորէ , ըսաւ՝ իր ձեռքը յայտնապէս ներկայ կը տեսնեմ" ։ Լուտեր զգաց որ այլ ևս մինակ չէր ինքը . իր խօսքերը պտղաբեր եղեր էին , և աս խորհուրդը նոր սիրտ տուաւ՝ իրեն ։ Կայսրընտրին օգտին մնասակար ըլլալու երկիւղը ո՛չ ևս կրնար նուաճել զինքը , վասն զի հիմա կը զգար թէ ուրիշ պաշտպաններ ալ ունէր որ պատրաստ կեցեր էին Հռովմայ բարկութեանը դէմ դնելու ։ Ուստի և առաւել ազատ եղաւ , և իր միտքը նոր յառաջադիմութիւն առաւ ։ Ուստի կայսրընտրին մատրանապետին գրեց ու ըսաւ . "Իրաւունք է որ Հռովմ հասկընայ թէ՝ թէպէտ և իր սպառնալիքներովը յաջողութիւն ալ ստանայ Վիտէմպէրկէն զիս տարաքսել տալու , այլ առով միայն իրեն վնաս պիտի գործէ ։ Ո՛չ Պոհեմիայի մէջ , այլ Գերմանիայի մէջ տեղն են անոնք որ պատրաստ են զիս պաշտպանելու պապական սպառնալիքներուն դէմ . թէ որ իմ թշնամիներուս համար պատրաստածիս բոլորը դեռ անոնց դէմ չելլի , աս համբերութիւնը ո՛չ իմ չափաւորութեանս և ո՛չ իրենց սաստիկ բռնութեանը թող ընծայեն , այլ կայսրընտրին անուանը ու Վիտէմպէրկի համալսարանին օգուտներուն . վասն զի կը վախնայի որ ասոնց վնաս մը ըլլայ . բայց հիմա որ ասանկ երկիւղները ցրուեցան , Հռովմայ և անոր պալատականներուն դէմ իմ ծիգս պիտի կրկնապատկեմ" ։

Ասոր սակայն ո՛չ այնչափ մեծամեծներուն ապաւինած էր էր Բարեկարգողը . շատ անգամ ստիպեր էին իրեն որ իր գիրքերուն մէկը հրատարակէ՛ ի նուէր Յովհաննէս դուքսին՝ որ կայսրընտրին եղբայրն էր , բայց ինքը հրաժարեր էր աս բանը ընելէն ։ "Կը վախնամ , ըսեր էր , որ աս աղ-

*դարարութիւնը իրմէն եղած չըլլայ. Աստուածաշունչ գիրքը ուրիշ անուն մը փառաւորելու պիտի չծառայէ, բայց միայն Աստուծոյ անունը": Սակայն ետքը Լուտեր ու երկիւղները իր վրայէն թօթուեց, ու 'ի նուէր Յովհաննէս դուքսին հրատարակեց բարեգործութեան վրայ իր ճառը: Բարեկարգողին բոլոր գրուածքներուն մէջ ասիկայ մէկ ճառ մըն է՝ որուն մէջ խիստ աղէկ կերպով կըբացայայտէ հաւատքով արդարանալու վարդապետութիւնը. ան մեծ ճշմարտութիւնը՝ որուն զօրութիւնը շատ գերազանց կըհամարի Հութթընի սուրէն, Սիքինգէնի զինուորեալ գունդերէն, ու դուքսերէն կամ կայսրընտիրներուն պաշտպանութենէն:*

*"Բոլոր բարեգործութիւններուն առաջինը՝ ազնուագոյնը և մեծագոյնը, կըսէ, Յիսուս Քրիստոսի վրայ հաւատքն է: Անոնց ամէնք պէտք է որ անկէ առաջ գան: Ուրիշ բան չեն բարեգործութիւնները բայց եթէ հաւատոյ պտուղնեները. միայն անկէց է որ կընդունին իրենց բոլոր զօրութիւնը . . . :*

*"Քրիստոնեայ մը որ Աստուծոյ վրայ հաւատք ունի, բոլոր ըրածը ազատութեամբ և ուրախութեամբ կընէ. բայց ան մարդը որ Աստուծոյ հետ մէկ չէ, հոգով լեցուն է, ու ծառայութեան տակ է. միշտ տառապանքով իր միտքին մէջ կըմտածէ թէ որչափ բարեգործութիւն կըպահանջուի իրմէն. մէկուն մէկալին կըհարցընէ՝ ու իր սիրտին հանգիստ չգտներ, և ամէն բան վախով կընէ ու առանց գոհ ըլլալու:*

*"Ասոր համար է որ ես միշտ հաւատքը վեր կըբռնեմ, բայց աշխարհի մէջ ուրիշ կերպ է բանը: Հոն կըցուցուի թէ գլխաւոր բանը շատ գործեր ունենալն է. երևելի և ամէն աստիճանի գործեր, առանց նկատելու թէ արդեօք հաւատքով կըգործուին: Այսպէս անոնք իրենց խաղաղութիւնը կըշինեն ոչ Աստուծոյ բարեհաճութեանը վրայ, այլ իրենց արժանաւորութեանցը՝ կամ թէ ըսեմք աւազի վրայ". Մտթ. Է. 26:*

“Ըսուի թէ հաւատք քարոզելը բարեգործութենէ կը ցրտացընէ զմարդը. բայց մէկ մարդ մը թէ և բոլոր իր անուրն՝ կամ մինչև անգամ բոլոր ստեղծական էակներուն կարողութիւնը իր վրայ միացած ունենայ, միայն հաւատքով ապրիլը չափազանց մեծ պիտի գայ իրեն կատարելու։ Ո՞վ է որ հիւանդ մարդու մը ըսեմ, Քու առողջութիւնդ վրադ թող գայ, և ան ատենը քու անդամներդ պիտի գործածես. կրնա՞յ ըսուիլ թէ ես զինքը կարգիլեմ իր անդամները գործածելէն։ Առողջութիւնը աշխատութենէն առաջ պէտք չէ՞ գալ։ Ասոր պէս է երբոր հաւատք կը քարոզեմք. հաւատքը գործէն առաջ պէտք է երթալ որ կարելի ըլլայ բարեգործութիւն ընել։

“Ուրեմն ո՞ւր կը գտնուի՝ պիտի ըսէք, այս հաւատքը, և ի՞նչպէս ստանալու է զանիկայ։ Արդարև ասիկայ շատ հարկաւոր է մեզի գիտնալ։ Հաւատքը միայն Յիսուս Քրիստոսէն կուգայ, որ խոստացուած ու տրուած է ձրիապէս։

“Ո՛վ մարդ, մի՛տքդ բեր զՔրիստոս, և տես թէ Աստուած իր ողորմութիւնը ի՛նչպէս կը ցուցընէ քեզի առանց քու մէկ արժանաւորութեանդ առաջ երթալու. և իր շնորհացը այս յայտնութենէն քաղէ քու բոլոր մեղքերուդ ներեալ ըլլալու հաւատքը և ապահովութիւնը։ Գործերը ոչ երբէք կրնան արտադրել այս հաւատքը։ Ասիկայ Քրիստոսի մահուանը վէրքերէն բղխած արիւնին հետ կը վազէ։ Անկէց է որ մեր սրտերուն մէջ կը հոսի։ Ան վէմը ուրկէց մեր կաթը ու մեղրը կը վազէ, Քրիստոս է”. Բ. Օրէն. ԼԲ։

## ՀԱՏՈՒԱԾ Գ

ԲԱՑՑ շնորհաց և անյիշաչարութեան մեծ ճշմարտութեան տեղը մարդկային արդեանց գաղափարը փոխանա-

կելէն 'ի զատ, ուրիշ չարիք մըն ալ բուսեր էր Եկեղեցիին մէջ ։ Քրիստոսի Հօտին խոնարհ Հովիւներուն մէջը ամբարտաւան իշխանութիւն մը ելեր էր ։ Լուտեր իր բոլոր ներգործութիւններուն մէջ առանձին պարապեր էր քննելու պապականութեան ծագումը՝ յառաջադիմութիւնը ու բըռնաբարութիւնները ․ և իր ստացած տեղեկութիւնները զարմացուցեր էին զինքը ։ Աւստի չտարակուսեցաւ զանօնք յայտնելու, անանկ հարուած մը տալով, որ հին ժամանակի Սոփոկէսի գաւազանին նման պիտի արթընցունէր երկար ատենէ 'ի վեր ծառայութեան մէջ թմրած մնացած ժողովուրդը ։ Մինչև անգամ՝ Հռովմ իր զարհուրելի կոնդակը հրատարակելու ժամանակ չգտած, Լուտեր պատերազմի կոչեց զանիկայ ։ "Լռելու ժամանակը անցաւ, կըսէ, ու խօսելու ժամանակը հասաւ" ։ Յունիսի 23ին՝ 1520ին, հրատարակեց ան հռչակաւոր թուղթը, որ կը կոչուի ․ "Թուղթ առ կայսերական Մեծափառութիւնն և առ բարեպաշտօն իշխանաւորս Գերմանացւոց ազգին, վասն բարեկարգութեան Քրիստոնէութեան" ։

"Ոչ եթէ յանդգնաբար և առանց խորհրդածելու է, ըսաւ աս թուղթին սկզբնաւորութեանը, որ ես հասարակ ժողովրդոց կարգէն մարդ մը ըլլալով կըհամարձակիմ ձեր բարձրութեանցը զիս ուղղելու ։ Ան թշուառութիւնը և ան բռնաբարութիւնը որ հիմա բոլոր Քրիստոնէից երկիրները և յաւէտ Գերմանիայինը կըճնշէ կընուաճէ, աս նեղութեան աղաղակը ինծմէ կըհանէ ։ Խռնադատուած եմ օգնութեան համար աղաղակելու ․ պէտք է որ տեսնեմ թէ Աստուած իր Հոգին մեր հայրենակիցներէն ոմանց չտա՞ր, և այնպէս իր ձեռքը չե՞րկընցունէր մեր թշուառ ազգը փըրկելու ։ Աստուած մեր վրայ ծաղկահասակ և բարեբար իշխան մը դրաւ (Կարոլոս Եերորդ կայսրը), և ասանկ՝ մեր սրտերը մեծամեծ յուսով լցուց ․ բայց մենք ալ մեր կողմանէ ձեռքերնուս եկածին բոլորը պարտիմք ընել ։

"Արդ՝ պինտ առջի հարկաւոր բանը ան է որ ամենեւին մեր

անձին զօրութեանը կամ մեր իմաստութեանը չապաւինիմք։ Ինչ որ մենք մեզի ապաւինելով աղէկ գործ մըն ալ սկսեմք, Աստուած կըկործանէ ու կաւրէ զանիկայ։ Փրիդերիկոս առաջին, Փրիդերիկոս երկրորդ, և ասոնցմէ զատ ուրիշ շատ կայսերեր որոնց առջևը աշխարհ կըդողար, պապերուն ոտացը կոխան եղան, որովհետև աւելի իրենց զօրութեանը ապաւիներ էին քան թէ Աստուծոյ. և անոր համար չկրցան ալ յաջողիլ. Աս պատերազմը գժոխքին բոլոր զօրութեանը դէմ կըլլայ։ Վասն որոյ պէտք է որ աս գործին ձեռք զարնեմք՝ մարմնաւոր զօրութենէն բանի մը չյուսալով, այլ խոնարհաբար Տէրոջը ապաւինելով. քրիստոնէից հիմակու քաշած նեղութեանը վրայ արթուն ըլլալով, քան թէ չարագործներուն գործերովը պատաղելով։ Ինչ որ ուրիշ ճամբայ բռնուի, կարելի է անանկ երևայ թէ ատեն մը գործը յաջող կերթայ, բայց յանկարծ կռիւին առջցած ատենը շփոթութիւն մը պիտի վրայ գայ, չար մարդիկ անհամար չարիք պիտի պատճառեն, ու աշխարհ արիւնով պիտի ողողի։ Որչափ մեծ ըլլայ մեր զօրութիւնը՝ այնչափ մեծ է մեր վտանգը, թէ որ Տէրոջը երկիւղին մէջ չեմք քալեր"։

Աս կանխաբանութենէս ետև այսպէս կըշարունակէ Լուտեր.

"Հռովմէականները երեք պատնէշ կանգնեցին իրենց բոլորտիքը որ ամէն կերպ բարեկարգութենէ զգոյշ կենան։ Առաջին՝ երբոր աշխարհային իշխանութիւնը անոնց վրայ յարձակեցաւ, ուրացան անոր իրենց վրայ զօրութիւն ունենալը, ու հաստատեցին թէ հոգևոր իշխանութիւնը անկէց վեր է։ Երկրորդ՝ երբոր մէկը սուրբ Գիրքերէն զիրենք յանդիմանեց, պատասխան տուին թէ պապէն զատ մէկը կարող չէ սուրբ Գիրքերը մեկնել։ Երրորդ՝ երբոր ժողովի բողոք եղաւ, պատասխան տուին թէ ծայրագոյն քահանայապետէն զատ մէկը իշխանութիւն չունի ժողով գումարելու։

"Այսպէս յափշտակեցին մեր ձեռքերէն այն երեք գաւազանները որ իրենց ուղղութեանը համար էր, ու ամէն չարեաց անձնատուր եղան։ Հիմա Աստուած մեզի օգնութեան հասնի, ու տայ մեզի այն փողերուն մէկը որ կործանեցին Երիքովի պարիսպը։ Մեր բերնին շունչովը կործանենք անոնց թղթաշէն պարիսպները որ իրենց բոլորտիքը շինեցին, ու սատանային նենգութիւնները և խորամանկութիւնները յայտնի ընելով վեր առնենք ամբարիշտները պատժող խարազանները"։

Լուտեր այնուհետև կըսկըսի յարձակիլ. նոյն իսկ իր հիմերէն կըշարժէ այն պապական միապետութիւնը՝ որ շատ դարերէն 'ի վեր արևմտեան ազգերը մէկ տեղ կապեր էր հռովմէական եպիսկոպոսին իշխանութեանը տակ։ Ազդու զօրութեամբ յառաջ կըբերէ նախ այն ճշմարտութիւնը՝ որ եկեղեցիին առջի դարերէն ևս ծածկեալ էր անկէց, թէ զոհագործութեան մասնաւոր պաշտօնատարութիւն մը չկայ Քրիստոնէից մէջը։

"Ըսուի թէ պապը՝ եպիսկոպոսները՝ քահանաները՝ և անոնք որ վանքերը կըբնակին, հոգևոր կամ եկեղեցական իշխանութիւնը կըկազմեն. ու իշխանները՝ ազնուականները՝ քաղաքացիները և գեղջուկները աշխարհային իշխանութիւնը։ Ասիկայ արդարև գեղեցիկ առասպել մըն է. բայց մէկը թող չշփոթի անով։ Բոլոր քրիստոնեայք հոգևոր իշխանութեան հաղորդ են. և ուրիշ տարբերութիւն մը չկայ մէջերնին, բայց միայն իրենց պաշտօններուն տարբերութիւնը։ Ամէնքնիս ալ մէկ մկրտութիւն՝ մէկ հաւատք ունինք, և ասիկայ է հոգևոր մարդը կազմողը։ Պապին կամ եպիսկոպոսի մը ըրած օծումը, հերակտրութիւնը ձեռնադրութիւնը ևն կրնան կեղծաւոր մը կազմել բայց ոչ երբէք հոգևոր մարդ մը։ Ամէնքնիս ալ մկրտութեամբ հաւասարապէս նուիրեալ քահանաներ ենք, ինչպէս սուրբն Պետրոս կըսէ. "Դուք էք քահանայութիւն, թագաւորութիւն". (ա Պետր. բ. 5, 9.) բայց ամէնուն չվերաբերիր աս

պաշտօնը կատարել . վասն զի մէկը չկրնար իր վրան առնել ան բանը որ հաւասար ամէնունն է՝ առանց ամէնուն հաւանութեանը ։ Բայց թէ որ մենք չունենայինք աս Աստուածային նուէրքը , պապին ձեռնադրութիւնը բնաւ մեզ քահանայ չկրնար կազմել ։ Օրինակի աղագաւ՝ թէ որ թագաւոր մը տայր՝ որդի ունենայ և անոնց ամէնն ալ հաւասար իրաւունք ունենան թագաւորական աթոռը ժառանգելու , ու մէջերնուն մէկը ընտրեն որ բոլորին տեղը աս պաշտօնը կատարէ , ամէնն ալ թագաւոր կըլլան , թէպէտ մէկերնին կը վարէ իրենց հասարակաց իշխանութիւնը ։ Այսպէս է և Եկեղեցիինը ։ Թէ որ բարեպաշտօն աշխարհականներ անապատ տեղ մը աքսորուին , ու իրենց մէջը ձեռնադրեալ քահանայ չունենալով միաբանին ան պաշտօնին համար իրենցմէ մէկը ընտրելու՝ ամուսնացեալ կամ ամուրի , աս մարդը աշխարհի բոլոր եպիսկոպոսներէն ձեռնադրուածի պէս ճշմարիտ պաշտօնեայ մը կըլլայ ։ Օգոստինոս՝ Ամբրոսիոս՝ և Կիպրիանոս աս կերպովս ընտրուեցան ։

"Ասկէց կը հետևի թէ աշխարհականները ու կարգաւորները , իշխանները ու եպիսկոպոսները , կամ ինչպէս անոնք կըսեն՝ եկեղեցականները ու աշխարհականները իրօք իրարմէ տարբերելու բան մը չունին , բայց եթէ իրենց պաշտօնները ։ Ամէնքն ալ մի և նոյն իշխանութիւնը ունին , միայն թէ ամէնուն կատարելու գործը մի և նոյն չէ ։

"Թէ որ ասիկայ ճշմարիտ է , դատաւորը ինչո՞ւ պէտք չպատժէ եկեղեցականը . աշխարհական իշխանութիւնը Աստուծմէ հաստատուեցաւ չարագործները պատժելու ու բարի գործողները պաշտպանելու համար . ու բացարձակ ազատութիւն տրուելու է անոր որ բոլոր քրիստոնէից վրայ իշխէ , ով որ կըլլան նէ ըլլան անոնք . թէ պապ , թէ եպիսկոպոս , թէ քահանայ , թէ վարդապետ , թէ մայրապետ , և թէ ո՛ և իցէ ով ։ Սուրբն Պօղոս բոլոր քրիստոնէից կը պատուիրէ ըսելով . Ամէն հոգի (և հետևապէս պապն ալ) իշխանութեանց հնազանդ ըլլան , վասն զի անոնք պարապ տեղը մէջքերնին թուր կապած չեն" . Հռովմ . ժգ . 1—4 ։

Նմանապէս և միւս պատմիչներն ալ կործանելով Լութեր յառաջացաւ քննել Հռովմայ բոլոր մոլորութիւնները : Ընտանի ոճով մը պերճախօսութեամբ յայտնեց ան չարիքները որ դարերէն հետէ փորձուած ու ճանչցուած էին : Ամենեւին լսուած չէր ասոր նման վսեմ բողոք մը : Եկեղեցւոյ մեծ ժողովքին առջեւը խօսեցաւ Լութեր . յարձակեցաւ պապական իշխանութեան ան մոլորութիւններուն վրայ՝ որ դարերէն հետէ բոլոր ազգաց վրայ ծանրացեր էին . ու Բարեկարգութիւնը՝ որուն այնպէս բարձրաձայն 'ի խնդիր ելեր էր ինքը՝ բովանդակ աշխարհի քրիստոնէից վրայ իր ազդու ներգործութիւնը պիտի կատարէր , ու այնչափ պիտի տևէր որչափ երկրի վրայ մարդկային ազգը կըկենայ :

Նախ և առաջ պապէն սկսեց : "Շատ այլանդակ բան է , կըսէ , տեսնել որ Քրիստոսի փոխանորդ կոչուողը այնպէս փառաւորութիւն մը ցուցընէ որ կայսրերունը չհաւասարին անոր : Ասիկա՞յ է աղքատ և հեզահոգի Յիսուսի՝ կամ խոնարհ Պետրոսի նմանիլը : Պապը , կըսեն , աշխարհի տէրն է : Բայց Քրիստոս՝ որուն փոխանորդը ըլլալ կըպարծենայ ինքը , ըսաւ . Իմ թագաւորութիւնս աս աշխարհէն չէ : փոխանորդին իշխանութիւնը իր Տէրոջը իշխանութենէն անդին պէ՞տք է որ անցնի" :

Այնուհետև յառաջացաւ ստորագրել պապական կառավարութեան դիտաւորութիւնները : "Գիտէ՞ք թէ կարդինալները ինչ վախճանի կըծառայեն . ձեզի ըսեմ : Իտալիա ու Գերմանիա ունին բազմաթիւ վանքեր , կրօնական շինուածներ և եկեղեցական թոշակներ որոնց ամէնը առատ հարստութիւն ունին : Արդ՝ ի՞նչ վարպետութեամբ աս հարստութիւնը Հռովմ կրնայ քաշուիլ . կարդինալներ հաստատուեցան , ու աս վանքերը և առաջնորդութիւնները անոնց տրուեցան . և հիմա՝ Իտալիա գրեթէ անապատ դարձաւ . վանքերը աւերեցան , եպիսկոպոսութեան վիճակները մաշեցան , քաղաքները կործանելու վրայ են , բնակիչներուն բարոյականութիւնը վերցաւ , կրօնական

պաշտամանց վերջանալը մօտեցաւ, ու քարոզութիւնը խսպառ խափանեցաւ։ Ինչո՞ւ համար է ասոնց ամէնը. ապաքէն անոր համար որ եկեղեցիներուն բոլոր հարստութիւնը Հռովմ երթալ պէտք է"։

"Ծաղրական բան չէ՞ որ պապը ըսէ թէ կայսերութեան օրինաւոր ժառանգը ինքն է. ո՞վ տուաւ զանիկայ իրեն։ Արդեօք Քրիստոս տուա՞ւ երբոր ըսաւ, Ազգերուն թագաւորները անոնց վրայ կը տիրեն, բայց դուք այնպէս պիտի չըլլաք. (Ղուկ. իբ. 25, 26։) Ինչպէս հնար է մէկ տէրութիւն մը կառավարել, և նոյն ատենը քարոզել, աղօթել, ուսման պարապիլ, ու աղքատներուն հոգը տանիլ։ Քրիստոս երկոտասան առաքելոց արգիլեց հետերնին ոսկի կամ երկու հանդերձ տանիլ. ինչու որ առաքելական պարտաւորութիւնները հնար չէին կատարուելու մինչև որ բոլոր ուրիշ հոգերէ ազատութիւն չըլլայ. բայց պապը կուզէ որ մի և նոյն ատեն և՛ տէրութիւնը կառավարէ, և՛ պապ ըլլայ"։

Լուտեր յառաջ կերթայ մերկացընել զքահանայապետը իր յափշտակած իշխանութիւններէն. "Պապը թող հրաժարի Նաբօլիի և Սիկիլիայի թագաւորութիւնը իրեն սեփհականելէն. թէ որ ես իրաւունք ունիմ նէ անոր՝ ինքն ալ ունի։ Նոյնց արդար իրաւունքի և հակառակ Քրիստոսի պատուէրին ինքը ստացեր է Բոլոնիա՝ Իմօլա՝ Ռէվէնա՝ Ռոմանիա՝ Անքօնայի սահմանը, եւն։ Սուրբն Պօղոս կըսէ. Մէկը չըլլար որ զինուորի՝ ու աս կեանքիս բաներուն պատաղի. (Բ Տիմ. բ. 4.) բայց պապը որ զինուորեալ եկեղեցիին գլուխն եմ կըսէ, կայսրերէն ու թագաւորներէն աւելի աս կեանքին բաներուն կըպատաղի։ Պէտք է որ ազատեմք զինքը ամէն աս ծանրութիւններէն։ Կայսրը պապին ձեռքը թող տայ Աստուածաշունչը ու Աղօթագիրքը, որ Իւր Սրբութիւնը կառավարութիւնը թագաւորներուն ձգէ, ու քարոզութեան և աղօթքի պարապի"։

Եկեղեցականներուն ամուսնութեանը եկաւ կարգը. և ասիկայ առաջին անգամն էր որ Լուտեր աս նիւթին վրայ խօսեցաւ։

"Ի՞նչ վիճակի ինկած են եկեղեցականները, և որչափ քահանաներ կը գտնեմք որ ապօրինաւոր կնիկներով ու զաւկըներով և իրենց խղճին դառն խայթոցներովը ծանրաբեռնած են, ու մէկը չհասնիր իրենց օգնելու։ Կարելի է որ պապին ու Եպիսկոպոսներուն բանին կուգայ թող տալ որ իրերը ուզածնուն պէս երթան, ու ան որ կորսուած է կորսուած մնայ։ Այսպէս թող ըլլայ. բայց ինծի որ հարցընեն, ես իմ խիղճս ազատ պիտի պահեմ, համարձակ պիտի բանամ իմ բերանս. թէ պապը՝ թէ եպիսկոպոսները և թէ ով որ կուզէ թող նեղանայ։ Աւստի կըսեմ թէ Քրիստոսի և իր առաքեալներուն հաստատածին պէս՝ ամէն քաղաք ժողովրդապետ մը կամ եպիսկոպոս մը պիտի ունենայ, ու աս ժողովրդապետը ուզէնէ կընայ կին մը ունենալ, ինչպէս Պօղոս կըգրէ Տիմոթէոսին թէ Պէտք է որ եպիսկոպոսը մէկ կնոջ մը այր ըլլայ. (Ա Տիմ. Գ. 2.) ինչպէս որ Յունաց եկեղեցիին մէջ քահանաները կրնան ամուսնացեալ ըլլալ։ Բայց Սատանան համոզեց զպապը ինչպէս որ Պօղոս կըսէ Տիմոթէոսին (Ա Տիմ. Դ. 1—3.) որ եկեղեցականները ամուսնանալէն արգիլէ։ Ասկէց են ան անհամար չարիքները։ Ու ի՞նչ է աստր ճարը. ի՞նչ դարման մատուցանել պէտք է այնչափ բազմաթիւ եկեղեցականներուն որ ամէն կերպով անմեղադրելի են, բայց միայն որ գաղտնի կենակցութեամբ կապրին կնկան մը հետ՝ որուն հետ կը կամենան թէ որ բանը իրենց մնայ՝ իրենց բոլոր սրտովը ամուսնութեամբ կապակցիլ։ Ն. Հ. իրենց խիղճերը թող հանգստացընեն. աս կնիկը ամուսնութեամբ իրենց օրինաւոր կին թող ընեն. անոր հետ առաքինաբար թող ապրին առանց ինքզինքնին չփոթելու թէ արդեօք պապին հաճելի է թէ չէ։ Հոգիին փրկութիւնը աւելի կարևոր է քան թէ ան բռնաւորական և ինքնիշխան օրէնքները որ Տէրոջմէն չեն գար":

Ահա աս ճամբովս էր որ Բարեկարգութիւնը կըջանար Եկեղեցիին մէջ մաքուր բարոյականութիւնը նորոգել։ Ասկէ ետքը Բարեկարգողը շարունակեց և ըսաւ.

“Պապը կը պարտաւորէ ամէն բան ձգել, իշխանութիւն՝ հարստութիւն և պատիւ, թէ որ ատենք ընելով կրնայ միայն մէկ հոգի մը ազատել։ Բայց աւելի կը կամի որ բոլոր տիեզերքը կորնչի, քան թէ ինքը իր յափշտակած իշխանութիւնէն մազի չափ հրաժարի։ Այսպէս եմ ես այս բաներուն վրայով”։

Այնուհետև Լութեր համալսարաններուն ու դպրոցներուն կը դառնայ. “Շատ կը վախնամ, կ'ըսէ, որ համալսարանները պիտի ըլլան դժոխքը իջեցնող մեծամեծ դռներ, թէ որ ժրութեամբ չեն սկսիր անոնց մէջ Սուրբ Գիրքերը բացատրելու, ու զանոնք մեր պատանիներուն սրտերուն մէջ տպաւորելու։ Չեմ խրատեր մէկ ծնողք մը որ իր որդին այն տեղը դնէ ուր որ Սուրբ Գիրքերը իբրև կանոն վարուց համարուած չեն։ Ինչ և իցէ վարժութիւն՝ որուն հետը Աստուծոյ Բանը չսորվուիր, ապատաւոր պիտի ըլլայ”։ Ասոնք անաչառ խօսքեր են, որ ամէն դարերու մէջ կառավարութիւնները՝ գիտնականները ու ծնողքները աղէկ կընեն թէ որ մտածեն։

Գերմանացւոց ազգին իշխանաւորներուն ուղղեալ Լութերի թուղթը շուտով հասաւ ամէն անոնց որոնց համար գրուած էր։ Զարմանալի արագութեամբ տարածեցաւ Գերմանիայի մէջ։ Իր բարեկամները զարհուրեցան. Ստաուպից՝ և անոնք որ՝միջակ ընթացք մը կընտրէին՝ չափազանց սաստիկ համարեցան այս հարուածը։ Լութեր պատասխան տըւաւ ըսելով. “Այս օրերս ինչ որ մեղմով կը գործուի, մոռացութեան կերթայ, ու ոչ մէկը անոր վրայով զինքը կընեղէ”։

Գերմանացի իշխանաւորներուն գրուած թուղթը 1520ին Յունիսի 26ին երևան ելաւ, ու քիչ ժամանակի մէջ 4,000 օրինակ ծախուեցաւ անկէց. որ անատենին նայելով կարգէ դուրս շատ էր այս գումարը։ Այս գրուածքը բոլոր ժողովրդոց մէջ մէկ ազդու զգացում մը պատճառեց. բովանդակ անոր մէջ թագաւորած ազդուութիւնը՝ ոգին՝ պարզութիւնը և ազնիւ համարձակութիւնը զանիկայ ամէնուն խիստ հա-

ճնլի բրաւ : Հասարակ ժողովուրդը զգաց թէ անիկայ ա- նանկ մէկէ մը յառաջ եկած է որ կըսիրէ զիրենք : Իմաս- տուն մարդիկ իրենց երկրային գաղափարներէն ազատե- ցան, ու Հռովմայ բռնաբարութիւնները ամէնուն մաքին յայտնի եղան : Վիդդէմպէրկի մէջ ոչ ևս մէկը կասկած մը ունէր թէ պապը նեռը չէ : Մ՚ինչև անգամ կայսրընտիրը, որ այնչափ շրջահայեաց էր և երկչոտ, տհաճութիւն մը չցուցուց, և կըթուէր թէ բանին վախճանին կըսպասէ : Բայց իշխանաւորները ու ժողովուրդը չսպասեցին. բոլոր ազգը արթընցեր էր. Լութերի ձայնը սաստիկ շարժեր էր զանոնք. ու ալ ասկէ ետև անոր կանգնած դրօշակին բոլոր- տիքը հաւաքուեր էին : Բան մը չէր կրնար այնչափ նպաս- տամատոյց ըլլալ Բարեկարգողին որչափ աս գրուածքը : Պալատին՝ ազնուականաց բերդերուն՝ քաղաքացւոց բնա- կարաններուն՝ և՝մինչև անգամ գիւղականաց խրճիթներուն մէջ ամէնն ալ հիմա պատրաստ էին դէմ կենալ դատապար- տութեան վճռոյն որ պիտի գար ժողովուրդին աս մարգա- րէինվրայ : Բոլոր Գերմանիա բորբոքեր էր. և երբոր պա- պին Կոնդակը գար, ան հրդեհը շիջուցանելու օգուտ մը պիտի չըներ :

## ՀԱՏՈՒԱԾ Դ

ԺՈՂՈՎՄԱՑ մէջ Եկեղեցւոյ ազատութիւնը պաշտպանողին դատապարտութեանը համար ամէն բան պատրաստ էր : Այն եկեղեցին երկար ժամանակէ 'ի վեր խորին անհոգու- թեան մէջ մնացեր էր : Հռովմայ միաբանները բազմաթիւ տարիներէն 'ի վեր Ժ Լևոնին վըրայով կամբաստանէին թէ բանի մը հոգ չտանիր բայց միայն շռայլութեան և հեշտու- թեան, ու որսորդութեամբ՝ խաղերով և նուագարաննե- րով ժամանակը վատնելու, որ ատեն եկեղեցին իր կոր-

ծանմանը կըխոնարհէր ։ Հիմա 'ի վերջոյ Ազգին աղաղակ-ներէն արթըննալով որ Լիսիսայէն եկեր էր Վատիկանու զօրութիւնը օգնութեան կոչելու, պապը՝ կարդինալները միաբանները և բովանդակ Հռովմ կանգնեցան վտանգը զգալու ու պապականութեան փրկութեանը միտք դնելու ։

Այսպէս Հռովմ իրօք զգաց թէ հարկաւոր է որ վերստին սաստիկ խստութեան ձեռք զարնէ, և թէ կռիւը պէտք է որ մինչև 'ի մահ վարուի ։ Ինչու որ չէ թէ սոսկապէս քահա-նայապետին իշխանութեանը վատթար կիրառութիւններն էին որոնց վրայ յարձակեցաւ Լուտեր ․ բայց բուն իսկ պապական իշխանութեանը ։ Իր ձայն տալուն՝ պապը հե-ղութեամբ իր աթոռէն պիտի իջնար, ու վերստին հասարակ ժողովրդապետ մը կամ եպիսկոպոս մը պիտի ըլլար Տիբերի գետեզերքը ․ նմանապէս և Հռովմայ եկեղեցականներուն բոլոր մեծամեծները իրենց հարստութիւնը և աշխարհային փառաւորութիւնը պիտի ուրանային, ու դարձեալ երէցներ և սարկաւագներ պիտի ըլլային Իտալիայի եկեղեցիներուն ։ Բոլոր ան փառաւորութիւնը և զօրութիւնը բազմաթիւ դա-րերէն հետէ արևմտեան աշխարհի աչքերը խտղեր էր՝ պի-տի ոչնչանար, ու անոր տեղը պիտի յաջորդէր առաջին քը-րիստոնէից խոնարհ և պարզ պաշտամունքը ։ Ապաքէն Աստուած կրցաւ գործել աս փոփոխութիւնները, և ինքը իր ուզած ժամանակին այսպէս պիտի գործէ ․ բայց չէն կրնար անոնք մարդոցմէ յուսացուիլ ։ Քանզի թէպէտ և գտնուէր այնպէս անշահախնդիր և համարձակ պապ մը որ կամենար Հռովմայ եկեղեցւոյն հին և մեծածախ շէնքը կործանել, հազարաւոր քահանաներ և եպիսկոպոսներ ձեռքերնին պիտի երկընցունէին զանիկայ իր կործանմանէն ազատելու ։ Պապը իր իշխանութիւնը ընդունէր էր աս յայտնի պայմա-նովը որ իրեն յանձնուած տէրութիւնը պիտի պաշտպանէ ․ ու Հռովմ կըկարծէր թէ ինքը Աստուծմէ դրուած է եկե-ղեցին կառավարելու ․ վասն որոյ պէտք չէ որ զարմա-նամք թէ ինչու այնպէս պատրաստ կեցեր էր իր խիստ զար-

Լութերի դատապարտութիւնները արձակելու ։ Բայց և այսպէս ատեն մը տարակուսեցաւ մնաց ․ կարդինալներէն ոմանք՝ և նոյն ինքն պապը խստութիւնը ձեռք առնելու բաղձանք չունէին ։ Վասն զի կառավարութեան արհեստի հմուտ Լևոնը աղէկ գիտէր՝ թէ մէկ վճիռ մը՝ որուն գործադրութիւնը կախեալ է քաղաքական կառավարութեան երկբայելի հաճութենէն, կրնայ մեծամեծ վտանգի տակ ձգել եկեղեցւոյ հեղինակութիւնը ։ Բայց ասոր տեսեր էր ևս՝ թէ արդէն՝ի գործ դրուած խստութիւնները ուրիշ բանի չէին ծառայեր, բայց եթէ չարիքը աճեցունելու ։ Սատի՝ Հնար չէ՞ որ աս Սաքսոնացի միաբանը մեր կողմին շահիմք, կըսէին Հռովմայ ճարպիկ քաղաքականները ․ եկեղեցիին բոլոր զօրութիւնը, Իտալիայի բոլոր Իշխանները արդեօք ճար մը չէ՞ն կրնար գտնել ասոր ․ պէտք է որ սակաւին ջանանք հաշտութիւն ընելու ։

Վասն որոյ Լևոն շատ զգուշաւորութիւններու հանդիպեցաւ իր գործին մէջ ։ Բայց ամէն Իշխաններու ձեռք զարկաւ, ու անդադար կաշխատէր որ չըլլայ թէ իր հերետիկոսութիւն համարած բանին թոյլատուութիւն մը ըլլայ ։ Ամէն օր Հռովմայ մէջ պտըտած ատենը իր սրտմտութիւնը կըցուցընէր, ու վրէժխնդրութեան եռանդ էր ։ Միաբաններուն կոյր նախանձաւորութեամբ պաշտպանել կողմը շատով իրեն կապուեցան ․ ու աս գաշնակիցներէն ոմանք տանելով նոր քաջութիւնով մը պապին ու կարդինալներուն բոլորտիքը առաւ ։ Իր կարծեօքը անօգուտ բան էր հաշտութեան ձեռք զարնելը ․ ասանկ ջանքերը, կըսէր, սոսկ երեւակայութիւն են, ու անտեղի ակնկալութիւններ ։ Պիտէր ինքը վտանգը, ինչու որ յանձնապաստան միաբանին հետ մեծամարտելու ելած էր ․ ու տեսաւ թէ հարկաւոր է որ փտած անդամը կտրուի, որ չըլլայ թէ ախտը բոլոր մարմինին տարածի ։ Լիփսիայի հզօր վիճաբանութը մէկ մէկու ետեւէ շատ հակառակութիւններու պատահեցաւ ու յաղ-

թեց, ու դժուարութեամբ համոզեց զպապը *։ Ա՛ինքը դրեր էր որ Հռովմայ հակառակ՝ Հռովմը փրկէ. ուստի չպարձուցած քար չթողուց. ժամերով քահանայապետին հետը գաղտնի խորհուրդի կըպարապէր ու կըջանար գըրգռել պապական ատեանը ու վանքերը, ժողովուրդը ու եկեղեցին ։ "Ինծի դէմ կըշարժէ, կըսէ Լուտեր, դժոխքին ամենախոր անդունդները"։ Վերջապէս Էք իր նպատակին հասաւ, ու պապին իմաստուն խորհրդականները յաղթուեցան նախանձայոյզներէն ։ Լեոն տեղի տալով Լուտերի դատապարտութիւնը վճռուեցաւ, ու Էք սկսեց համարձակ շունչ առնել ։ Իր մեծամտութիւնը շողոքորթուեցաւ մտածելով թէ իր հերետիկոս հակառակորդին կործանումը վճռեց, և այնպէս փրկեց զԵկեղեցին ։ "Աղէկ եղաւ, ըսաւ, որ ես աս միջոցիս Հռովմ եկայ †, ինչու որ օր մը պիտի ճանչցուի թէ որչափ բան ըրի ես աս փաստին համար"։

Այսպէս Աստուած Հռովմայ վարդապետներուն վրայ յիմարութեան ոգի խրկեց ։ Հարկաւորեր էր որ ճշմարտութիւնը և մոլորութիւնը մէկմէկէ բաժնուին. ու սահմանուած էր որ մոլորութիւնը ինքզինքը բաժնէ. թէ որ իրերը միաբանուելու բերուէին, ուրիշ կերպով ճար չէր ըլլալ եթէ ոչ ճշմարտութիւնը զոհ ընելով ։ Իսկ ճըշմարտութեան ամենափոքր մասը իրմէն վերցնելը անոր յետին կորստեանը և ոչնչանալուն ճամբայ բանալ է։ Ճշմարտութեան հետ քիչ մը մոլորութիւն խառնելը լեցուն աման մը կերակուրի մէջ ցորենաչափ մը թոյն ձգելու պէս է. այդ ցորեն մը թոյնը բաւական է կերակուրին որակութիւնը փոխելու, ու աս բանին վախճանը՝ թէ և ուշ ըլլայ, բայց ստոյգ մահ է ։ Աստուծոյ Բանը ուր որ ամբողջ է նէ, կենդանութիւնը հոն է ։ Լուտեր իր համարձակութեամբը ևս հաւանականաբար պիտի լսէր թէ որ

*Sarpi , Hist. Conc. Trid.
†Bonum fuit me venisse hoc tempore Romam . . . ( Epist. Eckii).

նոյն ինքն Հռովմ լուռ կեցած, կամ հաշտութեան հաւանութիւն մը ցուցուցած ըլլար ։ Բայց Աստուած չթողուց որ Բարեկարգութիւնը մարդկային սրտին տկարութենէն կախեալ ըլլայ · Լութեր անանկ մէկու մը ձեռքն էր, որուն աչքը իրերուն վախճանը կը տեսնէր ։ Աստուածային նախախնամութիւնը պապին միջնորդութեամբը անցեալքն և ապառնիին մէջի կապը կտրեց, ու Բարեկարգողը մէկ ճամբու մը դրաւ որ բոլորովին անոր անծանօթ էր, և ան ճամբուն ուր տանիլը չէր գիտէր ։ Պապական կոնդակը Հռովմայ արձակման գիրն էր որ Յիսուս Քրիստոսի անարատ Եկեղեցիին ուղղեց մէկ անձի մը վրայով որ անատենը կանգներ էր նոյն եկեղեցիին իբրև խոնարհ բայց հաւատարիմ երևեցուցիչը · Եկեղեցին ալ զանիկայ ընդունեց, որպէս զի այնուհետև միայն իր երկնաւոր Գլխէն կախեալ ըլլայ ։

Լութերի դատապարտութիւնը անգամ մը որ վճռուեցաւ, նոր դժուարութիւններ ծագեցան ժողովին մէջ ։ Աստուածաբանները առաջարկեցին որ դատապարտութեան վճիռը անմիջապէս գործի դրուի · ընդհակառակն իրաւագէտները կամեցան որ դատաստանի կոչելով սկսուի բանը ։ Անոնք իրենց պաշտօնակիցներուն բողոքելով ըսին · "Չէ՞ որ Ադամ դատապարտուելէն առաջ դատաստանի կոչուեցաւ, Ո՞ւր ես դուն Ադամ, ըսաւ Տէրը · Նմանապէս և Կայենի դիպուածին՝ Ո՞ւր է Աբէլ քու եղբայրդ, հարցուց Յաւիտենականը" ։ Սուրբ Գրքէն քաղուած աս տարօրինակ ձեռնարկութիւններուն վրայ բնական օրէնքէն ալ պատճառներ յառաջ բերին աս կանոնագէտները · "Յանցանքին ստոյգ երևնալը, ըսին, չկրնար զրկել զյանցաւորը իր վրայ եղած ամբաստանութեանը դէմ ինքզինքը պաշտպանելու իրաւունքէն" * ։ Հռովմէական սիւնհոդոսի մը մէջ այսպիսի արդարութեան սկզբունքներ գտնելը հաճե-

*Sarpi, Hist. Conc. Trid. I. p. 12.

վճռանէ ։ Բայց այս ձեռնարկութիւնները ժողովին աստուածաբաններուն բանին չեկաւ, վասն զի կռիւք պաշտպանել միայն կըմտածէին որ իսկ և իսկ գործի ձեռնամուխ ըլլան ։ Վերջապէս այնպէս կարգի դրուեցաւ որ Լուտերի վարդապետութիւնը անմիջապէս դատապարտուի, ու իրեն և իր համախոհներուն վաթսուն օր ժամանակ տրուի. և թէ որ իրենց կարծիքները չհերքեն այս սահմանուած ժամանակին մէջ բոլորն ալ դատապարտուած են ։ Տը Վիօ՝ որ Գերմանիայէն հիւանդ դարձեր էր, կառքով գնաց ժողովը. վասն զի չէր կամէր այս ընչին յաղթութեանս պատեհութիւնը կորսնցունել որ սակաւ ինչ մխիթարութիւն կընծայէր իր սրտին ։ Սկզբունքի մէջ թեթեւ և կոտորած կրեց, բայց Հռովմայ մէջ ուզեց որ ինքն ալ հաղորդ ըլլայ դատապարտելու անյաղթելի միաբանը, որն որ չէր կրցեր խոնարհեցընել իր գիտութիւնը՝ ճարտարութիւնը և իշխանութիւնը ։ Լուտեր հիմա հոն չէր որ իրեն պատասխան տար. ուստի Տը Վիօ համարձակեցաւ ։ Յունիսի 15ին սրբազան ժողովը Լուտերի դատապարտութիւնը վճռեց, ու հաւանութիւն տուաւ հռչակաւոր կոնդակին ։

Հռովմէական քահանայապետը իբրև փոխանորդ Աստուծոյ և Գլուխ Եկեղեցւոյ այսպէս խօսեցաւ աս վսեմ ժամուն. "Արթընցիր՝ ով Տէր, արթընցիր, ու յիշէ ան նախատինքները որով յիմարը կընախատէ զքեզ բովանդակ օրը ։ Արթընցիր՝ ով Պետրոս, յիշէ քու հռովմէական սուրբ եկեղեցիդ, բոլոր եկեղեցիներուն մայրը ու հաւատոյ թագուհին ։ Արթընցիր՝ ով Պօղոս, զի ահա նոր Պորփիւր մը կայ հոս որ կըյարձակի քուկին վարդապետութեանդ և սրբազան պապերուն մեր նախորդներուն պատիւին վրայ ։ Վերջապէս արթընցիր՝ ով ժողով ամենայն սրբոց՝ սուրբ Եկեղեցի Աստուծոյ, ու բարեխօսէ մեզի համար առ Ամենակալն Աստուած" ։

Ան առենը պապը Լուտերի նախադասութիւններէն քառասունըմէկը յառաջ կըբերէ՝ իբրև վնասակար՝ գայ-

թակղեցուցիչ և արատաւոր նախադասութիւններ, որոնց մէջ Լուտեր Աւետարանական ողջամիտ վարդապետութիւնները բացատրեր էր։ Հետեւեալները դատապարտեալ նախադասութիւններուն մէկ քանին են։

“Յետ մկրտութեան երեխային վրայ մեղք մնալը ուրանալը՝ ոտաց տակ առնել է զսուրբն Պօղոս և զՅիսուս Քրիստոս Տէրն մեր”։

“Նոր կեանք մը վարելը ամենալաւ և գերագոյն ապաշխարութի՛ւն է”։

“Հերետիկոսները այրելը սրբազան գրոց հակառակ է”, ԽԹ, ԽԸ։

“Աս կոնդակը հրատարակուածին պէս, կըշարունակէ պապը, եպիսկոպոսները պարտին ժրութեամբ փնտռել Մարտինոս Լուտերի գրուածքները՝ որոնց մէջ աս մոլորութիւնները կան, ու հրապարակաւ և հանդէսով այրել զանոնք եկեղեցականաց և աշխարհականներուն առջև։ Իսկ իրեն Մարտինոսին՝ յանուն Աստուծոյ՝ ի՞նչ մնաց որ չըրինք։ 'Ի վերայ այսր ամենայնի, Ամենակալ Աստուծոյ բարութեանը նմանելով պատրաստ եմք վերստին ընդունել զինքը Եկեղեցւոյ ծոցը, ու վաթսուն օր ժամանակ կուտամք իրեն որ աս միջոցին գրութեամբ մեզի խրկէ իր վարդապետութիւնը հերքելը՝ երկու եպիսկոպոսաց վկայութեամբ. կամ (որ մեզի աւելի հաճելի կըլլայ) ինքը անձամբ Հռոմ գայ մեր առջևը, որ իր հնազանդութեանը վրայ ոչ ևս տարակոյս ունենայ մէկը։ Միանգամայն և պէտք է որ աս րոպէէս 'ի վեր դադարի քարոզութենէ՝ դասատուութենէ ու գրութենէ, ու իր գրուածքները այրէ։ Իսկ թէ որ վաթսուն աւուր միջոցին մէջ չհերքեր, աս հրամանագրովս կըդատապարտեմք զինքը ու իր համախոհները իբրև յայտնի և կամակոր հերետիկոսներ”։ Այնուհետև պապը երկար բանադրանքներ՝ նզովքներ և պատիժներ կըկարդայ Լուտերի և անոր կուսակիցներուն վրայ, հրաման ընելով որ բռնեն զանոնք ու Հռոմ խրկեն։ Դիւրին է իմանալ թէ Հռով-

մայ բանտերուն մէջ ի՛նչ պիտի ըլլար Աւետարանին աս քաջասիրտ խոստովանողներուն ։

Այսպէս կըհաւաքէր փոթորիկը Լուտերի գլխուն վրայ։ Կոնդակը հրատարակուեցաւ. ու բազմաթիւ դարերէն հետէ Հռովմ բանադրանաց վճիռ մը հանած չէր առանց մահուան հարուած մը տալու անոր ետեւէն։ Յօթնաբլուր քաղաքէն կելլար ան մահառիթ պատգամը որ պիտի հասնէր Սաքսոնացի միաբանին իր խուցին մէջը։ Վայրկեանը աղէկ ընտրուած էր. կըկարծուէր թէ Նոր կայսրը որ շատ պատճառներ ունէր բարեկամական կապակցութիւն մը պահել պապին հետ, անտարակոյս պիտի փաղփաղէր ինքզինքը հաճելի ցուցընել անոր՝ մէկ աննշան միաբան մը անոր զոհ ընելով։ Լեոն ժերորդ, կարդինալները, ու Հռովմայ բոլոր կուսակիցները ուրախացան. վասն զի կերեւակայէին թէ իրենց թշնամին իրենց ոտքը ինկած կըտեսնեն։

## ՀԱՏՈՒԱԾ Ե

ՄԻՆՉԴԵՌ Հռովմ քաղաքը այսպէս շփոթութեան մէջ էր, Վիդդեմպէրկի մէջ խաղաղաւէտ դիպուածներ կըպատահէին։ Հոն Մելանկտոն մէկ մեղմ՝ բայց պայծառ լոյս մը կըծագէր։ Շատ անգամ իր բոլորտիքը կըհաւաքէին երկու հազարի մօտ ունկնդիրներ՝ Գերմանիայէն, Անգղիայէն, Ստորին Գաւառներէն, Գաղղիայէն, Իտալիայէն, Հունկարիայէն և Յունաստանէն։ Քսանըչորս տարու էր ինքը, ու ձեռնադրուած չէր։ Վիդդեմպէրկի մէջ բոլոր տուները բաց էին աս Նորահաս վարժապետին, որ այնչափ իմաստուն և միանգամայն այնչափ սիրելի էր։ Ուրիշ համալսարանները, և մանաւանդ Ինկօլստադինը, կուզէին որ զանիկայ իրենց քաշեն։ Աստի Վիդդեմպէրկի իր բարեկամները միտքերնին որոշեցին որ ամուսնանալու համոզե-

լով զինքը իրենց մէջը պահեն ։ Գիտեմք որ Նորահաս վարժապետը յաճախ տեսութեան կերթար Գրափ անուն քաղաքապետին տունը, որ հին գերդաստանէ մը սերեալ էր ։ Գրափ աղջիկ զաւակ մը ունէր Կատարինէ անունով , անոյշ և սիրուն բնաւորութեամբ ։ Մելանկտոնի բարեկամները ստիպեցին զինքը որ զանիկայ իրեն կնութեան ուզէ ․ բայց ուսումնական երիտասարդը իր գիրքերուն մէջ թաղուած էր , և ուրիշ բանի չէր ուզէր ականջ կախել ։ Իր Յունարէն Նախնեաց գրքերը և իր կտակարանը իր բերկրութիւններն էին ։ Իր բարեկամներուն առաջարկութեանցը ինքը ուրիշ առաջարկութիւններ կընէր ։ Ի վերջոյ իր հաճութիւնը առնուեցաւ , ու իր բարեկամները հարկաւոր եղած ճամբան բռնելով , Կատարինէ անոր կնութեան տըրուեցաւ ։

Մանկամարդ հարսը շատ նշանաւոր էր իր սիրոյն ջերմութեամբը ․ իր ամուսնոյն վրայով միշտ հոգի մէջ ըլլալով չփոթութեան մէջ կիյնար երբոր իր սիրոյն առարկային ինչ և իցէ վտանգ մը պատահելու նշմարանքը տեսնէր ։ Երբոր Մելանկտոն ճշմարտութեան պաշտպանութեանը համար առաջարկէր այնպիսի ճամբայ մը բռնել որ իր ապահովութիւնը կրնար վտանգել , կաղաչէր կըպաղատէր անոր որ իր միտքը փոխէ ։ Այսպիսի դիպուածի մը վրայով Մելանկտոն գրեց և ըսաւ ․ "Պարտաւորեցայ զիջանիլ անոր տկարութեանը ․ ասիկայ մեր վիճակն է" ։ Եկեղեցւոյ մէջ կատարուած անհաւատարմութեան օրինակներուն արդեօք որչափը նոյն սկզբունքէն յառաջ եկած են ։ Գուցէ Կատարինէին իր ամուսնոյն վրայ ունեցած ազդեցութեանը պարտիմք ընծայել ան երկչոտութիւնը ու վարանմունքները որով Մելանկտոն շատ անգամ մեղադրուեցաւ ։ Կատարինէ ինտոր որ իբրև կին՝ այնպէս և իբրև մայր գթասիրտ և գորովագութ էր , նաև առատ ողորմութիւն կուտար աղքատներուն ։ Այս բարեպաշտ և երկչոտ հոգիին հանապազօր առ Աստուած հառաչանքն էր , "Իմ ալեօրելուս և ծերանալուս՝ Աստուած իմ , զիս մի՛ թողուր" ։

Մելանկթոնի սիրտը իր կնոջը սիրովը շուտով վառեցաւ. ընտանեկան կենաց քաղցրութիւնները ճաշակած ըլլալով, անոնց յարգը աղէկ ճանչցաւ։ Արդարև իր տիրուն բնութեանը յարմար էր ինքը անոնց համը վայելելու, ու աւելի մէկ տեղ մը այնչափ երջանիկ չէր ըլլար որչափ իր Կատարինէին և իր զաւակացը հետ։ Օր մը Գաղղիացի ճանապարհորդ մը անոր տես երթալով երբոր գտաւ թէ Գերմանիայի իմաստուն վարժապետը մէկ ձեռքով իր զաւկին օրորոցը կօրէ ու միւս ձեռքը գիրք մը բռնած է, զարմացաւ մնաց։ Բայց Մելանկթոն առանց ամչնալու այնպէս եռանդով մը բացատրեց անոր Աստուծոյ աչքին տղայոց ունեցած բարձրագոյն յարգը, որ ան հիւրը իր բերնովը խոստովանեցաւ թէ տունէն ելլելուն աւելի իմաստուն էր քան որչափ հոն մտած ատենը։

Մելանկթոնի առատութիւնը մէկ գերդաստան մը մատոյց Բարեկարգութեան։ Անով Վիդդէմպէրկի մէջ մէկ տուն մը բացուեցաւ բոլոր ճշմարտութեան հետևողներուն։ Օտարականները խուռն բազմութեամբ երթևեկութիւն կ'ընէին հոն. ժողովուրդը հազար տեսակ բաներու համար Մելանկթոնին կուգային, որուն տանը հաստատեալ կանոնը ան էր որ մէկը մը մէկ բան պիտի չմերժուէր*։ Նորահաս վարժապետը մանաւանդ իր անձին շահը կըձգէր երբոր բարերարութիւն ընելու առիթ մը ըլլար. երբոր իր ստակը հատնէր, ծածկաբար իր սեղանին անօթները կըծախէր մէկու մը՝ ամենևին հոգ չընելով զանոնք կորսնցունելուն համար. որովհետև անանկով ձեռքը ստակ կանցնէր նեղեալներուն օգնելու։ "Ամէն որոյ անհնար եղած պիտի ըլլար, կըսէ Կամերարիոս իր բարեկամը, որ իրեն և իր ընտանեացը պակսութիւնները հոգար, թէ որ աստուածային գաղտնի օրհնութիւնը ատեն ատեն նոյն պակսութիւնները չլեցունէր"։ Իր քաղցրաբարոյութիւնը չափէ դուրս էր։ Անկէ

*Camerar. Vita Melancht. p. 40.

ու արծաթ հին դրամներ ունէր, որ շատ նշանաւոր էին իրենց վրայի արձանագրութիւններուն ու պատկերներուն համար։ Օր մը մէկ հիւրի մը կը ցուցնէր զանոնք որ իրեն տեսութեան եկած էր, ու ըսաւ անոր. «Ասոնց որուն կը հաւնիս նէ առ»։ «Ամենուն ալ կը հաւնիմ», պատասխան տուաւ հիւրը։ «Կը խոստովանիմ, կըսէ Մ՝ելանկթոն, որ առջի բերանը աս անպատշաճ պատասխանին վրայ նեղացայ, բայց և այնպէս ամէնն ալ տուի իրեն»։

Աս անուանի գրագէտը սովորաբար իրիկուան կերակուրէն ետև շուտ մը հանգստանալու կերթար։ Կէս գիշերէն երկու կամ երեք ժամ ետև կելլէր իր գործին պարապելու. և իր խիստ լաւ գրութիւնները աս գիշերային պարապմունքներուն շարադրած է։ Իր ձեռագիրները սեղանին վըրայ բաց կըկենային բոլոր մտնող ելլողներուն առջևը, անանկ որ անոնցմէ շատ կտորներ գողցուեցան։ Երբոր բարեկամներ հրաւիրէր իր տունը, սեղան նստելէն առաջ մէկէն կամ միւսէն կըխնդրէր որ կարճ գրութիւն մը կարդայ թէ ոտանաւոր և թէ արձակ։ Երբոր ճամբորդութիւն ընէր միշտ իրեն ընկեր կառնէր քանի մը պատանիներ, և անանկ կերպով մը կը խօսակցէր անոնց հետ որ միանգամայն վարժութիւն և զբօսանք կը պատճառէր։ Թէ որ խօսակցութիւնը դադարէր, ամէն մէկը ըստ կարգի կը պարտաւորէր համառօտ պարբերութիւն մը ըսել իր բերան սորված հին բանաստեղծութիւններէն։

Ամուսնանալէն քիչ մը ժամանակ ետքը՝ Մ՝ելանկթոն իր խանդակաթ մայրը տեսնելու համար Պրեթէն գնաց, որ փալադինութեան մէջն է, Կամերարիոսի և քանի մը ուրիշ բարեկամներու հետ։ Հեռուէն իր ծնած քաղաքը տեսնելուն պէս ձիէն իջաւ, ու ծնկան վրայ գալով շնորհակալ եղաւ Աստուծոյ որ անգամ մըն ալ արժանացաւ զանիկայ տեսնելու։ Իր մայրը Մարգարիտ իր որդին գրկելով, ուրախութենէն գրեթէ նուաղեցաւ։ Մօրմէն զատուած ատենը շատ տրտմեցաւ. և երբոր ճանապարհորդ մը իր

ծնած քաղաքէն լուր մը բերեր իրեն, այնպէս կուրախանար՝ կըսէ ինքը, որպէս թէ տղայութեան կը վերադառնար։ Ահա իր ընտանեկան կենացը մէջ այսպիսի մէկն էր աս մարդը, որ տասնըվեցերորդ դարուն մէջի կրօնական խռովութեան մէկ գլխաւոր գործիքը եղաւ։

## ՀԱՏՈՒԱԾ Զ

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 6ին 1520՝ Լուտերի հռչակաւոր գրութիւնը հրատարակուեցաւ, որ կը կոչուի Բաբելոնեան Գերութիւն Եկեղեցւոյ։ Ոչ երբեք մէկը այսպիսի արիութիւն ցուցուցած էր ասանկ վտանգաւոր պարագաներու մէջ։

Աս գործին մէջ կը սկըսի զարմանալի հեգնութեամբ յառաջ բերել ամէն ան օգուտները որ իր թշնամիներէն քաղեր էր։

“Եթէ կամիմ և եթէ ոչ, կըսէ, օր ըստ օրէ աւելի կը սորվիմ, որովհետև այսչափ հռչակաւոր վարժապետներ զիս կը յառաջացընեն։ Երկու տարի առաջ Ներողութեանց վրայ յարձակեցայ, բայց այնպէս թոյլ և անհաստատ կերպով որ հիմա կամաչեմ անոր վրայով։ Սակայն զարմանալ պէտք չէ ասոր, որովհետև անատենը քարը մինակ գլորելու էի”։

Այնուհետև շնորհակալութիւն կը մատուցանէ Պրիէրիասի, Էքի, Էմսէրի, և իր ուրիշ թշնամիներուն։ Ետքը կը շարունակէ ըսելով. “Պապականութեան Աստուծմէ եղած ըլլալը ուրացայ, բայց մարդկային իրաւամբ հաստատուած ըլլալը ընդունեցի։ Բայց հիմա՝ յետ կարդալուս ան բոլոր իմաստակութիւնները՝ որոնց վրայ աս մեծարու անձերը իրենց չաստուածը կը կանգնեցընեն, գիտեմ թէ պապականութիւնը ուրիշ բան չէ բայց Բաբելոնի թագաւորութիւնը, ու Նեբրովթի հսկայազօր որսորդին բռնակալութիւնը”։

Լուտեր ան գրութիւնը աս խօսքովս վերջացուց.

"Կը լսեմ որ նոր 'ի նորոյ պապական բանադրանքներ եփած են ինծի համար. թէ որ իրաւ է՝ աս գիրքը իմ ապառնի հերքելուս մէկ մասը կրնայ համարուիլ: Մնացեալը շուտով պիտի ելլէ իմ հնազանդութեանս փորձ մը ըլլալու համար, ու բոլոր Քրիստոսի օգնութեամբը պիտի կազմէ մէկ հաւաքում մը՝ որուն նմանը Հռոմ ոչ երբէք տեսաւ կամ լսեց":

Ասկէց ետքը պապին ու Լուտերին մէջ հաշտութիւն ըլլալու բոլոր յոյսը հարկաւ ոչնչացաւ: Բարեկարգողին հաւատքին ու եկեղեցւոյ վարդապետութեան մէկ մէկու հետ անմիաբանութիւնը պայծառ կերեւար ամէնուն: Բայց աս միջոցիս նոր գործառնութիւններ սկսած էին:

Օգոստոսի վերջերուն՝ 1520ին ու Բաբելոնեան Գերութեան հրատարակուելէն հինգ շաբաթ առաջ Այզլէպէնի մէջ Օգոստինեան կարգին ժողովը գումարեցաւ: Աս ժողովին մէջ մեծարուն Ստաուպից նոյն կարգին Ընդհանուր մեծաւոր ըլլալու պաշտօնը ձգեց, ու նոյն աստիճանը տրուեցաւ Վենկեսլաւոս Լինքին որ Լուտերի հետ Աւկզպուրկ գացած էր: Միլտից ալ ժողովը չցրուած յանկարծ հոն հասաւ *. մեծափափաք խղճով յօժարեալ էր որ պապը և Լուտերը մէկ մէկու հետ հաշտեցընէ: Իր անձնասիրութիւնը՝ իր ագահութիւնը՝ բայց 'ի վեր քան զամենայն ինչ իր նախանձութիւնը և ատելութիւնը աս գործիս ստիպեցին զինքը: Էքին սնափառ մեծարանութիւնը ձանձրութեան մէջ ձգած էր զինքը. գիտէր որ Ինկոլստատի վարդապետը Հռովմայ մէջ խայտառակ ըրեր էր զինքը, և անոր համար ինչ որ ըլլար զոհ պիտի ըներ՝ որ փութանակի հաշտութիւն մը կատարելով իր տաղտկալի թշնամիին դաւաճանութիւնները ոչինչ հանէ: Բայց սակայն կրօնքին վրայ քիչ փոյթ ունէր ինքը. և լինտոր որ ինքը կըպատմէ, մէկ

*Pallavicini I. p. 68.

օր մը Մայսէնի եպիսկոպոսին հետ սեղանակից ըլլալուն և հիւրերուն ալ արբած միջոցին Լուտերի մէկ նոր գրուածքը բերուեցաւ հոն: Երբոր բացին ու կարդացին զանիկայ, եպիսկոպոսը սաստիկ զայրացման մէջ ինկաւ, Ֆօտարը սկսեց հայհոյել, բայց Միլտից մեծաձայն կըխնդար*: Միլտից իբրև աշխարհիկ մէկը Բարեկարգութեան հետ կըվարուէր, բայց Էք իբրև աստուածաբան:

Միլտից Էքին գալստեամբը գրգռուելով Օգոստինեանց մէջ ժողովին ատենաբանութիւն մը ըրաւ: "Բովանդակ Օգոստինեանց կարգը այս գործովս վտանգի տակ է, ըսաւ. ամէն միջոց մը ցուցուցէք ինծի Լուտերը զսպելու": "Անոր հետ մենք բան չունիմք, ըսին ժողովին նախագահները. և չեմք գիտեր թէ ինչ խրատ տամք քեզի": Անտարակոյս անոր համար այս պատասխանը տուին անոնք, որ գիտէին թէ Ստաւպից Աւկզպուրկի մէջ Լուտերին ազատութիւն շնորհեր էր Օգոստինեան կարգին կապուած ըլլալու պարտաւորութիւններէն: Միլտից պնդեց ըսելով. "Այս պաշտօնական ժողովը պատգամ թող խրկէ Լուտերին, ու պահանջէ անկէց որ պապին նամակ մը գրէ, հաւատացընելով զանիկայ թէ անոր անձին վրայով ոչ երբեք դաւաճանութիւն մը գործած է: Ասիկայ բաւական է գործը վերջացընելու": Նուիրակին առաջարկութեանը հաճութիւն տուաւ ժողովը, ու այս պաշտօնը յանձնուեցաւ Ստաւպիցին՝ հըրաժարեալ ընդհանուր մեծաւորին, ու անոր յաջորդը Լինքին, որ Լուտերին հետ խորհուրդ ընեն: Այս պատգամաւորները անմիջապէս ճամբայ ելան Վիդդէմպէրկ երթալու, ու հետերնին նամակ մը ունէին Միլտիցէն առ Լուտեր վարդապետը, յարգական խօսքերով լեցուն:

Ոչ Լուտեր՝ և ոչ այս պատգամաւորները որ անոր կարծիքներուն հակամիտեալ էին՝ յոյս մը ունէին թէ պապին գրելով բան մը շահուի: "Այս Սաքսոնացի Իտալացին, (Միլ-

* Seckendorf, p. 266.

րակին հետ տեսնուելու պիտի երթայ ։ Յայտնի չէ՞ որ Էք վարդապետը Բարեկարգողին վրայ ունեցած առաւելութիւնը ամէն մարդ գիտնալուն համար անոր մօտիկ չկենալով, աս խորամանկ սենեկապետը իր վրան առաւ իր որոգայթներուն մէջ ձգել Լուտերը" ։

Աս երկիւղները չկրցան արգելք ըլլալ Վիդդէմպերկի վարժապետին ։ Կայսրընտիրը հրաման ըրեր էր, և ինքը օրոշեց հնազանդիլ ։ Նոյեմբերի 11ին Սպալատինին գրեց ու ըսաւ. "Ահա ճամբայ կելլեմ Լիխթէնպերկ երթալու. աղօթէ ինծի համար" ։ Իր բարեկամները միայն չձգեցին զինքը. և նոյն օրը իրիկուան դէմ Լուտեր Լիխթէնպերկ մտաւ երեսուն ձիաւորով, որոնց մէջ էր և Մելանկթոն ։ Ան միջոցին պապին նուիրակին ալ հասաւ միայն չորս հոգիով ։ Արդեօք հաւանական չէրևա՞ր որ Միլտիցին այսպէս քիչուոր մարդով գալը՝ Լուտերին և իր ընկերներուն վստահութիւն տալու որոգայթ մը ըլլար ։

Միլտից սաստիկ թախանձանքներով հաւատարմացոյց զԼուտեր թէ յանցանքը Էքին վրայ ու իր անմիտ մեծաբանութիւններուն վրայ պիտի ձգուի, ու ամէն բան անանկ պիտի կարգադրուի որ երկու կողմն ալ գոհ ըլլայ ։ "Աղէկ է, պատասխան առաւ Լուտեր. ես ալ կըխոստանամ այսուհետև լուռ կենալ, թէ որ իմ թշնամիներս ալ նոյն բանը կընեն ։ Բոլոր իմ կրցածս կընեմ խաղաղութեան համար" ։

Միլտից ուրախութեամբ լցաւ. մինչև Վիդդէմպերկ Լուտերին ընկերացաւ, ու Բարեկարգողը և պապական նուիրակը քովէքով մտան քաղաքը, որ ատեն Էք հոն կըմօտենար սպառնալից ձեռքերով բռնած ան զարհուրելի կոնդակը որ կըյուսացուէր թէ պիտի շիջուցանէր զԲարեկարգութիւնը ։ Միլտից անմիջապէս այսպէս գրեց կայսրընտրին. "Երջանիկ վախճանի մը պիտի բերենք բանը. շնորհակալ եղէք պապէն իր խրկած Վարդին համար, ու

նոյն ինքն Հռովմ լուռ կեցած, կամ հաշտութեան հաւանութիւն մը ցուցուցած ըլլար ։ Բայց Աստուած չթողուց որ Բարեկարգութիւնը մարդկային սրտին տկարութենէն կախեալ ըլլայ ․ Լուտեր անանկ մէկու մը ձեռքն էր, որուն աչքը իրերուն վախճանը կը տեսնէր ։ Աստուածային Նախախնամութիւնը պապին միջնորդութեամբը անցեալին և ապառնիին մէջի կապը կտրեց, ու Բարեկարգողը մէկ ճամբու մը դրաւ որ բոլորովին անոր անծանօթ էր, և ան ճամբուն ուր տանիլը չէր գիտէր ։ Պապական կոնդակը Հռովմայ արձակման գիրն էր որ Յիսուս Քրիստոսի անարատ Եկեղեցիին ուղղեց մէկ անձի մը վրայով որ անատենը կանգներ էր նոյն եկեղեցիին իբրև խոնարհ բայց հաւատարիմ երևեցուցիչը ․ Եկեղեցին ալ զանիկայ ընդունեց, որպէս զի այնուհետև միայն իր երկնաւոր Գլխէն կախեալ ըլլայ ։

Լուտերի դատապարտութիւնը անգամ մը որ վճռուեցաւ, նոր դժուարութիւններ ծագեցաւ ժողովին մէջ ։ Աստուածաբանները առաջարկեցին որ դատապարտութեան վճիռը անմիջապէս գործի դրուի ․ ընդհակառակն իրաւագէտները կամեցան որ դատաստանի կոչելով սկսուի բանը ։ Ասոնք իրենց պաշտօնակիցներուն բողոքելով ըսին ․ “Չէ՞ որ Ադամ դատապարտուելէն առաջ դատաստանի կոչուեցաւ, Ո՞ւր ես դուն Ադամ, ըսաւ Տէրը ․ նմանապէս և Կայէնի դիպուածին՝ Ո՞ւր է Աբէլ քու եղբայրդ, հարցուց Յաւիտենականը” ։ Սուրբ Գրքէն քաղուած աս տարօրինակ ձեռնարկութիւններուն վրայ բնական օրէնքէն ալ պատճառներ յառաջ բերին աս կանոնագէտները ․ “Յանցանքին ստոյգ երևնալը, ըսին, չկրնար զրկել զյանցաւորը իր վրայ եղած ամբաստանութեանը դէմ ինքզինքը պաշտպանելու իրաւունքէն” * ։ Հռովմէական սիւնհոդոսի մը մէջ այսպիսի արդարութեան սկզբունքներ գտնելը հաճե-

*Sarpi, Hist. Conc. Trid. I. p. 12.

լի բան է ։ Բայց այս ձեռնարկութիւնները ժողովին աստուածաբաններուն բանին չեկաւ, վասն զի կրիւք պաշտպանել միայն կը մտածէին որ իսկ և իսկ գործի ձեռնամուխ ըլլան ։ Վերջապէս այնպէս կարգի դրուեցաւ որ Լութերի վարդապետութիւնը անմիջապէս դատապարտուի, ու իրեն և իր համախոհներուն վաթսուն օր ժամանակ տրուի ․ և թէ որ իրենց կարծիքները չհերքեն այս սահմանուած ժամանակին մէջ բոլորն ալ դատապարտուած են ։ Տը Միօ՝ որ Գերմանիայէն հիւանդ դարձեր էր, կառքով գնաց ժողովը ․ վասն զի չէր կամեր այս ընչին յաղթութեանս պատեհութիւնը կորսնցունել որ սակաւ ինչ մխիթարութիւն կընծայէր իր սրտին ։ Աւկզպուրկի մէջ թէպէտ և կոտրած կրեց, բայց Հռովմայ մէջ ուզեց որ ինքն ալ հաղորդ ըլլայ դատապարտելու անյաղթելի միաբանը, որն որ չէր կրցեր խոնարհեցընել իր գիտութիւնը՝ ճարտարութիւնը և իշխանութիւնը ։ Լութեր հիմա հոն չէր որ իրեն պատասխան տար ․ ուստի Տը Միօ համարձակեցաւ ։ Յունիսի 15ին սրբազան ժողովը Լութերի դատապարտութիւնը վըճռեց, ու հաւանութիւն տուաւ հռչակաւոր կոնդակին ։

Հռովմէական քահանայապետը իբրև փոխանորդ Աստուծոյ և Գլուխ Եկեղեցւոյ այսպէս խօսեցաւ այս վսեմ ժամուն ․ "Արթընցի՛ր՝ ով Տէր, արթընցիր, ու յիշէ ան նախատինքները որով յիմարը կը նախատէ զքեզ բովանդակ օրը ։ Արթընցի՛ր՝ ով Պետրոս, յիշէ քու հռովմէական սուրբ եկեղեցիդ, բոլոր եկեղեցիներուն մայրը ու հաւատոյ թագուհին ։ Արթընցի՛ր՝ ով Պօղոս, զի ահա նոր Պորփիւր մը կայ հոս որ կը յարձակի քուկին վարդապետութեանդ և սրբազան պապերուն մեր նախորդներուն պատիւին վրայ ։ Վերջապէս արթընցի՛ր՝ ով ժողով ամենայն սրբոց՝ սուրբ Եկեղեցի Աստուծոյ, ու բարեխօսէ մեզի համար առ Ամենակալն Աստուած" ։

Ան ատենը պապը Լութերի նախադասութիւններէն քառասունըմէկը յառաջ կը բերէ՝ իբրև վնասակար՝ գայ-

թակղեցուցիչ և արատաւոր նախադասութիւններ, որոնց մէջ Լուտեր Աւետարանական ողջամիտ վարդապետութիւնները բացատրեր էր։ Հետեւեալները դատապարտեալ նախադասութիւններուն մէկ քանին են։

«Ըստ մկրտութեան երեխային վրայ մեղք մնալը ուրանալը՝ ոտաց տակ առնել է զաւուրքն Պօղոս և զՔրիստոս Տէրն մեր»։

«Նոր կեանք մը վարելը ամենալաւ և գերագոյն ապաշխարութիւն՝ է»։

«Հերետիկոսները այրելը սրբազան գրոց հակառակ է», ԽԹ, Ծ։

«Աս կոնդակը հրատարակուածին պէս, կըշարունակէ պապը, եպիսկոպոսները պարտին ժրութեամբ փնտռել Մարտինոս Լուտերի գրուածքները՝ որոնց մէջ աս մոլորութիւնները կան, ու հրապարակաւ և հանդէսով այրել զանոնք եկեղեցականաց և աշխարհականներուն առջև։ Իսկ իրեն Մարտինոսին՝ յանուն Աստուծոյ՝ ի՞նչ մնաց որ չըրինք։ Ի վերայ այսր ամենայնի, Ամենակալ Աստուծոյ բարութեանը նմանելով պատրաստ ենք վերստին ընդունել զինքը Եկեղեցւոյ ծոցը, ու վաթսուն օր ժամանակ կուտանք իրեն որ աս միջոցին գրութեամբ մեզի խրկէ իր վարդապետութիւնը հերքելը՝ երկու եպիսկոպոսաց վկայութեամբ. կամ (որ մեզի աւելի հաճելի կըլլայ) ինքը անձամբ Հռոմ գայ մեր առջևը, որ իր հնազանդութեանը վրայ ոչ ևս տարակոյս ունենայ մէկը։ Միանգամայն և պէտք է որ աս րոպէէս 'ի վեր դադարի քարոզութենէ՝ դասատուութենէ ու գրութենէ, ու իր գրուածքները այրէ։ Իսկ թէ՞ որ վաթսուն աւուր միջոցին մէջ չհերքեր, աս հրամանագրովս կըդատապարտենք զինքը ու իր համախոհները իբրև յայտնի և կամակոր հերետիկոսներ»։ Այնուհետև պապը երկար բանադրանքներ՝ նզովքներ և պատիժներ կըկարդայ Լուտերի և անոր կուսակիցներուն վրայ, հրաման ընելով որ բռնեն զանոնք ու Հռոմ խրկեն։ Դիւրին է իմանալ թէ Հռով-

մայ բանտերուն մէջ ինչ պիտի ըլլար Նեստորանին ալ քաջասիրտ խոստովանողներուն ։

Այսպէս կըհաւաքէր փոթորիկը Լուտերի գլխուն վրայ․ Կոնդակը հրատարակուեցաւ․ ու բազմաթիւ դարերէն հետէ Հռովմ բանադրանաց վճիռ մը հանած չէր առանց մահուան հարուած մը տալու անոր ետևէն ։ Յօթնաբլուր քաղաքէն կելլար ան մահառիթ պատգամը որ պիտի հասնէր Սաքսոնացի միաբանին իր խուցին մէջը ։ Վայրկեանը աղէկ ընտրուած էր․ կըկարծուէր թէ նոր կայսրը որ շատ պատճառներ ունէր բարեկամական կապակցութիւն մը պահել պապին հետ, անտարակոյս պիտի վաղվաղէր ինքզինքը հաճելի ցուցընել անոր՝ մէկ աննշան միաբան մը անոր զոհ ընելով ։ Լէոն Ժերորդ, կարդինալները, ու Հռովմայ բոլոր կուսակիցները ուրախացան․ վասն զի կերևակայէին թէ իրենց թշնամին իրենց ոտքը ինկած կըտեսնեն ։

## ՀԱՏՈՒԱԾ Ե

ՄԻՆՉԴԵՌ Հռովմ քաղաքը այսպէս շփոթութեան մէջ էր, Վիդդէմպէրկի մէջ խաղաղաւէտ դիպուածներ կըպատահէին ։ Հոն Մելանկտոն մէկ մեղմ՝ բայց պայծառ լոյս մը կըծագէր ։ Շատ անգամ իր բոլորտիքը կըհաւաքէին երկու հազարի մօտ ունկնդիրներ՝ Գերմանիայէն, Անգղիայէն, Ստորին Գաւառներէն, Գաղղիայէն, Իտալիայէն, Հունգարիայէն և Յունաստանէն ։ Քսանըչորս տարու էր ինքը, ու ձեռնադրուած չէր ։ Վիդդէմպէրկի մէջ բոլոր տուները բաց էին աս նորահաս վարժապետին, որ այնչափ իմաստուն և միանգամայն այնչափ սիրելի էր ։ Ուրիշ համալսարանները, և մանաւանդ Ինկօլստադինը, կուզէին որ զանիկայ իրենց քաշեն ։ Ուստի Վիդդէմպէրկի իր բարեկամները միտքերնին որոշեցին որ ամուսնանալու համոզե-

լով զինքը իրենց մէջը պահեն ։ Գամք որ նորահաս վարժապետը յաճախ տեսութեան կերթար Քրափ անուն քաղաքապետին տունը, որ հին գերդաստանէ մը սերեալ էր ։ Քրափ աղջիկ զաւակ մը ունէր Կատարինէ անունով , անոյշ և սիրուն բնաւորութեամբ ։ Մելանկտոնի բարեկամները ստիպեցին զինքը որ զանիկայ իրեն կնութեան ուզէ . բայց ուսումնական երիտասարդը իր գիրքերուն մէջ թաղուած էր , և ուրիշ բանի չէր ուզէր ականջ կախել ։ Իր Յունարէն նախնեաց գրքերը և իր կտակարանը իր բարերութիւններն էին ։ Իր բարեկամներուն առաջարկութեանցը ինքը ուրիշ առաջարկութիւններ կընէր ։ Ի վերջոյ իր հաճութիւնը առնուեցաւ , ու իր բարեկամները հարկաւոր եղած ճամբան բռնելով, Կատարինէ անոր կնութեան տըրուեցաւ ։

Մանկամարդ հարսը շատ նշանաւոր էր իր սիրոյն ջերմութեամբը . իր ամուսնոյն վրայով միշտ հոգի մէջ ըլլալով շփոթութեան մէջ կիյնար երբոր իր սիրոյն առարկային ինչ և իցէ վտանգ մը պատահելու նշմարանքը տեսնէր ։ Երբոր Մելանկտոն ճշմարտութեան պաշտպանութեանը համար առաջարկէր այնպիսի ճամբայ մը բռնել որ իր ապահովութիւնը կրնար վտանգել , կաղաչէր կըպաղատէր անոր որ իր միտքը փոխէ ։ Այսպիսի դիպուածի մը վրայով Մելանկտոն գրեց և ըսաւ . "Պարտաւորեցայ զիջանիլ անոր տկարութեանը . ասիկայ մեր վիճակն է" ։ Եկեղեցւոյ մէջ կատարուած անհաւատարմութեան օրինակներուն արդեօք որչափը նոյն սկզբունքէն յառաջ եկած են ։ Գուցէ Կատարինէին իր ամուսնոյն վրայ ունեցած ազդեցութեանը պարտիմք ընծայել ան երկչոտութիւնը ու վարանմունքները որով Մելանկտոն շատ անգամ մեղադրուեցաւ ։ Կատարինէ ինտոր որ իբրև կին՝ այնպէս և իբրև մայր գթասիրտ և գորովագութ էր , նաև առատ ողորմութիւն կուտար աղքատներուն ։ Աս բարեպաշտ և երկչոտ հոգիին հանապազօր առ Աստուած հառաչանքն էր , "Իմ աւեորելուս և ծերանալուս՝ Աստուած իմ , զիս մի՛ թողուր" ։

Մ՛ելանկթոնի սիրտը իր կնոջը սիրովը շուտով վառեցաւ. ընտանեկան կենաց քաղցրութիւնները ճաշակած ըլլալով, անոնց յարգը աղէկ ճանչցաւ։ Արդարեւ իր սիրուն բնութեանը յարմար էր ինքը անոնց համը վայելելու, ու ալ մէկ տեղ մը այնչափ երջանիկ չէր ըլլար որչափ իր Կատարինէին և իր զաւակացը հետ։ Օր մը Գաղղիացի ճանապարհորդ մը անոր տեսն երթալով՝ երբոր գտաւ թէ Գերմանիայի իմաստուն վարժապետը մէկ ձեռքով իր զաւկին օրորոցը կօրէ ու միւս ձեռքը գիրք մը բռնած է, զարմացաւ մնաց։ Բայց Մ՛ելանկտոն առանց ամաչելու այնպէս եռանդով մը բացատրեց անոր Աստուծոյ առջին տղայոց ունեցած բարձրագոյն յարգը, որ ան հիւրը իր բերնովը խոստովանեցաւ թէ տունէն ելելուն աւելի իմաստուն էր քան որչափ հոն մտած ատենը։

Մ՛ելանկտոնի ամուսնութիւնը մէկ գերդաստան մը մատոյց Բարեկարգութեան։ Անով Վիդդէմպէրկի մէջ մէկ տուն մը բացուեցաւ բոլոր ճշմարտութեան հետեւողներուն։ Օտարականները խուռն բազմութեամբ երթեւեկութիւն կ՚ընէին հոն. ժողովուրդը հազար տեսակ բաներու համար Մ՛ելանկտոնին կուգային, որուն տանը հաստատեալ կանոնը ան էր որ մէկէ մը մէկ բան պիտի չմերժուէր*։ Նորահաս վարժապետը մանաւանդ իր անձին շահը կը ձգէր երբոր բարերարութիւն ընելու առիթ մը ըլլար. երբոր իր ստակը հատնէր, ծածկաբար իր սեղանին անօթները կը ծախէր մէկու մը՝ ամենեւին հոգ չընելով զանոնք կորսնցունելուն համար. որովհետեւ անանկով ձեռքը ստակ կանցնէր նեղեալներուն օգնելու։ "Վասն որոյ անհնար եղած պիտի ըլլար, կ՚ըսէ Կամերարիոս իր բարեկամը, որ իրեն և իր ընտանեացը պակսութիւնները հոգար, թէ որ աստուածային գաղտնի օրհնութիւնը ատեն ատեն նոյն պակսութիւնները չլեցունէր"։ Իր քաղցրաբարոյութիւնը չափէ դուրս էր։ Ասկէ

*Camerar. Vita Melancht. p. 40.

ու արծաթ հին դրամներ ունէր, որ շատ նշանաւոր էին իրենց վրայի արձանագրութիւններուն ու պատկերներուն համար։ Օր մը մէկ հիւրի մը կը ցուցընէր զանոնք որ իրեն տեսութեան եկած էր, ու ըսաւ անոր. “Ասոնց որուն կը հաճիս նէ առ”։ “Ամէնուն ալ կը հաւնիմ”, պատասխան տուաւ հիւրը։ “Կը խոստովանիմ, կըսէ Մէլանկտոն, որ առջի բերանը աս անպատշաճ պատասխանին վրայ նեղացայ, բայց և այնպէս ամէնն ալ տուի իրեն”։

Աս անուանի գրագէտը սովորաբար իրիկուան կերակուրէն ետև շուտ մը հանգստանալու կերթար։ Կէս գիշերէն երկու կամ երեք ժամ ետև կելլէր իր գործին պարապելու. և իր խիստ լաւ գրութիւնները աս գիշերային պարապմունքներուն շարադրած է։ Իր ձեռագիրները սեղանին վըրայ բաց կըկենային բոլոր մտնող ելլողներուն առջևը, անանկ որ անոնցմէ շատ կտորներ գողցուեցան։ Երբոր բարեկամներ հրաւիրէր իր տունը, սեղան նստելէն առաջ մէկէն կամ միւսէն կը խնդրէր որ կարճ գրութիւն մը կարդայ թէ ոտանաւոր և թէ արձակ։ Երբոր ճամբորդութիւն ըներ միշտ իրեն ընկեր կառնէր քանի մը պատանիներ, և անանկ կերպով մը կը խօսակցէր անոնց հետ որ միանգամայն վարժութիւն և զբօսանք կը պատճառէր։ Թէ որ խօսակցութիւնը դադարէր, ամէն մէկը ըստ կարգի կը պարտաւորէր համառօտ պարբերութիւն մը ըսել իր բերան սորված հին բանաստեղծութիւններէն։

Ամուսնանալէն քիչ մը ժամանակ ետքը՝ Մէլանկտոն իր խանդակաթ մայրը տեսնելու համար Պրեթէն գնաց, որ Փալադինութեան մէջն է, Կամերարիոսի և քանի մը ուրիշ բարեկամներու հետ։ Հեռուէն իր ծնած քաղաքը տեսնելուն պէս ձիէն իջաւ, ու ծնկան վրայ գալով շնորհակալ եղաւ Աստուծոյ որ անգամ մըն ալ արժանացաւ զանիկայ տեսնելու։ Իր մայրը Մարգարիտ իր որդին գրկելով, ուրախութենէն գրեթէ նուաղեցաւ։ Մօրմէն զատուած ատենը շատ տրտմեցաւ. և երբոր ճանապարհորդ մը իր

ծնած քաղաքէն լուր մը բերէր իրեն, այնպէս կուրախանար՝ կըսէ ինքը, որպէս թէ տղայութեան կըվերադառնար։ Ահա իր ընտանեկան կենացը մէջ այսպիսի մէկն էր աս մարդը, որ տասնըվեցերորդ դարուն մէջի կրօնական խռովութեան մէկ գլխաւոր գործիքը եղաւ։

## ՀԱՏՈՒԱԾ Զ

ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 6ին 1520՝ Լուտերի հռչակաւոր գրութիւնը հրատարակուեցաւ, որ կըկոչուի Բաբելոնեան Գերութիւն Եկեղեցւոյ։ Ոչ երբեք մէկը այսպիսի արիութիւն ցուցուցած էր սանկ վտանգաւոր պարագաներու մէջ։

Աս գործին մէջ կըսկըսի զարմանալի հեգնութեամբ յառաջ բերել ամէն ան օգուտները որ իր թշնամիներէն քաղեր էր։

“Եթէ կամիմ և եթէ ոչ, կըսէ, օր ըստ օրէ աւելի կը սորվիմ, որովհետև այսչափ հռչակաւոր վարժապետներ զիս կըյառաջացընեն։ Երկու տարի առաջ Ներողութեանց վրայ յարձակեցայ, բայց այնպէս թոյլ և անհաստատ կերպով որ հիմա կամաչեմ անոր վրայով։ Սակայն զարմանալ պէտք չէ ասոր, որովհետև անատենը քարը մինակ գլորելու էի’’։

Այնուհետև շնորհակալութիւն կըմատուցանէ Պրիէրիասի, Էքի, Էմսէրի, և իր ուրիշ թշնամիներուն։ Ետքը կըշարունակէ ըսելով. “Պապականութեան Աստուծմէ եղած ըլլալը ուրացայ, բայց մարդկային իրաւամբ հաստատուած ըլլալը ընդունեցի։ Բայց հիմա՝ յետ կարդալուս ան բոլոր իմաստակութիւնները՝ որոնց վրայ աս մեծարու անձերը իրենց չաստուածը կըկանգնեցընեն, գիտեմ թէ պապականութիւնը ուրիշ բան չէ բայց Բաբելոնի թագաւորութիւնը, ու Նեբրովթի հսկայաղօր որսորդին բռնակալութիւնը’’։

Լուտեր ան գրուԹիւնը աս խօսքովս վերջացուց.

"Կըլսեմ որ նոր 'ի նորոյ պապական բանադրանքներ եփած են ինծի համար. Թէ որ իրաւ է՝ աս գիրքը իմ ապանի հերքելուս մէկ մասը կրնայ համարուիլ : Անցեալը շուտով պիտի ելլէ իմ հնազանդուԹեանս փորձ մը ըլլալու համար, ու բոլոր Քրիստոսի օգնուԹեամբը պիտի կազմէ մէկ հաւաքում մը՝ որուն նմանը Հռովմ ոչ երբէք տեսաւ կամ լսեց" :

Ասկէց ետքը պապին ու Լուտերին մէջ հաշտուԹիւն ըլլալու բոլոր յոյսը հարկաւ ոչնչացաւ : Բարեկարգողին հաւատքին ու եկեղեցւոյ վարդապետուԹեան մէկ մէկու հետ անմիաբանուԹիւնը պայծառ կերեւար ամենուն : Բայց աս միջոցիս նոր գործառնուԹիւններ սկսած էին :

Օգոստոսի վերջերուն՝ 1520ին ու Բաբելոնեան ԳերուԹեան հրատարակուելէն հինգ շաբաԹ առաջ Այզլէպէնի մէջ Օգոստինեան կարգին ժողովը գումարեցաւ : Աս ժողովին մէջ մեծարուն Ստաուպից նոյն կարգին ընդհանուր մեծաւոր ըլլալու պաշտօնը ձգեց, ու նոյն աստիճանը տրուեցաւ Վենկեսլաւոս Լինքին որ Լուտերի հետ Նիւրնպուրկ գացած էր : Միլտից ալ ժողովը չցրուած յանկարծ հոն հասաւ *. մեծափափաք իղձով յօժարեալ էր որ պապը և Լուտերը մէկ մէկու հետ հաշտեցընէ : Իր անձնասիրուԹիւնը՝ իր ագահուԹիւնը՝ բայց 'ի վեր քան զամենայն ինչ իր նախանձուԹիւնը և ատելուԹիւնը աս գործիս ստէպեցին զինքը : Էքին սնափառ մեծաբանուԹիւնը ձանձրուԹեան մէջ ձգած էր զինքը . գիտէր որ Ինկօլստադի վարդապետը Հռովմայ մէջ խայտառակ ըրեր էր զինքը, և անոր համար ինչ որ ըլլար զոհ պիտի ընէր՝ որ փուԹանակի հաշտուԹիւն մը կատարելով իր տաղտկալի Թշնամիին դաւաճանուԹիւնները ոչինչ հանէ : Բայց սակայն կրօնքին վրայ քիչ փոյԹ ունէր ինքը . և ինտոր որ ինքը կըպատմէ, մէկ

*Pallavicini I. p. 68.

օր մը Մայսէնի եպիսկոպոսին հետ սեղանակից ըլլալուն և հիւրերուն ալ արբած միջոցին Լուտերի մէկ նոր գրուածքը բերուեցաւ հոն։ Երբոր բացին ու կարդացին զանիկայ, եպիսկոպոսը սաստիկ զայրացման մէջ ինկաւ, ծօտարը սկսեց հայհոյել, բայց Միլտից մեծաձայն կըխնդար *։ Միլտից իբրև աշխարհիկ մէկը Բարեկարգութեան հետ կըվարուէր, բայց Էք իբրև աստուածաբան։

Միլտից Էքին գալստեամբը գրգռուելով Օգոստինեանց մէջ ժողովին առեննաբանութիւն մը ըրաւ։ "Բովանդակ Օգոստինեանց կարգը աս գործովս վտանգի տակ է, ըսաւ. աղէ միջոց մը ցուցուցէք ինծի Լուտերը զսպելու"։ "Անոր հետ մենք բան չունինք, ըսին ժողովին նախագահները. և չեմք գիտեր թէ ինչ խրատ տամք քեզի"։ Անտարակոյս անոր համար աս պատասխանը տուին անոնք, որ գիտէին թէ Ստաուպից Աւկզպուրկի մէջ Լուտերին ազատութիւն շնորհեր էր Օգոստինեան կարգին կապուած ըլլալու պարտաւորութիւններէն։ Միլտից պնդեց ըսելով. "Աս պատուական ժողովը պատգամ թող խրկէ Լուտերին, ու պահանջէ անկէց որ պապին նամակ մը գրէ, հաւատացընելով զանիկայ թէ անոր անձին վրայով ոչ երբէք դաւաճանութիւն մը գործած է։ Ասիկայ բաւական է գործը վերջացընելու"։ Նուիրակին առաջարկութեանը հաճութիւն տուաւ ժողովը, ու աս պաշտօնը յանձնուեցաւ Ստաուպիցին՝ հրաժարեալ ընդհանուր մեծաւորին, ու անոր յաջորդը Լինքին, որ Լուտերին հետ խորհուրդ ընեն։ Աս պատգամաւորները անմիջապէս ճամբայ ելան Վիդդէմպէրկ երթալու, ու հետերնին նամակ մը ունէին Միլտիցէն առ Լուտեր վարժապետը, յարգական խօսքերով լեցուն։

Ոչ Լուտեր՝ և ոչ աս պատգամաւորները որ անոր կարծիքներուն հակամիտեալ էին՝ յոյս մը ունէին թէ պապին գրելով բան մը շահուի։ "Աս Սաքսոնացի Իտալացին, (Միլ-

* Seckendorf, p. 266.

*տից), ըսաւ Լուտեր, աս խնդիրը ընելուն անտարակոյս իր առանձին շահուն վրայ է իր միտքը: Աղէկ է, այնպէս թող ըլլայ. Ճշմարտութեամբ պիտի գրեմ թէ ես պապին անձին վրայով ոչ երբէք չար դիտաւորութիւն մը ունեցայ: Պէտք է որ ես ինծի զգուշանամ, ու չափազանց թշնամութիւն չցուցընեմ Հռոմայ աթոռոյն: Այսու ամենայնիւ պէտք է որ բանը դեռ աղով համեմուած ըլլայ":*

*Բայց ասոր վրայ շատ չանցած Լուտեր լսեց թէ պապին կոնդակը Գերմանիա հասեր է: Ուստի Հոկտեմբերի 3ին իմացուց Սպալատինին թէ պապին գիր պիտի չգրէ. ու նոյն ամսուն 6ին հրատարակեց իր գիրքը Բաբելոնեան Գերութեան վրայ: 'Ի վերայ այսր ամենայնի Միլտից չսրտաբեկեցաւ. Ինքը յաղթելու համար իր ունեցած փափաքը անհնար բաներ մտածել կուտար իրեն: Հոկտեմբերի 2ին կատարեալ վստահութեամբ մը այսպէս գրեր էր կայսրընտրին. "Ամէն բան աղէկ պիտի ըլլայ. բայց վասն Աստուծոյ այլ ևս մի՛ յապաղէք հատուցանելու ինծի ան թոշակը՝ որն որ դուք և ձեր եղբայրը քանի մը տարիէն 'ի վեր ինծի շնորհեցիք: Ձեռքս ստակ պէտք է որ Հռոմայ մէջ նոր բարեկամներ շահիմ: Պապին գիր գրեցէք, ծաղկահասակ կարդինալներուն որ անոր ազգականներն են՝ սիրտերը շահեցէք ոսկի ու արծաթ ընծաներ խրկելով ձեր կայսրընտրական բարձրութեան տպած դրամներէն, և քիչ մըն ալ ինծի տուէք. վասն զի ձեր ինծի տուածը յափշտակեցին ձեռքէս":*

*Կոնդակին գալուստը Լուտերին իմանալէն ետև ալ խորամանկ Միլտիցը չսրտաբեկեցաւ, այլ խնդրեց որ Լիխթէնպէրկի մէջ անոր հետ տեսնուի: Կայսրընտիրը հրաման ըրաւ Լուտերին հոն երթալու. բայց անոր բարեկամները՝ և ամէնէն աւելի խանդակաթն Մելանկտոն դէմ կեցան անոր երթալուն: Մտածեցին թէ "Կոնդակին երևան ելած ժամուն որ ամէնուն կըպատուիրէ Լուտերը բռնել որ Հռոմ տարուի, անիկայ առանձին տեղ մը պապին նուի-*

րակին հետ տեսնուելու պիտի երթայ ։ Յայտնի չէ՞ որ Էք վարդապետը Բարեկարգողին վրայ ունեցած ատելութիւնը ամէն մարդ գիտնալուն համար անոր մօտիկ չկենալով, ան խորամանկ սենեկապետը իր վրան առաւ իր որոգայթնե-րուն մէջ ձգել Լուտերը" ։

Սա երկիւղները չկրցան արգելք ըլլալ Վիդդէմպէրկի վարժապետին ։ Կայսրընտիրը հրաման ըրեր էր, և ինքը օ-րոշեց հնազանդիլ ։ Հոկտեմբերի 11ին Սպալատինին գրեց ու ըսաւ. "Ահա ճամբայ կ'ելլեմ Լիխթէնպէրկ երթալու. աղօթէ ինծի համար" ։ Իր բարեկամները միասին չձգեցին զինքը. և նոյն օրը իրիկուան դէմ Լուտեր Լիխթէնպէրկ մտաւ երեսուն ձիաւորով, որոնց մէջ էր և Մ՝եղանկոն ։ Ան մեկնեցին պապին նուիրակին ալ հասաւ միայն չորս հո-գիով ։ Արդեօք հաւանական չէ՞ր որ Միլտիցին այ-պէս քիչուոր մարդով գալը՝ Լուտերին և իր ընկերներուն վստահութիւն տալու որոգայթ մը ըլլար ։

Միլտից սաստիկ թախանձանքներով հաւատարմացուց զԼուտեր թէ յանցանքը Էքին վրայ ու իր անմիտ մեծա-մտութիւններուն վրայ պիտի ձգուի, ու ամէն բան անանկ պիտի կարգադրուի որ երկու կողմն ալ գոհ ըլլայ ։ "Աղէկ է, պատասխան տուաւ Լուտեր. ես ալ կը խոստանամ այ-սուհետև լուռ կենալ, թէ որ իմ թշնամիներս ալ նոյն բանը ընեն ։ Բոլոր իմ կրցածս կ'ընեմ խաղաղութեան համար" ։

Միլտից ուրախութեամբ լցաւ. մինչև Վիդդէմպէրկ Լուտերին ընկերացաւ, ու Բարեկարգողը և պապական նուիրակը քովէքով մտան քաղաքը, որ ատեն Էք հոն կը մօտենար սպառնալից ձեռքերով բռնած ան զարհուրելի կոնդակը որ կը յուսացուէր թէ պիտի ջնջուցանէր զԲա-րեկարգութիւնը ։ Միլտից անմիջապէս այսպէս գրեց կայսր-ընտրին. "Աջողանիկ վախճանի մը պիտի բերենք բանը. շնորհակալ եղիք պապէն իր խրկած Վարդին համար, ու

քառասուն կամ յիսուն Փիօրին խրկեցէք Քուաթօր Սանկթօրում * կարդինալին" :

Լուտեր իր խոստմունքը կատարելու համար պէտք էր որ գրէ պապին : Միտքը դրաւ որ իր մշտնջենաւոր հրաժարական ողջոյնը Հռովմայ մատուցանելէն առաջ միանգամ ևս քանի մը երևելի և օգտակար ճշմարտութիւններ խօսի անոր : Կարելի է որ ոմանք համարին թէ իր նամակը միայն կծու գրութիւն մը, դառն և նախատական երգիծաբանութիւն մըն է . բայց ասանկ համարիլը անոր զգացումները սխալ իմանալ է : Ինքը աղէկ տեղեկացած էր թէ քրիստոնէից երկիրներուն մէջի բոլոր չարիքները Հռովմայ կը վերաբերին . վասն որոյ իր խօսքերը ոչ նախատինք են այլ վսեմ ազդարարութիւններ : Որչափ որ կըսիրէ զԼևոն , և որչափ որ կըսիրէ Քրիստոսի եկեղեցին ; այնչափ պէտք է որ անոր վերջին մեծութիւնը յայտնապէս իմացընէ : Իր սիրոյն սաստկութիւնը իմացուելու է իր խօսքերուն ազդուութենէն . ծանր հարուածներ տալու վայրկեանը հասած է : Ասով ինքը միտքերնիս կըբերէ մարգարէն՝ որ վերջին անգամ քաղաքին մէջէն կանցնի նախատելով զանիկայ իր բոլոր գարշութիւններովը , Յաւիտենականին դատաստանները անոր իմացընելով , և մեծաձայն աղաղակելով թէ 'Այլ ևս սակաւ աւուրք" . . . :

Լուտերի գրած նամակը աս հետևեալն է :

"Գերերջանիկ հօր հոգևորի Ժ Լևոնի պապին Հռովմայ ամենայն երջանկութիւն և յաջողութիւն 'ի Քրիստոս Յիսուս 'ի Տէր մեր . Ամէն :

"Երեք տարիէն հետէ անկարգ մարդոց հետ իմ վարած սաստիկ պատերազմիս մէջ տեղէն չեմ կրնար ես զիս զսպել իմ աչքերս երբեմն ձեզի դարձնելէն ով Լևոն , սրբազնասուրբ հայր հոգևոր : Եւ թէպէտ ձեր ամբարիշտ պատուարոյծներուն յիմարութիւնը ստիպեց զիս որ ձեր

*Quatuor Sanctorum.

վճիռէն ապաժնի ժողովք բողոքեմ, բայց իմ սիրտս ոչ երբէք շրջեցաւ ձեր սրբութենէն. և ոչ երբէք դադարեցայ աղօթքով և հառաչանքով աղաչել զԱստուած ձեր յաջողութեանը և ձեր աթոռոյն հաստատութեանը համար։

“Ճշմարիտ է թէ քանի մը վարդապետութեանց դէմ ելայ որ քրիստոնէութեան հակառակ էին, ու խորին վէրքեր դրի իմ թշնամիներուս վրայ իրենց ամբարշտութեանցը համար. բայց չեմ զղջար ասոր վրայ, վասն զի աս մասին օրինակ ունիմ ինծի զՔրիստոս։ Ի՛նչ բանի պիտանի է աղը՝ թէ որ իր համը կորսընցունէ, կամ սուրը՝ թէ որ չկտրէ։ Անիծեալ է ան որ Տէրոջը գործը ցրտութեամբ կը կատարէ։ Ո՛վ ամենապատուական Լևոն, ձեր վրայով չարակամութիւն մը մտքէս չանցունելէս զատ, մշտնջենաւորապէս մեծամեծ բարութիւններ կը խնդրեմ ձեզի։ Միայն մէկ բան մը ըրի որ ճշմարտութեան Բանը պաշտպանեցի։ Պատրաստ եմ տեղի տալ ամենուն՝ ամէն բանի մէջ. այլ ան Բանը չեմ ուզեր ու չեմ կրնար ձգել։ Ով որ տարբեր կերպով կը մտածէ սխալ կը մտածէ։

“Իրաւ Հռովմայ աթոռին հակառակ ելայ. բայց ոչ դուք և ոչ երկրի վրայ մէկը կրնայ ուրանալ՝ թէ ան աթոռին վատթարութիւնը Սոդոմայ կամ Գոմորայ վատթարութիւններէն մեծ է. և թէ՝ անոր ամբարշտութեանը դեղ ու դարման ըլլալու յոյս մը մնացած չէ։ Ճշմարիտ՝ դողումն պաշարեց զիս, տեսնելով թէ Քրիստոսի հօտին տկար անդամները ձեր անունովը կը խաբուին. և ասոր ալ դէմ կեցայ ու միշտ պիտի կենամ. չէ թէ անոր համար որ կերեւակայեմ թէ աս խառնակութեան Բաբելոնիս մէջ շողոքորթողներուն դէմ բան մը գլուխ պիտի հանեմ. այլ որ պարտական եմ իմ եղբարցս, որ եթէ հնար է նէ՝ անոնցմէ ոմանք աս զարհուրելի պատուհասներէն ազատին։

“Գիտէք դուք որ Հռովմ բազմաթիւ տարիներէն հետէ հոգիի ու մարմնի վնասակար եղած ամէն բաներով ողողեց աշխարհս։ Հռովմայ եկեղեցին՝ որ առաջուց նշա-

նաւոր էր իր սրբութեանը համար, հիմա եղած է աւազա-կաց բուն մը, անպատկառութեան տեսարան մը, մահուան ու դժոխոց տէրութիւն մը. անանկ որ թէ որ Ներոն երեւնալու ըլլար, չէր կրնար աւելցընել անոր ամբարշտութիւնը։ Ասոնց ամէնը ցորեկուան լուսի պէս պայծառ է։

«Եւ դուք՝ ով Լեւոն, աս բոլոր պարագաներուս մէջ կե-ցեր էք իբրև Գառն գայլերու մէջ, կամ իբրև Դանիէլ ա-ռիւծներու գուբին մէջ։ Ինչպէս կրնաք առանց օգնու-թեան դէմ կենալ աս հրէշներուն. դուցէ երեք կամ չորս կարդինալներ գտնուին որ գիտութեան հետ առաքինու-թիւն ալ միացուցած ըլլան. բայց ինչ պիտի ըլլան ասոնք այնչափ բազմութեան մէջ։ Ձեր կեանքը պիտի վերցուի թունով, դուք դեղ ու դարման մատուցանելու չկարողա-ցած։ Հռովմայ համար յոյս մնացած չէ. Աստուծոյ բար-կութիւնը բորբոքեցաւ, և իբրև հուր պիտի մաշեցընէ զա-նիկայ։ Յանդիմանութիւնը կատէ, ու Բարեկարգութեան մենելէն կը վախնայ. իր ամբարշտութեան յիմարութիւնը զսպել չուզէր, ու իր մօրը վրայով ըսուածին պէս կրնայ ըսուիլ իր վրայ. Բաբելոնը պիտի բժշկէինք բայց չբժըշ-կեցաւ. այսուհետև մէկ դի ձգենք զանիկայ՝ *. մարդիկ ձե-զի և ձեր կարդինալներուն կը նայէին որ աս ամէնուն դեղը ճարէք. բայց հիւանդը բժիշկին վրայ կը խնդայ, ու նժոյգը մտիկ չըներ սանձերը։ . . . .

«Ով ամենապատուական Լեւոն, ձեր վրայ ունեցած իմ լեցուն սիրովս միշտ կը ցաւիմ, որ դուք՝ լաւագոյն դարու յարմար ըլլալով, այսպիսի ժամանակ պապական աթոռը բարձրացաք։ Հռովմ արժանի չէ ձեզի, կամ ձեզ նման մէկու մը. արժանի չէ ուրիշ իշխանի քան զնոյն ինքն Սա-տանայն։ Եւ արդարև ոչ դուք՝ այլ անիկայ է որ այդ Բաբելոնին մէջ կը թագաւորէ։ Երանի թէ մէկ դի դնելով ան փառաւորութիւնը որ ձեր թշնամիները այնչափ կը

* Երեմ. ծա. 9։

բարձրացընեն, պարզ ժողովրդապետութեան մը հետ կարենայիք զանիկայ փոխանակել, կամ ձեր հայրենական ժառանգութեամբը ապրիլ. վասն զի ոչ ուրիշները բայց եթէ Յուդաներ արժանաւոր են այդպիսի վիճակի: Ուրեմն՝ ով սիրեցեալ Լեոն, ի՞նչ վախճանի կըծառայէք աս Հռովմայ ատեանին մէջ, բայց եթէ ասոր՝ որ գարշելի մարդիկ ձեր անունովը ու իշխանութիւնովը մարդոց սրտացաւանքը կըսպառեն, հոգիները կըկորուսանեն, մեղքը կը բազմացընեն, ու հաւատքը, ճշմարտութիւնը, և Աստուածոյ բոլոր Եկեղեցին կըհարստահարեն: Լեո՛ն Լեոն, բոլոր մարդոց վատթարագոյնը դուք էք, ու կընստիք բոլոր աթոռներուն ամէնէն վտանգաւորին վրայ: Ճշմարիտը կը խօսիմ ձեզի, վասն զի ձեր աղէկութեանը կըփափաքիմ:

"Ճշմարիտ չէ՞ թէ երկնից տակը Հռովմայ ատեանէն աւելի վատթար ու ատելի բան մը չկայ: . . . . Ան որ ատենով երկնից դուռն էր, հիմա եղած է նոյն իսկ դժոխքին բերանը. ու Աստուծոյ բարկութեամբը բաց ու տարածեալ ըլլալով՝ երբոր կըտեսնեմ թէ այնչափ ողորմելի արարածներ հիքըգլխիքնին անոր մէջ կընետեն, աս խռովութեանը մէջէն հարկաւ կըպարտաւորիմ աղաղակել որ ոմանք ազատին այն զարհուրելի անդունդէն:

"Այլ ահա ասիկայ է պատճառը՝ ով հայր իմ Լեոն, որ այնչափ խստութեամբ դէմ կեցայ այն աթոռին որ իրեն հետ միացեալներուն մահ կըմատակարարէ: Ձեր անձին վրայով նենգութեան խորհուրդ մը չունենալէս զատ, այնպէս կըզգամ որ ձեր ապահովութեանը համար աշխատած եմ, քաջութեամբ յարձակելով այն բանտին՝ կամ յաւէտ այն դժոխքին վրայ, որուն մէջ դուք փակուած կը կենաք: . . . .

"Բայց որովհետև Հռովմայ աթոռոյն պաշտպան կենալով իմ ժամանակս կըկորսընցունէի, խորհեցի իրեն անկէց արձակուելու իմ գիրս՝ ու ըսի, Մնաս բարեաւ, Հըռովմ. ան որ ամբարիշտ է ամբարիշտ թող ըլլայ, և ան

որ աղտեղի է աղտեղի թող ըլլայ*. ու անկէց ետքը լաւութեամբ և առանձնութեամբ ինքզինքս Սուրբ Գրոց պարապելու տուի։ Ահա այն միջոցին էր որ Սատանայ գրգռեց իր ծառան Յովհաննէս Եքը՝ Յիսուս Քրիստոսի մեծ թշնամին, որ վերստին կոչէ զիս պատերազմին ասպարէզը։ Ինքը կը խնդրէր որ իր գլխաւորութիւնը հաստատէ, և ոչ Պետրոսինը. և աս դիտաւորութեամբս յաղթել զԼուտեր, ու յաղթանակաւ Հռովմ տանիլ զանիկայ. իր վրայ պէտք է դնել յանցանքը, որ իր կրած հարուածովը ամօթով ծածկեց զՀռովմ"։

Լուտեր աս տեղս կարգաւ կը պատմէ ինչ որ Տը Մ ֆօն՝ Միլտիցի՝ Եքի՝ և իր մէջը անցան. այնուհետև այսպէս կը շարունակէ.

"Եւ արդ՝ ո՛վ սրբազնասուրբ հայր, ձեզի կը դիմեմ, և ձեր ոտքը ինկած կաղաչեմ որ եթէ ճար է նէ խաղաղութեան թշնամիները զսպէք։ Բայց ես չեմ կրնար հերքել իմ վարդապետութիւնս. չեմ կրնար հաւանութիւն տալ թէ Սուրբ Գրոց վրայ մեկնութեան կանոններ դրուին։ Աստուծոյ Բանը, որ ամէն ազատութիւններուն բղխած ակն է, պէտք է որ ազատ մնայ։

"Ո՛վ հայր իմ Լեոն, մի՛ լսէք այն շողոքորթողներուն խօսքին որ կըսեն թէ դուք լոկ մարդ չէք՝ այլ կիսաստուած, և թէ իրաւամբ կրնաք հրամայել ինչ որ ուզէք։ Ծառայ ծառայից էք դուք, և ձեր նստած տեղը ամենէն վտանգաւոր և ամենէն թշուառական տեղ է։ Մի՛ հաւատաք անոնց որ զձեզ կը բարձրացընեն, այլ յաւէտ անոնց հաւատացէք որ զձեզ կը նուաստացընեն։ Յանդգնութիւն կրնայ համարուիլ ինծի բան սորվեցունել ձեր գերամբարձեալ մեծափառութեանը, որ պարտի վարժել զբոլոր մարդիկ. բայց կը տեսնեմ որ Հռովմայ մէջ բազմաթիւ վտանգներ ձեզ շրջապատած են. կը տեսնեմ զձեզ որ կատաղի ծովու մը

* Յայտ. իբ. 11։

ալիքներուն վրայ աս դին ու անդին կըծփծփայ, ու սէրը կըպարտաւորէ զիս ձեր վտանգը իմացընել ձեզի, ու ստիպել զձեզ որ ձեր ազատութեանը հոգ տանիք ։

"Այս որպէս զի ձեր սրբութեան առջևը ունայնաձեռն չերևամ, փոքրիկ գիրք մը կըմատուցանեմ ձեզի, որուն ուղերձը ձեր անուանն է, և որ պիտի իմացընէ ձեզի թէ ի՛նչ նիւթերու վրայ կըպատաղիմ, թէ որ ձեր շողոքորթիչները թող տան ինծի ։ Աս գրքոյկը ըստ երևութին ոչինչ բան մըն է, բայց իր պարունակած նիւթը հարկաւոր բան է. վասն զի քրիստոնէին կեանքին բովանդակութիւնը կը պարունակէ ։ Աղքատ եմ, ու աւելի բան մը չունիմ ձեզի մատուցանելու. և արդարև ի՞նչ բանի կարօտութիւն ունիք դուք, եթէ ոչ հոգևոր պարգևներու ։ Ձեր սրբութեանը աղօթքին կըյանձնեմ զիս, աղաչելով որ Տէր Յիսուս հանապազ պահպանէ զձեզ. Ամէն" ։

Լուտերի 'ի նշան յարգութեան պապին ընծայած գրքոյկը իր ան ճառն է որ կըկոչուի Քրիստոնէին Ազատութիւնը ։ Բարեկարգողը աս ճառին մէջ հաստատութեամբ կըցուցընէ թէ քրիստոնեայն առանց օտարանալու ան ազատութենէն որ հաւատքը կըմատուցանէ իրեն, ազատութեան և սիրոյ ոգիով ամէն արտաքին արարողութիւններու կրնայ հպատակիլ ։ Իր ձեռնարկութեանը հիմը աս երկու ճշմարտութիւնն է. "Քրիստոնեայն ազատ է, ու ամէն բան իրն է ։ Քրիստոնեայն ծառայ է, ու ամէն բանի մէջ ամէնուն հպատակեալ է ։ Ըսել է թէ ազատ է, ու ամէն բանի տէր՝ հաւատքով. բայց հպատակ ու ծառայ է՝ սիրով ։

Նախ կըցուցընէ թէ հաւատքը զօրութիւն ունի ազատ կացուցանելու զքրիստոնեայն ։ "Հաւատքը, կըսէ Լուտեր պապին, Քրիստոսի հետ կըկապէ զհոգին, ինչպէս մէկ հարս մը իր փեսային հետ ։ Աստի Քրիստոսի բոլոր ունեցածը հաւատացեալ հոգիին ստացուածքը կըլլայ, ու հոգիին բոլոր ունեցածը Քրիստոսի ստացուածքը կըլլայ ։

Քրիստոս՝ ամէն բարութեանց և յաւիտենական կենաց տէր է, և ասոնք այնուհետև հոգիին ստացուածքներն են. իսկ հոգին՝ իր բոլոր անօրէնութիւններուն և մեղքերուն տէրն է, ասոնք ալ այնուհետև Քրիստոս իր վրայ կառնէ։ Ասանկով մէկ երջանիկ փոխանակութիւն մը կըսկըսի. Քըրիստոս՝ որ միանգամայն Աստուած է և մարդ, Քրիստոս՝ որ ոչ երբէք մեղանչեց՝ և որուն սրբութիւնը մտքէ վեր է, Քրիստոս՝ Ամենակալը և Յաւիտենականը, իր հարսնախօսութեանը տուած հաւատոյ մատանիովը իր վրան առնելով հաւատացեալին ամէն մեղքերը, իր մէջը կըկորնչին ու կոչնչանան անոնք. վասն զի իր անհուն արդարութեանը առջին ոչ մէկ մեղք մը կրնայ կենալ։ Այսպէս հաւատացեալին հոգին հաւատքով կազատի բոլոր մեղքերէն, ու իր փեսային՝ Քրիստոսի մշտնջենաւոր արդարութեամբը կը հագուի։ Ով երջանիկ միութեանս. մեծատուն՝ պատուական և սուրբ փեսան, ամուսնութեամբ իրեն կառնէ աղքատ՝ յանցաւոր ու անարգեալ հարսը, ամէն չարիքներէն զանիկայ կազատէ, և ամենապատուական բարութիւններով կըհարստացընէ։ Քրիստոս՝ թագաւոր և քահանայ է. ու աս փառքը և պատիւը բոլոր քրիստոնէից կըհաղորդէ։ Ուրեմն Քրիստոնեայն ալ թագաւոր է, և հետևապէս ամէն բան ունի. քահանայ է, և հետևապէս զԱստուած ունի։ Իսկ ոչ գործերը՝ այլ հաւատքը կըբերէ իրեն աս ամէն պատիւը։ Ուստի Քրիստոնեայն ամէն բաներէ ազատ է, ամէն բաներէ վեր է, վասն զի հաւատքը առատապէս կըմատուցանէ անոր ամէն բաները"։

Իր ճառին երկրորդ մասին մէջ Լուտեր միւս ճշմարտութիւնը յառաջ կըբերէ. "Ասանկով թէպէտև քրիստոնեայն ազատ է, այլ կամաւ ծառայ կըլլայ, որպէս զի նոյն բանը ընէ իր եղբարցը ինչ որ Աստուած իրեն ըրաւ Յիսուս Քրիստոսով"։ "Ազատութեամբ, ուրախութեամբ, և երախտագիտութեամբ պիտի ծառայեմ" կըսէ, "իմ Հօրս, որ այսպէս բոլոր առատութեամբ հոսեց իմ վրաս

իր բարութիւնները. իմ ընկերիս համար ամէն բան պիտի ըլլամ, ինչպէս որ Քրիստոս ինծի համար ամէն բան եղաւ": "Հաւատքէն կըծագի, կըսէ Լուտեր, Աստուծոյ սէրը. սէրէն կըծագի ազատութեան գթութեան և ուրախամտութեան կեանք մը: Ո՛վ ի՜նչպէս ազնիւ և ինչպէս գերագոյն կեանք է քրիստոնէին կեանքը. բայց ափսոս որ մէկը չգիտեր, ու մէկը չքարոզեր զանիկայ: Քրիստոնեայն հաւատքով առ Աստուած կելլէ, սիրով առ մարդն կիջնէ՝ և սակայն միշտ Աստուծոյ հետ կըմնայ: Այսպիսի է ճշմարիտ ազատութիւնը. անիկայ ազատութիւն մըն է որ բոլոր ուրիշ տեսակ ազատութիւններէն այնչափ կըգերազանցէ, որչափ երկինքը երկիրէն բարձր է":

Անիկայ էր ահա ան գործը՝ որուն հետ Լուտեր իր նամակը խրկեց առ Ժ Լեոն:

## ՀԱՏՈՒԱԾ Ը

ՄԻՆՉԴԵՌ Բարեկարգողը աս վերջին նուագին այսպէս կըխօսէր Հռովմայ քահանայապետին, զինքը բանադրող կոնդակը Գերմանացւոց եկեղեցւոյն մեծամեծներուն ձեռքը ու Լուտերի բնակարանին դուռը հասեր էր: Պապը պատուիրեր էր իր պալատականներուն մէջէն երկու երևելի պաշտօնատարներու՝ որոնք էին Քարրաչիոլի և Ալէանտէր, որ Մայնցի արքեպիսկոպոսին տանին կոնդակը, ու խնդրեն որ անոր գործադրութեանը հոգ տանին: Բայց Սաքսոնիայի մէջ Էք անձամբ երևցաւ իբրև պատգամաւոր և գործակալ ան մեծ գործին մէջ որ պապը կըջանար թէ կատարուի: Ինկօլստադի վարժապետը՝ ով և իցէ ուրիշ մէկէ մը աղէկ ճանչցեր էր Լուտերի հարուածին սաստկութիւնը. վտանգին ականատես եղած էր, ու իր ձեռքը երկընցուցեր էր Հռովմայ դողդոջուն զօրութեանը նպաստելու: Հռովմ

երթալէն գտած յաջողակութեանը վրայ փքանալով , ու մեծամտելով ծայրագոյն քահանայապետին իրեն յանձնած պաշտօնին ու իր ձեռքը կրած կոնդակին վրայ՝ որ կը պարտաւորէր իր անյաղթելի հակառակորդին դատապարտութիւնը , իր ներկայ պաշտօնը աւելի մեծ յաղթութիւն կերեւար իր աչքերուն քան թէ ամէն ան յաղթութիւնները որ Ֆռանկոնիայի՝ Պաւարիայի՝ Լոմպարտիայի ու Սաքսոնիայի մէջ ստացեր էր , ու առաջուց անոնցմէ այնչափ համբաւ ընդունիր էր : Բայց բովանդակ աս մեծամտութիւնը նուաճելու վրայ էր . վասն զի պապը կոնդակին հրատարակութը Էքին յանձնելով սխալմունք մը գործեր էր որ անոր զօրութիւնը պիտի ունայնացընէր : Եկեղեցւոյ մէջ բարձր աստիճան մը չունեցող մարդուն այսպէս երեւելի գործ մը յանձնելը վշտացուցին ան մարդերը որ վշտանալու ընդունակ էին : Հռովմէական եպիսկոպոսները՝ որոնք սորված էին ուղղակի իրենք ընդունել պապին կոնդակները , անպատշաճ համարեցան որ աս ներկայ կոնդակը իրենց թեմերուն մէջ հրատարակուի աս անանկ նուիրակին ձեռօքը : Գերմանացի ազգը՝ որ Լիփսիայի վիճաբանութեան մէջ ծաղր և խայտառակ ըրած էր ան կեղծաւորեալ յաղթականը որ Իտալիա փախաւ , զարմանալով և սրտմտութեամբ տեսաւ որ նոյն անձը Ալպեան լեռներուն աս կողմը վերստին կերեւայ պապական նուիրակի աստիճանով ու իր ՚ի պատուի բռնած մարդիկը նուաճելու կարողութիւնով սպառազինուած : Լութեր իր անողոքելի թշնամւոյն ձեռօքը իրեն եկած աս վճիռը առանձին վրէժխնդրութեան գործ մը համարեցաւ : “Աս դատապարտութիւնը , կըսէ Պալլավիչինի , թուեցաւ անոր ոխերիմ թշնամիի մը ծածուկ դաշնակը , և ոչ հռովմէական պաշտօնէի մը օրինաւոր կացինը”: Վասն որոյ աս գրուածքը ոչ եթէ ծայրագոյն քահանայապետին կոնդակը կը համարուէր , այլ Էքի վարժապետինը : Այսպէս հարուածին զօրութիւնը տկարացաւ ան նոյն անձովը որ զանիկայ գրգռեր էր :

Ինկօլստադի դիւանադպիրը արտաքինօք համար էր Սաք-սոնիա. վասն զի հոն յաղթուած ըլլալով, հոն կուզէր ցուցընել իր յաղթութիւնը: Սեպտեմբերի վերջերը յաջողեցաւ իրեն որ Մայսէնի՝ Մերզէպուրկի ու Պրանտէպուրկի մէջ կախել տայ կոնդակը: Բայց աս քաղաքներուս առջինին մէջ անանկ տեղ մը կախուեցաւ ան՝ ուր որ մարդ չէր կրնար զանիկայ կարդալու. ու աս երեք վիճակներուն եպիսկոպոսները ոչինչ փոյթ տարին զանիկայ հրատարակելու: Գէորգ դուքսը ևս որ մեծ պաշտպան էր Էքին՝ Լիփսիայի ատեանին պատուիրեց որ Մերզէպուրկի եպիսկոպոսին հրամանը չընդունած չհրատարակեն զանիկայ. և ան հրամանը մինչև հետևեալ տարին չհասաւ: Էք առջի բերանը մտածեց թէ աս դժուարութիւնները միայն օրէնքը պահելու համար են. որովհետև ուրիշ կերպով ամէն բան յաջող կերևար իրեն: Գէորգ դուքսը ոսկեզօծ բաժակ մը և քանի մը տուգաթ խրկեց անոր. Միլտից ալ՝ որ իր նախանձորդին գալուստը լսելուն փութացեր էր Լիփսիա երթալ, ճաշի հրաւիրեց զանիկայ: Ու երկու նուիրակները չափազանց սէր ունենալով կերուխումի վրայ, Միլտից մտածեց որ Էք վարդապետը փորձելու ամենալաւ առիթը իրենց գինարբուութեան ժամանակն է: «Երբոր բաւական արբած էր Էք, կըսէ Միլտից, սկսեց չափազանց մեծաբանել. իր կոնդակը հանեց ցուցուց, ու ըսաւ թէ ինչպէս աշխատած է ան ապստամբ Մարտինոսը խելքբերելու»*: Բայց շատ չանցած Ինկօլստադի վարժապետը սկսեց տեսնել թէ հովը փոխուելու վրայ է: Մէկ տարուան մէջ մեծ փոփոխութիւն եղաւ Լիփսիայի մէջ: Արդէն Միքայէլի տօնախմբութեան օրը համալսարանին աշակերտները տասը տեղ յայտարարութիւն կախեցին, որով սաստիկ կըկշտամբէին զնոր նուիրակը: Էք մեծապէս շփոթելով ասկէց՝ սրբոյն Պօղոսի վանքը դիմեց պատսպարուելու,

* Nachdem er nun tapfer getrunken hatte, fieng er gleich an treflich von siner Ordre zu prahlen &c (Seckend. p. 238):

ուր որ Տէցել առաջ պատսպարուեր էր. ամենևին մէկու մը տեսութիւնը չընդունեց, ու վանքին մեծաւորէն խօսք առաւ թէ իր նորահաս թշնամիները 'ի համար պիտի կոչուին : Բայց ողորմելին Ինք բան մը չշահեցաւ ասով. աշակերտները երգ մը յօրինեցին իր վրայ, ու փողոցներուն մէջ կերգէին. Ինք ալ իր պահուած տեղէն կըլսէր զանիկայ : Ասոր վրայ իր բոլոր համարձակութիւնը ոչնչացաւ, ու զարհուրելի ախոյեանին ամէն անգամները դողի մէջ էին : Առաքելական նամակները անձրևի պէս իր վրայ թափեցան, ու Վիդդէմպէրկէն հարիւր յիսուն աշակերտ եկան, որոնք պապական պատգամաւորին դէմ մեծաբարբառ կաղաղակէին : Ողորմելի Նուիրակը ոչ ևս կրնար տանիլ աս բաները :

«Չեմ ուզեր անոր սպանուիլը. կըսէ Լուտեր. բայց կը բաղձամ որ իր գիտաւորութիւնները ոչնչանան" : Ինք գիշերով թողուց իր տեղը, գաղտնի փախաւ Լիփսիայէն, և ուզեց Կոպուրկի մէջ զինքը պահել : Միլտից աս պարագան պատմելուն՝ Բարեկարգողէն աւելի յաղթական կը ցուցընէ զինքը : Բայց իր յաղթութիւնը երկար չտևեց. վասն զի իր հաշտութեան ջանքերն ալ բոլորովին ունայնացան, ու ինքը աղէտալի վախճանի մը պատահեցաւ Մայնցի մէջ սաստիկ գինեհարութեամբ Հռենոս գետը իյնալով :

Ինք կամաց կամաց համարձակութիւն առաւ, ու գնաց Էրֆուրթ՝ որուն աստուածաբանները Վիդդէմպէրկի վարժարանին վրայ իրենց նախանձութեան նշանները ցուցըցեր էին : Խնդրեց որ նոյն քաղքին մէջ հրատարակուի աս կոնդակը. բայց աշակերտները կոնդակին օրինակները յափշտակեցին, ու պատռտելով գետը նետեցին զանոնք : Ինք չհամարձակեցաւ անձամբ երթալ Վիդդէմպէրկ. այլ խրկեց կոնդակը համալսարանին վերատեսչին հանդերձ սպառնալեօք որ եթէ չհաճի զանիկայ հրատարակել, համալսարանին կործանմանը պատճառ պիտի ըլլայ : Թուղթ գրեց և Յովհաննէս դքսին՝ Փրիդերիկոսի եղբօրը և պաշ-

տօնակցին, ու ըսաւ. «Ընդպատաշած մի՛ համարիր իմ ընթացքս, վասն զի հաւատոյ համար կըպատերազմիմ. և իմ պաշտօնս շատ սրտմաշուքի՝ ու աշխատութեան՝ ինչպէս և շատ սաստկի կը լլայ ինծի»: Բայց համալսարանին վերատեսուչը իմացուց իրեն թէ որովհետև կոնդակին հետ պապէն նամակ ընդունած չէ, չկրնար հրատարակել զանիկայ: Բարեկարգողին դատապարտութիւնը այսպիսի ընդունելութիւն գտաւ գիտնականաց դասէն:

Երբոր պապական կոնդակը աս . սաստիկ շփոթութիւնը կըպատճառէր Գերմանացւոց մէջ, մէկ փոքր ձայն մը ելաւ Զուիցերիոյ ուրիշ մէկ կողմը: Մ՚էկը՝ որ կըտեսնէր թէ Զուիցերիոյ մէջ ինչ մեծ հերձուած պիտի պատճառէր պապին կոնդակը, յառաջ եկաւ խորատական խօսք մը խօսելու, ու Բարեկարգողը պաշտպանելու: Նօրկայ էր Զուիցերի քահանայ մը Ուլրիկ Զուինկլ, որ յառաջմանէ առանց բարեկամութիւն ունենալու Լութերին հետ, խոհեմութեամբ և վեհմութեամբ լեցուն գրութիւն մը հրատարակեց, իր բազմաթիւ գրուածներուն առաջինը*: Կը թուէր թէ եղբայրական սէր մը զինքը Վիտէմպէրկի վարժապետին կըձգէր: «Բարեպաշտութիւնը կըպահանջէ քահանայապետէն, ըսաւ, որ իր բոլոր շահերը ուրախութեամբ զոհ ընէ Քրիստոսի՝ իր թագաւորին փառացը, ու եկեղեցիին ընդհանուր խաղաղութեանը: Ոչինչ այնչափ անպատիւ կընէ իր մեծութիւնը, որչափ զանիկայ պաշտպանելու համար միայն վարձատրութեան և սպառնալեաց դիմելը: Լութերի գրուածքները դեռ կարդացուած ալ չէին երբոր ժողովրդոց հրատարակուեցաւ թէ անիկայ հերետիկոս, հերձուածող, և նոյն իսկ Նեռն է: Ոչ մէկը զինքը զգուշացուց, ոչ մէկը իր յանցանքը ցուցուց: Ինքը խնդրեց որ բանը քննուի, և անոնք բաւական համարեցան զինքը դատապարտելու: Իրեն դէմ ելած կոնդակը մինչև

*Seckend, p. 289:

անգամ պապին իշխանութիւնը 'ի պատուի բանողներէն չընդունուիր. վասն զի անոր ամէն մէկ մասին մէջ կընըշմարի քանի մը միաբաններու անհաշտ ատելութիւնը, և ոչ թէ քահանայապետի մը հեզութիւնը որ գթութեամբ լեցուն փրկչին փոխանորդը պիտի ըլլայ: Ընդհանրապէս կը խոստովանուի թէ Քրիստոսի Աւետարանին ճշմարիտ վարդապետութիւնը մեծապէս այլափոխեալ է, և թէ՝ օրէնքները ու ժողովրդոց բարոյականութիւնը յայտնի և մեծ բարեկարգութեան մտնալ պէտք են: Նկատէ բոլոր գիտնական և առաքինի անձերը, և կը տեսնես որ իրենց անկեղծութիւնը և աւետարանական ճշմարտութեանց վըրայ ունեցած սէրը որչափ կատարեալ է նէ, այնչափ չեն գայթակղիր Լուտերի գրքերէն: Ամէն մարդ կընդունի թէ աս գրքերը իրեն օգուտ ըրին, թէպէտ և կարելի է թէ անոնց քանի մը մասերը անգոսնելի ըլլան: Թող ընտրուին մարդիկ՝ որոնց ուղղափառ վարդապետութիւնը և ամբիծ առաքինութիւնը ճանչցուած է. երեք իշխանք՝ Կարոլոս կայսրը, Անգղիոյ թագաւորը և Հունկարիայի թագաւորը, որոնց վրայ չկրնար կասկած ըլլալ, թող իրաւարարներ կարգեն. ասոնք Լուտերի գրուածքները թող կարդան, և անձամբ մտիկ ընեն անոր բսածները, և ինչ որ վճռուի նէ նոյնը թող հաստատուի: Իցէ թէ Քրիստոսի վարդապետութիւնը և ճշմարտութիւնը յաղթական հանդիսանայ":

Զուիցցերիէն եկած աս ազդարարութիւնը չլսուեցաւ. Հարկաւոր էր որ ան մեծ բաժանումը կատարուի. պէտք էր որ քրիստոնէութիւնը երկուքի պատռի. զանիկայ հարստահարող չարիքներուն դեղը նոյն իսկ անոր վէրքերուն մէջ պիտի գտնուէր:

## ՀԱՏՈՒԱԾ Թ.

Ս՛ի իրաւցունէ ի՞նչ պիտի ըլլար քանի մը գրող աշտկերտներու, համալսարանի վերակացուներու, ու քահանաներու ընդդիմութիւնը ։ Թէ որ Ե Կարոլոսի զօրաւոր բազուկը պապին զօրութեանը հետ միաբանէր, ասոնք 'ի միասին բաւական պիտի չըլլայի՞ն ամէն աս գրող աշակերտները ու քերթողները նուաճելու ։ Արդեօք մէկը պիտի կարենա՞ր դէմ դնել քրիստոնէից քահանայապետին և արևմտեան կայսրին միաբանեալ զօրութեանը ։

Աս ահաւոր վայրկեանիս Բարեկարգողը չճանչեր իրմէն ան մեծ վտանգը՝ որուն մէջ կեցած է ։ Արպատրաստուի իբրև Աստուծոյ ձեռքէն ընդունել ան հարուածը՝ որ կը թուի թէ պիտի նուաճէ զինքը ։ Իր հոգւոյն խորհուրդները Աստուծոյ աթոռին առջևը հաւաքեցան, և ըսաւ. "Ինչ պատահելիքը չեմ գիտեր, ոչ ալ փոյթ կընեմ գիտնալու. վասն զի հաւաստի եմ թէ ան որ երկնից աթոռը կընստի, 'ի յաւիտենից տեսաւ աս գործին սկիզբը, յառաջադիմութիւնը, ու վախճանը ։ Հարուածը ուր որ կրնայ թող իջնայ, ես առանց երկիւղի եմ ։ Թէ որ առանց մեր Հօրը կամքին մինչև անգամ տերև մը չիյնար, որչափ ևս առաւել ինքը մեր վրայ հոգ պիտի տանի ։ Թեթև բան է մեռնիլ Բանին համար, որովհետև Բանը որ մարմին եղաւ՝ ինքն ալ մեզի համար մեռաւ. և թէ որ իր հետը մեռնիմք, իր հետը պիտի ապրիմք. ու անցնելով անկէց ուրկէց ինքը մեզմէ առաջ անցաւ, իր եղած տեղը պիտի ըլլամք՝ ու յաւիտեան իր հետը պիտի բնակիմք" ։ Բայց և այսպէս, Լուտեր իր թշնամիներուն խորամանկութեանցը վրայ իր ունեցած զզուանքը երբեմն չէր կրնար զսպել, և անոր համար իր գրուածքներուն մէջ վսեմութեան հետ յաճախ

հեգնութիւն կըզգանեմք խառնուած. ինչպէս որ աս ատեն-ներս ըսաւ. “Էքին շարժումներուն վրայով բան մը չեմ գիտեր. միայն թէ ինքը եկաւ երկայն մօրուքով, երկայն կոնդակով, ու երկայն քսակով. բայց ես իր կոնդակին վրայ կըխնդամ”:

Հոկտեմբերի 3ին էր որ ինքը ծանօթացաւ պապական հրովարտակին: “Ի վերջոյ ահա եկաւ աս Հռովմէական կոնդակը. ըսաւ. ոչինչ կըհամարիմ զանիկայ. կըհակառակիմ անոր, ինչու որ ամբարիշտ՝ սուտ՝ և ամէն կերպով Էքին ընելու արժանաւոր բան մըն է: Քրիստոս ինքն է որ կըդատապարտուի անոր մէջ. պատճառ մը յառաջ բերուած չէ մէջը. հրաւիրուած եմ երևան ելլելու՝ ոչ պատասխան տալու համար, այլ հերքելու համար: Խարդախեալ պիտի համարիմ զանիկայ, թէպէտ և գիտեմ անոր իրօք պապէն գալը: Երանի թէ Կարոլոս Հինգերորդ առնաբար շարժի. երանի թէ Քրիստոսի սիրոյն համար աս դևերը խոնարհեցընէ: Փառք է ինծի ասանկ ամենալաւ փաստին համար չարչարուիլը. արդէն իմ սրտիս մէջ կը զգամ թէ աւելի ազատ եմ. վասն զի հիմա գիտեմ թէ պապը՝ Նեռն է, ու իր աթոռը բուն սատանայի աթոռն է”:

Լուտեր առջի բերանը անանկ ցուցուց թէ կոնդակին վաւերականութեանը վրայ տարակոյս ունի: “Էք ուրիշ կոնդակ մը բերած է Հռովմէն, կըսէ. և անիկայ այնչափ նման է իրեն որ կրնայ կոչուիլ Էք վարդապետ. այսչափ լեցուն է անիկայ ստութիւնով և մոլորութիւնով: Ինքը կը ցուցընէ թէ պապին գործն է, բայց լոկ ստութեամբ լեցուն: . . . . Կուզեմ որ իմ աչքերովս տեսնեմ կոնդակին կնիքը՝ կապերը՝ մէջի բառերը և ստորագրութիւնը, մէկ խօսքով անոր վերաբերեալ բոլոր բաները. չէ նէ յարդի մը կտորի չափ հոգ չեմ ըներ աս աղաղակներուն վրայ”:

Բայց կոնդակը պապինը ըլլալուն վրայով մէկը չէր տարակուսէր, մինչև անգամ Լուտեր ինքն ալ: Գերմա-

նիա կ'ըսպասէր որ տեսնէ թէ Նարեկարգողը ինչ պիտի ըսէ. արդեօք հաստատ պիտի կենա՞յ։ Ամէնն ալ իրենց աչքերը Վիդդէնպէրկ դարձուցած էին։ Իսկ Լութեր շատ սպասել չտուաւ անոնց. պատասխան մը տուաւ որ զարհուրելի հրաշէնք մը արձակել էր. վասն զի 1520' Նոյեմբերի 4ին հրատարակեց իր գործը որ կը կոչուի "Ընդդէմ Կոնդակի Նեռին"։

"Ինչ անթիւ սխալներ ու խաբէութիւններ մտան, կըսէ, ողորմելի ու պատրուած ժողովուրդին մէջ, եկեղեցւոյ անունովը, ու պապին կեղծուպատիր անսխալելիութեանը համբաւովը. որչափ հոգիներ ասանկով կորնչեցան, որչափ արիւն թափեցաւ, որչափ սպաննութիւններ գործուեցան, որչափ թագաւորութիւններ աւերեցան։

"Ճշմարտութեան ու չարութեան մէջ եղած բոլոր տարբերութիւնները կրնամ որոշել, կըսէ հեգնօրէն, ու ամենեւին փոյթ չէ ինծի այսպէս աւանց ճարտարութեան կատարուած չարութիւնը։ Գիրք այրելը այնպէս դիւրին գործ մըն է որ տղայք ալ կրնան կատարել. հապա որչափ եւս առաւել սրբազան հայրը ու իր անուանի վարդապետները։ Անոր պիտի յուսար մէկ աւելի խորամանկ շարժում մը տեսնելու անոնցմէ։ Անոր համար թէ ամենեւին հոգս չէ որ իմ գործերս բնաջինջ կընեն. աւելց աղէկ բան չեմ ուզեր. վասն զի իմ բոլոր փափաքս ան էր որ քրիստոնեաները Աստուածաշունչին առաջնորդեմ, որպէս զի ետքը իմ գըրուածքներս մէկ դի ձգեն անոնք։ Ամենամե՜ծ Աստուած, թէ որ Սուրբ Գիրքերը ողջմտութեամբ հասկընանք, ինչ հարկաւորութիւն պիտի ըլլայ իմ գրքերուս։ Աստուծոյ շնորհքովը ազատ եմ, ու պապական կոնդակները ոչ կըրնան շողոքորթել և ոչ կրնան զարհուրեցունել զիս։ Իմ ուժս և իմ մխիթարութիւնս այնպիսի տեղ մըն են, ուր ոչ մարդիկ և ոչ դեւերը կրնան երբէք հասնիլ"։

Լութերի տասներորդ նախադասութիւնը' որն որ պապը դատապարտեց, ասիկայ էր. "Մէկ մարդուն մեղքը չնե-

թուխը մինչև որ ինքը չհաւատայ թէ քահանային արձակում տալուն ներուած են" : Պապը աս նախադասութիւնը դատապարտելով, հաւատոյ հարկաւորութիւնը կուրանար աս խորհուրդիս մէջ : "Սըրպնգէն, կըսէ Լուտեր, թէ քահանային արձակում տալուն պիտի չհաւատամք թէ մեր մեղքերը ներուած են : Հապա ինչ պիտի ընեմք . մինակ ըրէք՝ քրիստոնեայք, Հռովմէն ելած աս մեծ նորութիւնը : Դատապարտութիւն ՝կըվճռուի Հանգանակին ան մասին վրայ, որն որ կըդաւանիմք ըսելով "Հաւատամք . . . 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց" : Ուէ որ գիտնայի թէ արդարև պապը հանած էր աս կոնդակը Հռովմայ մէջ, (որուն վրայ տարակոյս չունէր Լուտեր), ու չէ թէ սուտ-խօսներուն գլխոյն Էքին գործն էր, բոլոր քրիստոնէից պիտի հրատարակէի որ նոյն իսկ ՝Նեռը համարին զպապը՝ որուն վրայ Սուրբ Գիրքը կըխօսի" :

Երբոր Լուտեր այսչափ ազդուութեամբ կըխօսէր, նոր փառանգներ կըհաւաքէին : Իր թշնամիներուն միտքը զինքը Վիդդէմպէրկէն արտաքսելու ճար մը գտնելն էր : Ուէ որ Լուտեր Վիդդէմպէրկի մէջէն վերնար, և՛ Լուտեր և՛ Վիդդէմպէրկ պիտի կորնչէին . աս մէկ հնարքը պիտի ազատէր զՀռովմ և՛ հերետիկոս վարդապետէն և՛ հերետիկոսական համալսարանէն : Գէորգ դուքսը, Մ՝էրզէպէրկի եպիսկոպոսը, ու Լիփսիայի աստուածաբանները աս վախճանին համար գաղտնի կաշխատէին : Լուտեր ասիկայ լսելուն ըսաւ . "Բանը Աստուծոյ ձեռքը կըձգեմ" :

Աս դաւակցութիւնները բոլորովին անպտուղ չեղան . վասն զի Ադրիանոս՝ Վիդդէմպէրկի համալսարանին Եբրայական լեզուի ուսուցիչը, յանկարծ Լուտերի դէմ դարձաւ : Պէտք էր բաւական հաստատութիւն հաւատոյ որ պապին կոնդակին զօրութեանը դէմ դրուի : Կան ոմանք որ միայն սահմանաւոր չափով մը ճշմարտութեան հետ կը քալեն . Ադրիանոս ալ ասանկ մէկն էր : Պապին վճիռէն վախնալով ձգեց Վիդդէմպէրկը, ու գնաց Լիփսիա Էքին քովը :

Կոնդակը կըսկըսէր զօրութիւն առնել. քրիստոնեից քահանայապետին խօսքը տակաւին իր ուժը կըպահէր. հուրը և սուրը շատոնց սովրեցուցեր էին հնազանդութեան մէջ մնալ. ու տակաւին պապը հրաման մը ընելուն կրակ վառուելու փայտակոյտը կըշինուէր: Ամէն բան կըցուցընէր թէ աղէտալի փոթորիկ մը՝ Օգոստինեան միաբանին անզուսպ ապստամբութիւնը վերջացընելու վրայ էր: Պապին նուիրակները անոր կողմանէ ուժգին թախանձեցին ծաղկահասակ կայսեր. Կարոլոս ալ խոստացաւ թէ նախնեաց կրօնքը պիտի պաշտպանէ *, ու իր ժառանգական երկիրներուն մէկ քանիին մէջ սեղաններ կանգնեց որ հերետիկոսին գրուածքները անոնց վրայ կրակէ տրուին: Բարձր աստիճանի եկեղեցականները, ու կառավարութեան խորհըրդականներն ալ ներկայ գտնուեցան աս հրավառութիւններուն: "Աս բոցերը ամէն կողմեր դող ու սարսափ պիտի ձգեն, կըսէին Հռովմայ պալատականները": Եւ արդարև շատ երկչոտ և նախապաշարեալ մտքերու մէջ երկիւղ ձգեցին անոնք. բայց մինչև անգամ կայսեր ժառանգական երկիրներուն մէջ՝ ուր որ միայն կըհամարձակէին եկեղեցականները կոնդակին գործադրութիւնը յառաջ տանիլ, ժողովուրդը՝ երբեմն և ազնուականները՝ շատ անգամ ծաղրաբանութեամբ կամ բարկութեամբ կըվարէին աս պապական վկայութիւններուն հետ: Օրինակի աղագաւ՝ Լուվանիայի աստուածաբանները Ստորին Գաւառները կառավարող Մարգարիտ դքսուհիին քովն օր մը. "Լուտեր քրիստոնէական հաւատքը կործանելու վրայ է": "Ո՞վ է աս Լուտերը", հարցուց դքսուհին: "Տգէտ միաբան մը": "Աղէկ. ըսաւ դքսուհին. դուք որ գիտուն էք ու շատուոր էք, անոր դէմ գրեցէք: Աշխարհ առանց տարակուսի աւելի պիտի հաւատայ բազմութիւ գիտուններուն, քան թէ տգէտ միաբանի մը միայն": Սակայն Լուվանիայի

*Pallavicini. 1. p. 80.

աստուածաբանները դիւրագոյն ճամբայ մը ընտրելով իրենց ծախքովը ահագին փայտակոյտ մը կանգնեցին , ու ժողովուրդը խուռն բազմութեամբ հոն կը վազէր ։ Բայց դպրոցներու աշակերտներ ու քաղաքացիներ՝ բազմութեան մէջէն մեծ փութով իրենց ճամբան կը բանային թեւերնուն տակը մեծահատոր գրքեր բռնած , ու կրակը կը նետէին զանոնք ։ Ասոնց սա արտաքին նախանձաւորութիւնը միաբաններուն և աստուածաբաններուն ուրախութիւն մը տուաւ . բայց իրենց ըրած դաւը շուտով յայտնի եղաւ , թէ փոխանակ Լութերի գրութեանցը կերպ կերպ դպրոցական և պապական գրքեր էին անոնք որ կրակը նետուեցան * ։

Դոմինիկեանները հրաման ուզեցին ՙՆասսաուի կոմսէն՝ որ Հոլանտայի փոխարքան էր , Լութերի մնասակար գիրքերը այրելու . իսկ ան այսպէս պատասխան տուաւ անոնց . ՙԳնացէք Լութերի պէս մաքրութեամբ քարոզեցէք Աւետարանը , որ պատճառ չունենաք մէկէ մը գանգատելու” ։ Խնճոյքի մը մէջ՝ ուր որ կառավարութեան մեծամեծ իշխանները կային , խօսակցութիւնը Բարեկարգողին վրայ դառնալով Ասվենգտայնի իշխանը բարձր ձայնով ըսաւ . “Չորս դար անցնելէն ետև մինակ մէկ քրիստոնեայ մը յառաջ եկաւ , ու պապը զանիկայ սպաննել կուզէ” ։

Լութեր իր փաստին զօրութեանը տեղեակ ըլլալով կանդակէն պատճառած բոլոր խռովութիւններուն մէջ ինքը իր հանդարտութիւնը կը պահէր ։ “Թէ որ դուն զիս յորդորած չըլլայիր , ըսաւ Սպալատինին , լռիկ պիտի կենայի . որովհետև հաւատի եմ թէ Աստուծոյ իմաստութիւնովը ու զօրութիւնովը պիտի կատարուի գործը” ։ Սպալատին երկչոտ սրտի տէր մարդը՝ կը ստիպէր Լութերի համարձակ խօսիլ . իսկ բնականաբար համարձակախօս մարդը լուռ կենալու հակամիտեալ էր ։ Ասոր պատճառը ան էր որ Լութեր ճանչցաւ թէ ինչ կարողութիւնով պիտի կատարուի

* Seckend. p. 289.

գործը, բայց իր բարեկամը չնշմարեց զանիկայ: “Օ՜ ուրախ կեցիր, ըսաւ Բարեկարգողը, Քրիստոս սկսեց աս ամէնը, ու ինքը սահմանեալ վախճանին պիտի հասցընէ զանիկայ, թէպէտ և իմ բաժինս աքսոր կամ մահ ըլլայ: Յիսուս Քրիստոս ներկայ է հոս. և ան որ մեր մէջն է, զօրաւոր է քան թէ ան որ աշխարհի մէջ է”:

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ԲԱՅՑ Բարեկարգողին պարտաւորութիւնը ան էր որ խօսի, որպէս զի ճշմարտութիւնը երևան ելլէ: Հռովմ իր վրայ յարձակեցաւ, և հիմա պիտի տեսնուի թէ արգեօք անոր հարուածներէն կըզգարհուրի՞: Պապը Եկեղեցւոյ արգելքին տակը դրաւ զինքը. անիկայ ալ՝ քրիստոնէութեան արգելքին տակը պիտի դնէ զպապը: Քահանայապետին խօսքը մինչև հիմա ազատ ու անկախ էր. անիկայ հիմա անոր խօսքին՝ դէմ խօսք պիտի բերէ, ու աշխարհ պիտի իմանայ թէ որն է զօրաւոր խօսքը: “Իմ խղճիս հանգարտութեանը համար, ըսաւ, որոշած եմ որ մարդիկ ոչ ևս անտեղեակ ըլլան ան վտանգին՝ որուն մէջ կըկենան”. և անմիջապէս յառաջացաւ ընդհանուր ժողովի համար իր ըրած բողոքը նորոգել: Պապէն ժողովի բողոք ընելը ըստ ինքեան յանցանք էր. ուստի՝ պապական հեղինակութեանը դէմ նոր հարուած տալով էր որ Լուտեր կըխնդրէր արդարացունել զինքը ան առջի հարուածներէն՝ որ տուած էր:

Նոյեմբերի 17ին՝ կէս օրէն երկու ժամ առաջ Լուտերի բնակած Օգոստինեան վանքին սրահներուն մէկին մէջ հաւաքեցան գրագիր մը ու հինգ վկաններ: Գրագիրը՝ անոր բողոքը ՚ի գիր անցունելու պատրաստ ըլլալով, Բարեկարգողը վկաններուն առջևը վսեմ եղանակով մը սկսեց խօսիլ այսպէս.

"Որովհետև քրիստոնէական եկեղեցւոյ ընդհանուր ժողովը պապէն մեծ է՝ մանաւանդ հաւատոյ նիւթերուն մէջ,

"Որովհետև պապին իշխանութիւնը ոչ բարձր այլ նուաստ է Սուրբ Գիրքէն, և իրաւունք չունի Քրիստոսի ոչխարները մորթել՝ կամ գայլին բերանը տալ զանոնք,

"Ես Մարտինոս Լուտեր Օգոստինեան՝ և վարժապետ Սուրբ Գրոց 'ի Վիդդէմպէրկ, իմ կողմանէս՝ և ինծի կուսակից եղողներուն կամ ըլլալիքներուն կողմանէ կըբողոքեմ սրբազան Լէոն պապէն ասկէց ետքը գումարուելու ընդհանուր Քրիստոնէական Ժողովէ :

"Նախայիշեալ Լէոն Պապէն կըբողոքեմ, նախ՝ իբրև անիրաւ՝ վաղվաղկոտ՝ և բռնաբարող դատաւոր, որ կըդատապարտէ զիս առանց զիս մտիկ ընելու, ու առանց իր դատապարտութեան պատճառները յայտնելու. երկրորդ՝ իբրև հերետիկոս և ապստամբ 'ի հաւատոց, մոլորեալ, խստասիրտ, ու Սուրբ Գիրքերէն դատապարտուած, որ կըպահանջէ ինծմէ խորհուրդներուն գործադրութեանը մէջ քրիստոնէական հաւատոյ հարկաւորութիւնը ուրանալ. երրորդ՝ իբրև Թշնամի, Նեռն, հակառակորդ, և բռնաւոր Սուրբ Գրոց, որ կըյանդգնի Աստուծոյ Բանին բոլոր վըկայութեանցը դէմ իր վճիռները հաստատել. չորրորդ՝ իբրև արհամարհող, չարախօս, և հայհոյիչ քրիստոնէական սուրբ Եկեղեցւոյ, և ազատ ժողովներուն. որովհետև կըհաստատէ թէ ժողովը ըստ ինքեան բան մը չէ :

"Վասն որոյ ամենայն խոնարհութեամբ կաղաչեմ ամենապայծառ՝ գերահռչակ՝ պատուական՝ իմաստուն և արժանապատիւ տէրանց՝ Կարոլոսի Հռովմայ կայսեր, կայսրընտիրներուն, իշխաններուն, կոմսերուն, պարոններուն, ասպետներուն, ազնուականներուն ու բովանդակ Գերմանացւոց ազգին; ազատ քաղաքներուն որ իմ աս բողոքիս յարին, ու պապին քրիստոնէութեան հակառակ գործածներուն դէմ իմ՝ հետս միաբանին 'ի փառս Աստուծոյ, 'ի պաշտպանութիւն եկեղեցւոյ և քրիստոնէական հաւատոյ,

և 'ի հաստատութիւն քրիստոնէական ազատ ժողովներու. և Քրիստոս փրկիչն մեր՝ իր մշտնջենաւոր շնորհքովը առատապէս պիտի վարձատրէ զանոնք ։ Բայց թէ որ ոմանք իմ աղաչանքներս առ ոչինչ գրեն , ու առաւել ընտրեն ամբարիշտ մարդու մը՝ այսինքն պապին՝ հնազանդիլ քան թէ Աստուծոյ , իրենց խիղճերը հաւատարմաբար զգուշացուցած՝ ես աս գրութեամբս կիմացունեմ թէ անպարտ եմ անոնց համար պատասխանատուութիւն մը ընելէն. ու կը ձգեմ զանոնք պապին և անոր բոլոր համախոհներուն հետ Աստուծոյ վերջին դատաստանին'' ։

Ահա այսպէս էր Լուտերի արձակման թուղթը. այսպէս էր պապին կոնդակին դէմ իր պատասխանը ։ Ասիկայ խիստ մեծ յայտարարութիւն մըն էր . պապին վրայով ըրած իր ամբաստանութիւնները երևելի բաներ էին , ու անխորհրդաբար յառաջ բերուած չէին ։ Աս թուղթը բովանդակ Գերմանիայի մէջ տարածեցաւ , ու քրիստոնեայ տէրութեանց շատերուն պալատները մտնելու իր ճամբան գտաւ ։

Լուտերի աս վերջին գործը թէպէտև յանդգնութեան վերջին ծայրը կրնար թուիլ , բայց ան մէկ ուրիշ և աւելի համարձակ եղանակ մը իր մտքին մէջ ունէր ։ Որոշեր էր որ մէկ բանով մը Հռովմէն ետ չմնայ ։ Վիրտէմպէրկի միաբանը պիտի ընէ ան ամէնը որ ծայրագոյն քահանայապետը կըհամարձակի ընել ։ Անոր խօսքին դէմ խօսք բերաւ , և հիմա անոր փայտակոյտին դէմ փայտակոյտ պիտի կանգնէ ։ Մեդիչեանց սերունդը Լեոն Ժ՝ ու հանքագործի որդին ճակատ առ ճակատ իրարու դէմ ելան. և քանի որ ան պատերազմը կըտևէ որով աշխարհ սահմանուած է արձագանք տալ , պատերազմողին մէկը հարուած մը տալուն անշուշտ նոյնը պիտի ընդունի միւսէն ։ Դեկտեմբերի 10ին՝ Վիրտէմպէրկի համալսարանին պատերուն վրայ յայտարարութիւն մը կախուեցաւ , որ ուսուցիչները ու աշակերտները կըհրաւիրէր կէս օրէն երեք ժամ առաջ արեւելեան դուռը հաւաքիլ Սուրբ Խաչին քովը ։ Բազմա-

թիւ աստուածաբաններ ու պատանիններ մէկ տեղ եկան, ու Լուտեր անոնց առջեւը անցնելով սահմանուած տեղը տարաւ զանոնք ։ Հռովմ իր իշխանութիւնը վառած դարերուն մէջ որչափ փայտակոյտներ վառեր էր ։ Լուտեր ալ հիմա ան Հռովմէական սովորութիւնը լաւագոյն կերպով մը 'ի գործ պիտի դնէր ։ Խումբ մը հին գիրքեր կային իր քովը, միայն անոնցմէ կուզէր թեթեւնալ, մտածելով թէ զանոնք այրելէն աղէկ բանի չկրնար գործածուիլ կրակը ։ Առջուց սեղան մը ու վրան փայտակոյտը պատրաստած էր, ու արհեստից վարժապետներուն մէջէն առաջինը կրակ տուաւ անոր ։ Երբոր բոցերը սկսեցին ելլել, Լուտեր մօտ գնաց ու անոնց մէջ տեղը ձգեց եկեղեցական կանոնաց Գիրքը՝ քահանայապետաց վճիռները՝ Կղեմէան կանոնները՝ ու Էքին եւ Էմսերի գործքերուն մէկ մասը ։ Երբոր աս գիրքերը մոխիր դարձան, Լուտեր պապին կոնդակը առաւ՝ վեր բռնեց զանիկայ՝ ու բարձր ձայնով ըսաւ. "Որովհետեւ դուն Տէրոջը Սուրբը վշտացուցիր, անշիջանելի հուրը վշտացընէ եւ սպառէ զքեզ". աս ըսելով բոցերուն մէջ նետեց զանիկայ ։ Այնուհետեւ հանդարտօրէն իր ընթացքը դէպի քաղաքը դարձուց, ու աստուածաբաններուն՝ ուսուցիչներուն եւ աշակերտներուն բազմութիւնը ցնծութեան ձայներով իր ետեւէն Վիդդէմպէրկ մտան ։ "Պապական վըճիռները կընմանին մարմինի մը՝ ըսաւ Լուտեր, որուն երեսը կուսի նման գեղեցիկ է, բայց իր անդամները առիւծի անդամներուն պէս յափշտակող են, ու իր տուտը նենգաւոր օձի տուտին պէս ուժեղ է ։ Պապական կանոններուն բոլորին մէջ միայն մէկ բառ մը չկայ որ մեզի սորվեցունէ թէ ճշմարտապէս ինչ է Յիսուս Քրիստոս" ։ Դարձեալ ըսաւ. "Իմ թշնամիներս իմ գրքերս այրելով կարելի է թէ ժողովրդոց մէջ ճշմարտութիւնը նուաստացուցին, ու հոգիներու կորստեան պատճառ եղան. անոր համար ըստ կարգի ես ալ անոնց գրքերը այրեցի ։ Ասիկայ հզօր պատերազմ մըն է, բայց նոր սկսեց. մինչեւ հիմա

միայն կատակ կընէի պապին հետ ։ Աստուծոյ անունովը աս գործին մէջ մտայ ես , ինքը իր կարողութիւնովը պիտի հատուրէ զանիկայ առանց իմ օգնութեանս ։ Թէ որ անոնք կը յանդգնին իմ գրքերս այրել , որոնց վրայով սնապարծութիւն չէ ըսել թէ բոլոր պապերուն գրքերէն աւելի աւետարանի վարդապետութիւն կը պարունակեն , լաւագոյն պատճառներով կրնամ ես ալ իրենցը այրել որ բոլորովին անպիտան են” ։

Տեսանք թէ Լուտեր ինչպէս մտաւ Միդդէլպուրկ ։ Հետեւեալ առաւօտուն ակադեմիային սրահը սովորականէն աւելի լեցուն էր ։ Ժողովականներուն միտքերը արթնութեամբ կը սպասէին , ու խորին վսեմութիւն մը կը թագաւորէր նոյն տեղը ․ վարդապետին ընելու ատենաբանութիւնը սրտեռանդն ակնկալութեան նիւթ մըն էր ։ Սաղմոսաց վրայով իր մեկնութեան մէկ մասը ձեռք առաւ , որ նախկին տարուան Մարտ ամսոյն մէջ սկսեր էր ․ ու իր դասաւանդութիւնը վերջացընելէն ետեւ քանի մը վայրկեան կանգ առաւ , ու ետքը մեծ աշխոյժով մը ըսաւ ․ “Զգուշացէք պապին օրէնքներէն ու հրամաններէն ․ վճռոց գիրքը այրեցի , բայց ասիկայ լոկ տղայական խաղ մըն է ։ Ժամանակ է՝ ու ժամանակը անցած ալ է որ նոյն ինքն պապը այրէր ․ կուզեմ ըսել՝ պապական աթոռը , իր բոլոր սուտ վարդապետութիւններովը և իր բոլոր պղծութիւններովը” ։ Այնուհետեւ աւելի վսեմ եղանակ մը բանեցընելով ըսաւ ․ “Թէ որ ձեր բոլոր սրտովը դէմ չէք դներ պապին ամբարիշտ բռնաւորութիւններուն , չէք կրնար փրկուիլ ։ Ով որ պապական վարդապետութեան ու պաշտօնին վրայ հաճութիւն ունի , հանդերձեալ աշխարհին մէջ մշտնջենաւոր կորստեան պիտի մատնուի” ։

“Իրաւ թէ որ այն սուտ վարդապետութիւնը հերքելու ըլլամք , պէտք է յուսամք թէ ամէն կերպ վտանգներու և մինչև անգամ կեանքերնիս կորսընցունելու պիտի պատահիմք ։ Բայց շատ աղէկ է որ մենք զմեզ ենթակայ ընեմք

ամէն ան փառանգներուն՝ որոնցմով աս աշխարհս կրնայ մեր վրայ յարձակիլ, քան թէ լուռ կենամք։ Քանի որ ես կենդանի եմ, իմ կողմանէս բնաւ պիտի չդադարիմ Նաբելոնի վէրքէն ու պատուհասէն զգուշացընել իմ եղբայրներս, որ չըլլայ թէ հիմա մեր հետը քալողներուն մէկը բոլոր մեացեալներուն պէս դժոխքին խորխորատը իյնալու դառնայ"։

Աս աներկիւղ ոգին շուտով հաղորդեցաւ Լուտերի բարեկամներուն և ազգակիցներուն. բոլոր ազգը իր կողմը հաւաքեցաւ։ Բայց տեղ տեղ ահաբեկութեան ձայն մը կելլէր Բարեկարգութեան բարեկամներուն մէջ։ Տկար բնութեան տէր մարդիկ՝ որոնք միշտ ամէն բանի կըզիջանին, ու Սթաուպից՝ աս կարգին առաջինը, մեծ տագնապ կը ցուցընէին։ "Մինչև հիմա եղածին բոլորը լոկ խաղ մըն էր. ըսաւ Լուտեր Սթաուպիցին. միտքդ բեր ինչ որ դուն ինքնդ ըսիր. առանց ամէնուն կատարողը թէ որ Աստուած չըլլար, ոչ երբէք կրնար կատարուիլ։ Աղմուկը օր ըստ օրէ առաւել ևս շատնալու վրայ է. և չեմ կարծեր թէ մինչև վերջին օրը բնաւ երբէք պիտի խաղաղի" *։ Այսպէս կըքաջալերէր Լուտեր երկչոտները։ Երեք դար անցաւ մինչև հիմա, ու աղմուկը դեռ խաղաղած չէ։

"Կրնան զիս բանտարկել, շարունակեց ըսել, ու իմ գրըուածքներս այրել, և մինչև անգամ զիս 'ի մահ մատնել. բայց ոչ երբէք կրնան խափանել ան որ հիմա յառաջ կերթայ։ Մէկ սքանչելի տնտեսութեան մը սեմին վրայ կայնած ենք։ Երբոր կոնդակը այրեցի, ներքին երկիւղով ու դողով ըրի. բայց հիմա աւելի հաճութեամբ կընայիմ ան գործին վրայ, քան թէ իմ կեանքիս մէջ կատարած գործերուս մէկին վրայ"։

Արդ ամէն կողմանէ պատերազմը հիմա սկսաւ ու ալ խաղաղութեան յոյս չկայ։ Աստուծոյ Բանը վերստին ստա-

*L. Epp. I. p. 541.

ցաւ իր արդար իշխանութիւնը , ու՚ինկաւ իշխանութենէն ան որ Աստուծոյ տեղը գրաւեր էր ։ Այս շարժումը համարակութեան ամէն աստիճանին մէջ կըտարածի ։ Ամէն գործու մէջ եղան անձնասէր մարդիկ՝ որ յօժարութեամբ թոյլ տուին մարդոց մոլորութեան ու սխալման մէջ ննջել . բայց անոնք՝ որ խոհեմութիւն ունէին , բնականաբար որչափ երկչոտ ալ ըլլան , շատ տարբեր խորհուրդ կունենան ։ "Աստուծոյ Բանը ու անոր պատուիրանքները՝ կըսէ հեզահոգին և խոհականն Մելանկտոն , Եկեղեցւոյ մէջ բոլոր մարդկային բաներէն նախապատիւ պիտի համարուին ։ Ճշմարտութիւնը խափանողները Աստուծոյ մըշտընջենաւոր բարկութեանը ենթակայ են ։ Վասն որոյ Լուտերի պարտաւորութիւնն էր (և ասիկայ քրիստոնէական պարտաւորութիւն մըն է՝ որմէն չէր կրնար ետ կենալ , մանաւանդ Եկեղեցւոյ մէջ ուսուցչութեան պաշտօն ունենալուն համար) ջրել ան վնասակար մոլորութիւնները որ անիմաստ մարդիկ անամօթաբար կըտարածէին" ։ Կարձեալ կըսէ . "Կ՚ւէ որ աս վիճաբանութիւնները շատ չարիքներ կըծնանին , ինչպէս որ սրտցաւութեամբ կըզգամ այնպէս ըլլալը , յանցանքը անոնց վրայ կիյնայ որ մոլորութիւնը առաջ իրենք տարածեցին , ու անոնց վրայ՝ որոնք հիմա սատանայական չարասիրութեամբ զանիկայ հաստատ կըբռնեն" ։

Բայց ամէնը աս կարծիքը չունէին ։ Լուտեր նախատանաց տակ ընկղմած էր . փոթորիկը ամէն կողմանէ իր վրայ կըպատռէր ։ "Մինակ կայնած է" , կըսէին ոմանք ։ "Նոր վարդապետութիւններ կըսորվեցընէ" . կըսէին ուրիշները ։

Լուտեր քաջ ճանչնալով իր կոչումը որ 'ի վերուստ ընդուներ էր , պատասխան տուաւ և ըսաւ . "Ո՞վ գիտէ թէ Աստուած զիս չկոչեց ու չընտրեց աս նոյն վախճանին համար , և թէ՝ անոնք զիս 'անարգելով պատճառ չունին վախնալու թէ զԱստուած անարգած ըլլան ։ Իսրայէլացւոց Եգիպտոսէն ելլելուն Մովսէս մինակ էր . Աքապ թագա-

բուխը մինչև որ ինքը չհաւատայ թէ քահանային արձակում տալուն ներուած են": Պապը աս նախադասութիւնը դատապարտելով, հաւատոյ հարկաւորութիւնը կուրանար աս խորհուրդիս մէջ: "Կըրպնդեն, կըսէ Լուտեր, թէ քահանային արձակում տալուն պիտի չհաւատանք թէ մեր մեղքերը ներուած են: Հապա ինչ պիտի ընենք. մտիկ ըրէք՝ քրիստոնեայք, Հռովմէն ելած աս մեծ նորութիւնը: Դատապարտութիւն 'կըվճռուի Հանգանակին ան մասին վրայ, որն որ կըդաւանինք ըսելով "Հաւատամք . . . 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց": Ինէ որ գիտնայի թէ արդարև պապը հանած էր աս կոնդակը Հռովմայ մէջ, (որուն վրայ տարակոյս չունէր Լուտեր), ու չէ թէ ստախօսներուն գլխոյն Էքին գործն էր, բոլոր քրիստոնէից պիտի հրատարակէի որ նոյն իսկ՝ Նեռը համարին զպապը՝ որուն վրայ Սուրբ Գիրքը կըխօսի":

Որչափ Լուտեր այսչափ ազատութեամբ կըխօսէր, նոր վտանգներ կըհաւաքէին: Իր թշնամիներուն միտքը զինքը Վիդդեմպերկէն արտաքսելու ճար մը գտնելն էր: Ինէ որ Լուտեր Վիդդեմպերկի մէջէն վերնար, և՝ Լուտեր և՝ Վիդդեմպերկ պիտի կորնչէին. աս մէկ հնարքը պիտի ազատէր զՀռովմ և՝ հերետիկոս վարդապետէն և՝ հերետիկոսական համալսարանէն: Գէորգ դուքսը, Մերզեպերկի եպիսկոպոսը, ու Լիփսիայի աստուածաբանները աս վախճանիս համար գաղտնի կաշխատէին: Լուտեր ասիկայ լսելուն ըսաւ. "Բանը Աստուծոյ ձեռքը կըձգեմ":

Աս դաւակցութիւնները բոլորովին անպտուղ չեղան. վասն զի Ադրիանոս՝ Վիդդեմպերկի համալսարանին Եբրայական լեզուի ուսուցիչը, յանկարծ Լուտերի դէմ դարձաւ: Պէտք էր բաւական հաստատութիւն հաւատոյ որ պապին կոնդակին զօրութեանը դէմ դրուի: Կան ոմանք որ միայն սահմանաւոր չափով մը ճշմարտութեան հետ կըքալեն. Ադրիանոս ալ ասանկ մէկն էր: Պապին վճիռէն վախնալով ձգեց Վիդդեմպերկը, ու գնաց Լիփսիա Էքին քովը:

Կոնդակը կըսկըսէր զօրութիւն առնել . քրիստոնեից քահանայապետին խօսքը տակաւին իր ուժը կըպահէր . հուրը և սուրը շատոնց սորվեցուցեր էին հնազանդութեան մէջ մնալ . ու տակաւին պապը հրաման մը ընելուն կրակ վառելու փայտակոյտը կըդիզուէր : Ամէն բան կըցուցընէր թէ աղէտալի փոթորիկ մը՝ Օգոստինեան միաբանին անզուսպ ապստամբութիւնը վերջացընելու վրայ էր : Պապին նուիրակները անոր կողմանէ ուժգին թախանձեցին ծաղկահասակ կայսեր . Կարոլոս ալ խոստացաւ թէ նախնեաց կրօնքը պիտի պաշտպանէ *, ու իր ժառանգական երկիրներուն մէկ քանիին մէջ սեղաններ կանգնեց որ հերետիկոսին գրուածքները անոնց վրայ կրակի տրուին : Բարձր աստիճանի եկեղեցականները, ու կառավարութեան խորհըրդականներն ալ նոյնպէս գտնուեցան աս հրավառութիւններուն : «Աս բոցերը ամէն կողմեր դող ու սարսափ պիտի ձգեն, կըսէին Հռովմայ պալատականները» : Աչ. արդարև շատ երկչոտ և նախապաշարեալ մարդերու մէջ երկիւղ ձգեցին անոնք . բայց մինչև անգամ կայսեր ժառանգական երկիրներուն մէջ՝ ուր որ միայն կըհամարձակէին եկեղեցականները կոնդակին գործադրութիւնը յառաջ տանիլ, ժողովուրդը՝ երբեմն և ազնուականները՝ շատ անգամ ծաղրաբանութեամբ կամ բարկութեամբ կըվարէին աս պապական վկայութիւններուն հետ : Օրինակի աղագաւ՝ Լուվանիայի աստուածաբանները Ստորին Գաւառները կառավարող Մարգարիտ դքսուհին ըսին օր մը . «Լուտեր քրիստոնէական հաւատքը կործանելու վրայ է» : «Ո՞վ է աս Լուտերը», հարցուց դքսուհին : «Տգէտ միաբան մը» : «Աղէկ . ըսաւ դքսուհին . դուք որ գիտուն էք ու շատուոր էք, անոր դէմ գրեցէք : Աշխարհ առանց տարակուսի աւելի պիտի հաւատայ բազմաթիւ գիտուններուն, քան թէ տգէտ միաբանի մը միայն» : Այսպէս Լուվանիայի

*Pallavicini. 1. p. 80.

աստուածաբանները դիւրագոյն ճամբայ մը ընտրելով իրենց ծախքովը ահագին փայտակոյտ մը կանգնեցին, ու ժողովուրդը խուռն բազմութեամբ հոն կը վազէր: Բայց դպրոցներու աշակերտներ ու քաղաքացիներ՝ բազմութեան մէջէն մեծ փութով իրենց ճամբան կըբանային թեւերնուն տակը մեծահատոր գրքեր բռնած, ու կրակը կընետէին զանոնք: Ասոնց աս արտաքին նախանձաւորութիւնը՝ միաբաններուն և աստուածաբաններուն ուրախութիւն մը տուաւ. բայց իրենց ըրած դաւը շուտով յայտնի եղաւ, թէ փոխանակ Լութերի գրութեանցը կերպ կերպ դպրոցական և պապական գրքեր էին անոնք որ կրակը նետուեցան *:

Դոմինիկեանները հրաման ուզեցին Նասսաուի կոմսէն՝ որ Հոլանտայի փոխարքան էր, Լութերի վնասակար գիրքերը այրելու. իսկ ան այսպէս պատասխան տուաւ անոնց. "Գացէք Լութերի պէս մաքրութեամբ քարոզեցէք Աւետարանը, որ պատճառ չունենաք մէկէ մը գանգատելու": Խնճոյքի մը մէջ՝ ուր որ կառավարութեան մեծամեծ իշխանները կային, խօսակցութիւնը Բարեկարգողին վրայ դառնալով Սավենզտոյնի իշխանը բարձր ձայնով ըսաւ. "Չորս դար անցնելէն ետև միայն մէկ քրիստոնեայ մը յառաջ եկաւ, ու պապը զանիկայ սպաննել կուզէ":

Լութեր իր փաստին զօրութեանը տեղեակ ըլլալով կոնդակէն պատճառուած բոլոր խռովութիւններուն մէջ ինքը իր հանդարտութիւնը կըպահէր: "Թէ որ դուն զիս յորդորած չըլլայիր, ըսաւ Սպալատինին, լռիկ պիտի կենայի. որովհետև հաւատքի եմ թէ Աստուծոյ իմաստութիւնովը ու զօրութիւնովը պիտի կատարուի գործը": Սպալատին երկչոտ սրտի տէր մարդը՝ կըստիպէր Լութերի համարձակ խօսիլը. իսկ բնականաբար համարձակախօս մարդը լուռ կենալու հակամիտեալ էր: Ասոր պատճառը ան էր որ Լութեր ճանչցաւ թէ ինչ կարողութիւնով պիտի կատարուի

* Seckend. p. 289.

գործը, բայց իր բարեկամը չնշմարեց զանիկայ: «Զուարթ կեցիր, ըսաւ Բարեկարգողը, Քրիստոս սկսեց սա ամէնը, ու ինքը սահմանեալ վախճանին պիտի հասցընէ զանիկայ, թէպէտ և իմ բաժինս աքսոր կամ մահ ըլլայ: Յիսուս Քրիստոս ներկայ է հոս. և ան որ մեր մէջն է, զօրաւոր է քան թէ ան որ աշխարհի մէջ է»:

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ԲԱՅՑ Բարեկարգողին պարտաւորութիւնը ան էր որ խօսի, որպէս զի ճշմարտութիւնը երեւան ելլէ: Հռովմ իր վրայ յարձակեցաւ, և հիմա պիտի տեսնուի թէ արգեօք անոր հարուածներէն կըզարհուրի: Պապը Եկեղեցւոյ արգելքին տակը դրաւ զինքը. անիկայ ալ 'ի քրիստոնէութեան արգելքին տակը պիտի դնէ զպապը: Քահանայապետին խօսքը մինչև հիմա ազատ ու անկախ էր. անիկայ հիմա անոր խօսքին դէմ խօսք պիտի բերէ, ու աշխարհ պիտի իմանայ թէ որն է զօրաւոր խօսքը: «Իմ խղճիս հանդարտութեանը համար, ըսաւ, որոշած եմ որ մարդիկ ոչ ևս անտեղեակ ըլլան ան վտանգին՝ որուն մէջ կըկենան». և անմիջապէս յառաջացաւ ընդհանուր ժողովի համար իր ըրած բողոքը նորոգել: Պապէն ժողովի բողոք ընելը ըստ ինքեան յանցանք էր. ուստի պապական հեղինակութեանը դէմ նոր հարուած տալով էր որ Լուտեր կըխնդրէր արդարացունել զինքը ան առջի հարուածներէն, որ տուած էր:

Նոյեմբերի 17ին՝ կէս օրէն երկու ժամ առաջ Լուտերի բնակած Օգոստինեան վանքին սրահներուն մէկին մէջ հաւաքեցան դրագիր մը ու հինգ վկաներ: Դրագիրը անոր բողոքը 'ի գիր անցունելու պատրաստ ըլլալով, Բարեկարգողը վկաներուն առջևը վսեմ եղանակով մը սկսեց խօսիլ այսպէս.

"Որովհետեւ քրիստոնէական եկեղեցւոյ ընդհանուր ժողովը պապէն մեծ է՝ մանաւանդ հաւատոյ նիւթերուն մէջ,

"Որովհետեւ պապին իշխանութիւնը ոչ բարձր այլ նուաստ է Սուրբ Գիրքէն, և իրաւունք չունի Քրիստոսի ոչխարները մորթել՝ կամ գայլին բերանը տալ զանոնք,

"Ես Մարտինոս Լուտեր Օգոստինեան՝ և վարժապետ Սուրբ Գրոց 'ի Վիդդէմպէրկ, իմ կողմանէս՝ և ինծի կուսակից եղողներուն կամ ըլլալիքներուն կողմանէ կըբողոքեմ սրբազան Լեոն պապէն ասկէց ետքը գումարուելու ընդհանուր Քրիստոնէական ժողովին ։

"Նախայիշեալ Լեոն Պապէն կըբողոքեմ, նախ՝ իբրև անիրաւ՝ վաղվաղկոտ՝ և բռնաբարող դատաւոր, որ կըդատապարտէ զիս առանց զիս մտիկ ընելու, ու առանց իր դատապարտութեան պատճառները յայտնելու. երկրորդ՝ իբրև հերետիկոս և ապստամբ 'ի հաւատոց, մոլորեալ, խստասիրտ, ու Սուրբ Գիրքերէն դատապարտուած, որ կըպահանջէ ինծմէ խորհուրդներուն գործադրութեանը մէջ քրիստոնէական հաւատոյ հարկաւորութիւնը ուրանալ. երրորդ՝ իբրև Թշնամի, նեռն, հակառակորդ, և բռնաւոր Սուրբ Գրոց, որ կըյանդգնի Աստուծոյ Բանին բոլոր վըկայութեանցը դէմ իր վճիռները հաստատել. չորրորդ՝ իբրև արհամարհող, չարախօս, և հայհոյիչ քրիստոնէական սուրբ Եկեղեցւոյ, և ազատ ժողովներուն. որովհետեւ կըհաստատէ թէ ժողովը ըստ ինքեան բան մը չէ ։

"Ասոր համար ամենայն խոնարհութեամբ կաղաչեմ ամենապայծառ՝ գերահռչակ՝ պատուական՝ իմաստուն և արժանապատիւ տէրանց՝ Կարոլոսի Հռովմայ կայսեր, կայսրընտիրներուն, իշխաններուն, կոմսերուն, պարոններուն, ասպետներուն, ազնուականներուն ու բովանդակ Գերմանացւոց ազգին, ազատ քաղաքներուն որ իմ աս բողոքիս յարին, ու պապին քրիստոնէութեան հակառակ գործածներուն դէմ իմ հետս միաբանին 'ի փառս Աստուծոյ, 'ի պաշտպանութիւն եկեղեցւոյ և քրիստոնէական հաւատոյ,

և 'ի հաստատութիւն քրիստոնէական ազատ ժողովներու․ և Քրիստոս փրկիչն մեր՝ իր մշտնջենաւոր շնորհքովը առատապէս պիտի վարձատրէ զանոնք ։ Բայց թէ որ ոմանք իմ աղաչանքներս առ ոչինչ գրեն , ու առաւել ընտրեն ամբարիշտ մարդու մը՝ այսինքն պապին հնազանդիլ քան թէ Աստուծոյ , իրենց խիղճերը հաւատարմաբար զգուշացուցած՝ ես աս գրութեամբս կիմացունեմ թէ անպարտ եմ անոնց համար պատասխանատուութիւն մը ընելէն․ ու կը ձգեմ զանոնք պապին և անոր բոլոր համախոհներուն հետ Աստուծոյ վերջին դատաստանին" ։

Ահա այսպէս էր Լուտերի արձակման թուղթը․ այսպէս էր պապին կոնդակին դէմ իր պատասխանը ։ Ասիկայ խիստ մեծ յաղթութիւն մըն էր․ պապին վրայով ըրած իր ամբաստանութիւնները երևելի բաներ էին , ու անխորհրդաբար յառաջ բերուած չէին ։ Աս թուղթը բովանդակ Գերմանիայի մէջ տարածեցաւ , ու քրիստոնեայ տէրութեանց շատերուն պալատները մտնելու իր ճամբան գտաւ ։

Լուտերի աս վերջին գործը թէպէտև յանդգնութեան վերջին ծայրը կրնար թուիլ , բայց ան մէկ ուրիշ և աւելի համարձակ եղանակ մը իր մտքին մէջ ունէր ։ Որոշեր էր որ մէկ բանով մը Հռովմէն ետ չմնայ ։ Վիդդէմպէրկի միաբանը պիտի ընէ ան ամէնը որ ծայրագոյն քահանայապետը կըհամարձակի ընել ։ Անոր խօսքին դէմ խօսք բերաւ , և հիմա անոր փայտակոյտին դէմ փայտակոյտ պիտի կանգնէ ։ Մեդիչեանց սերունդը Լևոն Ժ՝ ու հանքագործի որդին ճակատ առ ճակատ իրարու դէմ ելան․ և քանի որ ան պատերազմը կըտևէ որով աշխարհ սահմանուած է արձագանք տալ , պատերազմողին մէկը հարուած մը տալուն անշուշտ նոյնը պիտի ընդունի միւսէն ։ Դեկտեմբերի 10ին՝ Վիդդէմպէրկի համալսարանին պատերուն վրայ յայտարարութիւն մը կախուեցաւ , որ ուսուցիչները ու աշակերտները կըհրաւիրէր կէս օրէն երեք ժամ առաջ առաքելեան դուռը հաւաքիլ Սուրբ Խաչին քովը ։ Բազմա-

Թիւ աստուածաբաններ ու պատանիներ մէկ տեղ եկան, ու Լուտեր անոնց առջեւը անցնելով սահմանուած տեղը տարաւ զանոնք : Հռովմ իր իշխանութիւնը վարած դարերուն մէջ որչափ փայտակոյտներ վառեր էր : Լուտեր ալ հիմա ան Հռովմէական սովորութիւնը լաւագոյն կերպով մը 'ի գործ պիտի դնէր : Խոեղ մը հին գիրքեր կայրին իր քովը, միայն անոնցմէ կուզէր Թեթեւնալ, մտածելով Թէ զանոնք այրելէն աղէկ բանի չկրնար գործածուիլ կրակը : Առաջուց սեղան մը ու վրան փայտակոյտը պատրաստած էր, ու արհեստից վարժապետներուն մէջէն առաջինը կրակ տուաւ անոր : Երբոր բոցերը սկսեցին ելլել, Լուտեր մօտ գնաց ու անոնց մէջ տեղը ձգեց եկեղեցական կանոնաց Գիրքը՝ քահանայապետաց վճիռները՝ Կղեմեան կանոնները՝ ու Լեւոն և Եմսերի գործքերուն մէկ մասը : Երբոր աս գիրքերը մոխիր դարձան, Լուտեր պապին կոնդակը առաւ՝ վեր բռնեց զանիկայ՝ ու բարձր ձայնով ըսաւ. "Որովհետեւ դուն Տէրոջը Սուրբը վշտացուցիր, անշիջանելի հուրը վշտացընէ և ուտէ զքեզ". աս ըսելով բոցերուն մէջ նետեց զանիկայ : Այնուհետեւ հանդարտօրէն իր ընթացքը դէպի քաղաքը դարձուց, ու աստուածաբաններուն՝ ուսուցիչներուն և աշակերտներուն բազմութիւնը ցնծութեան ձայներով իր ետեւէն Վիդդէմպէրկ մտան : "Պապական վըճիռները կընմանին մարմինի մը՝ ըսաւ Լուտեր, որուն երեսը կուսի նման գեղեցիկ է, բայց իր անդամները առիւծի անդամներուն պէս յափշտակող են, ու իր տուտը նենգաւոր օձի տուտին պէս ուժեղ է : Պապական կանոններուն բոլորին մէջ միայն մէկ բառ մը չկայ որ մեզի սորվեցունէ Թէ ճշմարտապէս ինչ է Յիսուս Քրիստոս" : Դարձեալ ըսաւ. "Իմ Թշնամիներս իմ գրքերս այրելով կարելի է Թէ ժողովրդոց մէջ ճշմարտութիւնը նուաստացուցին, ու հոգիներու կորստեան պատճառ եղան. անոր համար ըստ կարգի ես ալ անոնց գրքերը այրեցի : Ասիկայ հզօր պատերազմ մըն է, բայց նոր սկսեց. մինչեւ հիմա

Բայց կատակ կ'ընէի պապին հետ ։ Աստուծոյ անունովը աս գործին մէջ մինայ ես , ինքը իր կարողութիւնովը պիտի կատարէ զանիկայ առանց իմ օգնութեանս ։ Թէ որ անանկ կը յանդգնիս իմ գրքերս այրել , որոնց վրայով սնապարծութիւն չէ ըսել թէ բոլոր պապերուն գրքերէն աւելի աւետարանի վարդապետութիւն կը պարունակեն , լաւագոյն պատճառներով կրնամ ես ալ իրենցը այրել որ բոլորովին անպիտան են”։

Տեսանք թէ Լուտեր ինչպէս մտաւ Վիդդէնպէրկ ։ Հետեւեալ առաւօտուն ակադեմիային սրահը ունկնդրականէն աւելի լեցուն էր ։ Ժողովականներուն միտքերը արթնութեամբ կը սպասէին , ու խորին լռութիւն մը կը թագաւորէր նոյն տեղը ․ վարդապետին ըսելու ատենաբանութիւնը սրտեռանդն ակնկալութեան նիւթ մըն էր ։ Սաղմոսաց վրայով իր մեկնութեան մէկ մասը ձեռք առաւ , որ նախկին տարուան Մարտ ամսոյն մէջ սկսեր էր ․ ու իր դասաւանդութիւնը վերջացընելէն ետեւ քանի մը վայրկեան կանգ առաւ , ու ետքը մեծ աշխոյժով մը ըսաւ ․ “Զգուշացէք պապին օրէնքներէն ու հրամաններէն ․ վճռոց գիրքը այրեցի , բայց ասիկայ լոկ տղայական խաղ մըն է ։ Ժամանակ է՝ ու ժամանակը անցած ալ է որ նոյն ինքն պապը այրէր ․ կուզեմ ըսել՝ պապական աթոռը , իր բոլոր սուտ վարդապետութիւններովը և իր բոլոր պղծութիւններովը” ։ Նոյնուհետեւ աւելի վսեմ եղանակ մը բանեցընելով ըսաւ ․ “Թէ որ ձեր բոլոր սրտովը դէմ չէք դներ պապին ամբարիշտ բռնաբարութիւններուն , չէք կրնար փրկուիլ ։ Ով որ պապական վարդապետութեան ու պաշտօնին վրայ հաճութիւն ունի, հանդերձեալ աշխարհին մէջ մշտնջենաւոր կորստեան պիտի մատնուի”։

“Իրաւ թէ որ ան սուտ վարդապետութիւնը հերքելու ըլլամք , պէտք է յուսամք թէ ամէն կերպ վտանգներու և մինչև անգամ կեանքերնիս կորսընցունելու պիտի պատահիմք ։ Բայց շատ աղէկ է որ մենք զմեզ ենթակայ ընեմք

ամէն ան վտանգներուն՝ որոնցմով աս աշխարհս կրնայ մեր վրայ յարձակիլ, քան թէ լուռ կենամք։ Քանի որ ես կենդանի եմ, իմ կողմանէս բնաւ պիտի չդադարիմ Բաբելոնի վէրքէն ու պատուհասէն զգուշացընել իմ եղբայրներս, որ չըլլայ թէ հիմա մեր հետը քալողներուն մէկը բոլոր մնացեալներուն պէս դժոխքին խորխորատը իյնալու դառնայ"։

Աս աներկիւղ ոգին շուտով հաղորդեցաւ Լուտերի բարեկամներուն և ազգակիցներուն. բոլոր ազգը իր կողմը հաւաքեցաւ։ Բայց տեղ տեղ ահաբեկութեան ձայն մը կելլէր Բարեկարգութեան բարեկամներուն մէջ։ Տկար բնութեան տէր մարդիկ՝ որոնք միշտ ամէն բանի կըզիջանին, ու Սպալատին՝ աս կարգին առաջինը, մեծ տագնապ կը ցուցընէին։ "Մինչև հիմա եղածին բոլորը լոկ խաղ մըն էր. ըսաւ Լուտեր Սպալատինին. մտքդ բեր ինչ որ դուն ինքնդ ըսիր. ատոնց ամէնուն կատարողը թէ որ Աստուած չըլլար, ոչ երբէք կրնար կատարուիլ։ Աղմուկը օր ըստ օրէ առաւել ևս շատնալու վրայ է. և չեմ կարծեր թէ մինչև վերջին օրը բնաւ երբէք պիտի խաղաղի" *։ Այսպէս կըքաջալերէր Լուտեր երկչոտները։ Երեք դար անցաւ մինչև հիմա, ու աղմուկը դեռ խաղաղած չէ։

"Կրնան զիս բանադրել, շարունակեց ըսել, ու իմ գըրուածքներս այրել, և մինչև անգամ զիս 'ի մահ մատնել. բայց ոչ երբէք կրնան խափանել ան որ հիմա յառաջ կերթայ։ Մէկ սքանչելի տեսութեան մը սեմին վրայ կայնած եմք։ Երբոր կոնդակը այրեցի, ներքին երկիւղով ու դողով ըրի. բայց հիմա աւելի հաճութեամբ կընայիմ ան գործին վրայ, քան թէ իմ կեանքիս մէջ կատարած գործերուս մէկին վրայ"։

Արդ ամէն կողմանէ պատերազմը հիմա սկսաւ ու ալ խաղաղութեան յոյս չկայ։ Աստուծոյ Բանը վերստին ստա-

*L. Epp. I. p. 541.

ցաւ իր արդար իշխանութիւնը , ու ինկաւ իշխանութենէ ան որ Աստուծոյ տեղը դրաւեր էր ։ Աս շարժումը հասարակութեան ամէն աստիճանին մէջ կըտարածի ։ Ամէն դարու մէջ եղան անձնաւէր մարդիկ՝ որ յօժարութեամբ թոյլ տուին մարդոց մոլորութեան ու սխալման մէջ ննջել . բայց անոնք՝ որ խոհեմութիւն ունին , բնականաբար որչափ երկչոտ ալ ըլլան , շատ տարբեր խորհուրդ կունենան ։ "Աստուծոյ Որդին ու անոր պատուիրանքները՝ կըսէ հեզահոգին և խոհականն Մելանկտոն , Եկեղեցւոյ մէջ բոլոր մարդկային բաներէն նախապատիւ պիտի համարուին ։ Ճշմարտութիւնը խափանողները Աստուծոյ մըշտընջենաւոր բարկութեանը ենթակայ են ։ Ման որոյ Լուտերի պարտաւորութիւնն էր (և ասիկայ քրիստոնէական պարտաւորութիւն մըն է՝ որմէն չէր կրնար ետ կենալ , մանաւանդ Եկեղեցւոյ մէջ ուսուցչութեան պաշտօն ունենալուն համար) ջնջել այն վնասակար մոլորութիւնները որ անիմաստ մարդիկ անամօթաբար կըտարածէին" ։ Դարձեալ կըսէ . "Կ՚ուէ որ աս վիճաբանութիւնները շատ չարիքներ կըծնանին , ինչպէս որ սրտցաւութեամբ կըզգամ այնպէս ըլլալը , յանցանքը անոնց վրայ կիյնայ որ մոլորութիւնը առաջ իրենք տարածեցին , ու անոնց վրայ՝ որոնք հիմա սատանայական չարասիրութեամբ զանիկայ հաստատ կըբռնեն" ։

Բայց ամէնը աս կարծիքը չունէին ։ Լուտեր նախատանաց տակ ընկղմած էր . փոթորիկը ամէն կողմանէ իր վրայ կըպատռէր ։ "Մ՚ինակ կայնած է" , կըսէին ոմանք ։ "Նոր վարդապետութիւններ կըսորվեցընէ" . կըսէին ուրիշները ։

Լուտեր քաջ ճանչնալով իր կոչումը որ 'ի վերուստ ընդուներ էր , պատասխան տուաւ և ըսաւ . "Ո՛վ գիտէ թէ Աստուած զիս չկոչեց ու չընտրեց աս նոյն վախճանին համար , և թէ՝ անոնք զիս 'անարգելով պատճառ չունին վախնալու թէ զԱստուած անարգած ըլլան ։ Իսրայէլացւոց Եգիպտոսէն ելլելուն Մովսէս մինակ էր . Աքապ թագա-

տորին զօրքը Եղիա մինակ էր. Երուսաղէմի մէջ Եսայի մինակ էր. Բաբելոնի մէջ Եզեկիէլ մինակ էր։ Աստուած ոչ երբեք քահանայապետը կամ ուրիշ երևելի մէկը ընտրեց իրեն մարգարէ ըլլալու. սովորաբար կընտրէր ստորին և նուաստ վիճակի մարդիկ, և մինչև անգամ պարզամիտ հովիւներ, ինչպէս Ամովսի գրուածքին։ Ամէն դարու մէջ սուրբերուն պաշտօն մը եղած էր յանդիմանել աս աշխարհքիս մեծամեծները՝ թագաւորները ու իշխանները, քահանաները և ուսումնականները, ու աս իրենց պաշտօնը իրենց կեանքերն կորստեամբը կնքեցին։ Եւ այսպէս չեղա՞ւ Նոր Կտակարանի տնտեսութեան ատենն ալ։ Ամբրոսիոս իր ժամանակին մինակ էր. անկէց ետքը Երոնիմոս մինակ էր. անկէց ալ ետքը Օգոստինոս մինակ էր։ Չեմ ըսեր թէ ես մարգարէ եմ. այլ աս կըսեմ որ իմ մինակ ըլլալս և իրենց շատուոր ըլլալուն համար աւելի վախնալու տեղ ունիմ։ Ասիկայ ստոյգ գիտեմ որ Աստուծոյ Բանը իմ հետս է, ու իրենց հետ չէ։

"Կըհաստատուի ևս, կըսէ, թէ նորութիւններ կըխաբեմ, և թէ՝ անճար է հաւատալ թէ աս ամէն վարդապետները այնչափ ժամանակներէն հետէ մոլորութեան մէջ եղած ըլլան։

"Ո՛չ. իմ քարոզածներս նորութիւններ չեն. բայց աս կըհաստատեմ՝ թէ քրիստոնէական վարդապետութիւնները անտես եղան անոնցմէ՝ այսինքն գիտնականներէն ու եպիսկոպոսներէն, որոնց յատուկ պարտաւորութիւնն էր զանոնք պահպանելը։ Սակայն տարակոյս չունիմ՝ թէ ճշմարտութիւնը քանի մը սրտերու մէջ դեռ բնակարան մը գտաւ. աղքատ երկրագործները ու պարզամիտ տղայք, պապէն՝ եպիսկոպոսներէն՝ ու աստուածաբաններէն աւելի տեղեկութիւն ունէին աս օրերս Յիսուս Քրիստոսի վրայով։

"Կամբաստանեն իմ վրայովս՝ թէ Եկեղեցւոյ սրբազան վարդապետները կըհերքեմ։ Ես զանոնք չեմ հերքեր, բայց որովհետև ան վարդապետներուն բոլորը իրենց գը-

բանը Սուրբ Գիրքերով կաշխատին հաստատել, անկէց կը հետևի թէ Սուրբ Գիրքերը անոնց գրուածներէն աւելի դիւրիմաց և աւելի վճռական են ։ Քանզի ո՞վ երբեք իր մտքէն կանցընէ որ բառ ինքեան մթին մէկ բան մը աւելի մթին բանի մը օգնութեամբը հաստատէ ։ Ուրեմն հարկաւորութիւնը մեզ կը ստիպէ որ դարձեալ Աստուածաշունչին դիմենք, ինչպէս բոլոր վարդապետները ըրած են, ու անոնց գրուածքները անով փորձենք. վասն զի մեր միմիայն կանոնը և կշիռը Աստուածաշունչն է ։

“Բայց և դարձեալ կառաջարկեն թէ մեծամեծ մարդիկ իրենց նախատինքներովը զիս կը հալածեն ։ Ինչ կըլայ ասով, չէ՞ որ Սուրբ Գիրքերը յայտնապէս կը ցուցընեն թէ ընդհանրապէս հալածողները սխալման մէջ են, ու հալածում կրողներունն է իրաւունքը. թէ ժողովրդոց մեծ մասը միշտ ստութեան կողմն է, ու միայն փոքր մասը ճշմարտութեան կողմն է ։ Ճշմարտութիւնը միշտ խռովութիւն մը կը յարուցանէ” ։

## ՀԱՏՈՒԱԾ ԺԱ

ԲԱՐԵԿԱՐԳՈՂԻՆ ազդու խօսքերը խորին տպաւորեցան մարդոց մտքերուն, ու ազատութեան պատրաստեցին զանոնք ։ Ամէն մէկ բառ կենդանի կայծ մըն էր որ բովանդակ ազգին մէջ բոց մը կը սփռէր ։ Բայց երևելի խնդիր մը կար որ դեռ որոշուած չէր ։ Արդեօք կայսրընտիրը՝ որուն սահմանին մէջ կը բնակէր Լուտեր, կոնդակին գործադրութեանը օգնութիւն պիտի ընէ՞ր, եթէ պիտի հակառակէր ։ Ասիկայ խնդիր մըն էր՝ որուն դիւրութեամբ պատասխան չէր կրնար տրուիլ ։ Կայսրընտիրը՝ ինչպէս և տէրութեան ուրիշ իշխանները աս միջոցին Էքս լա Շափէլ * ըսուած

*Aix la Chapelle.

տեղը գումարուեր էին, վասն զի Մեծին Կարոլոսի Թագը նոյն տեղը պիտի դրուէր քրիստոնէից երկիրներուն մէջ Հասակաւ ամենէն փոքր բայց ուժով ամենէն զօրաւոր ինքնակալին գլուխը ։ Այս Թագադրութեան Հանդէսին մէջ եղած շքեղութիւնը ու փառաւորութիւնը բոլոր առջինները գերազանցեցին ։ Աքարողութիւնը լրանալէն ետև Կարոլոս Հինգերորդ՝ կայսրընտրին և ուրիշ իշխանաւորներուն հետ, պաշտօնատարներուն և դեսպաններուն հետ իսկոյն Կողոնիա անցաւ ։ Էքս լա Շափէլի մէջ ան միջոցին ժամանակ երևնալով, կըթուի թէ իր բոլոր բնակիչները Հռենոս գետին ան հին քաղաքը կըփախչէին ։

Օտարականաց բազմութեանը մէջ՝ որ անատենը նոյն քաղաքը կըդիմէին, պապին կողմանէ երկու նուիրակ կար. մէկը Մարինոս Քառրաչիոլի, միւսը Հերոնիմոս Ալեանտեր ։ Քառրաչիոլի՝ որ առաջուց դեսպանութեամբ Մաքսիմիլիանոսի եկած էր, հիմա հրաման ընդունած էր նորապսակ կայսրը շնորհաւորելու, ու քաղաքական գործերուն վրայով անոր հետ խօսելու ։ Բայց Հռոմ զգացեր էր որ Բարեկարգութիւնը շիջուցանելու համար նուիրակ մը խրկել պէտք է Գերմանիա յատուկ նոյն պաշտօնը կատարելու, որ իր մտքը՝ ճարտարութեամբը և ժրութեամբն ալ զանիկայ կատարելու յարմար մէկը ըլլայ. և ահա աս նպատակիս համար Ալեանտեր ընտրուեր էր*։ Յունական՝ Եբրայական՝ Քաղդէական և Արաբացւոց լեզուներուն վրայ ունեցած կատարելութիւնը համբաւեցին զինքը, թէ իր դարուն խիստ իմաստուն մարդն է ։ Ինչ գործի որ ձեռք զարնէր, 'ի բոլոր սրտէ նոյն գործին անձնատուր կըլլար ։ Լեզուագիտութիւն ստանալու համար ունեցած սաստիկ նախանձաւորութեան հաւասար էր և իր ետքի նախանձաւորութիւնը որ ցուցուց Բարեկարգութիւնը հալածելուն ։ Բոլոր պատմութիւնները կըվկայեն

*Pallavicini. I. p. 84.

թէ գոռոզ բնութեան տէր մարդ մըն էր , իր գործերուն մէջ շիտ , եռանդուն , անխոնջ , խրոխտ , և բոլորովին պապին յարեալ : Ինք դպրոցներուն մոլեգին և աներկիւղ ախոյեանն էր . Իսկ Ալէանտէր բռնակալող Վատիկանու բարձրամիտ պատգամաւորն էր : Կըթուէր թէ յատկապէս նուիրակութեան համար ծնած էր :

Ալէանտէր Կողոնիա հասածին պէս՝ Գարրաչիոլէի համախոհութեամբը իր բոլոր ճիգը թափեց որ Լուտերի հերետիկոսական գրքերը հրապարակաւ այրել տայ տէրութեան բոլոր սահմաններուն մէջ , և մանաւանդ նոյն քաղաքը ժողվուած Գերմանացի իշխանաւորներուն աչքին առջևը : Կարոլոս Հինգերորդ արդէն հաւանութիւն տուած էր որ աս բանը իր ժառանգական երկիրներուն մէջ գործի դրուի : Մարդոց միտքերը տարապայման շփոթուած էին : Կարոլոսի նախարարներուն ևս ազդուեցաւ՝ թէ ասոր պէս միջոցները վէրքը բժշկելուն տեղը կըզայրացընեն զանիկայ : Կըհարցընէին ասոնց թէ , "Կըկարծէք որ Լուտերի սորվեցուցած վարդապետութիւնը միայն իր գրքերո՞ւն մէջ կըպարունակի որ դուք հիմա բոցերու կուտաք զանոնք . խորին տպաւորուած է անիկայ այնպիսի տեղ մը՝ ուրկէց չէք կրնար եղծանել զանիկայ , այսինքն է՝ Գերմանացւոց ազգին սրտերուն մէջը*: Թէ որ բռնութիւն գործի դնելու միտք ունիք , պէտք է հրաման ընէք որ բիւրաւոր սուրեր իրենց պատեաններէն քաշուին , ու անհամար զոհերու կոտորած մը ըլլայ : Քանի մը թերթ թուղթ այրելու համար մէկ քանի փայտակոյտ դիզելը անօգուտ բան է . ու վեհափառ Կայսեր և ծայրագոյն Քահանայապետին մեծութեանը չվայելեր այսպիսի զէնքեր գործածել": Այսու ամենայնիւ նուիրակին միտքը իր փայտակոյտին վրայ հաստատուած էր : "Աս բոցերը որ կըվառեմք , ըսաւ , դատապարտութեան վճիռ են մեծամեծ գրերով գրուած . որ հե-

*Pallavicini. I. p. 88.

ուր և ընդարձակ տեղերէն ալ կը տեսնուի գիտունին ու տը-գէտին, ու կարդալ չգիտցողները անգամ կրնան կարդալ զանիկայ»:

Բայց վերջապէս Նուիրակը գիրքերու ու թղթերու վը-րայով քիչ փոյթ ունէր. իր նպատակը Լուտերը ձեռք ան-ցունելն էր: «Ոչ կրակները, ըսաւ դարձեալ, բաւական չեն Գերմանիայի ապականեալ օդը մաքրելու. և թէպէտ պար-զամիտներուն սաստիկ երկիւղ մը կուտան, այլ չարագոր-ծութեան հեղինակները անպատիժ կը թողուն: Պէտք է ու-նենամք կայսերական հրովարտակ մը որ 'ի մահ դատապար-տէ զԼուտեր»*:

Աղէանտէր Լուտերի կենացը դէմ խօսելուն այնչափ դիւրահաւան չգտաւ Կայսրը, որչափ որ առաջ կերևնար՝ եր-բոր կռիւը միայն անոր գիրքերուն վրայ էր:

«Ես որ դեռ նոր ելայ կայսերական գահը, ըսաւ Կարո-լոս, առանց իմ խորհրդականներուս խրատին ու տէրու-թեան իշխանաւորներուն հաւնութեանը չեմ կրնար այսպի-սի հարուած մը տալ ան աղանդին, որ այնչափ շատերէն ու այնչափ ազդուութեամբ կը պաշտպանուի: Պէտք է որ ա-ռաջ իմանամ թէ մեր հայրը Սաքսոնիայի կայսրընտիրը ինչ կը խորհի աս բանին վրայ, և անկէ ետքը պատրաստ պի-տի ըլլամ իմ պատասխանս տալ պապին»: Աստի Նուիրակ-ները իրենց վարպետութիւնները ու իրենց պերճախօսու-թիւնը կայսրընտրին առջին պէտք է որ հիմա բանեցնեն:

Ֆրիդերիկոս՝ Նոյեմբեր ամսուն առաջին կիւրակէին Ֆը-րանչիսկեանց վանքին մէջ պատարագը տեսնելէն ետև, Կառրաչիոլի ու Աղէանտէր ուզեցին տեսնուիլ իր հետը: Տրիդենտոյ եպիսկոպոսին և իր խորհրդականներէն ոմանց ներկայութեամբը ընդունեց անոնց տեսութիւնը: Խօսակ-ցութիւնը Կառրաչիոլի բացաւ պապին կոնդակը մատու-ցանելով անոր: Աղէանտէրէն աւելի մեղմ բնութիւն ունե-

*Casaris edictum in caput . . . . Lutheri (Cardinal Pallavicini I. p. 89)

նալով՝ պատշաճաւոր ժամանակ ըլլալ սեպեց անուշ խօսքերով իշխանը շահելու․ վասն որոյ շողոքորթելով զինքը ու իր նախնիքները սկսեց բսել․ «Եկեղեցւոյ և Հռովմէական տէրութեան փրկութեանը համար մեր բոլոր յոյսը ձեր Բարձրութեանը վրայ հաստատուած է»։

Բայց յանդուգն Ալէանտէր միտքը դնելով որ մէկէն 'ի մէկ նպատակին հասնի՝ ամարդութեամբ յառաջ քալեց, ու իր ընկերին խօսքը կտրեց, որն որ հեզութեամբ տեղի տուաւ անոր։ «Մարտինոս կրօնաւորին գործը, ըսաւ, ինծի ու Լէոյին յանձնուած է։ Անոածէ ան անսահման վտանգը՝ որուն մէջ աս մարդը կընկղմէ քրիստոնէից ժողովուրդը։ Թէ որ իսկ և իսկ մէկ դեղ մը չըլլայ, տէրութեան կործանումը անտարակոյս է։ Ինչո՞ւ համար կործանեցաւ Յունաց տէրութիւնը, բայց եթէ պապէն ապստամբելուն համար․ չէք կրնար դուք զձեզ Լուտերին հետ կապակցել առանց Քրիստոսէ բաժնուելու։ Արքայական պապին անունովը երկու բան կըխնդրեմ ձեզմէ․ նախ՝ որ Լուտերի գրուածքները այրել տաք․ և երկրորդ՝ որ ան հերետիկոսին արժանաւոր պատիժը հատուցանէք, կամ թէ բռնէք պապին ձեռքը տաք ղանիկայ․ Կայսրը ու տէրութեան բոլոր իշխանաւորները յօժարութիւն ցուցուցին մեր խնդիրները կատարելու․ դուք միայն կերկարէք բանը»։

Փրիդերիկոս Տրիդենտոյ եպիսկոպոսին բերնովը պատասխան տուաւ թէ, «Ասիկայ խիստ ծանր բան մըն է մէկէն 'ի մէկ որոշուելու․ ինչ որ ասոր վրայով հաստատելու ըլլամք նէ ժամանակին կիմացընեմք ձեզի»։

Կայսրընտրին գտնուած վիճակը դժուարին վիճակ մըն էր․ արդեօք ո՞ր կողմին յարէր ինքը։ Մէկ կողմը զինուորուած էին Կայսրը՝ տէրութեան իշխանաւորները՝ ու ծայրագոյն քահանայապետը, որուն իշխանութիւնը Փրիդերիկոս իր վրայէն թօթուելու խորհուրդ մը չունէր անատենը․ միւս կողմը կեցեր էր միաբան մը՝ աղքատիկ միաբան մը․ քանզի միայն Լուտերի վրայ շիտկուած էր յարձակ-

մանքը ։ Կարոլոսի թագաւորութիւնը գեռ նոր օկսեր էր ։ Փրիդերիկոս՝ Գերմանիայի ինքնիշխան թագաւորներուն ամենէն մեծը ու իմաստունը, ի՞նչպէս կրնար տէրութեան մէջ անմիաբանութիւն ձգելու առաջնորդ ըլլալ ։ Մանաւանդ թէ ի՞նչպէս կորսնցունէր իր ջերմեռանդութեանը համար ընդունած գովութիւնը . ան ջերմեռանդութեանը՝ որ իր ծաղկահասակ ատենին Քրիստոսի գերեզմանին երկար ուխտագնացութիւն մը ընել տուաւ իրեն ։

Բայց միւս կողմին վրայ ևս ջատագովութեան ձայներ կելլէին ։ Նորահաս իշխան մը՝ որ եղբը կայսրընտրի թագով պսակուեցաւ, և որուն թագաւորութիւնը մեծամեծ աղէտներով նշանաւոր եղաւ, Յովհաննէս Փրիդերիկոս Յովհաննէս դուքսի որդին, ու Կայսրընտրին եղբօրորդին, Սպալատինի ուղքը վարժուած և հիմա տասնըեօթը տարեկան եղած ըլլալով, իր սիրտը ճշմարտութեան սիրովը խորին զգածեալ էր, ու սաստիկ սէր ունէր Լուտերի վրայ ։ Երբոր տեսաւ թէ Հռովմայ բանադրանքները զանիկայ կը կըհալածէին, նախանձաւոր քրիստոնէի մը եռանդովը ու նորահաս իշխանի մը աշխոյժ ոգիովը իր վրայ առաւ անոր դատը ։ Գրեց բարեկարգողին ու նաև իր հօրեղբօրը, ու վսեմ թախանձանքով մը աղաչեց Փրիդերիկոսի որ Լուտերը իր թշնամիներէն պաշտպանէ ։ Սպալատին ալ՝ որ շատ անգամ չափազանց երկչոտութիւն կըցուցընէր, իշխանին գրեց ու իմացուց թէ ոչ երբեք կրնայ բարձի թողի ընել զԼուտեր . այսպէս ըրին նաև Պոնտանոս՝ ու Կայսրընտրին հետ Կողոմնիա գտնուող միւս խորհրդականները ։

Այս ընդհանուր շփոթութեանը մէջ միայն մէկ մարդ մը անշարժ կեցաւ . աս մարդն էր Լուտեր ։ Մինչդեռ իր բարեկամները մեծամեծաց օգնութեանը կըդիմէին զինքը վըտանգէ ազատելու, միաբանը Վիդէմպէրկի իր խուցին մէջ միտքը հաստատեր էր՝ թէ աւելի իրեն կիյնար ազատել աս աշխարհի մեծամեծները իրենց մօտալուտ վտանգէն ։ "Եթէ որ աւետարանը, գրեց Սպալատինին, անանկ

քան մը ըլլար՝ որ կարօտէր երկրաւոր իշխաններու ձեռօքը պաշտպանուիլ ու տարածուիլ , Աստուած քանի մը ձկ-նորսներու ձեռքը չէր յանձներ զանիկայ : Աստուծոյ Բանը պաշտպանելու գործը թագաւորներուն կամ պապերուն տրուած չէ . բաւական է իրենց որ ինքզինքնին կարենան ազատել Տէրոջը և անոր Օծեալին դատաստաններէն : Այսպէս համարձակ կըխօսիմ որ շարժին Աստուծոյ Բա-նին ինքզինքնին ծանօթացընելու , ու փրկութիւնը հոն գտնելու" :

Լութերի աս փափաքը մօտ էր կատարուելու : Նոյն հաւատքը որ Վիդդենպերկի վանքին մէջ առանց տես-նուելու ասանկ ներգործութիւն կընէր , Աուգզպուրկի ար-քայական սրահներուն մէջ իր զօրութիւնը ցուցընելու վրայ էր : Փրիդերիկոսի քաջասրտութիւնը որ գուցէ քիչ մը ժամանակ ակարացեր էր , վաղվաղակի իր սովորական աս-տիճանին դարձաւ ու ևս առաւել զօրացաւ : Նաքինք մարդ մը իր անողոքելի թշնամիներուն ձեռքը մտնելու խորհուրդը զինքը տարտափեցուց : Ըսածեց թէ "Արդա-րութիւնը պէտք է որ պապէն ալ նախադաս ըլլայ". և աս սկզբունքովը կանոնաւորեց իր վարքը :

Նիւրեմպերկի Կին կայսրընտրին խորհրդականները անոր անունովը իմացուցին պապական նուիրակներուն՝ որ վե-րջապէս եկած էին պալատը Տրիդենտոնյ եպիսկոպոսին քով , թէ կայսրընտրին Նորհրութիւնը մեծ արամութեամբ ան-սած է որ Լոյք իր հեռաւորութիւնը տափս բռնելով շա-տերը դատապարտութեան վճռեր է որ պապական կոնդա-կին մէջ մասնաւորաբար յիշուած չեն . և թէ ինքը քանի որ Սաքսոնիայէն հեռացեր է , համանականաբար շատ մար-դիկ՝ ամէն աստիճանէ՝ թէ գիտուն և թէ տգէտ , թէ եկե-ղեցական և թէ աշխարհական , Լուտերի հետ միաբաններ են , ու իր հետը մէկ տեղ բողոք կընեն . և թէ՝ ոչ կայսե-րական Վեհափառութիւնը և ոչ ուրիշ մէկը դեռ իրեն ցու-ցուցած է թէ Լուտերի գրութիւնները մերժուեր են , կամ

միայն այրելու արժանաւոր ըլլալ ապացուցուեր են. և թէ՝ անոր համար ինքը կըպահանջէ որ Լութեր վարդապետը ազատագիր մը ունենայ, ու թող տրուի իրեն որ իմաստուն՝ բարեպաշտ և անաչառ դատաւորներու ժողովին առջևը իրեն համար ինքը պատասխան տայ։

Այս ազդարարութիւնը ընդունելէն ետև, Ալէանտէր՝ Կարրաչիոլի ու իրենց ընկերները քիչ մը ժամանակ մէկ կողմ քաշուեցան խորհուրդ ընելու։ Սակայն առաջին անգամ էր որ կայսրընտիրը՝ Բարեկարգողին վրայով իր դիտաւորութիւնները համարձակ յայտնեց։ Նուիրակներուն կարծիքը ան էր որ իշխանը շատ տարբեր ճամբայ մը պիտի բռնէ. կըյուսային թէ ոչ ևս պիտի տարակուսի փաստագործ միաբանը ձեռք տալու, որովհետև բանը ան աստիճանը հասած է որ իր սովորական անաչառութիւնը՝ կամ մէկ կողմին չմիտելը ամենամեծ վտանգներու ենթակայ պիտի ընէ զինքը։ Այսպէս խորհեր էր Հռովմ. բայց իր դատողութիւնները պիտի ոչնչանային անանկ մէկ զօրութիւնով մը՝ այսինքն է արդարութեան և ճշմարտութեան սիրովը, որ ամենևին իր մտքէն անցած չէր։

Նուիրակները երբոր վերստին ընդունուեցան խորհըրդականաց ատեանը, յանդուգն Ալէանտէր խօսիլ սկսեց և ըսաւ. "Կուզէի գիտնալ թէ կայսրընտիրը ի՞նչ պիտի մտածէր, թէ որ իր հպատակներուն մէկը բողոք ընէր իր դատաստանէն՝ Գաղղիացւոց թագաւորի դատաստանին՝ կամ ուրիշ օտար տէրութեան մը ատեանին"։ Բայց վերջապէս զգալով որ կարելի չէ Սաքսոնացի խորհրդականները համոզել, "Մենք, ըսաւ, կոնդակին գործադրութեանը պիտի նայինք. պիտի հետամուտ ըլլանք ու այրենք Լութերի գրուածքները"։ Այնուհետև անգոսնելի անտարբերութեան եղանակով մը ըսաւ. "Թող իր անձին վրայով. պապը սակաւ յօժարութիւն ունի եղկելի թշուառականներուն արիւնը թաթխել իր ձեռքերը"։

Երբոր լուր հասաւ Վիդդեմպէրկ թէ կայսրընտիրը

այսպէս պատասխանէր էր նուիրակներուն, Լուտերի բարեկամները ուրախութեամբ լցան։ Կայսրընտիրը Երասմոսի կարծիքէն ուժաւորելով, աւելի որոշ եղանակ մը բռնեց կայսեր հետ իր Թղթակցութիւններուն մէջ։ Կարոլոս ինքն ալ միջասահման ճամբայ մը բռնեց, որով և պապին և կայսրընտրին զինքը հաճելի կը ցուցընէր, ու փոփոխակի մէկ կողմին կամ միւս կողմին կը յարէր ժամանակին փոփոխ պահանջմանը նայելով։ Իր նախարարները վեր՚ի վերոյ իմացուցին Ալէանտերի իրենց տէրոջը բռնելու ճամբան։ "Կայսրը, ըսին, այնպէս պիտի վարի պապին հետ, ինչպէս որ պապը վարի իր հետը. չկամիր աւելցընել իր հակառակորդներուն ուժը, մանաւանդ Գաղղիայի թագաւորինը" *։ Նա խօսքին վրայ գոռոզ նուիրակը իր բարկութեան երասանակը թող տուաւ, ու այսպէս պատասխանեց. "Ի՞նչ, ըսաւ, պապը կայսեր հետ դաշնակցութիւն ունենալէն հրաժարի ալ նէ, ասոր համար պէ՞տք է որ կայսրը իր հաւատքը ձգէ։ Թէ որ ասանկ ճամբով կը կամի վրէժխնդրութիւն ընել, թող սարսափի. վասն զի իր անհաւատարմութիւնը իր գլխուն վրայ պիտի գայ"։ Բայց կայսերական պատգամաւորները նուիրակին սպառնալիքներէն վախնալու տեղ չունեին։

## ՀԱՏՈՒԱԾ ԺԲ

Եւ թէպէտ Հռովմէական նուիրակները չկարողացան իրենց կամացը խոնարհեցընել աս աշխարհիս մեծամեծները, բայց պապականութեան ստորին արբանեակները կրցին ամպաւորութիւն մը գործել ստորին վիճակի մարդոց վրայ։ Հռովմայ զինուորները իրենց գլխաւորին տուած հրամանը

*Cæsarem ita se gesturum erga Pontificem, uti se Pontifex erga Cæsarem gereret . . . (Pallavicini 1. p. 91.)

լած՝ էին։ Այդ նախանձաւորութեամբ պաշարեալ քաղ-մաթիւ քահանաներ՝ պապական կոնդակը ուրախութեամբ առիթ բռնեցին իրենց ունկնդիրներուն խիղճերը վախցը-նելու. ու շատ բարեմիտ բայց չարակիրթ եկեղեցականներ՝ իրենց սրբազան պարտաւորութիւնը սեպեցին պապին հը-րամաններուն հպատակիլը։ Հռովմայ դէմ Լուտերի ձե-ռքը եղած հակառակութիւնը խոստովանարանէն սկսեր էր*. Հռովմ ալ հիմա խոստովանարանէն ցուցուց իր զօ-րութիւնը Բարեկարգութեան կուսակիցներուն վրայ։ Պա-պական կոնդակը թէպէտ և հրապարակաւ ընդունուած չէր, բայց աս առանձնական տեսակներուն մէջ ազդու զօ-րութեամբ կը ներգործէր ան։ Խոստովանահայրը աս հարց-մունքները կ՚ընէր խոստովանութեան գացողին։ «Լուտերի գրուածքները կարդացի՞ր. անոնցմէ քու քովդ ունի՞ս. ճշմարի՞տ ըլլալ կը համարիս զանոնք, եթէ հերետիկոսա-կան»։ Ով թէ որ պատասխանողը տարակուսէր ու չըսէր ա-նոնց վրայ սահմանուած նզովքը, քահանան արձակում չէր տար անոր։ Ասանկով շատերուն խիղճերը անհանգիստ կ՚ըլլային, ու ժողովրդոց մէջը մեծ շփոթութիւն մը կ՚ըտի-րէր։ Աս յաջողակ հնարքը քաջիկ կը խոստանար անոնց՝ միանգամ ևս պապական լուծին տակը բերել անհամար մարդիկ, որոնք հիմա Լուտերանի կողմը դարձած էին։ Հռովմ տեղի ունէր ուրախանալու իրեք դար յառաջ ա-տեան † մը հաստատելուն համար, որ այնչափ սքանչելի ե-ղանակաւ կը յարմարէր բռնակալական իշխանութիւն մը տալ քահանաներուն իւրաքանչիւր քրիստոնէի խղճին վը-րայ։ Քանի որ ան ատեանը կը կենայ, իր տէրութիւնը պի-տի չկործանի։

Լուտեր շուտով իմացաւ թէ ինչ անցքեր կանցնէին. աս հնարքը ոչնչացընելու համար առանց մէկու մը օգնու-

* Տես էջէս 117։

† Աս ատեանը հաստատուեցաւ 1215ին՝ Երրորդ Իննովկենտիոսի ատենը, Լատերանու չորրորդ ժողովովը։

թեանը ինչպէս պիտի շարժէր ։ Աստուծոյ Բանը, սրբազան Գրոց վկայութիւնը բարձրաձայն և աներկիւղ քարոզելով. ասիկայ պիտի ըլլայ իր պաշտպանութեան զէնքը։ Նոյն Բանը ճանապարհ պիտի գտնէ խռովեալ մտքերուն մէջ՝ ահաբեկեալ սրտերուն մէջ մտնելու, ու անոնք պիտի զօրանան։ Զօրաւոր գրգիռ մը պէտք էր ժողովրդոց, ու Լուտերի ձայնը զօրաւորագոյն ելաւ նոյն գրգիռը տալու։ Աներկիւղ վեհանձնութեան եղանակաւ մը խօսեցաւ ապաշխարողներուն՝ և ըսաւ. "Ամբողջ ձեզի հարցուի թէ արդեօք կըհաւնիք կամ չէք հաւնիր իմ գրքերուս, աս պատասխանը տուէք. "Դուն խոստովանահայր ես, և ոչ քննիչ հաւատոյ կամ բանտապետ. իմ պարտաւորութիւնս է խոստովանիլ ան ամէնը ինչ որ իմ խիղճս կազդէ ինծի որ յայտնեմ. իսկ քու պարտաւորութիւնդ է հրաժարիլ իմ սրտիս գաղտնիքները փնտռելէն ։ Դուն ինծի առաջ արձակում տուր, ու ետքը գնա վիճաբանէ Լուտերի հետ՝ պապին հետ՝ և որու հետ որ կուզես. բայց զգուշ կեցիր որ ապաշխարութեան խորհուրդը կռիւի և հակառակութեան գործիք չընես՝ ։ Եւ թէ որ խոստովանահայրը ալ չհաւնի, ան ատենը անհոգ եղէք իր արձակումէն։ Մի՛ շփոթիք աս ըսածովս. թէ որ մարդը ձեզի արձակում չտար, Աստուած ձեզի արձակում կուտայ ։ Ասան որոյ ուրախացէք որ Աստուծմէ արձակում կընդունիք, ու առանց երկիւղի յառաջացէք դէպ 'ի սեղանը Հաղորդութեան խորհուրդին ։ Վերջին օրը քահանան պիտի պատասխան տայ ձեզի արձակում չտալուն համար։ Եւ թէպէտ կրնան Հաղորդութեան խորհուրդէն մեզ արգիլել, բայց չեն կրնար զրկել զմեզ ան զօրութենէն ու շնորհքէն որ Աստուած ան խորհուրդով կուտայ։ Ոչ իրենց կամքը՝ և ոչ իրենց մէկ զօրութիւնը, այլ մեր հաւատքը հարկաւոր ըրաւ Տէրը մեր փրկութեանը համար" ։

Այսպիսի եղանակաւ յորդորեց Լուտեր զժողովուրդը։ Ան կենդանացուցիչ ձայնը ամէն բնակարաններու՝ ամէն

խռովեալ սրտերու խորշերը մտաւ, ու անոր արձագանգներովը քաջալերութիւնը ու հաւատքը ամէն տեղ արթընցան։ Բայց բաւական չէր իրեն որ միայն պաշտպան կանգնի. կըզգար որ պէտք է յարձակիլ, ու հարուած հարուածի վրայ տալ։ Ամբրոսիոս Կատարինոս անունով Հռովմէական աստուածաբան մը՝ իրեն դէմ գիրք մը գրեր էր։ "Մօտ Իտալացի գաղանին կատաղութիւնը պիտի բորբոքեմ". ըսաւ Լութեր։ Իր խօսքը պահեց, ու իր պատասխանույն մէջ Դանիէլի մարգարէութենէն ու Յովհաննու Յայտնութենէն, Սրբոյն Պօղոսի՝ Պետրոսի՝ ու Յուդայի թղթերէն ցուցուց. թէ Աստուածաշունչի մէջ նախապատմուած և նկարագրուած Նեռին թագաւորութիւնը ուրիշը չէ, բայց եթէ պապականութիւնը։ "Սոյդ գիտեմ, ըսաւ իր վերջաբանութեանը, որ Տէրն մեր Յիսուս Քրիստոս կենդանի է ու կըթագաւորէ։ Աս գիտութեանս ուժովը տասը հազար պապերու դէմ կընամ ելլել, ու ոչ երբէք շարժիլ։ Ի վերջոյ կըխնդրեմ որ Աստուած իր անսահման զօրութիւնովը մեղի այցելու ըլլայ, ու շուտով բերէ իր Որդւոյն փառաւոր գալստեան օրը, որ ատեն անիկայ պիտի կործանէ ան մեղաց մարդը։ Ու բոլոր ժողովուրդը թող ըսէ. Ամէն"։

Ու բոլոր ժողովուրդը ըսաւ Ամէնը։ Իւրաքանչիւր մտքի մէջ մէկ սրբազան երկիւղ մը ինկաւ։ Նեռին պատկերը պապական աթոռին վրայ նստած, ամէն երևակայութեան մէջ նկարուեցաւ։ Աս նոր գաղափարը՝ որ Լութերի ձեռօքը ասանկ յանկարծ յայտնուեցաւ անոր ժամանակակիցներուն՝ մարգարէական ստուերագրութեան փայլուն գուներովը, զարհուրելի կերպով շարժեց Հռովմայ զօրութիւնը։ Աստուածային Բանին վրայ հաւատք ունենալը յառաջադաս եղաւ ան անվայել հնազանդութենէն որ մինչև նոյն ատենը կընծայուէր Եկեղեցւոյ. ու պապին իշխանութիւնը՝ այնչափ ատեն խորին ակնածութեամբ բռնուած, հիմա եղաւ նիւթ՝ ընդհանուր ատելութեան և երկիւղի։

Գերմանիա պապական կոնդակին պատասխան տուաւ կրկնապատիկ գովութեամբ ողջունելով զԼուտեր: Վիթդէմպէրկի մէջ ժանտախտը ինքզինքը ցուցուցեր էր, և սակայն միշտ նոր աշակերտներ կուգային համալսարանը, ու հինգ հարիւրի չափ աշակերտ կանոնաւորապէս կըլսէին Լուտերի և Մէլանկտոնի դասաւանդութիւնները: Վանքին մատուռը ու քաղաքին եկեղեցին բաւական չէին տանիլ ան մեծափափաք բազմութիւնը որ Բարեկարգողին շրթունքներէն կախուած էին: Օգոստինեանց վանքին մեծաւորը միշտ երկիւղի մէջ էր որ չըլլայ թէ բազմամբոխ ժողովին ծանրութեամբը շինուածները կործանին *: Ու աս արթնութիւնը չէ թէ միայն Վիթդէմպէրկի սահմանի մէջ ամփոփուած էր, այլ բոլոր Գերմանիա հաղորդ. էր անոր: Ամէն կողմերու իշխաններէն ազնուականներէն ու գիտնականներէն նամակներ կընդունէր Լուտեր, որ քաջալերութեամբ ու հաւատքով կըզօրացունէին զինքը: Ինքը երեսունէն աւելի ասանկ նամակներ ցուցուց Սպալատինին †:

Անգամ մը Բրանտէպուրկի կուսակալը ուրիշ իշխանաւոր անձանց հետ ընկերացած Վիթդէմպէրկ գնաց Լուտերի հետ տեսնուելու: "Ուզեցին տեսնել մարդը", կըսէ ինքն Լուտեր: Ու արդարև ամէնը կուզէին տեսնել ան մարդը, որուն ձայնը ազգերը արթընցուց, ու արևմտեան քահանայապետը իր աթոռին վրայ սասանեցուց:

Լուտերի բարեկամներուն նախանձաւորութիւնը օր ըստ օրէ կըզօրանար: Քաղցրաբարոյն Մէլանկտոն խիստ ազդու եղանակաւ յառաջ կըվարէր զանոնք որ իրեն կըթուէին թէ եռ կըմնան, կամ իրենց ընթացքին մէջ կըթուլնան:

Բաց ասոր, տէրութեան բոլոր նահանգներուն մէջ կծու երգիծաբանութիւններ կըշրջէին պապին իտալացի պաշտօնատարներէն խիստ երևելիներուն դէմ: Ուլրիկ

*Es möchte noch gar die Kirche und Capelle un der Menge willen einfallen. (Spalatin in Seckendorf p 295)

†Mehr als 30 Briefe von Fürsten . . . . (Ibid.)

Ֆօն Հութթըն իր ջանքերուն մէջ ոչ երբէք կը յոգնէր ։ Նամակներ կը գրէր Լութերին՝ Նուիրակներուն՝ ու Գերմանիայի բոլոր երևելի անձերուն ։ Բարրաշխոլի Նուիրակին Նամակ մը գրելով ըսաւ անոր․ "Երեքի կըսեմ, միանգամ և երկիցս քեզի կըսեմ, ով Ալերինոս, որ ան խաբէական մթութիւնները՝ որոնցմով դուն մեր աչքերը խաւարեցուցիր, յաւիտեան փարատեցան․ Հիմա Աւետարանը կը քարոզուի, ճշմարտութիւնը կը յայտնուի, Հռովմայ անտեղութիւնները զզուանօք մէկ դի կը ձգուին, ձեր վճիռներուն վրայ փոյթ չըլլուիր ու անվաւեր կըսեպուին, ու մեր ազատութիւնը եկած հասած է" ։

Արձակ շարագրութեամբ չբաւականանալով, Հութթըն տաղանաւոր գրութիւն ալ ըրաւ․ գրքոյկ մը հրատարակեց որ կը կոչուի "Աղաղակ Լութերի յարուցած հրդեհին վրայ" ։ Այս բանաստեղծական գրութեանս մէջ բողոքելով առ Քրիստոս՝ կաղաչէ անոր՝ որ իր սաստիկ բարկութեամբը յանդիմանէ զանոնք որ կը յանդգնին իր իշխանութիւնը ուրանալ ։ Հութթըն միայն խօսքով կանգ չառաւ․ իր փափաքը կռիւին մէջ իր թուրը քաշել էր ։ Բայց Լութեր գրելով Հութթընին յանդիմանեց անոր անխոհեմ դիտաւորութիւնները ։ "Չեմ կամիր որ աւետարանը բռնութեամբ կամ կոտորած յարուցանելով պաշտպանուի․ ըսաւ" ։

Լուկաս Կրանաք անուանի պատկերահանը կարգ մը տպեալ պատկերներ հանեց աս անուանովը․ "Քրիստոսի չարչարանքները ու Նեռը" ։ Այս պատկերներուն մէջ մէկ կողմը կերևար պապին փառաւորութիւնը և շքեղութիւնը, իսկ միւս կողմը Փրկչին խոնարհութիւնը ու չարչարանքները ։ Ասոնց մակագիրները Լութեր շարագրեց․ և միտքէ դուրս ազդեցութիւն մը յառաջ բերին աս պատկերները ։ Ժողովուրդը կը հրաժարէր ան եկեղեցիին յարելէն որ ամէն կերպով կերևար թէ այնչափ ուղղակի կը հակառակի անոր հիմնադրին օրինակին ։

Պապականութեան վրայ յարձակողները երբեմն այնպիսի զէնքեր կը գործածէին որ քրիստոնէական կրօնի սըրբութեանը անվայել էր ։ Լուտեր գրութիւն մը հաներ էր Էմսերի դէմ, և աս անունովը ուղղեր էր անոր. "Լիփսիայի Այծին"։ Էմսեր ալ պատասխան մը գրեց այսպէս, "Վիդդէմպէրկի Ցուլին" ։ Բայց Աւկսպուրկի մէջ Էմսերի գիրքը կախաղանէ մը կախեցին աս խորագիրովը թէ, "Գիրքը իր արժանաւոր տեղն է". անոր տակէն ալ գաւազան մը կախեցին հեղինակին արժանաւոր պատիժը նշանակելու ։

Վիդդէմպէրկի աշակերտները բարեկենդանի առիթով իրենց ընկերներէն մէկը պապին հագածին նման հանդերձով հագուեցուցին, ու քաղաքին փողոցներուն մէջ փառաւոր հանդէսով կը պըտըտցունէին զանիկայ ։ Երբոր գետին քովի մեծ հրապարակը հասան, ոմանք պապէն ապըստամբիլ ձևանալով յանկարծ անոր վրայ թափեցան. որ գետը նետեն ։ Բայց Սրբազանը չուզելով ջուրը ընկըղմիլ, սկսեց փախչիլ. իր կարդինալները՝ եպիսկոպոսները՝ և ամէն աստիճանի պաշտօնատարները նոյնպէս ըրին. համալսարանին աշակերտները փողոցէ փողոց անոնց ետևէն ինկած էին, ու Վիդդէմպէրկի ամէն կողմերը կը տեսնուէր Հռովմէական գերաստիճան անձանց հալածուիլը, ռամիկ ժողովուրդին ծաղրաբանութեան և ցնծութեան աղաղակներովը ։ "Քրիստոսի թշնամին, կըսէ Լուտեր, որ թագաւորները և զնոյն ինքն զՔրիստոս կը ծաղրաբանէ, արդարացի հատուցում մը կընդունի երբոր ինքն ալ ծաղրաբանութեան նիւթ կըլլայ" ։ Աս տեղս մեր դատաստանը Լուտեր կըսխալի. Ճշմարտութեան անարատ գերազանցութիւնը պէտք չէ որ այսպէս խաղերու խոնարհի. վրէժխնդրութիւն ընելու համար կոչուած պատերազմներուն մէջ չկարօտիր անանկ օգնականներու՝ ինչպէս են բարեկենդանի երգերը՝ անճոռնի կերպարանքները և խեղկատակութիւնները ։ Իրաւ կրնայ ըլլալ որ առանց աս

ռամկաց հաճելի ցոյցերուն իր յառաջադիմութիւնը սա-կաւ երևնայ, բայց յստակագոյն և հետևապէս աւելի տևական պիտի ըլլայ ան ։

Բայց Քարեկարգողը բոլորովին ցնծութեան և ուրա-խութեան մէջ չէր յառաջանար ։ Նա միջոցին կըթուէր թէ իր բարեկամներէն ոմանք իրենց ճամբայէն դառնալու յօ-ժարութիւն ունէին ։ Ստաուպից՝ որն որ Լուտեր իրեն հայր կըկոչէր, կերևար թէ նորէն երկմտութեան մէջ վարա-նեալ է ։ Պապը իր վրայովը ամբաստաներ էր, ու Ստաուպից յայտներ էր թէ պատրաստ է անոր սրբութեանը դատաս-տանին հնազանդիլ ։ “Կըվախնամ, ըսաւ Լուտեր, որ պապը քեզի դատաւոր ընդունելով, պիտի ուրանաս զիս և իմ ընդունած վարդապետութիւնս ։ Թէ որ Քրիստոս քեզ կըսիրէ, պիտի բռնադատէ զքեզ քու նամակդ հեր-քել ։ Հիմա որ Քրիստոս կըմերժուի, մէկ դի կըձգուի, կըհայհոյուի, ժամանակ չէ դողալով ետ կենալու, այլ յառաջ ընթանալով յարձակման համբաւ հանելու ։ Աւստի երբոր դուն զիս կըյորդորես խոնարհ ըլլալ. ես ալ ընդհակառակը քեզ կըյորդորեմ հաստատ ըլլալ ։ Գիտեմ որ ես պիտի կոչուիմ ամբարտաւան մարդ մը, ագահ, շնացող, մարդասպան, սուտ պապ, և ամէն յան-ցանքի պատժապարտ թշուառական մը ։ Ինչ կուզեն թող ըսեն. բայց մէկը չկրնար ամբաստանել ինծմէ թէ ես ան-տենը ամբարշտութեամբ լուռ կեցած եմ, երբոր Տէրը կըգանգատէր ըսելով, “Աջ կողմս կընայէի ու կըտեսնէի, բայց մէկը չէր ուզեր զիս ճանչնալ ։ Քրիստոսի բանը ոչ խաղաղութիւն այլ սուր մըն է ։ Թէ որ դուն չես կամիր Քրիստոսի ետևէն երթալ, թոյլ տուր ինծի մինակ եր-թալ ։ Պիտի ջանամ յառաջ վարել զիս, ու յաղթութեան պսակը իմս պիտի ըլլայ” ։

Այսպէս Լուտեր իմաստուն հազարապետի նման ար-թուն աչքով կըհսկէր պատերազմի ասպարէզին վրայ. և երբոր իր հրամանովը հանապազ նոր պատերազմականներ

կըզգիմէին պատերազմին խիտ առ խիտ խառնեալ կողմը , եւ չէր մնար նշանակելու թէ իր հետեւողներէն ոմանք ուր կըսկսէին ակարանալու, ու զանց չէր ըներ վերստին կոչել զանոնք իրենց ընդունած դրօշակին տակը ։ Իր զգուշացուցիչ ձայնը հեռի և ընդարձակ կըհնչէր . գրութիւն գրութեան ետեւէ կելլէր արագ յաջորդութեամբ ։ Իր զանազան գրուածքներուն օրինակները բազմացընելու համար երեք մամուլ անդադար զանոնք կըտպագրէր ։ Իր ատենախօսութիւնները բոլոր ազգին մէջ ձեռքէ ձեռք կըշրջէին , խոստովանութեան ատեն միտքը ամբոխած ապաշխարողին զօրութիւն տալով , վանքին մէջ երկմտութեամբ վարանեալներուն քաջալերութիւն պարգեւելով , ու աւետարանական ճշմարտութեան իրաւունքները մինչեւ անգամ իշխաններու պալատներուն մէջ հաստատելով ։

"Իմ վրաս յարձակած փոթորիկներուն մէջ , գրեց կայսրընտրին, միշտ կըյուսայի թէ 'ի վերջոյ հանգստութիւն պիտի վայելեմ . բայց հիմա կըտեսնեմ թէ ասիկայ մարդկային խորհուրդներուն մէկն է եղեր ։ Օր ըստ օրէ ալիքները կըբարձրանան , ու ամէն կողմանէ ծովը զիս կը պաշարէ ։ փոթորիկը արդարեւ սաստիկ կատղած է, բայց և այնպէս դեռ մէկ ձեռքովս սուրը կըբռնեմ, և միւսովը Սիօնի պարիսպները կըշինեմ" ։ Իր առջի կապակցութիւնները մշտնջենաւորապէս քակուեցան հիմա , ճիշտ ան բաղուկովը որ բռնադրանաց որոտումները ուղղեր էր իր վրայ ։ "Կոնդակը զիս բանադրելով , ըսաւ , պապին իշխանութենէն ու վանական կանոններէն ազատ եմ ։ Ուրախութեամբ կըընդունիմ իմ ազատութիւնս . և սակայն ոչ իմ կարգիս կերպարանքը և ոչ վանքը կըձգեմ" ։ Նոյնա բոլոր շփոթութեանս մէջ տակաւին միտքը կըբերէ ան վտանգները՝ որոնց մէջ ինկած է իր հոգին ան պատերազմին միջոցովը . կիմանայ որ պէտք է իր անձին վրայ հսկել ։ "Աղէկ կընես որ ինծի համար կաղօթես , գրեց իր բարեկամներէն մէկուն ։ Ես պէտք եղածին պէս ինքզինքս պը-

բաղձան զբաղումներու չե՛մ կրնար տալ. կեանքը ինծի խաչ-մըն է։ Մեղք կընես որ զիս կը յորդորես չափաւոր ըլլա-լու. կիմանամ անոր հարկաւորութիւնը. բայց ես իմ ան-ձիս տէր չեմ. ուրեմն աղօթէ ինծի համար . . .”։

Այսպէս էր որ միանգամայն Բարեկարգողը և Բարե-կարգութիւնը յառաջ կերթային ան ճամբուն մէջ որ Աստուած ցուցուց անոնց։ Ազդեցութիւնը տակաւին կը տա-րածէր աւելի հեռաւոր տեղեր։ Շատ անձինք՝ որոնցմէ կը յուսացուէր թէ իրենց բոլոր զօրութեամբը պապակա-նութեան կուսակիցներն են, սկսեցին հաղորդութիւն ու-նենալ հասարակաց շարժման մէջ։ “Մինչև անգամ ա-նոնք՝ կըսէ Լէք՝ բուական անկեղծութեամբ, որոնց պապը շատ աղէկ վիճակներ ու եկեղեցական առատ թոշակներ շնորհեց, անզգայ կոճղերու պէս լուռ կեցած են։ Նաև ասոնց մէջէն շատերն ալ կան՝ որ իբրև Աստուծոյ Հոգւովը լցեալ մարդ՝ կը գովաբանեն զԼութեր, ու պապին պաշտպանները կանուանեն խմաստակներ և մարդահաճոյներ”։ Եկեղեցին արտաքին երևոյթով կատարեալ սառնութեան մէջ՝ հա-ըստութեամբ զօրութեամբ և աշխարհային զէնքով օ-ժանդակուած, բայց իրօք մաշած տկարացած ու Աստուծոյ սիրոյն զրկուած, տեսաւ սա վիճակին մէջ որ իրեն դէմ ե-լած են պարզամիտ բայց քաջասիրտ մարդոց բազմութիւն մը՝, որ իմացեր էին թէ Աստուած իր Բանին համար պա-տերազմողներուն հետ է, և հետևապէս ոչ երբէք կը տա-րակուսէին իրենց յաղթական հանդիսանալուն վրայ։ Բո-լոր դարերու մէջ տեսնուած է թէ մէկ արմատացած գա-ղափար մը ինչ մեծ զօրութիւն ունի մարդկային սեռը դանդաղ միտքը արթընցունելու, ազգի մը ոգին գրգռելու, և թէ որ հարկաւոր՝ նոյն գաղափարին անձնատուր եղող-ներուն հազարները պատերազմի ասպարէզը մղելու և մինչև անգամ մահուան ժանիքներուն մատնելու։ Բայց թէ որ մէկ երկրաւոր գաղափար մը այսչափ զօրութիւն ունի, ինչ սահման դնելու ենք երկնաւոր գաղափարի մը զօրութեա-

նը, երբոր ինքն Աստուած մարդոց սրտերը բանայ զանիկայ ընդունելու : Ապաքէն աշխարհի պատմութեանը մէջ չկարդացուիր թէ սանկ զօրութիւն մը յաճախ 'ի գործ դըրուած է. բայց սակայն քրիստոնէութիւնը սկսելուն մէկ մը յայտնուեցաւ, երկրորդ անգամ Բարեկարգութեան ատենը երևցաւ, ու միանգամ ևս պիտի տեսնուի ապառնի ատեններր : Մարդիկ՝ որոնք աշխարհի հարստութիւնները ու փառաւորութիւնը կարհամարհէին, ու գոհ սրտիւ աղքատութեամբ և չքաւորութեամբ կապրէին, հիմա սկսեցին ինքզինքնին զօրացընել ու քաջալերել բոլոր հարըստութեանց ամենապատուականին՝ ճշմարտութեան և շընորհաց վարդապետութեանը համար : Աստուածպաշտութեան բովանդակ սկզբունքները ժողովրդոց ամբոխեալ սրտերուն մէջ կըխմորէին, ու մարդոց հոգիներուն մէջ կը բորբոքէր վառվռուն եռանդ մը, որ դէմ չկեցուելու զօրութիւնով կըմղէր զանոնք իրենց սեռին բարոյական նորոգութեանը համար Աստուածային Նախախնամութեամբ բացուած փառաւոր ասպարէզը :

# ԳԻՐՔ Է

## ՎՈՐՄՍԻ ԺՈՂՈՎՔԸ·

### 1521. Յունվար—Մայիս։

---

### ՀԱՏՈՒԱԾ Ա

ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԻՒՆԸ Լութերի վանքին պզտիկ խուցի մը մէջ սկզբնաւորութիւն ընելով մէկ խոնարհ հոգւոյ մը ջանքովը ու մենամարտութեամբը, օրէ օր կը մեծնար ու կը տարածէր։

Աննշան ու աղքատ մարդ մը՝ զԲանն կենաց ձեռքին մէջ բռնելով, աշխարհի մեծերուն առջևը անխախտ կայներ էր ու զանոնք կը սարսէր։ Այս Բանիւը՝ նախ Տէցելին ու անոր բազմաթիւ բանակին դէմ դրաւ, ու ան ագահ վաճառականները, քանի մը վայրկեան մաքառելէն ետքը անոր առջևէն փախան։ Անկից ետքը Աւկզպուրկի մէջ Հռովմայ նուիրակին դէմ դրաւ. ու անիկայ շփոթելով թող տուաւ որ իր որսը ձեռքէն փախչի։ Քիչ մը ժամանակէն ետքը՝ Լիփսիայի ուսումնարաններուն մէջ երևելի աստուածաբաններուն դէմ դրաւ, և անոնք սոսկացին երբոր տեսան որ իրենց ձեռքին մէջ եղած դպրոցական փիլիսոփայութեան զէնքերը կը խորտակին։ Վերջապէս պապին ալ դէմ կեցաւ աս Բանիւը, ան ալ քունին մէջը շփոթելով, ելաւ կայնեցաւ իր աթոռին վրայ, որ զինքը անհանգիստ ընող կրօնաւորը պատժէ։ Իսկ ահա աս Բանը՝ Քրիստոնէութեան Գլխոյն բոլոր իշխանական ուժը

կտրեր էր ։ Հիմայ ան Գառնին կըմնայ միայն վերջին մենա-մարտութիւնը ընել․ կըմնայ որ արևմտեան կայսեր ու աշխարհի թագաւորաց ու իշխանաց վրայ յաղթանակէ ու տիրէ ․ և սա կերպով մեծերը ու մեծութիւնները իրեն իշխանութեան տակը անցընելով , եկեղեցւոյ մէջ ելլէ կանգնի ու թագաւորէ իբրև զնոյն ինքն Գառնն Աստուծոյ ։

Բովանդակ ազգը շփոթած էր ․ իշխանները և ազնուականները, ասպետները և քաղաքացիները, եկեղեցականները և աշխարհականները, քաղաքները ու գիւղերը, ամէնն ալ աղմուկի մէջ էին ։ Մէկ զօրաւոր կրօնական յուզմունք մը ու փոփոխութիւն մը հաւատոյ, որուն առաջին շարժառիթ պատճառը՝ թէպէտև նոյն ինքն Աստուած էր , բայց ժողովրդեան մէջ խորունկ արմատներ ձգած ըլլալուն համար, կըսպառնար կործանելու Հռովմէական ծերապետութեան գլուխը, որն որ այնքան ժամանակէ 'ի վեր մեծ պատւոյ մէջ էր ։ Մէկ վսեմ , զօրաւոր և ներգործիչ ոգի ունեցող նոր ծնունդ մը՝ բոլոր համալսարաններուն , քաղաքներուն, արքունի պալատներուն, բերդերուն և գիւղերուն ու նաև վանքերուն մէջ կըտիրէր ։ Եւ ամէնուն սիրտը սուրբ եռանդով մը կըմխիթարուէր , յուսալով որ քիչ ատենէն մարդկային ընկերութեան մէջ մեծ ու բարեկարգ փոփոխութիւն մը պիտի մտնէ ։ Արդեօք սա ընդհանուր շփոթութեան ժամանակը՝ նորապսակ կայսրը ի՞նչ վարմունք պիտի ունենայ . և ի՞նչ վախճան պիտի ունենայ ան սոսկալի ազդեցութիւնը , որ ամէնը մէկտեղ իրեն կը քաշէր ։

Մէկ հանդիսաւոր ժողով մը բացուելու վրայ էր ․ ու ասիկայ ան առաջին ժողովն էր , որուն նախագահը նորահաստ Կարոլոսը պիտի ըլլար ։ Նիւռնպէրկ քաղաքը՝ ուր որ ոսկեգիր կոնդակին համեմատ աս ժողովը պիտի ըլլար, ժանտախտէն առած ըլլալով , որոշուեցաւ որ Վօրմս քաղաքին մէջն ըլլայ ժողովը , սկսելով 6 Յունվարի ,

1521 * ։ Ուրիշ ժողովի մը մէջ բնաւ այսչափ շատ իշխաններ գտնուած չէին. ամէնն ալ փափաքեցան որ աս Նորահասակ կայսեր առաջին կառավարական գործողութեանը ներկայ գտնուին, ու իրենց մեծութիւնը ցուցընեն ։ Ան իշխաններուն մէկն ալ Հեսսացի Նորահասակ Փիլիպպոս իշխանն էր, որ քիչ մը ատենէն ետքը Բարեկարգութեան մէջ այնքան երևելի ըլլալու էր ։ Ասիկայ Վորմս հասաւ վեց հարիւր ձիաւորով, որոնց մէջ շատ երևելի ու կտրիճ մարդիկ կային ։

Սակայն աւելի մեծ ու զօրաւոր շարժառիթ մը պատճառ տուաւ որ բոլոր կայսրընտիրները, դուքսերը, արքեպիսկոպոսները, կուսակալները, կոմսերը, եպիսկոպոսները, պարոնները, տէրութեան իշխանները, քաղաքաց վերակացուները և քրիստոնեայ թագաւորաց դեսպանները, իրենց մեծ փառքովը զարդարուած ճամբայ ելլեն Վորմս քաղաքին ժողովը գալու ։ Վասն զի այնպէս ծանուցում եղեր էր որ աս ժողովին մէջը՝ մէկ նոր արքունական ատեան մը պիտի հաստատուի տէրութիւնը կառավարելու, երբոր Կարոլոս հեռու տեղ մը երթայ ու հոն չգտնուի. ու նաև խորհըրդարան պիտի կարգադրուի, և այլն ։ Բայց հասարակութեան ուշադրութիւնը մանաւանդ հաստատուած էր մէկ ուրիշ բանի մը վրայ, որ ան ալ կայսրը հրաւիրման հրովարտակին մէջ յիշեր էր, և աս բանը Բարեկարգութիւնն էր ։ Քաղաքական մեծ խնդիրները՝ Վիթթէմպերկի միաբանին դատին քովը ոչինչ բան մը կըսեպուէին. վասն զի բոլոր Վորմս գացող ազնուական մարդիկ՝ գլխաւորաբար աս նիւթին վրայ կըպարապէին ։

Յայտնի կերևնար որ աս ժողովին գործը դժուարին պիտի ըլլար ։ Կարոլոս՝ որ մարմնով տժգոյն և տկար էր՝ հազիւ թէ քսան տարեկան կար. և դեռ մեծ խելացութեան մը նշան ու գործք չէր ցուցըցած, ոչ ալ իրեն մէկ որոշ

* Sleidan, tome, I, p. 80.

ընթացք մը ըրարած ։ Ան խելացի ու ժրաջան Կիլլըմ տը Քրուա՝ Շիէվրոյ իշխանը, որ իրեն մեծ սենեկապանը, կառավարը ու առաջին նախարարն էր, նաև արքունի պալատին մէջ բացարձակ իշխանութեամբ մը կը հրամայէր, Ուորմս եկածին պէս մեռաւ ։ փառասէր ու մոլեկան մարդիկ՝ կայսեր չորս կողմը պաշարեցին. Սպանիացիք ու Պելճիգացիք իրարու դէմ կը ջանային որ նորահասակ կայսեր խորհրդակից ըլլան. պապին նուիրակները իրենց նենգութիւնները կը բազմապատկէին. և Գերմանիոյ իշխանները համարձակութեամբ կը խօսէին ։ Ա՛ս բաներէն կը գուշակուէր, որ սա տարբեր կողմանց մենամարտութեան մէջը՝ շատ վարպետութիւններ ու խորամանկութիւններ գլխաւոր զէնք պիտի ըլլան * ։

Կարոլոս ի՞նչ ընէ. պապին նուիրակին ու կայսրընտրին մէջ տեղը մնացած, մանաւանդ որ Թագը իրեն կայսրընտիրը տուեր էր ։ Ի՞նչպէս հաճեցընէ թէ զԱլէանտեր, և թէ զՖրիտերիկոս ։ Ալէանտեր՝ կը բռնադատէր զանիկայ, որ պապին կոնդակը ՚ի գործ դնէ. Ֆրիտերիկոս ալ կաղաչէր անոր, որ կրօնաւորը զրուցուելու չտուած՝ անոր դէմ բան մը չընէ ։ Նորահասակ կայսրը երկու ներհական կողմերն ալ հաճեցընելու համար, Օբբէնհէյմ նստած ատենը կայսրընտրին գրեր էր, որ Լուտերը անանկ մէկ տեղ ժողովը բերէ, խօսք տալով որ Լուտերին անիրաւութիւն կամ բռնութիւն մը պիտի չըլլայ. միայն թէ գիտուն մարդիկ ժողովին մէջը անոր հետը խօսակցութիւն պիտի ընեն ։

Կարոլոսին առ Թուղթը Շիէվրոյ իշխանին ու Նասսոյի կոմսին թղթերուն հետը կայսրընտրին ձեռքը որ հասաւ, կայսրընտիրը խիստ մեծ տարակուսանաց մէջ ինկաւ. վասն զի ո և իցէ ատեն կրնար ըլլալ որ նորահասակ ու փառասէր կայսրը հարկաւոր գտնէ պապին հետ հաշտ

* Es gieng aber auf diesem Reichstag gar schlüpferig zu . . . (Seckend, p. 326.)

մնալը. վասն որոյ Լուտեր վտանգի մէջ էր: Թէ որ Փրիտերիկոս՝ զանիկայ առնէր Վորմս բերէր, իբր թէ մեռցունելու պիտի բերէր Բարեկարգողը: Բայց Կարոլոսին հրամանը որոշ ու բռնադատիչ ըլլալուն համար, վերջապէս կայսրընտիրը Սպալատինին ապսպրեց, որ իր ընդունած հրամանները իմացընէ Լուտերին: "Հակառակորդները, գրեց Լուտերին Սպալատին, ամէն կերպով կաշխատին աս գործը շուտով լմնցունելու" *:

Լուտերի բարեկամները սոսկացին, բայց ինքը բնաւ չըվախցաւ: Աս միջոցին՝ Բարեկարգողին առողջութիւնը շատ տկար էր. բայց իր տկարութիւնը քանի մը տեղ չդնելով, աստանկ պատասխան տուաւ կայսրընտրին. "Թէ որ ես ողջ առողջ Վորմս չեմ կրնար երթալ, աստանկ հիւանդ կերթամ: Վասն զի թէ որ կայսրը զիս կըկանչէ, անտարակոյս այնպէս կըհաւատամ որ նոյն ինքն Աստուած զիս կըկանչէ: Թէ որ անոնք ինծի բռնութիւն ընել կուզեն, ինչպէս որ հաւանական կերեւայ, (վասն զի անշուշտ անոնք ինծմէ բան սորվելու համար զիս չեն կանչեր,) ես իմ դատս Աստուծոյ ձեռքը կըյանձնեմ: Տակաւին կենդանի է ու կը թագաւորէ ան Աստուածը, որ երեք մանկունքը հնոցին մէջը պահեց ու ազատեց. թէ որ անիկայ զիս ազատել չուզէ, իմ կեանքս թող անոր զոհ ըլլայ: Մենք միայն դէմ դնենք, որ Աւետարանը ամբարշտաց խաղալիկ ու ծաղրածութիւն չըլլայ, ու անոր հաստատութեանը համար մեր արիւնը թափենք, որպէս զի ամբարիշտները չյաղթանակեն: Մենք չեմք կրնար որոշել, թէ արդեօք իմ ողջ մընա՞լս, թէ իմ մեռնիլս ժողովրդոց փրկութեանը աւելի օգուտ պիտի ընէ: Միայն Աստուծոյ աղաչենք, որ մեր նորահաստակ կայսրը իր թագաւորութիւնը չսկսի, ձեռքերը իմ արեանս մէջը թաթխելով: Աւելի ցանկալի է ինծի Հռովմայ սրովը մեռնիլ: Աղէկ գիտէք, թէ Սիգեսմունդ

*Adversarios omnia moliri ad maturandum id negotii(L.Epp.1.p.534)

կայսրը ի՞նչպիսի պատիժներ կրեց Յովհաննէս Հուսը մեռցընելէն ետքը։ Ամէն բան ինծմէ յուսացէք, փախչելէն ու խօսքս ետ առնելէն զատ*։ փախչելը՝ ինծի որչափ անկարելի է նէ, այնչափ աւելի ալ խօսքս ետ առնելը անհնարին է"։

Կայսրընտիրը՝ Լուտերէն աս Թուղթը չառած, իր ընելու բանը արդէն մտքին մէջը որոշեր էր։ Աս իշխանը՝ որ աւետարանական գիտութեանը մէջ միշտ կաճէր, ան օրերը սկսեր էր աւելի հաստատ ընթացք մը բռնել։ Ինքը աղէկ գիտէր, որ Վօրմսի ժողովին մէջն ըլլալու խօսակցութիւնները բարեկյաջող վախճան մը պիտի չունենան. աս պատճառաւ հինգերորդ Կարոլոսին ասանկ գրեց. "Ինծի շատ դժուար կերևայ, Լուտերը ինծի հետ Վօրմս բերելը. զիս ազատեցէք աս նեղութենէն։ Անաց որ՝ ես անոր վարդապետութեանը բնաւ պաշտպանութիւն ըրած չեմ. միայն դէմ կըկենամ, որպէս զի չըլլայ թէ զանիկայ դատապարտեն առանց իր պատասխանը լսելու։ Պապին նուիրակները առանց սպասելու ձեր հրամանին, Լուտերին ու ինծի համար անարգական ճամբայ մը բռնեցին. ես կըվախնամ որ այսպէս անոնք մէկ անխոհեմ գործ մը ընել տուած են Լուտերին, որ զանիկայ մեծամեծ վտանգներու ենթակայ պիտի ընէ ժողովին մէջը երևցած ատենը"։ Կայսրընտրին նշանակած գործը ան էր որ Լուտեր Պապին կոնդակը կըրակը դրեր այրեր էր։

Բայց արդէն Վօրմսի մէջ հրատարակուեցաւ որ Լուտեր եկեր է։ Նորասէր մարդիկ կուրախանային. կայսեր պալատական նախարարները աս բանէս կըդողային։ Բայց պապին փոխանորդը ամենէն աւելի սրտնեղութիւն զգաց. վասն զի Ալէանտէր ճամբուն վրայ աղէկ հասկըցաւ, թէ Լուտերի քարոզած աւետարանը որչափ ներգործութիւն

*Omnia de me præsumas præter fugam et palinodiam. (L. Epp. 1. p. 536.)

ըրեր է ամէն աստիճանի մարդոց ։ Բոլոր գիտնականները , իրաւագէտները , ազնուականները , ստորին եկեղեցականները , կանոնիկոսները ու հասարակութիւնն ալ Բարեկարգութիւնը սրտով ընդունեեր էին * ։ Նոր վարդապետութեան աս հետեւողները պարզերես ու բարձրագլուխ կը շրջէին , ու համարձակ կըխօսէին . իսկ Հռովմայ կողմնակցութիւն ընողները սաստիկ վախով մը կըգողային ։ Պապականութիւնը տակաւին կանգնած էր . բայց նեցուկները ու հիմերը կերերային . վասն զի արդէն ամէնուն ականջը սկսաւ որոշակի լսել մէկ կործանման ձայն մը , բոլորովին նման ան անմռունչ շառաչմանը , որ լեռներուն մէջ կըլսուի՝ երկրաշարժը սկսելէն առաջ † ։ Ալէանտէր դէպի Որմս ճամբորդութիւն ըրած ատենը՝ շատ հեղ խելքը վրան չէր ։ Երբոր կուզէր կերակուր ուտել , ու տեղ մը պառկիլ քընանալ , բնաւ մարդ մը չէր համարձակեր անոր ընդունելութիւն ընելու , ո՛չ գիտնականք , ո՛չ ազնուականք , ո՛չ քահանայք , և ոչ իսկ պապին կարծուած բարեկամները ։ Ան հպարտ նուիրակը կըպարտաւորէր յետին անարգ պանդոկներու մէջ իրեն ապաստանարան մը փնտռելու ‡ . և աչքը վախցած ըլլալով , միշտ կասկածի մէջ էր , որ չըլլայ թէ փորձանքի մը հանդիպի ։ Ան կերպով Որմս քաղաքը հասաւ , ու իրեն Հռովմէական կոյր նախապաշարման ու նախանձաւորութեանը վրայ բարկութիւն մըն ալ աւելցուց , ճամբուն վրայ այնպէս անարգութիւն կրելուն համար ։ Անմիջապէս ամէն տեսակ վարպետութիւնը բանեցուց , որպէս զի ահարկու Լուտերին համարձակ գալուստը ու երեւումը

* Multitudo . . . turba pauperum, nobilium . . . grammatici, causidici. . . inferiores ecclesiastici, . . . factio multorum regularium . . . . (Pallavicini , I. p. 93.)

† Hæ omnes conditiones petulanter grassantium . . . metum cuilibet incutiebant, . (Ibid.)

‡ Neminem nactus qui auderet ipsum excipere, ad vilia, sordida que hospitia ægre divertit . (Ibid.)

խափանէ ։ "Ո՜վ ի՜նչ մեծ փոյթակղութիւն է, ըսաւ, որ աշխարհական մարդիկ նորէն քննութիւն կընեն ան խնդիրին վրայ, որն որ պապը արդէն դատապարտեր է" ։

Յիրաւի Հռովմայ պալատականները, բանէ մը այնչափ չէին վախնար, որչափ որ քննութենէ. մանաւանդ թէ՝ ան քննութիւնը Գերմանիոյ մէջ ըլլալու էր և ոչ Հռովմայ մէջ ։ Աս բանը Հռովմայ խիստ մեծ անարգութիւն պիտի սեպուէր, թէ և ամէնը միաբերան Լուտերը դատապարտելու ըլլային. բայց յոյս չկար, որ Լուտեր բոլորովին դատապարտուի. քանզի Լուտերին ան զօրաւոր խօսքը, որ արդէն այնչափ յաղթութիւններ ըրեր է, , անշուշտ խել մը իշխանները ու թագաւորները իրեն պիտի դարձունէր ։ Վասն որոյ Ալէքսանտեր՝ Կարոլոսին շատ վրան ինկաւ. աղաչեց, սպառնացաւ, իբրև դեսպան Պապին Եկեղեցւոյ՝ իշխանութիւնով խօսեցաւ ։ Կարոլոս ալ համոզուեցաւ, ու կայսրընտրին գրեց թէ Լուտերին տրուած ժամանակը անցած ըլլալով, Լուտեր պապին նզովքին ու բանադրանացը տակն է. ու թէ որ անիկայ իր գրուածներուն պարունակած վարդապետութիւնը չհերքէ, կայսրընտիրը պէտք է որ զանիկայ Վիդդեմպերկի մէջ պահէ ։ Բայց աս իշխանը արդէն Սաքսոնիայէն առանց Լուտերի ճամբայ ելեր էր ։ Լուտեր շատ ցաւեցաւ, երբոր իրեն չթողուցին որ Վօրմս երթայ ։

Ալէքսանտեր՝ Լուտերին գալուստը խափանելէն զատ, ուզեց նաև որ անիկայ դատապարտուի ։ Անդադար իշխաններուն, եկեղեցւոյ մեծամեծներուն և ժողովին ուրիշ զանազան անդամներուն քովը կերթար, ու Օգոստինեան միաբանին վրայ ամբաստանութիւններ ու զրպարտութիւններ կընէր. ո՛չ միայն անձնազանդ ու հերետիկոս է, կըսէր, այլ նաև խռովարար, ապստամբ, անօրէն և հայհոյիչ ։ Բայց նոյն իսկ իր շարժուածքը ու իր ձայնին եղանակը, իր սըրտին կիրքը ու ատելութիւնը յայտնի կըցուցընէին, անանկ որ մարդիկ կըսէին թէ՝ "Անիկայ աս բաները աւելի վրի-

ժամէր ատելութեամբ մը, քան թէ բարենախանձ աստուածապաշտութեամբ մը կընէ" *: Նա թէպէտ շատ ուժով ու շարունակաբար կըխօսէր, բայց բնաւ մարդու մը սիրտը չէր շահեր †: Անոնք՝ անոր կըհասկըցընէին, թէ պապին կոնդակը թէութեամբ միայն դատապարտիր է Լուտերը. ոմանք ալ բոլորովին չէին պահեր իրենց ուրախութիւնը, որ կըղզային սրտերնուն մէջ Հռովմէական ամբարտաւանութեանը անարգուելուն ու ցածնալուն համար: Մէկ կողմանէ կայսեր նախարարները, մէկալ կողմանէ ալ եկեղեցական կայսրընտիրները՝ մէկ մեծ պաղութիւն մը կը ցուցընէին: Նախարարները աս բանը կամօք կընէին, որպէս զի պապը աղէկ հասկընայ, որ իրենց տէրոջը հետ միաբանութիւն ընելու միշտ կարօտութիւն ունի: Եկեղեցական կայսրընտիրներուն ալ դիտումն էր որ քահանայապետը իրենց բարեկամութիւնը աւելի սուղ գնէ: Բոլոր ժողովը՝ Լուտերին անմեղութիւնը լաւ մը հասկըցաւ. ու Ալէանտէր իր սրտնեղութիւնը ու կիրքը չէր կրնար զսպել: Բայց Հռովմայ կարդինալաց անտարբեր ու անփոյթ շարժուածքը՝ Ալէանտէրին աւելի սրտնեղութիւն ու վիշտ կուտար, քան թէ ժողովին ցրտութիւնը: Հռովմ՝ որ միայն մէկ "գինով‡ Գերմանացի մը" սեպած էր զԼուտեր, անանկ կըկարծէր որ ծայրագոյն քահանայապետին միայն մէկ կոնդակը պիտի կարենայ զանիկայ խոնարհեցընել ու հնազանդեցընել: Անոր համար առջինին պէս զինքը ապահով կարծելով, նորէն կոնդակ մը ու ստակ մը չխըր-

* Magis invidia et vindictæ libidine quam zelo pietatis. (Historia Iohannis Cochlœi, de actis et scriptis Martini Lutheri. Parisiis. 1565, p. 27 verso. Կոքլէոսը բոլոր կենացը մէջ Լուտերին խիստ մեծ թշնամիներուն մէկն էր, ինչպէս որ շուտով պիտի տեսնենք:)

† Vehementibus suis orationibus parum promovit. (Ibid.)

‡ Տես. երես. 168:

կեցին * ։ Բայց ասանկ մեծ գործը առանց ստակի Ի՞նչպէս կրնար առաջ երթալ † ։ Պէտք էր պապը նորէն արթընցընել ։ Ալէանտէր զարթուցիչ ու գրգռիչ ձայն մը արձակեց. ու Կարտինալ Տէ Մէտիչիին գրեց թէ "Գերմանիան Հռովմէն կըզատուի. իշխանները պապէն կըզատուին . . . Թէ որ աս բանիս համար կծծութիւն ընէք, ու ճարը շուտով չտեսնէք, ետքը յոյսերնիս բոլորովին կը կորսընցընեմք ։ Դրա՛մ խրկեցէք, դրա՛մ խրկեցէք, եթէ ոչ՝ Գերմանիա ձեռքէ կերթայ ‡ ։

Հռովմ աս ձայնը լսելուն արթնցաւ. պապականութեան պաշտօնեաները իրենց թմրութենէն ելլելով՝ Վատիկանու պալատը ժողովեցան, ու արտորացին իրենց սոսկալի ուժին նոր հրազէնքները թափելու ։ Պապը նոր կոնդակ մը արձակեց, ու ան նզովքը՝ որով մինչև անատենը՝ միայն կըսպառնային հերետիկոս վարդապետին, հիմայ իրօք հրատարակեցաւ թէ իրեն և թէ իր կողմնակիցներուն դէմ ։ Հռովմ՝ ինքիրմէ կտրելով ան վերջին թելը, որով Լուտեր տակաւին իր եկեղեցիին կապուած էր, Լուտերին ազատութիւնը և անով իր զօրութիւնն ալ աւելցուց. քանզի պապին երեսէն ելնալով՝ նոր սիրով մը Յիսուս Քրիստոսի ապաւինեցաւ ։ Արտաքին տաճարէն որ արտաքսեցաւ, ալ աւելի զգաց թէ նա ինքն է տաճար մը, յորում Աստուած կըբնակէր ։

"Ի՜նչ փառաւոր խորհուրդ, կըսէր, որ մենք մեղաւորներս՝ Յիսուսի Քրիստոսի հաւատալով, ու անոր Մարմինը ճաշակելով, զանիկայ բոլոր իրեն զօրութեամբը, իմաստութեամբը, ու արդարութեամբը մեր մէջը կունենամք, ինչպէս որ գրուած է. Ո՛վ որ կըհաւատայ, Քրիս-

* Negligens quædam securitas Romam pervaserat. (Pallavicini. I. p. 94.)

† Nec pecunia ad varios pro eadem sumptus. ( Ibid. )

‡ Periculum denique amittendæ Germaniæ ex parcimonia monetæ cujusdam. (Pallavicini. I. p. 94. )

տօս անոր ներսիդին կըբնակի ։ Յովհ․ ԺԴ․ 17 ։ Մէկ սքանչելի բնակարան և զարմանալի վրան, որ քան զՄովսէսինը գերագոյն է, և ներքուստ բոլորովին զարդարուած է մեծվայելչութեամբ մը, երևելի խորգերով, կարմիր վարագոյրներով և ոսկեղէն կարասիքներով․ բայց արտաքուստ ուրիշ բան չերևար, միայն թէ խոյի կամ այծի մորթերու անզարդ երևոյթ մը, ինչպէս որ Սինայի անապատին մէջը՝ Աստուծոյ շինել տուած վրանին վրայ կերևար * ։ Քանզի շատ հեղ քրիստոնեաները կըգլորին, և թէ որ անանց արտաքին երևոյթը միայն քննելու ըլլաս, տկար ու անարգ բան մը կերևան․ բայց պէտք չէ յուսահատիլ․ վասն զի այն տկարութեան ու յիմարութեան մէջը այնպիսի գաղտնի զօրութիւն մը կըբնակի, որ աշխարհս զանիկայ չկրնար ճանչնալ․ սակայն այն զօրութիւնը աշխարհիս կը յաղթէ․ քանզի Քրիստոս կըբնակի անոնց մէջը ։ Ես երբեմն անանկ քրիստոնեաներ տեսայ, որ կաղալով կըքալէին ու շատ տկար կերևնային․ բայց երբոր պատերազմելու ու աշխարհի երևնալու ժամերնին հասաւ, իսկոյն Քրիստոս զանոնք շարժեց, ու այնպիսի ոյժ ու քաջութիւն մը առաջաւ, որ սատանան զարհուրելով անոնց առջևէն կըփախչէր" † ։

Լութերին համար ալ այսպիսի ժամ մը մօտեցեր էր․ և Քրիստոս՝ որուն անիկայ հաղորդ եղեր էր, անկէց պիտի չբաժնուէր ։ Բայց սակայն Հռովմ զանիկայ բռնութեամբ կըմերժէր ու կըվանէր․ կոնդակին մէջը Բարեկարգողը և բոլոր անոր հետևողները կըբանադրուէին․ թէ հարուստ և թէ աղքատ, թէ եկեղեցական և թէ աշխարհական․ և ամէնն ալ իրենց պատիւէն ու ստացուածքէն կըզըրկուէին․ թէ իրենք և թէ իրենց յաջորդ զաւակները ։ Իր հոգւոյն փրկութիւնը սիրող ամէն ճշմարիտ քրիստոնեան՝

* Ելից․ ԻԶ․ 7, 14 ։

† So regete sich der Christus, dass sie so fest wurden, dass der Teufel fliehen musste. (L. Opp. t. IX, p. 613.)

աս բանադրուած մարդոց քովէն փախչելու էր ։ Ուր որ աս հերետիկոսութիւնը մտեր էր, ան տեղը քահանաները կիրակի օրերը ու մեծ տօնի օրերը եկեղեցիին մէջ բազմամբոխ ժողովրդեան առջեւը յայտնապէս կարդալու էին բանադրանքը ։ Խորանին վրայէն անօթները ու զարդերը վար պիտի առնէին. խաչը գետնի վրայ պիտի դնէին. տասներկու քահանայ կերոնները ձեռքերնին առնելով վառէին. ու ետքը նոյն կերոնները ուժով մը գետինը զարնելով ոտքով պիտի կոխէին ու մարէին ։ Ան ատենը եպիսկոպոսը աս անօրէններուն դատապարտութիւնը ամենուն ծանուցանելու էր, ու անկից ետքը բոլոր զանգակները զարնուելով՝ եպիսկոպոսը ու քահանաները՝ անէծք և նզովք պիտի կարդային. ու սաստիկ խստութեամբ Լուտերին ու անոր հետեւողացը դէմ քարոզ տային ։

Քսաներկու օր էր որ աս բանադրանքը ու նզովքը Հռոմայ մէջ կարդացուեր էր, և դեռ Գերմանիոյ մէջ տակաւին մարդ մը չէր գիտեր. երբոր Լուտեր լուր առնելով, որ Վորմսի ժողովը նորէն կուզէ զինքը բերել տալ, կայսրընտրին թուղթ մը գրեց անանկ ոճով մը, որ կայսրընտիր կրնար զանիկայ ժողովին ցուցընել ։ Լուտերի նպատակը՝ իշխանաց սխալ գաղափարները ու կարծիքները ուղղել էր. ու կայսերական ատեանին ցուցընել իր փաստին ճշմարիտ իրաւունքները՝ որոնք այնպէս ծուռ իմացուեր էին ։ "Գերձապայծառ Տէր իմ, ըսաւ, ես շատ կուրախանամ, որ կայսերական Մեծափառութիւնը աս դատը իրեն առջեւը պիտի կտրէ ։ Յիսուս Քրիստոս վկայ ըլլայ որ աս փաստը՝ գերմանական ազգին, ընդհանրական եկեղեցւոյն, բոլոր քրիստոնէից, և նոյն ինքն Աստուծոյ փաստն է, և ոչ թէ միայն մէկ մարդու մը՝ մանաւանդ ինծի պէս մէկու մը* ։ Ես պատրաստ եմ Վորմս գալու,

* Causam, quæ, Christo teste, Dei, Christiani orbis, Ecclesiæ catholicæ et totius germanicæ nationis, et non unius et privati est hominis. (L. Epp. 1. p. 551.)

միայն թէ ինծի ազատագիր ու գիտուն, աստուածապաշտ ու անաչառ դատաւորներ տրուին ։ Այս պատրաստ եմ պատասխան տալու . . . վասն զի ես չէ թէ հպարտութեան կամ շահու մը համար կըսորվեցունեմ աս վարդապետութիւնը, որուն համար որ զիս կըպախարակեն, բայց միայն իմ խղճմտանքս հանդարտեցունելու ու իմ վարդապետական պարտքս ու երդումս կատարելու համար . Աստուծոյ փառացը համար, քրիստոնէից եկեղեցւոյն փրկութեանը համար, Գերմանական ազգին աղէկութեանը համար, և անթիւ աւելորդապաշտութիւնները՝ չար սովորութիւնները՝ չարիքները՝ անարգութիւնը՝ բռնաւորութիւնը՝ հայհոյութիւնները ու անօրէնութիւնները վերցունելու համար" ։

Այս յայտարարութիւնը՝ այնպիսի վսեմ և փառանգաւոր ատեն մը եղած ըլլալով, մեր յատուկ ուշադրութեանը արժանի է ։ Ահա Բարեկարգութեանը ու Լուտերին աշխատանացը ներքին ու բուն պատճառները ։

## ՀԱՏՈՒԱԾ Բ

Բայց քաղաքագէտ իշխանները աս ամէնը բանի մը տեղ չէին դներ ։ Կարոլոսին ու Գաղղիացւոց մէջը անտարակոյս պատերազմ մը պիտի բացուէր, որն որ գլխաւորաբար Իտալիայի մէջ ըլլալու էր . վասնորոյ պէտք էր Կարոլոսին՝ պապին հետը բարեկամութիւն ընել . նաև պէտք էր իրեն կամ Փրիդերիկոսը Լուտերէն զատել, կամ պապը հաճեցընել՝ առանց Փրիդերիկոսը վիրաւորելու ։ Նմանապէս իր քովը եղող նախարարներուն շատը կըսէին . "Ի՞նչ պէտք է մեզի մէկ կողմին յարիլ . մենք նայինք որ Լուտերը ձեռք առնենք, ու առջևը քիչ մը բան գնելով՝ բերանը գոցենք ։ Խելացութիւնը՝ աս բանը մարելն է, և ո՛չ թէ փռնկցընելը ։ Թէ որ կրօնաւորը որոգայթը իյնայ, մենք յաղթող կըգտնուիմք . անիկայ քիչ մը խօսքի պառկի նէ, պիտի պապանձի և կորսուի ։ Մենք մարդոց աչքին երևնալու հա-

մար քանի մը արտաքին ուղղութիւններ ու բարեկարգութիւններ վճռենք, որպէս զի թէ կայսրընտիրը գոհ ընենք, և թէ պապին սիրտը շահինք. այսպէս ամէն բան իր սովորական ճամբան կըմտնէ'' ։

Ահա կայսեր մտերիմ խորհրդականներուն հնարած գիտը և խորհուրդը։ Կերևայ թէ Վիդդէմպէրկի վարդապետները աս վարպետութիւնը իմացան։ "Անոնք 'ի ծածուկ և 'ի խաւարի կաշխատին մարդոց սիրտը շահելու", ըսաւ Մէլանկթոն*։ Հինգերորդ Կարոլոսի՝ խոստովանահայրը՝ Յովհաննէս Գլաբիոն՝ որ յարգելի մարդ, յաջողակ պալատական ու խորագէտ կրօնաւոր մըն էր, յանձն առաւ աս նորագիւտ խորհուրդը 'ի գործ դնելու։ Բանզի Գլաբիոն՝ Կարոլոսին պինտ մտերիմ խորհրդակից ու բարեկամը ըլլալով, Կարոլոս՝ հաւատոյ վերաբերեալ գործքերը գրեթէ բոլորովին անոր ձեռքը յանձներ էր։ Նաև Կարոլոս աթոռը անցածին պէս, Լևոն տասներորդ՝ Գլաբիոնին սիրտը շահելու համար, շուտ մը անոր մեծամեծ պարգևներ խրկեց, որոնց համար Գլաբիոն շատ ուրախացեր էր ու մեծապէս գոհ եղեր էր†. և որովհետև քահանայապետին ըրած պարգևներուն ուրիշ փոխարէն մը չէր կրնար հատուցանել, բայց եթէ զհերետիկոսութիւնը դադրեցընել, աս պատճառաւ՝ բոլոր ջանքով սկսաւ աշխատելու‡։

Բայց կայսրընտրին խորհրդականներուն մէջ՝ Գրիգոր Պրուք կամ Պոնտանոս անուն ատենադպիր մը կար, որ շատ գիտուն, խոհեմ ու քաջասիրտ մարդ մըն էր, ու աստուածաբանութիւնը ամէն վարդապետներէն աղէկ գիտէր. և խելացութեամբը՝ Կարոլոսին պալատը գտնուող կրօնաւորաց նենգութեանը կրնար դէմ դնել։ Գլաբիոն՝ աղէկ

* Clanculum tentent et experiantur... (Corp. Reform. I. p. 281.)

† Benignis officiis recens a Pontifice delinitus. (Pallavicini, I. p. 90.)

Et sane eo toto negotio singulare probitatis ardorisque specimen dedit. (Ibid.)

գիտնալով ատենադպիրին մեծապատիւ համարումը, խնդ-րեց անկէց որ մէկ որոշեալ ժամու մը անոր հետ խօսակցի․ ու անոր քովը մօտենալով, ու զինքը Բարեկարգողին բարեկամը ցուցընելով, հեզութեամբ մը ըսաւ՝ թէ "Շատ ուրախացայ ու զուարճացայ երբոր Լուտերին առաջին գրուածքները կարդացի․ ես զանիկայ զօրաւոր ծառ մը նմանցուցի, որն որ գեղեցիկ ոստեր արձակեր էր, ու յոյս կուտար թէ շատ պտուղական պտուղներ տալու էր եկեղեցւոյ մէջ։ Ուրիշ շատ մարդիկ անկից առաջ աս բանը հասկըցեր էին․ բայց բնաւ մարդ մը Լուտերին ազնիւ ու գովելի համարձակութիւնը չունեցաւ, որ ասանկ աներկիւղ հրապարակէ զճշմարտութիւնը։ Բայց երբոր ես անոր Բաբելոնի Գերութիւն ըսուած գիրքը կարդացի, այնչափ ցաւեցայ որ իբր թէ գլխէս մինչև ոտքս ծեծ կե-րայ։ Ես չեմ կարծեր որ Մարտինոս եղբայրը շինած ըլ-լայ ան գիրքը, որ անոր ոճէն ու գիտութենէն շատ հեռու է"։ Բանի մը խօսակցութիւններ ընելէն ետքը, խոստո-վանահայրը վրայ բերաւ թէ՝ "Կայսրընտրին քովը տար զիս, և ես քու առջևդ՝ Լուտերին մոլորութիւնները մէկիկ մէկիկ հասկըցունեմ անոր"։ Ատենադպիրը պատասխան տուաւ, թէ կայսրընտիրը ժողովին գործքերովը զբաղած ըլլալով՝ պարապ ատեն չունի տեսնուելու․ ու նաև անիկայ աս գոր-ծին բնաւ չխառնուիր։ Կրօնաւորին սիրտը շատ նեղացաւ, երբոր իր յոյսը պարապը ելաւ։ "Ի վերայ այսր ամենայ-նի, ըսաւ ատենադպիրը, որովհետև դուն կըսես թէ աշ-խարհի մէջ բան մը չկայ որ դեղը չգտնուի, ըսէ նայինք միտքդ ի՞նչ է"։

Ան ատենը խոստովանահայրը գաղտնի խորհուրդ մը յայտնելու ձևով մօտեցաւ անոր ու ըսաւ․ "Կայսրը շատ կը փափաքի, որ Լուտերի պէս մարդու մը՝ եկեղեցւոյն հետը հաշտուիլը տեսնէ՝ վասն զի կայսրը անոր գիրքերը հաւնե-

ցա՝ Բաբելոնի Գերութեան վրայ գրած ճառը չհրատարակուած*.... : Անտարակոյս Լուտեր աս գիրքը շինած պիտի ըլլայ միայն պապին կոնդակին վրայ սիրտը նեղանալուն համար : Թող անիկայ յայտարարութիւն մը ընէ, թէ ինքը եկեղեցւոյն հանգստութիւնը բնաւ չուզեր պղտորել, ու ամէն ազգաց գիտնական մարդիկ իրեն հետ պիտի միանան.... Օգնէ ինծի որ կայսրընտրին հետը անգամ մը տեսնուիմ" :

Ատենադպիրը ելաւ Փրիդերիկոսին քովը գնաց. և որովհետև կայսրընտիրը աղէկ գիտէր որ Լուտեր ո՛և իցէ կերպով մը իր գրուածքը հերքելու չէր, ասանկ պատասխան տուաւ. "Խոստովանահայրը զրուցէ, որ ես անոր ինծի գալուն խնդիրքը չեմ կրնար ընդունել, բայց դուն խօսակցութիւնդ շարունակէ իրեն հետ" :

Ալաբիոն աս պատասխանը շատ սիրով ու յարգութեամբ ընդունեց. ու վիճաբանութեան ձեւը փոխելով ըսաւ. "Կայսրընտիրը քանի մը բանիբուն ու հաւատարիմ մարդիկ թո՛ղ ընտրէ, որ աս դատին վրայ քննութիւն ու խորհրդածութիւն ընեն" :

Ատենադպիր. "Կայսրընտիրը բնաւ չուզեր Լուտերին դատը ու իրաւունքը պաշտպանել" :

Խոստովանահայր. "Շատ աղէկ՝ դուն և ես աս բանին վրայ խօսինք : Քրիստոս վկայ է որ ես բոլոր աս բաները Եկեղեցւոյն ու Լուտերին սիրոյն համար կընեմ. վասն զի Լուտեր շատ մարդոց սիրտը ճշմարտութեան դարձուց" :

Ատենադպիրը չուզելով Բարեկարգողին գործը իր վրայ առնելու, ոտք ելաւ որ երթայ :

"Այնէ" ըսաւ կրօնաւորը :

Ատենադպիր. "Ի՞նչ կայ ընելու, ուրիշ զրուցելիք մը ունի՞ս" :

* Es haben dessen Bücher Ihro Majestat... um etwas gefallen... (Archives de Weimar. Seckend, p, 315.)

Խոստովանահայր. "Լուտեր թո՛ղ ուրանայ, թէ Գերու-թիւն Բաբելոնի ըսուած գիրքին հեղինակը ինքը չէ՛" ։

Արէնտորֆէր. "Բայց պապը կոնդակով բոլոր անոր մէ-կալ գրուածքներն ալ դատապարտեր է" ։

Խոստովանահայր. "Այս բանը Լուտերին կամակորութեանը համար եղաւ. թէ որ անիկայ իր գիրքը հերքէ, պապը իր կարողութեամբը դիւրաւ կրնայ անոր թողութիւն տալ. ու զանիկայ նորէն իր շնորհացը հասցընել ։ Մենք հիմա սաանկ գերազանց կայսր մը ունենալէն ետքը, ամէն աղէկ բաները կրնամք յուսալ" ։ Հոս տեղ ատենադպիրը ելաւ գնաց և խոստովանահայրը սկսաւ նոր որոգայթներ պատրաստել. քանզի Երասմոսի ըսածին պէս, Մէկ մարդ մը անոր հետ տասը տարի ալ նստեր ելլերնէ, անոր ինչ ըլլալը չէր կրնար հասկընալ ։

Քանի մը օրէն ետքը որ նորէն ատենադպրին հետ տեսնուեցաւ, և սաանկ ըսաւ. "Լուտերին Գիրքին պէս գերազանց գիրք մը չկայ, որ քրիստոնէից ազատութեան վրայ այնչափ գեղեցիկ խօսի ։ Այս մարդը ո՞րչափ իմաստութիւն, ո՞րչափ ձիրք, ու ո՞րչափ խելք ունի եղեր ։ Ճշմարիտ գիտուն մարդը ահա սաանկ կըգրէ. երկու կողմանէ ալ խոհեմ մարդիկ թո՛ղ ընտրուին, Լուտերին և պապին դատաստանը կտրեն ։ Անտարակոյս բան մընէ, որ խիստ շատ խնդիրներու մէջ Լուտերին իրաւունք պիտի տան* ։ Այս սա բանիս վրայ կայսեր հետը պիտի խօսիմ. ինծի հաւատա՛, ես սա բաները քեզի իմ գլխէս չեմ զրուցեր ։ Այս կայսեր ալ զրուցեցի, որ Աստուած զքեզ ու բոլոր իշխանները կըպատժէ, թէ որ եկեղեցին՝ որ Քրիստոսի հարսըն է, չըրբուի բոլորովին ան արատներէն որ զանիկայ կաղտոտեն ։ Նաև ըսի, թէ Աստուած կամօք Լուտերը հանեց, ու անոր հրամայեց որ մարդիկ սաստիկ յանդիմանէ.

* Es sey nicht zu zweifeln dass Lutherus in vielen Artickeln werde den Sieg davon tragen. . . ( Seck. p. 319.)

զանիկայ գաւազանի մը պէս գործածելով , որպէս զի աշխարհիս մեղքերը պատժէ" * :

Ատենադպիրը պատասխան տուաւ թէ՝ "Կայսրընտիրը Լուտերին միտքը ու դիտաւորութիւնը չգիտեր : Թող զանիկայ բերել տան ու զուրցընեն" :

Ասոր վրայ խոստովանահայրը խորունկ մը հառաչելով ըսաւ †. "Աստուած վկայ է որ ես մեծապէս կըփափաքիմ աչքովս տեսնելու Քրիստոնէական հաւատոյն բարեկարգութեան կատարումը" :

Գլափիոնին միմիայն դիտաւորութիւնը ան էր որ գործքը երկընցունէ, ու նոյն ատենը Լուտերին բերանը գոց պահէ, բայց ինչ որ ըլլայնէ Լուտեր Վորմս չգայ : Ընտրեալներէն մէկը ելլեր գար ու ան ժողովին մէջը երեւնար, նուիրակները, կրօնաւորները ու պապին բոլոր բանակը անկից այնչափ չէին վախնար, որչափ որ Վիրդէմպէրկի վարդապետին տեսութեններէն ու ներկայութեններէն կըվախնային :

Յետոյ խոստովանահայրը անտարբեր կերպով մը ատենադպրին կըհարցունէ, թէ մէկ մարդ մը Վիրդէմպէրկէն Վորմս քանի օրը կրնայ գալ : Ետքը կաղաչէ որ իր կողմանէ կայսրընտրին խոնարհական յարգութիւն մատուցանէ, և կելլէ կերթայ :

Ահա պալատականները այսպիսի վարպետութիւններ կըգործածէին : Բայց Պոնտանոս անոնց խաղերը աւրեց . աս արդար մարդը՝ իր ամէն գործառնութեանց մէջը անդրդուելի վէմի նման հաստատ կայնեցաւ , որ ատեն Հռովմէական կրօնաւորները՝ իրենց թշնամեացը համար պատրաստած որոգայթներուն մէջը իրենք կիյնային : "Քրիստոնեան , ինտոր որ Լուտեր գեղեցիկ կըսէ , որոգայ-

* Dass Gott diesen Mann gesandt... dass er eine Geissel seye um der Sünden willen. (Weymar. Archiv. — Seck. p. 320.)

† Glapio that hierauf einen tiefen Seufzer , und rufte Gott zum Zeugen. . . (Seckend, p. 321.)

թի մը քով կապուած Թռչունի կընմանի , որուն չորս կողմը աղուէսները ու գայլերը կըպտըտին , ու վրան կը յարձակին որ զանիկայ կըլլեն . բայց իրենք որոգայթը կիյնան , ու վախկոտ Թռչունը կազատի ու կապրի ։ Նոյնպէս ալ սուրբ հրեշտակները մեզ կըպահեն . ու մարդախանձ գայլերը , ու կեղծաւորները ու հալածողները չեն կրնար մեզի վնաս մը տալ"* ։ Այսպէս խոստովանահօր արուեստները ու ներողութիւնները ոչ միայն անօգուտ եղան , այլ նաև անոր խօսքերէն Փրիդերիկոսին միտքը լաւ մը համոզուեցաւ , որ Լուտեր իրաւունք ունի , և թէ իր պարտքն է զանիկայ պաշտպանելու ։

Օրըստօրէ մարդոց սիրտը աւելի կըհակէր աւետարանին ։ Դոմինիկեան մեծաւոր մը առաջարկեց որ կայսրը , և Գաղղիոյ , Սպանիոյ , Անգղիոյ , Փորթուկալի , Մաճառըստանի , Լեհաստանի Թագաւորները , պապը ու կայսրընտիրները իրենց կողմանէ մէկ մէկ մարդ դնեն , ու աս դատին քննութիւնը ու վճիռը անոնց յանձնեն , ըսելով . "Աս գործին դատաստանը ու վճիռը պապը մինակ ինքը չկրնար կտրել"† ։ Այսպէս կերևար թէ անկարելի պիտի ըլլար Լուտերը դատապարտել , առանց զանիկայ զրուցընելու և առանց զանիկայ փաստուք նուաճելու ։

Ալէանտէր աս բանին համար շատ անհանգիստ եղաւ , ու նորէն աւելի ուժով մը ոտք ելաւ ։ Քանզի կըտեսնէր որ չէ թէ միայն կայսրընտրին ու Լուտերին դէմ դնելու էր . մեծապէս տրտմեցաւ տեսնելով՝ խոստովանահօր ծածուկ գործառնութիւնը ատենադպրին հետ , Դոմինիկեան մեծաւորին առաջարկութիւնը , Կարոլոսին նախարարացը համահաճութիւնը աս բանին , և քահանայապետին բարեկամներուն Թուլցած պապականութիւնը . որոնց ամենուն վրայ այնպիսի փոփոխութիւն մը կար , որ Պալլավիչինիի խօսքին պէս "կարծես թէ , ամենուն վրայէն սա-

*L. Opp. (W.) XXII, 1855.

† Und niemals dem Papst allein geglaubt. (Seck. p. 323.)

ուցեալ ջուրի հեղեղ մը անցեր էր" *։ Ամառոյ Հռովմէն խեղ մը ոսկի և արծաթ ընդունելով, ու նաև տէրութեան խիստ մեծ ու երևելի մարդոց գրուած պօրաւոր թուղթեր ու հրամանագիրներ, և վախնալով որ չըլլայ թէ իրեն աւարը ձեռքէն փախցընէ ու բան տեսնելու բարեյաջող ժամը կորսնցընէ, շուտ մը ան հրամանագիրները տալու տեղերը տուաւ. ոսկին և արծաթը առատապէս անոնց ամէնուն բաշխեց, և ամէնուն ալ մեծամեծ խոստմունքներ ըրաւ. և "այսպիսի եռակերպ հնարքով և ճարտարութեամբ, կըսէ պատմիչ կարգինալը, ջանաց կայսրընտիրներուն երերեալ ու խախտած ժողովը նորէն պապին կողմը դարձունելու" †։ Բայց մանաւանդ կըջանար որ կայսրը որոգայթի մէջ ձգէ, անոր համար կայսեր չորս կողմը պաշարեց։ Նմանապէս բոլոր Հռովմայ բարեկամները իր ձայնէն արթըննալով, նորահասակ կայսեր կաղաչէին որ իրենց կողմը դառնայ։ "Ամէն օր Լուտերին դէմ խորհուրդներ կընեն, գրեց կայսրընտիրը իր Յովհաննէս եղբօրը. կուզեն որ Լուտերը օրէնքին պաշտպանութենէն դուրս ձգել տան կայսեր ու պապին ձեռքովը. ու ամէն կերպով կըջանան որ անոր վնաս մը տան։ Ան կարմիր գըլխարկներով հանդէս ընող Հռովմայեցիք՝ իրենց բոլոր աղանդովը մէկտեղ աս գործիս համար անխոնջ նախանձով ու ջանքով մը կաշխատին" ‡։

Յիրաւի Աղէանտէր Լուտերին դատապարտութիւնը կուզէր վաղվաղկոտութեամբ ու սաստիկ բռնութեամբ մը, որն որ Լուտեր "զարմանալի կատաղութիւն" կըկոչէ §։ Զառաքելական նուիրակը (վասն զի Լուտեր անոր ասանկ անուն կուտայ ||) իրեն անխոհեմութեամբը ու չափա-

* (Pal. 1. p. 96.)

† Triplici hac industria nunc Aleander... (Pallavicini. p. 95.)

‡ Seck. 364.

§ L. Epp. I. p. 556.

|| Nuntius apostaticus (ծաղրաբանութիւն apostolicus բառին տեղը)

զանց բարկութեամբը օր մը պոռալով գրուցեց . "Ո՛վ Գերմանացիք, թէ որ դուք Հռովմէական հնազանդութեան լուծը ձեր վրայէն վերցընել կուզէք, մենք անանկ ճամբայ մը կըբռնեմք, որ ամէնքդ ալ կըսկըսիք իրարու սուր քաշել ու իրար մեռցընել . ու այնպէս ամէնքդ ալ ձեր արեանը մէջ կըկորնչիք"* : "Տե՛ս թէ պապը Քրիստոսի ոչխարները ինչպէս կարածէ", կըսէ Լուտեր :

Բայց ո՛րչափ տարբեր էին հեղաբարոյ Լուտերին խօսքերը . անիկայ իր անձը ու օգուտը բնաւ չէր մտմտար . "Լուտեր պատրաստ է, կըսէր Մելանկտոն, աւետարանին փառքը ու յառաջադիմութիւնը իր մահուամբը գնելու" : Բայց սակայն կըդողար, երբոր միտքը կըբերէր ան աւերումը ու կոտորածը, որուն իր մահը կրնար պատճառ ըլլալ . մտածելով թէ ինչպէս տգէտ ժողովուրդները՝ կարելի է որ իր մարտիրոսութեանը համար իր թշնամիներէն մանաւանդ քահանաներէն վրէժ առնուն, ու անոնց արիւնը թափեն . վասնորոյ սաստիկ սոսկալի բանին պատասխանատուութիւնը իր վրայէն կըթօթուէր : "Աստուած դադրեցընէ, կըսէր, իր թշնամեացը կատաղութիւնը՝ . բայց թէ որ բորբոքի . . . ան ատենը բոլոր քահանաները՝ Բոհեմիան քանդող փոթորիկին պիտի հանդիպին . . . . : Ես անպարտ եմ . վասն զի ես աղերսագրով մը աղաչեցի, որ Գերմանացւոց ազնուական իշխանները՝ հանդարտեցընեն զՀռովմայեցիները՝ իմաստութեամբ և ո՛չ թէ սրով : Քահանաները վախկոտ ու անզօր ժողովուրդ մը ըլլալով՝ անոնց հետ պատերազմիլը, տղոց ու կանանց հետ կռուելու պէս բան մըն է" :

Կարոլոս Հինգերորդ՝ Ալէանտէրի թելադրութեանցը դէմ չդրաւ . վասն զի կրօնքի մէջ շատ նախանձաւոր ըլլալ սորվեր էր իր Ատրիանոս վարժապետէն, որ յետոյ քահա-

git summis viribus. (Ibid, p. 569.)
* L. Epp. I. p. 556.

նայապետական աթոռը նստաւ ։ Բայց հարկաւոր էր նախ և առաջ ժողովին սիրտը շահիլ, և աս պատճառաւ նուի-րակին ըսաւ Կարոլոս. "Այն նայէ որ աս ժողովին միտ-քը փաստերով համոզես" ։ Աղէքսանտէրին ալ ուզած բանը ասիկայ էր. և խօսք տրուեցաւ իրեն որ փետրուարի 13ին ժողովին մէջը ընդունին զինքը ։

## ՀԱՏՈՒԱԾ Գ

ՊԱԳԻՆ նուիրակը աս հանդիսաւոր ու ատենական խօ-սակցութեանս ինքզինքը աղէկ մը պատրաստեց ։ Գործո-ղութիւնը երևելի էր, բայց Աղէքսանտէր ալ անոր բաւա-կան կարողութիւն ունէր ։ Վասն զի ծայրագոյն քահա-նայապետին դեսպանութեամբը ու իր պաշտօնին մեծվա-յելչութեամբը զարդարուած ըլլալէն զատ, ան դարուն մէջը գտնուող խիստ երևելի ատենաբաններուն մէկը կը սեպուէր ։ Բարեկարգութեան բարեկամները աս խօսա-կցութենէն խիստ շատ կըվախնային ։ Կայսրընտիրը՝ անձ-նական տկարութիւն մը պատճառելով, չուզեց ժողո-վին ներկայանալ. բայց իր քանի մը խորհրդականացը պա-տուէր տուաւ որ ժողովը երթան ու պապին նուիրակին խօսքերը աղէկ մը միտքերնին պահեն ։

Սահմանեալ օրը Աղէքսանտէր ժողովը երթալով. մարդոց սիրտերը կըտագնապէին. շատերը զԱննան կամ զԿայի-ափան միտքերնին կըբերէին, երբոր դատաստանարանը գացին մահ խնդրելու ան մարդուն համար, որ ազգը կըթիւ-րէր ։ Ղուկ. իգ. 2 ։ Նուիրակը երբոր դռնէն ներս պիտի մըտ-նէր, ժողովին դռնապանը՝ կըսէ Պալլավիչինի, եռան-դով մը մօտեցաւ անոր, ու ձեռքերովը անոր կուրծքին

զարկաւ դուրս վռնտեց"* ։ "Քանզի անիկայ հոգւով Լու-տերական էր" կըսէ Հռովմայեցի պատմիչը ։ Աս բանը թէ որ ճշմարիտ է, կերեւայ որ ան մարդը անսովոր կիրքի մը տէր եղեր ․ բայց միանգամայն աս ալ կըհասկըցուի որ Լուտերի խօսքը խիստ մեծ կարողութիւն ու իշխանութիւն ունի եղեր, որ մինչեւ Տէրութեան խորհրդարանին դըռ-նապանացը վրայ ասանկ ազդեցութիւն ըրեր էր ։ Գոռոզա-միտ Ալէքսանտէր իր արժանապատուութիւնը վար չձգե-լով, առաջ գնաց ու սրահը մտաւ ։ Հռովմ՝ տակաւին այսչափ մեծ ու օգոստափառ ժողովի մը առջեւ իր ջատա-գովութիւնը ընելու կանչուած չէր ։ Պապին նուիրակը՝ իր առջեւը շարեց Լուտերին գիրքերը ու պապերուն կոնդակ-ները՝ որոնք իրեն հարկաւոր եղած նիւթերն էին, ու երբոր ժողովը լռեց՝ ասանկ ըսաւ ․

"Ո՜վ վեհափառ կայսր, մեծազօր իշխանաւորք եւ դե-րապատիւ դեսպանք ․ ես հիմա ձեր առջեւը պիտի պաշտ-պանեմ մէկ դատ մը, որուն համար սիրտս մեծափափաք սիրով մը կը տոչորի ։ Աս բանիս գլխաւոր նպատակը ան է որ իմ Տիրոջս գլխուն վրայ հաստատ մնայ ան թագը, որն որ ամէնը կը պատուեն ․ ու նաեւ հաստատ պահուի ան պապական աթոռը՝ որուն համար ես պատրաստ եմ իմ մարմինս կրակի մէջ այրելու, միայն թէ՝ աս նորաբոյս հե-րետիկոսութիւնը ծնանող հրէշը՝ որուն հետ ես հիմա կը մաքառիմ, կարենայ նոյն կրակին մէջը այրիլ ու սպառիլ, ու անոր մոխիրը իմինիս հետ խառնուիլ † ։

"Բայց ո՛չ ․ Լուտերի ու Հռովմայ մէջ եղած վէճը մի-այն պապին իրաւանցը վրայով չէ՝ ։ Ասանկ Լուտերի գիրքերը առջեւս են ․ բաւական է թէ մէկ մարդ մը իր գըլ-

* Pallavicini, I. p. 112.

† Dummodo mecum una monstrum nascentis hæresis arderet. (Pallavicini, I. p. 97.) Սեքենտորֆ ու անկէ ետքը շատ Բրոթէսդանդ պատմիչներ կըսեն թէ Ալէքսանտէրին զրուցած ատենախօսութիւնը՝ Պալլա-վիչինին իր քովէն շիներ է, ու Ալէքսանտէրին բերանը դրեր է ։ Յիրաւի Պալա-

խուն վրայ աչք ունենայ, խկոյն կըհասկընայ թէ անոր միտքը՝ եկեղեցւոյ սուրբ վարդապետութեանցը դէմ դընել է։ Մանզի կըսորվեցընէ՝ թէ միայն անոնք արժանապէս կըհաղորդին, որոնք որ իրենց խղճմտանքին մէջ աւելի տրտմութիւն ու շփոթութիւն մը կըզգան իրենց մեղացը համար։ Նաւ թէ՝ Սկրտութիւնը չարդարացըներ զմարդ, թէ որ խոստման բանին հաւատ չընծայուի, որուն գրաւն է մկրտութիւնը։ Նոյնկայ չընդունիր մեր բարեգործութեանց հարկաւորութիւնը՝ երկնային փառքը ստանալու համար։ Կըսէ՝ թէ մենք ազատութիւն ու կարողութիւն չունիմք բնական ու աստուածային օրէնքը պահելու։ Կըհաստատէ՝ թէ մենք ամէն մեր գործողութեանցը մէջ՝ հարկաւ կըմեղանչեմք։ Պաժոխքին զինարանէն աւկից աւելի վնասակար նետեր դուրս ելե՞ր են արդեօք՝ համեստութեան սանձը կոտրելու համար։ . . Կըքարոզէ՝ թէ կրօնական ուխտերը կընան լուծուիլ։ Նոկից աւելի սրբապիղծ անօրէնութիւն մը կրնա՞յ արդեօք գտնուիլ։ . . . Ո՞րպիսի մեծ անկարգութիւններ ու աւերմունքներ կըպատճառին աշխարհիս մէջ, երբոր ան ընտիր մարդիկը՝ որ ժողովրդեան բարի օրինակ պիտի տային, մէկ դի նետեն իրենց սրբանուէր զգեստները, ու երեսի վրայ թողուն ան տաճարները՝ որ իրենց սուրբ օրհնութիւններովը կըհնչեցընէին, ու ընկղմին շնութեան, կուսապղծութեան ու անառակութեան մէջ։ . . .

"Ես յանդուգն միաբանին ո՞ր մէկ յանցանքը աս տեղս յիշատակեմ։ Նոյնկայ կըմեղանչէ ընդդէմ՝ Նոյեցեալոց, քանզի քաւարանը չընդունիր։ Կըմեղանչէ ընդդէմ երկնից, քանզի կըսէ որ պիտի չհաւատայ մինչև անգամ երկնային հրեշտակի մը։ Կըմեղանչէ ընդդէմ եկեղեցւոյ,

մէջ Կարդինալը կըհասկըցընէ, թէ աս ճառը ինքը չէ՞ակեր ու 'ի կարգի դրեր է, բայց կըցուցընէ տեղը, ուսկից որ ինքը առեր է. մատենագրապետ Նղէանտէրին ան նամակները, որ Վատիկանու դիւանին մէջ պահուած են։ (Acta Wormatiæ. fol. 68 et 99) Նաւտի աոնկայ բողոքովին մերժելը կողմնականութիւն կըլլար։

վասն զի կըպնդէ թէ ամէն քրիստոնեաները քահանայ են ։ Կըմեղանչէ ընդդէմ սրբոց , վասն զի անոնց յարգելի գրուածքը կանարգէ ։ Կըմեղանչէ ընդդէմ ժողովոց , վասն զի Կոստանդիայի ժողովը՝ Սատանաներու ժողովք կըկոչէ ։ Կըմեղանչէ ընդդէմ աշխարհի , վասն զի չուզեր որ մահացու մեղք մը չգործօղ մարդը մահուամբ պատժուի ։ Ոմանք կըսեն թէ անիկայ բարեպաշտ մարդ մըն է . . . . , ես չեմ ուզեր անոր վարքը քննել * ։ Ես միայն կուզեմ աս ժողովին հասկըցընել , թէ սատանան ճշմարտութեան կերպարանքով կըջանայ ժողովուրդները խաբել" ։

Ալէանտէր՝ Փլորենտիոյ ժողովին մէջ դատապարտուած քաւարանին վրայ խօսելէն ետքը՝ կայսեր ոտքը դրաւ պապին գրած կոնդակը աս ժողովին վրայօք ։ Մայնցի արքեպիսկոպոսը զանիկայ վերցուց , Կողոնիոյ ու Թրեվէզի արքեպիսկոպոսներուն տուաւ . անոնք ալ զանիկայ ծանրութեամբ մը ընդունելով , մէկալ իշխանաւորներուն տուին ։ Նուիրակը Լուտերին վրայ ասանկ ամբաստանութիւններ ընելէն ետքը , սկսաւ իր ատենախօսութեանը երկրորդ մասը , որով պիտի արդարացընէր զՀռովմ ։ "Լուտեր կըսէ թէ՝ Հռովմայ մէջ մէկ բան մը բերնով կըխոստացուի , բայց ձեռքով անոր ներհակը կըլլայ ։ Թէ որ աս բանը ստոյգ է , պէտք է որ մենք ասկից ներհական եզրակացութիւն մը հանեմք ։ Քանզի թէ որ մէկ հաւատքի մը պաշտօնեաները՝ ան հաւատքին պատուիրանացը համեմատ ապրելու ու վարուելու ըլլան , ասիկայ նշան մըն է , որ ան հաւատքը սուտ ու չինծու բան մըն է ։ Ասանկ էր հին Հռովմայեցւոց հաւատքը . . . ասանկ է նաև նոյն ինքն Լուտերի

* Ալէանտէրին աս խօսքը արդարև մեծ վկայութիւն մըն է Լուտերի բարեպաշտ մարդ մը ըլլալուն . ինչու որ եթէ այսպէս չըլլար՝ անշուշտ Ալէանտէրի պէս օխերիմ թշնամին պիտի չլռէր , այլ բոլոր ուժը պիտի թափէր հրապարակաւ պախարակելու Լուտերի վարքը ։ (Ծանօթութիւն Թարգմանչին։)

հաւատքը: Բայց Հռովմայ քահանայապետներուն մեզի սորվեցուցած հաւատքը ասանկ չէ՛ ։ Այո՛. անոնց սորվեցուցած վարդապետութիւնը՝ զիրենք բոլորովին կըդատապարտէ, պակսութիւններ ունենալնուն համար. շատերը՝ յանցաւոր, և ոմանք ալ (ես շիտակը կըզըրուցեմ*) շատ մեծ մեղքերու տէր ըլլալնուն համար†։ Ըս վարդապետութիւնը՝ անոնց գործքերը կըպարսաւէ անոնց կենդանութեան ատենը. մեռնելէն ետքն ալ պատմութեանց ու ժամանակագրութեանց մէջ՝ զանոնք վատահամբաւ կընէ‡։ Հիմա ես կըհարցընեմ, թէ քահանայապետները աս հաւատքը հնարելով՝ ի՞նչ հաճոյք և ի՞նչ անձնական օգուտ կրցան ունենալ։

"Պիտի ըսեն թէ, Եկեղեցին առաջին դարուց մէջ Հռովմէական քահանայապետաց ձեռքով չէր կառավարուեր: Ասկից ի՞նչ կըհետևի։ Այսպիսի նախադասութիւններով գուցէ պիտի համոզեն զմարդիկ, որպէս զի վարսակով սնանին, և իշխանուհիներն ալ՝ իրենց ճերմկեղէն լաթերը իրենք լուան" §։

Բայց նուիրակին առեղնախօսութեանը գլխաւոր նպատակը՝ Բարեկարգողէն դպչիլ ու զանիկայ նուաճել էր: Լուտերը զըրուցանել պէտք է ըսող մարդոց դէմ շատ բարկանալով՝ բարձր ձայնով աղաղակեց ու ըսաւ. "Լուտեր բնաւ խօսք մտիկ չըներ, ու իր գիտցածէն ետ չկենար։ Պապը արդէն զանիկայ Հռովմ կանչեց, բայց ան

*Ըլէանտէր աս տեղս յայտնի կըխոստովանի թէ ոմանք պապերէն շատ չար մարդիկ էին. նմանապէս հետևեալ խօսքերովն ալ ակամայ կըխոստովանէ թէ առջի դարերուն մէջ եկեղեցին պապ չունէր։ (Ծան. Թարգ.)

†Multos ut quadantenus reos, nonnullos (dicam ingenue) ut scelestos. (Cardinal Pallavicini. I. p. 101.)

‡Linguarum vituperationi dum vivunt, historiarum infamiæ post mortem. (Cardinal Pallavicini. I. p. 101.)

§Նուիրակը հոս տեղ ըսել կուզէ թէ հին ատենի մարդիկը՝ ոմանց ըսածին պէս միայն պտուղներով կապրէին. ուստի մենք ալ ասա՞նկ ընենք. և ինչպէս որ Հոմերոս կըսէ, իշխանուհիները իրենց լաթերը կըլուային, ուստի հիմա ալ պէտք է անա՞նկ ընեն. նմանապէս քրիստոնէութեան առաջին դարերուն քրիստոնեայք պապ չունէին, ուստի հիմայ ալ պէ՞տք է որ պապ չունենանք։ (Ծանօթ. Թարգ.)

չգնաց ։ Ան ատենը պապը զանիկայ Աւկզպուրկ կանչեց , որպէս զի ան տեղը իր դեսպանին հետ խօսակցի ։ Լուտեր հոն ալ չգնաց , մինչև որ կայսրէն ազատագիր չառաւ , ա՝ դեսպանին թևերը կապել տուաւ , ու միայն լեզուն ազատ ու արձակ թողուց*" ․ ․ ․ ։ Ա՜հ , (ըսաւ Ալէանտէր դէպի Կարոլոս դարձունելով իր երեսը) քու կայսերական Վեհափառութեանդ կաղաչեմ , որ չընես այնպիսի գործ մը , որ ետքը քեզի նախատինք բերէ ․ ու չխառնուիս այնպիսի գործի մը մէջ , որն որ աշխարհականներուն տեսնելու բանը չէ ։ Դուն քու պարտաւորութիւնդ կատարէ ․ հրամայէ՝ որ Լուտերի վարդապետութիւնը արգելուի ու խափանուի քու տէրութեանդ մէջը ․ ու ամէն տեղ անոր գրուածները այրեն ։ Դուն բնաւ մի՛ վախնար ․ վասն զի Լուտերի մոլորութեանցը մէջ անանկ բաներ կան , որ անոնց համար հարիւր հազար հերետիկոսներ այրել տալու է† ․ ․ ․ ։ Ու մենք ուսկի՞ց պիտի վախնամք ․ ․ ․ Արդեօք ատ ռամիկ ու անարգ ժողովուրդէ՞ն ․ ․ ․ ։ Անիկայ պատերազմէն առաջ՝ իր տմարդութեամբը ահարկու կերևնայ , բայց պատերազմի մէջ՝ իր երկչոտութեամբը ու թուլութեամբը՝ ցած ու անարգ բան մը պիտի գտնուի ։ Արդեօք օտար թագաւորներէ՞ն ․ ․ ․ բայց Գաղղիոյ թագաւորը արգիլեց որ Լուտերի վարդապետութիւնը իր տէրութեանը մէջ չմտնէ ։ Անգղիոյ թագաւորն ալ իր թագաւորական ձեռքովը՝ անոր հարուած մը կըպատրաստէ ։ Մաճառաց , Իտալացւոց ու Սպանիացւոց ինչ մտքի վրայ ըլլալնին դուն աղէկ գիտես ․ ու քու դրացիներուդ մէջը չկայ անանկ ոխերիմ ու անհաշտ թշնամի մը , որ քեզի աս հերետիկոսութեանը պէս մեծ վնաս կամենայ ։ Ման

*Quod idem erat, ac revinctis legati brachiis , et lingua solum soluta . (Card. Pall. p. 109.)

†Dass 100.000 Ketzer ihrenthalben verbrannt werden. (Seckend, p. 332.)

զի թէ որ մեր թշնամւոյն տունը մեր տանը մօտ է , մենք կրնամք անոր ջերմախտութիւն մը ուղել , այլ ո՛չ թէ ժանտախտ . . . . : Ա՛ս լուտերականները ի՛նչ մարդիկ են գիտե՞ս . դաս մը ծիրք իմաստակներու , անհնազանդ կարգաւորներու , անկանոն կրօնաւորներու , տգէտ փաստաբաններու , պատուազուրկ աղնուականներու ու մոլորեալ և չարաշնար հասարակ մարդիկներու : Ուղղափառներուն կողմը ո՛րչափ աւելի բազմութիւ , յաջողակ ու զօրաւոր է : Ա՛ս Մեծափառ ժողովիս միաբանական վճիռը՝ միամիտները պիտի լուսաւորէ , անխոհեմ մարդիկը պիտի խրատէ , տարակուսանաց մէջ եղողները պիտի հաստատէ ու տկարները պիտի զօրացընէ . . . . Բայց թէ որ տապարը՝ աս թունաւոր ծառին արմատը չդրուի , ու հարուած մահու անոր չտրուի , ան ատենը աս ծառը իրեն ոստերովը՝ Յիսուս Քրիստոսի ժառանգութիւնը կը ծածկէ , Տէրոջը այգին սոսկալի անտառի մը կըդարձունէ . Աստուծոյ արքայութիւնը՝ վայրենի գազանաց բնակարանին կըփոխարկէ , և Գերմանիա 'ի վիճակ բարբասութեան և ամայութեան կըշրջէ":

Պապին նուիրակը իրեք ժամու չափ անդադար խօսելէն ետքը՝ լռեց . իր համոզիչ պերճախօսութեամբը ժողովին սիրտը շարժեր էր : "Իշխանները սոսկալով ու դողալով իրարու երես կընայէին , կըսէ Քոքլէոս . ու իսկոյն այլ և այլ կողմերէն գանգատներ լսուեցան Լուտերին ու անոր հետեւողացը դէմ *:" Թէ որ զօրաւոր Լուտերը հոն ներկայ գտնուէր , որ աս ատենախօսութեանը պատասխան տայ . թէ որ անիկայ ձեռք առնէր Հռովմայեցի ատենաբանին անկեղծ խօսքերը՝ (որ առջի տէրը վատահամբաւ Բորգիան† միտք բերելով՝ անոր հօրը և ուրիշ պապերուն

*Vehementer exterriti atque commoti, alter alterum intuebantur atque in Lutherum ejusque fautores murmurare cœperunt, (Cochlœus, p. 28.)

† Տես երես 55 :

վրայօք ըսած էր ,) և յայտնի ցուցընէր որ Հռովմը պաշտպանելու համար բերած փաստերը՝ զանիկայ կըդատապարտէին . թէ որ երևան հանէր թէ իր քարոզած վարդապետութիւնը՝ որով Հռովմայ անիրաւութիւնը կըհաստատէր , ինքը իր գլխէն չէր հնարած , ինչպէս որ ատենաբանը կըսէր , այլ նոյն ինքն Քրիստոսի սորվըցուցած հաւատքն էր , որն որ Բարեկարգութիւնը իր առաջին պայծառութեանը մէջ նորէն պիտի հաստատէր . Թէ որ պապութեան բովանդակ մոլորութիւնները ու չարաչար սովորութիւնները որոշակի ու մի ըստ միոջէ բացատրելու ըլլար , և ցուցընէր թէ՝ պապութիւնը ի՛նչպէս Քրիստոնէական կրօնքը կըգործածէ իբրև միջոց բարձրութեան և յափշտակութեան , ան ատենը նուիրակին ատենախօսութեանը ըրած ներգործութիւնը իսկոյն կըոչնչանար : Բայց բնաւ մարդ մը ոտքի վրայ չելաւ , ու բան մը խօսող չեղաւ : Ժողովը աս ճառիս ազդեցութեանը տակը մնաց . ու շփոթուած և համոզուած ըլլալուն համար , զինքը պատրաստ ցուցուց՝ տէրութեան հողէն Լուտերին հերետիկոսութիւնը՝ բռնութեամբ արմատաքի խլելու * :

'Ի վերոյ այսր ամենայնի աս յաղթութիւնը առ աչօք բան մըն էր : Աստուծոյ կամքն ան էր որ Հռովմ առիթ մը ունենայ իր փաստերը ու զօրութիւնը ծանուցանելու . վասնորոյ իր գերազանց ատենաբաններուն պինտ մեծը , թագաւորաց ու իշխանաց առջևը խօսեցաւ . ու Հռովմայ զրուցելու խօսքերը ամէնն ալ զրուցեց : Բայց պապականութեան ճիշդ աս վերջին ջանքն էր՝ որ ունկնդիրներուն մեծ մասին յայտ յանդիման պիտի ցուցընէր իր յաղթուած ըլլալը : Թէ որ ճշմարտութիւնը բարձրաձայն խոստովանուի , անշուշտ ճշմարտութիւնը յաղթական կըհանդիսանայ : Նմանապէս թէ որ մոլո-

*Lutheranam hæresim esse funditus evellendam. (Pallavicini, I, p. 101. Vie de Leon X par Roscoe, IV, p. 30.)

րութիւնը առանց ծածկելու հրապարակաւ, անտարա-կոյս մոլորութիւնը կըկորսուի: Երկուքն ալ ծածուկ պահելու չէ՛, որպէս զի իրենց ընթացքը կատարեն: Ա-մէն բան լուսէն յանդիմանուած յայտնի կըլլայ: Եփես. Ե. 13:

## ՀԱՏՈՒԱԾ Դ

Եւ յիրաւի քանի մը օրուան մէջ՝ աս առաջին ազդե-ցութիւնները բոլորովին ցրուեցան. ինչպէս որ աս բանը միշտ կըպատահի, երբոր մէկ առենաբան մը իր դատարկ ու տկար փաստերը քաջահնչիւն ձայնով ու գեղեցիկ բա-ռերով կըծածկէ: Իշխաններուն մեծ մասը պատրաստ էր Լուտերը զոհելու, բայց մարդ մը չէր ուզեր որ ան-րութեան իրաւունքը ու օրէնքը ու Գերմանական ազ-գին բողոքները ու քաշած վնասները զանց ընեն: Աստոյգ է որ աս յանդուգն միաբանը իր համարձակախօս քարոզութեանը համար ձեռք առալ կուզէին ան իշխաննե-րը, բայց միանգամայն կըյուսային որ պիտի կարենան ի-մացընել պապին, թէ Բարեկարգութիւնը հարկաւոր բան մըն է, ու խրատացի է. վասն զի բովանդակ ազգին մեծերը զանիկայ պատշաճ կըտեսնէին ու անոր կըփափաքէին: Օրինակի համար՝ Լուտերի խիստ մեծ ու անհաշտ թշնա-մին Սաքսոնիայի Գէորգ Դուքսն էր, որ Հռովմայ անօրէ-նութեանց ու յափշտակութեանց դէմ խիստ շատ և ու-ժով խօսքեր կըզրուցէր: Ասիկայ՝ Պոհեմիայի Բոտի-պրատոս* թագաւորին թոռը՝ թէպէտև Լուտերին քա-րոզած շնորհաց վարդապետութենէն կըզզուէր, բայց կը յուսար որ մէկ բարոյական ու եկեղեցական բարեկարգ

*Տես երես 77, 78 և 315:

ուղղութիւն մը պիտի տեսնէ ։ Սիրտը միայն ասոր կը նեղանար որ Վիրդէմպէրկի միաբանը եկաւ խափանեց բոլոր գործը իր պախարակելի վարդապետութիւններովը ։ Բայց հիմա երբոր տեսաւ՝ որ պապին Նուիրակը թէ Լուտերը և թէ եկեղեցւոյ Բարեկարգութիւնը մի և նոյն կերպով կը դատապարտէ , մէկէն 'ի մէկ իշխանաց ու թագաւորաց ժողովին մէջը ոտքի վրայ ելաւ . և ամէնն ալ զարմացան , վասն զի Լուտերին մեծ թշնամի ըլլալը աղէկ գիտէին ։ "Ոչ ժողովս , ըսաւ , պէտք չէ որ մոռնայ Հռովմէն իր քաշած վնասները ։ Որչափ անկարգութիւններ մեր տէրութեան սահմաններուն մէջ սահեր մտեր են ։ Տարեկան տուրքերը , որն որ Կայսրը ազատաբար շնորհեց եկեղեցւոյ օգտին համար , հիմա իբրև պարտք կը պահանջուին ։ Հռովմայ պալատականները օրէ օր նոր կանոններ ու հրամաններ կը հնարեն եկեղեցական ժառանգութիւնները ձեռք ձգելու և ուրիշներուն ծախելու համար . խիստ շատ պատուիրանազանցութիւններ ու մեղքեր թոյլ տրուած են . հարուստ օրինազանցներուն անարժանութեամբ թողութիւն կը տրուի , բայց աղքատ ու չքաւոր մեղաւորները անգթութեամբ կը պատժուին ։ Պապերը՝ ուրիշին վերաբերեալ իրաւունքը ու աւանդը՝ անդադար իրենց պալատի մարդոցը կու տան ։ Աբբայութեանց ու Հռովմայ վանքերուն վերակացութիւնները՝ կարդինալաց , եպիսկոպոսաց ու առաջնորդաց ձեռքը յանձնուած ըլլալուն համար , եկամուտները անոնք իրենց կը սեպհականեն , այնպէս որ՝ վանքերուն մէջ կրօնաւոր մը չգտնուիր . ուր ընդհակառակն ամէն մէկուն մէջը քսան կամ երեսուն հոգի գտնուելու էր ։ Նոյն ատեն ամէն փողոցներուն ու հրապարակներուն մէջ ներողութեանց խանութներ հաստատուած են . օր՝ Սուրբ Անտոնի խանութներ , Հոգւոյն սրբոյ , Սուրբ Հուպերթին , Սուրբ Կոռնելիոսին , Սուրբ Վիճենդիոսին խանութները , ևն ։ Ար-

դիկ ընկերութիւններ կըկազմեն , և Հռովմէն ասանկ վաճառանոցներ հաստատելու իրաւունքը ծախու առնելէն ետքը , իրենց եպիսկոպոսէն ալ վաճառքը քշելուն իրաւունքը կըգնեն . ու իրենց տուած ստակները ձեռք բերելու և միանգամայն շահելու համար՝ բռնադատութեամբ աղքատաց քսակը կըպարպեն ։ Ներողութիւնը՝ որ միայն հոգւոց փրկութեան համար պիտի տրուի , ու մարդս անոր արժանի պիտի ըլլայ միայն աղօթքով , պահքով ու ողորմութեան գործքերով , հիմա ստակով կըծախուի ։ Եպիսկոպոսաց փոխանորդ գործակալները՝ հասարակ ու պզտիկ մարդիկը ծանր ապաշխարանքներով կըտանջեն՝ շնութիւն , հայհոյութիւն ու անառակութիւններ ընելնուն ու տօնի օրերը աւրելնուն համար . բայց նոյն մեղքերը գործող եկեղեցականաց և ո՛չ իսկ յանդիմանութիւն մը կընեն ։ Ապաշխարողին պատիժներ կուտան . բայց այնպիսի կերպով մը , որ շուտով նորէն նոյն մեղաց մէջը իյնայ ու աւելի ստակ վճարէ ։ Ահա ասոնք են անկարգութիւններուն մէկ քանին , որով Հռովմ կըպախարակուի ու կըբամբասուի ։ Եկեղեցականները ամօթը մէկ դի դրեր են . ու միայն մէկ բանի մը համար կաշխատին , ա̃ արծաթի համար , և դարձեալ՝ արծաթի համար ։ Այնչափ՝ մինչև նաև քարոզիչները , որ պարտին ճշմարտութիւնը քարոզել , միայն ստութիւնը դուրս կուտան . և Հռովմ՝ ոչ միայն անոնց սուտ խօսքերուն թոյլտուութիւն կընէ , այլ նաև զանոնք կըվարձատրէ . վասն զի անոնք որչափ որ աւելի սուտ զրուցեն , ինքը այնչափ աւելի ստակ կըվաստըկի ։ Ահա այսպիսի տղմալից ջրհորներէն է որ ան այնչափ ապականած ջուրերը առաջ կուգան ։ Անառակութիւնը՝ ագահութեան հետ կըմիաբանի ։ Փոխանորդ գործակալները՝ զանազան պատճառներով իրենց տունը կնիկներ բերել կուտան , ու կըջանան որ զանոնք խաբեն , երբեմն սպառնալիքներով և երբեմն

պարգևներով . և երբոր չէին կրնար խաբել , ան տանը անոնց անունը ու համարումը կուրին ։ Ահա կարգաւորները տասնկ գայթակղութիւններ կուտան . ու անթիւ խեղճ հոգիներ կըձգեն յաւիտենական դատապարտութեան մէջ ։ Մէկ ընդհանրական բարեկարգութիւն մը խիստ պէտք է . և աս բարեկարգութիւնը կատարելու համար , ընդհանուր ժողով մը ընելու է ։ Ասանորոյ ո՛վ գերապատիւ իշխանաւորք և Տեարք , խոնարհութեամբ ձեզի կաղաչեմ , որ աս բանիս ամենայն խնամով հոգ տանիք" ։ Գէորգ դուքսը իր յիշած վնասներուն ու անկարգութիւններուն ցանկը ժողովին տուաւ ։ Աս բանը Աքէանտէրլին ատենախօսութենէն քանի մը օր ետքը եղաւ . ու աս երևելի գրուածը՝ Սաքսոնի դիւանին մէջ պահուած է ։

Ամենևին Լուտեր ալ՝ ասկից աւելի ուժով չէր խօսեր Հռովմայ անկարգ սովորութեանցը դէմ . բայց անիկայ ասով գերազանցեց զԴուքսը՝ որ ոչ միայն հիւանդութիւնը ցուցուց , այլ հիւանդութեան պատճառը և միանգամայն դեղը իմացուց ։ Լուտեր հասկըցուց՝ թէ մեղաւոր մը ճշմարիտ ներողութիւնը Աստուծմէ կընդունի , միայն Յիսուս Քրիստոսի շնորհացը ու արդեանցը հաւատալով . և աս պարզ բայց զօրաւոր վարդապետութիւնը՝ բովանդակ կարգաւորներուն հաստատած վաճառանոցները տակն ու վրայ ըրաւ ։ Ինքը օր մը կըսէր* թէ՝ "Մարդս ինչո՞վ բարեպաշտ կըլլամ ։ Փրանչիսկեան կրօնաւոր մը պիտի պատասխանէ . Գլուխդ մոխրագոյն վեղար մը անցուր , ու մէջքդ ալ չուան մը փաթտէ ։ Ուրիշ Հռովմայեցիներն ալ պիտի ըսեն . Պատարագ տե՛ս , ու պաք բռնէ ։ Բայց ճշմարիտ քրիստոնեան պիտի ըսէ . Միայն Քրիստոսի հաւատքը կարդարացընէ ու կըփրկէ ։ Մենք գործէն առաջ պէտք է որ հոգևոր

*L. opp. (W.) XXII, 748, 752.

կեանքը ստանամք. քանզի երբոր մենք Բանին շնորհաց նորէն կը ծնանիմք ու որդիք Աստուծոյ կըլլամք, ան ատենը կրնամք բարի գործքեր ընել"*։

Դուքը իբրև աշխարհական իշխան մը կըխօսէր, բայց Լութեր իբրև ճշմարիտ Բարեկարգող մը։ Եկեղեցւոյն մեծ գէշութիւնը կամ հիւանդութիւնը ան էր որ իր ոյժը բոլորովին արտաքին երևոյթներու տուեր էր. ու բովանդակ իր գործը ու շնորհքները արտաքին ու նիւթական բաներու փոխարկեր էր։ Աս մոլար ընթացքին վերջին ծայրը ներողութիւններ վաճառելն էր. ու թողութիւնը՝ որ քրիստոնէութեան առաւել հոգևոր մասը կըսեպուի, ուտելիքի ու խմելիքի պէս խանութներու մէջ կը վաճառուէր։ Լութերի մեծ գործը ան եղաւ որ խանգարուած քրիստոնէութեան աս վերջին ծայրը ձեռք առաւ, որպէս զի զմարդիկ և զեկեղեցին նորէն իրենց առաջին կենդանարար աղբիւրը դարձընէ, և Հոգւոյն Սրբոյ թագաւորութիւնը՝ սրտերուն մէջը վերստին հաստատէ։ Եւ ինչպէս որ շատ հեղ կըպատահի, նոյն ինքն հիւանդութիւնը իր դեղը պատճառեց. ու երկու ներհական ծայրերը իրարու հետ միացան։ Ան ատենէն սկսաւ նորէն ներքուստ ծաղկիլ՝ հաւատով, յուսով, և սիրով, ան Եկեղեցին՝ որ այնչափ դարերէն 'ի վեր արտաքուստ կը ծաղկէր, մարդկային ծէսերով, աւանդութիւններով և արարողութիւններով։

Դուքսին՝ Լութերի դէմ ունեցած թշնամութիւնը ու ատելութիւնը՝ որչափ որ ամենուն յայտնի էր նէ, այնչափ ալ իր խօսքը ունկնդիրներուն սրտին մէջ աւելի

*Աս տեղս յայտնի կիմացուի թէ ինչ էր Լութերի վարդապետութիւնը բարեգործութեան վրայ. որ չէ թէ ինքը բարեգործութիւնը կըմերժէր, այլ ան գործերը միայն կուզէր խափանել՝ որ հաւատքով չեն, ու նորոգուած սրտէ մը յառաջ չեն գար, և որոնք որ մարդիկ կընեն ան մտօքը թէ անոնցմով ծախու պիտի առնեն յաւիտենական կեանքը. քանզի մարդիկ՝ բոլոր աս գործերը կընեն հոգևոր կեանք չստացած, ասոր համար մեռած և ոչինչ գործեր են։ (Ծանօթ. Թարգ.)

ներգործութիւն ըրաւ ։ Ժողովքին մէկալ անդամներն ալ իրենց զանազան վնասուցը համար սկսան ամբաստանութիւններ ընել Հռովմայ դէմ ։ Նոյն իսկ եկեղեցական իշխանաւորները աս գանգատներուն իրաւունք տուին*։ «Մենք անանկ մէկ քահանայապետ մը ունիմք, որ միայն որսորդութիւնը ու զբօսանքը կսիրէ», կըսէին ։ «Գերմանական ազգին եկեղեցական վիճակները և պաշտօնները Հռովմայ մէջ՝ ամբաձիգ զօրքերու, բազէպաններու, սենեկապաններու, իշպաններու, ձիադարման ծառաներու, թիկնապահ սպասաւորներու կտրուին, և այլ այսպիսի ագէտ ու կոպիտ մարդիկներու՝ որ Գերմանացւոց քովը օտարական կըսեպուին»*։ Ժողովը քանի մը մարդ ընտրեց, որ աս վնասները ու ամբաստանութիւնները 'ի գիր անցընեն ։ Ամէնը հարիւր մէկ ամբաստանութիւն եղաւ ։ Ժողովքին կողմանէ քանի մը աշխարհական ու եկեղեցական իշխանաւորներ՝ ան ցանկը կայսեր ներկայացուցին. ու աղաչեցին որ արդար դատաստան տեսնէ, ինչպէս որ անիկայ կայսերական աթոռը նստած ատենը խօսք տուեր էր ։

«Որքան քրիստոնէից հոգիներ կորսուեցան, ըսին Ն Կարոլոսին. ո՞րքան յափշտակութիւններ ու անիրաւութիւններ եղած են ու կըլլան միշտ ան դայթակղութիւններուն պատճառաւը՝ որով քրիստոնէից հոգևոր Գլուխը պաշարուած է ։ Պէտք է որ մեր ազգին կործանմանը ու անպատուութեան պատճառները խափանենք ։ Ասոր համար մենք ամէնս խոնարհութեամբ և միաձայն թախանձական կերպով մը միաբերան քեզի կաղաչեմք, որպէս զի հրովարտակաւ հրաման տաս, որ ընդհանրական Բարեկարգութիւն մը ըլլայ. և թէ՝ աս բանիս դուն ձեռք

* Secked. Vorrede von Frick.

† Büchsenmeistern, Falknern, Pfistern, Eseltreibern, Stallknechten, Trabanten . . . (Kapp's Nachlese nützl. Ref. Urkunden, III, p. 262.)

զարնես ու լմնցընես''*: Ա՛ն ատենը քրիստոնէական ընկերութեան մէջը՝ մէկ անծանօթ զօրութիւն մը կար, որ իշխաններուն ու ժողովրդեան մէջ կըներգործէր. մէկ վերին իմաստութիւն մը՝ որ նոյն իսկ Բարեկարգութեան թշնամիները իրեն կըքաշէր ու կըպատրաստէր ան ազատութիւնը, որուն ժամը վերջապէս հասած էր:

Կարոլոս՝ տէրութեան ու ժողովքին փոխանորդներուն չէր կրնար դէմ դնել. ոչ ինքը և ոչ Ալէանտէր չէին յուսար որ ասանկ ամբաստանութիւններու ցանկ մը տրուի. վասնորոյ կայսրը իսկոյն ետ դարձուց ան հրովարտակը, որով կըհրամայէր իր տէրութեան մէջ գտնուած Լուտերին բոլոր գրուածները կրակի մէջ այրել, և ուրիշ հրովարտակ մը հանեց ըսելով՝ թէ առ այժմ ան գիրքերը դատաւորներուն ձեռքը յանձնուին:

Ժողովը ասով միայն գոհ չեղաւ. կուզէր որ Լուտեր գայ ու ժողովքին ներկայանայ: Անոր բարեկամները կըսէին. "Անիրաւութիւն է Լուտերը դատապարտելը, առանց զանիկայ զրուցընելու. ու առանց անոր բերնէն լսելու թէ ինքը չինէր է ան գրեանքը՝ որոնք դուք այրել կուզէք": Իսկ թշնամիներն ալ կըսէին. "Անոր վարդապետութիւնը՝ մարդոց սրտին մէջ անանկ խորունկ թափանցեր ու տիրեր է, որ մենք զանիկայ չեմք կրնար խափանել, մինչև որ անոր բերնէն խօսք մը չլսեմք: Անոր հետ վիճաբանութիւն պէտք չընեմք. բայց թէ որ անիկայ իր գրուածները խոստովանի և չուզէ հերքել զանոնք, ան ատենը կայսրընտիրները, մեծամեծները, և սուրբ տէրութեան իշխանները և ամէնս մէկ տեղ մեր հայրենական հաւատքին հաւատարմութիւն ընելով՝ բովանդակ մեր ուժովը քու վեհափառութեանդ օգնութիւն կընեմք, որպէս զի քու վճիռներդ 'ի գործ դրուին''†:

* Dass eine Besserung und gemeine Reformation geschehe. (Kapp's Nacklese nützl. Ref. Urkunden, III, p. 275.)

† L. Opp. (L.) XXII, p. 567.

Ալէանտէր՝ Լուտերին աներկիւղ համարձակութենէն ու իշխանաց տգիտութենէն խիստ շատ վախնալուն համար փռնկեցաւ. ու չորս դին ինկաւ որ Լուտերին գալուստը ու ներկայութիւնը խափանէ: Կարոլոսին նախարարներուն քովէն կելլէր, պապին խիստ բարեկամ եղող իշխաններուն քովը կերթար. իշխաններէն ալ՝ նոյն ինքն կայսեր քովը կերթար: "Հրաման չկայ, կըսէր, որ ծայրագոյն Քահանայապետին վճռած ու արգիլած դատին վրայ՝ նորէն քննութիւն ու հակաճառութիւն ըլլայ: Դուք կըսէք՝ թէ Լուտերին հետ միճաբանութիւն պիտի չըլլայ. բայց ան յանդուգն մարդուն կատողութիւնը, աչուըններուն կրակոտ նայուածքը, լեզուին ճարտասանութիւնը, և անոր զօրաւոր ու նրբամիտ ոգին բաւական է ժողովրդեան մէջ խռովութիւն մը հանելու *: Արդէն շատերը զանիկայ իբրև սուրբ կըպաշտեն, ու անոր պատկերը ամէն տեղ կըգտնուի՝ ոսկեճաճանչ ճառագայթով ու փառքով շրջապատած, ինչպէս որ սրբոց գլուխը կընկարեն . . . : Թէ որ զանիկայ հոս պիտի կանչէք, գոնէ ազատագիր մի՛ տաք անոր" †: Աս ետքի խօսքովը կամ Լուտերը պիտի վախցընէր, կամ անոր կործանումը պիտի պատրաստէր:

Նուիրակը դիւրութեամբ Սպանիայի իշխաններուն քովը մտեցաւ. վասն զի անոնց միտքը կոյր նախանձաւորութեամբ մը նախապաշարուած ըլլալով կըջանային որ մը առաջ նոր հերետիկոսութիւնը բնաջինջ ընել: Մանաւանդ թէ Փրիդերիկոս Սաքսոյ դուքսը. միշտ կըկատղէր երբոր Բարեկարգութեան անունը կը լսէր ‡. և թէ որ ձեռքէն գար, բոլոր անոր հետևողները կըմեռցընէր: Այսպէս Լուտեր տակաւին հոն չեկած ու չերևցած, միայն իր անունը՝ կըդողացընէր բո-

* Lingua promptus, ardore vultus, et oris spiritu ad concitandam seditionem . . . (Pallavicini. I. p. 113.)

† Haud certe fidem publicam illi præbendam. . . . (Ibid.)

‡ Pallavicini. I, p. 362.

վանդակ քրիստոնեայ իշխանները, որ ան ատենը Վօրմսի մէջ ժողոված էին ։

Սակայն աս մարդը՝ որ աշխարհիս իշխանութիւնները իրար անցուցեր էր, ինքը խաղաղութեան մէջ կերեւար ։ Վօրմսէն շփոթիչ լուրեր եկան Վիդդէմպէրկ, և Լուտերի բարեկամները ալ խիստ վախցան ։ Բայց Լուտեր առանց վախնալու՝ իր խաղաղ խուցին մէջը նստած՝ խորհրդածելով կըգրէր ու իր վրայ կըյարմարցընէր ան խօսքերը՝ որն որ Մարիամ՝ Յիսուսի մայրը ուրախութեամբ ըսաւ. "Թող իմ անձս մեծցընէ զՏէրը. ու իմ հոգիս իմ փրկիչ Աստուծովս ուրախացաւ ։ Հզօրը ինծի մեծ բաներ ըրաւ, ու իր անունը սուրբ է, իր բազուկովը զօրութիւն մը ըրաւ ։ Զօրաւորները իրենց աթոռին վրայէն վար կործանեց, ու խոնարհները (այ պզտիկները) բարձրացուց"* ։ Աւասիկ Լուտերին ըրած խորհրդածութիւններուն մէկ քանի հատուածը ։ " Հզօրը . . . ըսաւ Մարիամ ։ Ո՜հ, աս ինչ քաջութիւն է նորահասակ կոյսի մը համար՝ որ մէկ խօսքով՝ ամէն զօրաւորներուն վատութիւնը՝ ամէն կարողներուն տկարութիւնը՝ ամէն իմաստուններուն անմտութիւնը՝ ու բովանդակ աշխարհիս մեծահամբաւ ու փառաւոր մարդոց անարգութիւնը կըհասկըցընէ. ու ամէն զօրութիւնը՝ կարողութիւնը՝ իմաստութիւնը ու փառքը միայն Աստուծոյ կուտայ" ։ "Իր բազուկովը . . . ։ Աս բառով կըհասկըցընէ ան կարողութիւնը, որն որ Աստուած ինքնին կըգործէ առանց օգնութեան արարածոց ։ Ո՜վ խորհրդաւոր կարողութիւն . . . որ ծածկաբար և լռութեամբ կըգործէ, մինչև որ իրեն յառաջադրեալ խորհուրդը կատարէ ։ Վասն զի ան ատենը կործանում կըլլայ՝ երբոր մարդուս մտքէն չանցնիր. ու ան ատենը ազատութիւնը կըհասնի, երբոր մարդս բնաւ չյուսար ։ Աստուած իր որդիքը տկարութեան ու նեղութեան

* Ղուկ. ա. 46—55 ։

մէջ կըձգէ . ու երբոր ամէնը՝ զանոնք կորսուած ու կործանած կըսեպեն , ան ատենը խիստ կըզօրացընէ զանոնք . վասն զի մարդոց զօրութիւնը՝ երբոր կըլմննայ , Աստուծոյ զօրութիւնը ան ատենը կըսկսի : Միայն թէ անոր հաւատամք ու յոյսերնիս անկից չկտրեմք . . . ՚ Երբեմն ալ Աստուած իրեն թշնամեացը թոյլ կուտայ , որ իրենց մեծութեանը ու կարողութեանը մէջը բարձրանան . իր զօրութիւնը ու օգնութիւնը անոնցմէ կառնէ , ու թոյլ կուտայ որ իրենց յատուկ զօրութեամբը ուռենան . իր յաւիտենական իմաստութենէն զանոնք կըզրկէ , ու թոյլ կուտայ որ իրենց վաղանցիկ իմաստութեամբը լեցուին . իսկ երբոր անոնք իրենց կարողութեամբը կը փայլին , Աստուծոյ բազուկը անոնց դէմ կըվերնայ , և անոնց գործը՝ . . օդոյն մէջ ճայթող աճառային պղպջակին պէս կըոչնչանայ" :

Լուտեր Մեծացուցէին աս մեկնութիւնը լմնցուց Մարտի ամսոյն տասներորդ օրը . ան նոյն միջոցին՝ որ իր անունը՝ կայսերական քաղաքը վախով կըդողացընէր :

Բայց զանիկայ իր առանձնութեան մէջը հանգիստ չթողուցին : Սպալատին՝ կայսրընտրին հրամանացը հնազանդելով՝ խրկեց Լուտերին ան յօդուածներուն ցանկը , որ կըպահանջէր թէ հերքէ զանոնք : Ընկզպուրկի մէջ չհերքողը , հիմա կըհերքէ՞ արդեօք : Լուտեր Սպալատինին գրեց . "Դուք ամենևին մի՛ վախնաք , որ ես պիտի հերքեմ իմ խօսքս , և ո՛չ իսկ մէկ վանկ մը . վասն զի աս պահանջմունքը ընողները ուրիշ փաստ մը չեն ցուցըրներ , միայն կըսեն թէ իրենց երևակայած Եկեղեցին ակարողութեանցը հակառակ են իմ գրուածներս : Թէ որ Կարոլոս կայսրը զիս կըկանչէ , որպէս զի գրուածներս միայն հերքեմ , ես անոր պիտի պատասխան տամ , թէ "Ես տեղէս չեմ շարժիր . ու դուն զիս Վօրմս եկած ու անկից ետ դարձածի պէս սեպէ՛ : Բայց թէ որ կայսրը զիս մեռցընելու համար կանչելու ըլլայ , իբրև թշնամի

տէրութեան , ես պատրաստ եմ յանօր կոչմանը հնազանդելու * . վասն զի Քրիստոսի օգնութեամբը՝ պատերազմի ասպարէզին մէջը ես իմ խօսքս պիտի չթողում ։ Այս աղէկ գիտեմ որ ան արիւնահեղ մարդիկը՝ մինչև որ զիս չմեռցընեն , պիտի չհանգստանան ։ Ա՜հ . երանի թէ միայն պապականները մեղապարտ ըլլային իմ արեանս համար" ։

## ՀԱՏՈՒԱԾ Է

ԿԱՐՈԼՈՍ կայսրը որոշեց որ Լուտեր գայ ժողովին ներկայանայ . որպէս զի մէկ ճամբով մը աս գործը լըմըննայ , որովհետև տէրութիւնը բոլորովին անով զբաղած էր . բայց անվնաս գալուն ու ետ դառնալուն ապատագիր չտուաւ ։ Ան ատենը Փրիդերիկոս նորէն բըռնադատեցաւ , որ Բարեկարգողին պաշտպանութիւն ընէ ։ Լուտերի վտանգի մէջ ըլլալը ամէնուն յայտնի էր ։ "Անոր բարեկամները , կըսէ Քոքլէոս , կըվախնային որ չըլլայ թէ Լուտերը պապին ձեռքը տան , կամ թէ նոյն ինքն կայսրը զանիկայ մեռցընէ , համարելով որ անանկ յամառեալ հերետիկոս մը իրաւունք չունի որ իրեն տրուած խոստմունքը պահուի" † ։ Աստի իշխանաց մէջ երկայն խորհուրդներ ու վիճաբանութիւններ եղան աս բանիս վրայով ։ Վերջապէս տեսնելով որ գերմանական ժողովուրդը շըփոթութեան մէջ ինկեր է , ու շատերուն սիրտը Լուտերին վարդապետութեանը յարեր է , և վախնալով որ չըլլայ թէ Լուտերին անցած քաղաքներուն մէջ յանկարծադէպ ու վտանգաւոր խռովութիւն մը ելլէ , անոր պաշտ-

*L. Epp · I . p· 574.
†Cochlœus. p. 28 .

պանութի[illegible] համար, խոհեմութիւն սեպեցին որ հասարակութե[illegible] որը հանդստացընեն. վասն որոյ ոչ միայն կայսրը, այլ նաև Սաքսոնիայի կայսրընտիրը, Գէորգ դուքսը, և Հեսսէյի իշխանը, որոնց երկիրներէն Լութեր պիտի անցնէր, ամէնն ալ Լութերին մէկմէկ հատ ազատագիր տուին։

Մարտի 6ին, 1521, Կարոլոս Ե, հետևեալ նամակը ղրկեց Լութերին.

"Կարոլոս, շնորհօքն Աստուծոյ ընտրուած կայսր Հռովմէական, միշտ օգոստափառ, ևլն ևլն։

"Ազնուապատիւ, սիրելի և բարեպաշտ վարդապետ։ Մենք ու սուրբ Տէրութեան իշխանները, որ հոս ժողոված ենք, պատշաճ տեսանք որ քու աս մօտերս հրատարակած վարդապետութեանդ ու գրեանցդ վրայ քննութիւն մը ընենք, և աս պատճառաւ անվնաս հոս գալուդ և ապահով տեղդ դառնալուդ համար ալ, մեր ու տէրութեան իշխանաց ապահովական թղթերը աս նամակիս հետ քեզի կղրկենք։ Մեր սրտին փափաքը ան է որ դուն շուտով ճամբու պատրաստութիւն տեսնես, որպէս զի մեր ապահովական թղթին մէջը որոշուած քսանումէկ օրուանը մէջ, անպատճառ հոս մեր քովը գտնուիս։ Մի՛ վախնար քեզի անիրաւութիւն կամ բռնութիւն մը չըլլար։ Մենք մեր վերոյգրեալ ապահովութեան թղթին մէջը տուած խօսքերնիս հաստատ կըպահենք, ու կըսպասենք որ դուն ալ մեր հրամանին հնազանդութիւն ցուցընես. որպէս զի մեր կարևոր ազդարարութեանը ու ծանուցումին հետևող ըլլաս։

"Գրուած Վորմսի մեր կայսերական քաղաքին մէջ, Մարտի 6ին, յամի Տեառն 1521, ու մեր թագաւորութեան երկրորդ տարին։

"ԿԱՐՈԼՈՍ"

"Ցա՛տ Հրամանի Տէառն իմոյ կայսեր, իր յատուկ ձեռքովը,

"ՕՒԳԵՐՏ. Անյեցի կարդինալ, մեծ Լատենադպիր.

"Լեհովս Օքէլ"

Այս նամակիս մէջ դրուած ազատագրոյն հասցէն աս կերպով գրուած էր.

"Առ մեծապատիւ, սիրելի և բարեպաշտ վարդապետ մեր Մարտինոս Լուտեր՝ որ 'ի կարգէ Օգոստինեանց":

Խորթոյն սկզբնաւորութիւնն ալ այսպէս էր.

"Մենք Կարոլոս Հինգերորդ, շնորհօքն Աստուծոյ ընտրուած կայսր Հռովմէական, միշտ օգոստափառ, Թագաւոր Սպանիոյ, երկու Սիկիլիոյ, Երուսաղէմի, Ունկարիոյ, Դալմատիոյ, Խրուատիոյ, ևն ևն: Արշիդուքս Աւստրիոյ, դուքս Պուրկոնի, կոմս Հապսպուրկի, Ֆլանտրիոյ և Տիրոլի, ևն ևն":

Էտքը՝ այսչափ ժողովրդոց Թագաւորը ամէն իշխաններուն, դատաւորներուն ու քաղաքապետներուն կըծանուցանէր, թէ Լուտեր անունով Օգոստինեան կրօնաւոր մը իր առջևը դատի կանչեր էր, ու անոնց կըհրամայէր որ անոր տուած իր ազատագիրը յարգեն. ապա թէ ոչ՝ կայսեր ու տէրութեան կողմանէ կըպատժուին *:

Ահա կայսրը՝ աս "ՄԵԾԱՊԱՏԻՒ, ՍԻՐԵԼԻ, ԵՒ ԲԱՐԵՊԱՇՏ" տիտղոսներովս կըպատուէր ան մարդը, որ Եկեղեցւոյն Գլուխը զանիկայ բանադրանքով նզովեր էր։ Այսպիսի գրով մը կուզէին որ թէ Լուտերին և թէ անոր բարեկամացը սրտէն կասկածը ու վախը բոլորովին վերցընեն. Գասպար Ստուրմը ընտրեցին որ աս նամակը տանի Լուտերին տայ, ու զանիկայ առնէ Ուորմս քաղաքը բե-

* Lucas Cranach's Stammbuch, etc. herausgegeben v. Chr. V. Mecheln. p. 12.

քէ ։ Կայսրընտիրը հասարակութեան զայրացումէն վախնալով , Մարտի 12ին՝ Վիդդէմպերկի դատաւորներուն գրեց որ կայսերական թղթաբերին պաշտպանութիւնը հոգտանին . և թէ որ հարկաւոր ու պատշաճ կըդատեն , պահապան զինուորներ ալ հետը դնեն ։

Այս բաներովս Աստուծոյ դիտումը ու կամքը կըկատարուէր ։ Աստուած կուզէր որ լեռան վրայ դնէ ան լոյսը՝ որն որ ինքը աշխարհիս մէջը վառեր էր ։ Ու կայսրը , թագաւորները ու իշխանները՝ առանց գիտնալու , վաղվաղկոտութեամբ մը կըջանային Աստուծոյ կամքը 'ի գործ դնելու ։ Պզտիկը մեծցընելը ու բարձրացընելը՝ Աստուծոյ առջևը խիստ դիւրին բան է . Անոր ամենակարողութեան մէկ գործը միայն բաւական է , որով Մանսֆելտի հանքագործին խոնարհ զաւակը՝ խաւարչտին խուցէն բարձրանայ մինչև ան պալատը , ուր որ թագաւորները կըժողովլին ։ Անոր առջևը պզտիկութիւն մեծութիւն չըկայ . և երբոր ուզէ , Կարոլոս Ե ու Լուտերը մէկ տեղ կը նստեցընէ ու կըխօսեցընէ ։

Բայց Լուտեր պիտի ընդունէ՞ր արդեօք աս հրաւէրը ։ Իրեն պինտ մտերիմ բարեկամները աս բանիս վրայով երկբայութեան մէջ էին ։ Կայսրընտիրը Մարտի 25ին՝ Վօրմսէն իր Եղբօրը Յօհաննէս դուքսին կըգրէր թէ՝ "Լուտեր վարդապետը հոս հրաւիրուեցաւ . բայց չեմ գիտեր թէ արդեօք պիտի գա՞յ . չեմ գիտեր թէ աս բանը ուր պիտի վերջանայ" ։ Երեք շաբաթէն ետքը , Ապրիլի 16ին՝ աս բարի իշխանը երբոր տեսաւ որ վտանգը կաւելնայ , իր եղբօրը նորէն ասանկ գրեց . "Լուտերին դէմ հոս հրամաններ ու ծանուցումներ հրատարակուեցան ։ Կարդինալները ու եպիսկոպոսները սաստիկ խստասրտութեամբ անոր դէմ կըզինին ։ Աստուած ամենայն չարիքը 'ի բարին դարձընէ . երանի՛ թէ ես կարենայի անոր արժանավայել ընդունելութիւն մը հոգալ" ։

Երբոր Վօրմսի ու Վիդդէմպերկի մէջ աս բաները կը

պատահէր, պատականութիւնն ալ անգին իր հարուածները կըբազմապատկէր ։ Մարտի 28ին, որ Աւագ Հինգշաբթի օրն էր, Հռովմայ մէջ հանդիսաւոր բանադրանք ու նզովք մը կարդացուեցաւ ։ Վասն զի սովորութիւն է որ ան աւուրը կըհրատարակեն "In Cœna Domini Ընթրիք Տեառն" ըսուած ան սոսկալի կոնդակը, որ ուրիշ բան չպարունակեր, բայց եթէ երկայն ու անհատնում նզովքներ և անէծքներ ։ Ան օրը՝ եկեղեցւոյն առջևը ուր որ ծայրագոյն քահանայապետը պատարագ պիտի մատուցանէ, կանուխէկեկ պապին զինուորական պահապանները կըշարուէին. ու Իտալիայի ամէն կողմերէն եկած անհամար ժողովուրդները հոն կըժիզուէին, որպէս զի Սրբազան Հօրը օրհնութիւնը ընդունին ։ Արքայական եկեղեցին ճակատը ու առջևի հրապարակը մետաքսի ու դափնիի ոստերով կըզարդարուէր, անոր պատշգամբին վրայ մոմեր կըվառուէր, ու Սրբութեան ճաճանչը հոն բարձր տեղ մը կըդրուէր ։ Զանգակները մէկէն 'ի մէկ կըսկսին հանդիսաւոր հնչմունքներով օդը հնչեցընել ։ Ան ատենը Պապը իր քահանայապետական զգեստներովը զարդարուած պատըշգամբին վրայ կերևայ մեծ աթոռի մը վրայ նստած. ժողովուրդը ծունկի վրայ գալով՝ գլուխնին կըբանան. դրօշակները վար կըծռուին, զէնքերը գետնի վրայ կըդրուին, ու հանդիսաւոր լռութիւն մը կըլայ ։ Քանի մը վայրկեանէն ետքը՝ պապը ծանրութեամբ մը ձեռուըները երկընցընելով դէպի երկինք կըվերցընէ. ետքն ալ ծանրութեամբ մը դէպի երկիր կըծռէ ու կըխաչակնքէ ։ Աս գործողութիւնը իրեք հեղ կըկրկնէ ։ Ան ատենը նորէն զանգակները իրենց ձայնովը օդը կըհնչեցընեն. ու քահանայապետին օրհնութիւնը՝ հեռու եղող գիւղերուն կըծանուցանեն ։ Քանի մը քահանաներ ձեռուըննին մէյմէկ վառած կերոն՝ սաստիկ վազելով առաջ կուգան, ու նոյն կերոնները վեր վար խաղցընելով և ասդին անդին պըտըտցընելով դժոխային բոցերու պէս ուժով մը գետինը կը

զարնեն . ժողովուրդը կըշփոթի ու կըտասանի . ու նզովքի և անէծքի բառերը կըսկսին եկեղեցիին վերէն վար թափիլ * :

Երբոր Լուտեր աս նզովքը լսեց , գրիչը ձեռքը առաւ , և պարսաւող ու կծու ոճով մը ան նզովքին իմաստը մեկնեց ու հրատարակեց , որուն քանի մը հատուածները հոս պիտի յիշատակենք , ընդմիջելով Աւագ հինգշաբթի իրիկուան բանադրանքին պատմութիւնը . ու պիտի լսենք ան խօսքերը , որ 'քրիստոնէից քահանայապետը իր արքայական եկեղեցւոյն պատշգամբէն կըզըրուցէ . և ան պատասխանները՝ որ Վիդդէմպէրկի կրօնաւորը անոր կուտայ Գերմանիոյ մէջէն : Աս հակաճառութեանս մէջը՝ երկուքին ալ բնութիւնը ու բարքը բացայայտ կերևնայ :—

Պապ . "Լևոն , եպիսկոպոս . . .

Լուտեր . "Եպիսկոպոս . . . : Այո՛ , ինչպէս որ գայլը հովիւ մըն է : Աշան զի եպիսկոպոս մը՝ պէտք է որ փրկութեան ճամբան սորվեցունէ ու յորդորէ , և ո՛չ թէ՝ անէծքներ ու նզովքներ փսխէ :

Պապ . . . . "Ծառայ ամենայն ծառայից Աստուծոյ . . . .

Լուտեր . "Այո՛ , Իրիկունները՝ երբոր կըգինովնամք . բայց առտուըները մենք զմեզ կըկոչեմք՝ Լևոն Տէր ամենայն տէրանց :

Պապ . "Մեր նախորդ Հռովմէական եպիսկոպոսները սովորութիւն ունէին աս տօնիս մէջը արդարութեան զէնքերը գործածելու . . .

Լուտեր . "Քու արդարութեանդ զէնքերը՝ անէծք ու նզովք են . բայց Սրբոյն Պօղոսինը՝ երկայնմտութիւն , քաղցրութիւն ու սէր են : 'ի Կորնթ . Զ . 6 , 7 :

* Աս արարողութիւնը զանազան գրեանց մէջ գրուած է . ինչպէս նաև , Tagebuch einer Reise durch Deutschland und Italien . ( Berlin 1817, IV p. 94 . ) Իսկ անոր գլխաւոր պարագաները՝ Լուտերի ժամանակէն շատ առաջ հաստատուած է : ( Ծանօթ . Թարգ . )

Պապ. "Ինչպէս որ առաքելական պաշտօնին պարտքն է, քրիստոնէական հաւատոյ մաքրութիւնը պահելու համար.

Լուտեր. "Նախնիքն՝ պապին ժամանակաւոր ստացուածքը պահելու համար։

Պապ. "Այլ անոր միութիւնը՝ որ կըկայանայ 'ի միաւորութեան անդամոց Քրիստոսի իրենց Գլխոյն հետ... և անոր փոխանորդին հետ....

Լուտեր. "Ասանգի Քրիստոս բաւական չէ՛. մէկ ուրիշ գլուխ մըն ալ պէտք է։

Պապ. "Այլ հաւատացելոց սուրբ հաղորդակցութիւնը պահպանելու համար, մենք հին սովորութեամբը կըհետեւիմք, ու կըհերքեմք ու կընզովեմք 'ի կողմանէ Աստուծոյ ամենակարողի, Հօր.....

Լուտեր. "Անոր համար ըսուած է. Աստուած իր Որդին աշխարհք չխրկեց զաշխարհը դատապարտելու համար։ Յովհ. գ. 17։

Պապ. "...Այլ Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. և իշխանութեամբ առաքելոցն Պետրոսի և Պօղոսի...., և մեր յատուկ իշխանութեամբը....։

Լուտեր. "Ալանող գայլը զինքը ու իրեն իշխանութիւնն ալ կըյիշէ. իբր թէ՝ Աստուծոյ կարողութիւնը ու իշխանութիւնը առանց անոր բնաւ ոյժ մը չունէր, կամ թէ տըկար պիտի մնար։

Պապ. "Մենք կընզովեմք ամէն հերետիկոսները՝ Քաթարոսեանք, Պաթարինները, Լեոնի աղքատները, Առնօլտեանք, Սբերօնեանք, Պասսաճինները, Ուիքլիֆեանք, Հուսեանք, Ֆրաթիչէլեանք....

Լուտեր. "Ասանգի անոնք ուզեցին Սուրբ Գիրքը ժառանգել, ու անոր խօսքը բռնել. ու նաև ուզեցին որ պապը պարկեշտութիւն ու ժուժկալութիւն պահէ, և Աստուծոյ Բանը քարոզէ։

Պապ.... "Այլ զՄարտինոս Լուտերը, որն որ աս մօտերս դատապարտուեցաւ անոնց նման հերետիկոսութեան մը

համար. ու բովանդակ անոր հետեւողները, ու անոր օգնութիւն ու կողմնակցութիւն ընող մարդիկը, ով ըլլայ նէ թող ըլլայ....

Լուտեր. "Ո՜վ մեծաշնորհ քահանայապետ, շնորհակալ եմ քեզի, որ բոլոր աս քրիստոնեաներուն հետը զիս կը դատապարտես: Ինծի մեծ փառք է որ Հռովմայ մէջ ան տօնախմբութեան օրը՝ իմ անունս այնպիսի փառաւոր կերպով մը յիշուի. ու Յիսուս Քրիստոսի խոնարհ խոստովանողաց անուանցը հետ՝ բոլոր աշխարհիս մէջը զրուցուի:

Պապ. "Նմանապէս կը նզովեմք ու կանիծեմք բովանդակ ծովու գողերը ու աւազակները....

Լուտեր. "Գողերուն ու աւազակներուն պետը մեծը ո՞վ է: Մարդոց հոգիները յափշտակող, կապող ու մեռցընող աւազակէն աւելի մեծ գող աւազակ կրնա՞յ գտնուիլ:

Պապ. "... Նմանապէս զանոնք, որ մեր ծովուն վրայ կը պտըտին....

Լուտեր. ՄԵՐ ծովուն վրա՞յ... Սուրբ Պետրոս, ՄԵՐ նախորդը ըսաւ թէ՝ Ես արծաթ ու ոսկի չունիմ: Գործ. Գ. 6: Յիսուս Քրիստոս ալ ըսաւ. Ազգաց թագաւորները անոնց կը տիրեն, բայց դուք այնպէս պիտի չըլլաք: Ղուկ. ԻԲ. 25: Սակայն թէ որ խոտ բեռնաւորուած կառք մը կը հարկադրի գինով մարդու մը ճամբայ բանալու, Սուրբ Պետրոս ու նոյն ինքն Յիսուս Քրիստոս չունի՞ն արդեօք աւելի զօրաւոր պատճառներ պապին ճամբայ բանալու:

Պապ. "Նմանապէս կը նզովեմք ու կանիծեմք բոլոր ան մարդիկը որ մեր կոնդակները ու առաքելական թղթերը կայրեն ու կը կեղծեն....

Լուտեր. "Բայց Աստուծոյ թղթերը, ու Աստուածաշունչ գիրքերը ամէն մարդ կրնայ դատապարտել ու այրել:

Պապ. "Նմանապէս կը նզովեմք ու կանիծեմք բոլոր ան մարդիկը որ Հռովմայ պալատը եկող պաշարքը՝ և ուտե-

լիքը կը յափշտակեն ու կառնեն . . . .

Լութեր . "Անիկայ կը հաչէ ու կը խածնէ ան շանը պէս , որուն առջեւէն իրեն ոսկորը վերցընել կուզեն :

Պապ . "Նմանապէս կը դատապարտեմք ու կանիծեմք բովանդակ ան մարդիկը՝ որ եկեղեցականաց վերաբերեալ իրաւունքները , պտուղները , տասանորդները ու եկամուտները կառնեն ու իրենց կը սեփհականեն . . . .

Լութեր . "Վասն զի Յիսուս Քրիստոս ըսաւ , "Թէ որ մէկը ուզէ զքեզ դատել ու շապիկդ առնել , դուն անոր բաճկոնդ ալ տուր" : Մատթ . Ե . 40 : Այս ահա աս պատուիրանին մեկնութիւնը կուտաք :

Պապ . "Ինչ աստիճան , պատուանուն , իշխանութիւն , կարգ ու տիտղոս ունենան նէ թող ունենան . նաեւ թագաւոր ու եպիսկոպոս ալ ըլլայ նէ թող ըլլայ . . . .

Լութեր . "Վասն զի՝ Պիտի գտնուին ձեր մէջը սուտ վարդապետներ , որ տէրութիւնները պիտի անարգեն , ու պատուաւոր մարդիկը պիտի անիծեն , կըսէ Սուրբ Գիրքը . Յուդ . 8 :

Պապ . "Նմանապէս կը դատապարտեմք ու կընզովեմք բոլոր ան մարդիկը՝ որ ինչ և իցէ կերպով մը վնաս կը հասցընեն Հռովմայ քաղաքին , Սիկիլիոյ թագաւորութեանը , Սարտէնեայի ու Քորսիքայի կղզիներուն , ու Թոսքանայի մէջ եղած՝ սուրբ Պետրոսի ժառանգութեանը . Սպոլէթօյի դքսութեանը , Անքոնայի իշխանութեանը , Քամբանիոյ գաւառին ու Ֆերրարայի և Պէնէվէնթօյի քաղաքներուն , ու բովանդակ Հռովմայ եկեղեցւոյն վերաբերեալ ուրիշ քաղաքներուն ու գեղերուն :

Լութեր . "Ո՞վ Պետրոս , աղքատ ձկնորս . Հռովմ քաղաքը ու բովանդակ աս թագաւորութիւնները ո՞ւսկից քեզի եկաւ , ու ինչէ՞ն քուկդ եղաւ : Ողջո՜յն քեզ Պետրոս թագաւոր Սիկիլիայի [illegible] և ձկնորս Բեթսայիդայի :

Պապ . "Կընզովեմք բոլոր ան ատենադպիրները , խորհըրդականները , նախարարները , հոգաբարձու փոխանորդ-

ները, քաղաքապետները, գործակալները, եպիսկոպոսները, ևն, որ մեր յորդորական, հրաւիրական, արգելիչ, միջնորդական և գործադրական թղթոցը դէմ կը գընեն ....

Լուտէր. “Վասն զի սուրբ Աթոռը ուրիշ բան չուզեր բայց եթէ ապրիլ դատապրկութեամբ, մեծվայելչութեամբ և անառակութեամբ. և հրամայել, սպաննել, պատժել, խաբել, սուտ զրուցել, անպատիւ ընել, մոլորցընել և ամէն տեսակ չարագործութիւններ ընել խաղաղութեամբ և ապահովութեամբ . . . :

“. . . Տէ՛ր՝ արթնցի՛ր: Պապականներուն կարծածին պէս չէ բանը. դուն զմեզ բնաւ երբեք ձգած չես, և աչուընիդ մեզմէ դարձուցած չես:

Ահա ասանկ խօսեցան՝ ժերորդ Լեւոնը Հռոմայ մէջ, և Լուտերը Վիտտէմպէրկի մէջ:

——Քահանայապետը իր անէծքները լմնցընելէն ետքը, պատռեցին ան մագաղաթէ թուղթը, որուն վրայ անոնք գրուած էին, և անոր կտորուանքը ժողովրդոց առջևը թափեցին: Անմիջապէս մեծ շփոթութիւն մը ինկաւ ժողովրդոց մէջը, ու ամէնն ալ իրար անցնելով և աճապարելով կըջանային որ ան սոսկալի կոնդակին մէկ կտորը յափշտակեն առնեն: Պապականութիւնը այսպիսի սուրբ մասունքներ կըպարգևէր իրեն հաւատացելոցը, շնորհատու և քաւիչ Աւագ ուրբաթին նախընթաց իրիկունը: Բազմութիւնը իսկոյն ցրուեցաւ. ու եկեղեցւոյն շրջակայ տեղուանքը իրենց սովորական լռութեանը դարձան: Հիմա Վիտտէմպէրկ դառնանք:

## ՀԱՏՈՒԱԾ Ջ

ՄԱՐՏԻ 24երորդ օրն էր որ Գասպար Աթուրմ կայսերական դեսպանը, Լուտերի նստած քաղաքին դռնէն ներս մտաւ. ու վարդապետին երթալով՝ Ե Կարոլոսին նամակը հանձեց տուաւ անոր։ Վսեմ ու հանդիսաւոր վայրկեան մըն էր ասիկայ Բարեկարգողին համար. բոլոր իր բարեկամները տակնուվրայ եղան։ Իշխաններէն ոչ մէկը և ոչ իսկ խոհեմ Փրիդերիկոսը՝ դեռ Լուտերին կողմը բռնած չէր։ Յիրաւի ասպետները սպառնալից խօսքեր կընէին Լուտերի թշնամեաց դէմ. բայց զօրաւոր Կարոլոսը անոնց խօսքը բանի տեղ չէր դներ։ Ի վերայ այսր ամենայնի Լուտեր բնաւ չխռովեցաւ. բայց իր բարեկամացը նեղասրտութիւնը ու վիշտը տեսնելով, ըսաւ. «Պապականները չէ թէ իմ Վորմս երթալս կուզեն, այլ իմ դատապարտուիլս ու մեռնիլս։ Վնաս չունի, դուք աղօթք ըրէք, ո՛չ թէ ինծի համար, այլ Աստուծոյ Բանին համար։ Իմ արիւնս դեռ չպաղած, աշխարհիս հազարաւոր մարդիկներէն վրէժխնդրութիւն պիտի ըլլայ, իմ արիւնս թափելուն համար։ Քրիստոսի սրբազան հակառակորդը՝ մարդասպանութեան հայրը, տէրը ու հազարապետը, ետեւէս ինկեր է որ իմ արիւնս թափէ. Ամէն։ Կամք Տեառն օրհնեալ լիցի։ Քրիստոս իր հոգին ինծի պիտի տայ, որպէս զի աս մոլորութեան պաշտօնեաները յաղթեմ։ Կենդանութեանս ատենը զանոնք կարհամարհեմ, մահուամբս ալ անոնց վրայ պիտի յաղթանակեմ. Վորմսի մէջ իրար անցեր են, ու կուզեն զիս բռնադատել, որ ես իմ խօսքս ետ առնեմ։ Յիրաւի ես խօսքս ետ պիտի առնեմ, բայց ուրիշ կերպով։ Ես ուրիշ հեղ զրուցեր եմ, թէ պապը Քրիստոսի փոխանորդն է, հիմայ պիտի զրուցեմ՝ թէ Աստուծոյ թշնամին է, ու

սատանային առաքեալն է"*։ Եւ երբոր իմացաւ թէ Ֆրանչիսկեան ու Դոմինիկեան կրօնաւորները բովանդակ ամպիոններուն վրայ իրեն դէմ անէծքներ ու նզովքներ կը կարդան, ուրախութեամբ աղաղակեց. "Ո՜հ որչափ զարմանալի ու մեծ ուրախութիւն կըզգամ ես բանիս համար" †։ Անիկայ աղէկ գիտէր, թէ ինքը Աստուծոյ կամքը կատարեր էր, և թէ Աստուած իրեն հետ էր։ Ուրեմն ինչո՞ւ համար համարձակութեամբ պիտի չերթար։ Մաքուր դիտաւորութիւնը ու ազատ խղճմտանքը՝ մէկ գաղտնի բայց անճառելի զօրութիւն մըն է, որ Աստուծոյ ծառայէն բնաւ չպակսիր. ու զանիկայ անյաղթ կընէ այնպիսի գերազանց կերպով մը՝ որ ամբողջ բանակները անգամ չեն կրնար ընել։

Ան օրերը Վիդդէմպէրկ քաղաքը հասաւ մէկը, որ սահմանուած էր Մելանքթոնի պէս Լութերին մտերիմ և հաստատուն բարեկամը ըլլալու, և անոր ճամբայ ելած ատենը՝ զինքը մխիթարելու։ Ասիկայ երեսունուվեց տարեկան քահանայ մըն էր Պուկէնհակէն անունով, որ Կամինի եպիսկոպոսէն ու Պոկիսլաւի Պոմերանիոյ իշխանին ձեռքէն կը փախչէր. վասն զի անոնք Աւետարանի բարեկամ եղող եկեղեցականները, քաղաքացիները ու գիտնականները բռնութեամբ կը հալածէին։ Աս Պուկէնհակէնը՝ ազնուականաց ցեղէն էր, ու Պոմերանիոյ Վօլլին քաղաքին մէջը ծնած էր. (ուսկից որ Պոմերանոս մականունը առնեցաւ) ու քսան տարեկան հասակէն 'ի վեր Թրեպթօվի մէջ քարոզութիւն ու դասատուութիւն կընէր։ Երիտասարդները խուռն բազմութեամբ կը վազէին կերթային որ անոր խօսքը մտիկ ընեն. և ազնուական ու գիտնական մարդիկ կը փափաքէին որ անոր հետ տեսութիւն ընեն։ Ասիկայ շարունակ Սուրբ Գիրքը կը կարդար, ու Աստուծոյ կաղա-

*L. Epp. I. p. 579.
†Ibid, p. 567.

չէր, որ Սուրբ Գիրքին միտքը իրեն հասկըցընէ ու զինքը լուսաւորէ ։ 1520ին՝ Դեկտեմբեր ամսու վերջին օրերը, երբոր քանի մը բարեկամաց հետ սեղան նստած կերակուր կուտէր, մէկը Լուտերին Գերութիւն Բաբելոնի ըսուած գիրքը բերաւ, Պուկէնհակէնի ձեռքը տուաւ։ Անիկայ գիրքը մէկ ծայրէն մէկալ ծայրը աչքէ անցընելէն ետքը, դարձաւ ըսաւ՝ "Քրիստոս մեռնելէն ետքը խիստ շատ հերետիկոսներ զեկեղեցին անհանգիստ ըրին. բայց աս գրքին հեղինակին նման ժանտախտ մը բնաւ չէ՛ տեսնուած"։ Աս գիրքը առաւ իր տունը տարաւ, ու զանիկայ կրկին և կրկին անգամ կարդալէն ետքը՝ միտքը բոլորովին փոխուեցաւ, ու նոր ճշմարտութիւններ իր մտացը մէջ տպաւորուեցան. ու քանի մը օրէն ետքը նոյն ընկերացը հետ նորէն տեսնուելուն, ըսաւ անոնց. "Բոլոր աշխարհս մթին խաւարին մէջը ինկեր է, ու միայն աս մարդս ճըշմարտութիւնը կըտեսնէ"։ Քանի մը քահանաներ, մէկ սարկաւագ մը ու նոյն ինքն աբբան, փրկութեան մաքուր վարդապետութիւնը ընդունեցին. ու զօրութեամբ քարոզելով, իրենց ունկնդիրները՝ մարդկային աւելորդապաշտութիւններէն՝ Յիսուս Քրիստոսի միակ ու զօրաւոր արդեանցը դարձուցին։ Հալածանքը ան ատենը սկսաւ. շատերը բանտերու մէջ կըհեծէին ու կըտառապէին. բայց Պուկէնհակէն իր թշնամիներուն ձեռքէն փախաւ Վիտդէմպէրկ քաղաքը եկաւ։ Մելանկտոն իսկոյն կայսրընտրին մատրանապետին գրեց, թէ Պուկէնհակէն՝ աւետարանի սիրոյն համար նեղութիւն կըկրէ. ու անիկայ ո՞ւր կրնայ ապաւինիլ՝ բայց եթէ մեր ապաստանարանը ու մեր իշխանին պաշտպանութեանը տակը*։

Լուտեր մեծապէս սիրով և ուրախութեամբ ընդունեց զՊուկէնհակէն. ու մէջերնին անանկ խօսք ըրին, որ Լուտեր ճամբայ ելածին պէս, Պուկէնհակէն սկսի սաղմոսին մեկ-

*Corp. Refor. I, p. 361.

նութիւն տալ ։ Աստուածային Նախախնամութիւնը աս միջոցիս մէջ աս զօրաւոր մարդը Վիդեմպերկ քաղաքը բերաւ. որպէս զի՝ Լուտեր երթայ նէ անոր տեղը բռնէ ըստ մասին ։ Պուկէնհակէն տարիէ մը ետև աս քաղաքին եկեղեցւոյն առաջնորդ եղաւ, ու երեսունուվեց տարի հոն առաջնորդութիւն ըրաւ ։ Լուտեր շատ կըպատուէր զանիկայ միշտ Պօմէր կոչելով ։

Բայց ժամանակը հասած էր որ Լուտեր ճամբայ ելլէ. իր բարեկամները երկիւղի մէջ էին ու կըսէին, թէ որ Աստուած աս մարդուս համար հրաշք մը չընէ, անշուշտ մեռնելու կերթայ ան ։ Մելանքթոն իր հայրենիքը ձգած՝ չափազանց սիրով մը Լուտերին յարեր էր. ու կըսէր թէ "Լուտեր՝ իմ ամէն բարեկամներուս տեղը կըբռնէ. անիկայ ինծի այնչափ մեծ ու սքանչելի կերևայ, որ խօսքով չեմ կրնար հասկըցընել ։ Աղկիբիադէս որչափ որ իր Սոկրատէսը կըպատուէր, ես աւելի կըպատուեմ զԼուտեր. վասն զի իմ պատուելս քրիստոնէաբար է ։ Քանի որ Լուտեր միտքս կըբերեմ, միշտ զանիկայ իրմէ մեծ կըգտնեմ" ։ Մելանքթոն կըբաղձար որ Լուտերի հետ երթայ, ու անոր վըտանգներուն մասնակից ըլլայ. բայց անոր բարեկամները, մանաւանդ Լուտեր ինքն ալ աս բաղձանքին դէմ կեցան ։ Վասն զի պէտք էր որ Մելանքթոն իր բարեկամին տեղը անցնէր. թէ որ Լուտեր բնաւ ետ չդառնար, Բարեկարգութեան գործը ո՞վ առաջ պիտի տանէր ։ Մելանքթոն անկեղծութեամբ ու տրտմութեամբ կըսէր՝ "Երանի՜ թէ ինծի թոյլտուութիւն ըլլար անոր հետ երթալու" ։

Լիցանդոտն Ամստորֆ անմիջապէս յայտնեց թէ ինքը պատրաստ է Լուտեր վարդապետին ընկերակցութիւն ընելու. վասն զի քաջասիրտ ըլլալուն համար՝ վտանգի մէջ մտնելը իրեն զուարճութիւն կըսեպէր. և բարձրամիտ ըլլալուն համար ալ թագաւորաց ժողովին առջևը աներկիւղ ու համարձակ կերպով մը կրնար երևնալ ։ Այսպէս ընտիրը՝ մեծահամբաւ ու քաղցրաբարոյ մարդ մը բերել

տուեր էր Վիդդէմպերկ՝ Հերոնիմոս Շուրֆ անունով, իբրև ուսուցիչ իրաւագիտութեան. ասիկայ բժշկի մը զաւակ էր, ու Լուտերին հետ շատ մեծ բարեկամութիւն ունէր : Լուտեր կըսէր թէ՝ "Աս մարդը տակաւին չկըցաւ չարագործի մը մահուան վճիռը գրել" : Այսու ամենայնիւ աս վախկոտ մարդը բաղձայ որ վարդապետին հետը երթայ, ու ան վտանգաւոր ճամբորդութեան մէջը՝ անոր խորհրդակից ըլլայ : Գտանեցի մանկահասակ ուսանող մը՝ Պետրոս Սուավէն անունով, որ Մելանկտոնին տունը կը բնակէր, և չափահասակ կատարելութեան ատենը՝ իր աւետարանական աշխատութեանցը համար, Պոմերանիայի ու Դանիմարքայի մէջ մեծ անուն վաստըկեցաւ, ան ալ ըսաւ թէ իր վարժապետին հետը ուղեկցութիւն պիտի ընէ : Արդարև կըվայլէր որ դպրատանց աշակերտները՝ իրենց կողմանէ ալ մէկը ունենան աս ճշմարտութեան ախոյեանին քովը :

Բովանդակ Գերմանիա մեծ շփոթութեան մէջ էր, տեսնելով որ իր ժողովրդեան փոխանորդը մեծ վտանգի մէջ է : Այլ վերջապէս իրեն արժանաւոր անձ մը գտաւ որ անոր ձայնովը իր վախերը բացատրէ ու հասկըցընէ : Ուլրիկ Տը Հութթըն իր հայրենիքին վրայ գալու վտանգները մտածելով՝ ոտք ելաւ, ու Ապրիլի 1ին՝ Կարոլոս հինգերորդին սաանկ գրեց. "Ով վեհափառ կայսր. դուն աս մօտերըս թէ զմեզ և թէ զքեզ մէկ տեղ պիտի կորսընցընես : Քանզի աս Լուտերին գործին ու դատաստանին մէջը ինչ կուզեն ընել, եթէ ոչ՝ մեր ազատութիւնը ոչնչացընել, և քու իշխանութիւնդ կործանել : Որչափ արդար ու բարեպաշտ մարդիկ որ կան աս տէրութեանս մէջ, ամէնն ալ իրենց ուշադրութիւնը աս գործին դարձուցեր են : Միայն կարգաւորները Լուտերի դէմ են. վասն զի անիկայ անոնց չափազանց իշխանութեանը, ամօթալից զեղխութեանը ու աւրած վարուցը դէմ կեցաւ, ու Քրիստոսի վարդապետութեանը՝ հայրենեաց ազատութեանը ու վա-

րուց մաքրութեանը համար դատ ու վիճաբանութիւն կընէ։ Ո՜վ կայսր, հեռացուր քեզմէ ան Հռովմէական ատենաբանները, ան եպիսկոպոսները և ան կարդինալները՝ որ Բարեկարգութիւնը բոլորովին խափանել կուզեն...։ Բովանդակ Գերմանիա ծունկի վրայ գալով քու ոտքդ կիյնայ, և արցունք թափելով քեզի կաղաչէ. քեզմէ օգնութիւն, կարեկցութիւն ու հաւատարմութիւն կըխնդրէ. ու սուրբ յիշատակաւ ան Գերմանացւոց, որոնք բնաւ գըլուխ չծռեցին հպարտ Հռովմ քաղաքին (երբոր բոլոր աշխարհս անոր հպատակ եղեր էր) քեզի կաղաչէ, որ զինքը փրկես իրեն առաջին վիճակը դարձընես, գերութենէ ազատես, ու անոր բռնաւորներէն վրէժ խնդրես"...։

Այսպէս կըխօսէր Գերմանացի ազգը Կարոլոսին հետ՝ ասպետին բերանովը։ Կայսրը աս խօսքերուն ականջ չտուաւ. և հաւանականաբար աս թուղթը անարգութեամբ մը իրեն քարտուղարացը մէկին տուաւ։ Վասն զի իր բաղձանքին նպատակը՝ միայն իր անձնական իշխանութիւնն էր, և ո՛չ թէ տէրութեան ազատութիւնը ու փառքը։

## ՀԱՏՈՒԱԾ Է

ԱՊՐԻԼ երկրորդ օրը՝ Լուտեր իր բարեկամներէն պիտի զատուէր. վասնորոյ թղթով մը Լանժին իմացուց, թէ հետևեալ հինգշաբթի կամ ուրբաթ օրը Էրֆուրթ պիտի անցնի. և իր ընկերացը վերջին հրաժարական ողջոյնը տալէն ետքը, Մելանկտոնին դարձաւ ու սրտաշարժ ձայնով մը ըսաւ. "Ո՜վ եղբայր իմ, թէ որ ես ետ չգանամ ու իմ թշնամիներս զիս մեռցընեն, դուն աս վարդապետութիւնը քարոզելէն ետ մի՛ կենար, ու ճշմարտութեան մէջը հաստատ կեցիր։ Իմ տեղս դուն աշխատէ.

որովհետեւ ես անկէց ետքը ալ պիտի չկարենամ աշխատիլ։ Թող որ դուն ողջ մնաս, իմ մեռնիլս հոգ ընելու բան մը չէ"։ Ետքը Լուտեր զինքը հաւատարիմ Աստուծոյն ձեռքը յանձնելով, կառքը նստաւ. քանզի քաղաքացիք իրենց մէջը խորհուրդ ընելով, անոր պարկեշտաձեւ կառք մը պատրաստեր էին։ Կայսերական դեսպանը իր վարդարուն զգեստը հագած ու ձիու վրայ նստած, տէրութեան արծիւ նշանովը եւ իրեն մէկ ծառայովը՝ առջեւէն կերթար. եւ անոր ետեւէն՝ Լուտեր, Շուրֆ, Ամսդորֆ ու Սուաւէն կերթային իրենց կառքովը։ Աւետարանին բարեկամները, ու Վիդդեմպերկ քաղաքին բնակիչները՝ տրտմալից սըրտիւ զԱստուած յօգնութիւն կոչելով արցունք կըթափէին։ Ահա Բարեկարգողը ասանկ ճամբայ ելաւ։

Լուտեր՝ իր առջեւը ելլող մարդոց նայուածքէն ու շարժուածքէն իսկոյն իմացաւ որ ամէնն ալ իր վրայ ձախորդ գուշակութիւններ կընեն։ Լիփսիայի մէջ անոր պատուոյն համար ամենեւին հանդէս մը չըրին. բայց միայն սովորական գինիով մը անոր ընդունելութիւն ըրին։ Նաումպուրկ քաղաքին մէջը՝ քահանայի մը հանդիպեցաւ, որ անաչառ մարդ մըն էր. եւ իր խուցին մէջը՝ մեծահամբաւ Ֆերրարացի Սավոնարոլա Հերոնիմոսին կենդանագիրը զգուշութեամբ կըպահէր։ Աս ան Հերոնիմոսն է՝ որ 1498ին, Ֆլորենցայի մէջ ողջ ողջ այրեցաւ վեցերորդ Աղեքսանդր պապին հրամանովը՝ իբրեւ վկայ ազատութեան եւ բարոյականութեան, քան թէ իբրեւ խոստովանող աւետարանական ճշմարտութեան։ Աս քահանան Իտալացի վկային կենդանագիրը ձեռքը առնելով Լուտերին մօտեցաւ, ու լռութեամբ անոր երկընցուց զանիկայ։ Լուտեր իսկոյն հասկըցաւ թէ ան անխօս պատկերը իրեն ի՞նչ ըսել կուզէր. եւ իր վեհանձնութեամբը ու անդրդուելի հոգւովը առանց պատասխան տուաւ. "Սատանան առանց վախեր տալով կուզէ խափանել, որ ճշմարտութիւնը չխոստովանուի Թագաւորաց ու իշխանաց ժողովին մէջը. վասն զի աղէկ գի-

տէ որ աս բանը իր թագաւորութիւնը պիտի կործանէ"*: Ան ատենը քահանան ծանրութեամբ մը ըսաւ անոր. "Դուն քու ճանչցած ճշմարտութեանդ մէջը հաստատ կեցիր. և քու Աստուածդ միշտ քեզի հաստատ օգնական պիտի ըլլայ":

Լուտեր նոյն գիշերը Նաումպուրկ քաղաքին մէջը անցաւ. ուր որ քաղաքապետը զինքը հիւրասիրութեամբ ընդունեց. ու հետեւեալ օրը իրիկուան դէմ Վայմառ քաղաքը մտաւ: Հազիւ թէ հասած էր հոն, որ ամէն կողմանէ աղաղակներ լսեց: Աս աղաղակները անոր դատապարտութիւնը կը հրատարակէին. "Նայէ՛ մէյմը" ըսաւ կայսերական դեսպանը: Լուտեր նայեցաւ տեսաւ որ զանազան արքունի պատգամաւորներ քաղաքին մէջը կը փակցէին. և ամէն տեղ կայսերական հրովարտակը կամ ծանուցումը կը փակցընէին, որպէս զի ամէն մարդ Լուտերին գրուածքը ատենակալաց ձեռքը յանձնէ: Լուտեր խոհեմ հասկըցաւ որ աս չափազանց խստութիւնները խորհրդով կ'ընեն զինքը վախցընելու համար որ ետ քաշուի, և նոյնալ իբրև ապստամբ և անհնազանդ թագաւորական հրամանաց՝ դատապարտուի, Վորմսի մէջ չերեւնալուն համար: Ան ատենը կայսերական դեսպանը տակալով մը ըսաւ. "Տէ՛ր վարդապետ, հիմա ի՞նչ պիտի ընես. կուզե՞ս տակաւին ճամբորդութիւնդ շարունակել": Լուտեր պատասխան տուաւ, "Կ'երթամ. թէպէտև ամէն քաղաքներու մէջ ինծի արգելքներ պակաս չեն, 'ի վերայ այսր ամենայնի ես պիտի յառաջ երթամ. ես կայսեր ապահովական թղթոյն կը նայիմ":

Ան միջոցին Յովհաննէս դուքսը՝ Սաքսոնիոյի կայսրընտրին եղբայրը Վայմառ քաղաքը կը նստէր. Լուտեր գընաց տեսնուեցաւ դքսին հետ. ան ալ հրաւիրեց զվար-

* Terrorem hunc a Sathana sibi dixit adferri ... ( Melch. Adam, p. 117.)

գապետը՝ որ քարոզ մը տայ ։ Լուտեր անոր առաջարկութիւնը ընդունեց. ու երբոր սկսաւ քարոզը՝ վարդապետին աստուածասէր սրտէն ու բերնէն կենսատու խօսքեր կը բըղխէին ։ Մէկ Ֆրանչիսկեան կրօնաւոր մը՝ Յովհաննէս Մօյիտ անունով, որ Փրիդերիկոս Միկոնիոսին բարեկամն էր, այն քարոզը լսելով՝ դարձաւ ու աւետարանական վարդապետութիւնը ընդունեց ։ Երկու տարիէն ետքը իր վանքը թողուց, ու խել մը տարինէն ետքը աստուածաբանութեան դասատու եղաւ Միդդլէմպէրկի մէջ ։ Լուտերին ճամբորդութեանը համար որչափ ստակ որ պէտք էր, դուքսը հանեց տուաւ ։

Լուտեր Այզնաքէն Էրֆուրթ քաղաքը անցաւ, ուր որ իր մանկութեան ժամանակը անցուցեր էր. ու կը յուսար որ հոն իր Լանժ բարեկամին հետը տեսնուի, թէ որ անոր գրածին պէս կարող ըլլար քաղաքը մտնելու առանց վտանգի մը ։ Երբոր Նօրա ըսուած գեղին մօտեցաւ, որ Էրֆուրթէն իրեք չորս մղոնի չափ հեռու է, աչքը վեր վերցուց, տեսաւ որ հեռուէն խումբ մը ձիաւորներ կուգան ։ Չէր գիտեր թէ անոնք բարեկամ էին, թէ թշնամի ։ Բայց շուտով ճանչցաւ որ Կրոտոս համալսարանին վերակացուն՝ ևայլ քառասուն անձինք՝ ատենակալաց՝ համալսարանին ու քաղաքացւոց մէջէն մէկ տեղ ժողված, և ամէնն ալ ձի հեծած կուգային ուրախութեան ձայնով մը զանիկայ դիմաւորելու ։ Էրֆուրթի բնակիչներուն մեծ մասը փողոցներուն մէջը լցուեցան, ու բարձր ձայնով իրենց ուրախութիւնը յայտնեցին ։ Շատ կըփափաքէին տեսնել այն զօրաւոր մարդը, որ համարձակեցաւ պապին դէմ պատերազմ բանալ ։

Քսանըութը տարեկան երիտասարդ մը՝ Յուստոս Յովնան անունով, աս ձիաւոր ընկերութեանը առջևէն կերթար ։ Աս Յովնանը՝ Էրֆուրթի մէջ իրաւագիտութիւնը սորվելէն ետքը, 1519ին համալսարանին վերակացու դրուեցաւ. և լուսաւորուելով աւետարանական լուսով,

որ ան ատենը ամէն տեղ կըտարածուէր , փափաքեցաւ աստուածաբան ըլլալու ։ Էրազմոս անոր գրեց , թէ "Ես անշուշտ կըհաւատամ որ Աստուած զքեզ ընտրեց իբրև գործիք մը , իր Որդւոյն Յիսուսի փառքը փայլեցընելու համար" * ։ Յովնանու բոլոր ուշադրութիւնը շարունակ Լուտերին ու Վիդդէմպէրկ քաղաքին վրայ էր ․ ու քանի մը տարի առաջ , երբոր տակաւին իրաւագիտութիւն դաս կառնէր , իր ժրաջան ու աշխատասէր բնութեամբը՝ մէկ քանի բարեկամներու ընկերութեամբ ճամբորդութիւն ըրաւ , և գողարինակ անտառներէն ու ժանտախտահար քաղաքներէն անցնելով , գնաց Էրասմոսին հետ տեսնուեցաւ , որ ան ատենը Պրուսէլի մէջ կընստէր ։ Հիմայ ասիկայ ուրիշ վտանգները արդեօք բանի մը տեղ կըդնէ՞ , Լուտերին հետ Վորմս երթալու և անոր ընկերակցութիւն ընելու համար ։ Ինծ փափաքով մը Լուտերէն աս շնորհքը խընդրեց , և ան ալ ընդունեց անոր խնդիրքը ։ Ասանկով իրար գտան ու միացան աս երկու վարդապետները , որոնք սահմանուած էին այնուհետև մէկ տեղ աշխատելու իրենց բովանդակ կենացը մէջ , եկեղեցւոյն նորոգութեանը ու Բարեկարգութեանը համար ։ Աստուածային՝ Նախախնամութիւնը Լուտերին քովը կըժողովէր ան մարդիկը՝ որ Գերմանիոյ լոյս պիտի ըլլային ․ ցի՝ Մելանգթոնի , Ամսդորֆի , Պուկէնհակէնի ու Յովնանի պէս մարդիկը ։ Յովնան՝ Վորմսէն ետ դառնալուն , Վիդդէմպէրկի եկեղեցւոյն մեծաւոր եղաւ , ու աստուածաբանութեան ալ դասատու ։ Լուտեր կըսէր թէ՝ "Յովնան անանկ մէկ մարդ մըն է որ անոր կեանքը սուղ գնով պէտք է գնել աշխարհիս վրայ պահելու համար" ։ Ինքը մէկ քարոզիչ մը անոր չափ աստուածատուր շնորհք չէ ունեցեր , իր ունկնդիրները համոզելու ու բոլորովին իրեն դարձընելու ։ Մելանգթոն կըսէր թէ՝ "Պոմերանոս † մեկնիչ է , ես տրամաբան եմ , բայց Յովնան է

* Erasm. Epp. V. 27.
† Տե՛ս երես 490

ատենաբանը ։ Խօսքերը պաշտպանելի գեղեցկութեամբ մը անոր շրթունքներէն կը բղխէին, և իր պերճախօսութիւնն ալ շատ զօրաւոր է. սակայն Լուտեր ամենէս գերազանց է"։ Կ'երեւի նոյն ժամանակին մէջն էր որ Լուտերին մէկ եղբայրը ու իր մանկութեան բարեկամներուն մէկը՝ եկան անոր ընկերակցութիւն ընելու ։

Էրֆուրթեան դիմաւորողները, թէ ձիաւոր և թէ հետի, Լուտերի կառքին չորս կողմը պաշարեցին, ու ասանկ քաղաքին դռնէն ներս մտան ։ Ան դրան առջեւը, ան հրապարակներուն ու փողոցներուն մէջը, ուր որ առաջ աս աղքատ կրօնաւորը շատ հեղ իր հացը մուրացեր էր, անհամար մարդիկ դիզուեր էին ու զանիկայ կը դիտէին ։ Լուտեր Օգոստինեանց վանքը իջաւ, ուր որ Աւետարանը իր սիրտը մխիթարեր էր ։ Լանժ զանիկայ սիրով և ուրախութեամբ ընդունեց. բայց քանի մը ծեր կրօնաւորներ Լուտերի երեսը չնայեցան, ու շատ պաղութիւն ցուցուցին ։ Ժողովուրդը կը փափաքէր անոր քարոզը լսելու. և թէպէտ քարոզ տալը անոր արգիլուած էր, բայց կայսերական դեսպանը հարկադրեցաւ անոր հրաման տալու ։

Նոր կիրակին օրը՝ Էրֆուրթի Օգոստինեանց եկեղեցին անհամար ժողովրդով լեցուած էր ։ Ասիկ ան եղբայրը՝ որ առտնօք դռները կը բանար ու եկեղեցին կալէր, ամպիոնը ելաւ և Աստուածաշունչ գիրքը բանալով՝ աս խօսքերը կարդաց.

"Խաղաղութիւնը ձեր հետը ըլլայ ։ Յիսուս աս խօսքը ըսելէն ետքը, իր ձեռուըները ու կողը ցուցուց անոնց. Յովհ. Ի. 19, 20 ։

"Ամէն փիլիսոփաները, վարդապետները ու գրագէտ մարդիկը, ըսաւ, ջանացին սորվեցընել՝ թէ մարդս ի՛նչպէս կրնայ յաւիտենական կեանքը վաստըկիլ. բայց ասոնց մէկը չկրցաւ աս բանը սորվեցընել ։ Ես հիմա զանիկայ ձեզի պիտի սորվեցընեմ"։

Ու որովհետև այսչափ դարերէն 'ի վեր ամենուն ալ

փնտռած բանը ասիկայ էր, աս պատճառաւ Լուսաբերին ունկնդիրները սկսան ուշադրութեամբ մտիկ ընելու :

«Երկու տեսակ գործք կամ արդիւնք կայ, շարունակեց Լուսաբեր . Գործք օտար՝ որոնք բարի են, և Գործք անձնական, որոնք բանի մը տեղ չեն սեպուիր : Մէկը եկեղեցի մը կըշինէ, մէկալը սուրբ Յակոբայ կամ սուրբ Պետրոսի ուխտ կերթայ . մէկալն ալ պահք կը բռնէ, աղօթք կընէ, գլուխը վեղար մը կանցընէ, բոկոտն կը քալէ . ուրիշ մըն ալ՝ ուրիշ զանազան գործեր կընէ : Բովանդակ աս գործերը ոչինչ են ու պիտի կորսուին . վասն զի մեր յատուկ գործերը բնաւ գին մը չունին : Ես հիմա ձեզի պիտի ցուցնեմ, թէ ճշմարիտ գործը ո՞րն է : Աստուած մէկ մարդ մը յարոյց, ո՞վ՝ զՏէր Յիսուս Քրիստոս, որ անիկայ զմահը ճաշակէ, մեղքը բնաջնջէ ընէ ու դժոխքին դռները գոցէ : Ահա փրկարար գործը ասիկայ է : Սատանան կարծեց թէ՝ Տէրը իրեն իշխանութեան տակը անցուցեր է, երբոր տեսաւ որ անիկայ երկու չարագործաց մէջ ամենադաժան ու ամօթալից չարչարանք կըքաշէ, և Աստուծմէ ու մարդոցմէ անիծուեր է . . . բայց Աստուած իր ամենակարող իշխանութեամբը՝ մահը, մեղքը ու դժոխքը ոչնչացուց . . . . :

«Քրիստոս յաղթեց : Ահա մեծ լուր և աւետիս . ու մենք անոր արդիւնքովը փրկուեցանք, և ո՛չ թէ մեր յատուկ գործքերովը : Պապը բոլորովին ասոր ներհակը կըզրուցէ ու կըսորվեցընէ : Բայց ես աս բանս ալ կը յայտնեմ, որ նոյն ինքն սուրբ Մայրն Աստուծոյ՝ ո՛չ թէ իր կուսութեամբը կամ իր մայրութեամբը՝ ոչ իր անարատութեամբը կամ բուն իր գործքերովը փրկուեցաւ, բայց միայն հաւատքով ու Աստուծոյ գործքովը . . . . .» :

Երբոր Լուսաբեր այսպէս քարոզ կուտար, մէկէն 'ի մէկ աղաղակ մը բրդաւ . վերնատուններուն մէկը դղրդեցաւ, և ամէնն ալ կարծեցին թէ վերնատունը պիտի կործանի, ու վար պիտի գայ անթիւ մարդոց ծանրութենէն : Ա-

պատճառաւ ունկնդիրներուն մէջը մէկ մեծ խառնակութիւն ու շփոթութիւն մը ինկաւ․ ոմանք կըփախչէին, ոմանք ալ վախերնուն կըդողդղային ։ Վարդապետը վայրկեան մը կանգ առաւ․ ետքը ձեռքը երկընցընելով՝ բարձր ձայնով մը ըսաւ․ “Ինչու մի՛ վախնաք, վտանգ մը չկայ․ Սատանան կաշխատի որ աս կերպով իմ աւետարանական քարոզութիւնս խափանէ, բայց պիտի չկարենայ բան մը ընել”։ Փախչողները աս հրամանը որ լսեցին, զարմանալով մը կանգ առին․ և բոլոր ժողովուրդը հանդարտելով՝ Լութեր շարունակեց իր խօսքը․ “Դուք գուցէ ինծի պիտի ըսէք թէ, դուն հաւատքի խօսքը մեզի շատ կըներես․ ուրեմն մեզի սորվեցուր, թէ ի՞նչպէս կընանք զանիկայ ստանալ ։ Աղէ՛կ․ ես յօժար կամօք զանիկայ ձեզի կըսորվեցընեմ ։ Տէրն մեր Յիսուս Քրիստոս ըսաւ թէ՝ Խաղաղութիւնը ձեր հետը ըլլայ, նայեցէ՛ք իմին ձեռքերս, ո՛վ նայէ՛ ո՞վ մարդ․ ես եմ, ես եմ միայն որ քու մեղքդ վերցուցի ու քեզ փրկեցի․ ու դուն հիմա խաղաղութիւն ունիս, կըսէ Տէրն մեր Յիսուս․․․, Ադամ ըսաւ ծառին պտուղէն չկերայ, ըսաւ Լութեր, դուք ալ չկերաք․ բայց Ադամայ մեղքը մեզի անցաւ, ու մենք ալ անմեղքը ընող եղանք ։ ‘Նմանապէս ես խաչի վրայ չարչարանք մը չքաշեցի, դուք ալ չարչարանք չքաշեցիք ։ Բայց Քրիստոս մեզի համար չարչարանք քաշեց․ մենք Աստուծոյ գործովը արդարացանք, և ո՛չ թէ մեր գործովը․․․ ։ Աս եմ քու արդարութիւնդ ու փրկութիւնդ, կըսէ Տէրն մեր․․․ ։ Հաւատանք Աւետարանին․ հաւատանք սրբոյն Պօղոսի, և ո՛չ թէ՝ պապերուն թղթոցը ու վճռոցը” ․․․ ։

Լութեր հաւատքը քարոզելէն ետքը իբրև պատճառ մեղաւորին արդարանալուն, գործքն ալ քարոզեց իբրև հետևութիւն և յայտարարութիւն փրկութեան ։

“Որովհետև Աստուած փրկեց զմեզ, ըսաւ, մեր գործը այնպիսի կարգի մէջ դնելու եմք, որ Աստուծոյ

համոյ ըլլայ : Թէ որ հարուստ ես, քու հարստութեանդ աղքատներուն օգնութիւն ընելու ես : Թէ որ աղքատ ես, քու ծառայութեանդ հարուստներուն օգնութիւն ընելու ես : Թէ որ քու աշխատութիւնդ միայն քեզի օգտակար է, ան ծառայութիւնը որ կըսես թէ Աստուծոյ կընեմ, սուտ է" :

Լուտեր աս քարոզին մէջը՝ իր վրայ բնաւ խօսք մը չըրուցեց . ո՛չ իր գտնուած վիճակին վրայ, ո՛չ Վորմսի վրայ, ո՛չ Կարոլոսի և ո՛չ պապին նուիրակներուն վրայ : Սկիզբէն մինչև վերջը միայն զՔրիստոս քարոզեց . և աս միջոցիս մէջը՝ որ բովանդակ աշխարհ իր վրայ կընայէր, անիկայ բնաւ զինքը չէր մտածեր ու բանի մը տեղ չէր դներ : Ահա Աստուծոյ ճշմարիտ ծառային նշանը ասիկայ է :

Լուտեր Էրֆուրթէն ելաւ, ու Կոթա քաղաքը հասնելով՝ հոն ալ նորէն քարոզ տուաւ : Միկոնիոս կըսէ թէ, "Երբ որ ժողովուրդը նոյն օրը քարոզէն ելաւ, սատանան եկեղեցիին դրանը վրայէն քանի մը քար վար գլորեց, որ երկու հարիւր տարիէ 'ի վեր տեղերնէն բնաւ չէին շարժեր" : Վարդապետը գնաց Բենեդիկտեանց վանքը պառկեցաւ Այնհարտսպրունին մէջ . և անկէց ալ ելաւ Իսէնաք գնաց, ու հոն հիւանդացաւ : Ամստորֆ, Յոնաս, Շուրֆ ու բոլոր իր բարեկամները իրար անցան . արիւն առին անկից և շուտով մը դեղեր ըրին : Քաղաքին դատաւորը՝ Յովհաննէս Օսվալտ՝ զօրացուցիչ դեղ մը առաւ բերաւ : Լուտեր զանիկայ խմեց, քնացաւ, ու քունէն ոյժ առնելով՝ հետևեալ օրը նորէն ճամբայ ելաւ :

Ամէն քաղաք, ամէն տեղ՝ ժողովուրդները փողոցներու մէջ կըլեցուէին տեսնելու համար զանիկայ, որ իր ճամբորդութեանը մէջ յաղթանակողի մը պէս կըքալէր ու առաջ կերթար : Ամէնն ալ աս մարդուն համարձակութեանը վրայ կըզարմանային . վասն զի պիտի երթար իր գլուխը կայսեր ու Տէրութեան առջևը դնէր :

Անհամար մարդիկ անոր չորս կողմը կըդիզուէին . և տեսակ տեսակ խօսքեր կըզրուցէին անոր : Ոմանք կըսէին, "Վա՜յ քեզ . Վորմսի մէջ այնչափ կարդինալներ ու եպիսկոպոսներ կան . . . քեզ ողջ ողջ կերեն , ու մարմինդ մոխիր կըդարձընեն , ինչպէս որ Յովհաննէս Հուսին ըրին" : Բայց կրօնաւորը բանէ մը չէր վախնար : "Թէ որ անոնք անանկ կրակ մը չինեն , ըսաւ , որ Վորմսէն մինչև Վիդդէմպերկ երկըննայ , ու մինչև երկինքը բարձրանայ , ես Աստուծոյ անուամբը ան կրակին մէջէն պիտի անցնիմ ու անոնց առջևը պիտի ելլեմ . ան Գաղանին բերանը պիտի մտնեմ , և անոր ակռաները պիտի կոտրեմ , և զՏէր Յիսուս Քրիստոս պիտի խոստովանիմ" *: Օր մը երբոր Լուտեր իջևանէ մը ներս մտեր էր , ու բազմամբոխ ժողովուրդը ըստ սովորութեան անոր բոլորտիքը լցուեր էր , մէկ զօրապետ մը անոր մօտեցաւ ու ըսաւ . "Աղեկօք դո՞ւն ես ան մարդը , որ կուզէ զպապականութիւնը բարեկարգել և ուղղել . . . : Դուն աս բանը ի՞նչպէս գլուխ պիտի տանիս" : Լուտեր պատասխան տուաւ . "Այո՛ , ես ան մարդն եմ . ես ամենակարող Աստուծոյն ապաւիներ եմ , և անոր Խօսքը ու պատուիրանքը իմ առջևս դրեր եմ" : Անատենը զօրապետին սիրտը կակղցաւ , և անուշ աչքով մը անոր նայելով ըսաւ . "Սիրելի՛ բարեկամ , ըսած խօսքդ շատ զօրաւոր խօսք է . ես Կարոլոսին ծառան եմ , բայց քու Տէրդ իմ տիրոջմէս մեծ է : Անիկայ քեզի պիտի օգնէ ու զքեզ պիտի պահէ" : Ահա այսպէս Լուտեր շարժեր էր հասարակութեան միտքը : Նոյն իսկ Լուտերին թշնամիները շատ կըզարմանային , երբոր անոր քովը բազմութիւնը կըտեսնէին : Վերջապէս Լուտեր վարդապետը , Ապրիլի 14ին՝ կիրակի օրը Ֆրանքֆորթ քաղաքը մտաւ :

Լուտերին ճամբորդութեան ու գալստեան լուրը արդէն

*Keil. 1. p. 98.

Ս օրմսի մէջ տարածուեր էր ։ Պապին բարեկամները չէին յուսար որ Լուտեր՝ կայսեր հրամանացը հնազանդի, և անոր հրաւէրը ընդունի ։ Ալպերտոս՝ Մայնցի արքեպիսկոպոս կարդինալը, իր բոլոր ունեցածը կուտար զանիկայ ճամբայէն ետ դարձընելու համար. աս պատճառաւ նորանոր հնարքներ ու նենգութիւններ գործածեց ։

Լուտեր Ֆրանքֆորթ քաղաքը հասնելով՝ հոն քիչ մը յոգնութիւն առաւ. ու ետքը իր մօտենալը Սպալատինին յայտնեց, որ անատենը կայսրընտրին հետ Ս օրմսի մէջ էր. ասկից զատ գիր մը չգրեց իր ճամբորդութեանը մէջ՝ "Կուգամ, կըսէր անոր, բայց սատանան շատ աշխատեցաւ որ զանազան հիւանդութեամբ զիս ճամբայէս ետ կայնեցընէ ։ Այզնաքէն մինչև հոս հիւանդ եկայ, և հիմայ ալ շատ տկար եմ ։ Լսեցի որ Կարոլոս հրովարտակ մը հրատարակեր է զիս վախցընելու համար. բայց Քրիստոս կենդանի է, ու մենք Ս օրմս պիտի մտնենք, դժոխքին ամէն դռներուն և օդային բոլոր իշխանութեանց դէմ դնելով*. վասն որոյ ինծի օթևան մը պատրաստէ ։"

Հետևեալ օրը Լուտեր գնաց այցելութիւն ընելու հըռչակաւոր Կուլիէլմոս Նեսսէին դպրատանը, որ անն ժամանակին երևելի աշխարհագիրն էր. ու դպրատան տղայոցը ըսաւ, "Աստուածաշունչ գիրքը կարդացէ՛ք, ու ճշմարտութիւնը փնտռեցէ՛ք"։ Ետքը իր աջ ձեռքը տղու մը վրայ՝ ու ձախն ալ ուրիշ տղու մը վրայ դնելով, բովանդակ դպրատանը օրհնութիւն մը տուաւ ։ Լուտեր տղաքը օրհնելով, ծերոց յոյս կուտար ։ Տարիքը առած որբեվարի և աստուածասէր տիկին մը՝ Կատարինէ Տը Հօլցհաուզէն անունով, Լուտերին քովը եկաւ ու ըսաւ. "Իմ հայրս ու մայրս ինծի իմացուցին, որ Աստուած մէկ մարդ մը պիտի հանէ, որ պապական սնափառութեանց դէմ պիտի դնէ, և Աստուծոյ խօսքը պիտի ա-

*L. Epp. 1, p. 987.

զատէ ։ Յուսամ թէ ան մարդը դուն ես ․ ու ես կըբա-րեմաղթեմ ու կըփափաքիմ որ Աստուծոյ շնորհքը ու նոյն ինքն Հոգին Սուրբ Աստուած՝ քու գործքդ յաջողէ ու յառաջ տանի"։

Բայց Ֆրանկֆորթի մէջ ամէնը աս մտքին վրայ չէին ․ Յովհաննէս Կոքլէոս՝ Սուրբ Մարիամի եկեղեցւոյն ա-թոռակալը՝ Հռովմէական եկեղեցւոյն բոլորովին սրտիւ հնազանդ եղող ու հաւատարիմ մարդոց մէկն էր ։ Երբոր տեսաւ որ Լուտեր Ֆրանքֆորթ եկաւ, ու անկից ալ Վորմս պիտի երթայ, իր վախը չկրցաւ զսպել ․ խորհե-ցաւ որ Եկեղեցին հաւատարիմ ու հնազանդ պաշտպան-ներու կարօտ է․ և թէպէտ զինքը Վորմս կանչող մը չկար, բայց Լուտեր Ֆրանկֆորթէն դուրս ելածին պէս՝ Կոք-լէոսն ալ անոր ետևէն գնաց ․ ու պատրաստ եմ, կըսէր, իմ կեանքս տալու, եկեղեցւոյն պատիւը ու փառքը պաշտ-պանելու համար*։

Պապին բարեկամացը մէջ շատ մեծ խռովութիւն ու վախ կար, քանզի հերետիկոսապետը կըհասնէր ․ ահա՛ օրէ օր ու ժամէ 'ի ժամ Վորմս քաղաքին կըմօտե-նար ․ և թէ որ ատիկայ Վորմսի մէջ մտնէր, անշուշտ ամէն բան պիտի կորսուէր ։ Ալէանդրոս արքեպիսկոպոսը, Կլապիոն խոստովանահայրը ու ամէն քաղաքագէտ մար-դիկ որ կայսրը պաշարեր էին, շատ մեծ շփոթութեան մէջ էին ։ Ի՞նչպէս ընեն որ Լուտեր Վորմս քաղաքը չմտնէ ․ զանիկայ կորսնցընելը՝ անկարելի բան էր, որով-հետև Կարոլոսէն ապահովութեան թուղթ առեր էր ։ Միայն նենգութեամբ կընային իրենց դիտաւորութիւնը առաջ տանիլ ։ Աստի աս հնարագէտ մարդիկը՝ շուտով մը հետևեալ որոգայթը լարեցին ։ Կլապիոն խոստովա-նահայրը ու Պօղոս ալ Արմստորֆ մեծ սենեկապանը՝ ար-

*Աս ան Կոքլէոսն է, որ մենք շատ հեղ անոր խօսքերը վկայութիւն կըբերենք ։

տորալով Մ օրմսէն ելան Լիւպէրնպուրկի բերդը գացին, որ տասը մղոնի չափ Մ օրմսէն հեռու էր. ու հոն Ֆրանչիսկոս Սիխինգէնի ասպետը կընստէր, որ ատենօք Լուտերին ապաստանարան մը նուիրած էր*: Բուկէր անունով նորահասակ Դոմինիկեան կրօնաւորը, որ առաջ Բալատինեան կայսրընտրին մատրանապետն էր, ու Հայտելպէրկի վիճաբանութեանը մէջ աւետարանական վարդապետութիւնը ընդուներ էր, ան օրերը՝ անիկայ ալ "ապաւէն և իջևան արդարոց" եղած աս բերդին մէջը կընստէր: Ասպետը հաւատոյ վերաբերեալ բաներուն տեղեկութիւն չունենալուն համար, դիւրաւ կրնար խաբուիլ. Բուկէրին բնութիւնն ալ խոստովանահօր կամացը կօգնէր, վասն զի խաղաղասէր բնութեան տէր մարդ մըն էր, ու հաւատոյ հիմնական նիւթերը՝ երկրորդական բաներէն որոշելով՝ միութեան և խաղաղութեան համար† զանոնք վերցնելը՝ իրեն կարելի ու պատշաճ կերևար:

Կարոլոսին սենեկապանը ու խոստովանահայրը սկսան իրենց խօսքը բանալ: Անոնք Սիխինգէնի ու Բուկէրի անանկ հասկըցուցին թէ, Լուտեր Մ օրմսի մէջ մտնելու ըլլայ նէ շատ գէշ կըլլայ իրեն. և թէ կայսրը պատրաստ է քանի մը գիտուն մարդիկ Էպէրնպուրկ խրկել, որպէս զի վարդապետին հետ վիճաբանութիւն ընեն հոն տեղը. ասպետին ըսին թէ՝ "Աս երկու իրարու հակառակ կողմն ալ քու պահպանութեանդ պիտի յանձնուին": Բուկէրին ալ ըսին, թէ՝ "Մենք բոլոր հարկաւոր բաներու մէջ Լուտերին կըհամաձայնիմք, միայն երկրորդական բաներուն վրայ է խօսքը. դուն ալ մեզի միջնորդութիւն ըրէ": Ասպետը ու Բուկէրը հաւատացին ասոնց. և խոստովանահայրը ու սենեկապանը շարունակեցին իրենց խօսքը Սիխինգէնին. "Պէտք է որ հրամանոցդ կողմանէ Լուտերին հրաւէր մը երթայ. և աս հրաւէրը Բուկէրը տանելու է":

*Տես երես 365--366 †M. Adam. Vit. Buceri, p. 223.

Ասպետը ու Բուկերը անոնց բոլոր առաջարկութիւննե-րը ընդունեցին ։ Բայց թէ որ Լուտեր դիւրահաւանու-թիւն ընելով, եղեր մինակ Էպերնպուրկ գար, և իր ապահովական թղթոյն որոշուած ժամանակը շուտ մը լմննար, ան ատենը անոր ո՞վ պաշտպանութիւն պիտի ըներ ։

Այս միջոցիս Լուտեր Օբբէնհէյմ հասեր էր, և իր ապահովական թղթոյն պայմանեալ ժամանակին՝ երեք օր մնացեր էր. տեսաւ որ խումբ մը ձիաւորներ կուգան կը մօտենան, և իսկոյն ճանչցաւ անոնց առջևէն եկող Բու-կերը, որուն հետ Հայտէլպէրկի մէջ այնպիսի մտերմա-կան ու ընտանեկան խօսակցութիւններ ըրեր էր*։ Բու-կեր բարևեց զանիկայ. և առաջին բարեկամական խօսակ-ցութիւնները ընելէն ետքը, ըսաւ. "Ասոնք Ֆրանչիսկոս Սիկինգէն ասպետին ձիաւորներն են. անիկայ զիս քեզի ղրկեց, որպէս զի քեզ առնեմ իրեն ամուր բերդը տա-նիմ ։ Կայսեր խոստովանահայրը կըփափաքի քեզի հետ խօսակցութիւն մը ընելու ։ Անիկայ Կարոլոսին հետ շատ մեծ բարեկամութիւն ունենալուն համար, ամէն բան կրնայ յարմարցընել և 'ի կարգի դնել. բայց դուն Աղէանտէրէն հեռու կեցիր"։ Բուկեր աս խօսքով կըբռնադատէր զԼուտեր։ Յոփեան, Ամստորֆ և Շուրֆ տարակուսի մէջ մնացին. բայց Լուտեր առանց տարակու-սելու, Բուկերին ասանկ պատասխան տուաւ. "Ես իմ ճամբաս կըշարունակեմ. ու թէ որ կայսեր խոստովանա-հայրը ինծի ըսելիք մը ունի, թող Վորմս քաղաքը գայ ու հոն ինծի հետ տեսնուի ։ Ես ուր որ կոչուեցայ նէ՝ հոն պիտի երթամ"։

Բայց 'ի վերայ այսր ամենայնի, Նոյն ինքն Սպալատին սկսաւ խռովիլ ու վախնալ. վասն զի Վորմսի մէջ Բարեկար-

*Տե՛ս երես 192 ։

գուժեան թշնամիներէն պաշարուած ըլլալով , շարունակ անոնց բերնէն կըլսէր , թէ հերետիկոսի մը ապահովական թուղթը բնաւ պէտք չէ՛ պատուել . և աս պատճառաւ սիրտը դողի մէջ էր իր բարեկամին համար : Երբ որ Լութեր քաղաքին մօտեցաւ , դեսպան մը զանիկայ դիմաւորեց . ու Սպալատինին կողմանէ անոր ըսաւ . "Չըլլայ որ Ուօրմսի մէջ մտնես" : Այսպէս իր լաւագոյն բարեկամը , կայսրընտրին մտերիմ խորհրդակիցը , նոյն ինքն Սպալատին սասանկ խրատ կուտար : Բայց Լութեր անդրդուելի կերպով մը դեսպանին երեսըն նայեցաւ ու պատասխան տուաւ . "Գնա՛ քու տիրոջդ զրուցէ որ եթէ Ուօրմսի մէջ այնչափ սատանաներ ըլլան , որչափ որ տանիքներուն վրայ կղմինտր կայ , այսու ամենայնիւ ես Ուօրմս պիտի մտնեմ" * : Լութեր մինչև ան վայրկեանը գուցէ այսպիսի մեծութիւն մը բնաւ չէր ցուցըցած : Դեսպանը Ուօրմս դարձաւ , ու աս զարմանալի պատասխանը բերաւ : Լութեր մեռնելէն քանի մը օր առաջ ըսաւ . "Այն ատենը քաջասիրտ էի , ու բանէ մը չէի վախնար : Աստուած կարող է մարդուս այնպիսի համարձակութիւն ու յանգգնութիւն մը տալու : Չեմ գիտեր , թէ արդեօք հիմայ այնչափ ազատութիւն և ուրախութիւն պիտի ունենա՞մ" : Մատթեսիոս անոր աշակերտը կըսէ թէ՝ "Երբոր փաստը բարի է , մարդուս սիրտը՛ կըմեծնայ ու համարձակութիւն և ոյժ կունենան՝ թէ աւետարանիչները և թէ զինուորները" :

*Wenn so viel Teufel zu Worms wæren, als Ziegel auf den Dæchern, noch wolt Ich hinein! (L. Opp. (L.) XVII, p. 587.)

## ՀԱՏՈՒԱԾ Ը

'Ի ՎԵՐՋՈՅ Ապրիլի 16ին, առաւօտուն Լութեր ան հին քաղաքին պարիսպները տեսաւ։ Ամէնը անոր կըսպասէին, ու միայն զանիկայ կըխորհէին։ Ազնուական երիտասարդները չկրցան համբերել. Բեռնարդոս Տը Հիրշֆելտը, Ալպէրտ Տը Լինտէնօն, վեց ասպետներ և ուրիշ իշխանաւոր մարդիկ, ընդ ամէնը հարիւրի չափ ժողովեցան, ինչպէս որ Գալլավիչինի կըպատմէ. ու ձիու վրայ հեծած զանիկայ դիմաւորեցին, որ քաղաքը մտած ատենը անոր ընկերակցութիւն ընեն։ Լութեր քաղաքին կըմօտենար. կայսերական դեսպանը՝ իր պաշտօնին նշանազգեստը հագած ու ձիու վրայ նստած, անոր առջևէն կերթար։ Անոր ետևէն կերթար Լութեր՝ իր պարկեշտ կառքովը։ Լութերի ետևէն ալ Յոնաս կերթար ձիով. և ասպետներն ալ կառքին չորս կողմը պաշարեր էին. նաև անհամար ժողովուրդ դռներուն առջևը դիզուած անոր կըսպասէին։ Առաւօտեան տասներորդ ժամուն, Լուտեր աս քաղքիս դռնէն ներս մտաւ, ուրկից մէկ մըն ալ անոր դուրս ելլելը՝ շատ մարդիկ գուշակեր էին. և ահա հիմա Լութեր Վօրմսի մէջ էր։

Փողոցներուն մէջ՝ երկու հազար մարդ՝ մեծահամբաւ Վիդդեմպէրկի միաբանին ընկերակցութիւն կընէին. և ամէնն ալ վազելով կուգային որ զանիկայ տեսնեն. հետըզհետէ բազմութիւնը կաւելնար։ Երբոր կայսրը աս քաղաքը մտաւ, այսչափ մարդ մէկ տեղ չժողվեցաւ։ Պատմիչ մը կըգրէ թէ՝ նոյն միջոցին բազմութեան մէջէն յանկարծ մարդ մը ելաւ նորաձև զգեստներ հագած, ու

ձեռքն ալ մէկ մեծ խաչ մը բռներ էր, ինչպէս որ սովորաբար մեռելոց Թաղման հանդէսին մէջը կըգտնուի. և Լութերի մօտենալովը՝ մէկ բարձրաձայն, ողորմագին ու ներդաշնակաւոր եղանակով մը, որով ննջեցելոց պատարագները կըզըրուցուին, աս յետագայ Լատինական խօսքը երգեց՝ իբր մեռելոց կողմանէ.

Advenisti, o desiderabilis !
Quem expectabamus in tenebris !

Բարով եկար ո՛վ մարդ, որուն կըցանկայինք
Ու գերեզմանաց խաւարին մէջը կըսպասէինք.

Այսպէս Լութերի գալստեան հանդէսը՝ իբր թէ ննջեցելոց շարականով կատարուեցաւ։ Ասիկայ Պավիէրայի դուքսին ծաղրածու միմոսն էր, որ այսպէս՝ Լութերին մէկ իմաստալից ու հեգնական ազդարարութիւն մը կընէր։

Լութեր իրեն ընկերող ու հետևող ձիաւորներովը՝ ան բազմաթիւ ժողովրդեան մէջէն խիստ դժուարաւ կանցնէր։ Վերջապէս կայսերական դեսպանը՝ Հռոդոսի ասպետաց իշխանին առջևը կայնեցաւ։ Կայսրընտրին երկու խորհըրդականները, Փրիդերիկոս Տը Թունը, ու Փիլիպպոս Տը Ֆէլիթզքը, ու նաև Տէրութեան մարաջախտը Ուլրիք Տը Պաբէնհէյմը հոն կընստէին։ Լութեր կառքէն վար ինջաւ. ու ոտքը գետնին վրայ դրած ատենը ըսաւ. "Աստուած ըլլայ իմ պաշտպանս"*։ Քանի մը տարիէն ետքը Լութեր աս անցքը յիշելով այսպէս կըսէր. "Ես գոց կառքով ու կրօնաւորական հագուստով Վորմս քաղաքը մտայ. և ահա ամէնը փողոցներու մէջ կըվազէին, ու կուզէին Մարտինոս միաբանը տեսնել" †։

Լութերի գալստեան լուրը խիստ զարմացուց թէ Սաքսոնիայի կայսրընտիրը և թէ Ալէանտէրը. Նմա-

* Pallavicini, I. p. 144. † Opp. XVII. p. 587.

նապէս Նորահասակ ու վայելչաձև Ալպերտոս արքեպիսկոպոսը՝ որ աս երկու կողմին միջին ճամբան բռներ կերթար ։ Ասիկայ Լուտերի չափազանց յանդգնութենէն տակնուվրայ եղաւ ։ “Թէ որ ես իրմէն աւելի համարձակութիւն չունենայի , ըսաւ Լուտեր , արդարև զիս Վորմսի մէջ բնաւ պիտի չտեսնէին”։

Կարոլոս Ե իսկոյն իր խորհրդականները կանչեց ։ Կայսեր խիստ մտերիմ խորհրդականները շուտով մը եկան պալատը գացին . վասն զի վախերնուն կըդողային ։ “Լուտեր եկաւ , ի՞նչ պէտք է ընել” ըսաւ կայսրը ։ Մօտօ անունով Պալերմոյի եպիսկոպոս ու Ֆլանտրաց ատենադպիրը աս պատասխանը տուաւ . “Մե՛նք աս բանիս վրայ շատ խորհուրդներ ըրեր ենք . պէտք է որ՝ ձեր Կայսերական վեհափառութիւնը շուտով մը աս մարդուն կեանքը՝ վերցընէ ։ Սիգեսմունդ՝ այրել չտուա՞ւ արդեօք Յովհաննէս Հուսը ։ Դուն պարտական չես մէկ հերետիկոսի մը ո՛չ ապահովական թուղթ տալու , և ո՛չ ան թուղթին խօսքը կատարելու”։ “Չէ՛ չէ՛ , ըսաւ Կարոլոս , ինչ որ խօսք տուինք նէ , պէ՛տք է որ զանիկայ կատարենք”։ Ան ատենը հարկադրեցան որ Բարեկարգողը կայսեր առջևը հանեն ։

Երբ որ մեծերը՝ Լուտերին համար մտատանջ շփոթութեան մը մէջ ինկեր էին , շատ մարդիկ ալ Վորմսի մէջ կուրախանային , որ վերջապէս արժանի եղան Աստուծոյ մեծապայծառ ու հաւատարիմ ծառան տեսնելու ։ Շատ ուրախացողներուն մէկն ալ Կապիտոնն էր , Մայնցի արքեպիսկոպոսին մատրանապետը ու խորհրդականը ։ Աս երևելի մարդը , որ քիչ մը առաջ Հելվետիայի մէջ շատ ազատութեամբ Աւետարանը քարոզեր էր , ան միջոցին պատշաճ տեսաւ որ իր ունեցած պաշտօնին յարմար միջակ ճամբայ մը բռնէ , որուն համար Աւետարանականներէն իբրև երկչոտ կըբամբասուէր , ու Հռովմէականներէն

Այս միջոցիս՝ բազմաթիւ ժողովուրդ Վորմս քաշուած իջևանին առջևը անդադար կըդիմէին, որ Լութերը տեսնեն ։ Ոմանք զանիկայ կըհամարէին իբրև սքանչելիք իմաստութեան, և ոմանք ալ իբրև հրէշ անիրաւութեան ։ Առջի բերանը անոր քովը մարդ չգնաց, որ ան յոգնութիւն առնէ և իրեն խիստ մտերիմ բարեկամներուն հետ տեսնուի ։ Բայց իրիկուն եղածին պէս՝ կոմսերը, պարոնները, ասպետները, ազնուականները, եկեղեցականները ու շատ քաղաքացիք ալ արտորացին անոր քովը երթալու ։ Ամէն մարդ՝ նաև իր մեծ թշնամիներն ալ, կըզարմանային անոր համարձակ շարժուածքին վրայ, անոր ուրախութեանը և քաջալերութեանը վրայ. անոր ազդու խօսակցութեանը՝ ու վսեմ և եռանդուն ոգիին վրայ, որոնք աս աղքատիկ միաբանին անյաղթելի զօրութիւն ու ոյժ մը կուտային ։ Ոմանք կըսէին՝ թէ աս զօրութիւնը Աստուածային շնորհք մըն է, որ աս մարդուս վրայ կերևայ. բայց պապին բարեկամները բարձր ձայնով կաղաղակէին, թէ անիկայ սատանային հետ մէկ եղեր է*։ Այնչափ մարդիկ հետզհետէ Լութերի այցելութեան եկան որ մինչև շատ ուշ ատեն չկրցաւ քնանալ ։

Հետևեալ օրը՝ որ չորեքշաբթի էր, ու Ապրիլի 17, առաւօտուն Տէրութեան ժառանգաւոր Մարաջախտը՝ Ուլրիկ Տը Բափէնհէյմը եկաւ պատուիրեց Լութերի, որ կէս օրէն ետև ժամը 4ին՝ Մեծափառ կայսեր ու Տէրութեան իշխանաց առջևը ելլէ ։ Լութեր աս հրամանը՝ խորին յարգութեամբ ընդունեց ։

Այսպէս ահա ամէն բան պատրաստ էր հիմա, ու Լութեր՝ Յիսուսի Քրիստոսի համար, աշխարհիս ամենէն մեծ ու օգոստափառ ժողովին առջևը պիտի ելլէր ։ Բայց քաջալերական մխիթարութիւնները անոր պակաս չէին. վասն զի եռանդուն Ուլրիք Հութթընցի ասպետը, ան

Pallavicini. I. p. 114.

որերը Էպէրնպուրկի բերդին մէջ էր . ու չկրնալով Որմս քաղաքը երթալ , (ըստ որում Լէոն Ժ՝ Կայսրոսին աղաչեր էր , որ անոր ձեռքը և ոտքը կապէ ու անանկ Հռովմ քաղաքը խրկէ ,) ուզեց որ գէթ ան տեղէն Լուտերի բարեկամական ձեռնտուութիւն մը ընէ . ուստի Ապրիլի 17ին ասանկ գրեց անոր . "Նեղութեանդ օրը Տէրը պատասխանէ քեզի , Յակոբայ Աստուծոյն անունը քեզ պաշտպանէ : Օգնութիւն խրկէ սուրբ տեղէն , ու Սիոնէն զօրացունէ քեզ : Քու սրտիդ պէս քեզի տայ , ու քու ամէն խորհուրդներդ կատարէ : Սաղմ. Ի : Ո՜վ սիրելի Լուտեր , իմ յարգապատիւ հայրս . . . բնաւ մի՛ վախնար այլ քաջ եղիր : Չարերուն խորհուրդը՝ զքեզ պաշարեր է . ու մինչդեռ առիւծներու պէս բերաննին քեզի դէմ բացեր են : Բայց Տէրը ոտք պիտի ելլէ , ամբարիշտներուն դէմ պիտի դնէ , ու զանոնք պիտո՛ ցրուէ : Ուրեմն դուն Քրիստոսի համար ուժով պատերազմէ՛ , ինչպէս որ ես ալ քաջասրտութեամբ պիտի՛ պատերազմիմ : Երանի՛ թէ ինծի թող տային գալու ու տեսնելու՝ թէ ինչպէս անոնք իրենց երեսը կըթթուեցընեն : Բայց Տէրը պիտի մաքրէ իր այգին , որն որ անտառին խոզը ապականեց . . . Քրիստոս զքեզ պահպանէ" : Հութթընին չկրցած բանը Պուցէրը ըրաւ . անիկայ ելաւ Էպէրնպուրկէն Որմս եկաւ , ու իր բարեկամէն բնաւ չզատուեցաւ , որչափ որ անիկայ Որմսի մէջ նստաւ :

Բայց Լուտեր միայն Աստուծոյ ապաւիներ էր , ու մարդոցմէ բնաւ օգնութիւն մը չէր փնտռեր : Ապրիլի 17ին՝ չորեքշաբթի առաւօտուն , Լուտեր սրտին մէջը խռովութիւն ու շփոթութիւն մը զգաց , որ Աստուծոյ երեսը իրմէն ծածկուած ու փարագուրուած էր : Իր հաւատքը տկարացաւ , իր թշնամիները իր աչքին առջևը բազմապատկեցան , երկիւղ մը եկաւ վրան , և իր հոգին նմանեցաւ նաւու մը՝ որ սաստիկ փոթորիկէն ծովուն վրայ կըշարժի ու կըտատանի , խոր անդունդը կիջնայ , ետքն ալ նորէն մինչև

երկինքը կը բարձրանայ ։ Այսպիսի դառնակսկիծ ցաւոց ժամուն մէջը, երեսը գետնի վրայ ինկելով՝ աս միջահատեալ խօսքերը զրուցեց, որ մէկ մարդ մը զանոնք չկրնար աղէկ մը հասկընալ, թէ որ իր աչքին առջեւը չբերէ ան վշտաց խորութիւնը, ուս՛կից որ անոնք մինչեւ Աստուծոյ առջեւը կելլէին ։

“Ով ամենակարող Աստուած, ո՛վ յաւիտենական Աստուած. ո՞րչափ սոսկալի է երբ աշխարհս. ի՞նչպէս անիկայ իր բերանը բացեր է որ զիս կլլէ ։ Ինչո՞ւ համար իմ հաւատքս ու յոյսս այսչափ պակսեցաւ ։ Մարմինը ո՞րչափ տկար է, ու սատանան ո՞րչափ զօրաւոր է ։ Թէ որ աշխարհիս մէջ զօրաւոր սեպուած մարդուն վրայ յոյս դընելու եմ նէ, իմ բանս լմնցած է . . . Վճիռը որոշուեցաւ, դատաստանը կտրուեցաւ . . . ։

“Ով Աստուած, ո՛վ Աստուած . . . ո՛վ դուն իմ Աստուածս . . . դուն ինծի օգնէ, ու բոլոր աշխարհիս իմաստութիւններուն դէմ դիր ։ Ըրէ աս բանը, պէտք է որ ընես . . . դու միայն . . . վասն զի աս գործը իմս չէ, քուկդ է ։ Ես աս տեղս ընելու գործ մը չունիմ . ես աշխարհիս աս մեծերուն հետ կռուելու պատճառ մը չունիմ ։ Ես աղէկ կուզէի երջանիկ ու հանգիստ օրեր անցընել ։ Բայց աս դատը քուկդ է . . . արդար ու յաւիտենական դատ մըն է ։

Ով Տէր, ինծի օգնական եղիր ։ Ով հաւատարիմ Աստուած, ո՛վ անփոփոխ Աստուած ։ Ես իմ յոյսս մարդու վրայ դրած չեմ, վասն զի պարապ բան է . մարդուս ամէն գործը անհաստատ ու տկար է ։ Ով Աստուած, ո՛վ Աստուած, չե՞ս լսեր արդեօք . . . Աստուած իմ մեռա՞ր ես արդեօք . . . ։ Ոչ՛, չէ՛, դուն չես կրնար մեռնիլ . դու միայն զքեզ կը ծածկես ։ Դուն զիս ընտրեցիր աս գործիս համար, գիտեմ . . . ուրեմն՝ աս գործը դուն առաջ տար ։

“Ով Աստուած, դուն իմ քովս կեցիր քու սիրելի Որդւոյդ Յիսուս Քրիստոսի անուանը համար, որ իմ պաշտպանս, իմ վահանս ու իմ ապաւէնս է” ։

Վայրկեանի մը չափ-լուռ կենալով՝ իր մտատանջ խոր-հուրդներուն հետ կռուելէն ետքը , այսպէս շարունակեց .

“Տէ՛ր , դուն ո՞ւր կըկենաս . . . : Ով Աստուած իմ , ո՞ւր ես դուն . . . : Եկո՛ւր , եկո՛ւր ես պատրաստ եմ . . . պատրաստ եմ աս կեանքս թողուլ քու ճշմարտութեանդ համար , . . . համբերելով իբրև գառն : Վասն զի դատը արդար ու ուղիղ է , և քուկդ է . . . : Ես բնաւ զիս պիտի չզատեմ քեզմէ , ոչ հիմա՝ և ոչ բոլոր յաւիտենականու-թեան մէջը . . . : Թէև որ աշխարհս սատանաներով լցուի և իմ մարմինս՝ որ քու ձեռացդ գործն է , սպաննուի , ա-նիւի վրայ տարածուի կտոր կտոր ըլլայ , . . . ու այրելով մոխիր դառնայ . . . տակաւին իմ հոգիս քուկդ է : Այո՛ . ա-սանկ է . ու աս բանիս համար՝ քու խօսքդ ինծի երաշխա-ւոր է : Իմ հոգիս քուկդ է , ու մշտնջենապար քու քովդ պիտի բնակի . . . ամէն . . , Ով Աստուած , ինծի օգնէ՛ . . . ամէն'' :

Աս աղօթքը՝ զԼուտեր և զԲարեկարգութիւնը կըբացա-տրէ : Պատմութիւնը հոս սրբարանին վարագոյրը վեր կըվերցընէ , ու մեզի կըցուցընէ այն ծածուկ տեղը , ուր որ զօրութիւն ու քաջասրտութիւն տրուեցաւ աս խոնարհ ու խաղաղասէր մարդուն , որ Աստուծոյ գործիքը եղաւ՝ մար-դոց հոգւոյն ու մտացը ազատութիւն ու համարձակութիւն տալու , ու նոր ժամանակ մը սկսանելու : Այսպէս կիմա-ցուի Լուտեր ու Բարեկարգութեան գործը . այսպէս յայտ-նի կըլլայ անոնց ներքին զօրութիւնը ու իշխանութիւնը ուսկի՞ց ու ի՞նչ բանի վրայ ըլլալը : Աս աղօթքը՝ որ զինքը ճշմարտութեան զոհ ընող մարդուն բերնէն ելաւ , Լու-տերին Վորմսի ճամբորդութեանը ժողովածոյ գրքին մէ-ջը կըգտնուի , ժզ յօդուածին մէջը , ապահովական թըղ-թերու , և ուրիշ այսպիսի գրուածներու հետ : Անտարա-կոյս անոր բարեկամներուն մէկը՝ իր բերնէն աս աղօթքը լսեր ու գրեր է , որպէս զի անկորուստ պահուի ու մեզի հասնի . և անշուշտ աս աղօթքին թուղթը՝ հին մատեան-

ներուն մէջ խիստ պատուականներէն մէկը սեպուելու է ։

Չորրորդ ժամը զարկաւ, ու տէրութեան մարաջախտը եկաւ երեցաւ Լուտերի. և ան ալ անմիջապէս պատրաստեցաւ անոր հետ երթալու ։ Աստուած անոր աղօթքը ընդուներ էր. ու իջեւանէն դուրս ելլելուն՝ սիրտը հանգիստ էր ։ Ամենէն առաջ կայսերական դեսպանը կերթար. անոր ետեւէն տէրութեան Մարաջախտը. ու անկից ետքը Բարեկարգողը ։ փողոցներուն մէջ լցուած բազմութիւնը՝ առջի իրիկուընէ շատ աւելի էր ։ Անկարելի էր բազմութեան մէջէն անցնիլ ու առաջ երթալ. և պարապ տեղը կըկանչուըռտէին թէ՝ ճամբայ բացէ՛ք. վասն զի բազմութիւնը հետզհետէ կաւելնար ։ Վերջապէս կայսերական դեսպանը երբոր տեսաւ որ առաջ երթալը ու ժողովարանը հասնիլը անհնարին բանէ, մասնաւոր տուներ բանալ տուաւ. ու Լուտերը՝ պարտէզներուն ու ծածուկ ճամբաներուն մէջէն մինչև ժողովքին տեղը տարաւ * ։ Ժողովուրդը աս բանը իմանալով՝ անմիջապէս Վիգգեմայերկի միաբանին ետեւէն ան տուները մտան, ու պարտէզներու վրայ նայող պատուհաններուն առջեւը նստան. շատերն ալ տանիքներուն վրայ ելան ։ Անանկ եղաւ որ թէ տները, թէ տանիքները և թէ փողոցները, ՚ի զնին կեցողներու բազմութեամբը լեցուեցաւ ։

Վերջապէս ժողովարանը հասան. բայց բազմութեան պատճառաւը, թէ Լուտեր և թէ անոր ընկերութիւն ընող մարդիկը չէին կրնար դռնէն ներս մտնել ։ Կայսերական զինուորները անդադար կըպոռային՝ Տե՛ղ բացէք, տե՛ղ բացէք ։ Բայց մարդ մը չէր ուզեր իր տեղէն շարժիլ ։ Ան տանը բռնութեամբ ճամբայ բացին զինուորները, ուսկից անցաւ Լուտեր. ու երբոր ժողովուրդն ալ ուզեց անոր ետեւէն ներս մտնել, զինուորները անոնց դէմ կեցան, ու իրենց նիզակովը արգիլեցին ։ Լուտեր ժողովարանը մտնե-

* L. Opp. XVII, p. 574.

լէն ետքն ալ դժուարութեամբ յառաջ կերթար . քանզի հոն ալ ժողովուրդ լցուած էր ։ Պատմաբանականներուն առջևը՝ հինգ հազարէն աւելի մարդ կար՝ Գաղղիացի , Իտալացի , Սպանիացի և ուրիշ զանազան ազգեր ։ Վերջապէս երբոր ան դուռնը մտեցաւ , որ անկէց դատաւորաց առջևը պիտի ելլէր , հոն մէկ քաջ սպայ մը հանդիպեցաւ , ըմ՝ մեծանուն Գէորգ Տը Ֆրէունտսպէրկ հազարապետին , որ չորս տարիէն ետքը Գերմանացի զօրաց հետ Փավիայի պատերազմական դաշտին մէջ , Գաղղիացւոց բանակին վըրայ յարձակեցաւ , ու զանիկայ Թէսսին գետին մէջ ձգելով՝ գրեթէ ինքը եղաւ պատճառ Գաղղիոյ թագաւորին գերութեանը ։ Աս ծեր հազարապետը՝ երբոր Լուտերին անցնիլը տեսաւ , ձեռքը անոր ուսին վրայ դրաւ , ու պատերազմներու մէջ ճերմկցած գլուխը շարժելով՝ քաղցրութեամբ ըսաւ անոր . "Խե՛ղճ կրօնաւոր , ողորմելի՛ կըրօնաւոր , քու ընելու ընթացքդ ու պատերազմդ այնչափ զարմանալի է՝ որ թէ ես և թէ ուրիշ շատ զօրապետներ՝ մեր խիստ մեծ ու արիւնաթաթաւ պատերազմներուն մէջը անոր նմանը բնաւ տեսած չենք ։ Բայց թէ որ քու դատդ արդար է , ու դուն անոր վրայ բնաւ երկբայութիւն մը չունիս , Աստուծոյ անունովը առաջ գնա , ու բանէ մը մի՛ վախնար . Աստուած զքեզ չթողուր"։ Ահա սուսերամարտ կըտրիճ զօրապետը՝ վեհանձն ու քաջասիրտ կրօնաւորին այսպիսի գովեստ մը տուաւ ։ "Իր սրտին տիրող ու յաղթող մարդը՝ քաղաքներ առնող մարդէն մեծ է , ըսաւ Սողոմոն"։ Առակ․ ժզ․ 32 ։

'Ի վերջոյ դատաւորաց սենեակին դռները բացուեցան . Լուտեր ներս մտաւ , ու խել մը մարդիկ որ դատաւորաց ժողովէն չէին , անոնք ալ անոր ետևէն ներս մտան ։ Բնաւ մէկ մարդ մը՝ այսչափ մեծ ու օգոստափառ ժողովի մը առջևը ելած չէր ։ Քանզի հոն կային հինգերորդ Կարոլոս կայսրը , որուն թագաւորութիւնը հին և նոր աշխարհիս մէջը կը տիրէր . անոր եղբայրը՝ Արշիդուքս Ֆերտինանտո-

մը ․ Տէրութեան վեց կայսրընտիրները , որոնց յաջորդ-թիւնները գրեթէ ամէնն ալ հիմա թագաւոր են ։ Բրանսը-չորս դուքս , որոնց շատերը մեծ կամ միջակ գաւառ-ներու վրայ կըհրամայէին ․ և մէկ քանիին անունը՝ ժա-մանակէ մը ետքը Բարեկարգութեան խիստ սոսկալի ե-րևնալու էին ։ Ալպայի դուքսը ու անոր երկու որդիքը ․ ու-թը իշխանաւոր անձինք , երեսուն արքեպիսկոպոսներ , եպիսկոպոսներ կամ առաջնորդներ ․ եօթը դեսպաններ , որոնց երկուքը Անգղիոյ ու Պողղիոյ դեսպաններն էին ․ տասն ազատ քաղաքաց փոխանորդներ , խիստ շատ իշ-խաններ , կոմսեր ու մեծամեծներ ․ պապին նուիրակնե-րը , ամէնը մէկ տեղ 204 հոգի ։ Ահա Մարտինոս Լուտեր՝ այսպիսի ահեղ ատեանի մը առջևը ելաւ ։

Լուտերին այն ժողովին ներկայանալը՝ արդէն պապակա-նութեան դէմ պայծառ յաղթութիւն մը սեպուելու է ։ Պապը աս մարդը դատապարտեր էր , և ահա կայսերական ատեանը՝ պապին դատապարտածը նորէն քննել ուզելով , մեծ անարգանք կընէր Հռովմայ սրբազան վճռոյն ։ Պա-պը զանիկայ արգիլեր ու բոլոր մարդկային ընկերութենէն զատեր էր , և ահա պատուական հրաւէրքով կըկոչուէր ու կընդունուէր , աշխարհիս խիստ վսեմ ու գերապանծ ժողո-վին մէջը ։ Պապը հրամայեր էր որ Լուտերին բերանը բը-նաւ չբացուի , բայց անիկայ բերանը պիտի բանայ հիմա հազարաւոր ունկնդիրներուն առջևը , որ բոլոր Եւրոպա-յի հեռաւոր քաղաքներէն ժողուեր էին ։ Լուտեր ասան-կով պապին հրամանը բոլորովին տակն ու վրայ ըրաւ ։ Հը-ռովմայ քահանայապետը իր աթոռէն վար կիջնար ․ ու զա-նիկայ իջեցընողը՝ աղքատին միաբանի մը խօսքն էր ։

Իշխաններէն մէկ քանին երբոր տեսան որ Մանսֆելտի հանքագործին խոնարհ զաւակը՝ աս թագաւորական ժո-ղովին առջևը քիչ մը խռովեր ու պլլայեր է , քաղցրու-թեամբ մը անոր քովը գացին , ու մէջերնուն մէկը անոր ըսաւ ․ "Մի վախնար բնաւ անոնցմէ , որոնք միայն մար-

մինը կրնան սպաննել, ու հոգին չեն կրնար սպաննել": Մէկ ուրիշ մըն ալ ըսաւ. "Երբոր զձեզ թագաւորաց առջեւը տանելու ըլլան, ձեր Հօրը Հոգին ձեր բերնովը պիտի խօսի" *: Մատթ. Ժ. 20, 28: Այսպէս՝ Տէրն մեր Յիսուս Քրիստոս, իր խօսքերը աշխարհիս զօրաւորաց բերանը դնելով՝ կըմխիթարէր զԼուտեր:

Ասոր միջոցին՝ պահապան զինուորները Լուտերին տեղ բանալ կուտային. Լուտեր առաջ գնաց ու Հինգերորդ Կարոլոսին աթոռին առջեւը կայնեցաւ: Ամէնը անոր վրայ կընայէին: Այն ժամուն ընդհանուր հանդարտութիւն մը ու մեծ լռութիւն մը եղաւ: Առաջախօսը Լուտերին ըսաւ թէ՝ "Մինչեւ որ քեզի բան մը չհարցընեն, դուն բան մը չխօսիս": Ասանկ ըսելէն ետքը՝ անոր քովէն զատուեցաւ:

Մէկ վայրկեանի չափ խորունկ լռութիւն ըլլալէն ետքը՝ Թրեվիրզի Արքեպիսկոպոսին ատենադպիրը՝ Յովհաննէս Էք, Ալէանտէրին բարեկամը (որն որ համանուն աստուածաբանէն որոշել պէտք է) ոտք ելաւ, ու բարձր ձայնով մը ասանկ զրուցեց, նախ՝ Լատիներէն, ետքն ալ Գերմանական լեզուով. "Ո՜վ Մարտինոս Լուտեր. սուրբ և անյաղթ կայսերական վեհափառութիւնը զքեզ իր աթոռին առջեւը կանչեց՝ Հռովմէական սուրբ Տէրութեան իշխանաց խորհրդովը ու աղաչարարութեամբը, որպէս զի աս երկու հարցմունքին պատասխան տաս: Նախ և առաջ ըսէ՛, թէ Աս գիրքերը դո՞ւ շարադրեր ես թէ չէ՛": Կայսերական ատենաբանը աս խօսքը զրուցած ատենը՝ մատովը քսան հատի չափ գիրք ցըցուց, որ սենեակին մէջ տեղը՝ սեղանի մը վրայ դրուած էին Լուտերին առջեւը: Լուտեր ետքերը աս պարագան պատմելով, կըսէ թէ՝ "Չեմ գիտեր թէ ի՞նչպէս անոնք աս գիրքերը գտեր ու մէկտեղ ժողուեր էին": Աս աշխատանքը ու նեղութիւնը Ալէանտէր քաշեր էր: "Երկրորդ՝ շարունակեց ատենադպիրը, դուն աս գիր-

*Seckendorf, P. 348.

քերը ու մէջի գրուած բաները պիտի հերքե՞ս, թէ անոնց վրայ պիտի դիմանաս ու հաստատ կենաս"։

Լուտեր առանց վախի ու երկբայութեան պատասխանելու վրայ էր, թէ իրաւ ինքը շարադրեր է զանոնք, երբոր իր բարեկամը Հերոնիմոս Շուրֆ, շուտ մը բարձր ձայնով աղաղակեց թէ՝ "Գիրքերուն անունը թո՛ղ կարդացուի անգամ մը"։

Ատենադպիրը սեղանին մօտենալով գիրքերուն անունները կարդաց։ Անոնց շատը աղօթքի գրեանք էին, ու ան վիճաբանութեանը հետ բնաւ վերաբերութիւն մը չունէին։ Գիրքերուն անունները կարդացուելէն ետքը, Լուտեր՝ նախ Լատինական ու ետքն ալ Գերմանական լեզուով սանկ պատասխան տուաւ.

"Ո՜վ մեծաշնորհ կայսր, ո՜վ շնորհալի իշխանք և տեարք, Կայսերական վեհափառութիւնը՝ ինծի երկու հարցմունք կընէ։

"Առաջին հարցմունքին պատասխանը աս է, որ ան գիրքերը՝ որոնց անունը հիմա հոս կարդացուեցաւ, ամէնն ալ ես շարադրեր եմ, չեմ կրնար սուտ զրուցել ու զանոնք ուրանալ։

"Գանք երկրորդ հարցմունքին։ Որովհետև աս հարցմունքը հաւատքի, և հոգիներուն փրկութեանը կըվերաբերի, ու նաև Աստուծոյ Խօսքը աստ հետը կապակցութիւն ունի, որն որ երկնային ու երկրային գանձուցը մէջ խիստ թանկագինը ու մեծն է, ան պատճառաւ անխոհեմութիւն ըրած կըլլամ, թէ որ առանց լաւ մը քննելու ու մտածելու պատասխան տալու ըլլամ։ Քանզի կարելի է որ ճշմարտութեան պահանջածէն աւելի կամ պակաս բան մը ըսեմ ու մեղանչեմ Քրիստոսի ան խօսքին դէմ, "Ո՛վ որ զիս մարդոց առջևը ուրանայ, ես ալ զանիկայ պիտի ուրանամ իմ Հօրս առջևը, որ երկինքն է"։ Սասնորոյ ձեր կայսերական վեհափառութեանը ամեն այն խոնարհութեամբ կաղաչեմ որ ինծի ժամանակ տաք, որպէս զի կա-

բաղըլըամ պատասխան տալ առանց մեղանչելու Աստուծոյ Բանին դէմ"։

Այս պատասխանը՝ Լուտերի ու ժողովին արժանի և յարմար պատասխան մըն էր, չէ թէ անոր մտքին մէջ շփոթութիւն կամ տարակոյս կըցուցընէր : Այսանկ ծանր դատի մէջ պէտք էր որ անիկայ հանդարտ ու խոհեմ ըլլար . և ասանկ հանդիսաւոր վայրկեանի մը մէջ՝ բնաւ կիրք մը ու թեթևութիւն մը իր վրայ ցուցընելու չէր : Դարձեալ՝ ժամանակ ուզելով , այսպէս իր առաջադրութեանը ու կամացը անդրդուելի հաստատութիւնը լաւագոյն փորձով մը պիտի իմացընէր : Պատմութեանց մէջ կըտեսնեմք որ խիստ շատ անձինք իրենց վաղվաղկոտութեամբը ու անխոհեմ խօսքովը՝ թէ իրենց և թէ ուրիշներուն մեծ վընաս տուեր են : Բայց աս տեղը Լուտեր՝ իր ընդվաբոյս ու եռանդուն բնութիւնը կըզսպէ , իր արագախօս ու պատրաստ լեզուն կըսանձէ . և որ ատեն իր բոլոր զգացումները կուզեն մէկէն դուրս բղխիլ , ինքը զանոնք կըբռնէ ու կարգիլէ : Աս եռանդուն մարդը՝ այսպիսի զարմանալի համդարտութիւն ու համբերութիւն մը ընելով ու զինքը բռնելով , իր զօրութիւնը բազմապատկեց . ու կարող եղաւ ետքը պատասխան տալու այնպիսի իմաստութեամբ՝ իշխանութեամբ ու արժանապատուութեամբ , որ իր թըշնամեաց յոյսը փուճը ելաւ , ու անոնց չարութիւնը և ամբարտաւանութիւնը բոլորովին անպտուղ եղաւ :

'Ի վերայ այսր ամենայնի , որովհետև քաղաքավարական ու պատկառելի եղանակաւ մը խօսեցաւ , շատերը կարծեցին որ անիկայ երկու մտքի վրայ է : Վասնորոյ Հռովմայ պալատականաց սրտին մէջը՝ յուսոյ նշոյլ մը ծագեցաւ : Կարողոս՝ որ շատ փափաքեր էր տեսնել ան մարդը , որուն խօսքը բոլոր տէրութիւնը տատանեց , և որ իր աչքը բնաւ անոր վրայէն չէր վերցուցեր , հիմա իր պալատականներէն մէկուն դառնալով արհամարհանօք ըսաւ . "Իրաւի աս ան մարդը չէ , որ կարենայ զիս հերետիկոս ը-

նել" ։ Ատենը նորահասակ կայսրը ոտք ելաւ, ու իր նախարարներուն հետ խորհրդոյ սենեակը մտաւ. կայսրընտիրները՝ իշխաններուն հետ ուրիշ սենեակի մը մէջ ժողովեցան, ու ազատ քաղաքաց վերակացուներն ալ երրորդ սենեակի մը մէջ փակուեցան. յետոյ ժողովը նորէն մէկտեղ գալով միաբանեցան որ Լուտերի խնդիրքը կատարեն ։ Զարախորհուրդ մարդիկ աս բանիս շատ նեղացան ։

"Ով Մարտինոս Լուտեր, ըսաւ Թրեվիզի ատենադպիրը, կայսերական վեհափառութիւնը իր ընդաբոյս բարեսիրութեամբը ու քաղցրութեամբը՝ հաճեցաւ քեզի օր մըն ալ ժամանակ շնորհելու. բայց աս դաշինքով, որ քու պատասխանդ կենդանի ձայնով տաս և ոչ թէ գրով" ։

Ատենը կայսերական դեսպանը առաջ եկաւ, ու նորէն Լուտերը առաւ իր իջևանը տարաւ ։ Լուտեր մինչև հոն երթալը, ճամբան փոփոխակի ուրախութեան ձայներ ու սպառնալիքներ լսեց. և իր բարեկամներուն մէջը խիստ ձախորդ լուրեր տարածուեցան ։ Կըսէին թէ՝ "Ժողովը կընեղանայ. պապին դեսպանները կըյաղթանակեն. Լուտեր զոհ պիտի ըլլայ" ։ Ամէնուն սիրտը բարկացեր էր. և շատ ազնուականներ Լուտերի վազելով ըսին անոր, "Տէ՛ր վարդապետ, աս բանը ի՞նչպէս պիտի ըլլայ. կըհաստատուի թէ քեզ այրել կուզեն. թէ որ այսպէս ընեն, իրենց կեանքը պիտի վճարեն անոր տեղը"... "Հիրաւի անոնց ըսածին պէս պիտի ըլլար", կըսէ Լուտեր, քսան տարիէն ետքը՝ երբոր աս խօսքերը յիշեց ։

Ուրիշ կողմանէ ալ իր թշնամիները կըյաղթանակէին ։ Անոնք կըսէին թէ՝ "Լուտեր ժամանակ կուզէ. անիկայ իր ըսածները պիտի հերքէ. անոր խօսքը հեռուէն աներկիւղ էր, բայց հիմա իր համարձակութիւնը ու սրտոտութիւնը կորսնցուց... Անիկայ յաղթուեցաւ" ։ Վօրմսի մէջ գրեթէ միայն Լուտեր հանգիստ ու հանդարտ էր ։ Ժողովէն դառնալէն քանի մը վայրկեան ետքը՝ այս-

պէս գրեց Ռուսբիանոսի՝ կայսերական խորհրդականին. "Այս աս Թուղթը քեզի աղմուկի մէջէն կըգրեմ". (Հաւանականաբար աս խօսքով իջեւանին չորս կողմը ժողոված ամբոխին ձայնը ու աղաղակը կուզէր հասկըցընել)։ "Ա՛ս ժամուս մէջ՝ կայսեր ու անոր եղբօրը առջեւը ելայ*... և ժողովքին հասկըցուցի, որ իմ գիրքերուս հեղինակը ես եմ. ու նաև զրուցեցի թէ զանոնք հերքելուն պատասխանը վաղը կուտամ։ Այս օգնութեամբն Յիսուսի Քրիստոսի՝ իմ բոլոր շարադրած գրքերուս և ոչ իսկ մէկ գիծը կըհերքեմ"։

Ժողովրդոց ու օտարական զինուորաց վրդովմունքը ժամէ'ի ժամ կաւելնար. Թէպէտև ժողովքին մէջը ամէն բան սիրով էր, բայց փողոցներու մէջ՝ մարդիկ մէկզմէկու հետ կըկռուէին։ Հպարտ ու անողորմ Սպանիացի զինուորները՝ իրենց անխոհեմութեամբը քաղաքին բնակիչները կըվըշտացընէին։ Կարոլոսի Թիկնապահ զինուորներուն մէկը՝ երբոր գրքավաճառի մը քով պապին կոնդակը գտաւ, որ Հիւթթէն անոր մեկնութիւն տալով տպել տուեր էր, զանիկայ առաւ կտոր կտոր ըրաւ, ու ետքը անոր կտորները գետինը նետելով, ոտքովը վրան կոխեց։ Ոմանք ալ՝ Լուտերի Գերութիւն Բաբելոնի ըսուած գրքին խել մը օրինակները ձեռք անցընելով պատռտեցին։ Ժողովուրդը աս բանիս վրայ նեղանալով, զինուորներուն վրայ յարձակեցան, ու զանոնք փախուցին։ Անգամ մըն ալ Սպանիացի մը՝ ձիու վրայ հեծած, ձեռքը սուր բռնած, Վօրմսի գլխաւոր փողոցի մը մէջ Գերմանացիի մը ետևէն կը վազէր, ու ժողովուրդը սոսկալով չէր համարձակեր աս կատաղի մարդուն դէմ կենալ †։

Աս միջոցիս քանի մը քաղաքագէտ մարդիկ, իրենց

* Hac hora coram Cæsare et fratre Romano constiti. (L. Epp. I, p. 587).

† Kappens Ref. Urkunden II. p. 448.

խելքովը հնարք մը գտան Լուտերը ազատելու. ու անոր ըսին թէ՝ «Դու վարդապետութեանդ սխալները հերքէ, բայց պապին ու անոր պալատականացը վրայ ինչ որ ըսիր, անոնց վրայ հաստատ կեցիր, ու ան ատենը կազատիս»։ Ալէանտէր աս խորհուրդը լսելուն սարսափեցաւ. բայց Լուտեր իր մտքին վրայ հաստատ կենալով, յայտնեց թէ ինքը քաղաքական Բարեկարգութիւնը բանի մը տեղ չդըներ, մինչև որ անիկայ հաւատքի վրայ հիմնած չըլլայ։

Հետևեալ օրը՝ Ապրիլի 18ին, Կլաբիոն՝ Էք ատենադը-պիրը ու Ալէանտէր, առտուանց կանուխ մէկ տեղ ժողովեցան Հինգերորդ Կարոլոսին հրամանաւը. որպէս զի խորհուրդ մը ընեն, թէ Լուտերի դատը ի՛նչպէս պիտի կտրեն։

Լուտեր ալ ինքնիրեն կըմտածէր. և իր սրտին մէջը այնպիսի խաղաղութիւն մը ունէր, որ առանց անոր մեծամեծ գործքեր չեն կատարուիր։ Աղօթք ըրաւ, Աստուածաշունչ Գիրքը կարդաց, իր բոլոր գրուածները հարևանցի աչքէ անցուց, և ջանաց որ յարմար ու վայելուչ պատասխան մը պատրաստէ։ Երբոր կըմտածէր որ կայսեր ու Տէրութեան առջևը՝ Յիսուս Քրիստոսի ու անոր Խօսքին համար վկայութիւն պիտի տայ, սիրտը ուրախութեամբ կըլեցուէր։ Երթալու վայրկեանը գրեթէ հասած էր, որ ատեն ջերմեռանդութեամբ Սուրբ Գրքին մօտեցաւ, որ սեղանին վրայ բաց կեցեր էր. ձախ ձեռքը անոր վրայ դրաւ, աջ ձեռքն ալ դէպի երկինքը վերցընելով երդում ըրաւ, որ Աւետարանին միշտ հաւատարիմ մնայ, ու հաւատքը ազատութեամբ խոստովանի, թէև պէտք ըլլայ աս խոստովանութիւնը իր արեամբը կնքել ու հաստատել։ Անկէց ետքը ալ աւելի մեծ խաղաղութիւն մը զգաց իր սրտին մէջը։

Չորրորդ ժամուն՝ կայսերական դեսպանը եկաւ, ու զանիկայ տարաւ ժողովարանը։ Ամէնը մեծ հետաքրքրութեամբ աս ժամուն կըսպասէին. վասն զի պատասխանը

որոշ ու կտրողական պիտի ըլլար։ Ժողովը ցրուած ըլլալուն համար, Լուտեր պարտաւորեցաւ գաւիթը կենալու անհամար ժողովրդեան հետ, որ ալեկոծեալ ծովու մը պէս կը տատանէր, ու իր ալիքներովը զԲարեկարգողը կը նեղէր։ Վիդդէմպէրկի վարդապետը երկու ժամու չափ աս բազմութեան մէջը մնաց, որոնք որ շատ կը փափաքէին զանիկայ տեսնելու։ "Այս չէր սորված, կըսէ Լուտեր, ասանկ աղաղակներու և նեղութիւններու". և անշուշտ հասարակ մարդու մը՝ անանկ ժողովի մը առջևը ելլելու համար, դէշ պատրաստութիւն պիտի ըլլար ասիկայ. բայց Լուտեր Աստուծոյ ապաւինած ըլլալուն համար, զուարթադէմ ու հանդարտ կեցեր էր. յաւիտենական Աստուածը զանիկայ բարձր վիմի վրայ կը հաստատէր։ Գիշերը վրայ գալով՝ ժողովական սենեակին մէջը ջահեր վառեցին. որոնց լոյսը ապակի պատուհաններէն անցնելով մինչև գաւիթը կը հասնէր, ու ամէն տեղ ահեղ շքեղութիւն մը կերևար։ Վերջապէս վարդապետը ներս մտցուցին, ու անոր հետ խիստ շատ մարդ ներս մտաւ. վասն զի ամէնն ալ անոր պատասխանը կուզէին լսել։ Իշխանները նստեր էին. Լուտեր առջի անգամին պէս գնաց Կարոլոսին դիմացը կայնեցաւ. և Թրէվիրի կայսրընտրին ատենադպիրը սկսաւ ըսել անոր այսպէս. "Ո՜վ Մարտինոս Լուտեր, քու երեկուան խնդրած ժամանակդ հիմա լմնցաւ։ Իրաւի՝ պէտք չէր քեզի ժամանակ տալ. որովհետև ամէն մարդ հաւատոյ վերաբերեալ բաներուն մէջ աղէկ տեղեկութիւն պիտի ունենայ, որպէս զի միշտ պատրաստ գտնուի իրեն բան հարցընողներուն պատասխան տալու։ Մանաւանդ դուն՝ որ Սուրբ Գրոց մեծ ու գիտուն վարդապետն ես.... Հիմա՝ ուրեմն պատասխան տուր վեհափառ կայսեր հարցմունքին, որ քեզի այնչափ քաղցրութիւն ցըցուց։ Դու գիրքերդ բոլորովին պաշտպանե՞լ կուզես, թէ կուզես անոնց մէջէն քանի մը բան հերքել"։ Ատենադպիրը աս խօսքերը Լատինական լեզուով զրուցելէն ետեքը Գերմանական լեզուով ալ կրկնեց։

Ընտանէնը, կրօնն Կ օրինի յիշատակարանները, Մար-տինոս Լուտեր վարդապետը շատ խոնարհութեամբ ու հը-նազանդութեամբ պատասխան տուաւ. ընաւ չպօռաց, ու խստութեամբ չխօսեցաւ. բայց միայն հաստատութեամբ, քաղցրութեամբ, վայելչութեամբ ու չափաւորութեամբ, ՚ի վերայ այսր ամենայնի՝ մեծ ուրախութեամբ ու քրիստո-նէական արիութեամբ ։

«Ո՜վ վեհափառ կայսր, ո՜վ մեծապայծառ իշխանք, ո՜վ շնորհալի տեարք, ըսաւ Լուտեր, (աչուըները կայ-սեր ու բոլոր ժողովականներուն վրայ պտըտցընելով.) ես այսօր ձեր առջևը կերևամ, ինչպէս որ երէկ ինծի հրաման տրուեցաւ. և ողորմութեամբն Աստուծոյ, ձեր կայսերական վեհափառութեանը ու ձեր օգոստափառ բարձրութեանցը կաղաչեմ, որ իմ արդար ու ճշմարիտ դատիս ու փաստիս ջատագովութիւնը քաղցրութեամբ մը-տիկ ընէք ։ Թէ որ տգիտութեամբ՝ պալատական սովորու-թեանց ու քաղաքավարութեանց դէմ պակսութիւն մը ը-նեմ, ինծի թողութիւն տուէք. վասն զի ես թագաւորա-կան պալատներու մէջ մեծցած չեմ, այլ աղքատ ու ողոր-մելի վանքի մը մէջ ։ Երէկ կայսերական վեհափառութե-նէն ինծի երկու բան հարցուեցաւ ։ Առաջինը՝ թէ ար-դեօք ե՞ս եմ հեղինակը ան գրքերուն, որոնց անունները կարդացուեցաւ ։ Երկրորդ՝ թէ անոնց մէջը գրուած վար-դապետութիւնները պիտի հերքե՞մ, թէ պիտի պաշտ-պանեմ ։ Առաջին հարցմունքին պատասխանը տուի, ու ան պատասխանին վրայ կեցեր եմ ։

«Գանք երկրորդ հարցմունքին ։ Իմ գրած գրքերս զա-նազան նիւթերու վրայ է ։ Նախ՝ անոնց մէջը գիրք կայ որ մէ-ջը հաւատքի ու բարեգործութեանց վրայ խօսեր եմ այն-պիսի մաքուր, պարզ ու քրիստոնէական ոճով որ նաև նոյն իսկ թշնամիներս՝ անոնց մէջը պախարակելու ու բամբա-սելու բան մը չգտնալէն զատ, կըխոստովանին թէ անոնք օգտակար ու պիտանի գրեանք են. և արժանի է որ բա-

թեպաշտ մարդիկ զանոնք կարդան : Պապին կոնդակը՝ որ այնչափ խիստ ու սաստիկ է, բայց սակայն աս ըսածս կը հաստատէ : Ես զանոնք ինչպէս հերքեմ . . . . . . .

«Երկրորդ՝ ես պապականութեան դէմ գրքեր շարադրեր եմ, ու պարսաւեր եմ ան պապերը, որ իրենց սուտ վարդապետութեամբը, գէշ վարքովը ու գայթակղեցուցիչ օրինակովը՝ բոլոր քրիստոնեաները կաւրեն, ու անոնց հոգին ու մարմինը կըկորսընցընեն : Աս բանիս՝ ամէն աստուածավախ մարդոց գանգատը հաստատ կըվըկայէ : Եւ ամէնուն յայտնի է՝ որ մէկ կողմանէ պապերուն մարդկային օրէնքը ու վարդապետութիւնը՝ հաւատացելոց խղճմտանքը կըտանջեն, մէկալ կողմանէ ալ Հռովմայ մշտնջենաւոր ու անիրաւ յափշտակութիւնները՝ քրիստոնէից ստացուածքը ու հարստութիւնները կըկլլեն . ու մանաւորապէս աս մեծապայծառ ազգիս . . . . : Ուէ որ ես աս նիւթերուն վրայ գրած գրքերս հերքեմ, ուրիշ բան մը ըրած չեմ ըլլար, բայց եթէ աս բռնաւորութիւնը ուժովցընելով, անհամար ու մեծամեծ անիրաւութեանց աւելի լայն դուռ մը բացած կըլլամ : Ան ատենը աս ամբարտաւան մարդիկը՝ աւելի չափազանց կատաղութեամբ մը կըյարձակին, ու ետեւէ ետեւ մեծամեծ փոթորիկներ կըհանեն : Եւ աս գրքերը հերքելովս, ոչ միայն քրիստոնէից ժողովրդեան վրայ ծանրացած լուծը աւելի խիստ ու անտանելի կըլլայ, այլ նաև աւելի օրինաւոր . վասն զի իմ հերքելովս, անիկայ ձեր կայսերական վեհափառութենէն ու սուրբ Տէրութեան բոլոր իշխաններէն, հաստատութիւն ու զօրութիւն մը կառնէ : Ո՛վ մեծ Աստուած . ասանկ՝ ես գէշ ծածկոց մը պիտի ըլլամ, որ ամէն տեսակ չարութիւնները ու բռնաւորութիւնները ծածկեմ» . . . :

«Երրորդ՝ ես գրքեր գրեցի քանի մը մասնաւոր անձանց դէմ, որ կուզէին Հռովմէական բռնաւորութիւնը պաշտպանելով հաւատքը ոչնչացընել . և համարձակ կը

խոստովանիմ, որ կարելի է թէ անոնց դէմ քիչ մը աւելի սաստկութեամբ խօսած ըլլամ, որն որ իմ եկեղեցական կացութեանս չվայելեր։ Ես զիս սուրբի տեղ չեմ դրեր. բայց ան գրքերն ալ չեմ կրնար հերքել. վասն զի ան ատենը իմ հակառակորդներուս անիրաւութեանը ոյժ ու հեղինակութիւն տուած կըլլամ. ու նաև բարեպատեհ առիթ մը, որով անոնք Աստուծոյ ժողովուրդը աւելի անգթութեամբ ջախջախեն։

"Ի վերայ այսր ամենայնի՝ ես լոկ մարդ մըն եմ, աստուած չեմ. անոր համար ես զիս ան կերպով պիտի պաշտպանեմ, ինչպէս որ Յիսուս Քրիստոս զինքը պաշտպանեց, երբոր ըսաւ. "Թէ որ գէշ խօսք մը խօսեցայ նէ, ըսած գէշ խօսքս ինծի հասկըցուցէք" ։ Յովհ. ժը. 23։ Անիկայ Աստուած ըլլալով, աստնկ ըսաւ. ես որ ուրիշ բան չեմ, բայց եթէ հող և մոխիր, ու դիւրաւ կրնամ սխալիլ, ո՛րչափ աւելի եռանդով փափաքելու եմ, թէ ո՛վ որ իմ վարդապետութեանս դէմ փաստ մը ու առաջարկութիւն մը ունենայ նէ, ինծի հասկըցընէ ։

"Անոր համար՝ Աստուծոյ ողորմութեամբը ես ձեզի կաղաչեմ, ո՜վ վեհափառ կայսր, ո՛վ մեծապայծառ իշխանք և ամենայն աստիճանի մարդիկ, որ իմ սխալներս ու մոլորութիւններս ինծի ցուցընէք՝ մարգարէից ու առաքելոց գրուածքներէն ու վկայութիւններէն ։ Երբոր զիս համոզէք, ես իսկոյն իմ բոլոր սխալներս կըհերքեմ. ու ամենէն առաջ ես իմ գրուածներս կրակի մէջ կըդնեմ կերեմ ։

"Ես ըսածէս յայտնի կերևայ, որ ես իմ առջևի վտանգներս աղէկ մտածեր ու կշռեր եմ. բայց անոնցմէ չվախնալէն զատ, մեծ ուրախութիւն կըզգամ՝ որ այսօրուան օրս ուրիշ ատենի պէս Աւետարանը պատճառ կըլլայ խռովութեան և անմիաբանութեան. քանզի Աստուածային Բանին ապացոյցը ու յատկութիւնը ան է ։ "Ես չեկայ աշխարհիս վրայ խաղաղութիւն ձգելու, այլ սուր", ըսաւ Յիսուս

Քրիստոս ։ Մատթ. Ժ. 34 ։ Աստուծոյ խորհուրդները սքանչելի ու ահեղ են . զգոյշ կենանք որ չըլլայ թէ անմիաբանութիւնները ու խռովութիւնները դադրեցընեմք ըսելով՝ Աստուծոյ սուրբ Բանը հալածեմք, ու վրանիս իջեցընեմք անփախչելի գառն պատիժներ ու ձախորդութիւններ հիմա, և սոսկալի կործանումներ յաւիտեան յաւիտենից ։ Զգոյշ կենանք որ չըլլայ թէ չարագուշակ նշաններով սկզբնաւորութիւն ընէ՝ ու մանաւանդ այնպէս չարունակի ու վերջանայ աս նորահաստատ ու ազնուազարմ Կարոլոս կայսեր թագաւորութիւնը, որ Աստուծմէ ետքը մեծ յոյսերնիս անոր վրայ դրեր եմք ։ Այս աս մեծազօր կայսեր առջևը կրնամ Աստուածաշունչ գրքէն օրինակներ ու վկայութիւններ բերել . կրնամ յիշել Եգիպտոսի փարաւոնները և Բաբելոնի ու Իսրայէլի թագաւորները, որ իրենք իրենց կործանմանը պատճառ եղան, ճիշդ երբոր ուզեցին խելացի երևցած խորհուրդներով իրենց տէրութիւնը հաստատել ։ "Աստուած լեռները կըփոխէ ու կըկործանէ, ու իրենք չեն իմանար" ։ Յոբ. Թ. 5 ։

"Թէպէտև ասանկ մեծ իշխանները իմ տկար խորհուրդներուս կարօտութիւն չունին, բայց ես ասոնք զըրուցելովս՝ կուզեմ Գերմանիոյ հատուցանել իմ պարտքը, որն որ անիկայ իր հարազատ զաւակներէն իրաւամբ կը պահանջէ ։ Ու հիմա ձեր օգոստափառ վսեմութեանը ու մեծապայծառ բարձրութեանցը յանձնելով զիս, խոնարհութեամբ կաղաչեմ որ իմ թշնամեացս թող չտաք, որ իրենց ատելութեամբը ինծի անանկ պատիժ ու հարուած մը տան, որուն երբէք արժանաւոր եղած չեմ" ։

Լուտեր աս խօսքերը Գերմանացի լեզուով զրուցեց . թէպէտև համեստութեամբ, բայց մեծ եռանդով ու արիութեամբ ։ Անոր հրամայեցին որ նոյն խօսքերը Լատիններէն լեզուով ալ զրուցէ, վասն զի կայսրը Գերմանական լեզուն չէր սիրեր ։ Ժողովքին պատկառելի տեսարա-

նը, բազմութեան աղաղակը և Բարեկարգողէն սրտի յուզմունքը ամէնը մէկ եղած յոգնեցուցեր էին զանիկայ։ «Իշխանաց մէջը ոտքի վրայ կայնելով՝ ու բազմութեան շունչէն տաքնալով, բոլորովին քրտինք կտրեցայ», ըսաւ ետքը։ Փրիդերիկոս Տը Թուն՝ Սաքսոնիայի կայսրընտրին մտերիմ խորհրդականը, իր տէրոջը հրամանաւը Լութերին քովը կայներ էր, որպէս զի պահպանէ զանիկայ ու չթողու որ անոր բռնութիւն կամ վնաս մը հասցընեն. երբոր անիկայ կրօնաւորին խեղճ վիճակը տեսաւ, ասանկ զրուցեց անոր. «Տէ՛ր վարդապետ, թէ որ խօսքդ չես կրնար կրկնել, այսչափս բաւական է»։ Բայց Լուտեր յոգնութիւն առնելու համար՝ քանի մը վայրկեան լուռ կենալէն ետքը, նորէն սկսաւ նոյն խօսքը զրուցել Լատինական լեզուով, և ճիշտ առջի անգամին պէս ազդու զօրութեամբ. Լուտեր կըպատմէ թէ՝ Փրիդերիկոս կայսրընտիրը շատ հաւնեցաւ աս բանին։

Բարեկարգողը իր խօսքը կտրածին պէս, Թրէվէզի ատենադպիրը ու ժողովին ատենաբանը բարկութեամբ մը ըսաւ անոր. «Դուն մեր ըրած հարցմունքին պատասխանը չտուիր։ Դուն աս տեղս չկոչուեցար որ եկեղեցիին ժողովներով որոշած ու հաստատած բանը երկբայութեան մէջ ձգես։ Մենք քեզմէ մէկ որոշ ու կտրողական պատասխան մը կուզեմք։ Ըսածներդ պիտի հերքե՞ս թէ չէ»։

Ան ատենը Լուտեր առանց տարակուսելու պատասխան տուաւ. «Որովհետև ձեր կայսերական վեհափառութիւնը ու ձեր բարձր իշխանութիւնները՝ ինծմէ մէկ պարզ, որոշ ու բացայայտ պատասխան մը կըպահանջեն, ես հիմա ան պատասխանը ձեզի կուտամ, որ ասիկայ է. «Ես չեմ կրնար իմ հաւատքս պապին ու ժողովոց իշխանութեան տակը դնել. վասն զի ամէնուն յայտնի է որ անոնք շատ հեղ մոլորութեան մէջ ինկան, ու իրենք իրենց դէմ հակառակ ու ներհակ բաներ խօսեցան.

Աւստի թէ որ Աստուածաշունչ Գրոց վկայութեամբ՝ կամ յայտնի փաստերով զիս չհամոզեն, և թէ որ իմ բերած վկայութիւններովս անգամ զիս չհամոզեն և ասանկ իմ խղճմտանքս՝ Աստուծոյ Խօսքին զօրութիւնովը չհնազանդեցընեն, ես չեմ կրնար ու չեմ կամիր բնաւ իմ խօսքս հերքել. վասն զի մէկ քրիստոնեայ մը իր խղճմտանքին դէմ բան մը զրուցէ նէ, ապահով չէ"։ Յետոյ աչուըները ժուռ ածցընելով բոլոր ժողովքին վրայ, որուն առջևը ոտքի վրայ կայներ էր, ու իր կեանքն ալ անոր ձեռքն էր, ասանկ ըսաւ. "Ահաւասիկ ես և իմ խօսքս. ես ուրիշ կերպ խօսք չեմ կրնար զրուցել ։ Աստուած ինծի օգնական ըլլայ. ամէն *"։

Այսպէս Լուտեր իր հաւատքին հնազանդելով ու խղճմտանքին ականջ տալով՝ մեռնիլը յանձն առաւ. խիստ ազնիւ հարկի մը տակը մտնալով, իրեն հաւատացած բանին գերի ըլլալով, և աս գերութեանը մէջ փառաւոր ազատութիւն մը վայելելով, (մէկ սաստիկ փոթորիկի դէմ գնող նաւու մը պէս, որ իրմէ պատուական ու մեծագին բանը ազատելու համար՝ կամովին կերթայ ժայռի մը վրայ խորտակուելու,) աս գերապանծ խօսքերը զրուցեց, որ իրեք հարիւր տարիէն ետքը՝ տակաւին զմեզ կընդոստուցանեն ։ Միաբան մը՝ կայսեր ու ազգին մեծերուն առջևը աս կերպով խօսեցաւ ։ Նաև աս տկար՝ հանդարտ ու մինակ մարդը՝ բարձրերըյն Աստուծոյ շնորհացը ապաւինելուն համար՝ անոնց ամենէն մեծ ու զօրաւոր կերևայ ։ Անոր խօսքը անանկ զօրութիւն մը ունի, որ բոլոր զօրաւորները անոր դէմ չեն կրնար դնել ։ Աս՝ ան աստուածային տկարութիւնն է, որ մարդիկներէն շատ զօրաւոր է ։ Ա Կորնթ. Ա. 25 ։ Տէրութիւնը ու եկեղեցին մէկ կողմանէ, աս աղքատ ու աննշան մարդն ալ մէկալ կողմանէ իրարու հետ կըմաքառին ։ Աստուած

* L. Opp. lat. 11 . p. 166.

ան Թագաւորները ու եպիսկոպոսները մէկ տեղ ժողվեց, որ անոնց իմաստութիւնը աւրէ ու բնաջինջ ընէ յայտնապէս ։ Այս ահա անոնք յաղթուեցան. և աս երկրային զօրաւորաց յաղթուիլը, ու անոր հետևութիւնները՝ ամէն ժողովրդոց մէջ կըներգործեն, ու ամէն ապագայ դարուց մէջ պիտի ներգործեն ։

Ժողովը զարմացման մէջ մնաց. ու իշխաններուն շատը չկրցան իրենց զարմանքը զսպել ։ Կայսրը իր առաջին տպաւորութիւնը մէկ դի ձգելով կաղաղակէր. “Աս միաբանը աներկիւղ սրտով ու անյաղթելի համարձակութեամբ կըխօսի” *։ Սպանիացիք ու Իտալացիք միայն շփոթեր էին, ու իսկոյն սկսան անոր մեծահոգիութիւնը ծաղր ընել, որն որ չէին կրնար հասկընալ ։

Բանի մը վայրկեանէն ետքը ըսաւ ատենադպիրը. “Թէ որ դուն ըսածներդ չհերքես նէ, գիտնաս որ Կայսրը ու Տէրութեան իշխանները՝ յամառ ու ինքնահաւան հերետիկոսի մը պէտք եղած բանը քեզի պիտի ընեն”։ Լութերի բարեկամները աս խօսքը լսելով սարսափեցան ։ Բայց միաբանը կրկնեց. “Աստուած ինծի օգնական ըլլայ, վասն զի ես չեմ կրնար բան մը հերքելու”։

Աս միջոցիս Լութեր ետ քաշուեցաւ, ու իշխանները սկսան խորհուրդ ընել ։ Ամէն մարդ հասկըցաւ որ ասիկայ քրիստոնէութեան համար նշանաւոր վայրկեան մըն է ։ Աս միաբանին Այո՛ կամ Ոչ ըսելը՝ եկեղեցւոյն ու աշխարհիս երկարատև հանգստութիւնը պիտի որոշեր ։ Ուզեցին որ անոր վախ տան. սակայն ուրիշ բան չըրին, բայց եթէ զանիկայ մեծցուցին ու բարձրացուցին բոլոր ազգին ու ժողովականաց աչքին առջևը. ուզեցին որ զանիկայ յայտնապէս անարգելով կործանեն, բայց ուրիշ բան չըրին՝ միայն թէ անոր յաղթութիւնը ընդարձակեցին ։

* Der Mönch redet unerschrocken, mit getrostem Muth! (Seckend 350.)

Հռովմայ կուսակիցները իրենց անարգութեանը չկրնալով համբերել, նորէն Լութերը ներս կանչեցին, ու ատենապանը անոր ըսաւ. "Ո՛վ Մարտինոս, դուն քեզի պատշաճ եղած խոնարհութեամբը չխօսեցար. քու գիրքերուդ համար ըրած զանազանութիւնդ պարապ բան է. վասն զի թէ որ դուն քու սխալ ու մոլար գրքերդ հերքելու ըլլաս, կայսրը չթողուր որ միւսները այրեն: Արտաքոյ կարգի ու սովորութեան բան մըն է ուզելդ՝ որ զքեզ Սուրբ Գրոց վկայութեամբը հերքեմք. վասն զի դուն անանկ հերետիկոսութիւններ կըհանես, որ Կոստանդիային ընդհանուր ժողովը զանոնք դատապարտեր է: Ուստի Կայսրը քեզի կըհրամայէ, որ դուն այո՛ կամ ո՛չ բառով՝ մեզի պարզ պատասխան մը տաս, ու մեզի հասկըցընես թէ դուն գրած բաներդ բոլորովին պաշտպանե՞լ կուզես, թէ անոնց մէկ մասը հերքել": Լուտեր հանդարտութեամբ պատասխան տուաւ. "Ինչ որ պատասխան տուի նէ, անկից ուրիշ պատասխան չունիմ տալու": Ան ատենը անոր միտքը լաւ մը հասկըցուեցաւ: Անիկայ անդրդուելի ժայռի մը պէս հաստատ կեցեր էր, ու մարդկային իշխանութեան ալիքները պարապ տեղը անոր վրայ կըյարձակէին. վասն զի կտոր կտոր կըլլային: Անոր զօրաւոր խօսքը, համարձակ շարժմունքը, աչուըներուն աշխոյժ նայուածքը, անոր անսասանելի հաստատութիւնը՝ որ Գերմանական երեսին հաստ գծագրութենէն յայտնի կերեւար, ամենապայծառ ժողովին վրայ խորին տպաւորութիւն մը ըրեր էր: Անոնք բոլորովին յոյսերնին կորսընցուցին: Սպանիացիք, Պելճիգացիք և նոյն իսկ Հռովմայեցիք պապականներ էին: Միաբանը՝ աշխարհիս մեծութիւնները յաղթեր էր. թէ եկեղեցւոյն և թէ Տէրութեանը՝ Ո՛չ ըսեր էր: Ուստի կայսրը ոտք ելաւ, և բոլոր ժողովն ալ անոր հետ, ու ատենադպիրը բարձր ձայնով ըսաւ. "Վաղը առաւօտուն ժողովականները նորէն հոս ժողվուին, որպէս զի Կայսեր հրամանը լսեն":

## ՀԱՏՈՒԱԾ Թ

Եւ որովհետեւ գիշեր էր, ամէն մարդ մութին իր տունը դարձաւ։ Լուտերի հետ երկու կայսերական պաշտօնատարներ դրին, որ անոր ընկերակցութիւն ընեն։ Ամանք կարծեցին թէ անոր դատաստանը ու վճիռը կտրուած է, ու զանիկայ բանտը կըտանին, ու անկից հանելու որ ըլլան պիտի մեռցընեն. վասնորոյ մեծ խռովութիւն մը ելաւ. խիստ շատ ազնուականներ անոր ետեւէն կըպոռային. "Ատի՞նչ բան է. արդեօք զանիկայ բա՞նտը կը տանին": Լուտեր պատասխան տուաւ. "Չէ՛ չէ, իմ իջեւանս կըտանին": Աս խօսքիս վրայ ամէնուն սիրտը հանգստացաւ։ Ան ատենը քանի մը Սպանիացիք, որ կայսեր սպասաւորներէն էին, աս յանդուգն մարդուն ետեւէն գացին, ու անարգական ձայներով զանիկայ ծաղր կընէին. ոմանք ալ այնպիսի ձայներ կըհանէին, որ վայրենի գազանները ու անասունները կըհանեն, երբոր իրենց աւարը առջեւնուն կըվերնայ։ Բայց Լուտեր հաստատ ու հանդարտ կեցաւ։

Ահա Վորմսի բազմահանդէս տեսարանը աս է։ Աս քաջասիրտ միաբանը, որ մինչեւ ան ատենը բոլոր իր թշնամիները յանդգնութեամբ մը արհամարհեր էր, աս ժամուս մէջ հանդարտութեամբ՝ ազնուութեամբ ու խոնարհութեամբ խօսեցաւ ան մարդոց առջեւը, որ իր արեանը ծարաւի էին։ Զափազանց պարծենցողութիւն մը՝ մարդկային կիրք մը ու բարկութիւն մը բնաւ չցըցուց. այնչափ մեծ վրդովման մէջ խաղաղ էր. երկրային իշխանութեանց դէմ դրած ատենը չափաւոր էր, ու աշխարհիս բոլոր վեհափառ թագաւորաց առջեւը՝ մեծ-

անձն երևցաւ ։ Ասիկայ յայտնի նշան մըն է, որ Լուտեր այն ատենը Աստուծոյ կը հնազանդէր, և ո՛չ թէ իր զոռոզութեանը թելադրութեանցը ։ Վօրմսի ատեանին մէջը մէկը կայներ էր, որ Լուտերէն ու Կարոլոսէն շատ մեծ էր ։ "Երբոր դուք ազգաց առջևը ինծի համար վկայութիւն տալու ըլլաք նէ, բնաւ մի՛ հոգաք, ըսաւ Յիսուս Քրիստոս. վասն զի չէ թէ դուք էք որ կը խօսիք" ։ Մատթ. Ժ. 18, 20 ։ Քրիստոսի խոստումը գուցէ ասանկ յայտնի կերպով բնաւ կատարուած չէր ։

Տէրութեան մեծամեծ իշխանաց սրտին մէջը՝ մէկ խորին տպաւորութիւն մը ու փոփոխութիւն մը եղած էր ։ Լուտեր իմանալով աս բանս՝ իր համարձակութիւնը աւելցեր էր ։ Պապին պաշտօնեաները բարկացեր էին, թէ ինչո՞ւ համար Յովհաննէս Էք՝ յանցաւոր միաբանին խօսքը շուտ մը չմիջահատեց. բայց շատ իշխաններ ու ազնուականներ Լուտերի կողմը դարձեր էին, անոր փաստը համոզիչ ըլլալուն համար ։ Ճշմարիտ է որ ոմանց սրտին մէջը աս ազդեցութիւնը ու տպաւորութիւնը շուտ մը անյայտ եղաւ. բայց ընդ հակառակն ոմանց սրտին մէջն ալ հաստատ կերպով մը տպաւորեցաւ. Թէպէտև այն ատենը իրենց միտքը չհասկըցուցին, բայց ժամանակէ մը ետքը մեծ համարձակութեամբ ու քաջասրտութեամբ ինքզինքնին յայտնեցին ։

Լուտեր իր իջևանը դարձեր էր. ու իր սաստիկ պատերազմէն յոգնած ըլլալուն համար, նստեր յոգնութիւն կառնէր ։ Սպալատին և ուրիշ բարեկամներ անոր չորս կողմը շարուեր էին, ու ամէնը միաբերան զԱստուած կը փառաւորէին ։ Երբոր անոնք այսպէս նստած իրարու հետ խօսակցութիւն կընէին, ծառայ մը ներս մտաւ, ձեռքը արծաթէ ամանով մը Էյնպէքի գարեջրով լեցուն. ու այն գաւաթը Լուտերին երկնցընելով ըսաւ. "Իմ տէրս ձեզի բարև կընէ, ու կաղաչէ որ աս ըմպելիքով ձեր սիրտը կազդուրէք" ։ "Ո՞վ է այն իշխանը, ըսաւ Ս իդ-

դէմպէրկի վարդապետը, որ ասանկ մարդասիրաբար զիս կըյիշէ": Ծերունի Էրիք Տը Պրունսվիք դուքսն էր աս ըմպելիքը խրկողը: Լուտեր շատ շարժեցաւ աս պարգեւէն. վասն զի խրկողը շատ մեծ մարդ էր, ու պապին կուսակիցներէն մէկը: Ծառան շարունակեց ու ըսաւ. "Բարձրապատիւ դուքսը աս ըմպելիքը ձեզի չխրկած, հաճեցաւ ինքն ալ աս սոյն գաւաթէն քիչ մը խմելու": Ան ատենը Լուտեր ծարաւած ըլլալով, դուքսին գարեջուրը առաւ խմեց, ու խմելէն ետքը ասանկ ըսաւ. "Ինչպէս որ այսօր Էրիք դուքսը զիս յիշեց, այնպէս ալ Տէրն մեր Յիսուս Քրիստոս զանիկայ յիշէ իր վերջին պատերազմի ժամուն մէջը": Յիրաւի ասիկայ շատ պզտիկ ընծայ մըն էր, բայց Լուտեր ուզելով իր երախտագիտութիւնը ցուցընել ան իշխանին, որ զինքը ասանկ վայրկեանի մը մէջ յիշեր էր, աղօթք մը ըրաւ անոր համար. վասն զի անկից ուրիշ բան մը չունէր տալու: Ծառան գնաց աս բանը պատմեց իր տիրոջը: Ծեր դուքսը՝ իր մահուան՝ ատենը ան խօսքերը յիշեց, ու Ֆրանչիսկոս Տը Քրամ անուն իր նորահասակ սենեկապանին դառնալով՝ որ իր անկողինին քովը ոտքի վրայ կայներ էր, ըսաւ. "Աւետարանը առ, քիչ մը ինծի կարդա": Հոգեւարքին սիրտը զուարճացաւ ու կազդուրեցաւ, երբոր սենեկապանը Քրիստոսի աս խօսքերը կարդաց. "Ով որ ձեզի գաւաթ մը ջուր տալու ըլլայ աս անունովս, թէ դուք Քրիստոսի էք, ճշմարիտ կըսեմ ձեզի որ անիկայ իր վարձքը պիտի չկորսնցընէ": Պրունսվիքի դուքսին ծառան դուրս ելածին պէս, Սաքսոնիայի կայսրընտրին կողմանէ մէկը եկաւ, ու Սպալատինին հրամայեց որ շուտով կայսրընտրին քովը երթայ: Փրիդերիկոս ժողովը եկած էր շատ անհանգիստ սրտով. քանզի կըկարծէր թէ Լուտեր իր համարձակութիւնը պիտի կորսնցընէ կայսեր առջեւը. ուստի անոր համարձակութիւնը ու հաստատութիւնը տեսնելով չափէ դուրս զարմացաւ, և կուրախանար որ այն-

պխսի մարդու մը պաշտպանութիւն կընէր ։ Երբոր Սպալատին հասաւ , սեղանը դրուած էր ․ կայսրընտիրը իր պալատականացը հետ սեղան պիտի նստէր իրիկուան կերակուրը ուտելու համար , և սպասաւորները արդէն ձեռք լուալու ամանները բերեր էին ։ Փրիդերիկոս՝ մատրանապետին ներս մտնելը տեսնելով , շուտ մը անոր նշան ըրաւ որ իր ետևէն գայ ․ ու զանիկայ իր պառկելու սենեակը տանելէն ետքը , մեծ եռանդով ու ուրախութեամբ մը ըսաւ անոր ․ "Ահ , հայր Լուտերը ի՞նչպէս լաւ խօսեցաւ կայսեր ու բոլոր տէրութեան իշխանաց առջևը ․ միայն կըվախնայի որ չափէ դուրս յանդգնութիւն ու համարձակութիւն պիտի ընէ" ։ Ան ատենէն Փրիդերիկոս միտքը դրաւ, որ Լուտերին աւելի համարձակութեամբ պաշտպանութիւն ընէ ։

Ալէանտէր՝ Լուտերին ըրած տպաւորութիւնը տեսնելէն ետքը , չուզեց ատեն կորսնցընել ․ այլ ջանաց նորահասակ կայսրը համոզել , որ բռնութեամբ իր գործը առաջ տանի ։ Ժամանակը իրեն օգնութիւն ըրաւ ․ վասն զի ան օրերը Գաղղիացւոց դէմ պատերազմ պիտի բացուէր ։ Լևոն Ժ՝ իր տէրութեան վիճակը մեծցընել ուզելով , ու քրիստոնէից հանգստութեանը ու խաղաղութեանը վրայ անհոգ ըլլալով , մի և նոյն ժամանակի մէջ ծածկաբար երկու տեսակ դաշնադրութիւն կընէր ․ մէկը Կարոլոսի հետ՝ Ֆրանչիսկոսի դէմ , միւսը Ֆրանչիսկոսի հետ՝ Կարոլոսի դէմ * ։ Առաջին դաշնադրութեամբ՝ Կարոլոս կայսրէն՝ Փարմա , Փիաչէնցա ու Ֆէրրարա քաղաքները կուզէր ։ Երկրորդ դաշնադրութեամբ՝ Գաղղիոյ Թագաւորէն՝ Նափոլիի Թագաւորութեան մէկ մասը կուզէր , որ ան ալ Կարոլոսէն պիտի յափշտակուէր ։ Կարոլոս՝ Լևոնին սիրտը շահիլը իրեն շատ հարկաւոր սեպեց , որպէս զի

Guicciardini , L . XIV , P . 175 . Dumont . Corp . dipel . T . IV , P . 96 .

Գաղղիոյ Թագաւորին դէմ պատերազմ բացած՝ ատենը, անիկայ իրեն հետ դաշնակից ու բարեկամ ըլլայ ։ Զօրաւոր քահանայապետին բարեկամութիւնը ձեռք ձգելու համար, Լուտերը հերքելը ու դատապարտելը՝ ոչինչ բան մը կերեւար իրեն ։

Վասն որոյ ժողովին հետեւեալ օրը ուրբաթ՝ Ապրիլի 19ին՝ կայսրը ժողովին առջեւը մէկ թուղթ մը կարդալ տուաւ Գաղղիարէն լեզուով, որ ինք իր ձեռքովը գրեր էր ․ "Տեսնելով որ բոլոր Գերմանիոյ քրիստոնեայ կայսերքը՝ Սպանիոյ ուղղափառ թագաւորները՝ Աւստրիայի արշիդուքսերը ու Պուրկոնի դուքսերը՝ իբրեւ պաշտպան Հռովմէական հաւատոյ մեծանուն հանդիսացան, ես ալ հաստատ առաջադրութիւն մը ըրի, որ իմ նախնեացս օրինակին հետեւիմ ։ Մինակ միաբան՝ մը՝ իր յիմարութեամբը մոլորելով, քրիստոնէական հաւատքին դէմ կը կենայ ։ Այս աս անօրէնութիւնը խափանելու համար՝ իմ թագաւորութիւններս, իշխանութիւնս, բարեկամներս, գանձերս, մարմինս, արիւնս, հոգիս ու կեանքս զոհ պիտի ընեմ *։ Այս Օգոստինեան Լուտերը նորէն իր տեղը պիտի խրկեմ, ու անոր պիտի ապսպրեմ որ ժողովրդեան մէջ բնաւ խռովութիւն մը չհանէ ․ և ետքը թէ իրեն և թէ իրեն հետեւողացը դէմ բանադրանք, արգելմունք ու ամէն տեսակ հարկաւոր միջոցներ պիտի գործածեմ, որպէս զի զանոնք բնաջինջ ընեմ, ինչպէս որ յայտնի հերետիկոսութիւններուն դէմ սովորութիւն ունիմք ընելու ։ Այս տէրութեանց անդամներէն կըպահանջեմ, որ հաւատարիմ քրիստոնէից պէս վարուին" ։

Աս խօսակցութիւնը ամենուն ընդունելի չեղաւ ։ Կարոլոս՝ նորահասակ ու բարկասիրտ ըլլալուն համար, սովորական օրինաց չհետեւեցաւ ․ պէտք էր որ առաջ ժողովին խորհուրդ հարցըներ ։ Իսկոյն մարդոց մէջ երկու տեսակ

* Pallav. I. P. 118.

տարբեր ու հակառակ կարծիքներ որոշուեցան ։ Պալտին մարզիկը՝ Պրանտէպուրկի կայսրընտիրը ու շատ եկեղեցական իշխաններ ուզեցին որ Լուտերին տրուած ապահովական թուղթը ՚ի գործ չդրուի * ։ «Պէտք է որ , ըսին , Լուտերին մոխիրը Հռենոս գետը նետուի , ինչպէս որ հարիւր տարի առաջ՝ Յովհաննէս Հուսինը նետուեցաւ» ։ Թէ որ պատմիչի մը խօսքին հաւատալու ըլլամք՝ Կարոլոս խել մը ժամանակէ ետքը շատ զղջաց աս գէշ ու անիրաւ խրատը չընելուն համար ։ «Կրխոստովանիմ , ըսաւ անիկայ իր կենացը վերջին օրերը , թէ ես մէկ մեծ յանցանք մը գործեցի , Լուտերը ողջ ձգելուս համար ։ Ես բնաւ պարտական չէի որ անոր տուած խոստմունքս կատարեմ ․ վասն զի աս հերետիկոսը՝ նոյն ինքն Աստուծոյ դէմ մեղանչեր էր , որ ինձմէ մեծ Տէր է իրեն ։ Ես իրաւունք ունէի իմ խօսքս չկատարել , ու իմ պարտքս էր որ չկատարելով , անոր՝ Աստուծոյ դէմ ըրած անիրաւութեանը վրէժխնդրութիւն ընէի ։ Ես զանիկայ չմեռցընելուս համար է որ հերետիկոսութիւնը այսչափ յառաջադիմութիւն ըրաւ ։ Անոր մահը՝ հերետիկոսութիւնը իր օրրոցին մէջը բնաջինջ պիտի ընէր» † ։

Կայսրընտիրը ու բոլոր Լուտերի բարեկամները՝ աստոսկալի առաջարկութիւնը լսելնուն սարսափեցան ։ Փալատինեան կայսրընտիրը ըսաւ թէ՝ «Յովհաննէս Հուսին դատապարտութիւնը ու տանջանքը՝ Գերմանական ազգին վրայ շատ մեծ ձախորդութիւններ բերելուն համար , պէտք չէ որ մէկմըն ալ այնպիսի սպանութիւն ընեմք» ։

Նաեւ Սաքսոնիացի Գէորգը՝ որ Լուտերի անհաշտ թշնամին էր , ինքն ալ աղաղակեց թէ՝ «Գերմանիոյ իշխանները թող չեն տար որ ապահովական թուղթին կանոնը աւրուի ։ Աս մեր նորապսակ կայսեր առաջին ժողովը՝ սանկ ամօթալից գործողութիւն պիտի չընէ ։

* Dass Luthero das sichere Geleit nicht möchte gehalten werden . ( Sechend . p . 357 . )
†Sandoval . Hist . de Carlos V .

Այսպիսի նենգութիւն մը Գերմանացւոց վաղեմի հաւատարմութեանը և ուղղադատութեանը հետ չմիաբանիր": Պավիերացի իշխաններն ալ՝ որոնք Հռովմայ եկեղեցւոյն շատ հնազանդ են, աս խօսքը հաստատեցին: Աստի Լուտերի բարեկամները՝ որ արդէն իրենց աչքին առջևը կըբերէին անոր մահուան տեսարանը, քիչ մը քաջալերութիւն առին:

Աս վիճաբանութիւնը երկու օր քշեց, և անոր լուրը բոլոր քաղաքին մէջը տարածուեցաւ: Աստի երկու կողմն ալ ոտք ելան: Բարեկարգութեան կուսակից եղող 'ազնուականները սկսան հաստատ ձայնով մը՝ Ալէանտէրին ուզած մատնութեանը ու նենգութեանը դէմ խօսիլ: Կըսէին թէ՝ "Կայսրը նորահասակ տղայ մը ըլալով, պապականները ու եպիսկոպոսները իրենց շողոքորթութեամբը՝ ուզածնուն պէս անոր միտքը կըդարձընեն": Պալլավիչինին չորս հարիւր ազնուականի անուն կուտայ, որ ամէնն ալ պատրաստուեր էին իրենց սրովը Լուտերին ազատագիրը պաշտպանելու: Շաբաթ առաւօտուն՝ տներուն դռանը վրայ ու քաղաքին հրապարակներուն վրայ փակցուցած թուղթեր գտան, որոնց կէսը զԼուտեր կըգովէր, կէսն ալ՝ կըպարսաւէր: Աս թուղթերուն մէկուն վրայ միայն Ժողովողին աս խօսքը գրուած էր. "Վա՜յ քեզ քաղաք, որ թագաւորդ տղայ է": Կըսէին թէ Սիկինկէն՝ Վորմսէն քանի մը մղոն հեռու, իր անառիկ բերդին ետևը խիստ շատ ձիաւորներ ու զօրքեր ժողվեր էր, ու միայն աս գործիս կատարածին կըսպասէր որ յարձակի: Ժողովրդեան հոգեւանդ իղձը՝ (ո՛չ միայն Վորմսի մէջ, այլ նաև տէրութեան խիստ հեռաւոր քաղաքներուն մէջը,) ասպետաց աներկիւղ համարձակութիւնը՝ ու շատ իշխաններուն Լուտերի վրայ ունեցած սէրը՝ Կարոլոսի ու ժողովին հասկցուցին, որ Հռովմայեցւոց բռնած ճամբան կրնայ զծայրագոյն իշխանութիւնը վտանգի մէջ ձգել, պատճառ-

թութիւններ հանել ու նոյն իսկ տէրութիւնը սարսել ։ Այսպէս այն մարդը որ անոնք կուզէին այրել, թէպէտև լոկ միաբան մըն էր, բայց Հռովմայ բոլոր իշխանները ու կուսակիցները մէկ տեղ՝ ոչ բաւական զօրութիւն՝ ոչ ալ բաւական համարձակութիւն ունէին աս բանը ընելու ։ Նմանապէս Կարոլոս Ե, որ այն ատենը նորահաստակ տղայ մըն էր, անտարակոյս սուտ երդումէ կը վախնար . վասն զի քանի մը պատմիչներու խօսքին նայելով՝ անիկայ աս միջոցին զրուցեց այն հռչակաւոր խօսքը . “ Երբոր հաւատարմութիւնը և ուղղութիւնը բոլոր աշխարհէս աքսորուի, պէտք է որ անոնք թագաւորաց ու իշխանաց սրտին մէջը ապաստանարան մը գտնեն ”։ Ցաւալի բան մը համարուելու է, թէ որ անիկայ գերեզմանին մօտը՝ ֆ̅ ծերութեան ատենը, աս իր ըսածը մոռցած ըլլայ . սակայն կարելի է որ կայսրը ուրիշ պատճառ ունէր իր խոստմունքը հիմա պահելու ։ Զորօրինակ՝ Փլորենտացի Վէդդօրին, Ժերորդ Լևոնի ու Մաքիավէլլին բարեկամը կըպնդէ թէ՝ Կարոլոսին Լուտերի խնայելը ուրիշ բանի համար չէր, բայց եթէ անով զպապը սանձելու ու իր ձեռքին մէջը առնելու համար *։

Շաբաթ օրուան ժողովին մէջ՝ Ալէանտէրին բռնաւորական խորհուրդները հերքեցին ։ Լուտերի սէր ցըցուցին, և ուզեցին ազատել այն պարզամիտ մարդը՝ որ հաստատ կերպով իր յոյսը միայն Աստուծոյ վրայ դրեր էր . բայց կուզէին որ Եկեղեցին ալ ազատեն ։ Երբոր կը մտածէին այն հետևութիւնները՝ որ հաւասարապէս պիտի յառաջ գային, թէ որ բոլորովին յաղթելու ըլլար Լուտեր, կամ թէ ոտքի տակ առնուէր, կըզարհուրէին ։ Աան

*Carlo si excusò di non poter procedere più oltre, rispetto al salvocondotto, ma la verità fu che conoscendo che il Papa temeva molto di questa doctrina di Luthero, lo volle tenere con questo freno. (Vettori, istoria d'Italia MSC. Biblioth. Corsini à Rome, extraite par Ranke.)

որոյ սկսան հաշտութիւն ընելու վրայով խօսիլ . ու առաջարկեցին որ Սիդդէմպէրկի վարդապետին վրայ նորէն ուրիշ փորձ մըն ալ ընեն : Նոյն ինքն Մայնցի կայսրընտիր արքեպիսկոպոս , նորահասակ ու փառասէր Ալպերտոսը՝* որ Պալլավիչինիին խօսքին նայելով , աւելի ջերմեռանդ երքան թէ քաջասիրտ , շատ վախցաւ երբոր տեսաւ որ ժողովուրդը ու ազնուականները Սաքսոնիացի միաբանին պաշտպանութիւն ու սէր կըցըցընեն : Ու որովհետեւ Կապիտոն իր մատրանապետը՝ Պալ քաղքին մէջ՝ Զուինգլ անունով Զուրիկեցի աւետարանական քահանային հետ՝ որ ճշմարտութեան աներկիւղ պաշտպանն էր , բարեկամութիւն ըրեր էր , անտարակոյս ան ալ Ալպերտոսին հասկըցուցեր էր՝ թէ Լուտերի դատը ու փաստը շիտակ է : Նաեւ կերեւայ թէ աշխարհասէր արքեպիսկոպոսը աս միջոցին քրիստոնէական զգայութիւնները ձեռք առաւ , ինչպէս երբեմն իր վարուցը մէջը կը պատահէր . վասնորոյ հաճեցաւ որ կայսեր քովը երթայ՝ ու անկից հրաման խնդրէ , նորէն վերջին փորձ մըն ալ ընելու : Բայց Կարոլոս աս բանիս բոլորովին դէմ կեցաւ : Երկուշաբթի օրը՝ Ապրիլի 22ին , բոլոր իշխանները մէկ տեղ ժողովեցան , որ Ալպերտոսին խնդիրքը նորոգեն : Բայց Կայսրը պատասխան տուաւ թէ , "Ես իմ. խօսքէս ետ չեմ դառնար . ինչ որ ըսինէ՝ ան պիտի ըլլայ : Բնաւ մասնաւոր մարդու մը հրաման չեմ տար , որ երթայ Լուտերի հետ խօսակցութիւն ընէ . բայց (Ալէանտէրին մեծ գայթակղութիւն տալով ըսաւ) աս մարդուն նորէն իրեք օր ժամանակ կուտամ որ աղէկ մը մտածէ : Աս միջոցիս՝ ամէն մարդ իր ուզածին պէս կրնայ առանձին խրատ ու խորհուրդ տալ անոր ու զանիկայ յորդորել" : Անոնց ուզածն ալ ասիկայ էր , վասն զի անոնք կը յուսային թէ՝ Լուտեր հանդիսաւոր

*Pallavicini p. 118.

*բութիւններ հանել ու նոյն իսկ տէրութիւնը սարսել ։ Այսպէս այն մարդը որ անոնք կուզէին այրել, թէպէտև լոկ միաբան մըն էր, բայց Հռովմայ բոլոր իշխանները ու կուսակիցները մէկ տեղ՝ ոչ բաւական զօրութիւն՝ ոչ ալ բաւական համարձակութիւն ունէին աս բանը ընելու ։ Նմանապէս Կարոլոս Ե, որ այն ատենը նորահասակ տղայ մըն էր, անտարակոյս սուտ երդումէ կը վախնար . վասն զի քանի մը պատմիչներու խօսքին նայելով՝ անիկայ աս միջոցին զրուցեց այն հռչակաւոր խօսքը . "Երբոր հաւատարմութիւնը և ուղղութիւնը բոլոր աշխարհէս աքսորուի, պէտք է որ անոնք թագաւորաց ու իշխանաց սրտին մէջը ապաստանարան մը գտնեն"։ Ցաւալի բան մը համարուելու է, թէ որ անիկայ գերեզմանին մօտը՝ ֆ̅ ծերութեան ատենը, աս իր ըսածը մոռցած ըլլայ . սակայն կարելի է որ կայսրը ուրիշ պատճառ ունէր իր խոստմունքը հիմա պահելու ։ Զորօրինակ՝ Փլորենտացի Վիդդօրին, Փերրորդ Լեւոնի ու Մաքիավէլին բարեկամը կըպնդէ թէ՝ Կարոլոսին Լութերի խնայելը ուրիշ բանի համար չէր, բայց եթէ անով զպապը սանձելու ու իր ձեռքին մէջը առնելու համար*։*

*Շաբաթ օրուան ժողովին մէջ՝ Ալէանտէրին բռնաւորական խորհուրդները հերքեցին ։ Լութերի սէր ցըցուցին, և ուզեցին ազատել այն պարզամիտ մարդը՝ որ հաստատ կերպով իր յոյսը միայն Աստուծոյ վրայ դրեր էր . բայց կուզէին որ Եկեղեցին ալ ազատեն ։ Երբոր կը մտածէին այն հետևութիւնները՝ որ հաւասարապէս պիտի յառաջ գային, թէ որ բոլորովին յաղթելու ըլլար Լութեր, կամ թէ ոտքի տակ առնուէր, կըշարհուրէին ։ Աան*

*Carlo si excusò di non poter procedere più oltre, rispetto al salvocondotto, ma la verità fu che conoscendo che il Papa temeva molto di questa doctrina di Luthero, lo volle tenere con questo freno. (Vettori, istoria d'Italia MSC. Biblioth. Corsini à Rome, extraite par Ranke.)

որոյ սկսան հաշտութիւն ընելու վրայով խօսիլ · ու առաջարկեցին որ Վիդդէմպէրկի վարդապետին վրայ նորէն ուրիշ փորձ մըն ալ ընեն ։ Նոյն ինքն Մայնցի կայսրընտիր արքեպիսկոպոս, նորահասակ ու փառասէր Ալպերտոսը՝* որ Պալլավիչինիին խօսքին նայելով, աւելի ջերմեռանդ էրքան թէ քաջասիրտ, շատ վախցաւ երբոր տեսաւ որ ժողովուրդը ու ազնուականները Սաքսոնիացի միաբանին պաշտպանութիւն ու սէր կըցըցընեն ։ Նաւ որովհետեւ Կապիտոն իր մատրանապետը՝ Պալ քաղքին մէջ՝ Ֆունինգլ անունով Ֆուրիկեցի աւետարանական քահանային հետ՝ որ ճշմարտութեան աներկիւղ պաշտպանն էր, բարեկամութիւն ըրեր էր, անտարակոյս ան ալ Ալպերտոսին հասկըցուցեր էր՝ թէ Լուտերի դատը ու փաստը շիտակ է ։ Նաեւ կերեւայ թէ աշխարհասէր արքեպիսկոպոսը աս միջոցին քրիստոնէական զգայութիւնները ձեռք առաւ, ինչպէս երբեմն իր վարուցը մէջը կըպատահէր · վասնորոյ հաճեցաւ որ կայսեր քովը երթայ՝ ու անկից հրաման խնդրէ, նորէն վերջին փորձ մըն ալ ընելու ։ Բայց Կարոլոս աս բանիս բոլորովին դէմ կեցաւ ։ Երկուշաբթի օրը՝ Ապրիլի 22ին, բոլոր իշխանները մէկ տեղ ժողովեցան, որ Ալպերտոսին խնդիրքը նորոգեն ։ Բայց կայսրը պատասխան տուաւ թէ, "Աս իմ. խօսքէս ետ չեմ դառնար · ինչ որ ըսինէ՝ ան պիտի ըլլայ ։ Բնաւ մասնաւոր մարդու մը հրաման չեմ տար, որ երթայ Լուտերի հետ խօսակցութիւն ընէ · բայց (Ալէանտերին մեծ գայթակղութիւն տալով ըսաւ) աս մարդուն նորէն իրեք օր ժամանակ կուտամ որ աղէկ մը մտածէ ։ Աս միջոցիս՝ ամէն մարդ իր ուզածին պէս կրնայ առանձին խրատ ու խորհուրդ տալ անոր ու զանիկայ յորդորել" ։ Անոնց ուզածն ալ ասիկայ էր, վասն զի անոնք կըյուսային թէ՝ Լուտեր հանդիսաւոր

*Pallavicini p. 118.

ժողովին մէջը հպարտութիւն ու յամառութիւն ըրաւ նէ , բարեկամական խօսակցութեան մէջ պիտի ճռաճի. և այսպէս պիտի ազատէին զանիկայ ան անդունդէն , որուն մէջը իյնալու վրայ էր ։

Բայց Սաքսոնիայի կայսրընտիրը գիտէր որ ասոր ներհակը պիտի ըլլայ. և անոր համար վախի մէջ ըլլալով՝ հետևեալ օրը իր եղբօրը Յօհաննէս դուքսին ասանկ գրեց. "Թէ որ իմ ձեռքս ըլլար , Լուտերին պաշտպանութիւն կընէի ։ Ես քեզի չեմ կրնար հասկըցընել , թէ Հռովմայ կուսակիցները ի՞նչ կերպով իմ վրաս կը յարձակին ։ Թէ որ կարենայի ամէն բանը քեզի պատմել , դուն շատ զարմանալի բաներ պիտի լսէիր ինծմէ ։ Անոնք կուզեն Լուտերը կործանել . ու թէ որ մէկը քիչ մը սէր ցուցընէ անոր , շուտ մը անոր վրայ հերետիկոսի անունը կըդնեն ։ Աստուած՝ որ արդարոյն դատը երբեք չձգեր , ամէն բանին վերջը բարիի դարձընէ" ։ Ֆրիդերիկոս առանց ցուցընելու իր սաստիկ սէրը՝ որ ունէր Լուտերի վրայ , բաւական համարեցաւ միայն արթնութեամբ հսկել միշտ անոր ապահովութեանը համար ։

Բայց Վորմսի մէջ գտնուող զանազան աստիճանի մարդիկը ասանկ չըրին ։ Անոնք աներկիւղ իրենց բարեկամութիւնը կըյայտնէին ։ Ուրբաթ օրէն 'ի վեր խել մը իշխաններ , կոմսեր , պարոններ , ասպետներ , ազնուականներ , եկեղեցականներ , աշխարհականներ ու ռամիկ մարդիկ , Լուտերին նստած իջևանը պաշարեր էին . կըմտնէին ու կելլէին , և անոր նայելով չէին կրնար կշտանալ ։ Անիկայ Գերմանիայի դիւցազունը եղեր էր ։ Նաև անոնք՝ որ զԼուտեր անտարակոյս հերետիկոսի տեղ դրեր էին , կըզարմանային անոր հոգւոյն ազնուութեանը վրայ , որով իր կեանքը՝ իրեն խղճմտանացը ձայնին զոհ պիտի մատուցանէր ։ Լուտեր Վորմսի մէջ գտնուող բոլոր ազնուական ու ընտիր մարդիկներուն հետ տեսնուեցաւ . ու ամէնն ալ անոր քաղցր ու խելացի խօ-

սակցութիւնները լսելով, անկէց զատուած առեններին ի-
րենց հոգւոյն մէջը ճշմարտութեան համար չափազանց փափաք ու խղճ մը կըզգային : Գէորգ Սաքսէր՝ Պրանտէպուրկի իշխան Յոաքիմին գրածը, ան միջոցին իրեն մէկ բարեկամին կըգրէր թէ՝ "Բէզի խիստ շատ բաներ ունիմ պատմելու : Լուտեր՝ ի՞նչ հոգևոր ու քաղցր խօսակցութիւններ ըրաւ թէ ինծի հետ և թէ ուրիշներուն հետ : Ա՜ս ի՞նչ շնորհալի մարդ է եղեր" :

Օր մը տասնուեօթը տարեկան նորահասակ իշխան մը՝ երբոր ձի հեծած ժուռ կուգար, իջևանին դաւիթը մտաւ : Անիկայ Փիլիպպոսն էր, որ երկու տարիէ 'ի վեր Հեսսէի մէջ կըթագաւորէր : Աս նորահասակ իշխանը՝ վաղվաղկոտ, գործունեայ, պատերազմասէր ու եռանդուն բնութիւն մը ունէր. որ կուզէր միշտ իրեն յատուկ գաղափարներուն հետևիլ, քան թէ ուրիշի առաջնորդութեամբը վարուիլ : Լուտերի խօսքերը իրեն դպչելով, ուզեց որ անոր հետ տեսնուի. "Թէպէտ (կըսէ Լուտեր՝ աս մարդուս պատմութիւնը ըրած ատենը,*) անիկայ դեռ իմ կողմս չէր" : Իշխանը ձիէն վար ինջաւ. ու առանց քաղաքավարական ձևեր գործածելու, շիտակ Լուտերին սենեակը մտաւ, ու ըսաւ անոր. "Սիրելի՛ վարդապետ, ի՞նչպէս ես. ու աս բանը ի՞նչպէս պիտի ըլլայ" : Լուտեր պատասխան տուաւ. "Ո՛վ շնորհաշուք տէր, յուսամ որ աղէկ կըլլայ" : Իշխանը ծիծաղելով կրկնեց. "Վա՛րդապետ, ես կըլսեմ որ հրամանքդ կըսորվեցընես ու կըքարոզես եղեր, թէ մէկ կնիկ մը կրնայ իր էրիկը ձգել և ուրիշ մը առնել, երբոր առաջինը ծերացած կըլլայ" : Աս բանը՝ կայսեր պալատականները պատմեր էին իշխանին : Ճշմարտութեան թշնամիները միշտ այսպիսի առասպելներ ու սուտ խօսքեր կըհնարեն, ու քրիստոնեայ վարդապետաց ուղէղ վարդապե-

*War noch nicht auf meiner Seite. (L. Opp. XVII, p. 589.)

տուլթեանը հետ կըխառնեն ։ Վուտեր ծանրութեամբ մը պատասխան տուաւ. «Ոչ՛ տէր իմ, չէ՛. կաղաչեմ որ ձեր բարձրութիւնը աս խօսքը չըքուցէ»։ Իշխանը աս խօսքիս վրայ մէկէն իր ձեռքը վարդապետին երկընցուց, ու սիրով մը՝ անոր ձեռքը սեղմելով ըսաւ. «Մերեք՛ վարդապետ, թէ որ իրաւունքը քուկդ է նէ, Աստուած քեզի օգնական ըլլայ»։ Նոյեր սեննակէն դուրս ելաւ, ձիուն վրայ հեծաւ ու գնաց։ Այսպէս եղաւ աս երկու մարդուն առաջին անգամ իրարու հետ տեսնուիլը, որոնք խել մը տարիներ Բարեկարգութեան գլուխը պիտի ըլլային, ու զանիկայ պիտի պաշտպանէին, մէկը խօսքին սրովը՝ մէկալն ալ իշխանութեան սրովը։

Վերջապէս Թորքեմէզի արքեպիսկոպոսը՝ Ովքեքարտոս Տը Արէյֆէնքլաւը՝ Կարոլոսին հրամանաւը յանձնառու եղաւ՝ որ աս բանիս մէջը միջնորդական ձև մը գործածէ ։ Ովքեքարտոս Սաքսոնիայի կայսրընտրին ճշմարիտ բարեկամը ըլլալով, և միանգամայն Հռովմէական եկեղեցիին հարազատ որդի, կըփափաքէր որ աս դժուար գործը յարմարցընելով, թէ իր բարեկամին և թէ իր եկեղեցւոյն ծառայութիւն մը ըրած ըլլայ ։ Երկուշաբթի իրիկունը՝ որ Ապրիլի 22 էր, երբոր Լուտեր սեղան պիտի նստէր, արքեպիսկոպոսին կողմանէ մէկ մարդ մը եկաւ, ու ըսաւ անոր թէ՝ արքեպիսկոպոսը չորեքշաբթի օրը առաւօտեան վեցերորդ ժամուն ձեզի հետ տեսնուիլ կուզէ ։

## ՀԱՏՈՒԱԾ Ժ

ՍՊԱՍՏԻՆ ու կայսերական դեսպանը Սթուրմ՝ ան օրը վեց ժամէն առաջ Լուտերի քովն՝ էին ։ Բայց Ալէանտէր առաւօտեան չորրորդ ժամուն Գոքլէոսը իրեն

կանչել տուեր էր : Պապին նուիրակը՝ Կոքլէոսը առա-
ջին անգամ տեսնելուն, հասկցեր էր թէ անիկայ Հռով-
մայ պալատին բոլորովին սրտիւ հնազանդ ծառայ մըն է. և
թէ իր անձին պէս կրնայ անոր ապաւինիլ : Ալէանտեր
չկրնալով Թրեվէզի արքեպիսկոպոսին Լուտերի հետ
խօսակցութեանը ներկայ ըլլալ, կուզէր որ իր կողմանէ
ան տեղը մարդ մը գտնուի : Ուստի Ֆրանքֆորթի դահե-
րեցին ըսաւ թէ՝ "Գնա՛, Թրեվէզի արքեպիսկոպոսին
տունը գտնուէ, Լուտերի հետ վիճաբանութիւն մի՛ ըներ.
գուն միայն անոնց ըրած խօսակցութիւնը աղէկ մը միտքդ
պահէ, որպէս զի կարենաս տեղն 'ի տեղը ինծի պատ-
մել" * : Լուտեր իրեն մէկ քանի բարեկամներուն հետ
եկաւ Արքեպիսկոպոսին տունը գնաց, ու տեսաւ որ անոր
գլուխը խել մը մարդիկ ժողովեր են. Բրանտէպուրկի
Յովակիմ իշխանը, Սաքսոնիացի Գէորգ դուքսը, Բրան-
տէպուրկի ու Աւկզպուրկի եպիսկոպոսները, քանի մը
ազնուականներ, ազատ քաղաքաց վերակացուները, ի-
րաւագէտներ ու աստուածաբաններ. ու նաև Կոքլէոսը
և Պատայի ատենադպիրը Հերոնիմոս Ուէհէն ալ հոն
էր : Աս Հերոնիմոս Ուէհէն խելացի իրաւագէտ մը ըլլա-
լով, կուզէր որ բարուց ու կրթութեանց մէջ բարեկար-
գութիւն մը ըլլայ. ու նաև կը հաստատէր թէ՝ "Պէտք է
որ Աստուծոյ խօսքը, որ այսչափ երկար ժամանակ
գրուանի տակ ծածկեցաւ, նորէն իր բոլոր պայծառու-
թեամբը երևայ" : Աս խաղաղասէր մարդուն յանձնուած
էր, որ աս բարեկամական խորհուրդը ու խօսակցութիւնը
ընէ. վասն որոյ քաղցրութեամբ մը Լուտերին դառնալով
ըսաւ. "Մե՛նք զքեզ հոս չբերինք որ քեզի հետ վիճա-
բանութիւն ընեմք, այլ քեզի եղբայրական խորհուրդներ
ու խրատներ տամք : Դուն աղէկ գիտես թէ Սուրբ

*Aleander, mane hora quarta vocaverit ad se Cochlœum, jabens ut . . . audiret sonum . . . (Cochlœus, p. 36.)

Գիրքը ո՜րչափ ջանքով զմեզ կը յորդորէ, որ զգուշանանք թռչող նետէն ու օրհասական դէպէն *: Ու՞ր մարդկային ազգի թշնամին զքեզ դրդեց որ հաւատքի դէմ բաներ հրատարակես: Պէտք է որ դուն՝ թէ քու փրկութիւնդ և թէ Տէրութեան փրկութիւնը մոռնես: Օ՜յ՛չ, կեցիր որ չըլլայ թէ Քրիստոսի մահուամբը՝ յաւիտենական մահուանէ փրկուած մարդիկը, քու խօսքովդ խաբուելն սխալին, ու յաւիտեանս յաւիտենից կորսուին . . . Սուրբ ժողովքներուն դէմ մի՛ կենար: Թէ որ մենք մեր հարցը վճիռները չպահեմք, եկեղեցւոյ մէջ մեծ խառնակութիւն ու խռովութիւն կըծագի: Ու՞ր երեւելի իշխանները՝ որ իմ խօսքս մտիկ կընեն, մանաւոր կերպով մը քու փրկութեանդ ու ազատութեանդ օգնութիւն ու պաշտպանութիւն կընեն. բայց թէ որ քու խօսքիդ վրայ հաստատ կենաս ու մեզի դէմ դնես, կայսրը զքեզ ալ Տէրութենէս կաքսորէ, և բոլոր աշխարհիս մէջը քեզի ապաստանարան մը չես կրնար գտնել: Մտածէ՛ անգամ մը քու ապագայ վիճակդ": Լուտեր պատասխան տուաւ. "Ո՜վ վսեմական իշխաններ, ես ձեզի շնորհակալ եմ ձեր խնամոցը համար. վասն զի ես պզտիկ ու պիտոյ անարգ մարդ մը ըլլալովս՝ արժանի չեմ որ ձեզի պէս մեծ իշխանները զիս յորդորեն ու խրատեն": Ետքը շարունակեց. "Ես բոլոր ժողովքները պարսաւած չեմ. միայն Կոստանդիայի ժողովը պարսաւեր եմ. վասն զի անիկայ դատապարտելով Յովհաննէս Հուսին ան վարդապետութիւնը՝ Թէ Քրիստոսին եկեղեցին՝ նախասահմաններուն ժողովն է†, կըդատապարտէ մեր հաւատամքին ան մասը, Հաւատամ յընդհանրական սուրբ Եկեղեցի, և զնոյն ինքն զԲանն Աստուծոյ: Կըսեն թէ՝ իմ վար-

*Սաղմ. Ղ. 6, 7. ըստ գրաբար թարգ:

†Ecclesia Christi est universitas prædestinatorum. (L. Opp. Lat. p. 167)

դաւաճանութիւններս գայթակղութիւն կուտան։ Այս պատասխան կուտամ թէ՝ Քրիստոսի Աւետարանը առանց գայթակղութեան չքարոզուիր ։ Անթէ ինչպէս վտանգի վախը կամ կասկածը կրնայ զիս զատել Տէրունծմէ, ու ան Աստուածային խօսքէն, որ զուտ ճշմարտութիւն է։ Քա՛ւ լիցի. ես աւելի կզոհաբերիմ իմ մարմինս, արիւնս ու կեանքս տալ. . ."։

Իշխանները ու վարդապետները այս խօսքին վրայ խորհուրդ ընելէն ետքը, նորէն Լութերը կանչեցին. ու Ակէհէն քաղցրութեամբ մը այսպէս ըսաւ. "Պէտք է պետութիւնները պատուել, թէ և անոնք սխալելու ըլլան. ու սիրոյ համար մեծ զոհեր ընել"։ Ետքը աւելի ստիպողական կերպով մը ըսաւ. "Դուն զքեզ կայսեր դատաստանին յանձնէ, ու բանէ մը մի՛ վախնար"։

Լութեր. "Այս յօժար սրտով կըհաճիմ, որ կայսրը՝ իշխանները ու նաև քրիստոնէից մէջ պզտիկ անարգ մարդը՝ իմ գրքերս քննեն ու դատեն. բայց այս պայմանով որ Աստուծոյ խօսքը իրենց կանոն բռնեն։ Պէտք է որ մարդիկ միայն անոր հնազանդին։ Իմ խղճմտանքս անոր կից կախուած է, ու ես անոր հնազանդութեանը տակը գերի եմ"։

Պրանտէնպուրկի իշխանը. "Տէ՛ր վարդապետ, ես քու խօսքդ աղէկ հասկըցայ. դուն Սուրբ Գիրքէն ուրիշ դատաւոր չես ուզեր ճանչնալ"։

Լութեր. "Հրամերես Տէր իմ, ճշմարիտը աս է. ու իմ ետքի խօսքս ալ աս է"։

Ան ատենը իշխանները ու վարդապետները ետ քաշուեցան. բայց Թրէվէրի բարեսիրտ արքեպիսկոպոսը չկրնալով իր սկսած գործքէն ետ կենալ, "Եկո՛ւր ըսաւ Լութերին. ու զանիկայ իրեն մասնաւոր սենեակը տանելով, նոյն ատենը Յոհաննէս Էքին ու Գոքլէոսին մէկ կողմանէ, Շուրֆին ու Մոնթորֆին ալ մէկալ կողմանէ հրամայեց, որ անոնք ալ իրենց ետևէն գան։ Էք

բարձր ձայնով մը ըսաւ. “Ինչո՞ւ համար զմեզ անդադար Սուրբ Գրքին կը հրաւիրես. վասն զի բոլոր հերետիկոսութիւնները Սուրբ Գրքէն առաջ եկան”: Բայց Լութեր՝ ինչպէս որ Աթանասիոս իրեն բարեկամը կը պատմէ, Աստուծոյ խօսքին վրայ հաստատուած ըլլալով, անդրդուելի վէմի պէս անշարժ կեցեր էր, ու պատասխան տուաւ թէ “Պապը՝ Աստուծոյ խօսքին մէջ բնաւ չկրնար դատաւոր ըլլալ: Իւրաքանչիւր քրիստոնեայ ինքը պիտի տեսնէ ու հասկընայ, թէ ի՞նչպէս պէտք է ապրիլ ու մեռնիլ”: Ան առտնըխամէն մարդ իր տեղը գնաց. ու պապականութեան կուսակիցները՝ Լութերին գերազանցութիւնը ու վրայ եկերը հասկըցան. ու ըսին թէ՝ պատճառը աս է որ, աս տեղս անանկ մարդ մը չկայ որ կարենայ անոր պատասխան տալ: “Թէ որ կայսրը խելացութեամբ վարուէր, ըսաւ Բրոքլէոս, Լութեր Վորմս կանչուած առենը՝ քանի մըն ալ աստուածաբան կըկանչէր, որ անոր մոլորութիւնները խուաճեն:

Թրեվէզի արքեպիսկոպոսը ելաւ ժողովը գնաց, և իր միջնորդութեան անյաջող երթալը անոնց իմացուց: Սորահասակ կայսրը որչափ զարմացաւ նէ, այնչափ ալ բարկացաւ ու ըսաւ. “Ժամանակը հասաւ որ աս գործը լմնցընենք”: Արքեպիսկոպոսը նորէն երկու օր ժամանակ ուզեց, ու բոլոր ժողովականներն ալ անոր խօսքին օգնութիւն ըրին: Կարոլոս՝ արքեպիսկոպոսին խնդիրքը ընդունեց. բայց Ալէանտէր խիստ տաքցաւ, ու սաստիկ պարսաւեց զանոնք:

Ասոր ժողովին մէջ աս բաները կըլլար, Բրոքլէոսն ալ կըփափաքէր որ ինքը ընէ ան յաղթութիւնը, որն որ թագաւորները ու արքեպիսկոպոսները չկրցան ընել: Թէպէտև առտն առտն Թրեվէզի արքեպիսկոպոսին քովը քանի մը խօսք ըսեր էր, բայց Ալէանտէր իրեն աղաչած ըլլալով որ խօսքի մէջ չխառնուի, իր լեզուն զսպեր էր. ուստի միտքը դրաւ որ իր լռութեան վրէժը հանէ.

վասն որոյ իր պաշտօնին ինչպէս երթալը պապին Նուիրակին իմացընելէն ետքը, շիտակ գնաց Լուտերին Ներկայացաւ. ու բարեկամաբար անոր մօտենալով, "Շատ կըցաւիմ, ըսաւ, որ կայսրը քեզի համար սաստիկ որոշում մը ըրաւ": Կերակուրէն ետքը՝ խօսակցութիւնը սաստկացաւ. Քոքլէոս կըբռնադատէր զԼուտեր, որ իր խօսքը ետ առնէ. բայց անիկայ բացասական նշան մը ըրաւ: Սեղանին վրայ գտնուող բազմաթիւ ազնուականները հազիւ թէ կրցան զիրենք զսպել. վասն զի շատ կընեղանային, երբոր կըտեսնէին որ Հռովմայ կողմնակից եղողները կուզեն բռնութեամբ ստիպել զԼուտեր, և ո՛չ թէ Սուրբ Գրքով համոզել: Քոքլէոս չկրնալով անոնց ըրած անարգութեանը համբերել, Լուտերին ըսաւ թէ՝ "Խիստ աղէկ, ես յանձն կառնեմ քեզի հետ հրապարակաւ վիճելու, թէ որ դուն ապահովական թղթէն հրաժարիս": Լուտերին ուզածն ալ հրապարակական վիճաբանութիւն էր. բայց ի՞նչ ընէր արդեօք. քանզի թէ որ ապահովական թղթէն հրաժարէր, զինքը պիտի սպաննէին. իսկ թէ որ Քոքլէոսին առաջարկած վիճաբանութենէն ետ կենար, իրեն դատին ու փաստին վրայ երկբայութիւն մը ցըցուցած պիտի ըլլար: Լուտերի սեղանակիցները կարծեցին որ Քոքլէոսին աս նենգամիտ առաջարկութիւնը՝ Ալէանտէրին կողմանէ է, վասն զի շիտակ անոր տունէն եկած էր: Ուստի անոնց մէջէն Վօլըրաթ Տը Վաթզթորֆ անունով ասպետ մը՝ աս դժուար ու վտանգաւոր ընտրութենէն ազատեց զԼուտեր: Աս ասպետը՝ եռանդուն բնութիւն մը ունենալով, ու շատ բարկանալով աս որոգայթիս համար, որով Լուտեր անտարակոյս դահիճին ձեռքը պիտի մատնուէր*, կատաղութեամբ մը ոտք ելաւ, քահանան բռնեց և սենեակէն դուրս հանեց, ու նաև պիտի մեռցընէր, թէ որ մէկալ

*Atque ita traderet eum carnificinæ. (Cochlœus, p. 86.)

սեղանակիցները՝ իսկոյն ոտք չելլէին, ու միջնորդութիւն ընելով, երկիւղալից Կոքլէոսը՝ կատղած ասպետին ձեռքէն չազատէին ։ Կոքլէոս շփոթելով Հռոդոսի ասպետաց իշխանէն հեռացաւ ։ Անտարակոյս ան խօսքը սաստիկ վիճաբանութեան մէջ Կոքլէոսին բերնէն փախեր էր, ու Ալէանտէրին հետ առաջուց բնաւ խորհուրդ մը ըրած չէր, Լուտերը ասանկ նենգամիտ որոգայթի մը մէջ ձգելու համար ։ Կոքլէոս աս բանը ասանկ կըպատմէ. ու մենք անոր վկայութեանը յօժար կամօք կըհաւատամք ։ Սակայն ստոյգ է որ Կոքլէոս Լուտերին քովը չգացած, պապին նուիրակին հետ խօսակցութիւն մը ըրեր էր ։

Ան նոյն իրիկունը Թրեվէզի արքեպիսկոպոսը՝ առաւօտեան խօսակցութեան մէջ գտնուող մարդիկը կերակուրի հրաւիրեց. վասն զի կըյուսար որ աս միջոցով ամենուն սիրտը կակղցընէ ու իրեն դարձընէ ։ Լուտեր ժողովքներու ու դատաւորաց առջևը որչափ որ համարձակ ու անդրդուելի կերպով կըկենար, ընտանի ու մտերիմ խօսակցութեան մէջ ալ այնչափ քաղցրաբարոյ ու զուարթերես կերևար, անանկ որ ամեն բան անկից կըյուսացուէր ։ Արքեպիսկոպոսին ատենադպիրը՝* որ իր մասնաւոր պաշտօնին մէջը այնչափ խստութիւն ցըցուցեր էր, քաղցրութեամբ ու սիրով աս փորձիս ու քննութեանս մէջը մտաւ, ու կերակուրին լմննալու ատենները՝ Լուտերին կենդանութեանը գինի խմեց ։ Լուտեր ալ անոր փոխարէնը հատուցանելու համար՝ գինին գաւաթին մէջը լեցուց. իսկ երբոր սովորականին պէս իր գաւաթին վրայ խաչ կըհանէր, մէկէն 'ի մէկ գաւաթը ձեռքին մէջը ճաթեցաւ, ու գինին սեղանին վրայ թափեցաւ ։ Կոչնականները տակն ու վրայ եղան. ու Լուտերին մէկ քանի բարեկամները բարձր ձայնով ըսին, “Անոր մէջը մահադեղ ըլլալու է” ։ Բայց վարդապետը առանց

*Տե՛ս երես 520 ։

չփոթելու՝ ծիծաղելով պատասխան տուաւ. Ո՛վ սիրելի տեարք՝ կամ աս գինին ինծի համար չէր, կամ թէ ինծի վնաս պիտի տար": Ետքը հանդարտութեամբ մը շարունակեց. "Անտարակոյս գաւաթը անոր համար կոտրեցաւ, որ զանիկայ տաք ջրով լուանալէն ետքը՝ շուտ մը պաղ ջրի մէջ ձգեր են": Աս պարզ խօսքերը ասանկ նշանաւոր վայրկեանի մէջ՝ անոր վեհանձնութիւնը ու անշփոթ խաղաղութիւնը յայտնի կըցուցընեն:

Հինգշաբթի առաւօտուն՝ որ Ապրիլի 25 էր, Վէհէ ատենադպիրը ու Աւկսպուրկցի Բէօթինկէր վարդապետը՝ կայսեր խորհրդականը, որ Լուտերին շատ սէր ցըցուցեր էր Տը Վէյին հետ տեսութիւն ըրած ատենէն՝ եկան Հռոդոսի ասպետաց իշխանը մտան: Սաքսոնիայի կայսրընտիրը՝ իր կողմանէ Փրիդերիկոս Տը Թունը ու մէկ ուրիշ խորհրդական մըն ալ խրկեց, որ աս խօսակցութեան մէջ ներկայ գտնուին: Վէհէ ու Բէօթինկէր՝ որ յօժարակամ սրտիւ ամէն բան կըզոհէին, որ եկեղեցւոյն կործանմանը պատճառ եղող բաժանումը խափանեն, մեծափափաք եռանդով մը Լուտերի ըսին. "Դուն աս բանը մեզի յանձնէ. մենք քեզի խօսք կուտամք, որ աս գործքը քրիստոնէաբար պիտի լմննայ":

Լուտեր անոնց այսպէս պատասխան տուաւ. "Ես աս երկու խօսքէն ուրիշ խօսք չունիմ ձեզի ըսելու: Ես իմ կամքս ապահովական թղթէն կը հրաժարիմ, և կայսեր ձեռքը կը յանձնեմ իմ անձս ու իմ կեանքս, բայց զԲանն Աստուծոյ . . . ո՛չ երբէք": Փրիդերիկոս Տը Թունը աս խօսքիս վրայ ոտք ելաւ, ու եռանդով մը ըսաւ միւսներուն. "Արդեօք այսչափս բաւական չէ՞. արդեօք ասկից մեծ զոհ կրնա՞յ ըլլալ": Ետքը անոնց հասկըցընելով թէ ինքը ա՛լ չուզեր ուրիշ խօսք մը մտիկ ընել՝ ելաւ գնաց: Ան ատենը Վէհէ ու Բէօթինկէր յուսալով որ աւելի բան մը կարենան ձեռք ձգել, եկան Լուտերին երկու քովը նստան, ու ըսին թէ՝ "Դուն աս

բանը ժողովին յանձնէ”։ “Ոչ՛, ըսաւ Լուտեր. վասն զի անիծեալ է, ո՛վ որ իր յոյսը մարդու վրայ կդնէ”։ Երեմ. ԺԷ. 5։ Վէհէ ու Բէօնթինկեր իրենց յարձակումը ու խրատը կրկնապատկեցին. և աւելի սաստիկ բանադատեցին զԼուտեր, որ ձանձրանալով ու յոգնելով ոտքերը, ու զանոնք ճամբեց ըսելով. “Ես թող չեմ տար, որ մէկ մարդ մը Աստուծոյ Խօսքէն վեր նստի”։ Անոնք գացին ըսելով, “Դուն տակաւին աղէկ մը մտածէ. մենք կէս օրէն ետքը նորէն կըդառնանք կուգանք”։

Յիրաւի նորէն եկան. բայց աղէկ գիտնալով որ Լուտեր իրենց գլուխ պիտի չծռէ, հետերնին նոր առաջարկութիւն մըն ալ բերին։ Լուտեր չէր ուզեր ճանչնալ, ո՛չ զպապը, ո՛չ զկայսրը և ո՛չ Որմսի ժողովը. մէկ դատաւոր մը միայն ճանչցեր էր, ու ինքը մէկ հեղ մը զանիկայ ուզեր էր, ա՛յն ընդհանրական ժողովք մը. և թէպէտև Հռոմ աս բանիս շատ կընեղանար, բայց ասկից ալ ուրիշ փրկութեան պատսպարան մը իրեն չէր ճանչցեր Ուստի վերջապէս աս ընդհանրական ժողովը առաջարկեցին անոր։ Լուտեր կրնար աս ժողովը անորոշ կերպով մը ընդունիլ. վասն զի տարիներ պիտի անցնէին, մինչև որ կարենային խափանել ան արգելքները ու դժուարութիւնները, որ պապին կողմանէ պիտի ծագէին, աս ընդհանրական ժողովին հրաւիրմանը համար։ Եւ յիրաւի Լուտեր ու Բարեկարգութիւնը՝ թէ որ աս միջոցիս քանի մը տարի շահէին, ամէն բան շահած կըլլային։ Բայց Լուտեր ուղղութիւնը ու ճշմարտութիւնը ամէն բանէն մեծ սեպելով, չէր ուզեր ճշմարտութեան փաստովը զինքը ազատել, և ո՛չ իսկ լուռ կենալով, որ չըլլայ թէ կեղծաւորութիւն մը ըրած ըլլայ. ուստի պատասխան տուաւ. “Ես ընդհանրական ժողովը կընդունիմ. բայց աս դաշինքով որ անիկայ Սուրբ Գրքին խօսքովը դատէ”. որ ըսել էր թէ ինքը ժողով չընդունիր։ Բէօնթինկեր ու Վէհէ չմտածելով՝ թէ ժողով մը ուրիշ կանոնով ալ

կրնայ դատել, ուրախութեամբ մը արքեպիսկոպոսին տունը վաղեցին ու անոր ըսին. «Մարտինոս վարդապետը իր գրքերը ընդհանրական ժողովի մը դատաստանին կը յանձնէ»: Արքեպիսկոպոսը աս բարեյաջող լուրը կայսեր տանելու կըպատրաստուէր, բայց ան նոյն ատենը միտքը տարակոյս մը գալով՝ Լուտերը իրեն կանչել տուաւ:

Երբ որ Լուտեր ներս մտաւ, Րիքքարտոս Տը Կրէյֆէնքլավ մինակ էր: «Սիրելի՛ տէր վարդապետ, ըսաւ արքեպիսկոպոսը մեծ քաղցրութեամբ և բարեկամութեամբ, իմ վարդապետներս իբրև ստոյգ ինծի պատմեցին, թէ դուն կըհաճիս առանց խտրութեան քու դատդ ժողովի մը դատաստանին յանձնելու»: Լուտեր պատասխան տուաւ. «Տէ՛ր իմ, ես ամէն բան աչքս առեր եմ, ու ամէն բանի կըհամբերեմ. միայն Սուրբ Գիրքը չեմ կրնար թողուլ»: Անատենը Արքեպիսկոպոսը իմացաւ, որ Վէհէն ու Բէօթինկէրը ծուռ հասկըցուցեր են իրեն: Հռովմ բնաւ չէր կրնար հաճիլ ու հաւանիլ, որ ժողով մը՝ Սուրբ Գրքին խօսքովը միայն դատաստան կտրէ: «Լուտերի աս պահանջմունքը, կըսէ Պալլավիչինին *, ուրիշ բան չէ, բայց եթէ խնդրել որ տկար աչք ունեցող մարդ մը խիստ մանր գրեր կարդայ, բայց բնաւ ակնոց չգործածէ»†:

Բարեմիտ արքեպիսկոպոսը հառաչելով ըսաւ. «Հատ

* Pall. 1. 110.

† Հոս տեղս խիստ մանր գիրերը՝ Սուրբ Գիրքը կընշանակեն, և ակնոցը՝ աւանդութիւնը. ու Պալլավիչինի կուզէ ըսել թէ ժողովը չկրնար Սուրբ Գիրքը հասկընալ, առանց աւանդութեան դիմելու: Զարմանալի՛ բաղդատութիւն. Դաւիթ կըսէ թէ «Քու խօսքդ իմ ոտքերուս ճրագն է, ու իմ շաւիղիս լոյսն է», բայց Պալլավիչինի կըսէ թէ Սուրբ Գիրքը թէպէտև տկար աչք ունեցող մարդու համար է, սակայն անանկ մանր գիրերով գրուած՝ որ առանց ակնոցի չկրնար կարդացուիլ: Ո՛րչափ յիմարութիւն պիտի ըլլայ, թէ որ տկար աչք ունեցողներուն համար խիստ մանր գիրերով գիրք չընէր. ուստի Պալլավիչինի և բոլոր իր կողմնակիցները աս յիմարութիւնը Աստուծոյ տուած կըլլան: (Ծանօթ. Թարգ.)

աղէկ եղաւ, որ քեզ կանչել տուի։ Ի՞նչ պիտի ընէի ես, թէ որ աս լուրը շուտով մը կայսեր տանէի"։

Լութերի անդրդուելի հաստատութիւնը ու խստութիւնը շատ զարմանալի է. բայց Աստուծոյ իրաւունքը ու ճշմարտութիւնը ճանչցող մարդոց առջևն ալ շատ գովելի ու դիւրիմաց բան մըն է։ Խիստ քիչ կը գըտնուի Լութերի պէս մէկ մարդ մը՝ որ իր կեանքը ու ազատութիւնը վտանգի մէջ դնելով, Աստուծոյ անփոփոխ Բանին այնչափ մեծ յարգ ու պատիւ տայ։

Ան ատենը բարեսիրտ արքեպիսկոպոսը Լութերին ըսաւ. "Շատ աղէ՛կ. ուրեմն դո՛ւն մեզի մէկ դեղ մը ցըցուր"։

Լութէր՝. (վայրկեան մը լուռ կենալէն ետքը) "Տէ՛ր իմ, ես Գամաղիէլին խօսքէն ուրիշ դեղ չեմ գիտեր".

"Եթէ աս խորհուրդը կամ գործը մարդոցմէ է նէ, կը քակուի. հապա թէ որ Աստուծմէ է, չէք կրնար ատոնք քակել. չըլլայ թէ Աստուծոյ դէմ կռիւ ընող գտնուիք"*։

"Կայսրը, կայսրընտիրները, իշխանները ու տէրութիւնները՝ աս պատասխանը պապին թո՛ղ խրկեն"։

Արքեպիսկոպոս. "Գոնէ գրուածներուդ մէկ քանի յօդուածը միայն հերքէ՛"։

Լութէր. "Միայն թէ չըլլան ան յօդուածները՝ որ Կոստանդիայի ժողովը դատապարտեր է"։

Արքեպիսկոպոս. "Ահ, շատ կը վախնամ որ քեզմէ ուզածնին ան յօդուածներն են"։

Լութէր. "Ապա ուրեմն՝ ես աւելի կը փափաքիմ որ իմ մարմինս ու կեանքս զոհ ընեմ, ու իմ թեւերս ու ծնկուըներս կտրել տամ, քան թէ Աստուծոյ յայտնի ու ճշմարիտ խօսքը թողում"։ Վերջապէս արքեպիսկոպոսը հասկըցաւ Լութերին ինչ մարդ ըլլալը. վասնորոյ դարձաւ ըսաւ իրեն առանց բարկանալու. "Ուրեմն գացէք ձեր տեղը".

*Գործ. Ե. 38, 39։

Լուտեր պատասխան տուաւ. “Տէ՛ր իմ, ձեզի կաղաչեմ որ կայսերական վեհափառութենէն՝ ետ դառնալու համար հարկաւոր եղած ապահովական թուղթը ինծի առնել տաք”: Ես ատ բանը կը հոգամ, ըսաւ բարեմիտ արքեպիսկոպոսը”: Աս խօսքիս վրայ իրարմէ զատուեցան:

Այսպէս լմնցան միջնորդական զրոյցները*. բոլոր տէրութիւնը աս մարդուս ետեւէն ինկեր էր, թէ սաստիկ աղանչանքով և թէ սոսկալի սպառնալիքով†. ու բնաւ չէին կրնար աս մարդը շփոթել ու խախտել: Լուտեր չուզելով պապին երկաթեղէն բազուկին գլուխ ծռել, զեկեղեցին կազատէր անոր իշխանութենէն, ու նոր դար մը ու թուական մը կըսկսէր:

Լուտեր՝ Սպալատինին հետ դուրս ելաւ. վասն զի արքեպիսկոպոսին հետը խօսած ատենը՝ անիկայ ալ վրայ եկեր էր: Սաքսոնիայի կայսրընտրին խորհրդականը Յովհաննէս Տը Մինքվիթց, Վորմսի մէջ հիւանդացեր էր: Աս երկու բարեկամները անոր տունը գացին. Լուտեր անոր շատ մեծ մխիթարութիւններ տուաւ. ու զատուելու ատենը ըսաւ, “Մնաս բարով. վաղը Վորմսը պիտի թողում երթամ”:

Լուտերին խօսքը շիտակ ելաւ. վասն զի իր իջեւանը հասնելէն իրեք ժամ ետքը, Էք ատենադպիրը՝ իր հետը առնելով կայսեր ատենադպիրը ու մէկ նոտար մը՝ եկաւ Լուտերին սենեակը մտաւ, և այսպէս ըսաւ. “Ո՛վ Մարտինոս Լուտեր՝ կայսերական վեհափառութիւնը, կայսրընտիրները, նախարարները ու տէրութեան իշխանները՝ զանազան անգամ և զանազան կերպով զքեզ յորդորեցին որ հնազանդութիւն ընես. բայց անոնց յորդորանքը ու խրատը պարապը երթալուն համար, կայս-

* Տես երես ՇԽԶ:

† Totum Imperium ad se conversum spectabit; Pallavicini I, p. 120.

րը իբրև փաստաբան և պաշտպան ուղղափառ հաւատոյ, պարտաւորեցաւ ուրիշ միջոց մը գործածել։ Ուստի քեզի կը հրամայէ, որ քսանումէկ օրուան մէջ քու տեղդ դառնաս. ու ճամբան մարդոց հանգստութիւնը չպղտորես, թէ քարոզութեամբ և թէ գրուածքով”։

Լուտեր իսկոյն հասկըցաւ որ աս ծանուցումը իրեն դատապարտութեանը սկզբնաւորութիւնն էր. ուստի քաղցրութեամբ մը պատասխան տուաւ. “Աստուած ինչպէս կամեցաւ նէ, այնպէս եղաւ. Աստուծոյ անունը օրհնեա՛լ ըլլայ”։ Խօսքը շարունակեց. “Ամէն բանէն առաջ՝ խոնարհութեամբ ու յօժար սրտիւ շնորհակալ կըլլամ կայսերական վեհափառութեանը, կայսրընտիրներուն, նախարարներուն ու բոլոր տէրութեան իշխաններուն, որ քաղցրութեամբ ու փափաքով իմ խօսքիս ականջ դրին։ Ես մէկ բանի մը միայն փափաքեցայ. կըփափաքիմ որ Բարեկարգութիւն մը ըլլայ եկեղեցւոյ մէջ՝ Սուրբ Գրոց համեմատ։ Ես պատրաստ եմ ամէն բան ընելով, ամէն նեղութիւն քաշելով, կայսեր կամացը խոնարհութեամբ հնազանդելու։ Կեանքը ու մահը՝ պատիւը ու անարգանքը՝ ինծի համար մէկ է, բայց Աւետարանին քարոզութենէն ետ չեմ կրնար կենալ. վասն զի Պօղոս առաքեալ կըսէ թէ, “Աստուծոյ խօսքը չկրնար կապուիլ”։ Անատենը դեսպանները ելան գացին։

Ուրբաթ առաւօտուն՝ որ Ապրիլի 26 էր, Լուտերի բարեկամները ու խիստ շատ ազնուականներ անոր քովը ժողովեցան։ Կուզէին որ աս քաջասիրտ ու վեհանձն կրօնաւորին հեղ մըն ալ երթաս բարով ըսեն, որ գուցէ անկէց ետքը ամենևին ողջոյն տալու չեն անոր։ Լուտեր նստաւ անոնց հետ քիչ մը կերակուր կերաւ. և ահա հիմա իր բարեկամներէն պիտի զատուի, և անոնցմէ հեռու պիտի փախչի խաւար և մրրկալից ատեն մը։ Ուզելով որ աս

հանդիսաւոր վայրկեանս աղօթքով անցընէ, իր հոգին ու միտքը առ Աստուած ուղղեց, ու իր քովը գտնուողները օրհնեց ։ Առաւօտեան տասներորդ ժամը զարնելուն՝ Լուտեր՝ իջեւանէն դուրս ելաւ, զինքը Վորմս բերող մարդոցը հետ ։ Քսան ձիաւոր ազնուականներ՝ իրեն կառքին ընկերակցութիւն կընէին ։ Անհամար բազմութիւն ժողովրդոց՝ անոր ընկերութիւն ընելով, զանիկայ քաղաքին դռնէն դուրս հանեցին ։ Կայսերական դեսպանը Սթուրմ՝ քանի մը ժամէն ետքը անոր հասաւ Օբբէնհէյմի մէջ, ու հետեւեալ օրը Ֆրանքֆորթ եկան ։

## ՀԱՏՈՒԱԾ ԺԸ

ԱՅՍՊԻՍ Լուտեր Վորմս քաղաքէն ազատեցաւ, ուր որ կըկարծուէր թէ անոր գերեզմանը պիտի ըլլայ ։ Բոլոր սրտով Աստուծոյ փառք կուտար, ու կըսէր ․ “Նոյն ինքն սատանան պապին միջնաբերդը կըպահպանէր ․ բայց Քրիստոս հոն լայն խրամատ մը բացաւ, ու սատանան պարտաւորեցաւ խոստովանելու, թէ Տէրը իրմէն զօրաւոր է” ։

Լուտեր Ապրիլի 27ին՝ շաբաթ իրիկունը Ֆրանքֆորթ հասաւ ․ ու հետեւեալ օրը պարապ ժամանակ գտնելով, որն որ շատ անենէ 'ի վեր չէր կրցեր գտնել, ազդու ու ընտանի ոճով թուղթ մը գրեց իր բարեկամին՝ երեւելի Ղուկաս Կրանաք պատկերհանին, որ Վիդդէմպէրկ կընստէր ․ “Ով սիրելի եղբայր իմ Ղուկաս ․ ես կըկարծէի որ կայսերական մեծհանդիսութիւնը՝ Վորմսի մէջ յիսուն աստուածաբան պիտի ժողվէ, բանաւոր փաստերով ու

իրաւամբ միաբանը համոզելու համար ։ Բայց բնաւ ասանկ բան մը չեղաւ ։ Աս գիրքերը քո՞ւկդ են — ։ Այո՛ ։— Կուզե՞ս զանոնք հերքել ։— Ոչ ։— Ուրեմն գնա՛ բանդ ։ Ահա բոլոր պատմութիւնը այսչափ է ։ Ո՛վ կայր Գերմանացիք . . . . մենք ո՛րչափ տղայութիւն կընենք , ու թող կուտամք որ Հռովմ՝ զմեզ խաբէ ու մեր վրայ խնդայ . . . . ։ Քիչ մը ատեն լուռ կենալու է, ու նեղութիւն քաշելու է . . . . ։ "Քիչ ալ ատենէն ետքը ալ զիս չէք տեսներ , դարձեալ քիչ մը ատենէն ետքը նորէն զիս կըտեսնէք", ըսաւ Յիսուս Քրիստոս ։ Յովհ. ժզ՝ 16 ։ Յուսամ թէ՝ ինծի ալ այնպէս պիտի ըլլայ . Մնաս բարով ։ Ես զձեզ ամէնդ ալ Աստուծոյ կըյանձնեմ , որ անիկայ Քրիստոսով ձեր միտքը ու հաւատքը պահէ , Հռովմայ գայլոց ու վիշապաց յարձակումներէն . ամէն"։

Լուտեր աս նամակը գրելէն ետքը՝ որ քիչ մը խորհըրդաւոր կերեւար , ժամանակին կարծութենէն ստիպուելով անմիջապէս Ֆրիէտպերկ գնաց , որ Ֆրանքֆօրթէն վեց փարսախ հեռու է ։ Հետեւեալ օրը Լուտեր նորէն գրիչը ձեռքը առաւ՝ որ Ներորդ Կարոլոսին ալ թուղթ մը գրէ . վասն զի չէր ուզեր որ ինքը մեկալ ապստամբ յանցաւորներուն կարգը անցնի ։ Բացայայտ կերպով մը թղթին մէջը Կարոլոսին հասկըցուց , թէ թագաւորաց ի՞նչ կերպով հնազանդութիւն ընել պէտք է , և Աստուծոյ ի՞նչ կերպով . ու երբ պէտք է թագաւորաց հնազանդութենէն ետ կենալ , Աստուծոյ հնազանդելու համար ։ Լուտերին գրուածքը կարդացողը՝ անշուշտ պիտի յիշէ Նաբոլէոն մեծազօր ինքնակալին աս խօսքը . "Իմ տէրութիւնս կըլմննայ հոն , ուր տեղ որ խղճմտանքինը կըսկըսի" * ։

* Նաբոլէոնը՝ կայսր ըլլալէն ետքը՝ Բրոթէստանդներէն իրեն գրուած նամակին աս պատասխանը տուաւ . Ma domination finit où celle de la conscience commence.

"Սատանան՝ որ մարդուս սիրտը կը քննէ, ինծի վկայ է քաւ Լուտեր, որ ես պատրաստ եմ ձեր վեհափառութեանը բոլոր սրտով հնազանդութիւն ընելու, թէ փառաց մէջ, թէ անարգանաց մէջ, թէ կեանքով և թէ մահուամբ. ամէն բան զոհ ընելով բացի Աստուծոյ խօսքէն, վասն զի մարդս անով կապրի ու կենդանի կը մնայ: Աս ներկայ աշխարհիս գործառնութեանցը մէջ՝ իմ հաւատարմութիւնս անփոփոխ պիտի մնայ. վասն զի հաշահիլը կամ կորսնցընելը՝ հոգւոյ փրկութեան քովը անտարբեր բաներ կը սեպուին: Բայց Աստուած չուզեր որ մարդս մարդու ծառայէ՝ յաւիտենական բարեաց վերաբերեալ նիւթերու մէջ. քանզի հոգևոր բաներու մէջ ծառայելը՝ տեսակ մը երկրպագութիւն ընել է, որ միայն Ստեղծողին կը վայլէ":

Լուտեր թուղթ մըն ալ տէրութեան իշխանացը գրեց Գերմանական լեզուով. ու կայսեր ինչ որ գրեր էր նէ, իշխանաց ալ գրեթէ նոյն բանը գրեց. ու ան թղթովը՝ Վորմսի մէջ եղած բաները կը պատմէր: Աս թուղթը շատ հեղ օրինակուեցաւ, և բոլոր Գերմանիոյ մէջ տարածուեցաւ. ու Կոքլէոսի խօսքին նայելով՝ ամէն տեղ ժողովրդեան զայրացումը գրգռեց՝ կայսեր ու բարձրագոյն կարգի եկեղեցականաց դէմ *:

Հետևեալ օրը Լուտեր կանուխեկ Սպալատինին տոմսակ մը գրեց, ու նախընթաց իրիկուանը գրուած երկու թուղթն ալ անոր մէջը դրաւ. կայսերական դեսպանը Սթուրմ ետ դարձընելով Վորմս խրկեց, որ աս ալ Աւետարանին վարդապետութիւնը սրտով ընդուներ էր. Լուտեր Սթուրմէն զատուածին պէս՝ տարբերոց ճամբայ ելաւ որ Կրունպերկ երթայ:

Նոյն օրը երեքշաբթի՝ երբոր Լուտեր Հիրշֆելտեն երկու մղոն հեռու էր, ան քաղաքին Աբբայ իշխանին ա-

*Cochlœus, p. 38.

տենադպիրը զինքը դիմաւորեց, որպէս զի իրեն ընդունե-լութիւն ընէ: Հոն ետեւէն անմիջապէս Սաքսոյ իշխանն ալ հասաւ գունդ մը ձիաւորներով, ու ձիէն վար իջաւ. Լութեր ևս իր կառքէն վար իջաւ. երկուքը իրար գրկե-ցին, ու ետքը Հիրշֆելտ մտան: Ծերակոյտը ու ա-տենակալները քաղքին դուռը սպասելով զանոնք դի-մաւորեցին ու ընդունեցին: Այսպէս եկեղեցական իշխան-ները կը վազէին որ պապին նզոված կրօնաւորը տեսնեն. ու երևելի աշխարհականներն ալ՝ կայսեր աքսորած ու ա-նարգած մարդուն առջևը գլուխ կը ծռէին:

«Մենք վաղը առաւօտեան հինգերորդ ժամուն եկե-ղեցին պիտի գտնուինք», ըսաւ իշխանը ան իրիկունը սե-ղանէն ելլելէն ետքը, վասն զի Լութերը կերակուրի հրաւիրեր էր, նաև ուզեր էր որ անիկայ իրեն յատուկ անկողինին մէջը պառկի: Հետևեալ օրը Լութեր քա-րոզ տուաւ, և Սաքսոյ իշխանը իր ծառաներովը՝ անոր ընկերակցութիւն ըրաւ:

Լութեր իրիկուան դէմ Այզենախ հասաւ, ուր որ իր տղայութեան ժամանակը անցուցած էր. հոն բոլոր բարե-կամները իր քովը ժողովեցան, ու իրեն աղաչեցին որ քա-րոզ մը տայ. ու հետևեալ օրը զինքը եկեղեցին տարին: Ան ատենը ան տեղի ժողովրդապետը՝ մէկ նօտարով ու երկու վկայով եկեղեցին մտաւ, ու դողալով առաջ գնաց. վասն զի մէկ կողմանէ կը վախնար որ իր հացը չկտրընցընէ, մէկալ կողմանէ ալ՝ անանկ զօրաւոր մար-դուն դէմ դնելու կը վախնար: Վերջապէս՝ դողդոջուն ձայնով մը ըսաւ. «Ես քու համարձակութեանդ դէմ կենալս ահա կը վկայեմ»: Լութեր ամպիոնը ելաւ. ու ան ձայնը որ քսանուերեք տարի առաջ աս քաղաքիս փողոց-ներուն մէջ կ'երգէր ու հաց կը մուրար, հիմա աս հին եկեղեցւոյն գմբեթները կը հնչեցընէ ան խօսքերովը, որ սկսեր էին աշխարհս ազատելու: Քարոզէն ետքը՝ ժո-ղովրդապետը ամչնալով ու շփոթելով մը Լութերին մօ-

տեցաւ ։ Նօտարը վկայական յայտարարութիւնը գրել էր. վկաները ստորագրեր էին, ու ամէն բան ըստ օրինաց կարգի դրուեր էր, որպէս զի քահանան ի պաշտօնին մէջը ապահով մնայ ։ Անատենը ժողովրդապետը խոնարհութեամբ մը վարդապետին ըսաւ. «Թողութիւն ըրէ՛. ես աս բանս՝ զեկեղեցին տանջող բռնաւորներուն վախէն ըրի»։

Արդարև անիկայ իրաւունք ունէր անոնցմէ վախնալու. վասն զի Վորմսի մէջ ժողովական խորհուրդները ուրիշ ձևի դարձեր էին ։ Հոն միայն Ալէանտէր իր խօսքը կըքալեցնէր ։ Ֆրիդերիկոս իր եղբօրը Յովհաննէս դքսին գրեց թէ, «Լուտերին վախճանը անշուշտ աղէտոր է ։ Մարդ մը չկրնար զանիկայ պաշտել. և թէ որ Աստուած թող տայ որ ես նորէն քեզի հետ տեսնուիմ, շատ անհաւատալի բաներ պիտի պատմեմ քեզի ։ Ոչ միայն Աննան ու Կայիափան, այլ նաև Պիղատոսը ու Հերովդէսը Լուտերի դէմ միացեր են»։ Ֆրիդերիկոս շուզելով որ այլ ևս Վորմսի մէջ մնայ, ելաւ գնաց. նմանապէս Պալատինեան կայսրընտիրը, ու Կոլոնիոյ արքեպիսկոպոս կայսրընտիրը ժողովէն զատուեցան, ստորնագոյն իշխաններն ալ անոնց հետևեցան. վասն զի տրուելու հարուածը ետ դարձընելը անկարելի սեպելով, որոշեցին՝ գուցէ անխոհեմութեամբ, որ ան քաղքէն հեռանան ։ Հոն միայն Սպանիացի, Իտալացի ու պապականութեան նախանձայոյզ Գերմանացի իշխանները մնացին ։

Պատերազմին ասպարէզը ազատ մնացեր էր, ու Ալէանտէր կըյաղթանակէր ։ Ուստի հրովարտակ մը շարադրելով՝ զանիկայ Կարոլոսին ներկայացուց, որ ժողովը անոր օրինակին համեմատ՝ Լուտերին դէմ իրենց հանելու հրովարտակը շինեն ։ Նուիրակին աշխատանքը՝ զայրացած կայսեր ընդունելի եղաւ ։ Ժողովին մնացորդ մարդիկը իր սենեակին մէջը ժողովեց, ու Ալէանտէրին շինած հրովարտակը անոնց առջևը կարդալ տուաւ ։

Պալավիչինին կըմնայ թէ՝ հոն գտնուողներուն ամենն ալ զանիկայ ընդունեցին :

Ծանուցեալ օրը՝ որ մեծ տօնի մը օր էր, կայսրը բոլոր իր պալատականներովը եկեղեցւոյն մէջը գտնուեցաւ : Այս երբոր եկեղեցական հանդէսը կըկատարուէր, ու ժողովուրդը խուռն բազմութեամբ տաճարին մէջ լեցուած էր, Ալէանտէր իր զանազան պաշտօններուն փառաւոր նշաններովը զարդարուած, և Կարոլոսին մօտեցաւ. Ձեռքը Լութերի դէմ հրովարտակին երկու օրինակը բռներ էր, մէկը Լատինական լեզուով, մէկալն ալ Գերմանական լեզուով. ու կայսերական մեծափառութեանը գլուխ ծռելով, Կարոլոսին աղաչեց որ իր ստորագրութիւնը ու տէրութեան կնիքը դնէ : Այս ան վայրկեանին մէջ՝ յորում Սրբութիւն Սրբոցը վեր կըվերցնար, եկեղեցին խնկով կըլեցուէր, ու շարականները եկեղեցւոյն գմբեթները կըհնչեցընէին, Ծառմնոյ Թշնամւոյն դատապարտութեան հրովարտակը պիտի ստորագրուէր՝ իբր թէ Աստուծոյ աչքէն : Կայսրը ուրախ երեսով մը գրիչը ձեռքը առաւ ու ստորագրեց : Ալէանտէր յաղթանակելով եկեղեցիէն դուրս ելաւ. իսկոյն ան հրովարտակը տպել տուաւ, ու Եւրոպայի ամէն կողմը խրկեց :

Պապականները մինչև որ աս բանը գլուխ հանեցին, որքան շատ նեղութիւն քաշեր էին : Նոյն ինքն Պալավիչինին մեզի կիմացընէ որ ան հրովարտակին թուականը՝ թէպէտև Մայիսի 8 դրուած էր, բայց շատ ուշ ստորագրուեցաւ. ու անոնք կամօք աս ծուռ թուականը դրին, որպէս զի ամենուն հաւատցընեն թէ աս հրովարտակին ստորագրուած ատենը, բոլոր ժողովին անդամները տակաւին Վորմսի մէջ էին :

«Մեք Կարոլոս Հինգերորդ, [illegible] [illegible] (կըսէր կայսրը) ամէն կայսրընտիրներուն, իշխաններուն ու արքեպիսկոպոսներուն ու ամենուն, որոնց կըվերաբերի :

«Ամենակարողն Աստուած՝ իր սուրբ հաւատքը պաշտպա-

նելու համար՝ մեզի աւելի թագաւորութիւններ ու իշխանու-
թիւններ յանձնելով, որն որ մեր նախորդացը բնաւ
տուած չէր, մեզի պարտք կը սեպեմք որ բոլոր մեր զօրու-
թիւնները գործածեմք, ու թող չտամք որ մէկ հերե-
տիկոսութիւն մը՝ մեր սուրբ Տէրութիւնը աղտոտէ։

"Օգոստինեան կրօնաւորը Մարտինոս Լուտեր՝ թէ-
պէտև մեզմէ շատ խրատուեցաւ, 'ի վերայ այսր ամենայնի
կատաղածի մը պէս՝ սուրբ եկեղեցւոյն վրայ յարձակեցաւ,
և ուզեց որ հայհոյիչ գրքերով զանիկայ ընկղմէ։ Անի-
կայ ամօթալից կերպով մը ամուսնութեան անլուծանե-
լի օրէնքը խանգարեց. ջանաց աշխարհականները ասք
հանելու, որպէս զի ձեռքերնին քահանայից արեանը մէջ
լուան. ու ամէն տեսակ հնազանդութիւնը բնաջինջ ը-
նելով՝ զանոնք անզգայ կը գրգռէ որ ապստամբու-
թիւն, երկպառակութիւն, պատերազմ, սպանութիւն,
գողութիւն ու հրկիզութիւն ընեն. ու կաշխատի որ քրիստո-
նէական հաւատքը բոլորովին կործանէ. . . . Այս անոր
անթիւ չարութիւնները մէկիկ մէկիկ չյիշելու համար,
մէկ խօսքով հասկըցընեմ որ անիկայ մարդ չէ, այլ
մարդակերպ ու մարմնաւոր սատանայ մըն է, ու զինքը
միաբանի վեղարով ծածկեր է. և բոլոր հին ու անցած
ժամանակներուն անզգամ ու չարաչար հերետիկոսու-
թիւնները մէկ հոտած ճախինի մը մէջ ժողովեց, ու ինքն
ալ իրմէ ուրիշ նոր հերետիկոսութիւններ անոնց վրայ
աւելցուց . . . .

"Աս պատճառաւ մենք մեր առջևէն վռնտեցինք աս
Լուտերը, որ ամէն բարեպաշտ և խելացի մարդիկը՝
զանիկայ խենդի կամ դիւահարի տեղ կը դնեն. ու միա-
քերնուս մէջ որոշեցինք, որ անոր ապահովական թղթին
ժամանակը լմննալէն ետքը, զօրաւոր ու աղէկ միջոցնե-
րով անոր կատաղի բարկութիւնը խափանեմք։ Աստի
կը հրամայեմք որ աս վտանգաւոր պայմանաժամը լմննա-
նելէն ետքը, մարդ մը չկարենայ Լուտերը իր տունը առ-

նուլ, պահել, կերակրել, փախցընել, կամ թէ խօսքով՝ թէ գործքով՝ թէ յայտնապէս և թէ ծածկաբար կամ ո՛ և իցէ օգնութիւն մը չընէ անոր. այլ թէ ոչ՝ իբրև ապըս-տամբ կայսերական հրամանաց՝ ծանր պատիժներով կը պատժուի: Այլ նաև կը հրամայեմք որ զանիկայ ուր որ գտնէք նէ բռնէք ու անյապաղ մեզի բերէք, կամ ապահով տեղ մը պահէք, մինչև որ մեզմէ հանկընաք թէ անոր ի՞նչ ընելու էք. ու ձեր աշխատանացը պարգևու-պատշաճ վարձքը ու հատուցումը մեզմէ առնէք, ասանկ սուրբ ու բարի գործքի մէջ գտնուելնուդ համար: Այլ անոր հետևողները բռնեցէք, բանտարկեցէք ու անոնց ապրանքը արքունի գանձը խրկեցէք.

"Նաև անոր գրուածքներուն: Թէ որ խիստ պատուական կերակուրի մը մէջ կաթիլ մը մահաբեր խառնուի, ան կերակուրէն ամէն մարդ կը փախչի ու կը զզուի. Նոյն գիրքերուն մէջն ալ հոգւոյն մահաբեր խառնուած ըլլալուն համար՝ ո՛չ միայն անոնցմէ խիստ փախչելու և զզուելու եմք, այլ նաև զանոնք բոլորովին բնաջինջ ընելու եմք: Ուրեմն դուք զանոնք այրեցէ՛ք, կամ մէկ ուրիշ կերպով մը բոլորովին ոչնչացուցէք:

"Իսկ պապին կամ եկեղեցւոյ թշնամի եղող հեղինակները, բանաստեղծները, գիրք տպողները, պատկերհանները, ու արգիլեալ գրուածքներ, երգիծաբանութիւններ ու պատկերքներ գնող ու ծախող մարդիկը բռնեցէք, ապրանքնին ձեռքերնէն առէք, ու իրենց ալ ի՛նչ կուզէք նէ անիկայ ըրէք:

"Այլ ո՛ և իցէ իշխանաւոր մարդ՝ թէ որ մեր կայսերական վեհափառութեան հրովարտակին ու վճռոյն դէմ գնել համարձակելու ըլլայ, կը հրամայեմք որ անիկայ զրկուելով իր իշխանութենէն՝ աքսորուի, ու անոր ստացուածքը արքունի գանձը երթայ:

"Պէտք է որ ամէն մարդ աս հրովարտակին կանոնը ու հրամանը բռնէ":

Ահա Վօրմզի մայր եկեղեցւոյն մէջը ստորագրուած հրովարտակին օրինակը ասիկայ է։ Այս հրովարտակը Հռովմէական կոնդակէ մը աւելի սաստիկ էր. վասն զի անիկայ Իտալիոյ մէջ հրատարակուած ըլլալուն համար, կարելի է որ Գերմանիայի մէջ 'ի գործ չդրուէր։ Բայց հիմա նոյն ինքն կայսրը իր բերնովը վճռեր էր, ու ժողովն ալ անոր հաւանութիւն տուեր էր։ Բոլոր Հռովմայ կողմնակցութիւն ընողները՝ յաղթութեան ձայնով մը գոչեցին, “Ասիկայ ողբերգութեան վերջն է”։ Բայց Ալփոնսոս Վալտէզ անունով Սպանիացի մը՝ որ Կարոլոսի պալատականներուն մէկն էր, ըսաւ. “Ես աղէկ գիտեմ որ ասիկայ վերջը չէ, այլ սկիզբն է”*։ Վալտէզ աղէկ կը հասկընար որ եկեղեցւոյ մէջ, ժողովրդոց մէջ ու անդարուն մէջ շփոթութիւն մը ու այլափոխութիւն մը մտեր էր. ու Լութեր իյնար ալ նէ, իր դատը ու փաստը իր հետը պիտի չիյնար։ Սակայն մէկը չկար որ Լութերի անձը անելանելի ու մերձակայ վտանգի մէջ ըլլալը չգիտնար և չվախնար. և բոլոր սնապաշտ մարդիկը կըսոսկային՝ երբոր միտքերնին կըբերէին, ան մարմնաւոր սատանան՝ միաբանի մը վեղարով ծածկուած, որն որ կայսրը բովանդակ ազգին կըցուցներ։

Իսկ ան մարդը՝ որուն դէմ աշխարհիս զօրաւորները այսպէս իրենց նետերը կարձակէին, հիմա Այզենախի եկեղեցիէն ելեր էր, ու պատրաստութիւն կըտեսնէր, որ իրեն քանի մը խիստ սիրելի բարեկամներէն զատուի։ Չէր ուզեր որ Կոթայի ու Էրֆուրթի ճամբան բռնէ երթայ, այլ կուզէր որ Մօրայի գեղը երթայ. վասն զի իր հայրը հոն տեղացի ըլլալով, կըփափաքէր որ իր մեծ մայրը անգամ մըն ալ տեսնէ (որն որ անկէց չորս ամիսէն ետքը մեռաւ,) ու իրեն հօրեղբօրը Հէնրիկոս Լութերին և ուրիշ ազգականացը այցելութիւն ընէ։

* [illegible]

Շուրֆ՝ Յովնան և Սուավէն՝ Վիդդէմպերկի ճամբան բռնեցին գացին ։ Լուտեր Ամստորֆին հետ իր կառքը նըստաւ, ու Թիւրինկիայի ընդարձակ անտառները մտան ։

Նոյն իրիկունը հինգշաբթի օր, իր հայրերուն գեղը մտաւ ։ Ան աղքատ և գեղջուկ պառաւը սիրով գրկեց իր թոռը, որն որ քիչ մը առաջ Կարոլոս կայսեր ու Լեոն պապին դէմ գրեր էր ։ Լուտեր հետևեալ օրը իր ազգականացը քովը անցուց․ ու Վորմսի բազմամբոխ խառնակութենէն ետքը այս քաղցր հանդարտութիւնը՝ իրեն երջանկութիւն կերևար ։ Շաբաթ օրը նորէն ճամբայ ելաւ Ամստորֆին ու իր Յակոբոս եղբօրը հետ ։ Ահա Լուտերի վիճակը՝ այս առանձնութեանս մէջ պիտի որոշուէր ։ Անոնք Թիւրինկիայի անտառներուն մէջը՝ Ալթէնշտայնէն քաղաքին ճամբան բռներ կերթային․ երբոր կառքը խառնշտաւոր ու խորին ճամբայ մը իջաւ, Ալքսպաքի կիսաւեր եկեղեցւոյն ու Ալթէնսթէյնի բերդին մօտ՝ յանկարծ ձայն մը լսուեցաւ, և իսկոյն հինգ ծպտեալ ձիաւորներ առանց վրայ յարձակեցան, որ ամէնուն վրայ ալ զէնք լեցուն էր ։ Լուտերի եղբայրը Յակոբոս՝ յարձակող ձիաւորները տեսածին պէս՝ կառքէն վար իջաւ, ու առանց բան մը զրուցելու վազելով փախաւ ։ Կառավարը ուզեց որ զէնքը պաշտպանէ․ «Կայնէ», ըսաւ անոր զարհուրելի ձայնով մը ան անծանօթ մարդոց մէկը․ ու կառավարին վրայ յարձակելով՝ զանիկայ գետինը կործանեց ։ Ծպտեալ մարդոց մէկն ալ Ամստորֆը բռնեց, ու զանիկայ մէկ դի քաշեց տարաւ ։ Աս միջոցին՝ մէկալ իրեք ձիաւորները խորին լռութիւն մը պահելով, Լուտերի վրայ հասան, բռնութեամբ զանիկայ կառքէն դուրս հանեցին ու անոր ուսերուն վրայ ասպետի վերարկու մը ձգելով՝ հետերնին բերած պարապ ձիուն վրայ հեծցուցին զանիկայ ։ Ան ատենը մէկալ երկու ձիաւորները՝ Ամստորֆը ու կառավարը թող տուին ։ Հինգն ալ ձիու վրայ հեծան․ անոնց մէկին գլխարկը գետինը ինկաւ, բայց անոնք ընաւ

կանկ չառին զանիկայ առնելու համար . ու վայրկեանի մը մէջ՝ ան թանձրախիտ անտառին մէջը իրենց գերիին հետ անյայտ եղան : Առաջ Պրօտերոտին ճամբան բռնեցին , ու ետքը վաղվաղակի ուրիշ ճամբով մը նորէն իրենց առջի ճամբանին դարձան , ու առանց անտառէն դուրս ելլելու , անտառին ամէն կողմը պտըտեցան . որպէս զի փնտըռողը՝ իրենց քայլէն ու հետքէն զիրենք չգտնէ :

Լուտեր ձիով ճամբորդութիւն ընելու սովոր չըլլալով , շուտով մը յոգնեցաւ . զինքը բռնողները թող տուին որ ձիէն վար իջնայ . ու քանի մը վայրկեան բաղեղի մը քով յոգնութիւն առնելէն ետքը , մէկ աղբիւրէ մը պաղ ջուր խմեց , որ անիկայ մինչև հիմա Լուտերի աղբիւր կըսուի : Անոր Յակոբոս եղբայրը անդադար վազելով ու փախչելով , իրիկուան դէմ Վալթերսհաուսէն հասաւ : Կառավարը դողալով իր կառքը հեծեր էր ( ուր որ Ամըստորֆն ալ նորէն ելեր նստեր էր ,) ու իր ձիերը քշելով ու շուտով ան տեղուանքէն հեռանալով , Լուտերին բարեկամը մինչև Վիդդէմպէրկ քաղաքը տարաւ : Վալթերսհաուսէնի մէջ , Վիդդէմպէրկի մէջ , միջանկեալ գեղերուն ու քաղաքներուն մէջ ու ամէն ճամբաներու մէջ՝ Լուտեր վարդապետին կորսուելուն լուրը տարածուեցաւ : Թէպէտև ոմանք կուրախանային երբոր աս լուրը կըլսէին , բայց շատերն ալ զարմացմամբ ու բարկութեամբ կը լեցուէին : Իսկոյն բոլոր Գերմանիայի մէջ ամէնն ալ սկսան ցաւակցական կերպով մը զրուցել , "Ա՜հ , ահա Լուտեր իր թշնամեաց ձեռքը ինկաւ" :

Լուտեր ան սաստիկ պատերազմին դիմանալէն ետքը , կամեցաւ Աստուած որ զանիկայ խաղաղ ու հանգիստ տեղ մը տանի : Վորմսի հռչակաւոր թատրոնին վրայ կայնեցընելէն ետքը զԼուտեր , ուր որ անոր բոլոր հոգեկան զօրութիւնները փայլեր էին , անոր մթին ու խոնարհեցուցիչ բանտ մը կուտար , որ հոն առանձին նստի : Աստուած՝ խիստ խորին ու խաւարչտին տեղերէ տկար գոր-

ծիքներ կը հանէ, ու անոնցմով մեծ բաներ ընել կուզէ․ ու յետոյ զանոնք քիչ մը ատեն փառաւոր տեսարանի մը վրայ մեծ պայծառութեամբ փայլեցնելէն ետքը, նորէն աւելի խորին մթութեան մէջ կը խրկէ: Բարեկարգութեան գործը՝ չէ թէ զօրաւոր կռիւներով կամ փառաւոր հանդէսներով ու երևոյթներով պիտի կատարուէր, չէ թէ ասկերպով խմորը ժողովրդեան զանգուածին մէջ կաղդէ, քանզի Հոգին Սուրբ աւելի խաղաղ ճամբաներ կը սիրէ: Ան մարդը՝ որ Հռովմէական քաջամարտ զինուորներէն միշտ անգթութեամբ կը հալածուէր, պէտք էր որ քիչ մը ատեն մարդոց աչքէն անյայտ ըլլայ: Պէտք էր որ Լուտերի փառքը նսեմանար, որպէս զի ան բարեկարգ փոփոխութիւնը՝ որ պիտի կատարուէր, մինակ մէկ մարդու մը գործք չըլլար: Պէտք էր որ մարդը մէկ դի կենար, որպէս զի Աստուած միայն մնար, ու շրջէր իրեն Հոգւովը՝ անդնդոց վրայ, ուր որ արդէն միջին դարուն խաւարները կը նկլմէին․ ու ըսէր, "Եղիցի լոյս", և լոյս ըլլար:

Վերջապէս գիշերը վրայ գալով ու մարդ մը չկրնալով Լուտերի պահապանը ետևէն երթալ, ան ատենը իրենց ճամբան փոխեցին, ու կէս գիշերէն մէկ ժամ առաջ լեռան մը տակը հասան: Յոգնած ձիերը կամաց կամաց ան լեռնէն վեր ելան: Լեռանը վրայ մէկ հին բերդ մը կար, որուն ամէն կողմը Թիւրինկիայի լեռներուն մթին անտառներովը պատած էր, ու միայն դրանը կողմը բաց էր: Լուտեր՝ աս բարձր ու առանձին բերդը տարին, որ Վարդպուրկ կըսուէր, և ուր որ առանոք հին իշխանները կը պահուէին: Երկըթէ նիգերով ու կղպակներով գոցուած դռները բացուեցան․ Լուտեր ներս կը մտնէ, ու նորէն դռները կը գոցուին: Զիէն իջնալուն պէս՝ ձիաւորներուն մէկը՝ որ Պուրքարտ Տը Հունտ կըսուէր, ու Ալթենսթէյնին իշխանն էր, ետ քաշուեցաւ գնաց: Մէկալը՝ որ Յօհաննէս Տը Պերլէփշ կըսուէր ու Վարդպուրկ բերդին վերակացու իշխանն էր, վարդապետը ան սենեակը

տարաւ, որն որ իրեն բանտը պիտի ըլլար. ու հոն ասպետի մը հագուստ ու մէկ սուր մը դրուած էր։ Անկայ իրեք ձիաւորները որ իշխանին ծառաներն էին, Լուտերի եկեղեցական զգեստները հանեցին, ու ան ասպետի զգեստները անոր հագցուցին, ու հրամայեցին որ մօրուքը մազերը թող տայ որ երկըննան, որպէս զի նաև բերդին մէջի մարդիկը չկարենան հասկընալ անոր ո՛վ ըլլալը. ու անոնց անանկ հասկըցուցին, որ ան գերիին անունը՝ Գէորգ ասպետ է։ Լուտեր աս հագուստովը հաղիւ թէ ինքզինքը կըճանչնար։ Վերջապէս զանիկայ մինակ թողուցին, որ Վորմսի մէջ եղած զարմանալի բաները՝ իր ապագայ անստոյգ վիճակը և իր նոր ու անսովոր բնակարանը մտածէ. ու նաև իր սենեակին նեղ պատուհաններէն՝ շրջակայ մութ՝ անհուն ու անբնակ անտառները զննէ։ Մատթէսիոս՝ Լուտերի վարքին պատմիչը ու բարեկամը կըսէ թէ "Վարդապետը հոն մնաց, ինչպէս սուրբ Պօղոս Հռովմայ բանտին մէջը"։

Փրիդէրիկոս Տըլժունը, Փիլիպպոս Փէլիթմքը ու Սպալատինը Վորմսի մէջ՝ կայսրընտրին հրամանաւը Լուտերին յայտներ էին մէկ ընտանի խօսակցութեան մը մէջ, թէ իր ազատութիւնը Կարոլոսին ու պապին բարկութեանը զոհ պիտի ըլլայ *։ Ի վերայ այսր ամենայնի աս յափշտակութիւնը կամ կորուստը՝ այնպիսի ծածուկ կերպով մը եղաւ, որ նաև նոյն իսկ Փրիդէրիկոսը խել մը ժամանակ Լուտերին եղած տեղը չկրցաւ հասկընալ։ Բայց Լուտերի ու Բարեկարգութեան բարեկամաց ցաւը ու կսկիծը շատ երկընցաւ։ Գարունը անցնելէն ետքը, ամառ մը՝ աշուն մը ու ձմեռ մըն ալ անցաւ. արեգակն ալ իրեն տարեկան շրջանը կատարեց, ու տակաւին Լուտեր իբրև գերի Վարդպուրկի պարիսպներուն մէջը փակուած էր։ Ճըշմարտութիւնը ժողովին ձեռքովը խափանեցաւ ու արգիլ-

* Seckend, P. 365.

ուեցաւ ։ Իր պաշտպանը ամուր բերդի մը մէջ փակուեցաւ ու աշխարհիս տեսարանէն անյայտ եղաւ , և մէկը չգիտցաւ թէ ի՞նչ եղաւ անոր . Ալէանտէր կըյաղթանակէ . Բարեկարգութիւնը կորսուած կերևայ ...... բայց Աստուած կըթագաւորէ . ու ան հարուածը՝ որ կարծես թէ Աւետարանին դատը ու փաստը պիտի ոչնչացընէր , ուրիշ բանի չծառայեց , բայց եթէ Աւետարանին քաջասիրտ պաշտօնեան ազատելու , ու հաւատոյ լոյսը ալ աւելի տարածելու ։

## ՎԵՐՋ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՐԻՆ



# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ԱՅՍ ԳՐՔԻՍ ՄԷՋ ԳՈՐԾԱԾՈՒԱԾ ԳՐԱԲԱՐ ԲԱՌԵՐՈՒՆ



| | ԵՐԵՍ | ՏՈՂ | |
|---|---|---|---|
| Ազգապիղծ | 113. | 15. | ազգը պղծող. տես. Ա Կորնթ. Ե. 1։ |
| Ալետանջ | 526. | 3. | տաղտալաթմիշ ընող։ |
| Ախոյեան | 137. | 4. | թարաֆ եղող։ |
| Ակն հատած | 353. | 28. | կողըմ բացած։ |
| Ակնածութեամբ | 198. | 16. | խաթրի չդպչելով։ |
| Ակնթարթ | 206. | 30. | աչք բանալ գոցելու չափ ժամանակ։ |
| Ահեղաձայն | 17. | 27. | վախցընելու ձայնով։ |
| Աղանդ | 224. | 18. | ծուռ վարդապետութիւն։ |
| Աղաւաղութիւն | 171. | 12. | աւրուիլը։ |
| Աղբիւս | 14. | 24. | չէօփլիւք։ |
| Աղետալի | 197. | 31. | ցաւ տուող։ |
| Աղերսարկու | 360. | 26. | աղաչանք ընող։ |
| Աղմուկ | 524. | 2. | վէլվէլէ։ |
| Աճապարել | 332. | 22. | աճէլէ ընել։ |
| Աճառային պղպջակ | 478. | 14. | սապոն քէօփիւյիւ։ |
| Աճիւն | 52. | 20. | մեռելոց հողը։ |
| Ամեհի | ժա. | 24. | եապանի |
| Ամենազուտ | 155. | 16. | բոլորովին մաքուր։ |
| Ամուլ | 256. | 17. | գըսըր։ |
| Ամուրի | 373. | 14. | աղապ։ |
| Ամպիոն | 48. | 10. | քարոզ տալու բարձր տեղ։ |
| Այլայլել | 145. | 21. | չփոթուիլ։ |
| Այլանդակ հրէշ | 334. | 20. | անճոռնի ցուցանք մը։ |
| Այծեամ | 320. | 19. | եապան քէչիսի։ |
| Այպանել | 252. | 28. | ծաղր ընել։ |
| Այցելու լինել | 432. | 18. | տեսութիւն ընել։ |
| Անաչառ | 35. | 11. | խաթրի չնայող։ |
| Անառիկ բերդ | 259. | 30. | չառնուելու խալէ։ |
| Անգղ | 306. | 29. | աք պապա։ |
| Անգոսնելի | 406. | 15. | քամահրուելու։ |
| Անդրդուելի | 69. | 26. | անխախտելի, չշարժուող։ |
| Անընդհատ | 126. | 14. | շարունակ, տայիմա։ |

| | | | |
|---|---|---|---|
| Անթարթափ | 255. | 5. | աչքը բացած ։ |
| Անթերի | 37. | 8. | ամբողջ, թէքմիլ ։ |
| Անիւ | 516. | 11. | թէքէրլէկ ։ |
| Անխախտ | 440. | 7. | չշարժուող, հաստատ ։ |
| Անկատակութիւն | 48. | 24. | ծանր բարք ունենալը ։ |
| Անկեղակարծ | 66. | 33. | անկեղծ ։ |
| Անկիւն | 200. | 7. | պուճաղ ։ |
| Անհեթեթ ճոռոմութիւն | 92. | 8. | անճոռնի ճարտասանութիւն ։ |
| Անձանձրոյթ | 45. | 33. | ուսանելէ չըլլալով ։ |
| Անձկութիւն | 86. | 4. | նեղութիւն տուող փափաք ։ |
| Անմոլար | 178. | 29. | անսխալելի ։ |
| Անյողդողդ | 300. | 14. | անշարժ ։ |
| Անշուք | 48. | 16. | անզարդ ։ |
| Անողոքելի | 178. | 19. | չհամոզուելու, խօսք մտիկ չընող ։ |
| Անջատել | 205. | 15. | զատել ։ |
| Անսովոր դրութիւն | 67. | 20. | չլսուած վարդապետութիւններ ։ |
| Անվաւեր | 126. | 20. | բան չաժող, փուճ ։ |
| Անվեհեր | 206. | 4. | չվախցող ։ |
| Աշխարհագիր | 504. | 21. | աշխարհքս գիրը անցընող ։ |
| Աշխոյժ | 534. | 23. | էշխլի եւ ուժեղ ։ |
| Աշտարակ | 58. | 30. | բերդ. գալէ ։ |
| Ապաստանարան | 446. | 19. | սրղընմիշ ըլլալու տեղ ։ |
| Ապարանք | 138. | 21. | սարայ ։ |
| Ապերջանիկ | 29. | 30. | թշուառ, եւ ողորմելի ։ |
| Ապստամբութիւն | 135. | 23. | զօրպալըգ ։ |
| Ապուշ | ա̃. | 13. | անմիտ ։ |
| Առանց յապաղելու | 214. | 4. | չուշացընելով ։ |
| Առասպել | 134. | 15. | մասալ ։ |
| Առնաբար | 408. | 16. | կտրիճութեամբ ։ |
| Առոյգ | 62. | 17. | կէնճ, տինճ ։ |
| Առու | 184. | 25. | ջրի ճամբայ ։ |
| Առուակ | 209. | 32. | պզտիկ վազուն ջուր ։ |
| Ասպարէզ | 37. | 20. | աթ մէյտանը ։ |
| Ասպետ | 363. | 17. | ազնուական զինուոր ։ |
| Աստուածադաւանութիւն | ա̃. | 13. | տեսակ մը անհաւատութիւն ։ |
| Ատենադպիր | 453. | 24. | տիվան քեաթիպի ։ |
| Ատենակալ | 496. | 16. | դատաւոր ։ |
| Ատրճանակ | 361. | 17. | փիշտոֆ ։ |
| Արագաբար | 182. | 4. | շուտով ։ |
| Արատաւոր | 377. | 15. | լէքէլի ։ |
| Արգաւանդ | 353. | 14. | մահսուլլու ։ |
| Արդարակորով | 1. | 14. | խիստ արդար ։ |
| Արեւակէզ | 324. | 15. | արեգակէն այրած ։ |
| Արիութիւն | 132. | 10. | կտրիճութիւն ։ |
| Արիւնաթաթաւ | 518. | 18. | արիւնի թաթխուած ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Արիւնախանձ | 558. | 6. | արիւն թափող |
| Արծարծել | 157. | 3. | ալէֆլէնտիրմէք ։ |
| Արծարծիլ | ԺԶ. | 8, 9. | փառլամիշ ըլլալ ։ |
| Արկղապետ | 114. | 29. | գանձապետ, սանտըգ էմինի ։ |
| Արձագանք | 25. | 4. | ետ դարձող ձայն՝ որ լեռներու մէջ կըլսուի ։ |
| Արձան | 220. | 21. | քարէ փորուած պատկեր ։ |
| Արմատաքի խլել | 468. | 19. | քէօքէն փրցունել կամ հանել ։ |
| Արշաւանք | Ժ. | 26. | վրայ վազելը ։ |
| Արշաւասոյր ընթացք | 273. | 21. | կրակի պէս վազելը ։ |
| Արուարձան | 161. | 23. | գիւղ ։ |
| Արուսեակ | 77. | 11. | սապահ եըլտըզը ։ |
| Արտայայտիչ դէմք | 48. | 19. | սրտի եղածը յայտնի ցուցընող դէմք ։ |
| Արօրադրել | 39. | 16. | սապան տէմիրով գետինը փորել ։ |
| Աւան | 213. | 26. | մեծ գիւղ, գասապա ։ |
| Աւար | 115. | 1. | եաղմա եղած բան ։ |
| Աւերակ | Դ. | 9. | վէրանէ ։ |
| Աքսորել | 171. | 16. | սիւրկիւն ընել ։ |

---

| | | | |
|---|---|---|---|
| Բազմակնճիռ | 25. | 9. | անլուծանելի, խիստ խառնուած ։ |
| Բազմահռչակ | 17. | 17. | Չօք նամտար ։ |
| Բաղկացած | Դ. | 14. | շինուած ։ |
| Բաճկոն | 487. | 10. | եէլէկ կամ զըպուն ։ |
| Բանակ | 440. | 9. | օրտու ։ |
| Բանիբուն | 455. | 17. | բան գիտցող ։ |
| Բառաչումն | 96. | 15. | եզին պոռալու ձայնը ։ |
| Բարդել | 384. | 15. | դիզել, եըղմաք ։ |
| Բարդուիլ | 37. | 12. | գաթ գաթ օլմաք ։ |
| Բարեպատեհ | 529. | 6, 7. | մինասիպէթլի ։ |
| Բարձիթողի ընել | 426. | 24. | զանց ընել ։ |
| Բարօրութիւն | 200. | 20. | բարիք ։ |
| Բեկեալ | 22. | 2. | կոտրուած ։ |
| Բեղմնաւորիլ | 190. | 2. | պէրէքէթլի ըլլալ ։ |
| Բերկրապատար | 5. | 30. | ուրախութեամբ լեցուն ։ |
| Բիծ | 100. | 4. | լէքէ ։ |
| Բիրտ | 7. | 7. | անձոռնի, կոպիտ ։ |
| Բիւրեղ | 66. | 9. | պիլլօռ ։ |
| Բնական որդի | 55. | 21. | առանց ամուսնութեան ծնած որդի ։ |
| Բնաջինջ ըլլալ | 184. | 28. | աւրուիլ ։ |
| Բոկոտն | 500. | 8. | բոպիկ ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Բողոք | 185. | 25. | տաթ ֆիրեատ ։ |
| Բովք | 3. | 14. | երկաթ հալեցընելու օ–ճախ ։ |
| Բուրել | 278. | 17. | հոտ հանել ։ |
| Բռնաբարութիւն | 262. | 5. | զոռ, զօռլըգէթ ։ |
| Բռնակալ | 306. | 25. | զօռպա ։ |

---

| | | | |
|---|---|---|---|
| Գահ } | 162. | 23. | աթոռ, թահտ ։ |
| Գահոյք } | Դ. | 28. | |
| Գահերէց | 63. | 2. | ուագերէց ։ |
| Գաղափար | 62. | 13. | խորհուրդ եւ օրինակ ։ |
| Գամուիլ | 136. | 33. | մըխլանմագ ։ |
| Գաւիթ | 526. | 15, 16. | ավլու ։ |
| Գերահռչակ | 87. | 3. | անունը խիստ տարա–ծուած ։ |
| Գերան | 146. | 6. | տիրէկ ։ |
| Գերապանծ | 247. | 33. | իւստիւն, մէշհուր. |
| Գերդաստան | 110. | 21. | ֆամիլեա ։ |
| Գիշատուիլ | 209. | 33. | փառալանմաք. |
| Գլխապարտութեան տեղ | 174. | 21. | գլուխ կտրելու տեղ ։ |
| Գլխարկ | 11. | 30. | շափգա ։ |
| Գնահատութիւն | ԻԴ. | 29. | գին կտրելը ։ |
| Գոհար | 66. | 8. | ճէվահիր ։ |
| Գողաբնակ անտառ | 498. | 10. | գողերու կեցած օրման ։ |
| Գոռոզամիտ | ԺԷ. | 20. | ամբարտաւան ։ |
| Գորովալից ժպիտ | 247. | 8. | գթալից խնդում. |
| Գորովանօք | 219. | 13. | սիրով ։ |
| Գուժալի լուր | 16. | 27. | գէշ լուր ։ |
| Գունդագունդ | 97. | 1. | քիւմէքիւմէ ։ |
| Գրաւ | 463. | 8. | ռէհին ։ |
| Գրաւել | 19. | 25. | զապթ ընել ։ |
| Գրուան | 547. | 24. | չինիք ։ |

---

| | | | |
|---|---|---|---|
| Դաժանութիւն | 56. | 25. | զալըմլըք ։ |
| Դայեակ | 335. | 14. | սիւտանա ։ |
| Դանդաղ | 438. | 28. | ծոյլ, յամր ։ |
| Դաշնակ | 402. | 29. | խանչէր ։ |
| Դաշնակից | ԺԱ. | 8. | մէկ տեղ խաւլ ընող ։ |
| Դաշտ | 141. | 5. | օվայ ։ |
| Դառնակսկիծ | 20. | 19. | խիստ դառն ։ |
| Դատախազութիւն | 65. | 20. | շէքվայ ընելը ։ |
| Դատարկասուն | 17. | 11. | ծուլութեամբ ապրող ։ |
| Դար. | 1. | 1. | հարիւր տարիի չափ ժա–մանակ ։ |

| | | | |
|---|---|---|---|
| Դարբնոց | 117. | 5. | տէմիր խանայ։ |
| Դարման | 289. | 13. | իլաճ։ |
| Դաւակցութիւն | 410. | 26. | մէկ տեղ նենգութիւն հը-նարելը։ |
| Դաւաճանութիւն | 227. | 19, | հիլլէպազլըգ։ |
| Դափնի | 354. | 4. | թէֆնէի ծառ։ |
| Դեղթափ | 165. | 4. | փանզեհիր։ |
| Դեսպան | 216. | 24. | էլչի։ |
| Դէտ | 135. | 15. | վերակացու, կեօզճիւ։ |
| Դժկամակութիւն | 253. | 23. | չուզելը, չհաւնիլը։ |
| Դժուարատար | 6. | 26. | անտանելի։ |
| Դիակ | 148. | 4. | մեռած մարմին, լէշ։ |
| Դիմագրաւ ըլլալ | 226. | 12. | յանձնուիլ իր դիմացինին։ |
| Դիւթական զօրութիւն | Դ. | 14. | կախարդական զօրութ՟։ |
| Դիւցազուն | 164. | 22. | պէյլզատէ։ |
| Դղեակ | Լա. | 28. | բերդ, գալէ։ |
| Դողդոջուն | 401. | 29. | դողդղացող։ |
| Դուզնաքեայ | 199. | 26. | քիչ, ճիզվի։ |
| Դպրոցական վարդա-պետներ. | ԾԴ. | 26. | Հռովմէական եկեղեցիին առջի աստուածաբանները՝ որոնք ԺԲ, ԺԳ և ԺԴ երորդ դարերուն՝ ըընչէին խնդիրներու կըպարապէ-ին։ |
| Դրամանոց | 94. | 8. | պանքա։ |
| Դրդել | 309. | 7. | յորդորել, ֆիթ տալ։ |
| Դրօշակ | 182. | 17. | պայրաք։ |

---

| | | | |
|---|---|---|---|
| Եզրակացութիւն | 259. | 18. | նէթիճէ։ |
| Եկամուտ | 91. | 17. | կէլիր։ |
| Եղանակ | 154. | 28. | թարզ։ |
| Եղեռնաւոր | 99. | 31. | մեծ յանցաւոր։ |
| Եղծել | 199. | 29. | աւրել։ |
| Եպիկիւրեան | 51. | 5. | զէֆք ու էֆայ սիրող։ |
| Եռանդուն մտօք | 172. | 5. | աշգիլէ։ |
| Երագել | 353. | 16. | շուտովընել։ |
| Երամիշտ | ԼԴ. | 32. | խաղ կանչող. խանէնտէ։ |
| Երակ | 138. | 12. | տամար։ |
| Երաշխաւոր | 229. | 11. | քէֆիլ։ |
| Երասանակ | 133. | 1. | տիզկին. և կէմ։ |
| Երգիծաբանութիւն | 354. | 6. | սիրտ ցաւցունելու խօս-քեր։ |
| Երգիծական | 54. | 30. | սիրտ ցաւցունող։ |
| Երեսփոխան | 232. | 21. | փոխանորդ, վէքիլ։ |
| Երկնաքար | 22. | 8. | երկինքէ իջած։ |

| | | | |
|---|---|---|---|
| Երկչոտութիւն | 150. | 12. | վախկոտութիւն : |

---

| | | | |
|---|---|---|---|
| Զայրանալ | 205. | 22. | բարկանալ : |
| Զայրացընել | 423. | 16. | ազդումիշ ընել : |
| Զգածեալ | 120. | 30. | մտածմունքի մէջ թողու-ցած, եւ միաւորուած : |
| Զեղխութիւն | 493. | 31. | ուտել խմելը սիրել : |
| Զինագործ | 217. | 5. | սիլահճը : |
| Զինարան | 463. | 13. | սիլահ խանէ : |
| Զիջանիլ | 144. | 33. | խոնարհիլ : |
| Զղեար | 72. | 22. | մուշմուլայ : |
| Զննել | 499. | 12. | սէյիր ընել : |
| Զուարթադէմ | 526. | 11. | ուրախ երեսով : |
| Զսպել | 123. | 1. | զապթ ընել : |
| Զտել | 3. | 22. | մաքրել : |
| Զրահ | 187. | 5. | զըրխ : |

---

| | | | |
|---|---|---|---|
| Ըղձանք | 6. | 3. | բաղձանք, արդու : |
| Ընդարոյս | 522. | 14. | բնական, զաթը : |
| Ընդդիմադրող | 148. | 31. | դէմ դնող : |
| Ընդոստուցանել | 532. | 22. | վեր ցաթկեցընել : |
| Ընձիւղ | 130. | 32. | ֆիլիզ : |
| Ընչաքաղցութիւն | իէ. | 27. | ստըկի կամ ապրանքի վը-րայ մարիլը : |

---

| | | | |
|---|---|---|---|
| Թախանձել | 176. | 27. | խիստ շատ աղաչել : |
| Թակարդ | 258. | 29. | տուզախ : |
| Թանգարան | 169. | 17. | խազնէ : |
| Թանձրամած | 28. | 22. | խիստ թանձր : |
| Թաւիշ | 90. | 11. | խատիֆէ : |
| Թեւլադրել | 175. | 5. | ֆիթ տալ եւ սորվեցու-նել : |
| Թղենի | 825. | 25. | թուզի ծառ : |
| Թզուկ | 342. | 13. | կարճահասակ մարդ, ճիւ-ճէ : |
| Թիկնապահ | 524. | 16. | թագաւորը պահող զի-նուոր, սօլախ. |
| Թիկնաւէտ | 324. | 21. | արգալը : |

| | | | |
|---|---|---|---|
| Թիւր | 151. | 22. | ծուռ : |
| Թմբուկ | 116. | 7. | տաւուլ : |
| Թշնամանել | 332. | 29. | նախատել, սիթեմ վերմեք : |
| Թոթովախօս | 218. | 22. | փելթեկ : |
| Թոյն | 381. | 26. | զէհիր : |
| Թռչակ | 109. | 7. | մշտնջենաւոր յիշեցքի տակ, եւ՝ եկամուտ կեալըր, եւ՝ եօլիւֆէ : |
| Թումբ | կէ. | 33. | պէնտ : |
| Թոք | 324. | 22. | աք ճիյեր : |
| | | | |
| Ժամադրեալ տեղի | 317. | 26. | ժողվուելու տեղ : |
| Ժայթքել | 354. | 16. | փսխել : |
| Ժայռ | 153. | 8. | գայա թաշ : |
| Ժանիք | 438. | 31. | գազանի ակռաներ : |
| Ժանտախտ | 345. | 21. | եումուրճաք : |
| Ժիր | 152. | 20. | գայրեթլի : |
| Ժխտական | 223. | 30. | դէմ դնող : |
| Ժխտել | 305. | 6. | ուրանալ : |
| Ժպտիլ | 139. | 5. | քիթին տակէն խնդալ : |
| Ժրութեամբ | 220. | 7. | ջանքով : |
| | | | |
| Իմաստ | 155. | 1. | բանին միտքը : |
| Իմաստակութիւն | 247 : | 19. | զինքը իմաստունի պէս ցուցընող |
| 'Իշխանին կեցող | 90. | 28. | աքյիրճի : |
| 'Ինպաստ | 207. | 14. | օգնութեան համար : |
| Իջեւան | 503. | 13. | գօնաք, մէքեան. |
| | | | |
| Լաբիւրինթոս | 25. | 11. | ծուռ ճամբաներով լեցուած տեղ մը՝ ուրկից որ ելք չկայ : |
| Լայնապատառ | 344. | 32. | լայն պատռուած : |
| Լծակից | 2. | 7. | կողակից կամ կնիկ : |
| Լրտես | 237. | 22. | ճաշուշ : |

| | | | |
|---|---|---|---|
| խահարար | Լդ. | 32. | աշճի ։ |
| խաղաղաւէտ | 46. | 11. | խաղաղութեամբ լեցուն ։ |
| խայտալ | 340. | 29. | ուրախութէն վեր ցատկել ։ |
| խանգարիչ | 149. | 6. | աւրող ։ |
| խանդակաթ | 17. | 5. | խիստ սիրելի ։ |
| խարազան | իբ. | 21. | ղամճի ։ |
| խարդախեալ | 408. | 13. | կեղծեալ, սուտ. |
| խարդախութեամբ | 185. | 20. | հիլէպազութիւնով ։ |
| խարոյկ | խե. | 2. | վառած կրակ ։ |
| խաւարչտին խուց | 482. | 14. | մութ օտայ ։ |
| խելաբերել | 403. | 24. | խելքը գլուխը բերել ։ |
| խելագար | 162. | 31. | խենթ ։ |
| խիժան | 251. | 31. | պիղ ։ |
| խիթալի | 319. | 2. | չիֆէլի ։ |
| խիտ ու խիտ | 437. | 1. | սըխ սըխը ։ |
| խմորիլ | 439. | 14. | մայալանմաք ։ |
| խնճոյք | 221. | 12. | զիյաֆէթ, և մէճլիս ։ |
| խոկալ | 329. | 6. | մտմտալ ։ |
| խոյ | 450. | 6. | գոչ ։ |
| խոչընդոտ | 149: | 2. | էնկէլ ։ |
| խոյամուխ | 30. | 14. | խորունկը մտնող ։ |
| խոյարմատ | 57. | 24. | խորունկ տնկուած ։ |
| խորասոյզ ըլլալ | խը. | 8, 9. | պաթմիշ ըլլալ ։ |
| խորք | 450. | 4. | խալը ։ |
| խորխորատ | 418. | 6. | փոս ։ |
| խորշ | 432. | 1. | պուճախ ։ |
| խորտիկ | 192. | 30. | աղնիւ կերակուրներ ։ |
| խռովայոյզ | 155. | 16. | խռովութիւն հանող ։ |
| խստոյել | 379. | 19. | գամաշտըրմաք ։ |
| խրամատ | 559. | 17. | խանտէկ ։ |
| խրճիթ | 142. | 32. | գուլիպէ ։ |
| խրոխտ | 274. | 22. | խիստ հպարտ ։ |
| խրոխտալ | 237. | 13. | վրան քալել ։ |

---

| | | | |
|---|---|---|---|
| ծաղրածու | 342. | 13. | ռոյթարի ։ |
| ծաւալումն | 225. | 28. | եայըլմիշ ըլլալը ։ |
| ծերպ | խէ. | 11. | գովուք, արալըք ։ |
| ծէս | 207. | 6. | արտաքին արարողութի ։ |
| ծպտիլ | 55. | 27. | հագուստը այլափոխել, թեպտիլ օլմաք ։ |

---

| | | | |
|---|---|---|---|
| Կազդուրել | 536. | 33. | հաստատել ։ |

